Nr. 25. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ԱՅՐԻ ԱՆՆԱ ՐԱՖՖԻ Nr. 25.

ՐԱՖՖԻ

# ԽԱՄՍԱՅԻ

# ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ

## ՂԱՐԱԲԱՂԻ ԱՍՏՂԱԳԷՏԸ

## ԴԱՂՏՆԻՔՆ ՂԱՐԱԲԱՂԻ

ԵՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1906.

Raffi

ՐԱՖՖԻ

Xamsayi Melikʻutʻiwnnerë

# ԽԱՄՍԱՅԻ

# ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ

(1600—1827)

ՆԻՒԹԵՐ ՀԱՅՈՑ ՆՈՐ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

---

ԵՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

---

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1906.

ԻՐ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՀԱՅՐ

# ՄԵԼԻՔ-ՄԻՐԶԱ-ԲԷԿԻ

ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

ԽՈՐԻՆ ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹԵԱՄԲ

*Նուիրում է որդին*

ՆՐԱ ԴԱՍԱԿԻՑՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

Gift ... 8-7-62

# Ա Զ Դ

Հրատարակելով "Խամսայի Մելիքութիւնները" երկրորդ տպագրութեամբ, մենք կցում ենք նրան. —

1. "Ղարաբաղի Աստղագէտը,,, վէպ. Պլատոն Զուբովի, որ թարգմանել է Րաֆֆին եւ առանձին գրքով լոյս է տեսել 1882 թ.

2. "Գաղտնիք Ղարաբաղի,,, քննական տեսութիւնը, որը տպագրուել է "Արձագանք,, շաբաթաթերթում 1886 թ.

Վերջին երկու գործերը կապ ունին Խամսայի Մելիքութիւնների պատմութեան հետ. մէկը՝ որպէս վէպ, միւսը՝ որպէս քննական եւ բացատրական տեսութիւն, օժանդակում են պատմութեան մութ կէտերը լուսաբանելու:

"Ղարաբաղի Աստղագէտին,, կցուած ծանօթութիւնները, որոնց մեծ մասը պատկանում են Րաֆֆիի գրչին, ուղղելով օտար հեղինակի (Պլատոն Զուբովի) մի քանի խոշոր սխալները, միեւնոյն ժամանակ պարունակում են իրանց մէջ հարուստ բացատրիչ տեղեկութիւններ Խամսայի Մելիքների եւ նոցա հետ անմիջական կապ ունեցող պատմական դէպքերի մասին:

Իսկ "Ղարաբաղի Գաղտնիք,, ի քննական տեսութիւնը, գրուած լինելով այդ երկու գործերից շատ յետոյ, կազմում է հեղինակի վերջին խօսքը նուիրական աշխարհի եւ Հայկական վերջին հարստութեան մասին:

*Այդ բոլորը ի նկատի ունենալով, մենք մտցրինք այդ նիւթերը, կազմելու մի ամփոփ եւ լրացուցիչ պատմութիւն:*

*Հեղինակը մտադիր էր տպագրել մի երկրորդ հատոր, որպէս յաւելուած "Խամսայի Մելիքութիւնների,,, ինչպէս ընթերցողը կը տեսնէ նրա վերջաբանից. դրա մէջ զետեղուած պիտի լինէին այն բոլոր նիւթերը, որոնք ծառայել էին իբրեւ աղբիւր առաջին հատորին: Մնացած նիւթերը խմբագրելով մտադիր ենք լոյս ընծայել առանձին գրքով:*

*Հրաւիրում՛ ենք պատմութեանս իշխանական տոհմերի շառաւիղներին, փութալ մեզ ուղարկելու իրանց տոհմագրութեան վերաբերող պաշտօնական թղթերը, կամ՛ նոցա վաւերացած պատճէնները եւ պատմութեանս հետ կապ ունեցող նիւթեր, որպէս յիշուած է "Խամսայի Մելիքութիւնների,, վերջաբանի մէջ.*

*Ուրախ ենք ասել, որ մի քանի տոհմերի ներկայացուցիչները արդէն խոստացել են յանձնել մեզ իրանց մօտ գտնուած նշանակութիւն ունեցող թղթերը եւ կարեւոր նիւթեր:*

*Յոյս ունինք, որ ուրիշները եւս կը հետեւին նոցա օրինակին գործը ամբողջացնելու համար:*

*Երբ ունեցանք դոքա, բոլոր նիւթերը կը հրատարակենք առանձին գրքով հեղինակի շարադասութեամբ իբրեւ երկրորդ հատոր "Խամսայի Մելիքութիւնների,,:*

*Լօնդօն, 21 Մայիս 1906:*

*ԱՑՐԻ ԱՆՆԱ ՐԱՖՖԻ*



# I.



Հայաստանը իւր անկման զանազան շրջաններում, կորցնելով իւր գահը, ամեն անգամ թողել է իւր ներկայացուցիչներին, որպէս դեռ չմարած կայծեր, պահպանուած նախկին փառքի մոխրի մէջ: Հայկազանց թագաւորող տունը վերջանալուց յետոյ, թողեց իւր ետեւից մի շարք իշխողներ, որ կոչւում էին կուսակալներ: Արշակունիք թողին մարզպաններին, կիւրապաղատներին, պատրիկներին եւ ոստիկաններին. իսկ Բագրատունիները եւ Ռուբինեանները թողին զանազան, միմեանցից բաժանուած, անկախ իշխանութիւններ:

Ցիշեալ իշխանութիւնների ներկայացուցիչներն ըստ մեծի մասին եղել են Հայոց հին նախարարական տների ժառանգները: Դրանք Հայոց թագաւորութեան մի շրջանի վերջանալուց յետոյ պահպանում էին նրա իշխանութիւնը

մինչեւ մի նոր շրջանի ստեղծուիլը եւ այդպիսով ծառայում էին որպէս օղակներ, որոնք անխզելի կերպով պահպանում էին հայկական անկախութեան շարունակութիւնը մինչեւ կործանուած գահի կրկին վերականգնելը։ Այդ իշխանութիւնները թէեւ երբեմն օտարներից նշանակուած եւ օտարների հարկատու են եղել, բայց երբէք չեն կորցրել իրանց ինքնավարութեան իրաւունքը։

Վերջին դարերում նախարարական հին տների փոխարէն երեւան եկան մ ե լ ի ք ն ե ր ը, որոնց իշխանութիւնն աւելի կանոնաւոր ձեւ ստացաւ Շահ-Աբբաս մեծի օրերից (1603)։ Պարսից այդ աշխարհաշէն թագաւորը՝ որի քաղաքական հայեացքները օտարազգիների վերաբերութեամբ բոլորովին տարբեր էին իւր նախորդներից, աւելի բարւոք էր համարում իւր հպատակ այլասեռ ժողովուրդներին կառավարել հէնց իրանց ներկայացուցիչների ձեռքով եւ դրանով ամրացնել ամբողջ պետութեան մէջ համերաշխութեան կապերը։ Նա առաջինը եղաւ, որ հաստատեց հայոց իշխանների "մելիք"[1] տիտղոսը, որ կրում էին աւելի հին ժամանակներից։ Դրանով Շահ-Աբբասը կամեցաւ վարձատրել այն մեծ ծառայութիւնները[2], որ հայոց մելիքները կատարեցին իւր՝ օսմանցիների դէմ ունեցած յաղթութիւնների մէջ։

Մելիքների իշխանութիւնը տեւեց շատ երկար, իսկ Անդրկովկասում՝ մինչեւ ռուսների տիրապետութեան օրերը։ Ես պիտի խօսեմ այդ իշխանութիւններից միայն մի խմբի

---

[1] Մ ե լ ի ք կամ մալիք նշանակում է իշխող, տիրապետող, այլեւ արքայ։

[2] Սիւնեաց աշխարհի հայոց մելիքները եւ Էջմիածնի կաթողիկոսը մի քանի եպիսկոպոսների հետ, օսմանցիների լծից ազատուելու համար, իրանք գիմեցին Սպահան եւ հրաւիրեցին Շահ-Աբբասին Հայաստանը տիրելու համար։

վրայ, որ ընդհանուր անունով կոչվում էր Խամսայի մելիքութիւններ[1]։

Խամսայի մելիքութիւնները բաղկանում էին հինգ փոքրիկ գաւառներից, որոնք միմեանց սահմանակից լինելով, կազմում էին մի ամբողջ նահանգ, որ այժմ կոչվում է Ղարաբաղ, իսկ մեր պատմութեան մէջ յայտնի է Արցախ կամ Փոքր-Սիւնիք անունով։ Դա աւելի հին ժամանակներում Աղուանից աշխարհի մի մասն էր ներկայացնում։

Յիշեալ հինգ գաւառները հետեւեալներն են.

1. Գիւլիստան կամ Թալիշ, որ սկսվում է Քիւրակ-չայ գետից, այսինքն Գանձակի սահմաններից, եւ տարածվում է մինչեւ Թարթար գետը։

2. Ջրաբերդ կամ Չարաբերդ, որ սկսվում է Թարթար գետից եւ տարածվում է մինչեւ Խաչէնի գետը։

3. Խաչէն, որ սկսվում է նոյն անունով գետից եւ տարածվում է մինչեւ Բալլու-չայ գետը։

4. Վարանդա, որ սկսվում է Բալլու-չայ գետից եւ տարածվում է մինչեւ Դիզափայտի լեռնային գօտին։

5. Տիզակ կամ Դուզախ, որ սկսվում է Դիզափայտի լեռներից եւ տարածվում է մինչեւ Երասխ գետը։

Այդ երկրները, որ մի ժամանակ Աղուանից թագաւորութեան մի մասն էին կազմում՝ յետոյ հայոց մելիքների ապաստան դարձան։ Երկրի անմատչելի դիրքը նպաստում էր այստեղ հայոց իշխանութեան պահպանուելուն դառն ժամանակների փոթորիկներից։ Վայրենի բնութիւնը, դարեւոր խուլ անտառներով պատած ահագին լեռները, անդնդախոր ձորերի մթութիւնը ստեղծել էին այստեղ

[1] Խամսա արաբերէն նշ. հինգ, իսկ Խամսայի մելիքութիւններ նշ. հինգ մելիքութիւններ։

մի մթին ժողովուրդ, որ իւր շրջապատող ժայռերի նման ամուր կուրծք եւ իւր ծմակների վագրների նման աներկիւղ սիրտ ունէր: Այդ ժողովուրդն ապրում էր իւր սիրելի լեռների այրերի մէջ, քարանձաւների խորքում, ապրում էր գետնի տակ, կերակրվում էր իւր անտառների պտուղներով, իւր անասունների բարիքներով, եւ որպէս մի դարանամուտ գազան, իւր թագստի միջից յարձակումներ էր գործում, երբ թշնամին յանդգնում էր վրդովել նրա խաղաղութիւնը:

Իւրաքանչիւր մելիք իւր գաւառի տէրն էր. նա ունէր իւր առանձին բերդը եւ իւր ամրոցները: Գիւլիստանի մելիքի ամրոցը գտնվում էր Գիւլիստան գիւղի մօտ[1], մի անմատչելի սարի գագաթի վրայ. մի այլ ամրոց նոյն գաւառում գտնվում էր Թալիշ աւանի մօտ, Հոռեկայ վանքի հանդէպ: Ջրաբերդի մելիքի ամրոցը գտնվում էր Թարթար գետի ափի մօտ, Երիցմանկանց վանքի հանդէպ: Այդ բերդի անունով ամբողջ գաւառը կոչվում է Ջրաբերդ, որովհետեւ բերդը կանգնած է համարեա թէ ջրի մէջ, մի ահագին, սեպաձեւ ժայռի գագաթի վրայ, որի ստորոտը քերելով, անցնում են կատաղի Թարթարը եւ Թրղին: Այդ երկու գետերը, կտրելով միմեանց, բերդին թերակղզու ձեւ են տալիս: Խաչէնի մելիքների բերդերը գտնվում են Խաչէն գետի մօտ. նրանցից մէկը կանգնած է Գանձասարի հռչակաւոր վանքի հանդէպ, բարձր, անտառապատ լեռան գլխի վրայ, եւ կոչվում է Թարխանա-

---

[1] Ղարաբաղի մելիքների բերդերը, ամրոցները՝ մի քանիսը աւերակ, մի քանիսը ամբողջ դրութեան մէջ, գոյութիւն ունին մինչեւ այսօր: Բայց պէտք է ի նկատի առնել, որ այդ ամրոցներից շատերը Աղուանից թագաւորների եւ իշխանների ժամանակներից մնացած են, մելիքները միայն նորոգեցին իրանց գործածութեան համար:

բերդ (Խօխանաբերդ)։ Այս բերդում տասնեւերրորդ դարու սկզբներում պաշտպանվում էր Հասան-Ջալալ իշխանը Թաթարների արշաւանքների դէմ։ Մի այլ բերդ, դարձեալ Խաչէն գաւառում, գտնվում է յիշեալից մի քանի ժամ ճանապարհով հեռու, սուրբ Յակոբայ վանքի հանդէպ։ Այդ բերդը արժանի է իւր անուանը. նա կոչվում է Կաչաղակաբերդ (Սաղսաղանկալասի), որովհետեւ սրաթռիչ կաչաղակները միայն կարող են բարձրանալ մինչեւ նրա սրածայր գագաթը, որ կորչում է ամպերի մէջ։ Վարանդայի մելիքի ամրոցը գտնվում էր Չանախչի (Աւետարանոց) աւանում, կուսանաց անապատի հանդէպ։ Տիզակի մելիքի ամրոցը գտնվում էր Տող աւանում։ Գտչի վանքի հանդէպ, որ բարձրացել է մինչեւ երկինքը։

Այդ երկրում աշխարհից հրաժարուած աբեղաների վանքերի հանդէպ կանգնած էին իշխանական ամրոցները. նրանց սարսափելի բերդերը, իսկ խաչի հետ միացրած էր սուրը։

Մելիքների իշխանութիւնը ժառանգական էր. հօր մահից յետոյ տիրում էր անդրանիկ որդին եւ կոչվում էր մ ե լ ի ք, իսկ միւս եղբայրները կոչվում էին բ է կ։ Օրէնքի փոխարէն կառավարում էր տիրողի կամքը եւ ժողովրդական սովորութիւնները, որոնք դեռ պահպանուած էին իրանց նահապետական ձեւերի մէջ։ Մելիքներն անսահման իրաւունք ունէին իրանց հպատակների վրայ՝ նրանց դատելու, պատժելու եւ մինչեւ անգամ մահուան դատապարտելու։

Մելիքները թէ քաղաքական շահերով եւ թէ խնամութեան կապերով միացած էին միմեանց հետ, եւ այդպիսով Խամսայի բոլոր հինգ իշխանութիւնները կազմում էին մի ամբողջ դաշնակցական միութիւն։ Պատսպարուած

մի մթին ժողովուրդ, որ իւր շրջապատող ժայռերի նման ամուր կուրծք եւ իւր ծմակների վազրների նման աներկիւղ սիրտ ունէր։ Այդ ժողովուրդն ապրում էր իւր սիրելի լեռների այրերի մէջ, քարանձաւների խորքում, ապրում էր գետնի տակ, կերակրվում էր իւր անտառների պտուղներով, իւր անասունների բարիքներով, եւ որպէս մի դարանամուտ գազան, իւր թագստի միջից յարձակումներ էր գործում, երբ թշնամին յանդգնում էր վրդովել նրա խաղաղութիւնը։

Իւրաքանչիւր մելիք իւր գաւառի տէրն էր. նա ունէր իւր առանձին բերդը եւ իւր ամրոցները։ Գիւլիստանի մելիքի ամրոցը գտնվում էր Գիւլիստան գիւղի մօտ[1], մի անմատչելի սարի գագաթի վրայ. մի այլ ամրոց նոյն գաւառում գտնվում էր Թալիշ աւանի մօտ, Հոռեկայ վանքի հանդէպ։ Ջրաբերդի մելիքի ամրոցը գտնվում էր Թարթար գետի ափի մօտ, Երիցմանկանց վանքի հանդէպ։ Այդ բերդի անունով ամբողջ գաւառը կոչվում է Ջրաբերդ, որովհետեւ բերդը կանգնած է համարեա թէ ջրի մէջ, մի ահագին, սեպաձեւ ժայռի գագաթի վրայ, որի ստորոտը քերելով, անցնում են կատաղի Թարթարը եւ Թրղին։ Այդ երկու գետերը, կտրելով միմեանց, բերդին թերակղզու ձեւ են տալիս։ Խաչէնի մելիքների բերդերը գտնվում են Խաչէն գետի մօտ. նրանցից մէկը կանգնած է Գանձասարի հռչակաւոր վանքի հանդէպ, բարձր, անտառապատ լեռան գլխի վրայ, եւ կոչվում է Թարխանա-

---

[1] Ղարաբաղի մելիքների բերդերը, ամրոցները՝ մի քանիսը աւերակ, մի քանիսը ամբողջ դրութեան մէջ, գոյութիւն ունին մինչեւ այսօր։ Բայց պէտք է ի նկատի առնել, որ այդ ամրոցներից շատերը Աղուանից թագաւորների եւ իշխանների ժամանակներից մնացած են, մելիքները միայն նորոգեցին իրանց գործածութեան համար։

բերդ (Խօխանաբերդ)։ Այս բերդում տասնեւերրորդ դարու սկզբներում պաշտպանվում էր Հասան-Ջալալ իշխանը Թաթարների արշաւանքների դէմ։ Մի այլ բերդ, դարձեալ Խաչէն գաւառում, գտնվում է յիշեալից մի քանի ժամ ճանապարհով հեռու, սուրբ Յակոբայ վանքի հանդէպ։ Այդ բերդը արժանի է իւր անունը. նա կոչվում է Կաչաղակաբերդ (Սաղսաղանկալասի), որովհետեւ սրաթռիչ կաչաղակները միայն կարող են բարձրանալ մինչեւ նրա սրածայր գագաթը, որ կորչում է ամպերի մէջ։ Վարանդայի մելիքի ամրոցը գտնվում էր Ջանախչի (Աւետարանոց) աւանում, կուսանաց անապատի հանդէպ։ Տիզակի մելիքի ամրոցը գտնվում էր Տող աւանում։ Գտչի վանքի հանդէպ, որ բարձրացել է մինչեւ երկինքը։

Այդ երկրում աշխարհից հրաժարուած աբեղաների վանքերի հանդէպ կանգնած էին իշխանական ամրոցները. նրանց սարսափելի բերդերը, իսկ խաչի հետ միացրած էր սուրը։

Մելիքների իշխանութիւնը ժառանգական էր. հօր մահից յետոյ տիրում էր անդրանիկ որդին եւ կոչվում էր մելիք, իսկ միւս եղբայրները կոչվում էին բէկ։ Օրէնքի փոխարէն կառավարում էր տիրողի կամքը եւ ժողովրդական սովորութիւնները, որոնք դեռ պահպանուած էին իրանց նահապետական ձեւերի մէջ։ Մելիքներն անսահման իրաւունք ունէին իրանց հպատակների վրայ՝ նրանց դատելու, պատժելու եւ մինչեւ անգամ մահուան դատապարտելու։

Մելիքները թէ քաղաքական շահերով եւ թէ խնամութեան կապերով միացած էին միմեանց հետ, եւ այդպիսով Խամսայի բոլոր հինգ իշխանութիւնները կազմում էին մի ամբողջ դաշնակցական միութիւն։ Պատսպարուած

իրանց անմատչելի լեռների եւ մթին անտառների մէջ. նրանք ոչ մի մահմեդականի թոյլ չէին տալիս բնակութիւն հաստատել իրանց երկրներում եւ ամբողջ Ղարաբաղի ազգաբնակութիւնը բաղկացած էր միայն հայերից, որոնց քանակութիւնը բազմաթիւ էր։

Այժմ դառնանք Խամսայի հինգ գաւառների տիրապետող մելիքների ծագմանը։

## II.

### 1. Գիւլիստանի Մելիք-Բէգլարեանների ծագումը[1]։

Մելիք-Բէգլարեանները բնիկ ուտէացիներ են, Նիժ գիւղից։ Թէ ինչ հանգամանքներ ստիպեցին նրանց թողնել իրանց հայրենիքը եւ գաղթելով Ղարաբաղի կողմերը, Գիւլիստան գաւառում նոր բնակութիւն հաստատել, այդ մասին լռում է պատմութիւնը։ Միայն այսքանը յայտնի է որ առաջին գաղթականը, — որին թուրքերը կոչում էին «Ղարա-իւզբաշի» (սեւ-հարիւրապետ), իսկ հայերի մէջ յայտնի էր անունով՝ սեւ-Աբով, — հասարակ մարդ չէր[2]. Նա իւր հայրենիքում ժողովրդի կառավարիչ էր, հարուստ էր։

Տասնեւվեցերորդ դարու սկզբներում յանկարծ այդ «սեւ-հարիւրապետը» յայտնվում է Ղարաբաղի կողմերում, բոլորովին աղքատ, իւր հետ ունենալով միայն եօթն ընտանիք եւ մի քանի անասուն, որ կրում էին

[1] Մեր ձեռքում գտնուած մի գրչագիր պատմութիւն Մելիք-Բէգլարեանների ծագումը դուրս է բերում Աղուանից ամենահին թագաւորների մէկից՝ Առանից, որ ապրում էր Քրիստոսից շատ առաջ։ Այդ ենթադրութիւնը կարօտ է խիստ ստուգութեան։

[2] Ղարաբաղի բոլոր մելիքների նախնիքը կրում էին «ի ւ զ բ ա շ ի» տիտղոսը. այդ տիտղոսը տրվում էր այն անձանց, որոնք սեպհական երկրների տէր էին եւ իրաւունք ունէին զօրքեր պահելու։

նրանց ճանապարհի ծանրութիւնները։ Երեւում էր որ իրանց հայրենիքում մի աղէտալի դէպք պէտք է պատահած լինէր նրանց հետ, որով թէ կողոպտուել էին եւ թէ տարագրուել։

Գալով մի անծանօթ աշխարհ, նրանք ոչ բնակութեան տեղ ունէին եւ ոչ պատսպարան։ Թէեւ աշնան ցրտերն արդէն սկսուել էին, բայց նրանք դեռ բնակվում էին իրանց վրաններում, Թարթար գետի ձախ ափերի մօտ, այժմեան Թալիշ գիւղից փոքր ինչ հեռու։

Գուցէ “սեւ-Հարիբապետը„ կը ցանկանար իւր նոր եկած աշխարհում առժամանակ անյայտութեան մէջ ծածկուած մնալ, բայց մի դէպք երեւան հանեց նրան։ Մի օր նրա գրաստները դաշտում արածելու ժամանակ վրայ հասան մի խումբ աւազակներ եւ աւարի առան անասունները։ Այդ միջոցին դուրս եկաւ “սեւ-Հարիբապետը„ եւ նրա հետ մի քանի երիտասարդ. նետուեցան աւազակների ետեւից։ Մի քանի ժամից յետոյ վերադարձան նրանք, բերելով իրանց հետ ոչ միայն կողոպտած անասուններին, այլեւ կողոպտող աւազակներին, որոնց բոլորին կալանաւորել էին։

Միւս օրը յայտնուեցան մի այլ խումբ ձիաւորներ, որոնք դիմելով “սեւ-Հարիբապետին„, ասացին նրան, թէ իրանք Բարդայի խանի մարդիկն են, թէ իրանց հրամայուած էր այդ աւազակներին բռնել, որովհետեւ դրանք մեծ վնասներ են հասցրել երկրին, եւ այժմ շատ ուրախ են, որ աւազակները կալանաւորուած են առանց իրանց աշխատութեան։ Այդ խօսքերով առնում են աւազակներին եւ տանում են Բարդայի խանի մօտ, առանց յայտնելու նրան թէ ով եղաւ աւազակների բռնողը, որպէս զի խանի պարգեւներն իրանք ստանան։

Խանը հրամայում է աւազակներին գլխատել, իսկ իւր մարդկանց պարգեւներով վարձատրել նրանց քաջութեան համար։ Այդ միջոցին աւազակապետն ասում է խանին. “Պատժեցէք մեզ, որպէս ձեր կամքն է, որովհետեւ մենք քո երկրները աւերակ դարձրինք։ Բայց մի՛ անպատուեցէք մեզ՝ այդ ողորմելի մարդկանց չկատարած քաջութիւնները վարձատրելով, իբր թէ դրանք են եղել մեզ յաղթողները„....։

Խանն ստուգելով իմանում է, որ իւր մարդիկը խաբել են իրան, ուստի կանչել է տալիս “սեւ-հարիւրապետին„, որ մի այլ վարձատրութիւն չի պահանջում իւր մատուցած ծառայութեան համար, այլ միայն՝ որպէս գաղթական մարդ, խնդրում է որ իրան բնակութեան տեղ տայ։ Խանը որոշում է նրա համար որպէս մշտական սեփականութիւն հին Թալիշ կամ Թարիջ գիւղը Գիւլիստանի գաւառում, Հոռեկայ վանքի մօտ։ Ահա այսքանը միայն յայտնի է “սեւ-հարիւրապետի„ կեանքից։ Նրա գերեզմանաքարի վրայ, որ գտնվում է յիշեալ վանքի մօտ, փորագրուած է մի տող միայն, որից երեւում է, թէ նա վախճանուեցաւ հայոց ռ. ձ. ա. (1081) թուականին, իսկ Փրկչական 1632 թուականին։

Սեւ-Աբովն ունէր մի քանի որդի, որոնցից երէցը՝ Մելիք-Բէգլարը, յաջորդում է հօրը։

Մելիք-Բէգլար Ա-ը իւր նախնիքների քաջասրտութեան հետ ունէր եւ խելք։ Նա հիմք դրեց Գիւլիստանի մելիքների իշխանութեանը, եւ տիրապետելով նոր երկրներ, աւելի ընդարձակեց իւր իշխանութիւնը։ Նա խլեց տեղային նախկին տիրապետողից, որ կոչվում էր Աբրահամ-իւզբաշի[1] (Իբրահիմ գաւուր), մի քանի գիւղ, որ-

[1] Աբրահամ-իւզբաշու ժառանգներն այժմ բնակվում են Գիւլիստան գիւղում որպէս հասարակ շինականներ։

պէս էին՝ Վերի-շէնը, Ներքի-շէնը, Ըրքէջը, եւայլն։ Ու- տիրապետելով Գիւլիստան բերդին, նորոգեց այդ անմատչելի ամրոցը եւ իր բնակութիւնն այնտեղ հաստատեց։ Նա թողեց երկու որդի. երէցը կոչվում էր իր պապի անունով Աբով, իսկ կրտսերը՝ Թամրազ (Թէյմուրազ)։

Հօր մահից յետոյ յաջորդեց երէց որդին՝ Աբով Բ-ը, որի մի ոտքը հրացանի գնդակից վնասուած լինելով, յայտնի էր անունով կաղ-Աբով։

Կաղ-Աբովը իր անպարտելի քաջագործութիւններով շատ նման էր իր պապին՝ սեւ-Աբովին։ Յափշտակութիւնը, աւարառութիւնը եւ յանդուգն ասպատակութիւնները նրա ժամանակում երկրների իշխողների համար ոչ միայն անբարոյականութիւն չէին համարվում, այլ ընդունվում էին որպէս քաջազնական արժանաւորութիւններ, որոնք անպատճառ պէտք է ունենար երկրի իշխողը՝ իր շրջակայ թշնամիներին երկիւղի մէջ պահելու համար։ Այդ յատկութիւններից զուրկ չէր կաղ-Աբովը։ Նա ամեն ինչ ձեռք էր բերում յափշտակութիւնով. նա յափշտակեց մինչեւ անգամ իր կնոջը՝ գեղեցիկ Ղամարսոլթանին։

Մի անգամ երբ իր խմբով գնում էր Գանձակի կողմերում աւարառութիւններ անելու, Գետաշէն գիւղից բարձր, Դուլուսլու գիւղի մօտ, լեռների վրայ հանդիպում է Գանձակի Մամադ-խանի օբաներին։ Յարձակման միջոցին տեսնում է խանի աղջկան, որ իր “քառասուն„ աղախինների հետ եկել էր այնտեղ իր հօր հովիւների մօտ ամառն անցկացնելու։ Օրիորդի գեղեցկութիւնն այն աստիճան յափշտակում է Աբովին, որ նա մոռանում է Մամադ-խանի հօտերի հարուստ աւարը եւ առեւանգում է միայն նրա դստերը։ Աբովն այդ ժամանակ ազապ երի-

տասարդ էր, բայց գեղեցիկ երիտասարդ, թէեւ ոչ այնքան յաղթանդամ եւ դէմքով բաւական թուխ, որպէս էին առհասարակ սեւ-Աբովի ժառանգները։ Բերելով իւր չքնաղագեղ աւարը Գիւլիստանի բերդի մօտ գտնուած Ամենափրկչի վանքը, այնտեղ քրիստոնեայ է մկրտել տալիս եւ ամուսնանում նրա հետ։

Այդ առեւանգութիւնն առիթ տուեց Աբովի եւ Գանձակի խանի մէջ մի քանի արիւնահեղ կռիւների, որոնք վերջացան խանի պարտութիւնով։ Խանը միշտ անհաշտ մնաց թէ իւր դստեր եւ թէ իւր ինքնակոչ փեսայի հետ. բայց ծերութեան հասակում հաշտուեցաւ։ Եւ որովհետեւ նա մի այլ ժառանգ չունէր բացի միակ աղջկանից, այդ պատճառով իւր բոլոր գիւղերը, հարստութիւնը կտակով նրան թողեց։ Նոյն միջոցով Աբովը տէր եղաւ ահագին ժառանգութեան։

Աբով Բ-ը վախճանուեցաւ 1728 թուին. նրա մահից յետոյ, մելիքների սովորութեան համեմատ, պիտի յաջորդէր որդին՝ Մելիք-Յուսուբը։ Բայց որովհետեւ Մելիք-Յուսուբը դեռ անփորձ պատանի էր, այդ պատճառով երկրի կառավարութիւնը յանձնուեցաւ հանգուցեալի եղբայր Թամրազին, եւ պատանի Յուսուբը մնաց նրա հոգաբարձութեան ներքոյ մինչեւ չափահաս դառնալը։

Մելիք-Թամրազը իւր բնակութեան տեղ ընտրեց Հոռեկայ վանքի մօտ գտնուած պալատը[1] եւ վարում էր իւր իշխանութիւնը ոչ իբրեւ ժամանակաւոր հոգաբարձու, այլ որպէս երկրի լիակատար տէրը։ Նա խիստ դաժան մարդ էր եւ անգութ։ Մտադրուած լինելով իսպառ

[1] Այդ հոյակապ պալատը կիսաւեր դրութեան մէջ մնում է մինչեւ այսօր. դա մի խօսուն վկայ է Գիւլիստանի մելիքների վաղեմի փառքի եւ զօրութեան։

զրկել պատանի Իւսուֆին հօր ժառանգութիւնից, նա սկսեց հետզհետէ ճնշել, հարստահարել նրան, մինչեւ անգամ մտածում էր իւր եղբօր որդու կեանքի դէմ որոգայթ լարել, որ իշխանութիւնը միանգամայն իրան մնայ: Պատանի Իւսուֆն ապրում էր Գիւլիստանի բերդում իւր մօր հետ, աննախանձելի վիճակի մէջ:

Այդ միջոցներում Շահ-Սուլթան-Ցուսէինի հարկահաններից մէկը, որ կոչվում էր Միրզա-Թահիր, եւ որ ատրպատականի վէզիր էր, Դերբէնդից սկսեալ արքունի հարկերը հաւաքելով, գալիս հասնում է Գանձակի եւ Ղարաբաղի կողմերը: Մելիք-Թամրազն ընդունում է նրան իւր տանը, եւ կամենալով շողոքորթել պարսից կառավարութեանը, հրամայում է՝ իւր ժողովրդից եւս աւելորդութեամբ հաւաքել հարկեր, որ մինչեւ այնօր վճարելու սովորութիւն չունէին: Այդ բաւական չէ, նա կամենում է մի արժանաւոր ընծայ տալ իւր հիւրին՝ նրա սիրտը գրաւելու համար:

“Իմ եղբօր հրացանը, ասում է նրան, գտնվում է իմ եղբօրորդի Իւսուֆի ձեռքում, այդ զէնքը մի հազուագիւտ բան է եւ շահի գանձարանին վայել„:

Պարսիկը խաբէութեամբ կանչել է տալիս Իւսուֆին եւ խնդրում է, որ հօր հրացանը բերէ տեսնելու համար: Երբ նա բերում է, ձեռքիցն առնելով, ասում է նրան. “Այս հրացանը շահի գանձարանին է վայել եւ ոչ թէ քեզ„, եւ այլ եւս յետ չէ տալիս:

Մանկահասակ Իւսուֆը բարկութեան արտասուքն աչքերում վերադառնում է մօր մօտ, պատմում է նրան այդ անցքը: Մայրը սաստիկ վշտանում է. Նրան մնացել էր իւր ամուսնու ժառանգութիւնից այդ նուիրական զէնքը միայն, որ մի թանկագին յիշատակ էր նրա քաջա-

գործութիւններին։ Որդու սրտմտութիւնն աւելի սաստկանում է, երբ լսում է մօր յանդիմանութիւնը. “քաջ հօր անարժան որդի, լաւ էր, թէ քո սպանուած դիակն ինձ մօտ բերէին եւ ասէին, որ դու կռուեցար քո հօր յիշատակը չկորցնելու համար„։

— Ես կը վերադարձնեմ հօրս հրացանը..., ասում է որդին եւ խնդրում մօրից, որ իրան փող տայ մի քանի զէնքեր գնելու համար։ Մայրը տալիս է նրան իւր գլխի ոսկիներից մի քանիսը։

Պարսիկ հարկահանը, հաւաքելով տեղային հարկերը բեռնում է ջորիների վրայ եւ իւր նօքարների (ծառաների) հետ ճանապարհ է ընկնում։ Այդ ժամանակ մանկահասակ Իւսուբը մի խումբ կազմելով իւր բարեկամ երիտասարդներից, ծածուկ հետեւում է հարկահանին։ Յարձակման պայմանական նշանը որոշվում է “ծկլտ„ բառը, իսկ դադարման նշանը՝ “մկլտ„ բառը։ Երբ հարկահանը մտնում է Թալթար գետի նեղ ձորի մէջ, “ծկլտ„ կոչելով, Իւսուբը տալիս է յարձակման նշանը։ Նա իւր ձեռքով կտրում է պարսկի գլուխը եւ խլում է նրանից իւր հօր հրացանը[1]։

Նրա՝ ջորիների բեռները, որ բովանդակում էին իրանց մէջ ամբողջ գաւառներից հաւաքած ոսկիները, աւար դարձան մանկահասակ Իւսուբի եւ նրա քաջ ընկերների ձեռքով։ Նրա նօքարների մի մասը կոտորեցին, իսկ փախչողներն ազատուեցան։

Երիտասարդ Իւսուբը իւր յափշտակած գանձն առնելով ամրացաւ Գիւլիստանի բերդում։ Նրա վարմունքը

---

[1] Այդ հրացանը յետոյ Մելիք-Բեգլարեանների ժառանգները վաճառեցին 1000 ռուբլով գեներալ Երմոլովին եւ նա ուղարկեց Մոսկուա “Արուժէյնայա„ պալատը։

մնաց անպատիժ, որովհետեւ, ինչպէս յետոյ կը տեսնենք, այդ միջոցներին Պարսկաստանում մեծ խռովութիւններ ու փոփոխութիւններ պատահեցան։ Շահ-Սուլթան-Յուսէինը գահընկէց եղաւ, աւղանները տիրեցին պարսից մայրաքաղաքին, էլ այդ ժամանակուայ պատերազմական շփոթութիւնների մէջ ո՞վ պիտի մտածէր, թէ Ղարաբաղի կողմերում մի այդպիսի անցք էր պատահել։

Երիտասարդ Իւսուբը հայրութեան տէր դառնալով, սկսեց օր ըստ օրէ զօրացնել իւր ուժերը։ Նա դաշնակցութիւն կապեց Ջրաբերդի Մելիք-Աթամի հետ, որի յարաբերութիւնները իւր հօրեղբայր Մելիք-Թամրազի հետ բարեկամական չէին։ Այժմ մտածում էր ոչ միայն խլել նրանից Գիւլիստանի իշխանութիւնը, որ նա բռնութեամբ յափշտակել էր, այլ ցանկանում էր վրէժխնդիր լինել այն բոլոր անիրաւութիւնների եւ զրկանքների համար, որ իւր անգութ հոգաբարձուն, Մելիք-Թամրազը, կատարել էր, երբ ինքը դեռ անչափահաս էր։ Միանալով Մելիք-Աթամի հետ, երիտասարդ Իւսուբը յարձակուեցաւ Մելիք-Թամրազի ամրոցի վրայ։ Մի քանի օրուայ սաստիկ կռիւներից յետոյ ամրոցը գրաւուեցաւ եւ Մելիք-Թամրազը գերի բռնուեցաւ։ Իւսուբը հրամայեց նրան կախել մի չինարի ծառից[1], եւ ինքն այնուհետեւ սկսեց կառավարել Գիւլիստանի իշխանութիւնը։ Մելիք-Թամրազից մնաց մի որդի Սարուխան-բէգ անունով, որ 1723 թուականի հայոց գնդերի չորս քաջ զօրապետներից մէկն էր։

Մելիք-Իւսուբի մայրը, խելացի Ղամար-սոլթանը, որ իւր խորհուրդներով ոչ սակաւ օգնեց որդու բարձրանա-

---

[1] Այդ հինաւուրց չինարի ծառը մինչեւ այսօր էլ ցոյց են տալիս Գիւլիստանի եւ Ջրաբերդի սահմանի վրայ եւ կոչվում է “Ղանլու-չինար„, որ նշանակում է արիւնոտ չինարի։

լուն, վախճանուեցաւ 1753 թուին։ Նրա մարմինը թաղուեցաւ Մելիք-Բէգլարեանների տոհմային գերեզմանատանը, Հոռեկայ վանքի հանդէպ։

Մելիք-Բէգլարեանների մնացած պատմութիւնը ժամանակագրական կարգով կը տեսնենք աշխատութեանս շարունակութեան մէջ։

### 2. Ջրաբերդի Մելիք-Իսրայէլեանների ծագումը։

Ջրաբերդի Մելիք-Իսրայէլեանների ծագման մասին մենք շատ փոքր տեղեկութիւններ ունինք։ Մի գրչագիր պատմութիւնից իմանում ենք այսքանը միայն, թէ Մելիք-Իսրայէլի որդի Մելիք-Եսային Սիւնեաց աշխարհի գլխաւոր խանին (?) սպանելու համար, որ անբարոյական նպատակներ ունէր նրա քրոջ վերաբերութեամբ, 1687 թուին գաղթում է Ղարաբաղ, բերելով իւր հետ բազմաթիւ ընտանիքներ։ Խանի զօրքերը հետամուտ են լինում նրան, բայց Մելիք-Եսային Մռաւ լեռան ձորերի մէջ ջարդում է նրանց եւ սպանում խանի եօթն որդիներին, յափշտակելով նրանցից ահագին պատերազմական աւար, իսկ մնացածներին Համշաբերդի եւ Ծար գաւառի կողմից փախցնում է։

Այնուհետեւ Մռաւ սարի լեռնաբնակներին եւ վրանաբնակներին հետզհետէ դէպի ինքը գրաւելով, Մելիք-Եսային աւելի զօրանում է, տիրում է Կուանք կոչուած ձորին, եւ սկսեալ Ոմբոստեան լեռներից մինչեւ Դիւթական գիւղը, որ այժմ կոչվում է Կաթուղկասար, տարածում է իւր տիրապետութիւնը։

Մելիք-Եսայու մահից յետոյ նրան յաջորդում են միւս եղբայրները՝ նախ Ալահ-Ղուլի-սոլթանը, յետոյ Մելիք-Աթամը։ Դրանք աւելի զօրանալով, տիրում են վե-

րին Խաչէնին, Հաւքախաղացին, Հանդաբերդին, Հաթերքին, Ականային եւ Ջրաբերդին, եւ այդպիսով աւելի եւս ընդարձակում էն իրանց իշխանութիւնը։

Ալլահ-Ղուլի-սոլթանը, որպէս յետոյ կը տեսնենք, դաւաճանութեամբ սպանուեցաւ Շուշի բերդի Փանահխանի ձեռքով, իսկ Մելիք-Աթամը երկար պատերազմեց այդ խանի հետ։

Մելիք-Աթամը իւր բնակութեան համար նորոգեց "քաղաքատեղ" կամ "մայրաքաղաք" կոչուած աւերակների մօտ մի հոյակապ պալատ, որի մէջ տասնեւերկուերորդ դարու վերջերում բնակվում էր Խաչէնի եւ Ծամքորի իշխան Վահրամ-շահը, իսկ որպէս ամրոց ընտրեց իւր համար անմատչելի Ջրաբերդը[1]։

### 3. Խաչէնի Հասան-Ջալալեան մելիքների ծագումը։

Ղարաբաղի տիրապետող հինգ մելիքական տներից միայն Խաչէնի իշխողները բնիկներ են եղել, իսկ մնացած չորսը, որպէս տեսանք եւ որպէս յետոյ եւս պիտի տեսնենք, օտար երկրներից գաղթականներ էին։

Խաչէնի մելիքների ծագումը շատ հին պէտք է համարել․ նրանք առաջ են եկել Հասան-Ջալալեան իշխաններից։ Դարերի ընթացքում այնքան բազմացել եւ ճիւղաւորուել էին նրանք, որ Խաչէնի փոքրիկ գաւառը ամենամանր կտորներով բաժանուած էր այդ տոհմի ներկայացուցիչների ձեռքում, որոնք բնականաբար շատ հաշտ չէին կարող լինել միմեանց հետ։ Այդ էր պատճառը նրանց

---

[1] Մելիք-Աթամն ունէր մի քանի ամրոց, որոնցից մէկն այժմ ամբողջութեամբ մնում է Կապատ եւ Հին-Մոխրաթաղ գիւղերի մօտ, ինքնամասանց անապատի հանդէպ։ Այդ գեղեցիկ շէնքը կարող է բաւական լոյս ձգել մեր նախնիքների ճարտարապետական ճաշակի վերաբերութեամբ։

վերջին ժամանակների թուլութեան, որ չէին կազմում մի զօրեղ, միացեալ իշխանութիւն։ Բացի դրանից, միեւնոյն տոհմից ընտրվում էին Գանձասարի վանքի կաթողիկոսները, որոնց ճնշման ներքոյ այս երկրի մելիքները շատ չէին զօրանում։

Տասնեւվեցերորդ դարում Հասան-Ջալալեան իշխաններից նշանաւոր էին երեք եղբայրներ՝ Երեմիա կաթողիկոսը, Վելիջան-բէկ Գ-ը եւ Մուլքի-բէկը։

Երեմիա կաթողիկոսը վախճանուեցաւ 1700 թուին։ Վելիջան-բէկը վախճանուեցաւ 1686 թուին եւ նրա որդի Եսային Երեմիայի փոխարէն կաթողիկոս դարձաւ։ (Դա միեւնոյն Եսայի կաթողիկոսն է, որ ինչպէս յետոյ պիտի տեսնենք Պետրոս Մեծի ժամանակ սկսեց ռուսաց կառավարութեան հետ բանակցութիւններ անել Ղարաբաղում հայոց անկախ իշխանութիւն հիմնելու համար, ռուսաց հովանաւորութեան ներքոյ։) Իսկ Մուլքի-բէկը վախճանուեցաւ 1716 թուին եւ թողեց երկու որդի. երէցը կոչվում էր Մելիք-Գրիգոր, կրտսերը՝ Մելիք-Ալահվերդի։

Մելիք-Գրիգորը խելացի եւ ճարտարախօս մարդ էր. իւր շէկութեան համար պարսիկներից եւ օսմանցիներից մականուն ստացաւ “սարի-մելիք„ որ նշանակում է շէկ-մելիք։ Զանազան քաջագործութիւններից յետոյ նա հեռացաւ աշխարհից եւ մտնելով Գանձասարի վանքը, վարդապետ ձեռնադրուեցաւ։ Մելիք-Գրիգորից յետոյ նրա եղբայր Մելիք-Ալահվերդին վարեց Խաչէնի իշխանութիւնը, իսկ այդ վերջինի մահից յետոյ նրա որդի Մելիք-բէկը, որ ութը որդի թողեց։ Նրա որդիներից մէկն էր Գանձասարի Յովհաննէս կաթողիկոսը, որ սպանուեցաւ Շուշի բերդի Իբրահիմ-խանից։

### 4. Վարանդայի Մելիք-Շահնազարեանների ծագումը:

Առաքել պատմագրի մէջ կարդում ենք հետեւեալը. «Թիֆլիզից դուրս գալով շահը (Աբբաս մեծը) գնաց Գեղամայ գաւառը, եւ այնտեղ դրեց իւր արքունի բանակը. իսկ ինքը Շահ-Աբբասը իջեւանեց Մելիք-Շահնազարի տանը, որ գտնվում էր Մաղրա գիւղում եւ ինքը (մելիքը) բնիկ նոյն գիւղացի էր։ Եւ այս Մելիք-Շահնազարը հայոց ազգից էր, հաւատով քրիստոնեայ. նա փառաւոր եւ հզօր իշխան էր, որ այնպիսի հիւրընկալութիւն արեց շահին, որպէս վայել էր մի թագաւորի։ Եւ նա ինքը թագաւորի մտերիմն ու բարեկամն էր, եւ յարգելի էր նրա առջեւ։ Դրա համար թագաւորը պատուական ու ազնիւ զգեստներով շքեղացրեց նրան, եւ խալաթներ տուեց. այլեւ պարգեւեց նրան այն գաւառի մելիքութեան իշխանութիւնը, եւ ուրիշ գաստակերտներ եւ գիւղեր ընծայեց նրան ու նրա եղբայրներին։ Եւ հաստատուն նոմոս (հրովարտակ) գրեց եւ կնքեց թագաւորական կնքով եւ տուեց նրանց, որ այդ ժառանգութիւններն անփոփոխ լինին թէ՛ նրանց համար եւ թէ նրանց զաւակների համար, սերունդից սերունդ մինչեւ յաւիտեան։

1682 թուին երբ Կովկասեան լեռնաբնակների փոթորկալից արշաւանքները Գեղարքունեաց երկիրն աւերակ դարձրին, այդ ժամանակ վերոյիշեալ Մելիք-Շահնազարի որդի Մելիք-Յուսէինը եւ նրա եղբօր (Մելիք-Միրզաբէկի)-որդի Մելիք-Բաղին թողին Գեղամայ լճի եզերքը եւ գաղթեցին իրանց ժողովրդի մի մասի հետ դէպի Ղարաբաղի կողմերը։ Վարանդայ գաւառի Աւետարանոց (Չանախչի) գիւղն ընտրեցին նրանք իրանց բնակութեան համար։ Այստեղ կառուցին եկեղեցի, կուսանաց անապատ

եւ Աւետարանոցը շրջապատեցին ամուր պարիսպներով եւ նրան բերդի ձեւ տուին։ Նոյն բերդում հիմնեցին իրանց համար ամրոցներ, որոնց հոյակապ շէնքերը կիսաւեր դրութեան մէջ մինչեւ այսօր էլ մնում են։

1721 թուին երբ Կովկասեան լեռնաբնակները դարձեալ հեղեղի նման թափուեցան, ապստամբեցին Շաքին, Շիրվանը, Գանձակը եւ անցան մինչեւ Երասխ գետը, այդ ժամանակ, երբ մօտեցան Վարանդային, նրանց առջեւ դուրս եկաւ Մելիք-Բաղէն եւ ազատեց երկիրն աւերմունքից։ Այդ եւ դրա նման մի քանի անցքեր այն աստիճան գրաւեցին տեղային ժողովրդի համակրութիւնը դէպի Մելիք-Շահնազարեանները, որ ամբողջ Վարանդան ընդունեց իւր վրայ այդ տոհմի իշխանութիւնը։

## 5. Տիզակի Մելիք-Աւանեանների ծագումը։

Մելիք-Աւանեանները նոյնպէս գաղթականներ են Լօռի գաւառի Արտու անունով գիւղից։ Տասնեւվեցերորդ դարում այդ գաւառում զօրացան Լօռիս-Մելիքեանները. այդ տոհմից էր Մելիք-Աւանը (Եգանը), որ Ղուկաս վարդապետի որդին էր։

Մելիք-Աւանն անընդհատ կռիւներ ունէր իւր տոհմակից Մելիք-Եղիզարի հետ, որ բռնութեամբ խլել էր Մելիք-Աւանից նրա հայրենի ժառանգութիւնը՝ Փամբակի ձորը եւ Լօռիի մի մասը։ Չկարողանալով յաղթել իւր թշնամուն եւ հալածուած նրանից, Մելիք-Աւանը իւր հայր Ղուկաս վարդապետի հետ եւ իւր ժողովրդով գաղթեց Ղարաբաղի Տիզակ գաւառի Տող գիւղը։ Այստեղ նրա հայրը նորոգեց Գտիչ վանքը, միաբանութիւն հաստատեց եւ բնակուեցաւ նոյն վանքում։ Իսկ որդին՝ Մելիք-Աւանը, Տող գիւղում հիմնեց հոյակապ եկեղեցի եւ ամ-

րացրեց այդ գիւղը շրջապարիսպներով: Նրա փառաւոր պալատը նոյն գիւղում մինչեւ այսօր էլ մնում է հայկական արձանագրութիւններով, որի մէջ բնակվում են նրա ժառանգներից այն մնացորդները միայն, որոնք Շուշի բերդի Իբրահիմ-խանի հալածանքների ժամանակ մահմեդականութիւն ընդունեցին: Այդ մահմեդականներն ազնուականներ են եւ պարծանքով են յիշում իրանց նախահօր՝ Մելիք-Աւանի անունը, նրա գերեզմանը օրհնել են տալիս ամեն մի տօն օր եւ ամեն տարի Զատկի աւագ կիւրակէի պատարագը տեղային եկեղեցում նրանց հաշուով է կատարվում[1]:

Մենք համառօտ կերպով ցոյց տուինք Ղարաբաղի հինգ գաւառների՝ Գիւլիստան, Ջրաբերդ, Խաչէն, Վարանդայ եւ Տիզակ, տիրապետող մելիքների ծագումը: Տեսանք որ այդ մելիքական տներից միայն Խաչէնի իշխողները բնիկներ են եղել, իսկ միւս բոլորը՝ օտար երկրներից գաղթականներ, որոնք համարեա միօրինակ պատմական հանգամանքներից ստիպուած, ապաստան են գտել Ղարաբաղի անտառների ու անմատչելի լեռների մէջ եւ հիմնել են իրանց հզօր իշխանութիւնը: Այժմ դառնանք դէպի այդ մելիքների ապագայ գործունէութիւնը, որոնք նշանաւոր տեղ են բռնում մեր նոր պատմութեան մէջ:

---

[1] 1881 թուին Սիւնեաց աշխարհում ճանապարհորդելու ժամանակ մի գիշեր մնացի Տող գիւղում. այստեղ ինձ պատմեցին, թէ յիշեալ մահմեդականների գլխաւոր ներկայացուցիչը իւր երկու որդիներին յանձնեց Սարգիս եպիսկոպոս Ջալալեանցին, որ նա հայկական ոգով կրթել տայ, յետոյ քրիստոնէութիւն ընդունէին եւ շարունակէին Մելիք-Աւանեանների ժառանգութիւնը իբրեւ հայեր: Բայց բարեհոգի եպիսկոպոսը, փոխանակ նրանց դպրոց տանելու, սկսեց ծառայացնել իւր մօտ որպէս սպասաւորներ: Նրա խոհանոցում մանուկները լրբացան, եւ գողացան եպիսկոպոսի թէյի գդալները: Եպիսկոպոսն այնուհետեւ ստիպուեցաւ նրանց վռնդել իւր տնից: Ջալալեանն այդ ժամանակ Շուշուայ առաջնորդն էր:

## III.

*Տասնեւութերորդ դարու սկիզբներին Պարսկաստանում պատահեցան նշանաւոր փոփոխութիւններ, որոնք Ղարաբաղի մելիքների դրութեան վրայ ոչ սակաւ ազդեցութիւն ունեցան։ Շահ-Սուլթան-Յուսէինի թոյլ կառավարութիւնն ամէն կողմից հրաւիրեց Պարսկաստանի վրայ նրա թշնամիներին։ Աւղանները ապստամբուեցան, Ղանդահարի Միր-Մահմուդ խանը՝ արշաւանք գործելով, տիրեց պարսից մայրաքաղաք Սպահանը եւ շահին գահընկէց անելով, ինքը թագաւոր դարձաւ* (1722)։ *Կովկասեան լեռնաբնակները, Դաղստանի Ալի-սուլթանի եւ Սուրխէյ-խանի առաջնորդութեամբ, հեղեղի նման թափուեցան, աւերակ դարձրին Վրաստանը եւ պարսկական այլ նահանգները՝ սկսած Սեւանայ ծովից մինչեւ Երասխ գետը* (1721—22—23)։ *Միեւնոյն ժամանակներում, Պետրոս մեծի կայսրութեան օրերում* (1722—1723) *ռուսները տիրեցին Կասպից ծովեզրեայ պարսկական գաւառները, որպէս էին՝ Դերբէնդը, Բագուն, Գիլանը, Մազանդարանը եւ Աստրապատը։ Հէնց այդ միջոցներում* (1722—1723) *օսմանցիք՝ տեսնելով ռուսների իրանց սահմաններին մօտենալը եւ մանաւանդ տեղեակ լինելով Պետրոս մեծի աշխարհակալական ձգտումներին դէպի արեւելք, գրաւեցին իրանց սահմանակից բոլոր պարսկական նահանգները։ Երկու տարուայ մէջ՝ մինը միւսից յետոյ տիրեցին նրանք ամբողջ Ատրպատականը, Նախիջեւանը, Երեւանը, Թիֆլիզը, Գանձակը եւ այլ պարսկական երկիրներ, մինչեւ հասան Ղարաբաղի մելիքների իշխանութիւններին։*

*Տեսնելով որ քայքայուած Պարսկաստանը բաժան-բաժան է դառնում, Ղարաբաղի մելիքները եւս մտածեցին մի մեծ պատառ իրանց ձեռքը ձգելու։ Մինչեւ այնոր*

մելիքները համարվում էին պարսից աւատական իշխանները, իսկ այժմ կամենում էին բոլորովին թօթափել պարսկական լուծը, եւ հայոց անկախ պետութիւն հիմնել։ Իրանց դիտաւորութիւնների մասին խորհելու եւ կարգադրութիւններ անելու համար նրանք գաղտնի ժողովներ էին կազմում Գանձասարի վանքում, նոյն ժամանակուայ Եսայի կաթողիկոսի նախագահութեամբ։

Այդ ժամանակներում Ղարաբաղի հինգ մելիքները հետեւեալ անձինքն էին.

1. Գիւլիստանում տիրում էր Մելիք-Բէգլարեան Մելիք-Աբով Բ-ը։

2. Ջրաբերդում տիրում էր Մելիք-Իսրայէլեան Մելիք-Եսային։

3. Խաչէնում տիրում էր Հասան-Ջալալեան Մելիք-Ալահվերդին։

4. Վարանդայում տիրում էր Մելիք-Շահնազարեան Մելիք-Յուսէինը։

5. Տիզակում տիրում էր Ղուկաս վարդապետի որդի Մելիք-Եգանը (Աւանը)։

## IV.

Ղարաբաղի մելիքների ձգտումները՝ իրանց հայրենիքում մի անկախ հայկական իշխանութիւն հիմնելու վերաբերութեամբ, նոր մտածութիւններ չէին։ Դեռ 1701 թուին նրանք ուղարկեցին Պետրոս մեծի մօտ որպէս պատգամաւոր Իսրայէլ Օրի անունով հնդկաստանցի հային Մինաս վարդապետի եւ մի քանի այլ անձինքների հետ։ Նրանք ներկայացան կայսրին Սմօլենսկի մէջ։ Այդ դեսպանութեան նպատակն այն էր, որ նրանք համոզէին կայս-

րին ընդունելու հայերին իւր պաշտպանութեան ներքոյ, եւ հայերը այն ժամանակ իրանց սեպհական ուժերով կը պատերազմէին պարսիկների հետ, կը թօթափէին իրանցից մահմեդական լուծը եւ կ՚ընդունէին իրանց վրայ ռուսաց քրիստոնեայ պետութեան հովանաւորութիւնը։ Իրանց հայրենիքի փրկութեան գործն առաջ տանելու համար Օրին յայտնեց, որ հայերն արդէն պատրաստած ունին Շամախու կողմերում 17 հազար զինուոր, Ղարաբաղում 60 հազար, իսկ Հայաստանի պարսկական 17 նահանգներից կարելի է հաւաքել աւելի քան 100 հազար հոգի։ Եւ եթէ կայսրի զօրքերն այդ կողմերը գան, հայերը յանձն են առնում իրանց ծախքով պահպանել նրանց։

Որպէս արեւելքի հետ լաւ ծանօթ մարդ, Օրին ցոյց տուեց կայսրին Հայաստանի քարտէզը, ծանօթացրեց նրան հայոց հին պատմութեան եւ թագաւորների[1] հետ, եւ բացատրեց այն օգուտները, որ կայսրը կարող էր ունենալ Հայաստանը իւր հովանաւորութեան ներքոյ առնելով։ Նա յայտնեց, որ ինքը դիմել է եւրոպական այլ պետութիւններին եւ արդէն ստացել է Աւստրիայի կայսրի ու Բաւարիայի կուրֆիւրստի հաճութիւնը՝ իրանց ուժերը միացնելու ռուսների հետ, Հայաստանի վերականգնման գործը յաջողեցնելու համար։

Մեծ կայսրի արծուի աչքերն իսկոյն նախատեսեցին այն մեծ շահերը, որ նա կարող էր քաղել՝ ձեռք առնելով մի ճարպիկ առեւտրական եւ միեւնոյն ժամանակ պատերազմող ժողովուրդ, որի հետ ծանօթ էր նա դեռ

---

[1] Մինչեւ այսօր Գանձասարի վանքի գրադարանում կարելի է տեսնել հայոց թագաւորների ձիթանկար պատկերների մնացորդները, որ պատրաստուեցան այն ժամանակ Եւրոպայի թագաւորներին ներկայացնելու համար։

իւր երիտասարդական հասակում[1]։ Նրա աշխարհակալական ցանկութիւնների համար դէպի արեւելք, նրա հեռաւոր նպատակների համար՝ կապելու Հնդկաստանը Ռուսաստանի հետ առեւտրական յարաբերութիւններով, հարկաւոր էին հմուտ միջնորդներ եւ լաւ առաջնորդներ, — այդ գործիչներին նա գտնում էր հայերի մէջ։ Այդ էր պատճառը որ նա խիստ սիրով ընդունեց հայոց պատգամաւորների առաջարկութիւնը եւ խոստացաւ չխնայել իւր օգնութիւնը հայերին՝ իրանց հայրենիքի վերաբերութեամբ ունեցած դիտաւորութիւնների իրագործելու համար։

Բայց արեւելքում մի վճռական գործ սկսելու համար Պետրոս մեծը ժամանակ չունէր, որովհետեւ նա զբաղուած էր շվեդական պատերազմով, որ այդ միջոցներում աւելի սաստիկ կերպով բորբոքուած էր։ Բացի դրանից նա հարկաւոր համարեց աւելի լաւ ծանօթանալ Պարսկաստանի նոյն ժամանակուայ դրութեան եւ քաղաքական հանգամանքների հետ։ Այդ մտքով Պետրոս մեծը կազմեց մի դեսպանութիւն, որի լիազօրը կարգուեցաւ նոյն իսկ Իսրայէլ Օրին[2], եւ ճանապարհ դրեց դէպի Պարսկաստան (1707) Շահ-Սուլթան-Յուսէինի մօտ։

Նրա ընկեր Մինաս վարդապետը մնաց Ռուսաստանում եւ շարունակում էր բանակցութիւնները Գանձասարի վանքի “Հայոց ժողովի„ կողմից ռուսաց արքունիքի հետ։

---

[1] Մեծն Պետրոսը արտասահմանում գտնուած ժամանակ Հոլանդիայում ծանօթացաւ Աբրօ անունով մի զմիւռնիացի վաճառականի հետ, որին յետոյ հրաւիրեց Ռուսաստանում առեւտուր անելու.

[2] Իսրայէլ Օրին այդ ժամանակ գնդապետի (պոլկովնիկ) աստիճան էր ստացել կայսրից։

Օրին իւր Պարսկաստանի ճանապարհորդութիւնը կատարեց Հայաստանի վրայով, անցաւ Շամախու, Ղարաբաղի, Նախիջեւանի կողմերով, որպէս զի աւելի մօտիկից տեսնէ հայոց պատրաստութիւնները, խրախուսէ նրանց եւ գրգռէ պարսից դէմ յօգուտ Ռուսաստանի։

Բայց չնայելով որ նրա դեսպանախումբը ծածկուած էր Հռոմի պապի դեսպանութեան անմեղ անունով, որ արեւելքում որեւէ քաղաքական շահեր ունել չէր կարող, այսուամենայնիւ մինչեւ Օրիի պարսից մայրաքաղաք համնելը, Շամախու կառավարիչ Մուսաբէկեան Ցիւսէինխանը[1] իմացում տուեց Շահին, որ այդ Օրին աշխատում է հայոց թագաւորութիւն հիմնել, պարսիկների իշխանութիւնը ոչնչացնել, եւայլն։ Այդ տեղեկութիւններն ստանալուց յետոյ Շահն այն աստիճան վրդովուեցաւ, որ մինչեւ անգամ չէր կամենում ընդունել պապի պատուակեալ դեսպանութիւնը։ Բայց Օրին մի լաւ քաղաքագէտի (դիպլոմատ) յատուկ ճարպկութեամբ կարողացաւ փարատել Շահի տարակուսանքները եւ Սպահանում փառաւոր ընդունելութիւն գտաւ։

Օրին մնաց Սպահանում մի քանի տարի։ Այդ միջոցներում նրան յաջողուեցաւ կատարել կայսրի զանազան յանձնարարութիւնները, յաջողուեցաւ հաւաքել նրա ցանկացած բոլոր տեղեկութիւնները եւ գաղտնի ուղարկել

---

[1] Այդ Ցիւսէին-խանն ազուլեցի էր, ազգով հայ, Մուսաբէկեան տանից։ Նրա մի եղբայրը, որ կոչվում էր Մէհմէդ-Ղուլիխան, նոյն ժամանակ Երեւանում պարսից փոխարքայ էր։ Այդ վերջինը մեծ տուգանքի ենթարկեց Ս. Էջմիածնի վանքը, երբ կասկածեց, որ Աստուածատուր կաթողիկոսը գաղտնի բանակցութիւններ ունի վրաց իշխանների հետ եւ կամենում է միանալ նրանց հետ Հայաստանը պարսից լծից ազատելու համար։ Առհասարակ մահմեդականութիւն ընդունած Մուսաբէկեան եղբայրները մեծ վնաս տուեցին հայոց ազատագրութեան գործին։

Ռուսաստան իւր ընկեր Մինաս վարդապետին, որ իւր կողմից ներկայացնում էր կայսրին։

Իւր դեսպանութեան խորհուրդը յաջողութեամբ կատարելուց յետոյ, Օրին վերադարձաւ Ռուսաստան, տանելով իւր հետ 200.000 ռուբլու արժէք ունեցող ընծաներ պարսից Շահի կողմից Պետրոս մեծին։

Կայսրը այնքան գոհ մնաց դեսպանի գործակատարութեան համար, որ խոստացաւ տալ նրան 40 հազար զինուոր իւր հայրենիքն ազատելու համար, իսկ նրա Պարսկաստանից բերած ընծաները հրամայեց գործ դնել պատերազմական ծախքերի վրայ։ Բայց Օրին ազնիւ մարդու յատուկ մեծահոգութեամբ հրաժարուեցաւ կայսրի ընծաներից, յայտնելով թէ հայերը կարօտութիւն ունին նրա ողորմածութեանը միայն, իսկ զօրքեր իրանք պատրաստ ունին, եւ որքան էլ հարկաւոր լինի, կարող են պատրաստել։

Բայց Ղարաբաղի մելիքները շուտով զրկուեցան այդ եռանդոտ հայրենասէրից, որովհետեւ Օրին, կայսրի մի այլ յանձնարարութեամբ Հաշտարխանից անցնելու ժամանակ, այնտեղ հիւանդացաւ եւ Հայաստանի վերականգման բոլոր ցանկութիւնները իւր հետ գերեզման տարաւ (1711)[1]։ Սակայն նրա սկսած գործը չմեռաւ։

## V.

Օրիի մահից յետոյ նրա ընկեր Մինաս վարդապետը շարունակեց նրա սկսած գործը։ Նա Ռուսաստանից չհեռացաւ եւ կատարում էր միջնորդի պաշտօն կայսրի եւ

[1] Օրիի մահից յետոյ Հաշտարխանի ռուս աստիճանաւորները կողոպտեցին նրա կայքը եւ սկսեցին զրպարտել նրան զանազան խարդախութիւնների մէջ։ Մեծ ջանք հարկաւոր եղաւ նրա ընկեր Մինաս վարդապետին, մինչեւ կարողացաւ ձեռք բերել յափշտակուած կայքի մի մասը եւ վերականգնել իւր հանգուցեալ ընկերոջ պատիւը։

Գանձասարի վանքի "Հայոց ժողովի" մէջ, ուր խմբվում էին խորհրդի համար Ղարաբաղի մելիքները։ Այդ եռանդոտ վարդապետը, թէև նշանակուած էր այն ժամանակ Ռուսաստանի հայոց արքեպիսկոպոս, բայց նա աւելի քաղաքական գործերով էր զբաղուած, քան թէ եկեղեցական։ Նա իւր գաղտնի գործակատարները տարածել էր Պարսկաստանի բոլոր նշանաւոր տեղերում, որոնք ամեն կողմից նրան տեղեկութիւններ էին հաղորդում[1]։ Նրա գործակատարներից ոմանք արժանացան կայսրի առանձին ողորմածութեանը[2]։

Այդ միջոցներին Պարսկաստանում հետըհետէ կատարուեցան 1721, 22, 23 թուերի անցքերը, որ նկարագրեցինք Գ-րդ գլխում։ Շահ-Սուլթան-Յուսէինը գահըընկէց եղաւ, աւղանները տիրեցին պարսից մայրաքաղաքին, օսմանցիք սկսեցին գրաւել իրանց սահմանակից պարսկական նահանգները։ Սէֆէվիների պետութիւնը իւր կատարեալ քայքայման վիճակի մէջն էր գտնվում, բայց ռուսները փոխանակ Հայաստանի վրայ ուշադրութիւն

---

[1] Այդ գործակատարներից մէկն էր Սարգիս Գիլանենցը, որի հետաքրքիր օրագրութիւնը՝ Պարսկաստանի այն ժամանակուայ անցքերի վերաբերութեամբ տպուեցաւ "Կռունկ" ամսագրում։ Իսկ 1870 թուին պրոֆեսոր Ք. Պատկանեանը ռուսերէն թարգմանելով, որպէս հարուստ պատմական նիւթ, ներկայացրեց Ս. Պետերբուրգի կայսերական ակադեմիային։

[2] Դրանցից մէկն էր Նաւասարդ անունով մի հայ, որի մատուցած ծառայութիւնների համար երբ կայսրը կամեցաւ վարձատրել նրան, Նաւասարդին գտան Պարսկաստանում վախճանուած, առանց ժառանգ անդամ թողնելու։ Մնացել էր միայն Ղազար անունով մի հայ, որ ծառայում էր հանգուցեալի մօտ եւ ծանօթ էր նրա գործերի հետ։ Կայսրը կանչել տուեց այդ Ղազարին եւ արժանացրեց զօրապետի (գեներալ) աստիճանի։ Դա միեւնոյն զօրապետ Ղազար Խրիստափորովիչն էր, որ հայերից կազմուած մի առանձին զօրախմբի հրամանատար դառնալով, բաւական նշանաւոր գործեր կատարեց Պետրոս մեծի պարսկական արշաւանքների ժամանակ։ Յետոյ (1736) իւր զօրքով եւ հայ սպաներով (օֆիցէր) տեղափոխուեցաւ Ղզլար։

դարձնելու, տիրում էին Կասպից ծովեզերեայ պարսկական գաւառները։

Մելիքները կրկին սկսեցին դիմել դէպի ռուսաց արքունիքը։ Նրանց պատուիրակները, որպէս էին՝ Յովհաննէս երէցը, Տէր-Անտօնը, Տէր-Պետրոսը, Չելէբի-քեօխվան, Սիմօն Պարոնը, անդադար դիմում էին դէպի Ռուսաստան եւ Մինաս վարդապետի միջնորդութեամբ հայոց մելիքների, Եսայի եւ Ներսէս կաթողիկոսների խնդիրքները ներկայացնում էին կայսրին։ Պետրոս մեծը միշտ պատասխանում էր նրանց իւր ամենաողորմած խոստմունքներով, խորհուրդ էր տալիս սպասել, յուսադրելով, թէ նրանց բոլոր բաղձանքները կատարուած կը լինին։ Այդ բանակցութիւնները տեւեցին մի քանի տարի։ Եւ որովհետեւ Վրաստանն էլ այդ ժամանակ միեւնոյն դրութեան մէջն էր ինչպէս Հայաստանը, այսինքն օսմանցիք այնտեղ էլ էին տիրել, այդ պատճառով վրացիները եւս հայերի նման միեւնոյն խնդիրքներով դիմում էին կայսրին։ Վերջը հայերը պատասխան ստացան, որ իրանց ուժերը միացնեն վրացիների հետ եւ սպասեն մինչեւ այն ժամանակ, երբ կայսրը ինքն անձամբ ռուսաց զօրքերով կը գայ պարսկական նոր գրաւած երկրները տեսնելու համար, — այն ժամանակ հայերը եւ՝ վրացիները, միանալով ռուսաց զօրքերի հետ, կարող են սկսել ապստամբութեան գործը։

## VI.

Վերջին խոստմունքը սաստիկ ուրախութիւն պատճառեց թէ՛ հայերին եւ թէ վրացիներին։ Երկու վիճակակից քրիստոնեայ ազգեր՝ ձեռք ձեռքի տուած քրիստոնեայ մեծ կայսրի պաշտպանութեան ներքոյ, պիտի պատերազմէին

*մահմեդական բռնակալութեան դէմ, պիտի կռուէին իրանց հայրենիքի փրկութեան համար։*

*Ղարաբաղի մելիքներն այդ ժամանակ դիմեցին վրաց Թագաւոր Գիօրգի-Շահնաւազին, խնդրելով որ տայ իրանց մի հմուտ եւ ընդունակ զօրավար հայոց զօրքերին առաջնորդելու համար։ Թագաւորն ընտրեց հայազգի իշխան Դաւիթ-բէկին[1], որ այդ ժամանակ վրաց ծառայութեան մէջ էր գտնվում։ Դաւիթ-բէկն եկաւ Ղարաբաղ (1722) եւ ժողովից մինչեւ 60 հազար զօրք, որոնց վրայ զօրապետներ կարգեց Մելիք-Աւան-խանին (Մելիք-Եգանին) եւ Աւան-Միրզային (Աւան-իւզբաշուն), իսկ ինքը իւր գլխաւոր զօրաբաժնի հետ գնաց դէպի Ղափանի նահանգը, Զանգուր կոչուած տեղը, որ իշխանի հայրենիքն էր։*

*Պետրոս մեծի նոր արշաւանքի նշանաւոր պատրաստութիւնները դէպի Պարսկաստան մի կողմից, եւ Դաւիթ-բէկի գործողութիւնները միւս կողմից, առիթ տուին Էրզրումի օսմանցոց փաշային բէկից բացատրութիւններ պահանջել Ղարաբաղի հայ զօրքերի հաւաքման մասին։ Գործն այն աստիճան ակներեւ ձեւ էր ստացել եւ ռուսների խոստմունքներն այն աստիճան անկասկած էին համարվում, որ Դաւիթ-բէկը, որքան էլ ցանկանար, ծածկել չէր կարող։ Նա համարձակ պատասխանեց, թէ այդ բոլորը կատարւում է Թագաւոր Պետրոս մեծի հրամանով. այն ժամանակ օսմանցիները փութապէս սկսեցին գրաւել իրանց սահմանակից պարսկական երկրները եւ տիրեցին Երեւանից սկսած մինչեւ Թարվէզ, որպէս զի արգելք դնեն մեծ Թագաւորի արշաւանքի յաջողութիւնների դէմ։*

[1] *Դա միեւնոյն անձնաւորութիւնն է, որ մեր «Դաւիթ-բէկ» անունով վէպի մէջ ներկայանում է որպէս հերոս։*

Դաւիթ-բէկը եւ հայոց միւս մելիքները, — տեսնելով օսմանցոց ուժերի մօտենալը, որ իրանց նպատակներին միանգամայն վտանգ էր սպառնում, — շուտով այդ մասին տեղեկութիւն տուին Պետրոս մեծին, խնդրելով որ չուշանայ, այլ փութացնէ իւր արշաւանքը: Կայսրն այս անգամ չուշացաւ. Նա իսկոյն հրամայեց իւր զօրքերին (թւով 30.000) յառաջ խաղալ դէպի պարսից սահմանը, իսկ ինքը, զօրքերի ճանապարհ ընկնելուց յետոյ, անձամբ գնաց Դերբէնդ (1722 թ. օգոստոսի 23):

Մինչեւ Պետրոս մեծի Դերբէնդ հասնելը, հայերն ու վրացիները, առաջուց բանակ դրած Գանձակ քաղաքի մօտ, սպասում էին ընդունելու կայսրին: Վրաց զօրքերը գտնվում էին Շահնաւազ-Գիօրգիի երկրորդ յաջորդ Վախթանգի հրամանատարութեան ներքոյ, իսկ հայոց զօրքերը Դաւիթ-բէկի հրամանատարութեան ներքոյ: Երկու կողմերի զօրքերի թիւը հասնում էր 52.000 հոգու: Հայոց բանակի մէջ գտնվում էր հայոց շարժման պարագլուխ Գանձասարի Եսայի կաթողիկոսը[1]: Բայց այդ փառաւոր պատրաստութիւնը՝ թէ հայոց եւ թէ վրաց կողմից, մնաց անգործադրելի, որովհետեւ յանկարծ մի տխուր

[1] Այդ երեւելի հոգեւորականը, որ իւր ժամանակի անցքերի ոչ միայն ականատեսը, այլեւ գլխաւոր գործիչն էր, օրագրութեան ձեւով գրեց բոլոր անցքերի մանրամասն եւ ընդարձակ պատմութիւնը: 1839 թուին Բաղդասար մետրապօլիտը Շուշի քաղաքում տպագրել տուեց այդ պատմութիւնը, բայց սաստիկ համառօտած եւ անխնայ կերպով կրճատած: Մենք այժմ աւելորդ ենք համարում բացատրել, թէ ինչ նպատակով է կատարել հանգուցեալ մետրապօլիտը այդ գրականական սպանութիւնը, միայն այսքանը կ'ասենք, որ Եսայի կաթողիկոսի պատմութեան իսկականը շատ ընդարձակ է եղել, ինչպէս երեւում է այդ մեր ձեռքը հասած մի գրչագիր օրինակից, որ դժբաղդաբար կիսով չափ փտած է: Ցանկալի կը լինէր, որ գտնուէր այդ աշխատութեան ամբողջը, եւ դա առատ նիւթ կը տար մեր նոր պատմութեան:

լուր ստացուեցաւ, որ կայսրը Դերբէնդից վերադարձել է Հաշտարխան եւ այնտեղից Ռուսաստան։

Կայսրի անակնկալ վերադարձի պատճառները բացատրում էին նրանով, որ մրրիկը Կասպից ծովի վրայ մեծ մասամբ ոչնչացրեց նրա նաւերը, որոնք զօրքերի համար պաշար էին կրում. եւ կայսրը վախեցաւ իւր զօրքերի սովամահ լինելուց, եթէ նրանց դուրս բերէր Հայաստանի կողմերի ցամաքի վրայ։ Բայց այսքանը ճիշտ է, որ նա Հաշտարխանից ուղարկեց մի քանի գունդ, որոնք գնդապետ Շիպովի եւ զօրապետ Մատիւշկինի առաջնորդութեամբ ոտք կոխեցին Կասպից ծովի հարաւային եզերքի վրայ եւ գրաւեցին մի քանի պարսկական գա[illegible]ներ, որպէս էին՝ Գիլանը, Մազանդարանը, Աստրապատը եւ Բագուն։

Հայոց եւ վրաց զօրքերը՝ տխուր, սրտաբեկ, խաբուած իրանց յոյսերի մէջ, վերադարձան իրանց տեղերը։ Վախթանգը գնաց Թիֆլիզ եւ աղէտալի դէպքերի պատահեց[1], իսկ Դաւիթ-բէկը դիմեց դէպ՝ Սիւնեաց աշխարհը։

## VII.

Այդ անյաջողութիւնը սաստիկ վատթարացրեց հայերի սկսած գործը։ Մինչեւ այնօր նրանք պարծենում էին

[1] Նազար-Ալի-խանի (Հերակլ Ա) որդի Մահմադ-Ղուլի-խանը (Կոստանդին Բ), որ իւր հօր եւ եղբօր Իմամ-Ղուլի-խանի (Դաւիթ Գ) նման մահմեդականութիւն ընդունելով, ստացել էր պարսից շահից Կախէթիայի իշխանութիւնը, — այդ չարագործը, դիմեց լէզգիներ՝ գլխաւոր Ալի-սուլթանին, խոստանալով նրա զօրքերի իւրաքանչիւրին 3 թուման վարձ տալ, եթէ նրանք կ'օգնեն իրան Թիֆլիզին տիրելու եւ Վախթանգին սպանելու գործում։ Լէզգիները կատարեցին նրա խնդիրքը. Թիֆլիզը գրաւեցին, եւ Վախթանգը փախաւ դէպի Իմերէթիայի կողմերը։ Բայց Մահմադ-Ղուլի-խանը չկարողանալով վճարել իւր խոստացած վարձատրութիւնը, թոյլ տուեց որ լէզգիները դրա փոխարէն կողոպտեն Թիֆլիզը, եւ ամբողջ քաղաքը բարբարոսների աւարառութեան զոհ դարձաւ։

ռուսներով, սպառնալիքներ էին կարդում մահմեդականներին մեծ Թագաւորի անունով, բայց հենց որ մահմեդականները նկատեցին, թէ այդ բոլորը երեւակայական ցնորք էր, սկսեցին աւելի կատաղութեամբ բռնանալ քրիստոնեաների վրայ։

Հէնց միեւնոյն ժամանակ (1723), երբ ռուսները տիրեցին պարսից ծովեզերեայ գաւառները, օսմանցիք սկսեցին յառաջ խաղալ դէպի Հայաստանի խորքը։ Տիրելով Նախիջեւանը, Երեւանը, Թիֆլիզը եւ Գանձակը, նրանք հասան Ղարաբաղին։

Սարի-Մուստաֆա փաշան, որ դէպի Ղարաբաղի կողմերն ուղարկուած օսմանցոց գունդերի հրամանատարն էր, նստել էր Գանձակ քաղաքում եւ իր զօրքերը տարածել էր դէպի ամեն կողմ։ Հայոց մելիքներն այժմ տարակուսելով տեսան, որ թուլացած, ուժից ընկած պարսիկների փոխարէն յայտնուեցաւ մի նոր եւ աւելի զօրաւոր թշնամի, որ կարող էր ոչնչացնել իրանց բոլոր յոյսերը։

Նրանք իրանց դաշնակից Վախթանգի[1] հետ փորձեցին երրորդ անգամ դիմել կայսրին՝ օգնութիւն խնդրելով օսմանցիների դէմ։ Բայց կայսրն այդ ժամանակ այլեւս վերականգնելու Հայաստանի անկախութեան վրայ չէր մտածում, այլ մտածում էր աւելի նրա վրայ, որ իր նոր գրաւած պարսկական ծովեզերեայ երկրները՝ Գիլանը եւ Մազանդարանը բնակեցնէ մի քրիստոնեայ եւ հաւատարիմ ժողովրդով, որպէս էին հայերը։ Այդ ժողովրդի ընտիր զօրապետները իրանց հայկական գունդերով նստա-

[1] Թիֆլիզը գրաւուած լինելով օսմանցիներից, Վախթանգը այդ ժամանակ հալածուած էր իր հայրենիքից եւ գտնվում էր Իմերէթիայի կողմերում, յետոյ բոլորովին յուսահատուած իր ընտանիքով գնաց Մոսկուա (1724)։

տեցին Նրան յիշեալ երկրները տիրապետելու ժամանակ, այդ ժողովրդից դուրս եկած խելացի քաղաքագէտները ճանապարհ ցոյց տուին Նրան, առաջնորդեցին եւ համարեա առանց պատերազմի գրաւուեցան յիշեալ երկրները, — այժմ կայսրը ցանկանում էր, որ նոյն ժողովուրդը թողնէր իւր սիրելի հայրենիքը, որի վերածնութեան մասին այնքան ոգեւորուած էր, եւ գաղթէր մի անծանօթ եւ հեռու աշխարհ։ Այդ ժողովուրդը պէտք էր այդ նոր աշխարհի համար. նա հաւատարիմ էր, հլու էր եւ՝ որ գլխաւորն է, նրա ձեռքում էր արեւելքի վաճառականութիւնը, եւ նրա միջոցով մեծ կայսրը կարող էր իրագործել իւր մեծ նպատակները՝ արեւելքի վաճառականութիւնը կապել Եւրոպայի հետ Ռուսաստանի վրայով եւ իւր պետութեանը մի նոր կեանք տալ։

Բայց որպէս հայերը, նոյնպէս եւ վրացիները չէին դադարում կայսրի պաշտպանութիւնը խնդրել իրանց հայրենիքի փրկութեան համար։ Նրանք աւելի բարւոք էին համարում մնալ իրանց հայրենիքում, միայն ազատ լինել մահմեդական լծից։

Իսկ այդ միջոցներում կատարուեցան մի քանի դիպլոմատիկան կապակցութիւններ, որոնք իսպառ զրկեցին թէ՛ հայերին եւ թէ վրացիներին իրանց բաղձանքներից։

Հէնց նոյն ժամանակ, երբ կայսրը Հաշտարխանից վերադարձաւ Ս. Պետերբուրգ (1723 թ. 3 սեպտեմ.), այնտեղ եկաւ Շահ-Թահմազի[1] դեսպանը, ռուսաց եւ պարսից մէջ խաղաղութեան դաշն կապուեցաւ, որի հիման վրայ պարսիկները թողեցին ռուսների տիրապետութեան ներքոյ Դերբէնդ եւ Բագու քաղաքները, այլեւ

[1] Շահ-Թահմազը Շահ-Սուլթան-Յուսէինի որդին էր։

Գիլանի, Մազանդարանի եւ Աստրաբատի նահանգները, իսկ կայսրը իւր կողմից պարտաւորուեցաւ զօրք ուղարկել Շահ-Թահմազին օգնելու համար աւղանների եւ օսմանցիների դէմ։ Թէեւ այդ դաշնագրին վերջը չստորագրեց Շահը, այսուամենայնիւ, օսմանցիները սաստիկ վրդովուեցան, երբ նկատեցին ռուսների միջամտութիւնը պարսից գործերի մէջ։ Բայց կայսրը հանգստացրեց նրանց, Բ. Դրան հետ կապած իւր դաշնադրութեամբ (1724 թ. 12 յունիսի), որի հիման վրայ համաձայնուեցաւ, որ օսմանցիք տիրէին Վրաստանին, ստորին Դաղստանին, եւ հայոց նահանգներին, որպէս էին՝ ամբողջ Ատրպատականը, Նախիջեւանը, Երեւանը, Գանձակը, Ղարաբաղը, եւայլն, մինչեւ Շիրվանի մի մասը։ Այդ դաշնադրութեան զօրութեամբ այնուհետեւ իզուր էին հայերի յոյսերը Ռուսաստանից օգնութիւն սպասել, որովհետեւ որքան էլ ցանկանային ռուսները, չէին կարող օգնել։

Այդ էր պատճառը, որ երբ հայոց կաթողիկոսները եւ մելիքները կրկին եւ կրկին անգամ դիմեցին Պետրոս Մեծին, իւր հրովարտակով (1724 թ. 10 նոյեմ.) կայսրը բարեհաճեց հայերին ընդունել իւր բարձր հովանաւորութեան ներքոյ, եւ ամենաողորմածաբար հրամայեց Դերբէնդի բերդապահ գեներալ Կրօպոտովին, որ հայերին բնակութեան տեղ տայ Սուրբ Խաչ բերդի մօտ, Սուլակու, Ագրախանա եւ Թերէք գետերի ափերի մօտ։ Միեւնոյն ժամանակ կայսրի կանցլէր գրաֆ Գաւրիլօ Գօլովկինը գաղտնի հրահանգներ է ուղարկում իրանց նոր գրաւած պարսկական նահանգների կառավարիչներին, որ համոզեն հայերին թողնել իրանց հայրենիքը եւ գաղթել Կասպից ծովեզերեայ երկրները, որպէս էին Գիլանը եւ Մազանդարանը, որովհետեւ օսմանցոց Բ. Դրան հետ

կնքած դաշնագրի պատճառով կայսրը չէ կարող օգնել հայերին, քանի որ նրանք իրանց հայրենիքումը կը մնան։ Դեռ դրանից առաջ Կասպից ծովեզերքի կառավարիչ գեներալ Մատյուշկինը հրաման էր ստացել, որքան կարելի է աննկատելի կերպով աշխատել մաքրելու Գիլանը եւ Մազանդարանը մահմեդականներից, հանդարտ կերպով ոչնչացնելով նրանց, որպէս զի յետոյ կարելի լինի նրանց տեղը լցնել հայ գաղթականներով։

Բայց Պետրոս մեծի վաղահաս մահը (1725 թ. 28 յունիսի) թողեց Ղարաբաղի հայերի գաղթականութեան խնդիրն անկատար։ Կայսրի մահից յետոյ ռուսաց գահ բարձրացաւ նրա ամուսինը՝ Եկատերինա Ա. որի թագաւորութեան ժամանակ հայերի վիճակն աւելի ծանրացաւ։

Թէեւ Պետրոս մեծը չկարողացաւ իւր կողմից օգնել հայերին մահմեդականների դէմ, այսուամենայնիւ մեծ թագաւորի մահուան բօթը հայերին սուգի մէջ ձգեց։ Հայոց Եսայի եւ Ներսէս կաթողիկոսները եւ Ղարաբաղի մելիքները Դերբէնդից ուղարկեցին մի պատգամաւորութիւն կայսրուհի Եկատերինա Ա-ինի մօտ՝ յայտնելու իրանց խորին ցաւակցութիւնը։ Այդ պատգամաւորութեան գլխաւորներն էին Իւզբաշի Բաղին, Չելէբի քեօխվան եւ ուրիշ նշանաւոր անձինք։ Նրանք միեւնոյն ժամանակ յայտնեցին, որ Սարի-Մուստաֆա փաշան 40 հազար հոգով յարձակուեցաւ Ղարաբաղի վրայ, եւ հայերը ութն օր յուսահատ կերպով պատերազմելով, հազիւ կարողացան յաղթել օսմանցիներին։ Պատգամաւորներն աւելացրին, թէ հայերին դժուար կը լինի երկար պաշտպանուել, եթէ նրանց օգնութիւն չհասնի։

Կայսրուհին իւր հրովարտակով (1726 թ. 21 փետրուարի) բարեհաճեց արտայայտել իւր ողորմածութիւնը

եւ համակրութիւնը դէպի հայերը, իսկ ինչ որ գործին էր վերաբերում, գրուեցաւ, որ Չելէբի քեօխվան բերանացի կը հաղորդէ։

Հայոց պատգամաւորներին պատուիրած էր հաղորդել Ղարաբաղի ապստամբներին, որ նրանք հաստատ մնան իրանց ապստամբութեան շարժման մէջ, շարունակեն իրանց կռիւները մահմեդականների դէմ, շուտով նրանց օգնութեան կը հասնեն վրաց Վախթանգ իշխանը եւ գեներալ Դոլգորուկի իշխանը։

Այնուհետեւ հայերը մի քանի անգամ կրկնեցին իրանց խնդիրները, բայց ոչ ոք նրանց օգնութեան չհասաւ, ուստի ստիպուած էին իրանց սեպհական ուժերով պատերազմել թշնամու դէմ։ Բայց երեւի հայերին վիճակուած չէր մի լաւ օր տեսնել, որովհետեւ Աննա Իվանովնա կայսրուհու թագաւորութեան ժամանակ (1732) յայտնուեցաւ սարսափելի Նադիրը եւ Պարսկաստանում նշանաւոր փոփոխութիւններ կատարուեցան, որոնք մեծ ազդեցութիւն ունեցան հայերի սկսած գործի ապարդիւն մնալու վրայ։

## VIII.

Նադիրը[1] յայտնուեցաւ այն ժամանակ, երբ, որպէս տեսանք, Պարսկաստանը բաժան-բաժան էր եղած եւ պարսից գահի վրայ նստում էին օտարները։ Պարսկաստանի մի մասին տիրում էին աւղանները, մի մասը գրաւել էին ռուսները, իսկ պարսկական Հայաստանը, Վրաս-

[1] Նադիրը կոչվում է եւ Թահմազ-Ղուլի-խան. Նա սկզբում մի հասարակ աւազակապետ էր, ասպատակութիւններ էր գործում Խորասանի անապատներում. յետոյ Շահ-Թահմազի մօտ զօրապետ եւ ապա ընդհանուր սպարապետ դարձաւ. վերջը Շահ-Թահմազին սպանել տալով, ինքը թագաւոր եղաւ։

տանը եւ մի քանի այլ նահանգներ օսմանցիների ձեռքումն էին։

Նադիրը յայտնուեցաւ ինչպէս մի կատաղի փոթորիկ, որ զօրաւոր ձեռքով նախ մաքրեց Պարսկաստանն աւղաններից, տիրեց Հնդկաստանի մի մասին, յետոյ իւր սուրը դարձրեց օսմանցիների դէմ։ Նրա զարմանալի յաջողութիւնները նոր ոյժ, նոր խրախոյս ներշնչեցին Ղարաբաղի Հայոց մելիքներին։ Այդ վերջիններն սկսեցին իրանց սեպհական ուժերով մաքրել իրանց հայրենիքը օսմանցիներից։

Այդ ժամանակ օսմանցիների սերասկէր (գլխաւոր հրամանատար) Սարի-Մուստաֆա փաշան իւր գլխաւոր բանակով զետեղուած էր Գանձակ քաղաքում, իսկ մնացած զօրքերը տարածել էր Ղարաբաղի մելիքների երկրներում։ Մելիք-Աւանը, որ բոլոր միւս մելիքների գահերէցն էր, օգուտ քաղելով փաշայի դէպի ինքն ունեցած բարեկամական յարաբերութիւններից, եւ առերես հնազանդութիւն ցոյց տալով, գաղտնի կերպով մի մեծ դաւադրութիւն սարքեց։ Ղարաբաղի բոլոր մելիքները միաբանուեցան նրա հետ։ Ապստամբութեան նշանաբանը բովանդակվում էր հետեւեալ խօսքերի մէջ. «պահպանեցէք հին սերմերը, որպէս բունելու յոյս տուողներ, եւ ոչնչացրէք նորը, որ պտուղ չէ խոստանում». այսինքն՝ խնայել պարսիկներին եւ կոտորել օսմանցիներին։ Կոտորածը պէտք է կատարուէր մեծ պասի առաջին գիշերուայ մէջ։ Այդ Բարթօլոմէեան գիշերում հայերը ոչնչացրին թէ Ղարաբաղի եւ թէ Գանձակի կողմերում գտնուած բոլոր օսմանցի զօրքերին։ Զմեռուայ ցրտի պատճառով զինուորները հայերի տներումն էին բնակվում։ Ամեն մի տանտէր սպանեց իւր ինքնակոչ հիւրին։ Սարի-Մուստաֆա փաշան հազիւ կարողացաւ ազատուել, փախչելով

Երեւան։ Այդ յիշատակի արժանի անցքը կատարուեցաւ 1733 թուին։

Որպէս մի փոքրիկ միջադէպ, ես աւելորդ չեմ համարում նկարագրել մի դէպք, որ նոյն գիշերը տեղի ունեցաւ Վարանդայի Աւետարանոց գիւղում։ Դրա մէջ փայլում է հայ կնոջ հերոսութիւնը։ Աւետարանոցը Վարանդայի մելիքութեան բերդաւանն է։ Այստեղ իւր զինուորներով զետեղուած էր օսմանցիների զօրապետներից մէկը, որ կոչվում էր Սուլէյման-բէկ։ Դա լսելով տեղային մելիք-Յուսէինի դստեր՝ Գայիանէի գեղեցկութիւնը, մտածում է տիրապետել նրան։ Բայց չհամարձակելով յայտնի բռնութիւն գործ դնել, առաջարկում է ամուսնանալ Գայիանէի հետ։ Հայրն ու մայրը անպատկառ մահմեդականին միամտացնելու համար խոստանում են տալ աղջիկը, բայց միշտ յետաձգում են, յայտնելով թէ հայերի ազգային եւ կրօնական սովորութիւնների համեմատ պէտք է դեռ եւս այս եւ այն ծէսերը կատարուած լինին։ Այսպէս օրըստօրէ ժամանակ են խլում, մինչեւ հասնում է նշանակեալ գիշերը։ Սկսվում է կոտորածը։ Մելիք-Յուսէինը այն գիշերը տանը չէ լինում. նա գնացել էր իւր գաւառի միւս տեղերում գործելու համար։ Աւետարանոցի կոտորածին առաջնորդում էր նրա քաջասիրտ կինը՝ Աննա-խաթունը[1]։ Երբ այդ զինուած հերոսուհին աւանի փողոցների մէջ կոտորել էր տալիս օսմանցիներին, այդ միջոցին նրա ինքնակոչ փեսացուն՝ Սուլէյման-բէկը, իւր կեանքն ազատելու համար, փախչում է դէպի Աննա-խաթունի տունը։ Նոյն րոպէում Գայիանէն, նոյնպէս զինուած, կանգնած է լինում տան դռան մօտ։

[1] Աննա-խաթունը Տիզակի գաւառի Մելիք-Աւանի (Մելիք-Եգանի) քոյրն էր. նոյն անձի, որ սարքեց ընդհանուր ապստամբութիւնը։

Տեսնելով իւր ատելի փեսացուին ներս մտնելիս, օրիորդը իւր խէնջարը խրում է նրա սրտի մէջ...: Այդ սպանութիւնից յետոյ Գայիանէն իւր անձը նուիրեց կուսակրօնութեան եւ մտաւ Աւետարանոց գիւղի կուսանաց անապատը[1]:

Աննա-խաթունի եւ Գայիանէի քաջագործութեան յիշատակը պահպանուած է միայն ժողովրդական աւանդութեան մէջ, իսկ Մելիք-Յուսէինի յիշատակը մնում է արձանագրուած իւր գերեզմանաքարի վրայ, որ գտնվում է Աւետարանոց բերդի կուսանաց անապատի գաւթում[2]:

Ղարաբաղի մելիքների կռիւները օսմանցիների հետ մի մեծ տեղ են բռնում այդ ժամանակի պատմութեան մէջ, որ դեռ եւս ոչ ուսումնասիրուած է եւ ոչ տպագրուած: Մենք այժմ այսքանը միայն կ'ասենք, որ հայերը սրի ուժով մաքրելով իրանց հայրենիքը օսմանցիներից, բաւական հեշտացրին Նադիրի յաղթութիւնները օսմանցիների դէմ, եւ պարսիկ սպարապետը թագաւոր դառնալուց յետոյ, որպէս կը տեսնենք, չմոռացաւ հայոց մելիքների ծառայութիւնները. Նա աւելի երախտահատոյց գտնուեցաւ, քան թէ քրիստոնեայ կայսրները:

Մինչ Ղարաբաղում հայոց մելիքները ջարդում էին օսմանցիներին, հէնց միեւնոյն ժամանակներում Սիւնեաց

---

[1] Իմ 1881 թուի ճանապարհորդութեան ժամանակ Աւետարանոց գիւղում ինձ յաջողուեցաւ տեսնել մի հրաշալի գրչագիր աւետարան, որ գրուած էր նոյն Գայիանէի ձեռքով:

[2] "Այս է տապան Մելիք-Շահնազարի որդի Մելիք-Յուսէինին. թվ. ռ. ճ. ձ. ե. 1185 (1736):

"Ոգեմ բանս գովեստի ի վերայ Մելիք-Յուսէինի. զոր գրեցի այս տապանի. սա էր տէր երկրին Վարանդի. երեսուն եւ հինգ մասն գեղի. սա էր հացով սեղանով լի. ողորմէր ամեն ազգի. կերպարանօք էր գովելի. սա ոչ ետ հարկ թագաւորի. ամուր պարիսպ էր աշխարհի. թագ պարծանք հայոց ազգի. պատերազմեաց հետ օսմանցի. յոյժ կոտորեաց ազգէն տաճկի":

իշխան Դաւիթ-բէկը Ղափանի կողմերում հրաշքներ էր գործում։ Մահմեդական տիրապետողների բերդերը մինը միւսից յետոյ ընկնում էին նրա ահեղ զօրութեան առջեւ։ Հալիձորի բերդի պաշարման ժամանակ մի բուռն քաջերով ցրուեց նա օսմանցիների աւելի քան քսան հազար զօրքը[1]։ Ղափանը, Բարգիւշատը, Զանգեզուրը, Գենուազը եւ Գողթանը բոլորովին մաքրեց օսմանցիներից. խլեց նրանցից Մեղրի եւ Օրդուբատ քաղաքները։ Այդ բոլորը լսելով պարսից Շահ-Թահմազը[2], թէ որքան նա օգնեց իրան, պատերազմելով թշնամիների հետ, վարձատրեց քաջի յաղթութիւնները՝ զանազան արտօնութիւններ շնորհելով Դաւիթ-բէկին։ Նա ուղարկեց բէկին մի դրօշակ, մի պատուական նժոյգ եւ թագաւորական ֆիրմանով հաստատեց, որ նա ժառանգաբար իւր տիրած երկրների տէրը եւ իշխանաց իշխանը լինի. նա իրաւունք տուեց բէկին իւր անունով դրամ կտրելու։ Բայց յանկարծակի մահը թոյլ չտուեց այդ հերոսին երկար վայելելու իւր յաղթութիւնների փառքը...։ 1728 թուին դաւաճանի թոյնը նրան գերեզման տարաւ։ Միեւնոյն տարուայ մէջ մեռան Ղարաբաղի երեք նշանաւոր գործիչները՝ Մելիք-Բէգլարեան Աբով Բ-ը, Մելիք-Իսրայէլեան Մելիք-Եսային եւ Գանձասարի Եսայի կաթողիկոսը։ Մելիք-Աբովին յաջորդեց իւր որդի Մելիք-Յուսուբը, Եսայի կաթողիկոսին յաջորդեց Երից-մանկանց վանքի Ներսէս կաթողիկոսը, իսկ Մելիք-Եսայուն յաջորդեց իւր եղբայր Ալահ-Ղուլին, որ իւր քաջագործութիւնների համար

---

1 Պատմութեան մէջ 70 հազար է նշանակուած. այդ թիւը չափազանց է։

2 Պէտք չէ մոռանալ, որ մինչեւ Շահ-Թահմազի սպանուիլը, Նադիրը շահի սպարապետն էր։ Շահի մահից յետոյ նա թագաւոր դարձաւ։

Նադիրից ստացաւ սուլթանութեան տիտղոս եւ կոչուեցաւ Աբաս-Ղուլի-սոլթան։

Նադիրը, յաջողութեամբ առաջ տանելով իւր արշաւանքները, մի քանի տարուայ մէջ հետզհետէ խլեց այն բոլոր պարսկական նահանգները, որ օտարները եւ օսմանցիները տիրել էին — Ատրպատականը, Նախիջեւանը, Երեւանը, Վրաստանը, Գանձակը, եւայլն։ Նրա յաջողութիւնները երկիւղի մէջ դրին մինչեւ անգամ ռուսաց կառավարութեանը, որ առանց պատերազմի, Աննա Իվանովնա կայսրուհու օրերում (1732—1735) վերադարձրեց Նադիրին Պետրոս Մեծի գրաւած բոլոր պարսկական գաւառները — Գիլանը, Մազանդարանը, Աստրաբադը, Բագուն եւ Դերբէնդը։

Իւր յաջողութիւնները փառաւոր կերպով կատարելուց յետոյ, 1736 թ. ձմեռը, Նադիրը բանակ դրեց Երասխ գետի մօտ, Մուղանի լայնատարած անապատում։ Այնտեղ կանչուած էին Պարսկաստանի բոլոր նահանգապետները, այնտեղ էր Կախէթիայի վալին՝ Իմամղուլիխանի (Դաւիթ Գ.) որդի մահմեդականացած Ալի-Միրզախանը. այնտեղ հրաւիրուած էր Ս. Էջմիածնի Աբրահամ կաթողիկոսը[1] եւ Ղարաբաղի Ներսէս կաթողիկոսը. այնտեղ էին Ղարաբաղի, Նախիջեւանի, Երեւանի հայոց բոլոր մելիքները եւ քալանթարները. այնտեղ էր Թիֆ-

[1] Այդ Աբրահամ կաթողիկոսը, որ կոչւում էր Կրետացի, վայելում էր Նադիրի առանձին սէրը եւ համակրութիւնը։ Պարսից քաջ զօրապետը նրա մօտ հիւր եղաւ Ս. Էջմիածնի վանքում, եւ իւր արշաւանքների ժամանակ, Հայաստանի եւ Վրաստանի կողմերում, նրան չէր հեռացնում իւր բանակից։ Այդ հեշտացրեց կաթողիկոսին աւելի մօտից ծանօթանալ նրա գործողութիւնների հետ եւ օրագրութեան ձեւով թողեց մեզ մի հետաքրքիր պատմութիւն, որ կոչւում է "Աբրահամ կաթողիկոսի Կրետացւոյ պատմագրութիւն անցիցն իւրոյ եւ Նադիր-Շահին պարսից", տպուած Ս. Էջմիածնում 1870 թ.

*լեզէ իշխան Մելիք-Աշխալ-բէկի որդի Աղա-բէկը (իշխան Բեհբուդեանների պապը), որ մասնակցեց Նադիրի հնդկական արշաւանքներին։*

*Նոյն տարուայ փետրուար ամսում, Մուղանի անապատում, կատարուեցաւ Նադիրի թագադրութեան հանդէսը. Հայոց Աբրահամ կաթողիկոսը օրհնեց նրա սուրը եւ իր ձեռքով կապեց պարսից նոր թագաւորի մէջքին։*

*Թագադրութիւնից յետոյ Նադիր-շահը՝ այնտեղ հաւաքուած աւագներին զանազան պաշտօններ եւ աստիճաններ շնորհելու ժամանակ, վարձատրեց եւ հայոց մելիքների կատարած քաջագործութիւնները, որոնք այնքան եռանդ էին ցոյց տուել օսմանցիներին կոտորելու գործում։ Առանձին ֆերմաններով նրանց կրկին հաստատեց իրանց հայրենական իշխանութիւնների մէջ՝ իրաւունք տալով իւրաքանչիւրին անկախ կերպով կառավարելու իր երկիրը, վճարելով ամէն տարի մի որոշեալ քանակութեամբ հարկ։ Այնուհետեւ մելիքները կախումն ունենալով միայն Շահից, իսկ իրանց իշխանութեան մէջ վայելելով ինքնավարութեան կատարեալ իրաւունքներ, որպէս վալիներ (աւատական իշխաններ), աւելի հանգիստ եւ ապահով դրութիւն ստացան եւ սկսեցին աւելի եւս զօրացնել իրանց ուժերը։*

*Մի քանի մելիքներ առանձին աստիճաններ ստացան. Ջրաբերդի Մելիք-Իսրայէլի որդի Մելիք-Ալլահ-Ղուլին ստացաւ սուլթանի աստիճան[1] եւ կոչուեցաւ Ալլահ-Ղուլի-սուլթան։ Շահի առանձին շնորհը վայելում էր*

---

*[1] Սուլթան չպէտք է հասկանալ այն մտքով, ինչ նշանակութիւն որ ունի այժմ Թիւրքիայում. Սուլթանը այժմեան Պարսկաստանում զինուորական աստիճան է, իսկ Նադիրի ժամանակ այդ տիտղոսը տրվում էր առանձին գաւառների կամ փոքրիկ վիճակների տիրապետողներին։*

Ցիզակ գաւառի Մելիք-Աւանը (Եգանը), որին Շահը “բա-
բալըղ„ էր կոչում, որ նշանակում է հոգեւոր հայր։ Մելիք-Աւանը Ղարաբաղի մելիքների գահերէցն էր. դա մի ամբողջ տարի իւր ծախքով կերակրեց Շահի զօրքերին. դա էր պարագլուխը մեր յիշած սարսափելի կոտորածի, որով մի գիշերուայ մէջ հայերը ոչնչացրին Ղարաբաղում գտնուած բոլոր օսմանցիներին։ Շահը շնորհեց նրան խանութեան աստիճան, կոչուեցաւ Մելիք-Աւան-խան եւ կարգեց Խամսայի հինգ մելիքութիւնների գլխաւոր, դրա մօտ էին հաւաքվում վճարելիք հարկերը եւ դրա ձեռքով էին յանձնվում արքունի գանձարանին։

Երբ Աբրահամ կաթողիկոսը Մուղանի անապատում, Շահի խնդրելով, Երասխ գետի ափի մօտ կատարեց սուրբ ծննդեան եւ Մկրտութեան տօնի հանդէսը, ներկայ էին բացի քրիստոնեաներից մինչեւ երեք հարիւր պարսիկ ազնուականներ, շէյխուլիսլամը, ղազին եւ այլ նշանաւոր անձինք։ Բոլորի մէջ միայն Մելիք-Աւան-խանն արժանացաւ այն պատւին, որ խաչը ջրից դուրս հանեց։

Աւելորդ չեմ համարում յիշել մի փոքրիկ դէպք, որ ինքն ըստ ինքեան թէեւ շատ ծաղրական է, բայց ցոյց է տալիս, թէ ո՛ր աստիճան հայոց այդ աւագը մտերիմ եւ բարեկամ էր Պարսկաստանի ահարկու թագաւորին։

Նադիր-Շահը սովորութիւն ունէր շատ-շատ ճաշել Մելիք-Աւան-խանի տանը, որի ճոխ սեղանը հռչակուած էր, թէ այնտեղ ամեն բարիք կարելի է գտնել։ Մի անգամ Շահը կամենալով փոքր ինչ ամաչցնել իւր հիւրընկալին, պատուիրեց ճաշի համար թարմ սունկ պատրաստել։ Թէեւ ձմեռն էր, թէեւ տարուայ այն ժամանակին Ղարաբաղի անտառներում թարմ սունկ գտնելն անկարելի բան էր, այսու ամենայնիւ Մելիք-Աւան-խանը ցոյց

տուեց, թէ շահի փափագը կատարուած կը լինի։ Ճաշի ժամանակ, երբ թագաւորը պահանջեց ցանկացած կերակուրը, մելքի սպասաւորները դրեցին նրա առջեւ մի մատուցարան, լիքը դիզած ոսկիներով։ — Ես սունդ էի պատուիրել, ասաց շահը։ — Մենք առանց սունդի եւս կարող ենք կշտանալ, — պատասխանեց մելքը. — իսկ ձեր զինուորներին ոսկի է հարկաւոր թշնամու հետ պատերազմելու համար։ Շահին խիստ հաճոյ թուեցաւ մելքի պատասխանը եւ ընդունեց ոսկիները։

Մելիք-Աւան-խանը յարգուած էր եւ ռուսաց կառավարութիւնից։ Աննա Իվանովնա կայսրուհու թագաւորութեան ժամանակ (1734) նա իւր աստիճանաւորներով գնաց Ռուսաստան, փառաւոր ընդունելութիւն գտաւ եւ արժանացաւ կայսրուհու առանձին ուշադրութեան։ Պետրոս Մեծի պարսկական արշաւանքների ժամանակ, իւր ցոյց տուած նշանաւոր ծառայութիւնների համար Մելիք-Աւան-խանն ստացաւ գեներալ-մայորի աստիճան եւ զանազան շքանշաններ։ Նրա ամբողջ շքախմբին (սվիտա) նոյնպէս աստիճաններ, շքանշաններ շնորհեցին եւ թոշակ նշանակեցին։

Յետոյ Եղիսաւետա Պետրովնա կայսրուհու թագաւորութեան ժամանակ Մելիք-Աւան-խանը, արդէն ծերացած հասակում, կրկին անգամ գնաց Ռուսաստան, իւր ընտանիքն էլ հետը տանելով։ Ղարաբաղի երեւելի տիրապետողը կրկին անգամ արժանացաւ զանազան շքանշանների եւ պատուի, թէեւ նրա այցելութիւնների նպատակը իւր անձնական փառասիրութիւնը չէր, այլ նա աշխատում էր իւր դժբախտ հայրենիքի փրկութեան համար։ Մեծն Պետրոսի օգոստափառ դուստրը ցանկացաւ ծերունի հերոսին անձամբ տեսնել Ս. Պետերբուրգում եւ նշա-

նակեց առանձին առագիէնցիա։ Գրաֆ Մինիխը եւ գրաֆ Րազումովսկին Մելիք-Աւան-խանին իւր ամբողջ ընտանիքի հետ ներկայացրին կայսրուհուն։ Ընդունելութեան ժամանակ կայսրուհին տեսնելով մի մանկահասակ գեղեցկուհի, որ մելիքի թոռն էր, այնքան սիրեց նրան, որ ցանկացաւ պահել իւր արքունիքում իբրեւ պալատական օրիորդ (ֆրէյլին)։ Մինչեւ Աւան-խանի Ս. Պետերբուրգից հեռանալը Կայսրուհին պահեց նրան իւր պալատում, եւ միայն ծերունի մելիքի շատ խնդրելուն համար թոյլ տուեց օրիորդին, որ իւր ծնողների հետ վերադառնայ իւր հայրենիքը, պարգեւելով նրան շատ ընծաներ։

Վերադառնալով իւր հայրենիքը՝ Տիղակ, Մելիք-Աւան-խանը երկար չապրեց. Նա վախճանուեցաւ 1744 թ. եւ մարմինը թաղուեցաւ իւր Տող անունով բերդի եկեղեցու գաւթում։ Նրա մահից յետոյ երէց որդին՝ Մելիք-Արամը միայն մի տարի իշխեց եւ մեռաւ, որից յետոյ իշխանութիւնը ձեռք առաւ կրտսեր եղբայրը՝ Մելիք-Եսային, որ, ինչպէս յետոյ կը տեսնենք, սպանուեցաւ Շուշիի Իբրահիմ-խանի դաւաճանութեամբ։ Մելիք-Աւան-խանի ժառանգների մեծ մասը դաւաճանութեան զոհ եղան։ Այդ էր պատճառը որ նրա այրի կինը՝ Գոհար-խանումն ստիպուած եղաւ թողնել իւր հայրենիքը եւ մնացած զաւակների հետ գաղթել Հաշտարխան, որտեղից իւր բնակութիւնը տեղափոխեց Ղզլար, երբ այդ քաղաքը շինուեցաւ։ Մելիք-Աւան-խանի եւ նրա եղբօր ժառանգներից առաջ եկան իշխան Սմբատեանները, իշխան Մելիքովները եւ Հայրապետեանները, որոնք մի ժամանակ Հաշտարխանում, Ս. Պետերբուրգում եւ Մոսկուայում ռուսաց նշանաւոր պաշտօնների մէջ մտան։

## IX.

*Փանահ-խանի յայտնուելը։*

Երբ Նադիր-շահը Մուղանի դաշտում իրան պարսից թագաւոր յայտնեց, այդ ժամանակ Կուր գետի աջ եզերքի մօտ գտնուած անապատներում թափառող մի թուրք ցեղից, որ տեղի անունով կոչվում էին Ջուանշիրցիք, բաւական մեծ բազմութիւն գաղթեցրեց Խորասանի կողմերը, բնակեցնելով նրանց Սարխաս կոչուած գաւառում։ Ջուանշիրցիք, որպէս հովուական կեանքով ապրող մի ժողովուրդ, իրանց գլխաւոր պարապմունք էին ընտրել խաշնարածութիւնը եւ աւազակութիւնը։ Երկրի խաղաղութիւնը պահպանելու համար Նադիրն աւելի բարւոք համարեց այդ անհանգիստ, կիսավայրենի ցեղը հեռացնել դէպի Պարսկաստանի խորքերը։

Այդ ցեղի մի տոհմից, որ առանձին անունով կոչվում էր Սարիջալու, առաջ եկաւ Փանահ անունով մի մարդ, որ Պարսկաստան գաղթելուց յետոյ շնորհ գտաւ Շահի դռանը եւ ստացաւ մի աննշան պաշտօն։ Այդ պաշտօնի համար մի այլ արժանաւորութիւն պէտք չէր, բայց միայն ունենալ զօրեղ ձայն եւ՝ երկրի սովորութեան համեմատ, թագաւորի հրամանները քաղաքի հրապարակներում բարձրաձայն հրատարակել։ Փանահն ունէր այդ արժանաւորութիւնը եւ թագաւորի մունետիկը դարձաւ, եւ այնուհետեւ կոչուեցաւ «Ջառչի» Փանահ։ Երկար այդ պաշտօնը կատարում էր նա, բայց մի անկարգութեան համար որ պիտի գլխատման դատապարտուէր, Պարսկաստանից փախաւ եւ կրկին եկաւ իւր հայրենիքը։ Որպէս յանցաւոր նա անյայտ կերպով թափառում էր Ղարաբաղի անապատներում, աննշան, աստանդական կեանք էր վարում։

Յետոյ դիմեց նա Ջրաբերդի Մելիք-Ալահ-Ղուլի-սօլթանին եւ նրա մօտ ապաստան գտաւ։ Սուլթանը նշանակեց նրան իւր գիւղերի վրայ որպէս դարուղա՝ այսինքն տուրքեր հաւաքող։ Թէեւ Պարսկաստանից մի քանի անգամ սաստիկ հրամաններ ստացուեցան, որ բռնեն Փանահին եւ յետ ուղարկեն, բայց նա պահպանուելով հայ սօլթանի պաշտպանութեան ներքոյ, ազատ մնաց։

Երբ Խորասանում, գիշերը վրանի մէջ քնած ժամանակ, իւր դրանիկների դաւաճանութեամբ Նադիր-շահը սպանուեցաւ հէնց վրանի պահապանների ձեռքով (1747), այդ ժամանակ պարսից գահը ժառանգելու համար սարսափելի խռովութիւններ բարձրացան. զանազան տեղերում զանազան թագաւորներ նստեցին, նահանգներից շատերն ապստամբուեցան։ Մաշհադի մէջ թագաւորեց նրա թոռը՝ Շահ-Ռուխ կոչուածը. Ատրպատականում թագաւորեց նրա եղբօրորդի Ադիլ-շահը, որի եղբայրը՝ Միրզա-Իբրահիմը յետոյ կուրացնելով հարազատ եղբօրը, ինքը թագաւոր դարձաւ։ Այդ երկպառակութիւնների ժամանակ, երբ Պարսկաստանում շատ իշխողների պատճառով երկիրն անիշխանութեան մէջ էր գտնվում, Նադիրի Խորասան տարած ջուանշիրցի գաղթականները վերադարձան իրանց հայրենիքը՝ Ղարաբաղի անապատները։

Այդ ժամանակ „Ջառչի“ Փանահն իրան ազատ զգաց. այլեւս պատժուելու, գլխատուելու երկիւղ չունէր։ Այդ մարդը, այդ հովուի, անապատների պարզամիտ որդին, երկար տարիներ ապրելով պարսկական բարձր դռան ինտրիգաների մէջ, սովորեց պալատների խորամանկութիւնը, վարժուեցաւ նրանց խարէութիւնների մէջ։

Նա արդէն Ջրաբերդի հզօր մելիքի՝ Ալահ-Ղուլի-սօլթանի ծառայութեան մէջ բաւական նշանակութիւն էր

ստացել։ Երբ լսեց Նադիր-շահի մահը եւ իւր ցեղակից-ների վերադարձը Խորասանից, թողեց այդ ծառայութիւնը եւ մտաւ Ջուանշիրցի խաշնարածների մէջ։ Սկզբում նրանց նման կեանք էր վարում, որպէս մի հասարակ հովիւ, բայց յետոյ սկսեց փոքր առ փոքր դէպի իւր կողմը գրաւել միամիտ խաշնարածներին, մինչեւ յաջողուեցաւ նրան հրաժարեցնել տալ ցեղի նախկին տանուտէրին եւ իրան ընտրել տալ նրա տեղը։

Այդ չնչին պաշտօնը միայն մի առիթ էր, որով Փանահը կարողացաւ փոքր ժամանակում խաշնարածների մի քանի ցեղեր իւր հրամանին ենթարկել։ Բայց նրա փառասիրութիւնը դրանով չյագեցաւ։ Նադիրի մահից յետոյ երբ նրա եղբօրորդի Ադիլ-շահը Թաւրիզում թագաւոր դարձաւ, նա ուղարկեց դէպի Ղարաբաղի կողմերը Ամիր-Ասլան-խան անունով մէկին՝ տեղային խռովութիւնները խաղաղացնելու համար։ Այդ ժամանակ պարսից Շահերն այն անհաստատ դրութեան մէջ էին, որ մի օրուայ համար եւս իրանց վիճակը ապահով չէին համարում։ Այդ պատճառով շտապելով շուտափոյթ օգուտ քաղել իրանց դիրքից, մի քանի թումանով վաճառում էին պաշտօններ, աստիճաններ, տիտղոսներ, եւայլն։ Ջառչի Փանահը նոյնպէս օգուտ քաղելով այդ հանգամանքներից, յիշեալ Ամիր-Ասլան-խանի միջնորդութեամբ ստացաւ Ադիլ-շահից խ ա ն ո ւ թ ե ա ն տիտղոս։

Բայց նա խելացի մարդ էր. նա մտածում էր ստեղծել մի աւելի հիմնաւոր իշխանութիւն, որի գլուխը ի հարկէ ինքը պէտք է լինէր։ Իսկ այդ նպատակն իրագործելու համար շատ դժուարութիւններ կային. գլխաւորը իւր ցեղի կենցաղավարութեան պայմաններն էին։

Ջուանշիրցիները, որպէս մի խաշնարած եւ թափառաշրջիկ ժողովուրդ, ձմեռն անց էին կացնում Կուր գետի աջ ափերի մօտ տարածուած տափարակների վրայ՝ բնակուելով շարժական տաղաւարների մէջ կամ գետնափոր խրճիթներում, իսկ գարնան սկզբից մինչեւ աշնան վերջը սփռվում էին Ղարաբաղի լեռների վրայ, իրանց անասուններն արածացնելու համար։ Զուրկ լինելով հաստատ բնակութիւնից, նրանք զուրկ էին եւ հողի սեպհականութիւնից։ Ամբողջ Ղարաբաղը գտնուելով հայ մելիքների իշխանութեան ներքոյ, ջուանշիրցիներն ստիպուած էին իրանց ոչխարներից տասանորդ վճարել, որպէս զի թոյլ տրուի իրանց անասուններն արածացնել մելիքների արօտատեղիներում։

Երկրի աշխարհագրական դիրքն այնպէս էր, որ լեռնային անտառապատ բարձրաւանդակները, հովասուն հովիտները, որոնց վրայ ամառային տօթերի ժամանակ կարող էր խաշնարածն ապաստան գտնել, հայ մելիքների ձեռքումն էին։ Իսկ լեռներից սկսուած անջուր, ցամաք տափարակների վրայ, որ տարածվում էին մինչեւ Կուր գետի ափերը, թափառում էին ջուանշիրցիները։ Փանահխանը մտածում էր Ղարաբաղի լեռների վրայ մի տեղում հաստատ ոտքի տեղ ունենալ։ Մի ամուր դիրք ռազմագիտական նպատակով նրան պէտք էր իւր նպատակներն իրագործելու համար։

Սկզբում նա գնաց Բայաթ[1] եւ այնտեղ սկսեց մի բերդ հիմնել։ Բայց Գիւլիստանի Մելիք-Բեգլարեան Մելիք-Իւսուբը եւ Ջրաբերդի Մելիք-Իսրայէլեան Մելիք-Ալլահ-Ղուլի-սուլթանը, միանալով Շիրվանի Հաջի-Չելէբի

[1] Բայաթ աւերակ քաղաքատեղ է Գարգար գետի մօտ։

անունով կառավարչի հետ, ոչնչացրին այդ հիմնարկութիւնը։ Յետոյ նա սկսեց Շահ-բուլաղի մօտ, Թարնակիւրտ (Տիգրանակերտ) կոչուած աւերակների վրայ մի այլ բերդ կառուցանել Ասկարան անունով։ Բայց Գիւլիստանի Մելիք-Յուսուբը, Ջրաբերդի Մելիք-Ալլահ-Ղուլի-սուլթանը եւ Խաչէնի Հասան-Ջալալեան Մելիք-Ալլահվերդին, այդ բերդը մօտ գտնելով իրանց երկրների սահմաններին, սկսեցին պատերազմել նրա հետ եւ դարձեալ ոչնչացրին։

Տեսնելով այդ արգելքները հայ մելիքների կողմից, խորամանկ Փանահ-խանը մտածեց երկպառակել նրանց միաբանութիւնը եւ այսպիսով թուլացնել նրանց ուժերը, որպէս զի կարողանայ իրագործել իւր նպատակները։ Նրան նպաստեցին մի քանի անցքեր, որ կատարուեցան այդ միջոցներում եւ որոնք սկիզբ դրեցին Ղարաբաղի մելիքութիւնների քայքայմանը...։ Այդ էջերն այնքան տխուր տեղ են բռնում Ղարաբաղի մելիքների պատմութեան մէջ, որ մենք աւելորդ չենք համարում մի փոքր ընդարձակ խօսել այդ մասին։

## X.

Տիզակի Մելիք-Աւան-խանը, Պետրոս մեծի եւ Նադիր-շահի սիրելին, Ղարաբաղի մելիքների գահերէցը, վաղուց արդէն վախճանուած էր (1744)։ Նրա մահից յետոյ Ղարաբաղի իշխանների մէջ չկար մի այնպիսին, որ նրա չափ հանճար եւ հեղինակութիւն ունենար, որ կարողանար պահպանել մելիքների մէջ խաղաղ ներդաշնակութիւն։ Հանգուցեալի երէց որդին՝ Մելիք-Արամը, միայն մի տարի իշխեց։ Նա այնքան թոյլ մարդ էր, որ երբ Նադիր-շահի միակ որդին վախճանուեցաւ եւ հարկաւոր եղաւ շահին մխիթարելու համար մի պատգամաւորու-

թիւն ուղարկել, փոխանակ ինքը գնալու կամ ուրիշ արժանաւոր մարդիկ ուղարկելու, ուղարկեց իւր կնոջը։ Մելացի կինը զարմացրեց պալատից բոլոր պալատականներին, երբ իւր շքախմբով, սգազգեստ ներկայացաւ շահին։ Իւր մխիթարական ճառից յետոյ, տիկինը, բաւական խորամանկ քաղաքավարութեամբ, մատուց շահին 6000 թուման փէշքէշ, ասելով. “Դուք այնքան ողորմած էիք, որ գնահատելով Մելիք-Աւան-խանի ձեզ մատուցած ծառայութիւնները եւ յարգելով նրա ծերութիւնը, նրան “բաբալըղ„ (հոգեւոր հայր) էիք կոչում։ Նրա վախճանից յետոյ արժան էր, որ դուք եւս ձեր մասն ստանայիք ձեր հայրացուի ժառանգութիւնից։ Եւ ես ահա բերել եմ ձեր բաժինը։ Շահին այնքան հաճոյ թուեցաւ այդ ընծան, որ հրամայեց երկու այն չափով պարգեւներ տալ նրան իւր գանձարանից եւ մեծ յարգանքով ճանապարհ դրեց, տիկնոջ ձեռքով ուղարկելով նրա ամուսնու՝ Մելիք-Արամի հաստատութեան ֆիրմանը։

Վերադառնալով Պարսկաստանից, տիկինը գտաւ իւր ամուսնուն վախճանուած։ Փանահ-խանի թելադրութեամբ մի դաւաճան հայ թունաւորել էր նրան։

Մէլիք-Արամի մահից յետոյ Տիզակի իշխանութիւնը իւր ձեռքն առաւ հանգուցեալի կրտսեր եղբայրը՝ Մելիք-Եսային, որ իւր յատկութիւններով բոլորովին նման էր իւր հօրը։

Մինչեւ այսօր Տիզակ գաւառի բնակիչները յիշում են մի հին աւանդութիւն, թէ երբ Մելիք-Եսային ծնուեցաւ, մանկաբարձ պառաւները նկատեցին, որ տղայի աջ ձեռքի մատները խփուած էին։ Երբ բուռը բաց արին, տեսան ափի մէջ լիքն էր արիւնով։ Այն օրից նախագուշակեցին, որ երբ այդ մանուկը մեծանայ, դրա ձեռքով

շատ արիւնհեղութիւններ կը լինէին։ Եւ իրաւ, Մելիք-Եսային իւր ամբողջ կեանքն անցկացրեց պատերազմներով։ Տիզակը պարսից սահմանի վրայ լինելով, Երասխ գետի ափի մօտ, ենթարկուած էր պարսիկների անընդհատ յարձակումներին։ Քաջ իշխանը՝ իւր երկիրը նրանց արշաւանքներից պահպանելու համար ստիպուած էր անդադար պատերազմել նրանց հետ։

Մելիք-Եսային առաջինն էր Ղարաբաղի մելիքների մէջ, որ հասկացաւ կանոնաւոր զօրքի եւ ընդհանուր զինուորագրութեան անհրաժեշտութիւնը երկրի ապահովութեան համար. Նա տուգանք նշանակեց գիւղացիների վրայ, եթէ նրանց զէնքերից մէկը պակաս կը լինէր, կամ եթէ իրանց զէնքերը չէին պահպանի անխանգար դրութեան մէջ։ Որոշեալ օրերում, երկրագործական պարապմունքներից յետոյ, գիւղացի երիտասարդները զբաղվում էին զինուորական մարզութիւններով. Նրանց վրայ կարգուած էին տասնապետներ, յիսնապետներ, հարիւրապետներ՝ կրթելու համար։ «Նրա ժամանակում, գրում է մի վարդապետ, մեր երկրում այնպիսի ապահովութիւն էր տիրում, որ դեռահաս աղջիկները՝ այգիների ծառերի տակ նստած կար էին կարում, քնում էին այնտեղ, մինչեւ մութը պատում էր. հարսները զուգուած դուրս էին գալիս տներից եւ աներկիւղ զբօսնում էին լեռների վրայ, բոլորովին չմտածելով թէ թուրքը, կամ պարսիկը կը գայ, կը յափշտակէ եւ կը տանէ իրանց։ Երբ թշնամին յայտնվում էր, երկրի երիտասարդները զէնքը ձեռներին միշտ պատրաստ էին նրան հանդիպելու համար»։

Նադիր-շահի մահից յետոյ Մելիք-Աւան-խանի տան բարեկամական յարաբերութիւնները պարսից արքունիքի հետ կտրուեցան։ Մելիք-Եսային տեսնելով Պարսկաստա-

նում տիրող անիշխանութիւնը, խռովութիւնները եւ ներքին պատերազմները, եւ մանաւանդ ձանձրացած լինելով պարսից հարկահաններից, վճռեց միանգամայն չճանաչել նրանց եւ մերժել հարկապահանջներին։ Այդ առիթից օգուտ քաղեց Փանահ-խանը եւ Մելիք-Եսայուն մատնեց Թաւրիզում նստող Ադիլ-շահին։ Շահը հրամայեց Ղարադաղի[1] կառավարիչ Քաղըմ-խանին գնալ եւ պատժել Մելիք-Եսայուն։ Ղարադաղի խանն եկաւ զօրքերի մեծ բազմութեամբ. ինքը Փանահ-խանը մի քանի հազար հոգով միացաւ նրա հետ, պաշարեցին Մելիք-Եսայու Տող բերդը։ Ով որ տեսել է Տողը, կարող է երեւակայել, որ թշնամու զօրքերի բազմութիւնը չէր կարող սարսափեցնել Մելիք-Եսայուն, երբ որ իւր քաջ զինուորների փոխարէն առաւելապէս բնութեան ամրութիւնները պիտի պատերազմէին թշնամու զօրութեան դէմ։ Հայոց զինուորները մասամբ պաշտպանուած բերդի մէջ, մասամբ թագնուած շրջակայ լեռների խիտ անտառներում, անակնկալ յարձակումներ են գործում եւ ջարդում պարսիկներին։ Ղարադաղի խանը յաղթուած, իւր զօրքերի մեծ մասը կորցրած, յետ է դառնում Պարսկաստան։ Հետեւեալ տարին նա արշաւանք է գործում աւելի մեծ բազմութեամբ. Փանահ-խանը դարձեալ միանում է նրա հետ, բայց երկուսի ջանքերը եւս ապարդիւն են անցնում. Մելիք-Եսային յաղթող է հանդիսանում։

Այնուհետեւ Փանահ-խանն ամբողջ եօթը տարի պատերազմեց Մելիք-Աւանեան Մելիք-Եսայու հետ. երբ

---

[1] Պէտք է ի նկատի ունենալ, որ Ղարադաղը (հին Փայտակարանի մի մասը) եւ Տիզակ գաւառը սահմանակից են, բաժանվում են միայն Երասխ գետով։

նկատեց, որ հնար չկայ նրան հնազանդեցնելու, ստիպուեցաւ հաշտուել, մտածելով գուցէ բարեկամական միջոցներով կարող կը լինի ոչնչացնել նրան, եւ որպէս յետոյ կը տեսնենք, խորամանկ խանի այդ մտադրութիւնը յաջողուեցաւ....:

## XI.

Փանահ-խանը մի քանի անաջող փորձերից յետոյ վերջապէս համոզուեցաւ, որ Ղարաբաղի մելիքների միաբանութիւնը քանդելու եւ Ղարաբաղի մէջ մի հաստատ դիրք բռնելու համար անպատճառ հարկաւոր է, որ մելիքներից գոնէ մէկին գրաւէ դէպի իւր կողմը: Մի աղէտալի անցք կատարեց նրա ցանկութիւնը:

Որպէս վերեւում յիշեցինք, Նադիր-շահը՝ Մուղանի անապատում իւրան պարսից թագաւոր հրատարակելուց յետոյ, Ղարաբաղի հինգ մելիքներին հաստատեց իրանց իշխանութիւնների մէջ, տալով նրանց հայրենական վաղեմի իրաւունքները: Բայց միեւնոյն տարուայ մէջ (1736) վախճանուեցաւ Վարանդայի իշխան Մելիք-Շահնազարեան Մելիք-Յուսէփը, որի կինը Աւետարանոց գիւղում կոտորել տուեց օսմանցիներին: Մելիք-Յուսէփի փոխարէն Վարանդան սկսեց կառավարել նրա ազգական Մելիք-Միրզա-բէկ Բ-ը[1]: Դա իւր յանդուգն անհնազանդութեամբ գրգռեց Շահի բարկութիւնը, եւ Շահը հրամայեց գլխատել նրան: Մելիք-Միրզա-բէկ Բ-ի փոխարէն Շահը Վարանդայի մելիք նշանակեց Մելիք-Յուսէփի որդի Մելիք-Յովսէփին: Այդ Մելիք-Յովսէփը, որին պարսիկները Յուսէփն էին կոչում, չափազանց հեզաբարոյ, գրասէր եւ խե-

[1] Մելիք-Միրզա-բէկ Բ-ը Մելիք-Բաղիի որդին էր, իսկ այդ վերջինը Մելիք-Յուսէփի հօրեղբայր Մելիք-Միրզա-բէկ Ա-ի որդին էր:

լացի մարդ էր, բայց մի ոտքով կաղ եւ փոքրահասակ։ Նա ունէր մի եղբայր եւս, որ ընդհակառակն վայելչահասակ, գեղեցիկ եւ չափազանց փառասէր տղամարդ էր։ Դա էր Մելիք-Շահնազար Բ-ը[1], Ղարաբաղի կործանիչը...

Իւր ընտանեկան կեանքում Մելիք-Շահնազարը սաստիկ անբարոյական մարդ էր. պարսիկների սովորութեանը հետեւելով, իւր տունը լցրել էր բազմաթիւ հարճերով։ Բացի դրանցից, նա ունէր իւր առաջին օրինաւոր կինը Թագում (Թագուհի) անունով, որ Խաչէնի Հասան-Ջալալեան իշխանների տնիցն էր։ Թագումի մեռնելուց յետոյ Մելիք-Շահնազարը բռնութեամբ խլեց կենդանի ամուսնուց նրա գեղեցիկ կինը Սոնա անունով (որ Տիզակի իշխան Մելիք-Եսայու աղջիկն էր) եւ պսակուեց նրա հետ։ Նոյն իսկ Սոնայի կենդանութեան ժամանակ Մելիք-Շահնազարն ամուսնացաւ իւր հանգուցեալ կնոջ, Թագումի, հարազատ եղբօր Մալայիկ անունով դստեր հետ, եւ այսպիսով մտցրեց իւր ընտանիքի մէջ մահմեդական բազմակնութիւնը։ Մելիքի այդ տեսակ վարմունքները սաստիկ վիրաւորեցին ժողովրդի կրօնական զգացմունքը եւ նրան ատելի դարձրին Ղարաբաղի միւս մելիքների մօտ։ Բայց նրա կատարած մի եղեռնագործութիւնը հրաւիրեց իւր վրայ բոլոր մելիքների վրէժխնդրութիւնը։

Մելիք-Շահնազարը փառասէր, յանդուգն եւ ոխերիմ մարդ էր. նա չկարողացաւ համբերել, որ իւր եղբայր Մելիք-Յովսէփը վարէր Վարանդայի իշխանութիւնը, թէեւ

---

[1] Մելիք-Յովսէփը եւ Մելիք-Շահնազարը խորթ եղբայրներ էին. առաջինը ծնուած էր Մելիք-Յուսէինի Աննա-խաթուն անունով կնոջից, որ Տիզակի իշխան Մելիք-Աւան-խանի քոյրն էր, իսկ Մելիք-Շահնազարը ծնուած էր Ջօհրա-խանումից, որ Նախիջեւանի խանի աղջիկն էր, ազգով թիւրք։ Մելիք-Յուսէինը նրան իբրեւ գերի բերեց Նախիջեւանից, բայց յետոյ ամուսնացաւ նրա հետ։

նա կարգուած էր Նադիր-շահից: Մի գիշեր յարձակուելով Մելիք-Յովսէփի տան վրայ, իւր ձեռքով սպանեց եղբօրը եւ նրա ամբողջ ընտանիքը կոտորել տուեց: Ազատուեցաւ մի երեխայ միայն, փոքրիկ Սայի-բէկը, որին դայեակը ծածուկ փախցրեց Խաչէն գաւառի Հասան-Ջալալեան Մելիք-Ալահվերդու մօտ, որ երեխայի քեռին էր[1]:

Սպանելով իւր եղբօրը, Մելիք-Շահնազարը բռնութեամբ իւր ձեռքը ձգեց Վարանդայի իշխանութիւնը: Բայց նրա եղեռնագործութիւնը սաստիկ բորբոքեց իւր դէմ Ղարաբաղի միւս չորս մելիքների բարկութիւնը: Նրանք միաբանուեցան Մելիք-Շահնազարից վրէժխնդիր լինելու համար: Դրանք էին՝ Գիւլիստանի Մելիք-Բէգլարեան Մելիք-Իւսուբը, Ջրաբերդի Մելիք-Իսրայէլեան Ալահ-Ղուլի-սօլթանը, Խաչէնի Մելիք-Ալահվերդին եւ Տիզակի Մելիք-Աւանեան Մելիք-Եսային: Իրանց զօրքերով այդ չորս մելիքները դիմեցին դէպի Վարանդա: Մելիք-Շահնազարն ամրացաւ իւր Աւետարանոց բերդի մէջ: Պաշարումը երկար տեւեց, ձմեռը վրայ հասնելով, բերդը չկարողացան գրաւել, բայց Վարանդայի գիւղերի մեծ մասն

---

[1] Աւետարանոց (Չանախչի) բերդը շատ անգամ եղել է հանդիսարան արիւնոտ գործերի: Մենք նկարագրեցինք Մելիք-Յուսէփին մեծի ժամանակ տեղի ունեցած օսմանցիների կոտորածը այդ բերդում: 1723 թ. օգոստոս 20ին, Ղափանցի Ղանլու-Շաբան անունով հայ իշխանը 300 ձիաւորներով հիւր է գալիս Աւետարանոց բերդի Մելիք-Միրզա-բէկի մօտ (Մելիք-Բաղիի որդին): Չնայելով որ Մելիք-Միրզա-բէկը հին ոխ ունէր Ղանլու-Շաբանի հետ, այսուամենայնիւ սիրով ընդունում է նրան իւր տանը, եւ նրա շքախմբին որպէս հիւրեր բաժանում է իւր գիւղացիների տներում: Գիւղացիները պատուէր են ստանում՝ հէնց որ գիշերը մելիքի տնից լսելի կը լինի հրացանի ձայն, ամեն մարդ պատրաստ լինի իւր հիւրին սպանելու: Այդպիսով մի գիշերուայ մէջ կոտորում են բոլոր 300 ձիաւորներին, իրանց իշխանի հետ: Դա միեւնոյն Մելիք-Միրզա-բէկն էր, որին Նադիր-շահը գլխատել տուեց:

աւարի առնելով ու աւերակ դարձնելով, մելիքները վերադարձան իրանց տեղերը, պայման դնելով, որ հետեւեալ գարունքին կրկին արշաւանք գործեն՝ Աւետարանոց բերդը կործանելու համար։

Փանահ-խանն այժմ հասաւ իւր նպատակին։ Ղարաբաղի մելիքների մէջ սկսուեցաւ ներքին պատերազմ։ Նա շտապեց օգուտ քաղել այդ հանգամանքներից։

Մելիք-Շահնազարը որքան էլ յանդուգն, աներկիւղ մարդ լինէր, դարձեալ գիտէր, որ իւր ուժերը չէին կարող հաւասարուել բոլոր չորս մելիքների անհամեմատ մեծ զօրութեանը։ Այդ պատճառով նա սաստիկ անհանգստութեամբ սպասում էր գալիքան արշաւանքին։ Նրան պէտք էր մի դաշնակից, մի օգնական, եւ նա ձեռք մեկնեց իւր հայրենիքի ոխերիմ թշնամուն — Ջուանշիրեցի աւազակին...։

Միւս մելիքներն աւելի կատաղեցան, երբ նկատեցին որ Մելիք-Շահնազարը միացաւ Փանահ-խանի հետ, որի չար դիտաւորութիւնները՝ Ղարաբաղի հայկական բոլոր իշխանութիւնները ոչնչացնելու մասին, ամենքին յայտնի էին։

Փանահ-խանը իւր կողմից շատ ուրախ եղաւ, երբ մելիքների միաբանութիւնը քանդուած տեսաւ, երբ նրանցից մէկը, այն էլ ամենանշանաւորը, անցաւ իւր կողմը։

Վաղուց նա դիտաւորութիւն ունէր մտնելու անմատչելի Ղարաբաղի սրտի մէջ, եւ մի յարմար դիրքի վրայ ցանկանում էր մի ամուր բերդ հիմնել։ Նրա Բայաթի եւ Ասկարանի բերդերը, ինչպէս տեսանք, հայոց մելիքները ոչնչացրին։

«Ձեր Ջանախչին պաշտպանութեան համար խիստ անյաղթելի դիրք ունի, ասաց Փանահ-խանը Մելիք-Շահ-

նազարին, — պէտք է որոնել մի աւելի ամուր դիրք, եւ ես մի այդպիսի տեղ ի նկատի ունիմ, որի վրայ բերդ հիմնելով, կը լինինք այնուհետեւ բոլորովին ապահովուած„...։

Փանահ-խանը ցոյց տուեց Վարանդայի գաւառում մի տեղ, Գարգար գետի վրայ, որ Մելիք-Շահնազարի սեպհական կալուածքն էր, եւ բնութիւնը, իրաւ որ, այդ անմատչելի լեռնային բարձրաւանդակն ստեղծել էր ամուր բերդ լինելու համար։ Երկու դաշնակիցներն սկսեցին բերդի հիմնարկութիւնը։ Մելիք-Շահնազարը իւր ձեռքով դրեց նրա առաջին քարը, որ իւր եւ ամբողջ Ղարաբաղի մելիքութիւնների գերեզմանը դարձաւ....։

Մի կողմից բերդի կառուցումն առաջ տանելով, միւս կողմից մելիքների հետ պատերազմ մղելով, երկու դաշնակիցները շուտով վերջացրին շինութիւնը (1752) եւ մերձակայ Շօշի աւանի հայ բնակիչներին տեղափոխելով այնտեղ, բերդը կոչուեցաւ Շօշի կամ Շուշի։

Փանահ-խանը մնալով Ղարաբաղի սրտի մէջ, իւր դաշնակից Մելիք-Շահնազարի աջակցութեամբ ոչ միայն կարողացաւ պաշտպանուել միւս հայ մելիքների յարձակումների դէմ, այլ իւր իշխանութիւնը տարածեց եւ այն թիւրք ցեղերի վրայ, որոնք առաջ չէին խոնարհվում նրան։

Ինքը Փանահ-խանը իւր ծագումն ստացած լինելով աւելի աննշան եւ ստոր ցեղից, որպէս էին սարուջալուցիք, միւս աւելի զօրեղ եւ նշանաւոր ցեղերը (ջուանշիրցիք, քեբիրլուցիք եւ օթուզիքի, այսինքն՝ երեսուն եւ երկու կոչուած ցեղը) արհամարանքով էին նայում նրա վրայ, նամանաւանդ որ իրանց նահապետական սովորութիւններին խիստ հակառակ էր թվում՝ խոնարհուել մէկ միապետի հրամանի ներքոյ, որ պարսից խ ա ն ի տիտղոս

էր կրում։ Բայց Մելիք-Շահնազարի օգնութեամբ նրանց բոլորին կարողացաւ հետզհետէ զսպել։

Իսկ հայոց մելիքների վերաբերութեամբ դեռ վճռական քայլ չէր անում նա, այլ աշխատում էր առանձնացնել նրանց, աշխատում էր երկպառակութիւն սերմանել նրանց մէջ եւ փոքր առ փոքր նրանց ուժերը թուլացնել։

Սկսեց Խաչէնի մելիքութիւնից, որ մնացածներից աւելի մօտ էր Շուշի բերդին։ Այստեղ ամենահին ժամանակներից իշխում էին Հասան-Ջալալեան իշխանների ժառանգները։ Դրանք դարերի ընթացքում այնքան բազմացել էին, որ Խաչէն գաւառն ամենամանր կտորներով բաժանուած էր այդ տոհմի ներկայացուցիչների ձեռքում, որոնք բնականաբար շատ հաշտ չէին կարող լինել միմեանց հետ։ Փանահ-խանը մտածեց ստեղծել այստեղ մի նոր մելիքութիւն՝ նրանց բոլորին հետզհետէ ոչնչացնելու նպատակով։ Նրան զօրավիգ եղաւ ինքը Մելիք-Շահնազարը։

Մենք տեսանք որ երբ Մելիք-Շահնազարն սպանեց իւր եղբօրը՝ Մելիք-Յովսէփին, եւ բռնութեամբ գրաւեց Վարանդայի իշխանութիւնը, սպանուածի որդիներից մէկին դայեակը փախցրեց Խաչէն գաւառը եւ թագցրեց իւր քեռու տանը։ Մանուկի քեռին էր Հասան-Ջալալեան իշխան Մելիք-Ալահվերդին։ Մտածելով որ մի ժամանակ այդ մանուկը կը մեծանայ եւ իւր քեռու օգնութեամբ վրէժխնդիր կը լինի իւր հօր արեան համար, եւ գուցէ յետ կը խլէ հօր իշխանութիւնը, — Մելիք-Շահնազարը վճռեց ոչնչացնել թէ մանուկին եւ թէ նրա քեռուն։ Փառասէր մելիքն այդ ձեռնարկութեան մէջ իւր առանձին հաշիւներն ունէր, իսկ այդ հաշիւները նպաստաւոր

էին Փանահ-խանի համար այն կողմից, որ նա Խաչէնի մելիքութիւնները ոչնչացնելով այնտեղ կը նշանակէր իւր ցանկացած մարդուն եւ այսպիսով մի ամբողջ գաւառ իւր ձեռքը կ'առնէր։ Մելիք-Ալլահվերդին բնակվում էր իւր սեպհական ամրոցում, որ իւր պապերից մէկի անունով կոչվում էր Ուլու-պապի բերդ[1]։ Նա յայտնի էր որպէս քաջ եւ անպարտելի պատերազմող։ Երբ Փանահ-խանն ու Մելիք-Շահնազարը իրանց հայ եւ Թիւրք զօրքերով արշաւեցին նրա վրայ։ Մելիք-Ալլահվերդին մի այնպիսի սաստիկ ջարդ տուեց նրանց, որ երկու դաշնակիցները հազիւ կարողացան իրանց կեանքն ազատել՝ փախչելով եւ մտնելով Շուշի բերդը։

Այդ ժամանակ Փանահ-խանը, Մելիք-Շահնազարի խորհրդով, գաղտնի կերպով կանչեց իւր մօտ Խնձրիստան գիւղի տանուտէր Միրզախանին, որ Մելիք-Ալլահվերդուց կարգուած, նոյն գիւղի կառավարիչն էր։ Խանն առաջուց իմացած լինելով տանուտէրի փառասիրական ձգտումները, խոստացաւ, որ եթէ նա Մելիք-Ալլահվերդուն մի հնարքով կը բռնի եւ իւր ձեռքը կը տայ, ամբողջ Խաչէն գաւառի վրայ մելիք կը կարգէ նրան։

Միրզախանը, հրապուրուած խանի խոստմունքներից, դիմեց Մելիք-Ալլահվերդու մօտ, յայտնեց նրան, թէ իրան յայտնի է որ Փանահ-խանն աւելի մեծ պատրաստութիւններով յարձակուելու է նրա վրայ, եւ թէ նրա սեպհական ամրոցն այնքան յուսալի մի տեղ չէ, որի մէջ կարելի լինի պաշտպանուել թշնամու այս անգամուայ ահագին զօրութեան դէմ, եւ խորհուրդ տուեց ամրանալ

[1] Ուլու-պապի բերդը գտնվում է Խաչէն գետի մօտ, Քարամէջ կամ Օրախաչ գիւղում, Պտկէսի սուրբ Գէորգ անունով մատուռի մօտ։ Այդ ամրոցին Թիւրքերը կոչում են Բալլու-Կայա։

Կաշաթաղարերդի մէջ, որ անառիկ եւ անմատչելի դիրք ունէր: Այսպէս ապաստանեալ եւ պաշտպանեալ, Միրզախանն առաջարկեց իւր պատրաստակամութիւնը ամէն կերպով օգնելու իշխանին, աւելացնելով թէ ինքն արդէն պատրաստած ունի Կաշաթաղարերդի մէջ մի քանի ամիսների համար պաշար, ուր նա կարող է ապահով կերպով պաշտպանուել թշնամու դէմ, եթէ այդ բերդը պաշարուած կը լինի: Նա իշխանին հրաւիրեց իւր տուն, որ այնտեղից միասին գնան Կաշաթաղարերդը, որ շատ հեռու չէր Խնձրիստանից: Բայց նոյն գիշերը ընթրիքի ժամանակ դաւաճանը սենեակից դուրս եկաւ եւ իւր ետեւից կողպեց դուռը, իշխանին այնտեղ մենակ թողնելով: Այդ միջոցին Փանահ-խանի եւ Մելիք-Շահնազարի մարդիկը, որ առաջուց պահուած էին նրա տան մէջ, վրայ հասան եւ կալանաւորեցին իշխանին: Փանահ-խանը նրան տուեց դահիճների ձեռքը եւ գլխատեցին, իսկ նրա ամբողջ ընտանիքը կոտորել տուեց: Այդ ժամանակ Մելիք-Շահնազարն սպանել տուեց իւր եղբօրորդի փոքրիկ Սայի-բէկին, որ նոյն ընտանիքի մէջ պահուած էր: Ոճրագործը իւր եղբօր արեան մէջ շաղախուած ձեռքերը թաթախեց դժբախտ զաւակի արեան մէջ....:

Փանահ-խանը կատարեց իւր խոստումները. դաւաճան Միրզախանին կարգեց Խաչէնի վրայ մելիք (1755) եւ այն օրից Հասան-Ջալալեան իշխանների տիրապետութիւնը համարեա թէ ընկաւ: Թէ ինքը Մելիք-Միրզախանը եւ թէ նրա ժառանգները (Մելիք-Ալահվերդին[1] եւ Մելիք-Ղահրամանը) հաւատարմութեամբ ծառայեցին Շուշիի խաներին, եւ կորուելով հայոց մելիքների դաշ-

[1] Այդ Մելիք-Ալահվերդուն պէտք չէ շփոթել Հասան-Ջալալեան Մելիք-Ալահվերդու հետ:

նակցութիւնից, անթիւ վնասներ հասցրին Ղարաբաղի հայոց իշխանութիւններին։

Եւ այսպէս Ղարաբաղի հինգ մելիքութիւններից երկուսը՝ Վարանդան եւ Խաչէնը, անցան Փանահ-խանի կողմը։

## XII.

Մնում էին երեք մելիքութիւնները՝ Գիւլիստանը, Ջրաբերդը եւ Տիզակը։

Գիւլիստանում տիրում էր Մելիք-Բեգլարեան Մելիք-Յուսուբը, Ջրաբերդում տիրում էր Մելիք-Իսրայէլեան Ալլահ-Ղուլի-սօլթանը, իսկ Տիզակում տիրում էր Մելիք-Աւանեան Մելիք-Եսային։

Տեսնելով որ մի կողմից Մելիք-Շահնազարը իւր բերդը, Շուշին, պարգեւեց Փանահ-խանին եւ նրա անձնահաւատարիմ դաշնակիցը դարձաւ, միւս կողմից Խաչէնում մի նոր մելիքութիւն կազմուեցաւ, որ նոյնպէս մահմեդական խանի դաշնակից եղաւ, — վերոյիշեալ երեք մելիքները ոչ միայն չվհատեցան, այլ իրանց միացած ուժերով սկսեցին սաստիկ պատերազմներ մղել Փանահ-խանի եւ նրա հայ դաշնակիցների հետ։ Այդ արիւնահեղ պատերազմները, ինչպէս կը տեսնենք, տեւեցին ամբողջ քսան տարի, որոնք խիստ զգալի վնասներ պատճառեցին Ղարաբաղին։

Վերջը Փանահ-խանն անճար մնալով, մտածեց հաշտութիւն խօսել Ալլահ-Ղուլի-սօլթանի, Մելիք-Յուսուբի եւ Մելիք-Եսայու հետ։ Խաղաղութեան պայմանների վրայ բանակցելու համար որոշուեցաւ ոչ թէ Շուշի բերդը, այլ մի չէզոք տեղ՝ Ամարասայ վանքը։ Ջրաբերդի Ալլահ-Ղուլի սօլթանն ուղարկուեցաւ հայոց դաշնակից մելիքների

կողմից իբրև հաւատարմատար Ամարասայ վանքը։ Այնտեղ եկաւ և Փանահ-խանը իւր հաւատարիմ Մելիք-Շահնազարի հետ։

Այդ միջոցներում Փանահ-խանի մօտ միևնոյն վանքում տեսութեան է գալիս Նախիջևանի Հէյդար-Ղուլի-խանը։ Երբ նրան ներս են տանում, Փանահ-խանի մօտ նստած է լինում հայոց մելիքների հաւատարմատարը՝ Ալլահ-Ղուլի-սուլթանը։ Տեսնելով շքեղ կերպով հագնուած, հսկայատիպ սուլթանին, Նախիջևանի խանը շփոթվում է, և կարծելով թէ այդ գեղեցիկ տղամարդը լինելու է ինքը Փանահ-խանը, ողջունում է նրան և ամենայն խոնարհութեամբ սկզբից նրան է գլուխ տալիս։ Բայց յետոյ, երբ հասկացնում են նրան իւր սխալը, նա յիշեցնում է Փանահ-խանին պարսից երևելի բանաստեղծի՝ Սաադիի խօսքը. “Տասը դէրվիշ կարող են մի փալասի կտորի վրայ պառկել, բայց երկու թագաւոր չեն կարող մի աշխարհի մէջ հաշտ ապրել„....։

Այդ խօսքերով նենգաւոր նախիջևանցին կամեցաւ հասկացնել Փանահ-խանին, թէ նրա իշխանութիւնը չէ կարելի ապահովուած համարել, մինչև որ Ղարաբաղում կը գտնուեն այս տեսակ նշանաւոր հայ պետեր։ Փանահ-խանը, արդարև, դաւաճանեց իւր պայմանին. Ալլահ-Ղուլի սուլթանին կալանաւորեց, տարաւ Շուշի բերդում բանտարկեց և մի քանի օրից յետոյ գլխատել տուեց (1756)։ Այսպէս վարուեցաւ իւր բարերարի հետ, որի մօտ առաջ ծառայում էր նա և որ ազատեց նրա կեանքը Նադիր-շահի դահիճների ձեռքից...։

Այդ անցքը, որի իսկութիւնը չէ ուրանում և պարսից պատմութիւնը, Ղարաբաղի ժողովրդական աւանդութիւնների մէջ լեգենդական ձև է ստացել։ Մինչև այսօր

չէին մոռացուել ժողովրդի բերանում այն երգերը, որ Հոկայ կալանաւորը երգում էր իւր բանտի մէջ։ Նա կոչում էր իւր քաջ եղբօրը՝ Մելիք-Աթամին, նա կոչում էր իւր անպարտելի նիզակակցին՝ Դալի-Մահրասային, յորդորում էր Շուշին քարուքանդ անել, արիւնով շաղախել նրա մոխիրն ու հողը եւ իրան ազատել բանտից։ Դրանցից եւ ոչ մէկը չէ յայտնվում. Հոկայի ձայնին օգնութեան է հասնում սիրող կինը. նա Փանահ-խանի հարեմի ամենագեղեցիկն էր։ Գիշերը կալանաւորին ընթրիք տանելու ժամանակ, սիրահարուած գեղեցկուհին թագցնում է փլաւի մատուցարանի մէջ բանտի եւ նրա երկաթեայ ոտնակապերի բանալիները, որ նա բաց անէ եւ փախչէ։ Բայց Հոկան պատասխանում է, Հայոց քաջերը փախչելու սովորած չեն. եթէ ինքը ցանկանայ, այդ բանալիներին կարօտութիւն չունի։ Եւ նա զօրաւոր ձեռքով փշրում է իւր շղթաները, եւ նրանց կտորտանքը լցնելով փլաւի մատուցարանի մէջ, յետ է ուղարկում, ասելով. "դաւաճանութիւնը կը պատժուի... իւր արիւնն առանց վրէժխնդրութեան չի մնայ,...։

Ալլահ-Ղուլի-սուլթանի աղէտալի մահից յետոյ Ջրաբերդի մելիքութեան կառավարութիւնն անցաւ նրա կրտսեր եղբօր՝ Մելիք-Աթամի ձեռքը։ Դա իւր բոլոր յատկութիւններով շատ նման էր իւր քաջ եղբօրը։ Մանկութեան հասակից իբրեւ պատանդ պահուած լինելով Դաղստանի Խօսրով սուլթանի մօտ, Մելիք-Աթամը վարժուեցաւ տեղային լեռնաբնակների հերոսական յատկութիւնների մէջ։ Նրան ազատեց այնտեղից Նադիր-շահը իւր Դաղստանի արշաւանքի ժամանակ։

Զրկելով Ջրաբերդը իւր հզօր իշխանից, Փանահ խանը դաշնակից մելիքների ուժերը բոլորովին թուլացած

կարծեց, եւ նա յանգգնաբար հրաման գրեց Գիւլիստանի Մելիք-Յուսուբին, բացարձակ կերպով պահանջելով նրանից, որ հպատակութիւն ընդունէ։ Այդ ժամանակն էր, որ Մելիք-Յուսուբի որդի Մելիք-Բէգլար Բ-ը, որ սաստիկ դոռող եւ դիւրաբորբոք երիտասարդ էր, թոյլ չտուեց իւր հօրը պատասխանելու, ասելով թէ ինքը կը տայ Փանահ-խանի պատասխանը։ Եւ նա իւր սուրը բռնելով խանի պատգամաւորի գլխի վրայ, ստիպեց նրան կուլ տալ բերած հրամանագիրը։ Երբ խեղճ պատգամաւորը սարսափելով կուլ տուեց թղթի վերջին պատառը, երիտասարդն ասաց նրան. “Հիմա գնա. ինչ որ կերար այստեղ, նրա արտաքրութիւնը... կը լինի Փանահ-խանի պատասխանը„[1]....։

Այդ անցքից յետոյ աւելի սաստիկ կերպով բորբոքուեցաւ պատերազմը Փանահ-խանի եւ դաշնակից մելիքների մէջ։ Վարանդայի Մելիք-Շահնազարը եւ Խաչէնի Մելիք-Միրզախանը, ինչպէս առաջ նոյնպէս եւ այժմ հաւատարիմ մնացին հայոց ոխերիմ խանին։ Ոչ թէ միայն իրանց խորհուրդներով, այլ շատ անգամ իրանց զօրքերով օգնում էին նրան։ Բայց չնայելով այդ բոլորին, դաշնակից մելիքները (Գիւլիստանի Մելիք-Յուսուբը, Ջրաբերդի Մելիք-Աթամը եւ Տիզակի Մելիք-Եսային) այն աստիճան նեղութեան մէջ էին դրել Փանահ-խանին, որ նրա Շուշի բերդը մշտական պաշարման դրութեան մէջ էին պահում։

Մինչեւ այսօր առակ է դարձել Ղարաբաղի ժողովրդի մէջ, թէ Թիւլի-Արզումանը, Դալի-Մահրասան եւ Զալաղան-ուզրաշին ամբողջ եօթն տարի թոյլ չտուեցին, որ

[1] Այդ պատմական փաստը չէ մոռացուած եւ “Ղարաբաղի Աստղագէտը„ կոչուած վէպի երկրորդ հատորի Թ գլխում։

մի թուրք անցկենար Մաղէ-կամուրջից[1] դէպի Ջրաբերդի և Գիւլիստանի կողմերը։

Յիշեալ երեք անձնաւորութիւնները երեք հերոսներ են, որոնց դեռ ժողովուրդը չէ մոռացել։ Ես աւելորդ չեմ համարում ծանօթացնել նրանց մեր ընթերցողներին։

Դալի-Մահրասա թուրքաց լեզուով նշանակում է գիժ-աբեղայ։ Եւ իրաւ, այդ մարդն աբեղայ էր, Ջրաբերդի Եղիշէ առաքելոյ վանքի միաբան։ Ամեն ուխտաւոր և այսօր կարող է տեսնել յիշեալ վանքում այն բարձր աշտարակը, որի մէջ, առանձնացած վանականների աղօթող միաբանութիւնից, բնակվում էր "գիժը"։ Նրա իսկական անունը Աւագ վարդապետ էր, բայց ժողովուրդը նրան դալի (գիժ) տիտղոսը տուեց։ Մի այսպիսի տիտղոս կրում էին արեւելքի տասնեւվեցերորդ դարու հերոսը՝ Քեօռ-օղլին և նրա խմբի մէջ գտնուած քաջերը. դրանք կոչվում էին Քեօռ-օղլու դալիներ (գժեր)։

Դալի-Մահրասան Ղարաբաղի հայոց Քեօռ-օղլին էր. ժողովուրդը գուցէ մինչեւ յաւիտեան կը յիշէ այն բոլոր հրաշքները, որ կատարել է նա իւր կռիւների մէջ։ Երբ նստում էր իւր նշանաւոր մոխրագոյն նժոյգի վրայ և կայծակի նման նետվում էր դէպի պատերազմի դաշտը, նրա ահարկու, որոտալից ձայնը բաւական էր թշնամուն սարսափեցնելու համար։ Եկեղեցու մոլեռանդութիւնը պատժեց գիժ աբեղային նրա կատարած արիւնհեղութիւնների համար։ Սիմէօն կաթողիկոսի ժամանակ նրան տարան Ս. Էջմիածին և բանտարկեցին սառցատան մէջ, որ ապաշխարէ։ Մի օր իւր բանտի մէջ լսեց նա, որ վանքում ինչ որ աղմուկ և իրարանցում է տիրում։ Նրա

[1] Մաղէ-կամուրջ կոչվում է Գարգար գետի վրայ գտնուած կամուրջը Շուշի բերդի մօտ։

կարծեց, եւ նա յանգգնաբար հրաման գրեց Գիւլիստանի Մելիք-Յուսուբին, բացարձակ կերպով պահանջելով նրանից, որ հպատակութիւն ընդունէ։ Այդ ժամանակն էր, որ Մելիք-Յուսուբի որդի Մելիք-Բէգլար Բ-ը, որ սաստիկ դառող եւ դիւրաբորբոք երիտասարդ էր, թոյլ չտուեց իւր հօրը պատասխանելու, ասելով թէ ինքը կը տայ Փանահ-խանի պատասխանը։ Եւ նա իւր սուրը բռնելով խանի պատգամաւորի գլխի վրայ, ստիպեց նրան կուլ տալ բերած հրամանագիրը։ Երբ խեղճ պատգամաւորը սարսափելով կուլ տուեց թղթի վերջին պատառը, երիտասարդն ասաց նրան. "Հիմա գնա. ինչ որ կերար այստեղ, նրա արտադրութիւնը... կը լինի Փանահ-խանի պատասխանը"[1]...։

Այդ անցքից յետոյ աւելի սաստիկ կերպով բորբոքուեցաւ պատերազմը Փանահ-խանի եւ դաշնակից մելիքների մէջ։ Վարանդայի Մելիք-Շահնազարը եւ Խաչէնի Մելիք-Միրզախանը, ինչպէս առաջ նոյնպէս եւ այժմ հաւատարիմ մնացին հայոց ոխերիմ խանին։ Ոչ թէ միայն իրանց խորհուրդներով, այլ շատ անգամ իրանց զօրքերով օգնում էին նրան։ Բայց չնայելով այդ բոլորին, դաշնակից մելիքները (Գիւլիստանի Մելիք-Յուսուբը, Ջրաբերդի Մելիք-Ադամը եւ Տիզակի Մելիք-Եսային) այն աստիճան նեղութեան մէջ էին դրել Փանահ-խանին, որ նրա Շուշի բերդը մշտական պաշարման դրութեան մէջ էին պահում։

Մինչեւ այսօր առակ է դարձել Ղարաբաղի ժողովրդի մէջ, թէ Թիւլի-Արզումանը, Դալի-Մահրասան եւ Ջալաղան-ուզբաշին ամբողջ եօթն տարի թոյլ չտուեցին, որ

[1] Այդ պատմական փաստը չէ մոռացուած եւ "Ղարաբաղի Աստղագէտը" կոչուած վէպի երկրորդ հատորի Թ գլխում։

մի թուրք անցկենար Մաղէ-կամուրջից[1] դէպի Ջրաբերդի եւ Գիւլիստանի կողմերը։

Յիշեալ երեք անձնաւորութիւնները երեք հերոսներ են, որոնց դեռ ժողովուրդը չէ մոռացել։ Ես աւելորդ չեմ համարում ծանօթացնել նրանց մեր ընթերցողներին։

Դալի-Մահրասա թուրքաց լեզուով նշանակում է գ ի ժ - ա բ ե ղ ա յ։ Եւ իրաւ, այդ մարդն աբեղայ էր, Ջրաբերդի Եղիշէ առաքելոյ վանքի միաբան։ Ամէն ուխտաւոր եւ այսօր կարող է տեսնել յիշեալ վանքում այն բարձր աշտարակը, որի մէջ, առանձնացած վանականների աղօթող միաբանութիւնից, բնակվում էր «գիժը»։ Նրա իսկական անունը Աւագ վարդապետ էր, բայց ժողովուրդը նրան դ ա լ ի (գիժ) տիտղոսը տուեց։ Մի այսպիսի տիտղոս կրում էին արեւելքի տասնեւվեցերորդ դարու հերոսը՝ Քեօռ-օղլին եւ նրա խմբի մէջ գտնուած քաջերը. դրանք կոչվում էին Քեօռ-օղլու դ ա լ ի ն ե ր (գժեր)։

Դալի-Մահրասան Ղարաբաղի հայոց Քեօռ-օղլին էր. ժողովուրդը գուցէ մինչեւ յաւիտեան կը յիշէ այն բոլոր հրաշքները, որ կատարել է նա իւր կռիւների մէջ։ Երբ նստում էր իւր նշանաւոր մոխրագոյն նժոյգի վրայ եւ կայծակի նման նետվում էր դէպի պատերազմի դաշտը, նրա ահարկու, որոտալից ձայնը բաւական էր թշնամուն սարսափեցնելու համար։ Եկեղեցու մոլեռանդութիւնը պատժեց գիժ աբեղային նրա կատարած արիւնհեղութիւնների համար։ Սիմոն կաթողիկոսի ժամանակ նրան տարան Ս. Էջմիածին եւ բանտարկեցին սառցատան մէջ, որ ապաշխարէ։ Մի օր իւր բանտի մէջ լսեց նա, որ վանքում ինչ որ աղմուկ եւ իրարանցում է տիրում։ Նրա

[1] Մաղէ-կամուրջ կոչվում է Գարգար գետի վրայ գտնուած կամուրջը Շուշի բերդի մօտ։

հարցին պատասխանեցին, թէ Ջալալի քրդերը եկան վանքի անասունները թալանեցին, հիմա վտանգ կայ, որ վանքն էլ կողոպտեն։ — Կարո՞ղ էք տալ ինձ մի ձի եւ մի քանի զէնք, ասաց ապաշխարողը։ Երբ նրա խնդիրքը կատարուեցաւ, նա նստեց ձին եւ նետուեցաւ Ջալալիների ետեւից։ Մի քանի ժամից յետոյ վերադարձաւ նա՝ յետ բերելով քրդերի տարած աւարը։ Այդ օգուտը վանքին տալուց յետոյ նրան արձակեցին, խոստմունք առնելով, որ այլեւս մարդասպանութիւն չանէ։ Բայց նա չկատարեց իւր խոստմունքը։ Հայրենիքի թշնամիներին սպանելը նա մեղք չէր համարում, եւ շարունակում էր մասնակցել մելիքների բոլոր պատերազմների մէջ։ Միանգամ Գանձակ քաղաքի մօտ, լէզգիների հետ պատերազմելու ժամանակ, գիշերը վրայ հասաւ։ Նա կռուից յոգնած նստել էր մի գերեզմանաքարի վրայ, որ փոքր ինչ հանգստանայ։ Նրա շուրջը ծածկուած էր դիակներով, որ ընկել էին իւր ձեռքով։ Այդ միջոցին վիրաւոր լէզգիներից մէկը, որի շունչը դեռ չէր կտրուած, ատրճանակը բարձրացրեց եւ գնդակով զարկեց նրան։ Քաջի մարմինը թաղուեցաւ Գանձակի մայր եկեղեցու գաւթում։

Գժի հետ ծանօթացանք, հիմա անցնենք Թիւլի-Արզումանին։

Թիւլի թիւրքաց լեզուով նշանակում է աւազակ, բայց ոչ այն տեսակ մանր աւազակներից, որոնք գիշերը ծածուկ կերպով մտնում են քնած քաղաքացու տունը եւ կողոպտում են նրան։ Թիւլին բացարձակ կերպով է գործում. օր-ցերեկով քարաւաններ, գիւղեր եւ քաղաքներ է կողոպտում։ Այդպէս էր եւ Արզումանը։ Նա Մելիք-Աթամի հօր (Մելիք-Իսրայէլի) հովուի որդին էր, մանկութեան օրերում ոչխարներ էր արածացնում,

իսկ յետոյ Մելիք-Աթամի ընտիր զօրապետներից մէկը դարձաւ։

Փանահ-խանն այն աստիճան նեղուած էր Թիւլի-Արզումանից, որ մի հնարքով նրա հօրը, Սարգսին, բռնել տուեց, տարաւ Շուշի բերդում իբրեւ պատանդ պահեց, որ գուցէ դրանով ազատուէր որդու հասցրած վնասներից։ Մի օր խանն ասաց Սարգսին. — Խրատիր քո որդուն, որ դադարէ չարագործութիւնից. նա Ղարաբաղի երկիրն աւերակ դարձրեց. Մաղէ-կամուրջը թողեց կարօտ մարդկանց անցուդարձից։ — Ես Արզուման անունով որդի չունիմ. պատասխանեց ծերունի հայրը սառնասրտութեամբ։ — Ի՞նչպէս չունիս, հարցրեց խանը բարկանալով. — մի՞թէ այն արիւնարբու Արզումանը, որ իմ երկիրները կողոպտում է, որ իմ շինականների տները հրդեհում է, որ ինձ ամեն օր հանգստութիւն չէ տալիս, միթէ այդ աւազակը քո որդին չէ։ — Այո՛, իմ որդին չէ, պատասխանում է դառնացած ծերունին, — եթէ նա իմ որդին լինէր, քեզ մինչեւ այսօր կենդանի չի պիտի թողնէր եւ քո բերդի աւերակները քո գերեզմանը պիտի դարձնէր....։

Խանը հրամայեց իսկոյն գլխատել յանդուգն ծերունուն։ Իսկ Արզումանը սպանուեցաւ Գանձակի պաշարման ժամանակ, որի մանրամասնութիւնները կը տեսնենք յետոյ։

Չալալան-իւզբաշու պատմութիւնը կարճ է. նա բովանդակվում է հէնց իւր մականուան մէջ, որ ժողովուրդը տուել էր նրան։ Դա բառացի թարգմանութեամբ նշանակում է յափշտակող կամ ասպատակող հարիւրապետ։ Եւ իրաւ, նա աւելի մի աւազակապետ էր քան թէ զօրապետ։ Մինչեւ այսօր Ջրաբերդի գաւառում, Երիցմանկանց վանքի հանդէպ, մի նեղ ձորի մէջ, որի

երկու կողմից բարձրանում են ահագին անտառապատ լեռներ, Թրղի գետի ափի մօտ ցոյց են տալիս մի հին ամրոցի աւերակներ։ Այստեղ էր բնակվում “յափշտակող եւ ասպատակող հարիւրապետը։„ Նրա իսկական անունը յայտնի չէ. ժողովուրդը իւր սիրելի հերոսին կոչում էր իւր արհեստի անունով։ Այն եւս յայտնի չէ, թէ որպիսի վախճան ունեցաւ այդ քաջը։ Միայն պատմում են, թէ դա էր այն պատգամաւորներից մէկը, որոնք անդադար դիմում էին դէպի ռուսաց արքունիքը եւ իրանց հայրենիքի փրկութեան համար օգնութիւն էին խնդրում։ Երբ տեսաւ դիպլօմատիան չօգնեց, սկսեց գործել սրով։

## XIII.

Հայոց դաշնակից մելիքները նկատեցին որ Փանահ-խանին խպառ ոչնչացնելու եւ նրա կողմնակից երկու հայ մելիքներին (Մելիք-Շահնազարին եւ Մելիք-Միրզախանին) պատժելու համար պէտք էր արտաքին ուժերից եւս օգուտ քաղել։

Երբ Պարսկաստանից եկաւ Ղարաբաղի կողմերը ուրմեցի օվշար Փաթալի-խանը (1761) Գիւլիստանի Մելիք-Իւսուբը եւ Ջրաբերդի Մելիք-Աթամը միացան նրա հետ։ Այդ Փաթալի-խանը Նադիր-շահի սիրելի եւ քաջ զօրապետներից մէկն էր[1]։ Շահի մահից յետոյ, Պարսկաստանում յուզուած խռովութիւնների ժամանակ, Փաթալի-խանը սրի ուժով հնազանդեցրեց ամբողջ Ատրպատականը, յետոյ արշաւեց դէպի Ղարաբաղի կողմերը եւ մի-

[1] Դա միեւնոյն օվշար (ցեղի անուն է) Ֆաթալի-խանն է, որ Տաթեւի վանքը կողոպտեց (1762), մի մասը աւերակ դարձրեց եւ Տաթեւի վանահայր Յովհաննէս եպիսկոպոսին սպանել տուեց։

անալով հայոց մելիքների հետ, նա պաշարեց Շուշի բերդը։ Փանահ-խանը եւ Մելիք-Շահնազարն առժամանակ կարողացան քաջութեամբ պաշտպանուել, բայց յետոյ անճարացած, ստիպուած եղան անձնատուր լինել։ Փաթալի-խանը մեղանչեց այն պայմանի դէմ, որ դրել էր իրան օգնող երկու մելիքների՝ Աթամի եւ Իւսուբի հետ։ Այդ պայմանը կայանում էր նրանում, որ Փաթալի-խանը պիտի բաւականանար միայն Շուշի բերդի կողոպուտով, իսկ Փանահ-խանին պիտի յանձնէր Մելիք-Աթամի եւ Մելիք-Իւսուբի ձեռքը, ինչպէս կամենային, այնպէս վարուէին նրա հետ։ Բայց նա ստանալով Փանահ-խանից տասն հազար թուման փող եւ նրա որդի երիտասարդ Իբրահիմ-աղային պատանդ առնելով, իւր հետ տարաւ Պարսկաստան։

Այդ պարտութիւնը երկար մոռանալ չկարողացաւ Փանահ-խանը, պահելով իւր սրտում այն ոխը, որ եթէ հայոց մելիքները չօգնէին, պարսիկ խանը չէր կարող գրաւել իւր բերդը եւ իւր որդուն որպէս գերի տանել Պարսկաստան։ Այդ անցքն աւելի գրգռեց Փանահ-խանի թշնամութիւնը դէպի հայոց դաշնակից մելիքները եւ նորանոր կռիւների առիթ տուեց։

Հայոց դաշնակից մելիքներին հարկաւոր էին նոր ուժեր։ Պէտք է ի նկատի առնել որ Ղարաբաղի մելիքութիւնների աշխարհագրական բաժանումներն այնպէս էին դասաւորուած, որ երեք դաշնակից մելիքները խիստ դժուարութեամբ էին կարողանում միանալ եւ ընդհանուր ուժերով դէմ դնել թշնամուն։ Որպէս մեզ յայտնի է, դաշնակից երեք մելիքութիւնները՝ Գիւլիստանի, Ջրաբերդի եւ Տիզակի մելիքութիւններն էին։ Գիւլիստանը եւ Ջրաբերդը սահմանակից էին եւ այդ պատճառով կարող

էին իրանց ուժերը միացնել, իսկ Դիզակը իւր աշխարհագրական դիրքով բաժանուած էր այդ երկու գաւառներից։ Դիզակի եւ յիշեալ երկու գաւառների մէջտեղում ընկած էին՝ Խաչէնի մելիքութիւնը, Շուշի բերդը եւ Վարանդայի մելիքութիւնը, որոնք կապուած էին Փանահ-խանի հետ։ Ուրեմն թշնամին մտել էր դաշնակիցների մէջտեղը։ Այդ էր պատճառը, որ Գիւլիստանի եւ Ջրաբերդի մելիքները շատ օգուտ չէին կարողանում քաղել իրանցից անջատուած Դիզակի մելիքից, որ այդ ժամանակ Մելիք-Եսային էր։

Գիւլիստանի Մելիք-Յուսուբը եւ Ջրաբերդի Մելիք-Աթամը դիմում են վրաց իշխան Հերակլէի հայր Թէյմուրազին, առաջարկում են միանալ նրա հետ, Փանահ-խանի իշխանութիւնը ոչնչացնելու համար, խոստանում են, որ իրանք եւս պատրաստ կը լինին ամեն մի հարկաւորած դէպքում օգնել վրաց իշխանին, որպէս հաւատարիմ դաշնակիցներ։ Թէյմուրազն ընդունում է հայոց մելիքների առաջարկութիւնը, որովհետեւ ինքը եւս թշնամութիւն ունէր Փանահ-խանի հետ։ Նա հաւաքում է վրացիների, օսերի, խեւսուրների եւ այլ լեռնացիների ահագին խառնիճաղանճ բազմութիւն եւ արշաւում է դէպի Ղարաբաղի կողմերը (1762)։ Մելիք-Աթամը եւ Մելիք-Յուսուբը իրանց զօրքերով միանում են նրա հետ։ Ասկարանի աւերակների[1] մօտ բանակ է դրվում. հայոց մելիքները մատակարարում են իրանց դաշնակից հիւրերի բոլոր պաշարեղէնները։

Այդ միջոցին Փանահ-խանը նոյնպէս անգործ չէ մնում. Նա ամրացնում է իւր բերդը՝ Շուշին, օգնու-

[1] Ասկարանի աւերակները Շուշի բերդից մօտաւորապէս 30 վերստ հազիւ հեռաւորութիւն ունին։

թեան է կանչում իւր երկու հաւատարիմներին՝ Մելիք-Շահնազարին եւ Մելիք-Միրզախանին, որոնք իրանց ուժերով միանում են նրա հետ:

Ճակատամարտը կատարվում է Գարգար գետի ափերի մօտ, Ասկարանի աւերակներից փոքր ինչ հեռու: Փանահ-խանի զօրքերը ջարդվում են եւ ինքը փախչում է դէպի Պարսկաստան: Բայց երկու քաջեր՝ Դալի-Մահրասան (Աւագ վարդապետը) եւ Թիւլի-Արզումանը, փախստականին Խուդափիրինի կամուրջից[1] բռնելով յետ են բերում:

Մելիք-Շահնազարը յաղթուելուց յետոյ փախչում է եւ ամրանում իւր Աւետարանոց բերդում. Մելիք-Միրզա-խանն էլ նրա մօտ ապաստան է գտնում: Այդ միջոցին հայոց եւ վրաց միացած ուժերը պաշարում են Աւետարանոց բերդը, եւ մի քանի օրուայ ընդդիմադրութիւնից յետոյ, գրաւում են նրան: Մելիք-Շահնազարը եւ Մելիք-Միրզա-խանը գերի են ընկնում. Աւետարանոց բերդն աւերակ է դառնում. այդ երկու մելիքների եւ Փանահ-խանի երկրները բոլորովին աւարի են առնում, հրդեհում են եւ ամեն ինչ ոչնչացնում:

Այդ բոլորից յետոյ Թէյմուրազը յիշեալ երկրների իշխանութիւնը տալով Մելիք-Աթամին եւ Մելիք-Իւսուբին, կամենում է վերադառնալ դէպի Վրաստան, Փանահ-Խանին, Մելիք-Շահնազարին եւ Մելիք-Միրզա-խանին իւր հետ տանելով որպէս գերիներ: Բայց հայոց դաշնակից մելիքները, Թէյմուրազի հետ սկզբից դրած պայմանի համեմատ, պահանջում են, որ Փանահ-խանին եւ յիշեալ երկու մելիքներին իրանց ձեռքը տայ, ինչպէս

[1] Երասխ գետի վրայ:

կամենան, այնպէս վարուեն նրանց հետ, իսկ ինքը պէտք է բաւականանայ միայն պատերազմական աւարով: Թէյմուրազը կամենում է նոյն խաբէութիւնը գործ դնել իւր դաշնակիցների հետ, ինչ խաբէութիւն որ գործ դրեց օվշար Փաթալի-խանը: Նա բացարձակ կերպով չէ մերժում Մելիք-Աթամի եւ Մելիք-Իւսուբի պահանջը, բայց զանազան պատրուակներով յետաձգում է, մինչեւ իւր զօրքերի եւ գերիների հետ դուրս է գալիս Ղարաբաղի սահմաններից:

Մելիք-Աթամը եւ Մելիք-Իւսուբը հասկանում են, որ վրաց ընչաքաղց իշխանը դիտաւորութիւն ունի մեծագումար փրկանք ընդունել Փանահ-խանից եւ նրա երկու մելիքներից, եւ այնուհետեւ նրանց բաց թողնել: Այդ առիթ է տալիս սաստիկ հակառակութեան. հայ եւ վրաց դաշնակցութիւնը քանդվում է եւ Մելիք-Աթամն ու Մելիք-Իւսուբը վիրաւորուած բաժանվում են Թէյմուրազից:

Բայց Մելիք-Աթամը եւ Մելիք-Իւսուբն այնտեսակ մարդկանցից էին, որ չէին կարող անպատիժ թողնել խաբեբային: Նրանք իսկոյն դիմում են Շիրվանի կառավարիչ Հաջի-Չելեբի[1] անունով խանին եւ առաջարկում են

[1] Հաջի-Չելեբին ծագումով հայ էր: Տասնեւեօթներորդ դարու վերջերում Շիրվանի Ղաբալա կոչուած գաւառի Սօգիւթլու գիւղում բնակվում էր Բարսեղ անունով մի քահանայ, որին թիւրքերը կոչում էին “ղարա-քէշիշ„ (սեւ-քահանայ): Դա գաղթական էր Ղարաբաղի Խաչէն գաւառից եւ տեղային մելիքների տոհմից էր: “Սեւ-քահանան„ իշխանական փառասիրութիւն ունէր, գնաց Սպահան, պարսից շահից մելիքութեան ֆիրման ստացաւ: Բայց նա ունէր մի հակառակորդ Մելիք-Մուհամմէդ անունով Ղաբալա գաւառի Ղուրթղաշին գիւղում, որ թոյլ չտուեց “սեւ-քահանայի„ ստացած ֆիրմանը գործ դրուէր: Այդ Մելիք-Մուհամմէդը, ինչպէս երեւում է, նոյնպէս հայոց ծագումից էր, բայց մահմեդականութիւն ընդունած: “Սեւ-քահանան„ նոյնպէս ընդունում է մահմեդականութիւն, որ կարողանայ իւր ֆիրմանը գործ դնել: Բայց հակառակորդն աւելի

նրան իրանց դաշնակցութիւնը, միանալու միասին վրաց իշխանի դէմ։ Այդ Հաջի-Չելէբին հաշտ էր հայոց մելիքների հետ. մենք տեսանք որ դեռ մի քանի տարի առաջ նա միացաւ Մելիք-Աթամի եւ Մելիք-Իւսուբի հետ եւ միասին քանդեցին Փանահ-խանի Ասկարան անունով բերդը։ Նա սաստիկ ատելութիւն ունէր դէպի վրացիները, այդ պատճառով սիրով ընդունեց Մելիք-Աթամի եւ Մելիք-Իւսուբի առաջարկութիւնը։

Մինչեւ Հաջի-Չելէբիի Կուր գետն անցնելը, մինչեւ հայոց երկու մելիքների հետ միանալը, կատարուեցաւ մի այլ անցք։ Վրաց իշխան Թէյմուրազի զօրքերը՝ Գանձակի մօտից անցկենալու ժամանակ կողոպտեցին ճանապարհի վրայ պատահած գիւղերը։ Նրա առաջը դուրս եկաւ տեղային իշխան Շահվերդի-խանը. երկուսի մէջ սաստիկ կռիւ ծագեց։ Շահվերդի-խանը գերի բռնուեցաւ։ Այդ միջոցին վրայ հասաւ Հաջի-Չելէբին հայոց երկու մելիքների հետ։ Մի թեթեւ ճակատամարտից յետոյ, որ կատարուեցաւ Շէյխի-Նիզամի կոչուած տեղում, վրացիները յաղթուեցան եւ թողնելով իրանց յափշտակած բոլոր աւարը, սկսեցին փախչել դէպի Թիֆլիզ։ Հայոց եւ Հաջի-Չելէբիի զօրքերը հետամուտ եղան, հալածեցին նրան մինչեւ Սնըղի կամուրջը, անցան Ղազախի եւ Շամշադինի գաւառները, եւ ամեն տեղ թալանելով յետ դարձան։

Բայց այն, ինչ որ հայոց մելիքների ամենագլխաւոր ցանկութիւնն էր, դժբաղդաբար չկատարուեցաւ. Նրանք

---

զօրաւոր է լինում եւ քահանայի կրօնափոխութիւնն անցնում է ապարդիւն։ Սեւ-քահանայի որդին էր Ղասաբ-Ղուրբանալին, որ մի հասարակ մսավաճառ էր։ Իսկ այդ հասարակ մսավաճառից ծնուեցաւ Հաջի-Չելէբին, որ Շիրվանի զօրաւոր խաների նախահայրն եղաւ։

չկարողացան ձեռք ձգել ոչ Փանահ-խանին, ոչ Մելիք-Շահնազարին եւ ոչ էլ Մելիք-Միրզախանին, որովհետեւ մինչեւ նրանց հասնելը, Թէյմուրազը՝ յիշեալ գերիներից մեծ գումար ստանալով, բաց էր թողել նրանց։ Հայոց մելիքները կարողացան ազատել միայն Գանձակի Շահվերդի-խանին, եւ այդ երախտիքն ապագայում մեծ օգուտ ունեցաւ, որովհետեւ, որպէս պիտի տեսնենք յետոյ, Գանձակի խաների եւ հայոց մելիքների մէջ կազմուեցաւ սերտ բարեկամական յարաբերութիւն։ Գանձակի բերդը դարձաւ հայոց մելիքների եւ նրանց ժառանգների ապահով ապաստարան. ամեն մի տագնապի եւ դժուարին դէպքերի ժամանակ այստեղ էին պատսպարվում։

## XIV.

Գանձակի Շահվերդի-խանը[1], բացի վերոյգրեալ պատճառներից, վաղուց արդէն երախտապարտ էր Մելիք-Աթամին եւ նրա լաւ բարեկամն էր։ Երբ Շահվերդի-խանի հայրը մեռաւ, նրա եղբայրը՝ Մամատ-խանը, կամենում էր սպանել նրան Գանձակի խանութիւնը գրաւելու համար։ Այդ միջոցին Շահվերդի-խանը փախաւ Ջրաբերդ Մելիք-Աթամի մօտ եւ իւր կեանքն ազատեց։ Յետոյ Մելիք-Աթամը հայոց զօրքերով նրան տարաւ Գանձակ եւ Մամատ-խանին խեղդել տալով, Շահվերդի-խանին հաստատեց իւր հօր իշխանութեան մէջ։ Այդ օգնութիւնը չմոռացաւ եւ նրա որդի Ջաւատ-խանը Մելիք-Աթամի ժառանգ Մելիք-Մէջլումի վերաբերութեամբ, որպէս պիտի տեսնենք մեր պատմութեան ընթացքում։

Իսկ Մելիք-Իւսուբը, որպէս ընթերցողին յայտնի է, մօր կողմից տոհմակից էր Շահվերդի-խանին։ Մելիք-

[1] Շահվերդի-խանը Ուղուրլու-խանի որդին էր։

Իւսուբի մայրը, Ղամար-սոլթանը, Շահվերդի-խանի եղբօր աղջիկն էր, քրիստոնէութիւն ընդունած։ Նրա պատմութիւնը յիշեցինք սկզբներում։

Թէյմուրազի հետ ունեցած պատերազմներից յետոյ Մելիք-Աթամը եւ Մելիք-Իւսուբն առժամանակ մնացին Գանձակում։ Շահվերդի-խանը նրանց հիւրասիրեց իւր մօտ։ Շահվերդի-խանը բարեսիրտ մարդ էր, որպէս առհասարակ եղել են Գանձակի խաները։ Նա ծագումով Թուրք չէր, այլ պարսիկ էր. պարսիկները համեմատաբար աւելի բարի են եղել դէպի քրիստոնեաները, քան թէ վայրենի, մոնղոլական Թուրքերը։ Իւր սահմանակից եւ հեռաւոր խաների մէջ (որպէս էին Շաքիի, Շիրվանի, Շուշիի, Դերբէնդի, Բագուի եւ այլ խաները) Շահվերդի-խանն աւելի բարձր դիրք եւ ձայն ունէր. նա պարսից կառավարութիւնից ճանաչուած էր որպէս բէգլէրբէգի, այսինքն իշխանների իշխան։

Շահվերդի-խանը կամեցաւ հաշտեցնել Մելիք-Աթամին եւ Մելիք-Իւսուբին Փանահ-խանի հետ։ Քսանամեայ անընդհատ պատերազմները, որոնք այնքան արեան եւ տարաբախտութիւնների պատճառ դարձան, մաշել էին երկու կողմերի ուժերը եւս։ Ժողովուրդը բոլորովին ձանձրացել էր շարունակ կռիւներից, հանգստանալ էր ուզում։ Այդ էր պատճառը, որ Մելիք-Աթամը եւ Մելիք-Իւսուբը հաճութեամբ ընդունեցին Շահվերդի-խանի առաջարկութիւնը։ Հաշտութեան գլխաւոր պայմաններն այս էին՝ որ Փանահ-խանը տէր լինի Շուշի բերդին՝ առանց իրաւունք ունենալու միջամտել մելիքների երկրի եւ հպատակների գործերի մէջ. եթէ հարկաւոր լինի պատերազմ արտաքին թշնամիների հետ, պէտք է վճռուի ընդհանուր համաձայնութեամբ. Փանահ-խանն ինքնագլուխ ոչ ոքի

հետ պատերազմելու իրաւունք չպիտի ունենայ. հայոց մելիքների երկրներից հաւաքուած հարկերը պէտք է գործ դրուեն տեղային պէտքերի համար. Փանահ-խանը Ղարաբաղի մէջ նոր նուաճումներ անելու համարձակութիւն չի պիտի ունենայ, եւայլն։

Փանահ-խանը, քանի կենդանի էր, պահպանեց խաղաղութեան այդ պայմանները։ Նրա մահից յետոյ որդին, Իբրահիմ-խանը, թէեւ առժամանակ հետեւեց հօր օրինակին, բայց յետոյ ոչնչացրեց հօր դաշնագրութիւնը եւ հանգամանքները փոխուեցան...։

Աւելորդ չէր լինի մի քանի խօսք ասել Փանահ-խանի մահուան մասին։

Մենք տեսանք, որ ուրմեցի օվշար Փաթալի-խանը, միանալով հայոց մելիքների հետ, պատերազմեց Փանահ-խանի հետ եւ նրան յաղթելով, որդուն՝ Իբրահիմ-աղային իբրեւ պատանդ տարաւ Պարսկաստան։ Այդ Փաթալի-խանը յետոյ Պարսկաստանում պատերազմ ունեցաւ Ասկարխանի հետ (որ Զէնդ-Քէրիմ-խանի եղբայրն էր) եւ սպանեց նրան։ Երբ Քէրիմ-խանը զօրացաւ եւ Պարսկաստանում շատ նուաճումներ կատարեց, կամեցաւ պատժել Փաթալի-խանին իւր եղբօր սպանման համար։ Շիրազից գալով, պաշարեց նա Փաթալի-խանի Ուրմի բերդը (1762) եւ նրան կալանաւորելով, տարաւ Շիրազ։ Այդ ժամանակ Քէրիմ-խանն ազատեց Փանահ-խանի որդի Իբրահիմ-աղային, որ Ուրմի բերդում պահուած էր, նրան եւս իւր հետ Շիրազ տարաւ։

Փանահ-խանը լսելով այդ դէպքը, մեծ ընծաներով գնաց Պարսկաստան Քէրիմ-խանի մօտ, իւր որդուն ստանալու դիտաւորութեամբ։ Երկու տարի մնաց Շիրազում. վերջը տեսնելով որ ոչ իրան են բաց թողնում եւ ոչ

որդուն են տալիս, իւր յատուկ խորամանկութեամբ մի խաղ հնարեց, որ գոնէ իւր անձը կարողանայ ազատել։ Որովհետեւ Քէրիմ-խանը, որ այդ ժամանակ իրան ամբողջ Պարսկաստանի Թագաւոր էր համարում, երկրի խաղաղութիւնը պահպանելու համար չէր ցանկանում Ղարաբաղի խռովարարին կրկին բաց թողնել իւր հայրենիքը, Փանահ-խանն իրան ձեւացրեց մեռած եւ դրուեցաւ դագաղի մէջ։ Նրա մարդիկը, դիմելով Քէրիմ-խանին, խնդրեցին որ թոյլ տայ կատարելու հանգուցեալի կտակը, նրա մարմինը տանելով իւր հայրենիքը, այնտեղ թաղելու համար։ Քէրիմ-խանը հասկացաւ խորամանկութիւնը։ — Ես նրան պէտք է պատուով յուղարկաւորեմ... ասաց նա. Նրա մարմինը ճանապարհին կը հոտի. հարկաւոր է զմռսել նրան...։

Քէրիմ-խանի հրամանով դահիճները դուրս թափեցին կենդանի հանգուցեալի փորոտիքը, որպէս անում են դիակները զմռսելու համար, յետոյ յանձնեցին նրա մարդկանց, ասելով, թէ հիմա կարող էք տանել։ Նրա մարմինը բերուեցաւ Ղարաբաղ։

Այս մահով մեռաւ Փանահ-խանը (1763)։ Այնուհետեւ Քէրիմ-խանը մտածելով, որ որդին աւելի հաւատարմութեամբ կը ծառայէ Պարսկաստանին քան թէ խորամանկ հայրը, նրան խանութեան աստիճան շնորհեց եւ ուղարկեց Ղարաբաղ։ Իբրահիմ-աղան դարձաւ Իբրահիմ-խան եւ յաջորդեց հօրը։

## XV.

Իբրահիմ-խանն սկզբում պահպանեց իւր հօր կապած դաշնադրութեան պայմանները հայոց մելիքների հետ, որովհետեւ դեռ թոյլ էր եւ բոլորովին չէր ամրացած իւր

տեղում։ Բայց յետոյ մի քանի հանգամանքներ նպաստեցին նրան զօրանալ եւ հայոց մելիքների հետ բռնութեամբ վարուել։

Այդ հանգամանքներից մէկն այն էր, որ Վարանդայի Մելիք-Շահնազարը, այդ հայրենիքի դաւաճանը, որ իր Շուշի բերդը տալով Փանահ-խանին, նրան ուժ եւ զօրութիւն տուեց, որ իր աջակցութեամբ այնքան բարձրացրեց հասարակ ջուանշիրցի խաշնարածին, որ Ղարաբաղի հայ իշխանութիւնների քայքայման պատճառը դարձաւ, — այժմ միեւնոյն Մելիք-Շահնազարը, Փանահ-խանի մեռնելուց յետոյ, իր վաղեմի բարեկամութիւնը նրա որդու հետ պահպանելու համար, կատարեց մի այլ ամօթալի գործ, նա իր աղջկան՝ գեղեցիկ Հիւրի-զադին տուեց Իբրայիմ-խանին կնութեան։ Մելիք-Շահնազարի այդ վարմունքը սաստիկ վրդովեցրեց հայոց միւս մելիքներին, մանաւանդ Տիզակի Մելիք-Եսայուն, որովհետեւ Հիւրի-զադը իր հարազատ թոռն էր[1]։

Այդ դէպքն առիթ տուեց սարսափելի կռիւների Մելիք-Շահնազարի եւ Մելիք-Եսայու մէջ, որոնք տեւեցին մի քանի տարի։ Մելիք-Շահնազարը միացաւ Խաչէնի Մելիք-Միրզախանի հետ, եւ երկուսը միասին յարձակումներ էին գործում Մելիք-Եսայու Տող բերդի վրայ։ Մի ճակատամարտի մէջ Մելիք-Միրզախանը գերի բռնուեցաւ։ Մելիք-Եսային[2] իր սուրը բռնելով նրա գլխի վրայ, արտասանեց հետեւեալ խօսքերը. "դու, Միրզախան, շատ նման ես այն դաւաճանին, որին կոչում էին Մեհրուժան։

[1] Մելիք-Շահնազարն ունէր մի քանի կին. նրա Սօնա անունով կինը Հիւրի-զադի մայրն էր եւ Մելիք-Եսայու աղջիկը։

[2] Մելիք-Եսային կարգացած մարդ էր. Նա բաւական հմտութիւններ ունէր հայոց, պարսից եւ արաբական դպրութեան մէջ։

Նա ուրացաւ մեր կրօնը, նա պարսից ձեռքում գործիք եղաւ եւ սկսեց մեր հայրենիքն աւերակ դարձնել։ Նրան, որպէս վարձատրութիւն իւր կատարած չարագործութիւնների համար, խոստացել էին Հայաստանի թագը։ Մի ճակատամարտի մէջ նա եւս քեզ նման գերի ընկաւ հայերի ձեռքը։ Այդ միջոցին հայոց զօրավարներից մէկը, որին կոչում էին Սմբատ Բագրատունի, կրակի մէջ շիկացրած շամփուրին պսակի ձեւ տուեց, եւ դնելով նրա գագաթի վրայ, ասաց. “դու ցանկանում էիր հայոց թագաւոր լինել, ահա ես, իբրեւ ասպետ եւ թագադիր, պսակում եմ քեզ„....։ Բայց դու գոնէ Մեհրուժանի չափ փառասիրութիւն չունէիր. դու միայն մի ցած դաւաճան էիր, որ առօրեայ չնչին փառքի համար Թուրք խանի եւ Մելիք-Շահնազար չարագործի արբանեակը դարձար։ Քեզ հետ պէտք է վարուել ինչպէս մի կատաղած շան հետ, որին սպանում են, որպէս զի միւս արարածները նրա կծոտելուց չվարակուեն„....։ Վերջին խօսքերի հետ նա իջեցրեց իւր սուրը (1775)։

Մելիք-Միրզախանի փոխարէն Իբրահիմ-խանը Խնաչէնի կառավարիչ կարգեց նրա որդի Մելիք-Ալահվերդուն, որ հօր նման հաւատարիմ մնաց Թուրք խանին։ Դրանով կռիւն աւելի բորբոքուեցաւ։ Եւ որովհետեւ կռիւների սկզբնապատճառը գեղեցիկ Հուրի-զադն էր, այդ պատճառով Իբրահիմ-խանը նոյնպէս խառնուեցաւ կռիւների մէջ, ի հարկէ բռնելով Մելիք-Շահնազարի կողմը։

Մելիք-Եսային միայնակ պիտի պատերազմէր իւր երեք թշնամիների դէմ, որպէս էին՝ Իբրահիմ-խանը, Մելիք-Շահնազարը եւ Մելիք-Ալահվերդին։ Նրա հզօր դաշնակիցներն այլեւս չկային։ Մենք յետոյ կը տեսնենք, որ Գիւլիստանի Մելիք-Բէգլարեան Մելիք-Յուսուբը վախճա-

նուեցաւ (1775) եւ նրա որդին, Մելիք-Աբով Գ-ը, աւելի զբաղուած էր իւր երկրի կառավարութիւնով, քան թէ պատերազմներով։ Մելիք-Յուսուբից հինգ տարի յետոյ 1780 թուին վախճանուեցաւ Ջրաբերդի Մելիք-Իսրայէլեան Մելիք-Աթամը, այն սարսափելի մարդը, որից դողում էր Իբրահիմ-խանը։ Հանգուցեալի մահից յետոյ յաջորդեց որդին՝ Մելիք-Մէջլումը։ Այդ երիտասարդը թէ հօր քաջութիւնը եւ թէ նրա հայրենասիրութիւնն ունէր։ Բայց չափազանց դիւրագրգիռ եւ բարկացոտ բնաւորութեան տէր լինելով, նա հրացանի բռնել տուեց մի քանի նշանաւոր հայ ազնուականների[1] եւ այդ պատճառով բարձրացրեց իւր իշխանութեան մէջ ներքին կռիւ։ Դրա համար ժամանակ չունեցաւ Մելիք-Եսայուն օգնելու։

1781 թուին Իբրահիմ-խանը իւր բարեկամ երկու մելիքների հետ պաշարեցին Մելիք-Եսայու Տող բերդը։ Նա քաջութեամբ պաշտպանվում էր։ Պաշարումը տեւեց երկար։ Յետոյ խանը Մելիք-Շահնազարի խորհրդով ուղարկեց նրա մօտ մի քահանայ եւ մի նշանաւոր հայ մարդ[2], երդումով, խաչով ու աւետարանով, որ Մելիք-Եսային ցած իջնէ իւր բերդից հաշտուելու համար։ Նա հաւատաց եւ դուրս եկաւ բերդից։ Իբրահիմ-խանը նրան բանտի մէջ խեղդել տուեց. Նրա ամբողջ կայքը յափշտակեց եւ տունն աւերակ դարձրեց[3]։

---

[1] Դրանցից մէկն էր Գիւլ-եաթաղ գիւղի Միխայէլ-բէկը, միւսը նրա փեսայ Յակոբ-իւզբաշին։

[2] Անունները յայտնուած չեն այն գրչագիր պատմութեան մէջ, որից մենք քաղում ենք այդ անցքը։

[3] Նրա գերեզմանը գտնվում է իւր բերդի եկեղեցու գաւթում. տապանաքարի վրայ կարդացվում է հետեւեալ արձանագրութիւնը.

"Այս է տապան քաջ իշխանին,
Սայի անուն մեծ մելիքին.
Կարգեալ իշխան Նադիր-շահին.

Մելիք-Եսային խաբէութեան զոհ դառնալուց յետոյ, նրան յաջորդեց իւր եղբօր (Մելիք-Արամի) որդի Մելիք-Բախտամը։

Իբրահիմ-խանն ունեցաւ մի երկրորդ ամուսնութիւն եւս, որ ոչ սակաւ նպաստեց նրա զօրանալուն։ Նա կին առեց Դաղստանի Աւարիա գաւառակի իշխող Օմար-խանի (Ումայի-խան) աղջկան, որ կոչւում էր Բիքա։ Այդ Օմար-խանը Նուսխալ-խանի որդին էր։ Փեսայ դառնալով՝ մի կողմից Վարանդայի հայոց իշխանին, միւս կողմից Դաղստանի լեռնաբնակների խանին, Իբրահիմ-խանն սկսեց օր ըստ օրէ զօրանալ։ Ամեն մի սպառնալից դէպքում նա կամ Դաղստանից օգնութիւն էր ստանում, կամ փախչում էր իւր աներոջ մօտ եւ իւր կեանքն ազատում։

Բայց միայն Մելիք-Շահնազարը եւ Օմար-խանը չէին Իբրահիմ-խանի զօրանալու պատճառները. տեղի ունեցան եւ ուրիշ առիթներ, որոնք ոչ սակաւ ուշադրութեան արժանի են։

## XVI.

1775 թուին վախճանուեցաւ Գիւլիստանի Մելիք-Բէգլարեան Մելիք-Յուսուբը ծերութեան հասակում, որով Ղարաբաղի մելիքների մի հայրենասէր եւ եռանդոտ դաշ-

Երեսուն երեք ամ տիրեց Ցիզակ երկրին.
Զքաջութիւն եւ զյաղթութիւն՝
Արար բազում ձեռամբ նորին։
Ընդ անօրինաց էր հակառակ.
Ի սուր մաշէր զթշնամին։
Ինքն պարթեւ եւ զօրաւոր,
Քան զառաջինսն էր ահաւոր։
Մինչ վաթսուն եւ վեց ամաց եղեալ,
Ի յաշխարհէ վերափոխեալ„։
"Վախճանեցաւ թուին ռ. մ. լ.„ (1781)։

նակլիցը պակասեցաւ։ Նա կտակեց որդուն իւր սուրը պատեանի մէջ չդնել, մինչեւ Ղարաբաղն իսպառ մաքրուած չլինի մահմեդականներից։

Նա թողեց երկու որդի. երէցը կոչվում էր Բէգլար, կրտսերն՝ Աբով։ Հօր մահից յետոյ յաջորդեց Բէգլարը։

Դա Մելիք-Բէգլար Բ-ն է, որ սաստիկ գոռոզ, քաջասիրտ եւ պատերազմասէր երիտասարդ էր։ Նա դեռ հօր կենդանութեան ժամանակ մասնակցում էր նրա կռիւների մէջ եւ յայտնի էր իւր զարմանալի յաղթութիւններով։

Բայց այդ անպարտելի տղամարդը, որ իւր երիտասարդութիւնն անցուցել էր պատերազմների մէջ, երկար չվարեց իւր երկրի իշխանութիւնը։ Մի անգամ լեզգիների հետ ունեցած ճակատամարտում, որ տեղի ունեցաւ Գանձակից ոչ այնքան հեռու, Գօրանի գետի ափին, նոյն անունով գիւղի մօտ Մելիք-Բէգլարը հրացանի գնդակից սպանուեցաւ։

Նրա մահուան մասին աւանդութիւնն ստեղծել է մի այսպիսի լեգէնդա. Թէ այն րոպէում, երբ մելիքը պատրաստվում էր պատերազմ գնալու, նրա մայրը, բարեսիրտ Հերիքնազը, դուրս եկաւ որդու առջեւ եւ արտասուքն աչքերում բռնեց նրա ձեռքից, աղաչեց, որ իրան հեռու պահէ արիւնհեղութիւնից, որ գոնէ այս անգամ պատերազմ չգնայ, որովհետեւ ինքը վատ երազ է տեսել... տխուր կասկածներ տանջում են իւր սիրտը... Խստասիրտ որդին մերժեց մօր աղաչանքը, ձեռքով մի կողմ հրելով նրան, ցած ձգեց եւ ձին նստելով գնաց։ Բայց այլեւս չվերադարձաւ, մօր անէծքը պատժեց նրան...։

Բայց Մելիք-Բէգլարի սպանման մէջ կայ մի ամբողջ ռօման։

Մելիք-Բէգլարն՝ ամուսնացած էր Վարանդայի Մելիք-Շահնազարի դստեր Ամարնանի (Մարիամի) հետ։ Բացի օրինաւոր կնոջից նա պահում էր մի սիրուհի Բալա անունով։

Մինչեւ այսօր, երբ ուղեւորն անցնում է Գիւլիստանի Թարխափուտ գիւղից եւ մտնում է նոյն անունով ձորի մէջ, ճանապարհի աջ կողմում ցոյց են տալիս մի հին այգի։ Անտառային ծառերը աճելով, խառնուել են պտղատու ծառերի հետ եւ այգու վաղեմի գեղեցկութիւնը ծածկուել է վայրենի մացառների տակ։ Այդ տեղին կոչում են Մելիք-Բէգլարի այգի։ Այստեղ յատկապէս շինել տուած գեղեցիկ ամարանոցում ապրում էր իշխանի սիրուհին։ Ամարանոցի աւերակներն են մնացել այժմ։

Ամուսնու այդ անսակ վարմունքը չէր կարող չվրդովել նրա օրինաւոր կնոջ՝ Ամարնանի խանդոտութիւնը։ Այդ կինը, ինչպէս վերեւում յիշեցի, Վարանդայի Մելիք-Շահնազարի աղջիկն էր. իւր հօր նման միջոցների մէջ խտրութիւն անել չգիտէր նա. վաղուց մտածում էր վրէժխնդիր լինել Բալայից։ Նա ընտրեց հէնց այն գիշերը, երբ իւր ամուսինն զբաղուած էր պատերազմական պատրաստութիւններով, իսկ առաւօտեան պէտք է կռուելու գնար։ Նա կաշառեց իրանց ծառաներից մէկին, որ կոչվում էր Ղալա, եւ ուղարկեց իւր ախոյանուհուն սպանելու համար։ Ոճրագործութիւնը կատարելու համար մի այլ զէնքի կարօտութիւն չկար. ասում են՝ գեղեցիկ կնոջ մազերի հիւսերն այնքան երկար էին, որ չարագործը փաթաթեց պարանոցովը եւ իւր մազերով նրան խեղդեց։ Մարմինը ձգուեցաւ հորի մէջ։

Առաւօտեան հէնց այն րոպէին, երբ Մելիք-Բէգլարը պատրաստվում էր նստել ձին, որ գնայ կռուելու, նրան

լուր տուին, թէ Բաղան սպանուած է։ «Երբ կը վերադառնամ պատերազմից, ես գիտեմ թէ ինչ կ'անեմ սպանողներին»... ասաց նա եւ գնաց։

Մելիք-Բէգլարի խստասրտութիւնը յայտնի էր եղեռնագործին։ Նա հասկացաւ, որ մելիքն ամեն հնար գործ կը դնէր երեւան հանելու սպանութիւնը, եւ այն ժամանակ ոչ միայն իրան մահով կը պատժէր, այլեւ իւր ամբողջ ընտանիքը սրից անց կը կացնէր։ Երկիւղը նրան մի յանցանքից մի աւելի մեծ յանցանքի մէջ ձգեց։ Նա հետեւեց մելիքին, որպէս նրա թիկնապահներից մէկը, պատերազմի դաշտը։ Կռուի խռովութեան ժամանակ թուփերի միջից անցաւ հրացանի գնդակը եւ մելիքին ցած գլորեց։ Ի հարկէ այն խառնաշփոթութեան մէջ ոչ ոք չէր կարող ստուգել, թէ գնդակը արդեօք մի որեւիցէ լէզգու հրացանից արձակուեցաւ, թէ մելիքի անձնական թիկնապահից։

Մելիք-Բէգլար Բ-ի մահից յետոյ նրա որդի Փրէյդունն անչափահաս լինելով, Գիւլիստանի կառավարութիւնն անցաւ հանգուցեալի եղբայր Աբով Գ-ի ձեռքը։ Այդ Աբովը իւր նախնի միւս Աբովների նման նոյնպէս յայտնի եղաւ որպէս մի քաջ պատերազմող։ Դրա կառավարութեան օրերում, որպէս պիտի տեսնենք, կատարուեցան Ղարաբաղի բախտաւոր եւ ամենադժբախտ անցքերը։

Եւ այսպէս՝ Գիւլիստանի Մելիք-Յուսուբը մեռաւ. նրա որդի Մելիք-Բէգլարը սպանուեցաւ. Տիզակի Մելիք-Եսային Իբրահիմ-խանի խաբէութեանը զոհ դարձաւ. Ջրաբերդի Մելիք-Ալթամը մեռաւ։ Նշանաւոր փորձուած մարդիկն անհետացան, մնացին դիւրագրգիռ, տաքարիւն երիտասարդները....։

Մնացած մելիքների մէջ Իբրահիմ-խանն աւելի երկիւղ ունէր Ջրաբերդի Մելիք-Իսրայէլեան Մելիք-Մէջլումից: Այդ երիտասարդը իւր հօր՝ Մելիք-Աթամի նման ամենակատաղի թշնամի էր Շուշի բերդի մահմեդական բնակիչներին: Նրան ոչնչացնելու համար Իբրահիմ-խանը հետեւեց իւր հօր՝ Փանահ-խանի քաղաքականութեանը: Այդ խորամանկ ջուանշիրցին, ինչպէս իւր տեղում տեսանք (ԺԱ գլ.), Խաչէնի Հասան-Ջալալեան մելիքների իշխանութիւնը թուլացնելու համար ստեղծեց այնտեղ (Խնզիրիստան գիւղում) մի նոր մելիքութիւն՝ Մելիք-Միրզախանեանների տունը, որոնք ոչ սակաւ քան մահմեդականները վնասեցին Ղարաբաղի հայկական իշխանութիւնների քայքայմանը: Այժմ Իբրահիմ-խանը, իւր հօր օրինակին հետեւելով՝ Ջրաբերդի Մելիք-Իսրայէլեանների իշխանութիւնը թուլացնելու համար, մտածեց ստեղծել այնտեղ մի նոր մելիքութիւն: Այստեղ Գիւլ-եաթաղ գիւղում ապրում էին Ալահվէրդի-իւզբաշու ժառանգները: Դրանց հայրը ծառայում էր Մելիք-Աթամի մօտ, իսկ ժառանգները ծառայում էին Մելիք-Աթամի որդի Մելիք-Մէջլումի մօտ: Իբրահիմ-խանը կանչեց իւր մօտ Ալահվէրդի-իւզբաշու որդուն՝ Միսայէլ-բէկին, յայտնեց նրան, որ եթէ մի կերպով Մելիք-Մէջլումին ոչնչացնէ, ինքը խոստանում է նրան օգնել, որ ամբողջ Ջրաբերդի վրայ մելիք դառնայ: Միսայէլ-բէկը հրապուրուած խանի խոստումներով, համաձայնուեցաւ կատարելու նրա ցանկութիւնը:

Միսայէլ-բէկը իւր փեսայ Յակոբ-իւզբաշուն[1] իւր հետ առնելով, գնաց Մելիք-Մէջլումի մօտ իբրեւ հիւր:

---

[1] Այդ Յակոբ-իւզբաշին (հարիւրապետը) յայտնի էր անունով Թիւլի-Յակոբ, այսինքն աւազակ Յակոբ. իւր յատկանիշները բացատրվում են իւր ստացած մականունով:

*Մելիքն այդ ժամանակ գտնվում էր իւր սեպհական ամառանոցում, Թարթառ գետի ափի մօտ, Ղազարխ կոչուած տեղում[1]։ Նա առանց կասկածանքի ընդունեց հիւրերին, որովհետեւ մէկը իւր գիւղերի կառավարիչն էր, իսկ միւսը նրա փեսան։*

*Ընթրիքից յետոյ, երբ հիւրերն առանձնացան իրանց համար պատրաստուած սենեակում քնելու, երկար նրանց ճրագը վառ մնաց։ “Հիմա հարկաւոր է ճրագը հանգցնել„... ասաց Միխայէլ-բէկը։ — “Այո՛, ժամանակն է„.... պատասխանեց նրա փեսան։ Այդ ինքն ըստ ինքեան անմեղ խօսակցութիւնը գրաւեց մելիքի սպասաւորներից մէկի ուշադրութիւնը եւ նա սկսեց ծածուկ լսել խօսակցութեան շարունակութիւնը, որից նկատեց, որ հիւրերը ինչ որ չար դիտաւորութիւն ունեին։ Նա իսկոյն իմացում տուեց մելիքի կնոջը, որ հրամայեց ծառաներին գաղտնի հսկել իւր ամուսնու բնակարանի մօտ եւ սպասել հետեւանքին։ Եւ իրաւ, գիշերից բաւական անցած, նրանք նկատեցին, որ հիւրերը մօտեցան մելիքի բնակարանին եւ փորձում էին ներս մտնել։ Երկուսին եւս կալանաւորեցին։*

*Միւս օրը Մելիք-Մէջլումը քննելով այն դրդիչ պատճառները, որոնցից հրապուրուած իւր հիւրերը կամենում էին սպանել իրան, հրամայեց թէ Միխայէլ-բէկին եւ թէ նրա փեսայ Յակոբ-իւզբաշուն, երկուսին էլ հրացանի բռնել։ Մելիքն այն աստիճան զայրացած էր, որ հրամայեց նրանց ամբողջ ընտանիքը բնաջինջ անել, բայց Միխայէլ-բէկի փոքր եղբայր Ռուստամ-բէկը առաւ նրանց եւ փախաւ Շուշի բերդը Իբրահիմ-խանի մօտ։*

---

[1] Այդ տեղն այժմ կոչվում է Մարաղա, որովհետեւ բնակեցրած է 1828 թուի Պարսկաստանի Մարաղա անունով քաղաքից բերուած գաղթականներով,

Այդ անցքը ոչ միայն ներքին երկպառակութիւնների պատճառ դարձաւ, այլեւ յիշեալ Ռուստամ-բէկը, Իբրահիմ-խանի ձեռքում գործիք դառնալով, շատ չարիքներ գործեց Մելիք-Մէջլումի դէմ։ Այդ կը տեսնենք մեր պատմութեան շարունակութեան մէջ, բայց այժմ այսքանը պէտք է յիշել, որ Ռուստամ-բէկը մի նշանաւոր մարդու, Ապրես-աղայի փեսան էր[1]։ Իւր աներոջ հետ կազմեց նա մի զօրեղ կուսակցութիւն ոչ միայն Մելիք-Մէջլումի դէմ, այլեւ բոլոր այն մելիքների դէմ, որոնք դաշնակից էին Մելիք-Մէջլումին, որպէս էին՝ Գիւլիստանի Մելիք-Բէգլարեանները եւ Տիզակի Մելիք-Աւանեանները։

Եւ այդպէս, թէեւ Իբրահիմ-խանին չյաջողուեցաւ Մելիք-Մէջլումին սպանել տալ եւ Ջրաբերդում ստեղծել մի նոր մելիքութիւն իւր հովանաւորութեան ներքոյ, այսուամենայնիւ, նա հասաւ իւր նպատակին։ Նա կարողացաւ կազմել մի նոր եւ հակառակ կուսակցութիւն, որի մէջ կար եւ կաթողիկոս։ Այսպիսով Ղարաբաղի մելիքները երկու հակառակ կուսակցութիւնների բաժանուեցան. մէկը, Մելիք-Շահնազարեանների կուսակցութիւնը, որին պատկանում էին խանին համակրողները եւ Երիցմանկանց վանքի կաթողիկոսները, միւսը՝ Մելիք-Մէջլումի եւ Մելիք-Բէգլարեանների կուսակցութիւնը, որոնք հակառակ էին խանին եւ միացած էին Գանձասարի վանքի կաթողիկոսի հետ։

---

[1] Այդ Ապրես-աղան Կապանցի էր. Նա ամուսնացած էր Երիցմանկանց վանքի Ներսէս կաթողիկոսի քրոջ հետ։ Այդ ամուսնութիւնից ծնուեցաւ մի որդի Իսրայէլ անունով եւ մի աղջիկ Վարդ-խաթուն անունով։ Իսրայէլը Երիցմանկանց վանքի կաթողիկոս դարձաւ, իսկ Վարդ-խաթունն ամուսնացաւ Ռուստամ-բէկի հետ։

## XVII.

Որպէս մի միջանկեալ պատմութիւն, մենք հարկաւոր ենք համարում մեր ընթերցողներին ծանօթացնել վերեւ յիշած երկու, միմեանց հակառակ, կաթողիկոսութիւնների հետ, որոնցից մէկը գտնվում էր Գանձասարի վանքում, իսկ միւսը Երիցմանկանց վանքում, որոնք ոչ սակաւ ներգործութիւն ունեցան Ղարաբաղի հայկական իշխանութիւնների կործանման վրայ:

Մեր պատմութեան մէջ սակաւ չէ այն տխուր երեւոյթների թիւը, որ ամեն անգամ, երբ ծագել է մի որեւիցէ ազգային կարեւոր հարց, ամեն անգամ, երբ հայրենիքը տագնապի մէջ է գտնուել, ամեն անգամ, երբ ժողովրդի բարօրութեան համար մխիթարական երեւոյթներ են նշմարուել, — մի խօսքով, ամեն մի բախտաւոր եւ դժբախտ րոպէներում, երբ ժողովրդի ուշադրութիւնը լարուած է եղել դէպի իւր դրութիւնը, — յանկարծ ծագել են կրօնական կամ եկեղեցական վէճեր: Ժողովուրդը թողել է իւր կենսական հարցերը եւ զբաղուել է այդ վէճերով:

Մենք կարող էինք շատ օրինակներ բերել անցեալից, բայց կը վերաունենք հէնց նոյն պատմութիւնից, որ այս գլխի նիւթ ենք ընտրել:

Յայտնի է, որ Աղուանից կաթողիկոսութիւնը՝ սկսեալ Գրիգորիսի[1] օրերից, աւանդական կերպով շարունակուեցաւ մինչեւ 1828 թուականը. ուրեմն նա ամբողջ 15 դար գոյութիւն ունէր: Այդ կաթողիկոսութեան ներկայացուցիչները նստում էին Աղուանից աշխարհի զանազան վանքերում, իսկ վերջին ժամանակներում նրանց աթոռա-

[1] Գրիգորիսը սուրբ Գրիգոր Լուսաւորչի թոռն էր:

տեղին եղաւ Ղարաբաղի Խաչէն գաւառի Գանձասարայ վանքը։

Խաչէնը Հասան-Ջալալեան իշխանների ժառանգութիւնն էր. այստեղ տիրում էին վերջին ժամանակներում այդ տոհմից առաջ եկած մելիքները։ Կաթողիկոսները ընտրվում էին դարձեալ միեւնոյն տոհմից։ Եւ այդպիսով քահանայապետութիւնը եւ մարմնաւոր իշխանութիւնը գտնվում էր միեւնոյն տոհմի ներկայացուցիչների ձեռքում։

1651 թուին Խոտորաշէնցի Սիմոն անունով մէկը (որ Հասան-Ջալալեանների տոհմից չէր, այլ մի հասարակ քահանայի որդի էր) Մռաւ լեռան մթին ձորերի մէկի մէջ հիմնեց մի վանք Երիցմանկանց անունով եւ այդ վանքի կաթողիկոսը դարձաւ։ Նրանից սկսուեցաւ մի նոր եւ Աղուանից վաղեմի կաթողիկոսարանին հակաթոռ կաթողիկոսութիւն[1]։ Այդ երկու միմեանց հակառակ կաթողիկոսները (Գանձասարայ վանքը եւ Երիցմանկանց վանքը) կանգնած էին միմեանց հանդէպ, ոչ աւելի քան 24 ժամ ճանապարհի հեռաւորութեամբ։ Առաջինը գտնվում էր Խաչէնի գաւառում, իսկ երկրորդը Ջրաբերդի գաւառում։

Երիցմանկանց վանքի կաթողիկոսների աթոռակալութիւնը տեւեց 1651 թուից մինչեւ 1800 թուականի վերջը։ Այդ այն ժամանակամիջոցն էր, երբ Ղարաբաղի հայերի ամէն մի ի զուր վատնած րոպէն նրանց համար մեծ կորուստ էր։ Այդ ժամանակամիջոցում զարթնել էին Ղարաբաղի մելիքների անկախութեան ձգտումները,

[1] Սիմոնին յաջորդեց նրա ազգական Ներսէսը, յետոյ Ներսէսի քրոջ որդի Իսրայէլը, յետոյ Սիմոնի եղբօրորդի փոքր Սիմոն կաթողիկոսը, որ վերջինն էր։

նրանք սկսեալ Պետրոս Մեծի օրերից, ծանրակշիռ բանակցութիւններ ունէին ռուսաց արքունիքի հետ, պատերազմում էին պարսիկների եւ օսմանցիների դէմ. ամբողջ Ղարաբաղը շարժման մէջ էր։ Այդ տարիները Ղարաբաղի պատմութեան ամենատագնապալի ժամանակներն էին...։

Բայց ի՞նչ էին շինում կաթողիկոսները։

Բաղդասար միտրապոլիտի կազմած եւ այժմ մեր ձեռքում գտնուած զանազան ֆիրմանների եւ հրավարտակների հաւաքածուից երեւում է, որ Գանձասարի եւ Երիցմանկանց կաթողիկոսարանների միմեանց հակառակ աթոռականները[1] յիշեալ ժամանակամիջոցում երբ Ղարաբաղի ժողովուրդն զբաղուած էր իւր հայրենիքի անկախութեան խնդրով, — կաթողիկոսներն ընդհակառակը զբաղուած են եղել կռիւներով, միմեանց վրայ գանգատներ անելով՝ միմեանց ձեռքից վիճակներ խլելու համար։

Ի հարկէ կաթողիկոսներից իւրաքանչիւրն ունէր իւր կուսակցութիւնը, եւ այդ պատճառով կռիւների մէջ մասնակցում էին թէ ժողովուրդը եւ թէ ժողովրդի ներկայացուցիչները — մելիքները։

Չէ կարելի հերքել, որ կաթողիկոսների մէջ կային եւ օրինաւոր մարդիկ, ինչպէս Եսային եւ Ներսէսը, որոնք մելիքների հետ միացած, գործում էին հայրենիքի փրկութեան համար։ Բայց մի օրինաւորի շինածը, միւս անպիտանները ոչնչացնում էին...։

Այդ կը տեսնենք յետոյ, հիմա շարունակենք մեր պատմութիւնը։

---

[1] Երիցմանկանց վանքի կաթողիկոսների ժամանակակիցները Գանձասարի վանքում էին՝ Երեմիա, Եսայի, Յովհաննէս եւ վերջինը Սարգիս, որ վախճանուեցաւ 1828 թուին. բոլորն էլ Հասան-Ջալալեան իշխանների տոհմից։

Երբ Իբրահիմ-խանը յաջորդեց Փանահ-խանին, միեւնոյն տարուայ մէջ (1763) Գանձակում վախճանուեցաւ Երիցմանկանց վանքի Ներսէս կաթողիկոսը։ Դարձեալ միեւնոյն տարուայ մէջ Ղարաբաղի մելիքները, գլխաւորապէս Ջրաբերդի իշխան Մելիք-Աթամը[1], օծել տուին Յովհաննէսին Գանձասարի վանքի կաթողիկոս։

Նոյն միջոցում, երբ Յովհաննէսը Գանձասարի կաթողիկոս դարձաւ, նրա հակառակ, Գանձակի հայերը՝ տեղային խանի օգնութեամբ օծել տուին Իսրայէլ եպիսկոպոսին կաթողիկոս Երիցմանկանց վանքի անունով (1763)։

Երկու կաթողիկոսների մէջ երկար հակառակութիւններ եղան։ Մելիքները դիմեցին Ս. Էջմիածին, ուր աւելի խառնուեց գործը։ Խռովութիւնները վերջացան նրանով, որ Յովհաննէսն ընդունուեցաւ որպէս Գանձասարի օրինաւոր աթոռակալ, իսկ Իսրայէլը մնաց Գանձակում որպէս նրա հակաթոռ։ Նա համարձակութիւն չունեցաւ մինչեւ անգամ Գանձակից գալ իւր վանքը (Երիցմանկանց վանքը), որի անունով օծուած էր, եւ այդ վիրաւորանքի համար միշտ մի յարմար առիթ էր որոնում վրէժխնդիր լինելու իւր հակառակորդից՝ Յովհաննէս կաթողիկոսից։ Այդ առիթը գտաւ նա, եւ իւր վրէժխնդրութեամբ ոչ միայն սպանել տուեց Յովհաննէս կաթողիկոսին, այլեւ սպանեց այն մեծ գործը, որ Ղարաբաղի մելիքներն ստեղծել էին . . .։

## XVIII.

1762 թուին ռուսաց գահը ժառանգեց Եկատերինա Բ կայսրուհին։ Նա սկսեց ուշադրութիւն դարձնել Հայաս-

[1] Յովհաննէս կաթողիկոսը Մելիք-Աթամի հետ խնամութիւն ունէր նրա քոյր Ղամար-սուլթանը Մելիք-Աթամի կինն էր։

տանի եւ Վրաստանի վրայ: Հայոց հողը կրկին զարթ-նեցաւ:

Եկատերինա Բ-ը կամեցաւ իրագործել Պետրոս Մեծի նպատակները Հայաստանի եւ Վրաստանի վերաբերու-թեամբ: Այդ ժամանակ Ռուսաստանի հայոց առաջնորդն էր Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեան-Երկայնաբազուկը: Վայելելով կայսրուհու առանձին պաշտպանութիւնը եւ աւելի մեծ յարաբերութիւններ ունենալով ռուսաց ար-քունիքի հետ, Յովսէփ արքեպիսկոպոսը դարձաւ թարգ-մանը հայ ժողովրդի բաղձանքների, որ վաղուց սնուցա-նում էր նա իր հայրենիքի վերականգնման մասին:

Նա աւելի մեծ եռանդով սկսեց հետեւել իր նա-խորդի՝ Մինաս արքեպիսկոպոսի օրինակին: Այդ արժա-նայիշատակ եկեղեցականը, որպէս տեսանք մեր պատմու-թեան սկզբում, գործում էր Պետրոս Մեծի օրերում, իր ընկեր Իսրայէլ Օրիի հետ: Իսկ Յովսէփ արքեպիսկո-պոսը գործում էր Յովհաննէս Լազարեանի հետ: Թէ Օրին եւ թէ Լազարեանը միեւնոյն հայրենիքից էին, այ-սինքն՝ Սպահանից գաղթած հնդկաստանցիներ:

Սպահանի եւ Հնդկաստանի հայերը թէեւ պատմա-կան հանգամանքների պատճառով տարագրուեցան իրանց հայրենիքից, բայց իրանց սրտերը թողեցին Հայաստանի աւերակների մէջ: Նրանք արեւելքի հեռաւոր խորքերում բախտ եւ հարստութիւն գտան, բայց Ինդոս գետի ափե-րից միշտ խորին կարօտով յիշում էին հայկական աշ-խարհը, որպէս տարագրուած Իսրայէլը Տիգրիսի ափերից յիշում էր իր սուրբ Երուսաղէմը:

Նրանք չէին խնայում իրանց հարստութիւնը, միայն թէ կարելի լինէր առանց արիւնի ոսկով գնել հայրենիքի փրկութիւնը: Եկատերինա Բ կայսրուհու գահակալու-

թիւնից երկու տարի առաջ (1760) Անգլիայից Ս. Պետերբուրգ եկաւ հայազգի Էմին Յովսէփեանը, որ բնիկ Պարսկաստանի Համադան քաղաքիցն էր, իսկ Հնդկաստանում միլիոններ էր վաստակել։ Նա առաջարկեց իւր բոլոր հարստութիւնով օգնել ռուսներին, եթէ կը համաձայնէին իրանց զօրքերով մասնակցել հայերի հետ՝ Հայաստանը պարսից լծից ազատելու գործում։ Նրա առաջարկութիւնը համակրութեամբ ընդունուեցաւ։ Էմինը Ս. Պետերբուրգից եկաւ Հայաստան. Ղարաբաղի մելիքները մեծ ոգեւորութեամբ ընդունեցին նրան։ Իրանք պատերազմելու համար սիրտ եւ զօրեղ բազուկներ ունէին, իսկ Էմինը փող էր տալիս զէնքեր գնելու համար։ Ուրեմն ամեն ինչ պատրաստ էր։ Վրաց եւ հայոց մէջ մի զօրեղ դաշնակցութիւն կապելու համար Էմինը դիմեց եւ Քարթալինայի իշխան Հերակլին, յայտնեց նրան իւր միտքը։ Բայց այդ երկերեսանի իշխանը, որ այդ ժամանակ մի կողմից պարսիկների փէշիցն էր բռնած, իսկ միւս կողմից աչքերը դարձրած ունէր դէպի Ս. Պետերբուրգ, անհամակրութեամբ վերաբերուեցաւ դէպի Էմինի առաջարկութիւնը։ Հայոց կրեսոսը գնաց այնուհետեւ Կալկաթա քաղաքական առանձին խորհուրդներով։ Բայց վաղահաս մահը թողեց նրա նպատակներն անկատար։ Նրա միլիոններն անտէր մնալով անգլիական բանկում, այնպէս էլ կորան...։

Յովսէփ արքեպիսկոպոսն այն աստիճան ոգեւորուած էր Հայաստանի փրկութեան գաղափարով, որ նա իւր հայրենիքի վերականգնման հարցը Կայսրուհու ողորմածութեամբ արդէն իրականացած էր համարում։ Վերանորոգուած Հայաստանը պիտի գտնուէր Ռուսաստանի հովանաւորութեան ներքոյ, որպէս առանձին աւատական իշխանութիւն։ Յովսէփ արքեպիսկոպոսին մինչեւ անգամ առա-

Ջարկուեցաւ կազմել դաշնակցութեան ծրագիրը, թէ որպիսի յարաբերութիւններ պիտի ունենար Հայոց ազգը իրան հովանաւորող պետութեան հետ։ Այդ դաշնագիրը, որպէս յետոյ կը տեսնենք, բաղկացած էր 19 յօդուածներից եւ բովանդակում էր իւր մէջ գլխաւոր հիմունքները, թէ որպիսի կազմակերպութիւն պիտի ստանար վերանորոգուած Հայաստանը եւ ինչ պարտաւորութիւններ պիտի յանձն առնէր նա ռուսաց պետութեան վերաբերութեամբ։

Յիշեալ դաշնագիրը գրուեցաւ 1790 թուին. միեւնոյն ժամանակ Յովսէփ արքեպիսկոպոսը կազմեց մի ընդարձակ տեղեկագիր, որի մէջ մանրամասնաբար նկարագրեց Ղարաբաղի մելիքների ունեցած յարաբերութիւնները ռուսաց արքունիքի հետ՝ Պետրոս Մեծի օրերից մինչեւ իւր ժամանակը, եւ յիշեցրեց նրանց մատուցած մեծ ծառայութիւնները Ռուսաստանին։ Այդ տեղեկագիրը վերոյիշեալ դաշնագրի հետ արքեպիսկոպոսը ներկայացրեց Կայսրուհուն գեներալ-ֆելդմարշալ իշխան Գրիգորիյ Ալեքսանդրովիչ Պատեօմկինի միջնորդութեամբ։

Պատեօմկինը Յովսէփ արքեպիսկոպոսի լաւ բարեկամն էր։ Ինչպէս երեւում է շատ պատմական փաստերից, նա արդէն իրան հայկական նոր իշխանութեան աթոռի թեկնածու (կանդիդատ) էր համարում։

Ընդհանուր հայերի ոգեւորութեանը չափ չկար. աշխարհի ամեն ծայրերում սփռուած հայերն արդէն գիտէին թէ շուտով Հայաստանը կը վերականգնի։ Յովսէփ արքեպիսկոպոսը, այդ եռանդոտ, անխոնջ եկեղեցականը, շարունակ թղթակցութիւններ ունէր ամեն երկրների հետ, ուր որ հայեր կային։ Սկսեալ Հնդկաստանից մինչեւ Լեհաստան, սկսեալ Եգիպտոսից մինչեւ Պարսկաստան նա

տարածում էր իւր թղթերը եւ ամէն տեղ բորբոքում էր հայրենասիրութիւն։ Նա թղթակցութիւն ունէր Վրաստանի իշխանների, Ս. Էջմիածնի կաթողիկոսի Աղուանից կաթողիկոսի եւ Ղարաբաղի մելիքների հետ։

Ոգեւորութիւնն այնքան մեծ էր եւ Հայաստանի ազատութեան գործն այնքան իրականացած էր համարւում, որ Հնդկաստանում Յակոբ Շահամիրեանի հեղինակութեամբ տպագրեցին մի գիրք, որ բովանդակում էր իւր մէջ հայոց եւ վրաց միացեալ թագաւորութիւնների վարչական եւ դատաստանական օրէնքները։

Հնդկաստանի գրամատէրները չէին խնայում իրանց փողերը հեռաւոր Հայաստանի ազատութեան գործին ծառայեցնելու համար։ Այդ միջոցներում յայտնուեցաւ մի այլ հնդկաստանցի հայրենասէր, որ ցանկանում էր Հայաստանի ազատութիւնը ոսկով գնել Պարսկաստանից եւ Թիւրքիայից։ Նա արդէն գնել էր վրաց Գիօրգի իշխանից Լօռու գաւառը եւ դիտաւորութիւն ունէր գնելու նաեւ Բօրչալուի գաւառը, Երեւանի նահանգը եւ ուրիշ երկիրներ, որպէս զի այդ կողմերում զարգացնէր բամբակի, շաքարեղէգի, լեղակի եւ սուրճի մշակութիւնը, գործարաններ բաց անել տար եւ իւր հայրենիքը տնտեսապէս կենդանացնէր։

Այդ բոլոր շարժումներին զարկ էր տալիս Յովսէփ արքեպիսկոպոսը։

Ռուսաց կառավարութեան այն ժամանակուայ քաղաքական շահերը պահանջում էին, որ պետութեան արեւելեան սահմանները պարսից եւ օսմանցոց յարձակումներից ազատ պահելու համար, որպէս մի ամուր պատնէշ, վերականգնեցնէին հայ-վրաց միացեալ իշխանութիւնը, որ, Ռուսաստանի հովանաւորութեան ներքոյ,

խոստանում էր հաւատարիմ սահմանապահ լինել։ Արեւելեան մահմեդականութիւնը, մանաւանդ Անդրկովկասի մահմեդականները միշտ մեծ վտանգ էին սպառնում Ռուսաստանին։ Հարկաւոր էր մի միջնապարիսպ նրանց կատաղի հոսանքի առաջն առնելու համար, եւ այդ միջնապարիսպը պէտք է լինէին քրիստոնեայ հայերը եւ վրացիները։

Դեռ 1783 թ. ապրիլի 6ին իշխան Գրիգորիյ Ալեքսանդրովիչ Պատեօմկինը, որ հրապուրուած էր անկախ Հայաստանի իշխանութեան գլուխն անցնելու բաղձանքով, հրամանագրեց նոյն ժամանակուայ Կովկասեան զօրքերի գլխաւոր հրամանատար գեներալ-պորուչիկ Պաւել Սէրգէիչ Պատեօմկինին, որ նա իշխանութիւնից հեռացնէ Շուշիի Իբրահիմ-խանին; օգնէ հայոց մելիքներին՝ Ղարաբաղում հայոց անկախ իշխանութիւն հաստատելու համար։ Միեւնոյն բովանդակութեամբ հրաման կրկնուեցաւ 1783 թ. մայիսի 10ին նոյն գեներալ-պորուչիկ Պատեօմկինին, որ հայերին յուսադրէ, որպէս զի նրանք գործակցեն ռուսաց կառավարութեան նպատակներին, որ դիտաւորութիւն ունի կազմելու նրանցից մի զօրեղ քրիստոնեայ պետութիւն, Ռուսաստանի բարձրագոյն հովանաւորութեան ներքոյ։

Այդ բոլորը գիտէին Ղարաբաղի մելիքները, այդ բոլորը յայտնի էր Գանձասարի Յովհաննէս կաթողիկոսին, որ մելիքների խորհրդակիցն էր, այդ բոլորը յայտնի էր եւ Ս. Էջմիածնի կաթողիկոսին, որ գաղտնի մասնակցում էր ընդհանուր գործին։ Ղարաբաղի մելիքները խոստանում էին մատակարարել ռուսաց զօրքերի բոլոր պաշարները եւ այլ պիտոյքները, երբ նրանք իրանց կողմը կը գային. խոստանում էին իրանց ոյժերով միանալ ռուսաց զօրքերի հետ։ Պատերազմը նշանակուած էր 1784 թուի ամառը.

գեներալ-պօրուչիկ Պատեօմկինը պատրաստուած էր պարսիկների դէմ պատերազմ գնալու։ Այդ ժամանակ Ղարաբաղի մելիքների կողմից Ստեփան Դաւթեան անունով մի պատուիրակ գնաց գեն.-պօր. Պատեօմկինի մօտ, Հայոց պատրաստութիւնների եւ Անդրկովկասի քաղաքական դրութեան մասին նրան մանրամասն տեղեկութիւններ հաղորդելու։ Այդ Ստեփան Դաւթեանը իւր արժանաւոր ծառայութեան համար վարձատրուեցաւ պրէմիէր-մայօրի աստիճանով։

## XIX.

Մինչ ռուսաց կողմից այսպիսի պատրաստութիւններ էին կատարվում, մինչ Ռուսաստանի Հայոց արքեպիսկոպոս Յովսէփը, վառուած հայրենասիրութեան հոգւով, անխոնջ կերպով աշխատում էր իրագործել իւր սկսած գործի մեծ գաղափարը, այդ միջոցներում Ղարաբաղում կատարուեցան մի քանի աղէտալի դէպքեր։

Մենք տեսանք, մինը միւսից յետոյ (1775—1780) վախճանուեցան Ղարաբաղի երկու նշանաւոր իշխանները՝ Գիւլիստանի Մելիք-Յուսուբը եւ Ջրաբերդի Մելիք-Աթամը, որոնք իրանց հայրենիքի ազատութեան համար ամենաեռանդոտ գործիչներն էին, որոնք ամբողջ քսան տարի պատերազմեցին Փանահ-խանի հետ եւ թոյլ չտուին, որ նրա իշխանութիւնը տարածուի Ղարաբաղի վրայ։ Մելիք-Յուսուբին յաջորդեց նրա որդին՝ Մելիք-Աբով Գ-ը, իսկ Մելիք-Աթամին յաջորդեց որդին՝ Մելիք-Մեջլումը։ Դրանք պահպանեցին նոյն դաշնակցութիւնը, որ կապել էին իրանց հայրերը եւ շարունակեցին նոյն բանակցութիւնը, որ սկսել էին նրանք ռուսաց կառավարութեան հետ՝ իրանց հայրենիքի ազատութեան վերաբերութեամբ։

Դարձեալ տեսանք, որ Մելիք-Աթամի վախճանուելուց մի տարի յետոյ (1781) Ցիզակի տիրապետող Մելիք-Աւանեան Մելիք-Եսային Իբրայիմ-խանի խաբէութեանը զոհ դարձաւ։ Նրա յաջորդը՝ Մելիք-Բախտամը ամենայն հաւատարմութեամբ պահպանեց իւր նախորդի դաշնակցութիւնը վերոյիշեալ երկու մելիքների հետ։

Նոյնպէս տեսանք, երբ Հասան-Ջալալեան Ցովհաննէսը Գանձասարի վանքի կաթողիկոս ձեռնադրուեցաւ (1763), նրա հակառակ, նոյն տարուայ մէջ, Գանձակում Իսրայէլ անունով մէկը նոյնպէս Աղուանից կաթողիկոս ձեռնադրուեցաւ եւ մնաց տեղային Ջաւատ-խանի պաշտպանութեան ներքոյ։ Այդ հակաթոռ Իսրայէլ կաթողիկոսը կործանեց այն մեծ շէնքը, որ Ցովհաննէս կաթողիկոսը եւ Ղարաբաղի երեք մելիքները մեծ ջանքերով կառուցել էին....։

Մինչ Ղարաբաղի մելիքները մի կողմից քաղաքական բանակցութիւններ էին վարում ռուսաց կառավարութեան հետ, իսկ միւս կողմից ներքին երկպառակութիւնը ջլատում էր նրանց ուժերը, — այդ միջոցներում Իբրահիմ-խանը քնած չէր, նա խիստ արթուն էր եւ գիտէր ամեն հանգամանքից օգուտ քաղել։

Նա նկատում էր ռուսների պատրաստութիւնները. նրան աղօտ կերպով յայտնի էր, որ այդ պատրաստութիւնների եւ Ղարաբաղի մելիքների շարժումների մէջ կար մի գաղտնի կապ։ Նրան յայտնի էր եւ այն, որ վրաց Հերակլ իշխանը ծածուկ բանակցութիւններ ունի մելիքների հետ։ Նա գիտէր, որ այդ բոլորը իւր իշխանութեան կործանմանը վտանգ էր սպառնում։ Նա սկսեց ամրացնել Շուշի բերդը, պատրաստուեցաւ վտանգի առաջն առնելու։

Ռուսները խոստանում էին օգնութիւն հասցնել հայերին եւ վրացիներին, բայց ուշանում էին։

Իբրահիմ-խանը տեսնելով, որ առանց ռուսների օգնութեան եւս հայոց եւ վրաց միացեալ ուժերը կարող էին նրան միանգամայն ոչնչացնել, մտածեց Վրաստանին կողմնակի կերպով մի հարուած տալ, իսկ յետոյ դառնալ դէպի հայերը։

Մենք ԺՆ-րդ գլխում յիշեցինք, որ Իբրահիմ-խանը, բացի Մելիք-Շահնազարի աղջկը իրան կին առնելուց, ամուսնացաւ նաեւ Աւարիայի տիրապետող Օմար-խանի քրոջ հետ։ Այդ խնամութիւնը մի ամուր դաշնակցական կապ դարձաւ նրա եւ Օմար-խանի մէջ։ Իբրահիմ-խանը մտածեց վրաց Հերակլ իշխանին զբաղեցնել իւր աներոջ բարբարոս լեռնաբնակների հետ, որպէս զի նա ժամանակ չունենայ հայերի հետ միանալու եւ իւր դէմ գործելու։

Նրա դրդելով Օմար-խանը Կովկասեան լեռնաբնակների ահագին բազմութեամբ յարձակուեցաւ Վրաստանի վրայ (1782)։ Նախ Բօրչալուն աւերակ դարձրեց, յետոյ մտաւ Լօռու գաւառը, պաշարեց Գիւմուշ-խանա[1] կոչուած բերդը։ Այդ բերդում ամրացած էին այն յոյները, որոնք հանքերում աշխատում էին, այնտեղ էին ապաստանած եւ մերձակայ հայոց գիւղերի բնակիչները։ Օմար-խանը գրաւեց բերդը եւ բոլոր յոյներին կոտորել տուեց, իսկ հայերից բազմաթիւ գերիներ վեր առաւ։ Թէեւ Հերակլ իշխանը՝ որ բացի վրացիներից իւր հետ 300 ռուսաց զինուոր եւս ունէր, շտապեց Օմար-խանի բարբարոսութիւնների առաջն առնելու, բայց նա այնքան երկչոտ

---

[1] Գտնվում է Հաղբատի եւ Սանահնի մօտ եւ տեղային հանքերի անունով կոչվում է Գիւմուշ-խանա, որ նշանակում է արծաթի տուն կամ արծաթի հանք։

գտնուեցաւ, որ մինչեւ անգամ չհամարձակուեցաւ մօտենալ նրան։ Օմար-խանը կատաղի կերպով ամեն ինչ աւերակ դարձնելով, գերիների բազմութեամբ անցաւ Ախալցխա, որ այդ ժամանակ օսմանցիների ձեռքումն էր, եւ ձմեռն անցկացրեց տեղային կառավարիչ Սիւլէյման-փաշայի մօտ։ Այստեղից Օմարը իւր զօրքերն ուղարկեց վրաց Վախամու բերդի վրայ, ուր իւր ընտանիքով բնակվում էր իշխան Արաշիձէն։ Օմարի զօրքերը յիշեալ բերդը գրաւեցին եւ բնակիչներին գերի վեր առան. դրանց թւումն էին Արաշիձէի երկու աղջիկը, որոնցից մէկին Օմարը իւր համար պահեց, իսկ միւսին ընծայ ուղարկեց Իբրահիմ-խանին։

Գարնանը Օմարը թողեց Ախալցխան եւ Երեւանի նահանգի միջով անցաւ Ղարաբաղի կողմերը եւ այնտեղից գնաց իւր երկիրը, տանելով իւր հետ բազմաթիւ գերիներ եւ կողոպուտ։ Այսուամենայնիւ լեռնային գաւառի կատարած այդ փոթորկալից շրջանը Վրաստանի եւ Հայաստանի միջով մի ազդու ցոյց էր, որով Իբրահիմ-խանը կամեցաւ զգալ տալ քրիստոնեաներին իւր զօրութիւնը։

## XX.

Ղարաբաղի մելիքներն սպասում էին 1784 թուի ամառին եւ գեներալ պօրուչիկ Պատեոմկինի զօրքերին, որ նրա հետ միանալով, սկսեն պատերազմել մահմեդականների դէմ։ Անցաւ մի տարի եւս, խոստացած օգնութիւնը չհասաւ։

1785 թ. ապրիլ ամսում մի մարդ մուրացկանի հագուստով, ձեռքին բռնած մի ծանր ճանապարհորդական մահակ, Գանձասարի վանքից ճանապարհ ընկաւ դէպի

Գանձակ։ Այդ մուրացկանին՝ սաստիկ արագընթացութեան համար կոչում էին «Եօրղա» Գրիգոր։ Նոյն ամսի միեւնոյն օրը մի այլ մարդ Շահ-Մասուր գիւղից ուղեւորուեցաւ դէպի Շուշի բերդը։ Այդ վերջինը մուրացկան չէր, ազնուական էր։ Նա ուղիղ ներկայացաւ Իբրահիմ-խանին, յայտնեց նրան, թէ հայոց մելիքները՝ Գանձասարի Յովհաննէս կաթողիկոսի հետ միացած, մի նոր թուղթ գրեցին ռուսաց կայսրուհուն, որով հրաւիրում են ռուսներին որ գան տիրեն քո երկրները. մի խօսքով՝ դաւաճանը մանրամասնաբար տեղեկութիւններ տուեց այն բոլոր պատրաստութիւնների եւ ռուսաց հետ ունեցած յարաբերութիւնների մասին, որ մինչեւ այնօր կատարել էին մելիքները եւ Յովհաննէս կաթողիկոսը։

Թէեւ մելիքներն իրանց պատրաստութիւնները սաստիկ զգուշութեամբ էին կատարում, թէեւ նրանց մէջ պահպանվում էր խորին գաղտնապահութիւն, բայց այդ դաւաճանը Յովհաննէս կաթողիկոսի ընտանին էր, նրա հարազատ եղբայրն էր, որ անձամբ մասնակցում էր խորհուրդների մէջ։ Դա Հասան-Ջալալեան Մելիք-բէկի որդի Ալլահ-Ղուլի-բէկն էր։ Մի եղբօր շինածը միւս եղբայրը քանդում էր....։ Մեր պատմութիւնը բաւական աղքատ է լաւ մարդկանցով, իսկ հարուստ է դաւաճաններով....։

Իբրահիմ-խանին յայտնի էին ռուսաց պատրաստութիւնները. նա վաղուց արդէն սկսել էր ամրացնել Շուշի բերդը։ Նրան անորոշ կերպով յայտնի էին եւ հայոց գաղտնի յարաբերութիւնները ռուսների հետ, բայց այդ մասին նա մի հաստատ փաստ չունէր իւր ձեռքում հայերին պատժելու համար։ Դաւաճանը ցոյց տուեց նրան փաստը։ Նա յայտնեց, թէ մի սուրհանդակ, մուրացկանի հագուստով, իւր ձեռքի գաւաղանի մէջ թագցրած, նոր

թղթեր տարաւ Գանձակ, իսկ այնտեղից պիտի գնայ Թիֆլիզ։ Այդ թղթերին, աւելացրեց նա, ստորագրել են իմ եղբայր Յովհաննէս կաթողիկոսը, Գիւլիստանի Մելիք-Բէգլարեան Մելիք-Աբովը, Ջրաբերդի Մելիք-Իսրայէլեան Մելիք-Մէջլումը, Տիզակի Մելիք-Աւանեան Մելիք-Բախտամը եւ այլ նշանաւոր եկեղեցական ու աշխարհական անձինք։

Վարանդայի Մելիք-Շահնազարը, Խնզիրիստանի Մելիք-Ալլահվերդին, Գիւլ-Նաթաղի Ռուստամ-բէկը խանի կողմնակիցները լինելով եւ միանգամայն հակառակ միւս մելիքների ձգտումներին, այդ պատճառով դաշնակից մելիքները չէին հրաւիրել նրանց մասնակցելու իրանց խորհրդի մէջ։

Խանի հարցմունքին, թէ կարելի՞ է արդեօք սուրհանդակի տարած թղթերը մի հնարքով ձեռք բերել, դաւաճանը պատասխանեց, թէ սուրհանդակը ներկայանալու է Գանձակում Իսրայէլ կաթողիկոսին, որ նրանից եւս թղթեր առնէ ու յետոյ գնայ. բաւական է միայն յայտնել Իսրայէլ կաթողիկոսին, եւ նա իսկոյն կը կալանաւորէ բոլոր թղթերը։

Իսրայէլը վերջին ժամանակներում թաքցնելով իւր հին թշնամութիւնը, որ ունէր Յովհաննէս կաթողիկոսի դէմ, առերես ցոյց էր տալիս, թէ նրա հետ համամիտ եւ համակամ է այն բոլոր խորհուրդների մէջ, որ պիտի կատարուէին հայրենիքի փրկութեան համար։ Նա Գանձասարի վանքում խաչի եւ աւետարանի վրայ հանդիսաւոր կերպով երդուող եկեղեցականներից մէկն էր, որոնք ուխտեցին հաւատարիմ մնալ հայրենիքի ազատութեան գործին։ Բայց միեւնոյն ժամանակ այդ չարագործը շատ անգամ գաղտնի կերպով դիմել էր Իբրահիմ-խանին,

յայտնելով նրան, որ եթէ Յովհաննէս կաթողիկոսին կը հեռացնէ եւ Գանձասարի վանքի կաթողիկոսական աթոռն իրան կը տայ, ինքը խոստանում է հաւատարիմ լինել խանին։

Խանն այժմ յարմար առիթ գտաւ փորձելու նրա հաւատարմութիւնը։ Գանձակի Ջաւատ-խանը իւր հետ թշնամական յարաբերութիւնների մէջ լինելով, ինքը չէր կարող մարդ ուղարկել տուրհանդստակին կալանաւորելու համար։ Նա մի նամակ գրեց Իսրայէլ կաթողիկոսին, յայտնելով, թէ նրա մօտ գալու է մի թղթատար մուրացկանի հագուստով, որի ձեռքի գաւազանի մէջ թագցրած կան կասկածաւոր թղթեր. եթէ այդ թղթերը կը կալանաւորէ եւ իրան կ'ուղարկէ, ինքը խոստանում է ամէն միջոցներով օգնել նրան, որ գրաւէ Գանձասարի կաթողիկոսական աթոռը։ Նամակն ուղարկուեցաւ միեւնոյն պաւաճանի Հասան-Ջալալեան Ալլահ-Ղուլի-բէկի ձեռքով։

Թէեւ Իսրայէլ կաթողիկոսը շատ լաւ գիտէր՝ թէ խանի կամքը կատարելով, ինչպիսի սարսափելի վտանգի պիտի ենթարկէր հայոց մելիքներին եւ Յովհաննէս կաթողիկոսին, թէեւ նա կարող էր հասկանալ, որ իւր մատնութիւնով պիտի սպանէր հայրենիքի ազատութեան գործը, այսուամենայնիւ իւր փառքը եւ Գանձասարի կաթողիկոսական աթոռն աւելի բարձր դասելով ամէն ազգային գործերից, նա կալանաւորեց թղթերը եւ ուղարկեց Իբրահիմ-խանին։

## XXI.

Իբրահիմ-խանն Իսրայէլ կաթողիկոսի ուղարկած թղթերն ստանալուց յետոյ, լուռ մնաց, այնպէս ձեւացնելով, թէ ինքը մելիքների գործողութիւններից ամենեւին

տեղեկութիւն չունի։ Յետոյ բարեկամաբար հրաւիրեց իւր մօտ Մելիք-Մէջլումին, Մելիք-Աբովին եւ Մելիք-Բախտամին, իբր թէ երկրի կառավարութեան գործերի վերաբերութեամբ նրանց հետ կարեւոր խորհելիքներ ունի։ Երբ նրանք եկան, Մելիք-Մէջլումին եւ Մելիք-Աբովին կալանաւորեց Շուշի բերդում, իսկ Մելիք-Բախտամին, որի հետ աւելի մեծ թշնամութիւն ունէր, մատնեց պարսից կառավարութեանը, իբրեւ քաղաքական յանցաւոր, որ ձգտում էր պարսից երկրների մէջ մտցնել ռուսներին։ Մելիք-Բախտամին տարան Պարսկաստան եւ բանտարկեցին Արդաւիլի բերդում։ Պէտք է ի նկատի առնել, որ այդ բերդում, պարսից վաղեմի սովորութիւնների համեմատ, բանտարկվում էին ոչ թէ հասարակ յանցաւորները, այլ միայն նշանաւոր քաղաքական յանցաւորները իշխանական բարձր տոհմերից։ Մելիք-Բախտամը, Մելիք-Աւան-խանի թոռը, նոյնպէս փոքր մարդ չէր։ Նրա ազգատոհմը ծանօթ էր Պարսկաստանին սկսեալ Նադիր-Շահի օրերից։ Մելիք-Բախտամի կալանաւորութիւնից յետոյ, նրա երկիրը (Տի-զակ) պարսկական գաւառ դարձաւ։

Մելիքներին իւր ճանկերի մէջ պահելուց յետոյ նա մի խումբ ձիաւորներ ուղարկեց Գանձասարի հարուստ վանքը կողոպտել. կայքերի մի մասը միայն կարողացան առաջուց թաքցնել։ Յետոյ Յովհաննէս կաթողիկոսին բռնելով իւր հինգ եղբայրների հետ[1] բերեց Շուշի բերդը եւ բոլորին էլ բանտարկեց։ Այնուհետեւ սկսեց զանազան բարբարոսական տանջանքներով չարչարել նրանց։ Յովհան-

[1] Յովհաննէս կաթողիկոսը եօթն եղբայր ունէր. դրանցից մէկն էր Սարգիս եպիսկոպոսը, որ յետոյ կաթողիկոս դարձաւ. միւս վեց եղբայրները սրանք էին՝ Գաբրիէլ-բէկ, Դանիէլ-բէկ, Իսրայէլ-բէկ, Միխայէլ-բէկ, Ջալալ-բէկ եւ Ալլահ-Ղուլի-բէկ դաւաճանը, որ մատնեց բոլորին։

նէս կաթողիկոսին թունաւորելով բանտի մէջ սպանեց (1786), իսկ նրա եղբայրներին եւ միւս ազգականներին ամբողջ ինն ամիս բանտի մէջ մաշեց։ Քանի օր շարունակ Սարգիս եպիսկոպոսի ոտները փայտով ծեծել էր տալիս, որ նա ցոյց տայ ռուսաց կառավարութիւնից ստացած թղթերը։ Բայց թղթերն առաջուց կրակը ձգելով այրել էին։ Վերջը Գանձասարի վանքը ութն հազար թուման[1] տուգանքի ենթարկելով, Սարգիս եպիսկոպոսից ստացաւ այդ գումարը, յետոյ նրան իւր եղբայրների հետ արձակեց բանտից։

Բայց Մելիք-Մէջլումը եւ Մելիք-Աբովը երկար չմնացին բանտում. Նրանք կալանաւորուած էին առանձին տեղում։ Հէնց որ նրանց կալանաւորութիւնը լսեց Մելիք-Մէջլումի քաջ զօրապետ Արզումանը, իսկոյն իւր հետ առաւ իւր երկու աներկիւղ ընկերներին — Դալի-Մահրասային եւ Ջարգար-Մելքումին — գիշերով մտան Շուշի բերդը եւ բանտի դուները խորտակելով, ազատեցին մելիքներին։

Իսրայէլ կաթողիկոսը իւր մատուցած ծառայութիւնների համար ստացաւ Իբրահիմ-խանից Աղուանից կաթողիկոսական աթոռը, այն աթոռը, որի գրաւելու համար նա սպանել տուեց Յովհաննէս կաթողիկոսին։ Բայց նրան թոյլ տուեցին նստել Ամարասայ վանքում, որ աւելի մօտ լինի խանին եւ մնայ նրա ձեռքի տակ։ Գանձասարի վանքում այդ ժամանակ նստած էր նահատակուած Յովհաննէս կաթողիկոսի եղբայր Սարգիս եպիսկոպոսը։

Եւ այսպէս՝ Խամսայի հինգ տիրապետող մելիքներից մնաց երկուսը — Մելիք-Բէգլարեան Մելիք-Աբովը եւ

---

[1] Մի ձեռագիր պատմութեան մէջ գրուած է 56 հազար թուման։

անղեկութիւն չունի։ Ցետոյ բարեկամաբար հրաւիրեց իւր մօտ Մելիք-Մէջլումին, Մելիք-Աբովին եւ Մելիք-Բախտամին, իբր թէ երկրի կառավարութեան գործերի վերաբերութեամբ նրանց հետ կարեւոր խորհրդակցութիւններ ունի։ Երբ նրանք եկան, Մելիք-Մէջլումին եւ Մելիք-Աբովին կալանաւորեց Շուշի բերդում, իսկ Մելիք-Բախտամին, որի հետ աւելի մեծ թշնամութիւն ունէր, մատնեց պարսից կառավարութեանը, իբրեւ քաղաքական յանցաւոր, որ ձգտում էր պարսից երկրների մէջ մտցնել ռուսներին։ Մելիք-Բախտամին տարան Պարսկաստան եւ բանտարկեցին Արդաւիլի բերդում։ Պէտք է ի նկատի առնել, որ այդ բերդում, պարսից վաղեմի սովորութիւնների համեմատ, բանտարկվում էին ոչ թէ հասարակ յանցաւորները, այլ միայն նշանաւոր քաղաքական յանցաւորները իշխանական բարձր տոհմերից։ Մելիք-Բախտամը, Մելիք-Աւան-խանի թոռը, նոյնպէս փոքր մարդ չէր։ Նրա ազգատոհմը ծանօթ էր Պարսկաստանին սկսեալ Նադիր-Շահի օրերից։ Մելիք-Բախտամի կալանաւորութիւնից յետոյ, նրա երկիրը (Տիզակ) պարսկական գաւառ դարձաւ։

Մելիքներին իւր ճանկերի մէջ պահելուց յետոյ նա մի խումբ ձիաւորներ ուղարկեց Գանձասարի հարուստ վանքը կողոպտել. կայքերի մի մասը միայն կարողացան առաջուց թաքցնել։ Ցետոյ Յովհաննէս կաթողիկոսին բռնելով իւր հինգ եղբայրների հետ[1] բերեց Շուշի բերդը եւ բոլորին էլ բանտարկեց։ Այնուհետեւ սկսեց զանազան բարբարոսական տանջանքներով չարչարել նրանց։ Յովհան-

---

[1] Յովհաննէս կաթողիկոսը եօթն եղբայր ունէր. դրանցից մէկն էր Սարգիս եպիսկոպոսը, որ յետոյ կաթողիկոս դարձաւ. միւս վեց եղբայրները սրանք էին՝ Գաբրիէլ-բէկ, Դանիէլ-բէկ, Իսրայէլ-բէկ, Միքայէլ-բէկ, Ջալալ-բէկ եւ Ալլահ-Ղուլի-բէկ դաւաճանը, որ մատնեց բոլորին։

նէս կաթողիկոսին թունաւորելով բանտի մէջ սպանեց (1786), իսկ նրա եղբայրներին եւ միւս ազգականներին ամբողջ ինն ամիս բանտի մէջ մաշեց։ Քանի օր շարունակ Սարգիս եպիսկոպոսի ոտները փայտով ծեծել էր տալիս, որ նա ցոյց տայ ռուսաց կառավարութիւնից ստացած թղթերը։ Բայց թղթերն առաջուց կրակը ձգելով այրել էին։ Վերջը Գանձասարի վանքը ութն հազար թուման[1] տուգանքի ենթարկելով, Սարգիս եպիսկոպոսից ստացաւ այդ գումարը, յետոյ նրան իւր եղբայրների հետ արձակեց բանտից։

Բայց Մելիք-Մէջլումը եւ Մելիք-Աբովը երկար չմնացին բանտում. Նրանք կալանաւորուած էին առանձին տեղում։ Հէնց որ նրանց կալանաւորութիւնը լսեց Մելիք-Մէջլումի քաջ զօրապետ Արզումանը, իսկոյն իւր հետ առաւ իւր երկու աներկիւղ ընկերներին — Դալի-Մահրասյին եւ Ջարգար-Մելքումին — գիշերով մտան Շուշի բերդը եւ բանտի դռները խորտակելով, ազատեցին մելիքներին։

Իսրայէլ կաթողիկոսը իւր մատուցած ծառայութիւնների համար ստացաւ Իբրահիմ-խանից Աղուանից կաթողիկոսական աթոռը, այն աթոռը, որի գրաւելու համար նա սպանել տուեց Յովհաննէս կաթողիկոսին։ Բայց նրան թոյլ տուեցին նստել Ամարասայ վանքում, որ աւելի մօտ լինի խանին եւ մնայ նրա ձեռքի տակ։ Գանձասարի վանքում այդ ժամանակ նստած էր նահատակուած Յովհաննէս կաթողիկոսի եղբայր Սարգիս եպիսկոպոսը։

Եւ այսպէս՝ Խամսայի հինգ տիրապետող մելիքներից մնաց երկուսը — Մելիք-Բէգլարեան Մելիք-Աբովը եւ

[1] Մի ձեռագիր պատմութեան մէջ գրուած է 56 հազար թուման։

Մելիք-Իսրայէլեան Մելիք-Մէջլումը։ Միւս երեքը համարեա թէ ոչնչացան։ Տիզակի Մելիք-Աւանեան Մելիք-Բախտամը աքսորուեցաւ Պարսկաստան, եւ որպէս Արշակ Բ.-ը պահվում էր Անուշ բերդում, դա էլ նոյնպէս պահվում էր Արդաւիլի բերդում։ Խաչէնի Հասան-Ջալալեան մելիքները, որպէս յետոյ կը տեսնենք, Յովհաննէս կաթողիկոսի մահից յետոյ, բոլորը ցրիւ եկան, տարագրուեցան։ Խաչէնում տիրում էին Իբրահիմ-խանից կարգուած մելիքները։ Մնում էր Վարանդայի իշխողը — Մելիք-Շահնազարը, բոլոր չարիքների յօրինողը, Իբրահիմ-խանի սիրելին։

1787 թուին գեներալ Բուրնաշովը վրաց Հերակլ իշխանի հետ ռուսաց զօրքերով մօտեցան Գանձակին։ Մելիք-Մէջլումը եւ Մելիք-Աբովը Շուշի բերդից փախչելուց յետոյ, անմիջապէս գնացին Հերակլի եւ Բուրնաշովի մօտ։ Նրանք յոյս ունէին որ իրանք՝ շատ անգամ հաղորդուած խոստմունքների համեմատ, օգնական զօրք կը ստանային, որ գնան Իբրահիմ-խանի հետ պատերազմեն եւ իրանց հայրենիքին կրկին տիրեն։ Եւ իրաւ, նրանց խոստացան տալ չորս հազար զինուոր իշ. Օրբելեանիի հրամանատարութեան ներքոյ։

Բայց միեւնոյն ժամանակ (1787) ծագեց ռուսաց երկրորդ պատերազմը օսմանցիների հետ. գեներալ Բուրնաշովին անսպասելի հրաման ստացաւ, որ իւր գունդերով վերադառնայ Ռուսաստան։ Այդ պատճառով Բուրնաշովը եւ Հերակլը չկարողացան կատարել իրանց խոստմունքը։

Հերակլը ռուսաց զօրքերի հետ գնաց Թիֆլիզ, իսկ Մելիք-Մէջլումը եւ Մելիք-Աբովը, զրկուած օգնութիւնից, գնացին նրա հետ։

Այդ տեսնելով, Իբրահիմ-խանն աւելի վստահութիւն ստացաւ, աւելի կատաղի դարձաւ։ Մինչեւ այնօր նա երկիւղ ունէր ռուսներից. բայց ռուսները յայտնուեցան եւ երազի նման դարձեալ աներեւութացան։ Այնուհետեւ այլ եւս ի՛նչը կարող էր նրան զսպել։ Մելիքների միաբանութիւնը քայքայուած էր. Հայոց կաթողիկոսն անգամ նրա ձեռքում մի անարգ գործիք էր դարձել իւր հայրենիքի կործանման համար։ Մնացել էին երկու մելիքներ միայն, — Աբովը եւ Մէջլումը — ճշմարիտ հայրենասէրներ, պատուի եւ զգացմունքի տէր տղամարդիկ, դրանք եւս օտարների դռներում օգնութիւն էին մուրում, — այն մարդիկը, որոնց զօրութիւնից սարսափում էր Իբրահիմ-խանը։

Իբրահիմ-խանը երբ լսեց, որ երկու մելիքները ռուսաց զօրքերի հետ գնացել են Թիֆլիզ, Մելիք-Մէջլումի մօրը եւ Մելիք-Աբովի ընտանիքից մի քանի հոգի բռնել տուեց, եւ բերելով Շուշի բերդը, այնտեղ պահեց իբրեւ պատանդ։ Յետոյ Մելիք-Մէջլումի երկիրը կողոպտեց, աւերակ դարձրեց. Նրա տեղը կարգեց Գիւլ-Նաթաղ գիւղի Ռուստամ-բէկին[1], որ խանի սիրելի Իսրայէլ կաթողիկոսի քրոջ ամուսինն էր։ Մելիք-Աբովի տեղը նոյնպէս ուրիշին կարգեց։

Իբրահիմ-խանն այժմ հասաւ իւր նպատակին. նա իրան ամբողջ Ղարաբաղի տէրն էր համարում։ Այնտեղ մնացած մելիքները թէեւ դեռ եւս վայելում էին իրանց վաղեմի արտօնութիւնները, բայց բացի Վարանդայի Մե-

[1] Այդ Ռուստամ-բէկը Միսայէլ-բէկի եղբայրն էր. մեր պատմութեան մէջ տեսանք, որ Միսայէլ-բէկը կաշառուած Իբրահիմ-խանից, կամենում էր Մելիք-Մէջլումին սպանել, որ Ջրաբերդի մելիքութիւնն ինքն ստանայ։ Այժմ ստացաւ նրա եղբայրը՝ անպատիւ հպատակութիւն խոստանալով մահմեդական խանին։

լիք-Շահնազարից, միւսները խանի ստորադրեալներն էին համարվում։

Բայց Մելիք-Մէջլումը եւ Մելիք-Աբովը հանգիստ չմնացին. Նրանք չէին կարող անպատիժ թողնել մահմեդական խանին, որ իրանց հայրենիքն աւերակ դարձրեց...։

## XXII.

Մելիք-Մէջլումը եւ Մելիք-Աբովը Թիֆլիզում երկար չմնացին։

Այնքան զոհողութիւններ կրելուց յետոյ, հայրենիքը, ընտանիքը թշնամու ձեռքում թողնելուց յետոյ, մեծ յոյսերով Թիֆլիզ գալուց եւ այնտեղ յուսահատ մնալուց յետոյ, երկու մելիքները — Մէջլում եւ Աբով — դարձեալ իրանց երեսները յետ չէին դարձնում Ռուսաստանից, դարձեալ մեծ ակնկալութիւններ ունէին նրա պաշտպանութեան վրայ։

Նրանք նամակով դիմեցին գեներալ-անշէֆ Տեկելլուն, նկարագրելով այն բոլոր դժբախտութիւնները, որ կրեցին իրանք՝ սկսեալ այն օրից, երբ գեներալ-պօրուչիկ Պատեօմկինի խոստմունքներից հրապուրուած, անձնատուր եղան Ռուսաստանին, սկսեցին պատերազմել Իբրահիմ-խանի հետ. Նկարագրեցին այն բոլոր բարբարոսութիւնները, որ կատարեց այդ խանը։

Նրանք դարձեալ խնդրում էին կայսրուհու պաշտպանութիւնը հետեւեալ պայմաններով.

1. Բարբարոսների լուծն իրանցից հեռացնելու համար, տալ իրանց ի ս կ ո ւ թ ե ա մ բ օգնութիւն զօրքերով, թէեւ փոքր թուով. որովհետեւ նրանք միացնելով իրանց ուժերը ռուսաց զօրքերի հետ, կարող էին միայն իրանց ահարկու անունով ոչնչացնել պարսից զօրութիւնը

եւ ջնջել Շուշուայ խանի իշխանութիւնը։ Միեւնոյն ժամանակ խնդրում էին՝ տալ իրանց մի գլխաւոր հրամանատար, որ իւր արժանաւորութիւններով եւ յատկութիւններով ընդունակ լինէր գործին։

2. Եթէ իրանք պաշտպանութիւնն ստանալ չէին կարող, խնդրում էին, որ թոյլ տրուի իրանց տեղափոխուել Կասպից ծովի ափերի մօտ, Դերբէնդի շրջակայքը, այնտեղ նոր գաղթականութիւն հիմնելու համար։ Իսկ իրանց տրուելիք նոր երկրները պիտի համարուէին իրանց *սեպհականութիւն*, տալով մելիքներին եւ նրանց ժառանգներին *լիակատար իշխանութիւն* իրանց հպատակների վրայ տիրելու։

Միեւնոյն ժամանակ Ղարաբաղի մելիքների պատգամաւոր եւ ռուսաց գործակատար Ստեփան Դաւթեանը խնդրում էր Պատեոմկինից շուտափոյթ օգնութիւն հասցնել մելիքներին։ Նա էլ խոստանում էր ուղարկել Դերբէնդ վեց գունդ զօրք՝ ցանկացողներին ռուսաց հովանաւորութեան ներքոյ ընդունելու համար։

Յիշեալ գաղթականութեան մասին, Ռուսաստանի հայոց արքեպիսկոպոս Յովսէփը իւր ընդարձակ տեղեկագրի մէջ, որ իշխան Գրիգորիյ Ալեքսանդրովիչ Պատեոմկինի միջնորդութեամբ ներկայացրեց Եկատերինէ Բ կայսրուհուն, ի միջի այլոց գրում է հետեւեալը.

„Սեպտեմբերի 19-ին, 1789 թուի Ղարաբաղի մելիքները, իրանց ստացած *մխիթարական* թղթերի համար, յայտնեցին ինձ՝ հայոց արքեպիսկոպոսիս իրանց շնորհակալութիւնը, եւ խնդրում են տալիս հետեւեալի մասին. — Թէ իրանք, մելիքները, տեղեկութիւն են ստացել, իբր թէ նորին պայծառափայլութիւն իշխան Գրիգորիյ Ալեքսանդրովիչ Պատեոմկինը հրամայել է գեներալ

Պետր Աբրամովիչ Տեկելուն, որ մելիքներին կանչէ Ռուսաստան, եւ թէ յիշեալ գեներալ Տեկելու կողմից այդ գործի մասին իրանց ոչինչ հաղորդուած չէ։ Այդ պատճառով ինձանից (արքեպիսկոպոսից) յատկապէս խնդրում են, որ նրանց ճիշտ տեղեկութիւն տամ։ Մելիքները յայտնում են ինձ իրանց մէջ վճռած բոլոր պայմանները իրանց պահանջների վերաբերութեամբ եւ խնդրում են, որ իրանց իմացում տամ նորին պայծառափայլութեան բարի կարգադրութեան մասին։

“Յիշելով այն խնդիրքները, որ իրանց նախնիքը մատուցել են Պետրոս Մեծին, եւ հիմնուելով կայսրի ողորմածութեան վրայ, որ նա ցոյց էր տուել նոյն խնդիրքների առիթով, մելիքներն այժմ նոյնպէս խնդրում են, որ իրանց թոյլ տրուի գաղթել Դերբէնդի կողմերը, եւ այդ երկրները վաւերացուին իրանց անունով որպէս մշտական ժառանգութիւն։ Իսկ եթէ հարկ կը համարուի իրանց գաղթել Ռուսաստան, խնդրում են Վրաստանում գտնուած ռուսաց զօրքից օգնութիւն, որպէս զի իրանց ժողովրդի հետ միասին կարողանան անվտանգ կերպով հեռանալ Ղարաբաղի իշխանութիւնից։ Միեւնոյն ժամանակ յայտնում են, որ իրանց ամբողջ հասարակութիւնը, այդ երկու առաջարկութեան մէջ համաձայնուելով մելիքների հետ, խնդրում են, որ նրանց տեղեկութիւն տան, թէ արդեօք ո՞րտեղ, ո՞ր երկրում նրանց հողեր կը տան. եթէ Ռուսաստանում, ուրեմն ի՞նչ պայմաններով։ Մելիքները պահանջում են, որ բարեհաճեն վերահաստատելու իրանց ունեցած վաղեմի արտօնութիւնները, որ ամենահին ժամանակներից վայելում էին իրանք, եւ որ մինչեւ անգամ իրանց թշնամիները չեն կամեցել խափանել. այսինքն որ նրանք

իրաւունք ունենան տիրելու իրանց հպատակների վրայ, եւ իրանց յաջորդները նոյնպէս իրաւունք ունենան ժառանգելու հօր իշխանութիւնը, նոյնպէս եւ այն երկրները, որ կը տրուեն իրանց բնակութեան համար, կարողանան սեպհականացնել իրանց միեւնոյն իրաւունքներով։

"Յիշեալ երկու մելիքները՝ Մէջլում եւ Աբով, իրանց խնդիրքը մատուցանելուց յետոյ, հաւատացնում են, որ մնացեալ երեք մելիքները եւս, որ մնացել են Ղարաբաղում, համաձայն են իրանց հետ։ Այդ բոլորը հաղորդելով ի գիտութիւն ձերդ պայծառափայլութեան (Պատեօմկինի) Նորին Կայսերական Մեծութեանը զեկուցանելու համար, յատկապէս եւ ամենախոնարհաբար խնդրում եմ, որ շնորհուի նրանց բարձրագոյն ողորմած հովանաւորութիւն, որով նշանաւոր օգուտ կը լինի Ռուսաստանին։ Իսկ ինձ պէտք է հրահանգ տալ, թէ ինչ կարող եմ յայտնել նրանց։ Որովհետեւ ես առանց առանձին թոյլտուութեան, առանց բարձրագոյն բարեհաճութեան կամ ձեր պայծառափայլութիւնից տեղեկութիւն ստանալու, նրանց պատասխանել կարող չեմ։ Իսկ յիշեալ երկու մելիքների՝ Մէջլումի եւ Աբովի, նամակների իսկականը, իրանց թարգմանութեան հետ, ուղարկում եմ այս թղթով։"

Թէ ինչ պատասխան ստացան մելիքները, մեզ յայտնի չէ, միայն այսքանը յայտնի է, որ ռուսներն այդ միջոցներում զբաղուած էին թիւրքական պատերազմով եւ հազիւ թէ ժամանակ ունէին մի հիմնաւոր կարգադրութիւն անելու մելիքների ծանր դրութիւնը փոքր ինչ թեթեւացնելու համար։

Նրանք առժամանակ միայն մնալով Հերակլ իշխանի մօտ, առաջարկում էին նրան միանալ իրանց հետ եւ

ոչնչացնել Իբրահի-խանի իշխանութիւնը, յիշեցնում էին նրան այն բարբարոսական սպանութիւնները, որ մի քանի տարի առաջ Վրաստանում կատարեց Աւարիայի Օմար-խանը Իբրահիմ-խանի դրդելով։ Հերակլը խոստանում էր կատարել նրանց ցանկութիւնը, միայն խորհուրդ էր տալիս փոքր ինչ սպասել։ Բայց մելիքներն սպասելու համբերութիւն չունէին. իրանց հպատակները, իրանց ընտանիքը մինչեւ անգամ գտնվում էին Իբրահիմ-խանի ձեռքում։

Այդ միջոցներում Հերակլը նամակ է ստանում Իբրահիմ-խանից։ Խանը գրում է նրան՝ Մելիք-Մէջլումին եւ Մելիք-Աբովին բռնէ եւ իւր մօտ ուղարկէ։ Իսկ դրանց փոխարէն խոստանում էր խանը յետ ուղարկել այն 3000 Թուրք ընտանիքներին, որոնք առաջ վրաց հպատակներ էին եւ Բորչալուի կողմերից փախել եկել էին Ղարաբաղ եւ բնակվում էին Ասկարանի բերդի մերձակայքում։

Վրաց իշխանը ոչ այնքան իւր հպատակները յետ ստանալու ցանկութեամբ, որքան երկիւղ կրելով Իբրահիմ-խանի վրէժխնդրութիւնից, մտածում է կատարել նրա հրամանը, եւ իւր մօտ ապաստանած հիւրերին վատութեամբ կալանաւորելով, ուղարկել դահճի մօտ։

Նրա խորհուրդը յայտնվում է հայոց մելիքներին։ Հերակլի քարտուղարը, որ կոչվում էր Միրզա-Գիօրգի, գիտէր պարսկերէն ու արաբերէն եւ ազգով հայ էր. նա Իբրահիմ-խանի նամակը կարդալուց յետոյ բովանդակութիւնը յայտնում է մելիքներին։

Որպէս պատմում են, Հերակլը Թիֆլիզի Օրթա-Ճալա կոչուած այգիներում ճաշ է պատրաստում, այնտեղ հրաւիրում է երկու մելիքներին, որ աբրեցնէ, այնուհետեւ իւր սեղանի վրայ կալանաւորէ հիւրերին։ Մելիք-

ներին արդէն յայտնի էր նրա դիտաւորութիւնը. դեռ ճաշից առաջ նրանք ձի են նստում, պատճառելով թէ կամենում են մերձակայքում որսորդութիւն անել իշխանի սեղանի համար: Նրանք այլեւս չեն վերադառնում: Երկու մելիքները՝ որ իրանց հետ միայն հարիւր ձիաւոր ունէին, թողնում են անհիւրընկալ Թիֆլիզը եւ ուղեւորվում են դէպի Գանձակ: Ճանապարհին հանդիպում են նրանց վրացի սայլապաններ, որ գնում էին դէպի քաղաք. դրանց միջոցով Մելիք-Մէջլումը լուր է տալիս Հերակլին, ասելով, թէ գնացէք յայտնեցէք ձեր իշխանին, որ Մելիք-Մէջլումը չի մոռանայ նրա հիւրասիրութիւնը...:

Եւ իրաւ, Մելիք-Աթամի պատուասէր որդին չմոռացաւ վրէժխնդիր լինել վրաց իշխանի խաբէութեան համար. նրա սարքած ճաշը մի քանի տարուց յետոյ Թիֆլիզի կործանման պատճառը դարձաւ...:

Վրաց իշխանի նենգաւորութիւնը սաստիկ վիրաւորեց Մելիք-Մէջլումի զգայուն սիրտը: Ռուսաստանի Հայոց Յովսէփ արքեպիսկոպոսն այնքան մեծ համարում ունէր Հերակլի վրայ, որ մինչեւ անգամ մտածում էր, եթէ չյաջողուի իշխան Պոտեօմկինին հայ-վրաց միացեալ իշխանութեան աթոռի վրայ բազմեցնել, նրանից յետոյ ի նկատի ունէր միայն Հերակլին: Իսկ այդ երկչոտը, սարսափած Իբրահիմ-խանի նամակից, կամենում էր նրա ձեռքը մատնել Ղարաբաղի երկու նշանաւոր մելիքներին, որոնց նոյն խանի դէմ օգնական զօրք տալու յուսով հրաւիրեց իւր մօտ Թիֆլիզ:

Երկու մելիքները Թիֆլիզից եկան Գանձակ. տեղային Ջաւադ-խանը սիրով ընդունեց նրանց, բնակութեան տեղ տուեց իւր քաղաքում եւ նրանց կեցութեան համար ռոճիկ նշանակեց: Թէեւ Իբրահիմ-խանը մի քանի ան-

գամ դիմեց Ջաւադ-խանին եւ զանազան խոստմունքներով խնդրեց նրանից, որ մելիքներին իւր ձեռքը տայ, բայց Ջաւադ-խանն աւելի մեծահոգի գտնուեցաւ, քան թէ վրաց իշխանը, եւ մերժեց նրա խնդիրքը։

## XXIII.

Երբ Մելիք-Մէջլումը եւ Մելիք-Աբովը հանգստութիւն գտան Գանձակ քաղաքում, այստեղ լսեցին այն բոլոր բարբարոսութիւնները, որ Իբրահիմ-խանը գործ էր դրել Յովհաննէս կաթողիկոսի եւ առհասարակ Հասան-Ջալալեան տոհմի վրայ. լսեցին Գանձասարի հարուստ վանքի կողոպուտը եւ շարունակ հալածանքները, որ բռնակալը կատարում էր այդ վանքի միաբանութեան վրայ՝ չարչարելով նրանց եւ պահանջելով, որ եթէ այլեւս վանքային թագցրած կայքեր են մնացել, իրան ցոյց տան։ Մելիք-Մէջլումը, որպէս գիտենք, նահատակուած Յովհաննէս կաթողիկոսի քրոջ որդին էր։ Նա Գանձակից ուղարկեց մի խումբ ձիաւորներ Թիւլի-Արզումանի եւ Ջարգար-Մելքումի առաջնորդութեամբ, որ գնան Գանձասարի վանքը, եւ Յովհաննէս կաթողիկոսի եղբայր Սարգիս եպիսկոպոսին միւս միաբանների հետ միասին բերեն Գանձակ։

Արզումանի խումբը, գալով Խաչէն, թագնվում է Գանձասարի վանքի մօտ, անտառի մէջ, Կրատափ կոչուած տեղում։ Այստեղից իմացում են տալիս Սարգիս եպիսկոպոսին, որ պատրաստուի փախչելու։ Լրտեսների թիւն այդ ժամանակ այնքան բազմացել էր հայերի մէջ, որ Սարգիս եպիսկոպոսն ստիպուած է լինում սկզբից մի խորամանկութիւն գործ դնել, որպէս զի իրանց փախուստի մասին խանին չմատնեն։ Նա յանկարծ լուր է տարա-

ծում, թէ ապստամբներ են յայտնուել, պէտք է յարձակում գործեն։ Այդ լսելով շրջակայ գիւղացիները՝ հաւաքւում են Գանձասարի վանքի ամրութեան մէջ, որ այնտեղ պատսպարուեն։ Այդ ժամանակ եպիսկոպոսը՝ նրանցից որին որ կասկածաւոր էր համարում, բռնել է տալիս եւ վանքում բանտարկում։ Բայց չնայելով նրա գործ դրած նախազգուշութեանը, թշնամու համար միշտ պատրաստ հայ լրտեսներից մէկը արդէն խանին իմացում էր տուել բոլորը, թէ Սարգիս եպիսկոպոսը փախչելու է Գանձակ եւ վանքի մնացած հարստութիւնը տանելու է իւր հետ։

Խանն ուղարկեց մի խումբ ձիաւորներ, որ փախստականներին կալանաւորեն եւ վանքի բոլոր իրեղէնները յափշտակեն։ Նրանք այնպէս շուտափոյթ կերպով վրայ հասան, որ փախստականները միջոց չունեցան իրանց հետ վեր առնել վանքի իրեղէնները, որոնք մնացին իրանց թաքցրած տեղերում։

Թէեւ վանքի հարստութիւնն ազատուեցաւ, այսու ամենայնիւ Մելիք-Մէջլումի ուղարկած մարդկանց մեծ քաջութիւն էր հարկաւոր, որ կարողանային եպիսկոպոսին եւ նրա ընկերներին ազատել խանի ձիաւորների ձեռքից։ Այդ միջոցին օգնութեան հասաւ ինքը բնութիւնը։ Մռաւ լեռների վրայ պատեց Ղարաբաղի այն սովորական թանձր մառախուղը, որ մի քայլ հեռաւորութեան վրայ ոչինչ չի կարելի տեսնել։ Արզումանը իւր խումբը երկու մաս բաժանեց, մի մասը յանձնեց Ջարդար-Մելքումին եւ պատուիրեց նրան, որ եպիսկոպոսին միւսների հետ առանձին ճանապարհով տանէ դէպի Գանձակ, իսկ ինքը մնացած մասի հետ յետ մնաց եւ սկսեց կռուել խանի ձիաւորների հետ։ Նրան յաջողուեցաւ մեծ յաղթութիւն

գործել մի քանի հարիւր ձիաւորների դէմ, որոնցից շատերին բռնելով, ականջներն ու քթերը կտրեց եւ յետ ուղարկեց, ասելով՝ "գնացէք ձեր խանին խաբար տարէք, որ Արզումանը հեշտ կուլ տալու պատառ չէ"....:

Սարգիս եպիսկոպոսը իւր եղբայրների հետ եկան Գանձակ 1791 թուին. Նրա հետ էր պատանի Բաղդասարը[1], որ այդ ժամանակ 22 տարեկան էր: Ջաւադ-խանը[2] սիրով ընդունեց նրանց, եպիսկոպոսին բնակութեան տեղ տուեց, ռոճիկ նշանակեց եւ այնուհետեւ Սարգիսը Գանձակի գաւառի հայոց առաջնորդը դարձաւ: Գանձասարի վանքը մնաց աւերակ դրութեան մէջ. զուրկ հոգեւոր միաբանութիւնից:

Միեւնոյն տարում (1791) երբ Հասան-Ջալալեան Սարգիս եպիսկոպոսն եկաւ Գանձակ, իւր երկու եղբայրներին՝ Դանիէլ-բէկին եւ Ջալալ-բէկին այնտեղից ուղարկեց Գանձասար, որ վանքի թաղցրած կայքերը դուրս հանէին եւ բերէին Գանձակ: Այդ վանքի ամբաւ հարստութիւնից՝ Իբրահիմ-խանի յափշտակելու ժամանակ կարողացել էին մի մասը միայն թաքցնել, որովհետեւ Սարգիս եպիսկոպոսի փախուստն այն աստիճան շուտափոյթ կերպով կատարուեցաւ, որ նա ժամանակ չգտաւ վանքի կայքերը իւր հետ վեր առնելու:

---

[1] Բաղդասարը Սարգիս եպիսկոպոսի եղբայր Հասան-Ջալալեան Դանիէլ-բէկի որդին էր. Նա եպիսկոպոս ձեռնադրուելուց յետոյ Ղարաբաղի միտրոպոլիտ նշանակուեցաւ եւ շատ նշանաւոր գործեր կատարեց:

[2] Ջաւադ-խանը իւր հօր Շահ-Վերդի-խանի նման շատ հայասէր մարդ էր. Նա շարունակ հայոց եկեղեցի էր գնում եւ ներկայ էր գտնվում հայոց բոլոր կրօնական տօներին եւ հանդէսներին: Գանձակի մայր եկեղեցու սիւներից մէկի վրայ կայ փոքրիկ արձանագրութիւն. "Ջաւադ-խանի սիւնը". — այդ սիւնի մօտ էր կանգնում նա, երբ որ գալիս էր հայոց եկեղեցի: Հին, ցեղական թշնամութիւն ունենալով Շուշիի խաների հետ, Ջաւադ-խանն աւելի բարւոք էր համարում բարեկամութիւն պահպանել հայոց մելիքների հետ եւ Իբրահիմ-խանի հակառակ գործել:

Նրա եղբայրները նոյնպէս անյաջող գտնուեցան. — Դանիէլ-բէկը եւ Ջալալ-բէկը թէեւ գաղտնի եկան Գանձասար, բայց իսկոյն մատնուեցան։ Իբրահիմ-խանի մարդիկը բռնեցին նրանց, Ջալալ-բէկի գլուխը կտրեցին, իսկ Դանիէլ-բէկին կենդանի տարան խանի մօտ։ Խանը հրամայեց բանտարկել նրան, ասելով՝ "գնա՛, այնտեղ մնա՛, թող ոտները գան եւ ազատեն քեզ„... Այդ խօսքերով գող խանը կամեցաւ ծաղրել հայերի այն յոյսերը, որ դրած էին ռուսների վրայ։ Մի քանի օրից յետոյ նրան բանտից դուրս բերելով, հրամայեց մաս-մաս կտրատել...։

Նրա քոյրը՝ տիկին Ղամար-սուլթանը (Մելիք-Մէջլումի մայրը), որ այդ ժամանակ պահուած էր Շուշի բերդում իբրեւ պատանդ, — հաւաքեց եղբօր մարմնի կտորտանքը եւ թաղել տուեց տեղային գերեզմանատանը[1]։

Մենք վերեւում յիշեցինք, որ Իբրահիմ-խանը դաւաճան Իսրայէլ-կաթողիկոսի մատուցած ծառայութիւնների համար, Մելիք-Շահնազարի խորհրդով, նրան տուեց

---

[1] 1851 թուին Դանիէլ-բէկի որդի Բաղդասար միտրոպոլիտը մի արձան կանգնեցնելով հօր շիրիմի վրայ, փորագրել տուեց հետեւեալ տողերը.

„Ցարձանիս շիրիմ ամփոփեալ գնի՝
Մարմին իշխանին խաչէն գաւառի,
Վեհ իշխանազնեայ Դանիէլ-բէկի,
Որդւոյ Մելիք-բէկ իշխանապետի,
Ի տանէ հայկազն մեծ Ջալալ-Դօլի,
Տեառն Արցախայ հայոց աշխարհի,
Որ Ղարաբաղայ կամ Շուշւոյ նահանգ՝
Նա սովորաբար արդ վերածայնի։
Առ սուրբ հաւատոյ սա լուսահոգին՝
Նահատակի աստ յամրոցիս Շուշի,
Դառն տանջանօք Իբրահիմ-խանի,
Որ թշնամի էր խաչին Քրիստոսի։
Ի 1240 թուին հայոց (1791)„։

Ամարասայ վանքը եւ Ղարաբաղի վրայ հովիւ կարգեց։ Այդ ժամանակ Երիցմանկանց վանքում նստած էր փոքր Սիմոն անունով մէկը կաթողիկոս։ Եւ այսպէս, Ղարաբաղում երկու կաթողիկոս կար՝ Իբրահիմ-խանի հովանաւորութեան ներքոյ։

Այդ տեսնելով Գանձակում գտնուած հայոց մելիքները՝ Մէջլումը եւ Աբովը, Ջաւադ-խանի հետ միաբանելով, Իբրահիմ-խանի հակառակ, Սարգիս եպիսկոպոսին Գանձակում կաթողիկոս օծել տուին (1794)։ Պատմում են, թէ օծութեան խորհուրդը կատարելու ժամանակ եպիսկոպոսների թուից մէկը պակաս էր. այդ պակասը լրացնելու համար ինքը Ջաւադ-խանը կանգնեց եպիսկոպոսների շարքում, ասելով. «օծեցէք, թող մէկն էլ ես լինիմ»։

Գանձակի հայերն այնտեղ գտնուած մելիքների հետ դիմեցին Ս. Էջմիածին, խնդրելով որ Սարգսին հաստատեն Աղուանից կաթողիկոսութեան մէջ[1]։ Բայց Ս. Էջմիածինը մերժեց նրանց խնդիրքը, պատճառ բերելով թէ Ղարաբաղում կան արդէն երկու կաթողիկոս — Իսրայէլը եւ Սիմոնը. թէեւ այդ կաթողիկոսներն աւելի մահմեդականների հոգեւորականներ էին, քան թէ հայոց։

Եւ այսպէս ծագեցան երկպառակութիւններ երեք միմեանց հակառակ կաթողիկոսների մէջ, որոնցից Սիմոնը նստած էր Երիցմանկանց վանքում, Իսրայէլը նստած էր Ամարասայ վանքում, իսկ Սարգիսը Գանձակում։

Այդ երկպառակութիւնները երկար զբաղեցրին Ղարաբաղի եւ Գանձակի հայ հասարակութիւններին մի այն-

---

[1] Զպէտք է մոռանալ, որ ոչ միայն Ղարաբաղը Աղուանից կաթողիկոսութեան թեմ էր համարվում, այլեւ Գանձակի, Շամախու, Նուխու, Դերբէնդի եւ ուրիշ մի քանի գաւառները։

պիսի ժամանակում, երբ Ղարաբաղի հայկական իշխանութիւնները Իբրահիմ-խանի ոտքերի տակ հետզհետէ խորտակվում էին… եւ հայերը պէտք է լուծէին մի մեծ ազգային խնդիր…։

## XXIV.

Մելիք-Մէջլումի եւ Մելիք-Աբովի Գանձակում գտնուած ժամանակ Իբրահիմ-խանն իրան դեռ եւս այդ երկու մելիքների վտանգից ազատուած չէր համարում, մանաւանդ երբ տեսնում էր որ նրանք միացել են իւր թշնամու՝ Ջաւադ-խանի հետ։ Նա նկատում էր, որ Մելիք-Մէջլումի եւ Մելիք-Աբովի Ղարաբաղում թողած ժողովրդի մէջ ինչ որ գաղտնի շարժում կայ։ Այդ ժողովուրդը չէր կարող մոռանալ իւր սիրելի մելիքներին եւ հպատակել այնպիսի հայ դաւաճանների, որոնք մահմեդական խանից կարգուած եւ մահմեդականի հլու էին։ Մենք տեսանք, որ Մելիք-Մէջլումի եւ Մելիք-Աբովի Ղարաբաղից հեռանալուց յետոյ, նրանց հպատակներին Իբրահիմ-խանի օգնութեամբ սկսեցին տիրել նոր մելիքներ։ Այդ օտար եւ խորթ մելիքներն անտանելի էին ժողովրդին։

Այդ էր պատճառը, որ Իբրահիմ-խանը կասկածելով, թէ Գիւլիստանի եւ Ջրաբերդի հայերը (այսինքն Մելիք-Մէջլումի եւ Մելիք-Աբովի հպատակները) կարող են միանալ Գանձակի հայերի հետ, եւ մեծ ուժ կազմելով, կարող են իրան վտանգ սպառնալ, այդ մտքով սկսեց նրանց Գանձակի սահմանների մօտից տեղափոխել ուրիշ տեղ։ Գիւլիստանի բնակիչներին տարաւ Խաչէնի գաւառը, իսկ Ջրաբերդի բնակիչներին տարաւ Տիղակի գաւառը[1], եւ

---

[1] Այդ տեղափոխութիւններին պէտք է վերաբերել այն երեւոյթը, որ այսօր Ղարաբաղի զանազան վիճակներում հանդիպում ենք շատ միեւ-

այսպէս ցրուեց նրանց դէպի ամեն կողմեր։ Այդ ժամանակներումն էր (1788) որ Մելիք-Աբովի հպատակներից (Գիւլիստանից) 500 ընտանիք, չկարողանալով համբերել Իբրահիմ-խանի բռնութեանը, թողեցին իրանց հայրենիքը եւ գաղթեցին Գանձակի գաւառը։ Ջաւադ-խանը նրանց բնակութեան տեղ տուեց Շամքօրի մէջ, որ իւր իշխանութեան տակ էր գտնվում։ Դարձեալ այդ ժամանակներումն էր, որ Մելիք-Մեջլումի հպատակներից մօտ հազար ընտանիք թողեցին Ջրաբերդը, նոյնպէս գաղթեցին Գանձակի գաւառը։ Ջաւադ-խանը նրանց բնակութեան տեղ տուեց Շամշադինում։

Այդ գաղթականները, թէեւ անցան մի օտար հողի վրայ, բայց դարձեալ գտնվում էին իրանց մելիքների հպատակութեան ներքոյ։ Ջաւադ-խանը չէր իշխում նրանց վրայ. Մելիք-Մէջլումը տիրում էր իւր ժողովրդին, իսկ Մելիք-Աբովը տիրում էր իւր ժողովրդին։ Նրանք բնակվում էին Գանձակի գաւառում որպէս ժամանակաւոր հիւրեր։

Այժմ ի դէպ է յիշել, որ ինչպէս Ղարաբաղում կային հինգ հայկական մելիքութիւններ, այնպէս էլ Գանձակի գաւառում կային չորս հայկական մելիքութիւններ[1],

---

նոյն անունով գիւղերի, որպէս են՝ Հին-խնածախ, Նոր-խնածախ, Հին-Ջէյվա, Նոր-Ջէյվա, եւայլն։

[1] 1. Բարսումի մելիքները, որպէս էր Մելիք-Ռոստոմը եւայլն. 2. Խաչակապի մելիքները, որպէս էր Մելիք-Մովսէսը եւայլն. 3. Ուկանապատի մելիքները, որպէս էր Մելիք-Իւսուբը եւայն. 4. Գետաշէնի մելիքները, որպէս էր Մելիք-Եդիգարի որդի Մելիք-Մնացականը եւայլն։ Այդ մելիքները նոյնպէս ժառանգաբար իշխում էին իրանց ժողովրդի վրայ, միայն դրանց եւ Գանձակի խանի մէջ այն հակառակութիւնը չկար, որպէս Ղարաբաղի մելիքների եւ Շուշիի խաների մէջ։ Այդ մելիքները միշտ հաշտ են եղել Գանձակի խաների հետ եւ համարուել են նրանց ստորադրեալներ։

որոնց մասին մեր պատմութեան մէջ ոչինչ չենք խօսել։

Ղարաբաղի հայերի մի մասը խմբուելով Գանձակի գաւառում, իրանց վաղեմի մելիքների իշխանութեան ներքոյ, սկսեցին այստեղից արշաւանքներ գործել Իբրահիմ-խանի վրայ։ Նրանց երբեմն օգնում էին եւ Գանձակի գաւառի հայ մելիքները Ջաւադ-խանի գրգռելով։ Այդ արշաւանքները ոչ այնքան տիրապետական նպատակներով էին կատարվում, որքան ասպատակութեան եւ աւարառութեան նպատակներով։ Ամեն մի յարձակում վերջանում էր կոտորածով, հրդեհով, աւերածով եւ գերեվարութեամբ։ Ղարաբաղի թուրքերն սկսեցին այդ ժամանակ հայի ձեւով հագնուել, որ չճանաչուեն։ Ամեն մի թուրք, որ հայերի ձեռքն էր ընկնում, անխնայ կերպով սպանվում էր։ Արշաւանքներին առաջնորդում էին Դալի-Մահրասան, Թիւլի-Արզումանը եւ շուշեցի Ջարգար-Մելքումը։ Նրանք այն աստիճան նեղը գցին Իբրահիմ-խանին, որ բոլորովին կտրեցին Թարթառ գետի անցքը եւ ոչ մի թուրք չէր համարձակվում դէպի Գանձակի կողմերն անցկենալ։

Իբրահիմ-խանը հարկադրուեցաւ մի քանի անգամ դիմել Ջաւադ-խանին, խնդրելով նրա միջնորդութիւնը, որ իրան հաշտեցնէ Մելիք-Մէջլումի եւ Մելիք-Աբովի հետ, որ նրանք դադարեցնեն իրանց թշնամական գործողութիւնները եւ վերադառնալով իրանց հայրենիքը, վայելեն իրանց վաղեմի իրաւունքները, տիրելով իրանց երկրներին։ Բայց մելիքները չէին հաւատում խաբեբայի խոստմունքներին, առաջարկում էին, թէ իրանց հաշտութիւնը կը կայանայ միայն այն ժամանակ, երբ Շուշի բերդը կը քանդուի եւ Իբրահիմ-խանը դուրս գալով այդ որջից, կը

հեռանայ Ղարաբաղից, հիմնելով իւր համար նոր բնակութիւն Ջուանշիրի անապատներում, ուր ապրում էին նրա նախնիքը։ Այդ առաջարկութիւնը խիստ ծանր էր. զրկուել Շուշի բերդի ամրութիւններից, նշանակում էր զրկուել ամեն բանից։ Պէտք է ասած, որ Ջաւադ-խանը նոյնպէս համակրում էր այն մտքին, որ Շուշի բերդը դատարկուած եւ քանդուած լինի։ Նրան անտանելի էր տեսնել իւր հարեւանութեան վրայ մի նորաբուսիկ խանութիւն, ամրացած Շուշիի անմատչելի բարձրութեան վրայ։ Նա անդադար կրկնում էր այս խօսքը. “Նզովեալ լինի Մելիք-Շահնազարը, որ կեանք տուեց սառած օձին՝ իւր կուրծքի վրայ ջերմացնելով նրան։ Եթէ չլինէր Շուշի բերդը, չէր լինի եւ Ջուանշիրցիների խանութիւնը....։„

Եւ իրաւ, այդ բերդը հիմնեց Մելիք-Շահնազարը եւ տուեց Փանահ-խանին։ Նա Ղարաբաղի կրծքի վրայ սկսեց զարգացնել մի նենգաւոր, օձաբարոյ մահմեդական խանութիւն....։

Փանահ-խանը համեմատաբար աւելի լաւ էր. նա փոքր ի շատէ պահպանել էր իւր ցեղի պարզութիւնը, նա ազատ էր մահմեդական մոլեռանդութիւնից եւ հայոց մելիքների հետ վարվում էր ոչ իբրեւ իշխող, այլ որպէս դաշնակից։ Բայց Իբրահիմ-խանը հօր նման չէր։ Մանկութիւնից կրթուած լինելով Պարսկաստանում, սովորել էր նա մահմեդական կրօնի բոլոր մոլեռանդութիւնները։ Նա ոչ միայն հալածում էր քրիստոնէութիւնը, այլեւ բռնութեամբ ստիպում էր շատերին ընդունել մահմեդականութիւն։ Մելիքների տիրապետութեան ժամանակներում Ղարաբաղում ոչ մի Թուրք բնակիչ չկար։ Եթէ այսօր հանդիպում ենք Ղարաբաղում ամբողջ գիւղերի՝ հայ-մահմեդական բնակիչներով, եթէ տեսնում

ենք Հայոց գիւղերում Թուրք ընտանիքներ, որոնք խոստովանվում են, թէ իրանց նախնիքը Հայեր են եղել, այդ բոլորը Իբրահիմ-խանի ժամանակների պտուղներն են։

Խանի այդ վարմունքը սաստիկ վիրաւորում էր Հայոց մելիքների կրօնական զգացմունքը։ Նրանք մի այլ հնար չէին գտնում կրօնափոխութեան առաջն առնելու, այլ միայն պատահած ժամանակ սպանում էին Քրիստոսի հաւատքը ուրացողներին։ Դալի-Մահրասան այլապէս էր վարվում։ Նա երդուել էր, թէ որքան թուով Իբրահիմ-խանը Հայերից մահմեդական կը դարձնէ, ինքը նոյնքան թուով Թուրքեր պիտի կտորէ։ Իսկ Թիւլի-Արզումանը միսիօնէրի դեր էր կատարում։ Նա իւր ձեռքն ընկած մահմեդականներին ստիպում էր խոստովանել քրիստոնէական կրօնի ճշմարտութիւնը եւ մահմեդականութեան ստութիւնը, ի հարկէ ոչ թէ քարոզներով, այլ սրի ուժով։ Մի դէպք, որ Ղարաբաղի Հայերի բերանում առակի ձեւ է ստացել, արտայայտում է այդ մարդու կրօնական նախանձախնդրութեան յատկանիշները։ Մի անգամ Արզումանը պատահում է մի բարձրաստիճան Թուրք մօլլայի, որ իւր ծառաների հետ գնում էր Շուշի բերդը։ Բռնում է մօլլային եւ իւր սուրը նրա պարանոցի վրայ դնելով, ասում է. “Եթէ կը խոստովանես, որ Քրիստոս Աստուած է, ես քեզ չեմ սպանի„։ Մօլլան խոստովանվում է։ Արզումանն այդ խոստովանութիւնը երեք անգամ կրկնել է տալիս եւ ապա բաց է թողնում մօլլային։ Այդ անցքն իմացում են տալիս Իբրահիմ-խանին։ Խանը մօլլային իւր մօտ կանչելով, բարկութեամբ հարցնում է. “Մի՞թէ դու խոստովանեցար, որ Քրիստոս Աստուած է„։ — Այո՛, խոստովանեցայ, պատասխանում է մօլլան. — Իսկ եթէ դուք, վեհափառ

խան, Արզումանի ձեռքն ընկնէիք, կ'ասէիք ոչ թէ միայն Քրիստոսը Աստուած է, այլեւ դու ինքդ, Արզուման, աստուածների աստուածն ես...:

## XXV.

Մի քանի տարի Գանձակի գաւառում մնալուց յետոյ, Մելիք-Մէջլումի եւ Մելիք-Աբովի մէջ տիրող միաբանութիւնն սկսեց փոքր առ փոքր խախտուել: Մելիք-Մէջլումը մի խոհեմ, զգաստ եւ սուր դատողութիւնով տղամարդ էր: Իսկ Մելիք-Աբովը, թէեւ պատերազմների մէջ քաջ, աներկիւղ եւ անպարտելի էր, բայց բնաւորութեամբ սաստիկ դիւրագրգիռ եւ անհեռատես էր: Ջաւադ-խանն աւելի յարգում էր Մելիք-Մէջլումին. այդ գրգռեց Մելիք-Աբովի նախանձը:

Նրանց հակառակութիւնն աւելի սաստկացաւ այն պատճառով, որ Մելիք-Աբովը ցանկանում էր իւր ժողովրդով թողնել Գանձակի գաւառը եւ գաղթել Վրաստան եւ Բօլնիսում նոր գաղթաշէնք հիմնել: Բայց Մելիք-Մէջլումը չէր համաձայնվում այդ մտքի հետ: Նա այժմ բոլորովին ցանկութիւն չունէր թողնել հայրենիքը եւ ապաստան գտնել մի նոր գաղթականութեան մէջ: Նրանք առանց դրան եւս իրանց հայրենիքից դուրս էին ապրում: Բայց Գանձակի գաւառը, Մելիք-Մէջլումի մտածելով, աւելի մօտ էր Ղարաբաղին. այստեղից աւելի հեշտ կը լինէր պատեհ ժամանակում կրկին անցնել Ղարաբաղ: Բայց Վրաստան գնալ եւ վրաց իշխանի գործ դրած նենգաւորութիւնից յետոյ վրացիների հետ դարձեալ գործ ունենալ, նա ամենեւին չէր կամենում:

Ջաւադ-խանի բոլոր ջանքերն իզուր անցան երկու մելիքներին հաշտեցնելու համար: Մի անգամ ամենաչնչին

առիթով Մելիք-Աբովը կռուեց Մելիք-Մէջլումի հետ։ Երկուսն էլ Ջաւադ-խանի մօտ ճաշի էին հրաւիրուած. օրը պաս էր. Մելիք-Մէջլումն անխտիր ուտում էր բոլոր կերակուրներից, իսկ Մելիք-Աբովը հրաժարվում էր, ասելով թէ ինքը մեղք է համարում պաս լուծել։ Այդ առիթ տուեց վիճաբանութեան եւ Մելիք-Աբովն սկսեց սաստիկ նախատել Մելիք-Մէջլումին, թէ նա մեղանչում է Հայոց կրօնի դէմ, եւայլն։ Այդ օրից նա թողեց Գանձակը եւ իւր ժողովուրդը վեր առնելով գնաց Բօշխ։

Բօշխում եւս Մելիք-Աբովը հակառակութիւն ունեցաւ վրաց իշխանների հետ, երկար այնտեղ մնալ չկարողացաւ։ Յետոյ (1795) թողեց Բօշխը եւ Իբրահիմ-խանի հետ հաշտուելով, վերադարձաւ Ղարաբաղ, բնակուեցաւ իւր հայրենի երկրում — Գիւլիստանում։ Բայց հանգամանքները, որպէս յետոյ կը տեսնենք, ստիպեցին նրան թողնել հայրենիքը....։

## XXVI.

1791 թուին վախճանուեցաւ Մելիք-Շահնազար Բ-ը։ Ղարաբաղն ազատուեցաւ իւր կործանողից։ Բայց Խամսայի մելիքութիւններին հասցրած նրա հարուածն այն աստիճան մահացու էր, որ այլեւս ոչնչով բժշկել չէր կարելի....։

Մահուան անկողնում զղջաց նա, կամեցաւ հաշտուել իւր խղճի եւ Աստուծոյ հետ։ Եւ ինչպէս որ այդ տեսակ մարդիկ միշտ կրօնական բարեպաշտութեան մէջ են որոնում իրանց մեղքերի թողութիւնը, նա եւս շրջապատեց իրան աբեղաներով, բաց արեց հարստահարութեամբ մթերած ցորենի ամբարները եւ մի սովի ժամանակ ձրի կերակրեց ժողովրդին իւր հացով։

Մելիք-Շահնազարը շատ հարուստ մարդ էր։ Նա մտածեց աւելի նշանաւոր գործով քաւել իւր նշանաւոր յանցանքները։ Ամարասայ վանքը, որի մէջ ամփոփուած էին Լուսաւորչի Թոռի՝ սուրբ Գրիգորիսի նշխարները, խիստ անշուք եւ կիսաւեր դրութեան մէջ էր նրա ժամանակում։ Նա սկսեց այդ վանքի շինութիւնները վերանորոգել, շրջապատեց վանքն ամուր եւ բարձր պարիսպներով, աշտարակներով, միաբանութեան համար խուցեր, սենեակներ շինեց, վանքային տնտեսութեան համար ընդարձակ սեղանատուն, ամբարանոցներ եւ ախոռատուն հիմնեց՝ բոլորը սրբատաշ քարից, բոլորը մեծ եւ վայելուչ։ Բայց դեռ տաճարի կառուցմանը չձեռնարկած, մահը վրայ հասաւ եւ նրա բաղձանքը թողեց անկատար։ Հանգուցեալի արկղի մէջ գտան մի քանի քսակ լի ոսկով, որ կտակել էր տաճարի շինուածքն աւարտելու համար։ Ժառանգները չկատարեցին կտակը։

Մելիք-Շահնազարը թողեց չորս որդի՝ Ջումշուդ, Յուսէին Գ, Ջհան-Բախշ եւ Ջհանգիր։

Դեռ մեռնելուց առաջ նա կարգեց որդիների վրայ հոգաբարձու իւր բարեկամ Իբրահիմ-խանին, յանձնելով նրան, որ ժառանգներից որին որ յարմար կը համարէ, կարգէ իւր փոխարէն յաջորդ։

Օրէնքով պէտք է յաջորդէր Ջումշուդը, որովհետեւ նա ծնուած էր Մելիք-Շահնազարի օրինաւոր ամուսնութիւնից. բայց Իբրահիմ-խանը իւր կնոջ՝ Հուրի-Ջան-խանումի ազդեցութեամբ ընտրեց նրա հարազատ եղբօրը՝ Յուսէինին[1]։ Խանի կամայականութիւնն առիթ տուեց

---

[1] Մելիք-Շահնազարն ունէր մի քանի կին. Թագուհի-խանումից ծնուեց Մելիք-Ջումշուդը. Սօնա-խանումից ծնուեց Մելիք-Յուսէին Գ-ը եւ մի աղջիկ Հուրի-Ջան անունով, որին հայրը կնութեան

ժառանգների մէջ երկպառակութեան։ Ջհան-Բախշը դիմեց պարսից շահին, եւ նրանից ֆիրման ստանալով, աշխատում էր ինքն իշխել։ Բայց Մելիք-Յուսէինը, Իբրահիմ-խանի օգնութեամբ յարձակուեցաւ Ջհան-Բախշի տան վրայ, նրա կայքը կողոպտեց, եւ Ջհան-Բախշը հազիւ կարողացաւ իւր կեանքն ազատել, իւր եղբայր Ջհանգիրի հետ փախչելով Շամախի Մուստաֆա-խանի մօտ։ Ժառանգների մէջ այդ երկպառակութիւնները տեւեցին մինչեւ Աղա-Մահմադ-խանի գալուստը, երբ ինքը՝ Իբրահիմ-խանը՝ իւր կեանքը պարսից ներքինի Շահի ձեռքից ազատելու համար, ստիպուեցաւ փախչել Բալաքան։

## XXVII.

Մելիք-Շահնազարի մեռնելուց յետոյ Իբրահիմ-խանի զօրութիւնը թուլացաւ։ Այդ մարդու ձեռքումն էր բռնած այն շղթայի մի ծայրը, որով հայոց մի քանի նորաբուսիկ մելիքներ հնազանդվում էին թիւրք խանին։ Այդ մելիքները՝ որոնք առաջ իշխանութեան եւ աստիճանի տէր լինելու բաղձանքով դիմեցին թիւրք խանի օգնութեանը եւ նրան անձնատուր եղան, Մելիք-Շահնազարի մահից յետոյ սկսեցին փոքր առ փոքր զգալ իրանց սխալը, սկսեցին վերջապէս հասկանալ, որ իրանք իրանց ձեռքով քանդեցին իրանց տունը եւ մահմեդական բռնաւորին բարձրացրին իրանց գլխի վրայ։

Այդ ինքնաճանաչութիւնն առաջ եկաւ զանազան հանգամանքներից, որոնց մասին հարկաւոր ենք համարում համառօտ կերպով անցնել, ցոյց տալու համար, թէ իսկապէս ինչ նշանակութիւն ունէին Շուշի բերդի խաները,

---

տուեց Իբրահիմ-խանին, իսկ Մալայիկ-խանումից ծնուեց Ջհան-Բախշը, Ջհանգիրը եւ մի աղջիկ Հումայի անունով։

եւ իրանց յարաբերութիւնների մէջ հայոց մելիքների հետ ո՛ր աստիճան իրաւունքներ ունէին, եւ արդեօք կարելի՞ է համարել նրանց երկրի տէրը կամ իշխանը։

Մենք գիտենք Փանահ-խանի ծագումը. մենք գիտենք եւ այն, որ Պարսկաստանը կառավարող Ջէնդ-Քէրիմ-խանը (որ թագաւոր չէր, այլ Պարսկաստանի մի մասը բռնութեամբ տիրացած մի աննշան լօռեցի[1], Փանահ-խանին սպանել տալուց յետոյ, նրա որդի Իբրահիմին խանութեան աստիճան շնորհեց եւ կարգեց Շուշի բերդի կառավարիչ։ Ուրեմն Իբրահիմ-խանը ուրիշ ոչինչ չէր, եթէ ոչ պարսիկներից կարգուած, պարսից մի հասարակ խան, որ Պարսկաստանի նոյն ժամանակուայ երկպառակութիւնների եւ անիշխանութեան պատճառով կարողացաւ երկար ժամանակ իւր տեղում մնալ, կարողացաւ հայոց միաբան մելիքների հաշուով նրանց գլխին նստել։ Բայց իսկապէս նա երկրի տէրը կամ իշխանը չէր. նա մի ժամանակաւոր կառավարիչ էր, որի նմաններին պարսից կառավարութիւնն անդադար փոփոխում էր։ Նա ինքը պարսից հարկատու էր. իւր պաշտօնի մէջ մնալու համար ամեն տարի ահագին փեշքէշներ եւ ընծաներ էր ուղարկում Պարսկաստան։

Մելիքների անմիաբանութեան շնորհիւ նա կարողացաւ եւ կարողանում էր իւր դիրքը պահպանել։ Եթէ մելիքներից մի քանիսը նրան թշնամի էին, ընդհակառակն՝ մի քանիսն էլ բարեկամներ էին, եւ այսպիսով նրա կացութեան հաւասարակշռութիւնը պահպանվում էր։

Իբրահիմ-խանը դեռ չէր դիպել հայոց մելիքների ուղղակի եւ զգալի շահերին։ Թէեւ նրա հայրը եւ ինքը,

[1] Այդ մեր Լօռին չէ. հարաւային Պարսկաստանում մի գաւառ նոյնպէս կոչվում է Լօռի կամ Լօռիստան։

օրինակ՝ Խաչէնում եւ Ջրաբերդում երկու նոր մելիքներ վերականգնեցին, բայց այդ կատարեցին նրանք որպէս օգնողներ եւ ոչ որպէս կարգողներ կամ հիմնողներ։ Այդ պատճառով խաների յարաբերութիւնները դէպի այդ մելիքներն աւելի դաշնակցական էին, քան թէ իշխողի եւ ստորադրեալի յարաբերութեան բնաւորութիւնն ունէին։

Բայց Մելիք-Շահնազարի մահից յետոյ Իբրահիմ-խանը յետ քաշեց դիմակը, եւ օգուտ քաղելով հանգուցեալի դէպի ինքն ունեցած հաւատարմութիւնից, որով նրան հոգաբարձու էր կարգել իւր ժառանգների վրայ, — նա բացարձակ իրաւունք համարեց յաջորդ նշանակելու մելիքի որդիներից նրան, որ բոլորից անընդունակն էր, բայց իւր կնոջ եղբայրը լինելով, աւելի հաւատարմութեամբ կը ծառայէր իրան։ Այդ էր պատճառը, որ վրդովեցրեց ժառանգներին, որովհետեւ խանի միջամտութիւնը միանգամայն հակառակում էր նրանց աւանդական սովորութիւններին յաջորդութեան կարգերի վերաբերութեամբ։

Բայց Իբրահիմ-խանն աւելի հեռու գնաց. Նա դիպաւ ժողովրդի եւ մելիքների ամենազգալի շահերին. Նա սկսեց միջամտութիւն գործել երկրի հողային խնդիրների մէջ, որոնք մինչեւ այնօր թողուած էին անձեռնմխելի եւ կառավարվում էին միմիայն հայոց վաղեմի սովորութիւններով, որոնք օրէնքի ձեւ էին ստացել։ Մեր պատմութեան նպատակից դուրս է մանրամասնաբար բացատրել, թէ ինչ դրութեան մէջ էր հողային հարցը Ղարաբաղում, կամ ինչ պարտաւորութիւններ ունէին գիւղացիները մելիքների վերաբերութեամբ ընդհանրապէս, իսկ խանի վերաբերութեամբ մասնաւորա-

պէս[1]։ Միայն այսքանը կ'ասենք, թէ այն աղէտալի անցքերը, որ նկարագրեցինք XXIV-րդ գլխում, միջոց տուին Իբրահիմ-խանի կամայականութեանը բացարձակ կերպով հողային բաշխումներ եւ կարգադրութիւններ անելու. մի իրաւունք, որից նա առաջ զուրկ էր։ Մենք տեսանք, որ Ջրաբերդի Մելիք-Մէջլումը եւ Գիւլիստանի Մելիք-Աբովը, իրանց ժողովրդի մի մասն առնելով, գաղթեցին Գանձակի գաւառը։ Նրանց գիւղերը, նրանց հողերը մնացին անտէր, դատարկ։ Այդ ժամանակ խանն սկսեց նրանց հողերը բաժանել ում որ կամեցաւ. Նրանց տեղերում բնակեցրեց նոր գաղթականներ[2]։ Եւ այսպիսով, հանգամանքների շնորհիւ նա իրաւունք գտաւ հայոց հողերի վրայ, որ մինչեւ այնօր չունէր։

Այդ կամայականութիւնը վրդովեցրեց մինչեւ անգամ խանին անձնատուր եղած մելիքներին առաւել այն ժամանակ, երբ տեսան, որ խանը հայոց հողերի վրայ բնակեցրեց եւ Թուրք գաղթականներ, որպէս էին զօլանի-ները, մի վայրենի եւ աւազակ ցեղ, որ թափառում էր Ջուանշիրի անապատներում։ Բոլորովին հայաբնակ Ղարաբաղում մտան Թուրք բնակիչներ, որոնք առաջ չկային։ Խանի այդ վարմունքը յուզեց ընդհանուր դժգոհութիւն թէ՛ Ղարաբաղի հայ ժողովրդի եւ թէ խանի բարեկամ մելիքների մէջ։

Բայց այդ մելիքները դեռ եւս ոչինչով չէին ցոյց տալիս իրանց անբաւականութիւնը, միայն իրանց սրտերում

---

[1] Այդ հարցերը մենք դիտաւորութիւն ունինք հրատարակել առանձին բրօշիւրով, որ կը կրէ այսպիսի վերնագիր՝ "Հողային հարցը Ղարաբաղում մելիքների տիրապետութեան ժամանակ"։

[2] Խանի այդ բաշխումներն այնքան անհիմն եւ անհաստատ էին, որ երբ հայոց գաղթականների մի մասը վերադարձաւ, կրկին տէր դարձան իրանց հողերին եւ արտաքսեցին խանի նոր բնակեցրած գիւղացիներին։

սնուցանում էին մի խուլ բողոք եւ սպասում էին յարմար ժամանակի։

Առաջին բողոքը բարձրացրեց Վարանդայի Մելիք-Շահնազարի որդի Մելիք-Ջումշուդը, որ իւր բոլոր եղբայրների մէջ աւելի յառաջադէմը եւ աւելի խելացին էր։ Նա արդէն հասկացել էր, թէ որքան կորցրեց իւր հայրը եւ որքան կորցնել տուեց Ղարաբաղի միւս մելիքներին՝ բարեկամութիւն պահպանելով Շուշի բերդի խաների հետ։

Հասարակութեան վրայ տարածուած բռնութիւնն այնքան զգալի չէ լինում անհատներին, մինչեւ որ իրանց անձի վրայ դեռ չեն փորձում նրա ճնշող ներգործութիւնը։ Մելիք-Ջումշուդն անձամբ նրա փորձն առաւ։ Բռնաւորը նրան զրկեց օրինաւոր յաջորդութիւնից եւ նրա փոխարէն կարգեց անարժան եղբօրը։ Նրա երկու միւս եղբայրները՝ Ջհանգիրը եւ Ջհան-Բախշը, հալածուած նոյն բռնաւորից, փախան Մուստաֆա-խանի մօտ։ Ինքը մնաց միայնակ եւ անօգնական։

Նրա տոհմային հպարտութիւնը սաստիկ վիրաւորուած էր։ Նրա նախնիքը՝ Մելիք-Շահնազար մեծը, ամբողջ Գեղարքունեաց տէրը, բարեկամութիւն ունէր Շահ-Աբասի հետ, որից սարսափում էր արեւելքը։ Նրա պապը, Մելիք-Յուսէփն մեծը, յարաբերութիւն ունէր կայսրների հետ։ Իսկ այժմ այդ մեծ մարդկանց աւելի քան մի քանի հարիւր տարի գոյութիւն ունեցող հոյակապ տան մէջ կարգադրութիւններ էր անում մի նորելուկ Ջուանշիրցի խան, որի իշխանութեան թուականը իւր հասակի տարեթուից հեռու չէր անցնում։ Բայց ո՞վ բարձրացրեց Ջուանշիրցուն, ո՞վ օգնեց նրա զօրանալուն։ — Դարձեալ մի հայ, մի անբարիշտ եւ խռովարար հայ, որ հայրենիքի

ազատութիւնը զոհեց իւր մանր անձնական շահերին եւ նրա աւերակների պատճառը դարձաւ։ Մելիք-Ջումշուդը չէր կարող առանց վրդովմունքի յիշել, որ այդ հայը իւր հայրն էր....։

Այդ բոլորն անվերադառնալի կորուստներ էին։ Բայց Մելիք-Ջումշուդը մտածում էր կարելոյն չափ կորուստը յետ դարձնել եւ դարման տանել հայրենիքի վէրքերին։ Նա պարզ տեսնում էր, որ այդ վէրքերն առաջ եկան անմիաբանութիւնից, երկպառակութիւնից եւ հային յատուկ օտարասիրութիւնից։ Մելիք-Ջումշուդը բաւական կարդացած երիտասարդ էր։ Նա չէր զարմանում, երբ յիշում էր, որ մի ժամանակ Հայոց նախարարները դիմելով պարսից արքային, խնդրում էին նրանից, որ Հայաստանի հարազատ թագաւորին վեր առնէ եւ նրա տեղը պարսիկ մարզպան կարգէ։ Նա չէր զարմանում, նա միայն ցաւում էր հայերի օտարասիրութեան վրայ, նա միայն վրդովվում էր, երբ նոյնը տեսնում էր կատարուած իւր ժամանակում, իւր աչքի առջեւ։

Նրա հայրը անմատչելի Ղարաբաղի մէջ մտցրեց մի օտար ցեղ, որ ուտելով, մաշելով խախտեց տեղային բոլոր հայկական իշխանութիւնների հիմքը եւ վերջապէս կործանեց այն հաստատուն շէնքը, որ դարերով կառուցուած էր։ Այդ աւերմունքին գլխաւորապէս նպաստեցին իրանց՝ — հայերի գործակցութիւնները։ Մելիք-Ջումշուդը մտածում էր վերականգնել խորտակուած շէնքը։ Նա գիտէր, որ կործանման պատճառը եղաւ նոյն իսկ հայ մելիքների երկպառակութիւնը. ուրեմն շինութիւնը կարող էր յաջողուել դարձեալ նոյն մելիքների միաբանութեամբ։ Նա աշխատում էր կրկին նորոգել միաբանութեան խզուած կապերը մելիքների մէջ։ Բայց ո՞րտեղ էին մելիքները։

Մէկը՝ Ցիզակի Մելիք-Բախտամը, շղթաների մէջ պահուած էր Արդաւիլի բերդում, երկուսը՝ Գիւլիստանի Մելիք-Աբովը եւ Ջրաբերդի Մելիք-Մէջլումը, գտնվում էին հայրենիքից դուրս եւ պանդխտութեան ու գաղթականութեան մէջ էին ապահովութիւն որոնում։ Երկրի նշանաւոր եւ հիմնական ոյժերը ցրիւ էին եկած օտար աշխարհներում. իսկ հայրենիքի մէջ մնում էին դաւաճանները — խանին անձնատուր եղած մելիքները։ Մելիք-Ջումշուդը մտածում էր այդ վերջիններին իւր կողմը ձգել եւ նրանց բարեկամական յարաբերութիւններն անջատել խանից։ Մի դէպք նպաստեց նրա ցանկութեանը։ Այդ դէպքը թէեւ ընտանեկան էր, բայց քաղաքական կերպարանք ստացաւ։

Իբրահիմ-խանը սաստիկ անբարոյական մարդ էր. նրա հարեմը լի էր հայոց աղջիկներով. եւ ամեն տեղ, եթէ գտնվում էր մի գեղեցիկ հայ աղջիկ, հազիւ էր կարողանում ազատ մնալ նրա կրքերից։ Մենք գիտենք, որ նրա հաւատարիմ մելիքներից մէկը, Ռուստամը, ամուսնացած էր կապապացի Ապրես-աղայի դստեր՝ Վարդ-խաթունի հետ։ Երբ Վարդ-խաթունը դեռ օրիորդ էր, Իբրահիմ-խանը ցանկացաւ նրան իւր կին ունենալ։ Օրիորդի հայրը՝ աղջկան մահմեդական հարեմից ազատելու համար տուեց Մելիք-Ռուստամին, թէեւ աղջիկը դեռ փոքր էր եւ կին լինելու հասակին չէր հասած։ Բայց դրանով Իբրահիմ-խանը չհանգստացաւ. նա շատ բաներ էր լսած Վարդ-խաթունի գեղեցկութեան մասին, ցանկանում էր նրան իւր մօտ ունենալ։

Մենք տեսանք, որ երբ Մելիք-Մէջլումը եւ Մելիք-Աբովը հեռացան Ղարաբաղից, Իբրահիմ-խանը նրանց ընտանիքներից մի քանի հոգի բերեց Շուշի բերդը եւ պա-

հեց այնտեղ իբրեւ պատանդ։ Այդ ժամանակ պահանջեց նա Մելիք-Ռուստամից պատանդի անունով նրա կնոջը՝ Վարդ-խաթունին։ Մելիք-Ռուստամն անձարացած տուեց, թէեւ նրան լաւ յայտնի էր, որ խանն աւելի իւր համար սիրուհի է տանում, քան թէ պատանդ, որովհետեւ իւր հաւատարմութեան վրայ կասկածելու առիթ չունէր նա։

Մենք գիտենք եւ այն, որ Մելիք-Ռուստամը Խամսայի մելիքութիւններից չէր, այլ Մելիք-Իսրայէլեան Մելիք-Մէջլումի կեանքի դէմ դաւադրութիւն սարքելու համար, որպէս վարձատրութիւն, ստացաւ խանից Ջրաբերդի իշխանութիւնը։ Իսկ այժմ յիշեալ ընտանեկան անպատուութիւնը այն աստիճան վիրաւորեց նրան, որ նա թողեց Իբրահիմ-խանի ծառայութիւնը եւ իւր մնացած ընտանիքով[1] գնաց Նուխի Սելիմ-խանի մօտ, որ այդ ժամանակ թշնամական յարաբերութեան մէջ էր Իբրահիմ-խանի հետ։

Սէլիմ-խանը սիրով ընդունեց Մելիք-Ռուստամին եւ Դաշ-Բուլաղ անունով գիւղն ընծայեց նրա բնակութեան համար։ Այնտեղից Մելիք-Ռուստամն սկսեց յարձակումներ գործել Շուշի բերդի վրայ եւ շատ վնասներ տալ Իբրահիմ-խանին։

Թէեւ մի առանձին մեծ նշանակութիւն չունէին նրա յարձակումները, որովհետեւ Իբրահիմ-խանին ոչնչացնելու համար, հարկաւոր էր, որ հայոց բոլոր մելիքները հաւաքական ուժերով պատերազմէին, բայց այդ էլ բաւական էր, որ խանի հաւատարիմ մելիքներից մէկը ոչ միայն անջատուեցաւ նրանից, այլեւ թշնամացաւ նրա հետ։

---

[1] Ղարաբաղի մելիքներից շատերը բազմակնութեան սովորութիւն ունէին. Մելիք-Ռուստամն ունէր երկու կին՝ մէկը վերեւ յիշած Վարդ-խաթունը, միւսը Մարիամ անունով մի կին։

Խանին բարեկամ մնացին միայն երկու մելիքներ, Խնզրիստանի Մելիք-Միրզախանեան Մելիք-Ալլահվերդին եւ Վարանդայի Մելիք-Շահնազարեան Մելիք-Յուսէին Գ-ը, որ Իբրահիմ-խանի կնոջ (Հուրի-Ջան խանումի) հարազատ եղբայրն էր, եւ քրոջ ազդեցութեամբ իւր ձեռքը ձգեց Վարանդայի իշխանութիւնը։ Այդ անցքը, որպէս ցոյց տուինք, սաստիկ գրգռեց Մելիք-Շահնազարեան Մելիք-Ջումշուդի թշնամութիւնը, եւ նա սկսեց այնուհետեւ մտածել Իբրահիմ-խանի կործանման վրայ, միայն սպասում էր մի յարմար ժամանակի։ Նա սկսեց գաղտնի թղթակցել Մելիք-Մէջլումի, Մելիք-Աբովի եւ Մելիք Ռուստամի հետ, որոնք՝ խանից հալածուած, նոյնպէս թշնամի էին խանին։

## XXVIII.

Ռուս-տաճկական երկրորդ պատերազմի հետ (1787—1791) միաժամանակ ծագեց շվէդական պատերազմը։ Ռուսաց կառավարութիւնն այն աստիճան զբաղուած էր այդ պատերազմներով, որ ամենեւին ժամանակ չունէր մտածելու Անդրկովկասի քրիստոնեաների վրայ, թէեւ այդ վերջիններն անդադար տեղեկութիւններ էին տալիս իրանց աննախանձելի դրութեան մասին։ Իշխան Պատեօմկինը եւ Յովսէփ արքեպիսկոպոսը մասնակցում էին ռուսաց արշաւանքներին. դրանք եւս, որ խիստ հետաքրքրուած էին Անդրկովկասով, այդ ժամանակ հազիւ թէ կարողանային իրանց ցանկութիւններն իրագործել։

Իսկ վերոյիշեալ պատերազմների ընթացքում, որպէս տեսանք, Ղարաբաղում կատարուեցան մի շարք աղէտալի անցքեր։ Իբրահիմ-խանը ձեռք բերելով հայոց մելիքների ռուսաց հետ ունեցած թղթակցութիւնները, սկսեց հա-

լածել նրանց։ Նոյն խանի ձեռքով Յովհաննէս կաթողիկոսն սպանուեցաւ, Գանձասարի վանքը կողոպտուեցաւ, Տիգակի Մելիք-Բախտամն աքսորուեցաւ, Խաչէնի Հասան-Ջալալեաններից երկու մելիքներ սպանուեցան, եւ ամենացաւալին այն էր, որ նշանաւոր մելիքներից երկուսը, Մէջլումը եւ Աբովը, իրանց ժողովրդի հետ դուրս եկան Ղարաբաղից, այնտեղ մնացին խանին համակրող, կամ նրանից վախեցող մելիքները։

Այդ բոլոր տխուր անցքերն առիթ տուին Յովսէփ արքեպիսկոպոսին շտապել՝ կրկին ողորմած կայսրուհու ուշադրութիւնը դարձնելու հայերի վրայ։

Այդ ժամանակ արքեպիսկոպոսը կազմեց իւր նշանաւոր պատմական տեղեկագիրը, որ բովանդակում էր իւր մէջ Ղարաբաղի տիրապետող մելիքների յարաբերութիւնը ռուսաց կառավարութեան հետ՝ սկսած Պետրոս Մեծի օրերից, եւ նրանց մատուցած նշանաւոր ծառայութիւնները Ռուսաստանին, եւ հասցրեց մինչեւ իւր օրերը։ Յիշեալ տեղեկագիրն իշխան Պատեօմկինի միջնորդութեամբ ներկայացուեցաւ կայսրուհուն 1790—23 յունուարի։

Այդ տեղեկագիրը իւր առանձին ազդեցութիւնն ունեցաւ։ Օսմանցոց հետ ունեցած պատերազմը միայն արգելք էր լինում կայսրուհուն Անդրկովկասի քրիստոնեաների վերաբերութեամբ մի վճռական գործ սկսելու։ Այդ պատճառով եռանդոտ արքեպիսկոպոսի խնդիրքները յետաձգվում էին, յուսադրելով նրան, թէ իւր բաղձանքները կը կատարուեն, միայն հարկաւոր է փոքր ինչ եւս համբերել։

Բայց մի ցաւալի կորուստ թէ արքեպիսկոպոսին եւ թէ Ղարաբաղի մելիքներին սաստիկ յուսահատութիւն պատճառեց։ Թուրքաց պատերազմը վերջանալու վրայ էր,

երբ իշխան Պատեօմկինը կռուի դաշտից կանչուեցաւ Ս. Պետերբուրգ, եւ ապա կրկին յետ ուղարկուեցաւ (1791) Թուրքերի հետ հաշտութեան պայմանների մասին բանակցելու համար։ Նոյն տարուայ աշնան սկզբումն իշխանը վախճանուեցաւ։ Նրա մահը սուգի մէջ դրեց հանգուցեալի մտերիմ բարեկամ Յովսէփ արքեպիսկոպոսին։ Սրբազանը ոչինչով իրան մխիթարել չէր կարողանում. Նա իւր հիմնած մեծ շէնքը բոլորովին կործանուած էր համարում եւ նրա աւերակների տակ խորտակուած էր տեսնում իւր սրտին խիստ մօտիկ ցանկութիւնները....։

1791 թուի դեկտեմբերի 29-ին հաշտութեան պայմանը ստորագրուեցաւ Ռուսաստանի եւ Թիւրքիայի մէջ։ Կայսրուհին կրկին ուշադրութիւն դարձրեց Անդրկովկասի վրայ։ Այդ ժամանակ թէ հայերը եւ թէ վրացիներն աւելի մեծ տագնապի մէջ էին։ Պարսկաստանում զօրացել էր Աղա-Մամադ-խան ներքինին, եւ մի քանի տարի անդադար արշաւանքներ էր գործում դէպի Արարատեան նահանգը եւ վտանգ էր սպառնում Վրաստանին։ Վրաց Հերակլ իշխանը մի կողմից, Թիֆլիզի հայերը միւս կողմից, սարսափած ներքինի-խանի բարբարոսութիւններից, սկսեցին օգնութիւն խնդրել։ 1795—4 սեպ. բարձրագոյն հրովարտակով հրամայուեցաւ կոմս Գուդովիչին, ռուսաց զօրքով օգնութեան հասնել եւ պաշտպանել Վրաստանը։ Բայց նա ուշացաւ....։

## XXIX.

*Աղա-Մամադ-խանի արշաւանքը։*

Կուրացրած Շահ-Ռուխից յետոյ Պարսկաստանն ամբողջ ութը տարի խռովութեան մէջ էր, կեղեքվում էր զանազան ինքնիշխան տիրապետողների ձեռքում, որոնք

շարունակ միմեանց հետ պատերազմելով, երկիրը դարձրել էին աւերակ ընդարձակ դաշտ։ Այդ տիրապետողներն էին՝ Ալի-Մուրադ-խանը, Զէնդ-Քէրիմ-խանը, Ազատ-խանը, Մուհամէդ-Հասան-խանը եւ ուրիշ շատերը։

Վերջը յաղթող հանդիսացաւ լուրախանցի Զէնդ-Քէրիմ-խանը եւ նստեց Շիրազ քաղաքում, թէեւ ոչ իբրեւ թագաւոր, բայց Պարսկաստանի իշխող։ Այդ միջոցներում նրա մօտ իբրեւ պատանդ Շիրազ քաղաքում պահվում էր ներքինիացրած Աղա-Մամադ-խանը, որ վերոյիշեալ Մուհամէդ-Հասան-խանի որդին էր, ցեղով ղաջար, իսկ անեղով մազանդարանցի։

Քէրիմ-խանի մահից յետոյ (1779) Աղա-Մամադ-խանը փախաւ Շիրազից, եւ գալով Մազանդարանի կողմերը, հաւաքեց իւր շուրջը մեծ բազմութիւն, ապստամբուեցաւ, եւ տիրելով Արաղստանին, իրան պարսից թագաւոր հրատարակեց, Թէհրան քաղաքը իւր համար աթոռանիստ ընտրելով [1]։

1795 թուի գարնանը Աղա-Մամադ-խանը Թէհրանից արշաւանք գործեց դէպի Ատրպատական, նուաճեց այդ պարսկական ընդարձակ նահանգը, տիրեց Թաւրիզ եւ ուրիշ շատ քաղաքներ, յետոյ իւր եղբայր Ալի-Ղուլի-խան սարդարին ուղարկեց դէպի Երեւանի կողմը։ Այդ վերջինը, տիրելով Նախիջեւանը, նոյն տարուայ յուլիս ամսում, բանակ դրեց Երեւանի պարիսպների մօտ։ Ս. Էջմիածնի Ղուկաս կաթողիկոսը, սարսափելով նրա մօտ եկաւ, ներկայացնելով ծանրագին ընծաներ, աղաչում էր խնայել իւր վանքը։ Ներքինի Շահի եղբայրը պատւով ընդունեց կաթողիկոսին, խոստանալով, թէ ո՛չ հայերին

[1] Աղա-Մամադ-խանի տոհմից սկսուեցաւ Պարսկաստանի այժմեան թագաւորող տան դահակալութիւնը,

եւ ոչ վանքին վնաս չի հասցնի, եթէ հայերը հաւատարիմ կը մնան Պարսկաստանին, ինչպէս միշտ եղել են։

Երեւանն առանց պատերազմի անձնատուր եղաւ. տեղային խանը իւր կնոջը եւ որդիներին պատանդ տալով, հպատակութիւն խոստացաւ։ Այդ միջոցին ինքը Աղա-Մամադ-խանը, ուրիշ ճանապարհով դիմում էր դէպի Ղարաբաղի կողմերը, որ այնտեղից անցկենայ Թիֆլիզ։ Նա Խուդափիրինի կամրջով անցաւ Երասխ գետը, եւ լուր տուեց եղբօրը, որ դադարեցնէ արշաւանքը եւ Երեւանի կողմով շտապէ իւր մօտ։ Երկուսի նպատակն էլ այն էր, որ նուաճէին Վրաստանը եւ պատժէին Հերակլ իշխանին։

Պէտք է ի նկատի ունենալ, որ Վրաստանն այն ժամանակ եւ նրանից առաջ, ուրիշ ոչինչ չէր, եթէ ոչ մի պարսկական նահանգ, որ հարկ էր վճարում Պարսկաստանին։ Նրա մի մասը օսմանցիների ձեռքումն էր եւ Ախալցխայի մէջ նստած էր թիւրք փաշա։ Իսկ երբ Հերակլը, պարսիկներից ազատուելու համար, Վրաստանը դրեց ռուսների հովանաւորութեան ներքոյ, նրա վարմունքը, ի հարկէ, չէր կարող չգրգռել պարսից Շահի բարկութիւնը, որ ճանաչում էր Վրաստանն իբրեւ պարսից պետութեան մի մասը, իսկ վրաց իշխաններին՝ իբրեւ պարսից Դռնից նշանակուած կառավարիչներ կամ վալիներ։

Աղա-Մամադ-խանը մտադիր էր անցկենալ դէպի Թիֆլիզ Ղարաբաղի եւ Գանձակի գաւառների միջով։ Ահարկու ներքինիի արշաւանքը մի նոր եւ ամենասաստիկ հարուած պիտի տար Ղարաբաղի մելիքների նպատակներին եւ միանգամայն պիտի ոչնչացնէր նրանց ունեցած յոյսերը իրանց հայրենիքի ազատութեան մասին։ Նրանք վաղուց իմացում էին տուել ռուսաց կառավարութեանը

ներքինիի դէպի Հայաստան եւ դէպի Վրաստան կատարելիք արշաւանքների մասին[1]։ Թէեւ կոմս Գուդովիչին հրամայուած էր հայերին եւ վրացիներին օգնութեան հասնել, բայց Աղա-Մամադ-խանի բանակն արդէն դրած էր Շուշի բերդի մօտ, իսկ կոմսը տակաւին չէր յայտնուել։

Չպէտք է մոռանալ, որ Աղա-Մամադ-խանը թէեւ սիրում էր իւր նախկին «խան» տիտղոսով կոչուել, բայց նա արդէն Պարսկաստանի ինքնակալ Շահն էր։ Նրան յայտնի էին Ղարաբաղի մելիքների ձգտումները, նրանց յարաբերութիւնները ռուսների հետ եւ այդ վերջինների խոստումները հայերի վերաբերութեամբ, եւ այլն։ Նրան յայտնի էին նաեւ Իբրահիմ-խանի բռնակալութիւնը եւ նրա գործ դրած բարբարոսութիւնները հայերի դէմ։ Այդ էր պատճառը, որ դեռ Երասխ գետից չանցած, նա հրաման ուղարկեց Ղարաբաղի մելիքներին, հրաւիրելով նրանց որ խոնարհուեն իրան, խոստանալով, որ ինքը կը վերահաստատէ նրանց իրանց վաղեմի իշխանութիւնների եւ արտօնութիւնների մէջ եւ կը ոչնչացնէ Իբրահիմ-խանին։

Աղա-Մամադ-խանը թէեւ բարբարոս, միայն միեւնոյն ժամանակ խելացի եւ քաղաքագէտ մարդ էր։ Նա շատ լաւ հասկանում էր, որ հայերի առաջնորդութեամբ ռուսներն աւելի հեշտութեամբ կարող էին մուտք գործել իւր տէրութեան մէջ. ուրեմն հայոց մելիքներին գոհացնելով, նա կը փակէր ռուսների յառաջընթացութեան ճանապարհը դէպի Պարսկաստան։

---

[1] Աղա-Մամադ-խանը մի քանի անգամ պատրաստուեցաւ արշաւանք գործելու դէպի Հայաստան եւ Վրաստան, բայց ժամանակ չունեցաւ անցնելու Երասխ գետը, որովհետեւ ամեն անգամ Պարսկաստանի խորքերում նորանոր ապստամբութիւններ էին ծագում եւ նա ստիպուած էր լինում յետ դառնալ, ապստամբութիւնները զսպելու համար։

Բայց հայոց մելիքներն աւելի բարւոք համարեցին հաւատարիմ մնալ ռուսներին, եւ Աղա-Մամադ-խանին ընդդիմադրելու համար միացան մինչեւ անգամ իրանց վաղեմի թշնամի Իբրահիմ-խանի հետ, մտածելով որ նրան յետոյ հեշտ կը լինի ոչնչացնել, բայց եթէ միանգամ հպատակուեն Աղա-Մամադ-խանին, այնուհետեւ անհնարին կը լինի հայրենիքն ազատել պարսից լծից։ Միայն Մելիք-Իսրայէլեան Մելիք-Մէջլումը չհամաձայնուեցաւ միւս մելիքների հետ։

Մելիք-Շահնազարեան Մելիք-Ջումշուդը եւ Մելիք-Բէգլարեան Մելիք-Աբովը հայոց զօրքերով ամրացան Շուշի բերդի մէջ եւ Իբրահիմ-խանի հետ միասին սկսեցին պաշտպանել բերդը։

Բերդի պաշարումը տեւեց ամբողջ քառասուն օր։ Հայ եւ թիւրք զօրքերի քաջութիւնը՝ միացած բերդի բնական ամրութիւնների հետ, ի չիք դարձրին Աղա-Մամադ-խանի բոլոր ջանքերը բերդը գրաւելու համար։

Այդ ժամանակ Աղա-Մամադ-խանի բանակի մէջ իւր զօրքերով գտնվում էր Մելիք-Իսրայէլեան Մելիք-Մէջլումը եւ Գանձակի Ջաւադ-խանը, որոնք երկուսն էլ Իբրահիմ-խանի թշնամիներն էին եւ միացած էին Աղա-Մամադ-խանի հետ։

Մելիք-Մէջլումի վարմունքը բացատրութեան կարօտ է։

Մելիք-Մէջլումն ազնիւ երիտասարդ էր, բայց չափազանց վրէժխնդիր եւ ոչ մի միջոցների դէմ չդողացող՝ թշնամուն ոչնչացնելուն համար։ Մենք յիշում ենք այն սպառնալիքը, երբ Թիֆլիզից վիրաւորուած դուրս գալու ժամանակ, վրացի սպասաւորների բերանով լուր ուղարկեց նա իշխան Հերակլին. “ասեցէք ձեր իշխանին, որ Մելիք-Մէջլումը չի մոռանայ նրա հիւրասիրութիւնը„...։

Այդ երիտասարդը վշտացած եւ դառնացած էր անդադար իւր բարեկամներից խաբուած լինելուց։ Հօր մահից յետոյ նա տարիներով շարունակ պատերազմում էր Իբրահիմ-խանի հետ։ Նրան յոյսեր էին տալիս, օգնութիւններ էին խոստանում, բայց խաբում էին...։ Վերջը դարձեալ մեծ խոստմունքներով նա հրաւիրուեցաւ Թիֆլիզ. իսկ Հերակլը փոխանակ իւր խոստմունքները կատարելու, կամենում էր իւր հիւրին կալանաւորել եւ մատնել նրա թշնամու՝ Իբրահիմ-խանի ձեռքը...։

Նախընթաց գլուխներում տեսանք, որ ամեն կողմից խաբուած, ամեն տեղից յուսահատուած, Մելիք-Մէջլումն ապաստան գտաւ իւր հօր վաղեմի բարեկամին՝ Գանձակի Ջաւադ-խանի մօտ։ Նրա ժողովուրդը թողեց Ղարաբաղը եւ հիւրասիրուեցաւ նոյն խանի երկրում։ Ջրաբերդի հայրենազուրկ իշխանը իւր ժողովրդի հետ օտար հողի վրայ էր բնակվում որպէս մի ժամանակաւոր հիւր, իսկ նրա հայրենի երկրին տիրել էր Իբրահիմ-խանը...։

Մելիք-Մէջլումը խելացի երիտասարդ էր։ Նա շատ լաւ էր իմանում, որ եթէ իրանց նախնիքն ունեցել են եւ պահպանել են Ղարաբաղի լեռների մէջ մի ինքնուրոյն հայկական իշխանութիւն, այդ եղել է ոչ թէ քրիստոնեայ թագաւորների օգնութեամբ, այլ պարսից Շահերի շնորհիւ։ Այդ էր պատճառը, որ երբ Աղա-Մամադ-խանն անցաւ Երասխ գետը եւ հրաւէր կարդաց Ղարաբաղի մելիքներին, խոստանալով որ եթէ կը միանան իւր հետ, նա կը ոչնչացնէ Իբրահիմ-խանին եւ կը հաստատէ նրանց իրանց հայրենական իշխանութիւնների մէջ, բոլոր մելիքները մերժեցին Շահի հրաւէրը, եւ միայն Մելիք-Մէջլումը միացաւ նրա հետ։

Պէտք է խոստովանուել, որ բացի ընդհանուր շահերից, Մելիք-Մէջլումն ունէր եւ իւր նեղ, անձնական հաշիւները եւս։ Նա Իբրահիմ-խանի հին թշնամին էր, նա դեռ նոր թշնամացել էր Հերակլ իշխանի հետ. Աղա-Մամադ-խանի ձեռքով նա կամենում էր պատժել թէ առաջինին եւ թէ երկրորդին։

Բայց Շուշի բերդի պաշարումը երկար տեւեց։ Այդ բերդը, որ Ղարաբաղի մելիքութիւնների քայքայման պատճառը դարձաւ, այժմ միեւնոյն մելիքները նոյն բերդի միջից պատերազմում էին պարսից Շահի դէմ, որ խոստանում էր կրկին վերանորոգել նրանց վաղեմի իշխանութիւնը, եթէ կը թողնեն Իբրահիմ-խանին եւ կ'անցնեն իւր կողմը։

Ժամանակ չկորցնելու համար Մելիք-Մէջլումը խորհուրդ տուեց Շահին թողնել Շուշի բերդի պաշարումը, ասելով, թէ աւելի նպատակայարմար կը լինի նախ գնալ Թիֆլիզը գրաւել, իսկ Շուշին այնուհետեւ ինքն իրան անձնատուր կը լինի։

Աղա-Մամադ-խանին հաւանական երեւեցաւ Մելիք-Մէջլումի խորհուրդը, նա իւր զօրքերի մի մասը թողեց Շուշի բերդի մօտ, իսկ մնացածը իւր հետ առնելով, դիմեց դէպի Թիֆլիզ։ Նրան առաջնորդում էին Մելիք-Մէջլումը եւ Գանձակի Ջաւադ-խանը։

## XXX.

Աղա-Մամադ-խանը դեռ Գանձակից չէր անցել, իսկ Թիֆլիզն արդէն սարսափի մէջ էր գտնվում։ Հերակլը հրաւիրեց իւր ազնուականներին, որ պատրաստուեն թշնամու առաջն առնելու։ Բայց նրա հրաւէրքին ոչ ոք ուշադրութիւն չդարձրեց։ Ազնուականներն զբաղուած էին

իրանց քէֆերով: Նրան օգնութեան հասաւ միայն Իմերէթիայի Սոլոմոն իշխանը մի քանի հազար հոգւով:

Բայց պէտք է ասած, որ Հերակլի երկչոտութիւնը սաստիկ վհատեցրեց նրա զօրքերին: Նա իւր ընտանիքը Թիֆլիզից տեղափոխեց Վրաստանի խորքերը: Այդ տեսնելով, նրա զօրապետները եւ զօրքերը նոյնը խնդրեցին որ իրանց ընտանիքները հեռացնեն, յետոյ կը գան պատերազմելու: Բայց գնացողն այլեւս յետ չդարձաւ: Եւ այսպէս, դեռ թշնամուն չհանդիպած, զօրքերի մեծ մասը ցրիւ եկաւ:

Իւր մօտ մնացած զօրքերով Հերակլը դուրս եկաւ Թիֆլիզից, եւ Ղաղախի Ինջա կոչուած գետի մօտ բանակ դնելով, սպասում էր թշնամուն: Բայց երբ լսեց, որ Աղա-Մամադ-խանն արդէն անցաւ Գանձակից, նա թողեց իւր դիրքը, եւ վերադառնալով կրկին մտաւ քաղաք:

Նա սկսեց կարելոյն չափ ամրացնել քաղաքը: Այստեղ նրան օգնութեան եկած իմերէթները քաղցածութիւնից սկսեցին, նախքան թշնամու աւարառութիւնը, իրանք կողոպտել քաղաքացիներին:

1795 թ. սեպտեմբեր ամսի 12ին Աղա-Մամադ-խանը հասաւ Սօղանլուղ գիւղի մօտ, եւ գիշերն այնտեղ բանակ դնելով, վաղ-առաւօտեան յարձակուեցաւ Թիֆլիզի վրայ: Հերակլը դուրս եկաւ նրա առաջ, բայց մի փոքրիկ ճակատամարտից յետոյ վրացիները ջարդուեցան եւ փախչելով մտան քաղաք:

Այդ միջոցին պարսից զօրքերի մի մասը Մելիք-Մէջլումի առաջնորդութեամբ Սօլօլակի կողմից, իսկ միւս մասը իւր՝ Աղա-Մամադ-խանի առաջնորդութեամբ բաղնիքների կողմից, նոյնպէս մտան քաղաք: Հերակլը Հաւլաբարի կամուրջով մի ջորեպանի հետ փախաւ դէպի Կա-

խէթխայի կողմերը եւ թագնուեցաւ լեռների մէջ։ Իսկ նրա աւելի եւս երկչոտ զօրքերը բոլորը ցիրուցան եղան։

Անպաշտպան քաղաքը մնաց գազանաբարոյ պարսիկների ձեռքում։ Ամբողջ ութ օր շարունակվում էր կոտորածը եւ աւարառութիւնը։ Աղա-Մամադ-խանը՝ 12 հազար գերի իւր հետ առնելով, հեռացաւ աւերակ քաղաքից։ Մելիք-Մէջլումն առաւ իւր վրէժը Հերակլ իշխանից, բայց նրա անգթութիւնը ոչինչով արդարացնել չէր կարելի։ Մինչեւ այսօր Հաւլաբարի հին կանանց բերանում կարդացվում է մի այսպիսի անէծք.

«Մելիք-Մէջլումը շուն դառնայ։
Ջաւադ-խանը — պստիկ կուճի[1].
Մելիք-Մէջլումի ազգէմէն
Թող չմնայ մէկը Շուշի...։»

Որովհետեւ Աղա-Մամադ-խանը իւր յաղթութիւնով առաւել պարտական էր Մելիք-Մէջլումին, ճանապարհին, հէնց առաջին իջեւանում, հրամայեց իւր զօրապետներին, որ աւարից նրա մարդկանց համար բաժին հանեն, ասելով՝ «քրիստոնեային պատկանածը քրիստոնեային տուեցէք»։ Մելիք-Մէջլումի ձիաւորներն իրանց եափնջիները տարածեցին գետնի վրայ, եւ պարսից զօրքերը որքան խաչեր, եկեղեցական անօթներ եւ զգեստներ էին կողոպտել Թիֆլիզի եկեղեցիներից, բոլորը թափեցին նրանց եափնջիների վրայ։ Մելիք-Մէջլումը այս բոլորը յետ ուղարկեց Թիֆլիզ. բայց դրանով չկարողացաւ գրաւել Թիֆլիզեցիների սիրտը...։

Շահը շնորհեց Մելիք-Մէջլումին այս երեք արտօնութիւնները՝ ա. երբ եւ կամենայ, կարող է անարգել

[1] Կուճի = լակոտ (ծան. հրատ.)

կերպով ել եւ մօտ գործել իւր մօտ. բ. ինչ որ խընդրելու լինի, նրա կամքը կը կատարուի. գ. արքունի գանձարանը նրա տրամադրութեան ներքոյ կը լինի։

Բայց Մելիք-Մէջլումն այն աստիճան հպարտ եւ անշահասէր երիտասարդ էր, որ Շահից ուրիշ ոչինչ չպահանջեց, այլ միայն Թիֆլիզն աւերակ դարձնելուց յետոյ խնդրեց նրա օգնութիւնը Շուշի բերդը նոյնպէս կործանել, Իբրահիմ-խանին ոչնչացնել եւ աւելի հաստատութիւն տալ Ղարաբաղի մելիքների իշխանութեանը։

Շահը յօժարուեցաւ ուղղակի գնալ Ղարաբաղ՝ Շուշին գրաւելու եւ Մելիք-Մէջլումի ցանկութիւնները կատարելու համար, բայց դժբախտաբար այդ միջոցներում Ղանդահարի եւ Հերաթի կողմերում խռովութիւններ ծագեցան, եւ նա ստիպուեցաւ շտապել դէպի Պարսկաստան ապստամբութիւնները զսպելու համար։ Նա յանձնեց Ջաւադ-խանին եւ Մելիք-Մէջլումին սպասել, խոստանալով որ շուտով կը վերադառնայ։

Ջաւադ-խանը Մելիք-Մէջլումի հետ գնացին Գանձակ, իսկ Շահը ուրիշ ճանապարհով դիմեց դէպի Պարսկաստան։

Թիֆլիզն աւերակ դառնալուց 25 օրից յետոյ Հերակլը մտաւ մոխիր դարձած քաղաքը։

## XXXI.

Աղա-Մամադ-խանի հեռանալուց յետոյ, Հերակլը իւր դժբախտութիւնը յայտնելով Եկատերինա կայսրուհուն, սկսեց նրանից օգնութիւն խնդրել։ Բոլորը սարսափելով սպասում էին, որ այդ գազանը կրկին պիտի վերադառնայ։

Աղա-Մամադ-խանի արշաւանքը մեծ հարուած տուեց ռուսաց արեւելեան շահերին։ Ռուսներն աշխատում

էին իրանց ազդեցութիւնը տարածել Անդրկովկասի ոչ միայն քրիստոնեաների, այլեւ մահմեդականների վրայ. բայց Աղա-Մամադ-խանը բոլորովին վայր ձգեց նրանց վարկը։ Դեռ 1783 թուին, Եկատերինայի թագաւորութեան հէնց առաջին տարում, իշխան Պատեօմկինի աշխատութեամբ, Վրաստանն ընդունեց իւր վրայ Ռուսաստանի գերիշխանութիւնը եւ մտաւ նրա հովանաւորութեան ներքոյ։ Հասկանալի է, թէ ռուսները որքան պիտի կորցնէին իրանց համարումը, որ չկարողացան պաշտպանել իրանց հոգաբարձութեան ներքոյ առած երկիրը, որին շատ բան էին խոստացել։

Իրանց համարումը վերականգնելու համար ռուսներն ստիպուած էին սկսել մի նոր արշաւանք պարսիկների դէմ։ 1796 թ. 19 փետրուարի գրուած հրովարտակով հրամայուեցաւ գեներալ կոմս Վ. Ա. Զուբովին, որ Անդրկովկասի քրիստոնեաներին օգնութեան հասնէ։ Նոյն հրովարտակի մէջ ի թիւս այլոց յիշուած էր, որ Ռուսաստանը զէնք է բարձրացնում յանուն ճնշեալ ազգերի ազատութեան։

Ռուսաստանի հայոց Յովսէփ արքեպիսկոպոսը, որպէս երեւում է նրա Հերակլ իշխանին գրած մխիթարական նամակներից, սաստիկ յուսահատուած եւ վշտացած էր Աղա-Մամադ-խանի բարբարոսութիւններից եւ Թիֆլիզի աւերակ դառնալուց։ Բայց ռուսաց զօրքերի նոր արշաւանքը պարսիկների դէմ նրան կրկին սիրտ եւ հոգի տուեց, կրկին կենդանացան նրա յոյսերը Հայրենիքի ազատութեան մասին։

Յովսէփ արքեպիսկոպոսը հրաւիրուեցաւ ռուսաց կառավարութիւնից, որ անձամբ մասնակցէ արշաւանքին։ Ծերացած, ուժից ընկած արքեպիսկոպոսը պատրաստ էր

ամէն զոհողութիւններ յանձն առնել, միայն թէ ռուսաց սուրը յաջողութիւն գտնէր. այն սուրը, որ պիտի պատերազմէր Անդրկովկասի քրիստոնեաների ազատութեան եւ նրանց մի խաղաղ կեանք տալու համար:

1796 թ. մարտ ամսում, Ղզլարում արքեպիսկոպոսը տեսնուեցաւ կոմս Զուբովի հետ՝ արշաւանքի մասին խորհրդակցելու եւ զանազան նախապատրաստութիւններ կարգադրելու համար: Այնտեղից արքեպիսկոպոսը գաղտնի նամակներ գրեց հայոց մելիքներին, որոնց աւետում էր ռուսաց զօրքերի գալուստը, յորդորում էր պատրաստուել թէ՛ զէնքով եւ թէ՛ պաշարներով ռուսներին օգնելու համար: Բացի արքեպիսկոպոսի մասնաւոր նամակներից, լոյս ընծայուեցաւ կայսրուհու՝ հրովարտակի բովանդակութեան մտքով մի շրջաբերական հրաւէրք, որ ուղղուած էր Անդրկովկասի եւ Պարսկաստանի բնակիչներին: Արքեպիսկոպոսն այդ շրջաբերականի թարգմանութիւնը Հաշտարխանում տպել տուեց եւ մի քանի հազար օրինակ տարածեց հայերի մէջ:

Նոյն տարուայ գարունքին ռուսաց զօրքը Ղզլարից ճանապարհ ընկաւ:

Զուբովը մտեցաւ Դերբէնդին (մայիս ամսին), տեղային Փաթալի-խանի որդի Շեխալի-խանն ընդդիմացաւ նրան եւ պատրաստւում էր պատերազմելու: Բայց Դերբէնդի հայ բնակիչները քաղաքը մատնեցին Զուբովի ձեռքը. բացի դրանից, բռնեցին Շեխալի-խանին եւ նոյնպէս մատնեցին Զուբովի ձեռքը: Ռուսները համարեա առանց պատերազմի՝ հայերի աջակցութեամբ տիրեցին Դերբէնդին:

Զուբովը Դերբէնդից անցաւ Ղուբա, իւր հետ տանելով Շեխալի-խանին: Ղուբան նոյնպէս առանց արիւնի գրաւուեցաւ: Այստեղ մի օր, ձիարշաւի հանդէս կա-

տարելու ժամանակ, որին հանդիսատես էր ինքը Ջուբովը, Շեխալի-խանը մտրակելով իւր նժոյգին ասպարէզից դուրս եկաւ, փախաւ դէպի Պարսկաստան. ոչ ոք չկարողացաւ բռնել նրան: Բայց Բագուի մէջ նրան կալանաւորեցին, երբ այդ քաղաքը առանց պատերազմի անձնատուր եղաւ ռուսներին:

Նոյն թուի յուլիս ամսում Ջուբովը մտեցաւ Շա-մախի քաղաքին: Տեղային Մուստաֆա-խանը պատրաստուել էր պատերազմելու: Բայց Յովսէփ արքեպիսկոպոսն առա-ջուց անձամբ գնաց նրա մօտ, աշխատեց համոզելու, որ ընդդիմութիւնն ապարդիւն կը լինէր, աւելի լաւ էր առանց արիւնհեղութեան ընդունել ռուսաց հպատակութիւնը: Մուստաֆա-խանը համաձայնուեցաւ ընդունելու արքե-պիսկոպոսի առաջարկութիւնը, բայց երբ նրանից մի յու-սալի պատանդ պահանջեցին, նա դրժեց իւր խոստմունքին, եւ դիմեց Շուշի բերդի Իբրահիմ-խանին, որ միանայ իւր հետ, եւ երկուսը միասին պատերազմեն ռուսաց դէմ: Այդ ժամանակ (օգոստոս ամսում) արքեպիսկոպոսը կրկին ուղարկուեցաւ Մուստաֆա-խանի մօտ եւ տեսնուեցաւ նրա հետ սուրբ Ստեփաննոսի վանքում: Այս անգամին արքեպիսկոպոսին կատարելապէս յաջողուեցաւ կատարել իւր միջնորդութեան խորհուրդը, եւ Շամախին՝ նրա աշխատութեամբ առանց արիւնհեղութեան անցաւ ռուս-ների ձեռքը:

Վերոյիշեալ քաղաքները դիւրութեամբ գրաւելուց յետոյ, ձմեռն անվտանգ անցկացնելու համար, Ջուբովն անցաւ Մուղանի անապատը եւ ձմերեց Սալիանում:

Հետեւեալ տարուայ գարունքին Ջուբովը դիմեց դէպի Գանձակ:

Մելիք-Աբովն այդ ժամանակ գտնվում էր Գանձա-կում, տեղային Ջաւադ-խանի մօտ: Մինչեւ ռուսաց զօր-

քերի հանելը Մելիք-Աբովը Ցովսէփ արքեպիսկոպոսի խորհրդով կամեցաւ համոզել Ջաւադ-խանին, որ առանց պատերազմի անձնատուր լինի ռուսներին: Ջաւադ-խանը պատրաստեց իւր սեպհական պալատը եւ յարգանքով ընդունեց թէ՛ կոմս Զուբովին եւ թէ Ցովսէփ արքեպիսկոպոսին իւր քաղաքում:

Այդ ժամանակ Ջաւադ-խանն ընծայեց Նորին սրբազնութեանը Կենաց փայտի մի մասը, որ Հաղբատայ վանքից բերուած էր Թիֆլիզ եւ այդ քաղաքի աւարառութեան ժամանակ ընկել էր պարսից զինուորների ձեռքը, որոնցից գնել էր խանը:

Այդ միջոցներում Շուշի բերդի Իբրահիմ-խանը տեսնելով որ հայերը միասիրտ եւ միահոգի կերպով միացած են ռուսների հետ, տեսնելով որ միւս գաւառների մահմեդական խաները հնազանդուեցան, ինքն եւս անճար մնալով, իւր որդի Աբդուլ-Փաթհ-խանին ուղարկեց կոմս Զուբովի մօտ եւ յայտնեց իւր հպատակութիւնը: Կոմսը սիրով ընդունեց նրա որդուն եւ յարգանքով ճանապարհ դրեց, ուղարկելով նրա ձեռքով ընծաներ Իբրահիմ-խանին, այլեւ մի թանկագին գաւազան Շուշի բերդի մահմեդական հոգեւորականների գլխաւոր մօլլա Փանահին:

Կոմսի բարեկամական ցոյցերը դէպի Շուշի բերդի բռնակալը բաւական խախտեցին Ղարաբաղի հայոց մելիքների հաւատը դէպի ռուսները: Նրանք բոլորովին ուրիշ բան էին սպասում. նրանք յոյս ունէին, որ Իբրահիմ-խանի իշխանութիւնը կը ոչնչացնեն, եւ Ղարաբաղում կրկին կը հաստատեն մելիքների վաղեմի իշխանութիւնը: Դրա համար էլ մելիքներն ամեն զոհողութիւն յանձն առան ռուսների տիրապետութիւնը հեշտացնելու համար: Բայց Ցովսէփ արքեպիսկոպոսը դարձեալ հանգստացնում

էր նրանց, ասելով, թէ դա քաղաքագիտական առժամանակեայ խաղ էր միայն, թէ Իբրահիմ-խանը երկար չի մնայ իւր տեղում եւ թէ մելիքները դարձեալ տէր կը լինին Ղարաբաղին, ինչպէս միշտ եղել են, եւայլն։

Գուցէ արքեպիսկոպոսի յոյսերը երազներ չէին, գուցէ այդ բոլորը կը կատարուէր, բայց երեւում է, որ ինքը Նախախնամութիւնը վճռել էր պատժել հայերին իրանց մեղքերի համար....։

Յանկարծ հասաւ Եկատերինա կայսրուհու մահուան բօթը (1796 թ. 6 նոյեմ.)։ Եւ մինչդեռ կոմս Զուբովը պատրաստվում էր կատարելու իւր արշաւանքի այլ խորհուրդները, հրաման ստացաւ վերադառնալու Ռուսաստան։ Նրա հետ ռուսաց զօրքերը թողեցին Անդրկովկասը (1797 թ. գարունքին)։

Այդ անակնկալ դժբախտութիւնից յետոյ, հասկանալի է Յովսէփ արքեպիսկոպոսի անմխիթար սրտի դառնութիւնը։ Նրա ողորմած կայսրուհին վախճանուեցաւ, նրա բոլոր բարձր գաղափարները, որոնցով ոգեւորուած՝ առաջնորդում էր նա ռուսաց զօրքերին, նրա բոլոր ծրագիրները հայրենիքի ազատութեան մասին, միանգամայն խորտակուեցան։

Նա անմխիթար, յուսահատ սրտով ինքն եւս վերադարձաւ Ռուսաստան։

## XXXII.

Ռուսաց զօրքերի յանկարծ հեռանալը բոլորովին այլ կերպով էին բացատրում Անդրկովկասի մահմեդականները։ Արդէն Պարսկաստանից լսվում էր, որ Աղա-Մահմադ-խանը պատրաստվում է մի նոր արշաւանք գործելու դէպի Անդրկովկաս։ Այդ պատճառով ռուսների հեռանալը վե-

րաբերում էին նրանց վախենալուն, նրանց երկչոտութեանը, իբր թէ Շահի գալուստը լսածին պէս, սկսեցին փախչել: Թէեւ այդ ենթադրութիւնը պարծենկոտ մահմեդականների երեւակայութեան ցնորքն էր միայն, այսուամենայնիւ ռուսաց հեռանալը մեծ հարուած տուեց Անդրկովկասեան քրիստոնեաներին, առաւելապէս հայերին:

Մենք տեսանք, թէ ո՛րպիսի եռանդով եւ ո՛րքան անձնազոհութեամբ աշխատում էին հայերը ռուսաց յաղթութիւնները հեշտացնելու համար: Բոլոր գաւառների տիրապետող խաները, համարեա առանց պատերազմի, անձնատուր եղան: Ինչո՞ւ. — որովհետեւ ժողովուրդը խաների դէմ էր եւ ռուսների բարեկամ: Իսկ ժողովուրդը բաղկացած էր ըստ մեծի մասին հայերից: Ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ այդ խաները եւ առհասարակ մահմեդական ամբոխը, ռուսների հեռանալուց յետոյ, պիտի սկսէին իրանց բոլոր վրէժխնդրութեան թոյնը թափել հայերի վրայ:

Մենք տեսանք, որ Ղուբայի եւ Դերբէնդի հայ բնակիչները իրանք բաց արին այդ քաղաքների դռները ռուսաց զօրքերի առջեւ, եւ տեղային Շխալի-խանին բռնելով, մատնեցին կոմս Զուբովի ձեռքը: Ի հարկէ ռուսաց զօրքերի հեռանալուց յետոյ նոյն հայերն այլեւս չէին կարող մնալ իրանց տեղերում. նրանք թշնամացան մահմեդականների հետ. նրանք դաւաճան յայտնուեցան խանի աչքում: Եւ այդ էր պատճառը, որ Դերբէնդի ու Ղուբայի հայերը համարեա բոլորը գաղթեցին ռուսաց զօրքերի հետ եւ գնացին Ռուսաստան: Դրանցից աւելի քան հազար ընտանիք կոմս Զուբովը բնակեցրեց Ղզլարի գաւառում:

Շամախու Մուստաֆա-խանը նոյնպէս՝ որ վիրաւորուած էր իւր քաղաքի հայերից, նրանց դէպի ռուսներն

ունեցած համակրութեան մասին, սկսեց հալածել նրանց։ Նա սպանել տուեց Յովհաննէս վարդապետին, որ գըրգռում էր հայերին խանի դէմ յօգուտ ռուսների։

Իբրահիմ-խանը միայն լուռ մնաց, պահելով իւր սրտում Ղարաբաղում գտնուած մելիքների վերաբերութեամբ սաստիկ ոխակալութիւն։ Նա խորամանկ եւ միեւնոյն ժամանակ իւր գործը հասկացող մարդ էր. նա դեռ եւս մելիքների շատ պէտք ունէր. մի կողմից լսում էր Աղա-Մամադ-խանի նոր արշաւանքի ձայնը դէպի Ղարաբաղ, միւս կողմից նա մտադիր էր վրէժխնդիր լինել Մելիք-Մէջլումից, որ Աղա-Մամադ-խանի հետ միանալով, պաշարեց նրա բերդը՝ Շուշին։

## XXXIII.

Վրաց Հերակլ իշխանը չէր մոռացել Թիֆլիզի աւերումը Մելիք-Մէջլումի եւ Ջաւադ-խանի ձեռքով։ Շուշի բերդի Իբրահիմ-խանը նոյնպէս չէր մոռացել, որ յիշեալ երկու անձինքը, առաջնորդելով Աղա-Մամադ-խանին, պաշարեցին իւր բերդը եւ ահագին վնասներ պատճառեցին։ Ուստի երկուսն էլ միաբանելով, կամեցան իրանց այդ ոխերիմ թշնամիներից վրէժխնդիր լինել։

Համարեա կոմս Զուբովի Դերբէնդը տիրելուց մի ամիս յետոյ (1796 թ. ապրիլ ամսում) Հերակլը վրացի եւ վարձուած լէզգի զօրքերով, այլեւ իւր հետ վեր առնելով Թիֆլիզում գտնուած ռուսաց զօրքերի մի մասը, իսկ Իբրահիմ-խանը Ղարաբաղի հայ եւ թուրք զօրքերով պաշարեցին Գանձակի բերդը։ Նրանց օգնութեան հասաւ եւ Աւարիայի Օմար-խանը։

Իբրահիմ-խանի զօրախմբի մէջ գտնվում էր Մելիք-Ռուստամը. բացի դրանից, Ղարաբաղի միւս մելիքներից

ոչ ոք չմասնակցեց խանի արշաւանքին։ Այդ փոփոխամիտը, որպէս տեսանք XXVII գլխում, իւր կնոջ պատճառով թշնամացաւ խանի հետ, բայց Մելիք-Մէջլումի դէմ պատերազմելու համար կրկին հաշտուեցաւ։ Նա վաղեմի թշնամութիւն ունէր Մելիք-Մէջլումի հետ, որովհետեւ այդ վերջինը, որպէս ցոյց տուինք XXVI գլխում, մի դաւադրութեան համար հրացանի բռնել տուեց Մելիք-Ռուստամի եղբօրը եւ փեսային։

Գանձակի բերդի մէջ իւր զօրքերով գտնվում էր Մելիք-Մէջլումը, տեղային Ջաւադ-խանի մտերիմ բարեկամը։ Բացի նրանից, Գանձակի հայ մելիքները իրանց մարդկանցով նոյնպէս բերդի մէջն էին, պաշտպանում էին նրան։ Բերդի ութն աշտարակներից չորսը հայերի պաշտպանութեան ներքոյ էր, իսկ մնացածը պաշտպանում էր ինքը Ջաւադ-խանը։

Պաշարումը տեւեց երկար, աւելի քան չորս ամիս։ Ռուս, Թուրք, վրացի եւ լեզգի զօրքերը, ահագին քանակութեամբ շրջապատել էին բերդը եւ անդադար յարձակումներ էին գործում, բայց պաշարուածները քաջութեամբ պատասխանում էին նրանց։ Վերջը Հերակլ իշխանն անճարացած մի գաղտնի պատգամաւորութիւն ուղարկեց Ջաւադ-խանի մօտ, յայտնելու նրան, որ եթէ Մելիք-Մէջլումին իւր ձեռքը կը տայ, դրանով ամեն ինչ կը վերջանայ։

Ջաւադ-խանը խիստ արհամարհանքով պատասխանեց ասելով թէ մի այդպիսի վարմունք միայն իրան՝ Հերակլին կը վայելէ, իսկ ինքը չէ կարող իւր բարեկամին եւ դաշնակցին մատնել թշնամու ձեռքը։ Այդ խօսքերով Ջաւադ-խանը կամեցաւ յիշեցնել վրաց իշխանին նրա անազնիւ վարմունքը Մելիք-Մէջլումի վերաբերութեամբ,

երբ նա Թիֆլիզում կամենում էր կալանաւորել իւր հիւրին եւ մատնել Իբրահիմ-խանի ձեռքը, որի համար եւ սաստիկ պատժուեցաւ, Թիֆլիզը աւերակ դարձաւ...։

Այդ պատասխանից յետոյ Հերակլը եւ Իբրահիմ-խանը սաստկացրին իրանց յարձակումները։ Երկու կողմից եւս սարսափելի կռիւներ էին լինում, բայց բերդի գրաւելը օրըստօրէ անհնարին էր դառնում։ Թշնամին սկսեց աւարի առնել, աւերակ դարձնել Գանձակի շրջակայ գիւղերը։

Կռիւների մէջ առանձին հերոսութեամբ հանդիսացան Մելիք-Մէջլումի երկու քաջերը՝ Դալի-Մահրասան եւ Թիւլի-Արզումանը. առաջինը լեզգիների դէմ, իսկ երկրորդը վրացիների դէմ։ Այդ երկուսը իրանց խմբերով շատ անգամ դուրս էին գալիս պաշարուած բերդից, եւ կայծակի նման նետուելով թշնամու բանակի վրայ, սարսափելի կոտորածներ գործելով, յետ էին դառնում։ Բայց երկու քաջերը եւս իրանց յանդուգն յարձակումների զոհը դարձան. Թիւլի-Արզումանը գնդակի հարուած ստացաւ Գանձակի այգեստանի մէջ տեղի ունեցած կռուում, իսկ Դալի-Մահրասան, որպէս նկարագրեցինք XII գլխում, սպանուեցաւ Գանձակի գերեզմանատան մէջ։ Այդ քաջերի կորուստը Մելիք-Մէջլումին սաստիկ ցաւ պատճառեց։

Երեք ամիս անցաւ, բայց բերդը դեռ աներկիւղ պաշտպանվում էր։ Այդ միջոցներում մի ծերունի, որ չնայած գլխի ալեւոր մազերին, դեռ պահպանել էր մարմնի ժրութիւնը եւ սրտի աշխոյժը, թշնամու բանակից բաժանուելով, աննկատելի կերպով մտաւ բերդի մէջ։ Նա մօտեցաւ այն աշտարակներից մէկին, որ գտնվում էին հայերի պաշտպանութեան ներքոյ։ Այդ ծերունու ներկայութիւնը՝ կարծես մի դիւթական զօրութեամբ ազդեց

ու ոք չմասնակցեց խանի արշաւանքին։ Այդ փոփոխամիտը, որպէս տեսանք XXVII գլխում, իւր կնոջ պատճառով թշնամացաւ խանի հետ, բայց Մելիք-Մէջլումի դէմ պատերազմելու համար կրկին հաշտուեցաւ։ Նա վաղեմի թշնամութիւն ունէր Մելիք-Մէջլումի հետ, որովհետեւ այդ վերջինը, որպէս ցոյց տուինք XXVI գլխում, մի դաւադրութեան համար հրացանի բռնել տուեց Մելիք-Ռուստամի եղբօրը եւ փեսային։

Գանձակի բերդի մէջ իւր զօրքերով գտնվում էր Մելիք-Մէջլումը, տեղային Ջաւադ-խանի մտերիմ բարեկամը։ Բացի նրանից, Գանձակի հայ մելիքները իրանց մարդկանցով նոյնպէս բերդի մէջն էին, պաշտպանում էին նրան։ Բերդի ութն աշտարակներից չորսը հայերի պաշտպանութեան ներքոյ էր, իսկ մնացածը պաշտպանում էր ինքը Ջաւադ-խանը։

Պաշարումը տեւեց երկար, աւելի քան չորս ամիս։ Ռուս, Թուրք, վրացի եւ լէզգի զօրքերը, ահագին քանակութեամբ շրջապատել էին բերդը եւ անդադար յարձակումներ էին գործում, բայց պաշարուածները քաջութեամբ պատասխանում էին նրանց։ Վերջը Հերակլ իշխանն անճարացած մի գաղտնի պատգամաւորութիւն ուղարկեց Ջաւադ-խանի մօտ, յայտնելու նրան, որ եթէ Մելիք-Մէջլումին իւր ձեռքը կը տայ, դրանով ամէն ինչ կը վերջանայ։

Ջաւադ-խանը խիստ արհամարհանքով պատասխանեց ասելով թէ մի այդպիսի վարմունք միայն իրան՝ Հերակլին կը վայելէ, իսկ ինքը չէ կարող իւր բարեկամին եւ դաշնակցին մատնել թշնամու ձեռքը։ Այդ խօսքերով Ջաւադ-խանը կամեցաւ յիշեցնել վրաց իշխանին նրա անազնիւ վարմունքը Մելիք-Մէջլումի վերաբերութեամբ,

երբ նա Թիֆլիզում կամենում էր կանոնաւորել իւր հիւրին եւ մտնել Իբրահիմ-խանի ձեռքը, որի համար եւ սաստիկ պատժուեցաւ, Թիֆլիզը աւերակ դարձաւ...։

Այդ պատասխանից յետոյ Հերակլը եւ Իբրահիմ-խանը սաստկացրին իրանց յարձակումները։ Երկու կողմից եւս սարսափելի կռիւներ էին լինում, բայց բերդի գրաւելն օրըստօրէ անհնարին էր դառնում։ Թշնամին սկսեց աւարի առնել, աւերակ դարձնել Գանձակի շրջակայ գիւղերը։

Կռիւների մէջ առանձին հերոսութեամբ հանդիսացան Մելիք-Մէջլումի երկու քաջերը՝ Դալի-Մահրասան եւ Թիւլի-Արզումանը. առաջինը լէզգիների դէմ, իսկ երկրորդը վրացիների դէմ։ Այդ երկուսը իրանց խմբերով շատ անգամ դուրս էին գալիս պաշարուած բերդից, եւ կայծակի նման նետուելով Թշնամու բանակի վրայ, սարսափելի կոտորածներ գործելով, յետ էին դառնում։ Բայց երկու քաջերը եւս իրանց յանդուգն յարձակումների զոհը դարձան. Թիւլի-Արզումանը գնդակի հարուած ստացաւ Գանձակի այգեստանի մէջ տեղի ունեցած կռուում, իսկ Դալի-Մահրասան, որպէս նկարագրեցինք XII գլխում, սպանուեցաւ Գանձակի գերեզմանատան մէջ։ Այդ քաջերի կորուստը Մելիք-Մէջլումին սաստիկ ցաւ պատճառեց։

Երեք ամիս անցաւ, բայց բերդը դեռ աններկիւղ պաշտպանվում էր։ Այդ միջոցներում մի ծերունի, որ չնայած գլխի ալեւոր մազերին, դեռ պահպանել էր մարմնի ժրութիւնը եւ սրտի աշխոյժը, Թշնամու բանակից բաժանուելով, աննկատելի կերպով մտաւ բերդի մէջ։ Նա մօտեցաւ այն աշտարակներից մէկին, որ գտնվում էին հայերի պաշտպանութեան ներքոյ։ Այդ ծերունու ներկայութիւնը՝ կարծես մի դիւթական զօրութեամբ ազդեց

աշտարակի հայ պահակների վրայ, որոնց թիւը մի քանի հարիւր հոգի էր, եւ գիշերը բոլորն էլ ապստամբուեցան, աշխատում էին բաց անել թշնամու առջեւ բերդի դռուները։ Մելիք-Մէջլումն այդ լսելով թողեց իւր բռնած դիրքը, շտապեց զսպելու ապստամբութիւնը։ Գիշերային խռովութեան մէջ նա գնդակի հարուած ստացաւ. Նրան վիրաւորուած տարան Ջաւադ-խանի պալատը։ Ծերունին բռնուեցաւ։ Ո՞վ էր այդ չարագործը։

Դա Իսրայէլ կաթողիկոսի հայր Ապրես-աղան էր։ Նրա օծեալ որդին դաւաճանութիւն գործեց Ղարաբաղի բոլոր հայ մելիքների դէմ եւ նրանց թղթերը բռնելով, մատնեց Իբրահիմ-խանին եւ Ղարաբաղի կործանման պատճառը դարձաւ. այժմ ծերունի հայրը նոյն եղեռնագործութեան դերը կատարեց։ Նրա փեսան[1]՝ Մելիք-Ռուստամը, որ թշնամու բանակի մէջն էր, կամեցաւ նրան եւ Իբրահիմ-խանին մի մեծ ծառայութիւն անել։

Նոյն գիշերուայ առաւօտեան պահուն Ջաւադ-խանը Ապրես-աղայի գլուխը կտրել տուեց եւ որպէս ընծայ ուղարկեց թշնամու բանակը նրա փեսայ Մելիք-Ռուստամին. ապստամբներից շատերը նոյնպէս պատժուեցան։

Մելիք-Մէջլումը, այդ վիրաւոր առիւծը, խնամւում էր Ջաւադ-խանի պալատում։ Երրորդ օրը նա վախճանուեցաւ։ Բայց Ջաւադ-խանը երկու ամբողջ շաբաթ նրա մարմինը պահեց իւր տան մէջ. բժիշկը գնում-գալիս էր, իւր ժամանակին նրա սենեակը ընթրիք եւ ճաշ էին տանում, եւ ամեն օր Ջաւադ-խանն ուրախութեամբ յայտնում էր հայոց զօրքերին, թէ շուտով Մելիք-Մէջլումը բոլորովին առողջացած դուրս կը գայ։ Դրանով խանը

[1] Ապրես-աղայի աղջիկը՝ Վարդ-խաթունը, Մելիք-Ռուստամի կինն էր։

կամենում էր պահպանել հայոց զօրքերի եռանդը, որպէս զի իրանց իշխանի մահը լսելով չվհատուեն, մինչեւ ինքը թշնամու հետ գործը վերջացնէ:

Գանձակի բերդի պաշարման չորրորդ ամիսը լրանալու մօտ էր, երբ Ջաւադ-խանը, առանց որեւիցէ զիջում անելու, հաշտուեցաւ իւր թշնամիների հետ: Իբրահիմ-խանը հեռացաւ դէպի Ղարաբաղ, Հերակլը գնաց Թիֆլիզ, իսկ Օմար-խանը դէպի Դաղստան: Մելիք-Մէջլումի մահն իմացան նրանք այն ժամանակ միայն, երբ հաշտութեան պայմանները արդէն կնքուած էին:

Չնայելով որ Թիֆլիզն աւերակ դարձնելուց յետոյ Մելիք-Մէջլումը փոքր ինչ կորցրել էր իւր համարումը հայ հասարակութեան աչքում, բայց Ջաւադ-խանը, յարգելով իւր հանգուցեալ բարեկամի յիշատակը, ուշադրութիւն չդարձրեց հայերի դժգոհութեան վրայ եւ նրա մարմինը հանդիսաւոր կերպով թաղել տուեց Գանձակի մայր եկեղեցու տաճարի աջակողմեան խորանի մէջ: Նոյն եկեղեցու գաւթում ամփոփուեցան Դալի-Մահրասայի եւ Թիւլի-Արզումանի մարմինները:

Ջաւադ-խանը իւր հոգաբարձութեան ներքոյ առաւ Մելիք-Մէջլումի միակ որդի Մելիք-Աթամ Բ-ին:

Նրա հայրը, դեռ Թիֆլիզում եղած ժամանակ, նշանադրել էր իւր որդու համար տեղացի երեւելի ազնուական Նասսէի[1] կրտսեր աղջկան, գեղեցիկ Ռեհանին:

---

[1] Այդ Նասսէն չգիտենք Թիֆլիզի հայոց ո՛ր ազնուականների տոհմիցն էր (Րաֆֆի):

(Ծան. հրատ.) «Ուստայ Նասէնք (որ այժմ ասեն-Նազարով), վրաց իշխանների դրամ հատանելոյ վարպետներն էին: Նրանց տներն են երբեմն Մնացականովի, իսկ այժմ Համբարցում Ընֆիաճեանցի տանը կից՝ վերեւի կողմից անկիւնաւոր տունը:» (Երեւելի Հայկազունք ի պարսկաստան. — աշխ. գալուստ Շերմազանեանի) տպ. 1890 Թ.

Երբ Մելիք-Մէջլումի մահից յետոյ Ջաւադ-խանը հարսնախօսներ ուղարկեց Թիֆլիզ Ռեհանին բերելու, նրա հայրը փոխանակ գեղեցիկ Ռեհանին տալու, տուեց նրա երեց քրոջը՝ Թամարին, որ բաւական տգեղ էր: Այդ դժբախտ ամուսնութեան պատճառով Մելիք-Աթամ Բ-ը երկար չապրեց. նա մեռաւ երիտասարդական հասակում, թողնելով մի աղջիկ միայն Սհար-Նազ անունով:

Իսկ Թամարը թէեւ շատ գեղեցիկ չէր, բայց խելացի եւ ճարպիկ կին էր: Ամուսնու մահից յետոյ նա երկար կարողացաւ կառավարել Մելիք-Իսրայէլեանների թողած մեծ ժառանգութիւնը եւ նրանց հպատակներին, որ այն ժամանակ գտնվում էին Գանձակի գաւառում: Յետոյ իւր աղջկան՝ Սհար-Նազին, կնութեան տալով Նախիջեւանցի Աբրի-բէկի որդի Սայի-բէկին, տիկին Թամարն ընտրեց նրան իբրեւ տնային փեսայ, եւ Մելիք-Իսրայէլեանների ժառանգութիւնն անցաւ այդ Սայի-բէկի ձեռքը, որ սկսեց այնուհետեւ կրել իւր կնոջ տոհմանունը:

## XXXIV.

Մելիք-Մէջլումի մահը զրկեց Ջաւադ-խանին իւր լաւ դաշնակցից, իսկ Ղարաբաղը զրկուեցաւ իւր քաջ հայրենասէրից: Նա իւր հետ գերեզման տարաւ աւելի ընդարձակ եւ հիմնաւոր ծրագիրը Ղարաբաղի մելիքութիւնների վերականգնման մասին, որ բոլորովին տարբերվում էր միւս մելիքների եւ Յովսէփ արքեպիսկոպոսի գաղափարներից: Երբ միանգամ նրա նիզակակից Դալի-Մահրասան համարձակուեցաւ յանդիմանել նրան Թիֆլիզի աւերակ դարձնելու պատճառով, երիտասարդ մելիքը դառնացած կերպով պատասխանեց նրան. «Բաւական խաբուեցանք... մինչեւ ե՞րբ պէտք է երազներով հրա-

պուրունեք... մեր բարերարները մեզ կռուեցնում են իրանց թշնամիների հետ, իսկ իրանք մէջտեղից շահվում են...: Մենք աւելի հաստատ պատճառներ ունինք հաւատալու պարսից Շահերին, քան թէ ուրիշներին: Շահ-Աբասը հաստատեց Ղարաբաղի մելիքութիւնները, Նադիրը վերահաստատեց, իսկ Աղա-Մամադ-շահը խոստացել է ինձ աւելի, քան թէ իւր նախորդները[1]...:

Ինչ էլ որ լինէր Աղա-Մամադ-խանի խոստմունքը, Մելիք-Մէջլումն այժմ նրանից օգուտ քաղել չէր կարող: Նրա թշնամիները — Իբրահիմ-խանը եւ Հերակլ իշխանը — աւելի լաւ էին հասկանում այդ բոլորը. եւ այդ էր պատճառը, որ մինչեւ Աղա-Մամադ-խանի կրկին վերադարձը, աշխատեցին Մելիք-Մէջլումին ոչնչացնել:

Հերաթի եւ Ղանդահարի ապստամբութիւնները զսպելով, Աղա-Մամադ-խանը վայելում էր իւր յաղթութիւնների փառքը իւր նոր աթոռանիստ Թէհրան քաղաքում, երբ Գանձակի Ջաւադ-խանից նամակ ստացաւ Անդրկովկասում պատահած անցքերի մասին: Նամակագիրը տեղեկացնում էր նրան կոմս Զուբովի արշաւանքների եւ խաների ռուսաց հպատակութիւնն ընդունելու մասին, յետոյ կոմս Զուբովի անակնկալ վերադարձի մասին դէպի Ռուսաստան. տեղեկացնում էր Հերակլ իշխանի միաբանութեան մասին Իբրահիմ-խանի հետ, եւ իւր բերդի, Գանձակի, պաշարման մասին յիշեալ երկու դաշնակիցներից, եւ վերջապէս Մելիք-Մէջլումի սպանման մասին, որ շատ սիրելի էր Շահին: Այդ բոլորը լսելով, Աղա-

[1] Մի հին ձեռագրի մէջ կարդում ենք, որ Աղա-Մամադ-խանը խոստացել էր Մելիք-Մէջլումին՝ ոչ միայն Իբրահիմ-խանին ոչնչացնելով բարձրացնել Ղարաբաղի մելիքութիւնները, այլեւ պիտի յանձնէր նրան եւ Վրաստանի կառավարութիւնը:

Մամադ-խանը 1797 թուի ամառը կատարեց մի նոր արշաւանք դէպի Անդրկովկաս։

Դեռ նա Երասխ գետից չէր անցած, որ Իբրահիմ-խանը տեսնելով թէ չէ կարող ընդդիմադրել պարսից ահագին զօրութեանը, եւ մանաւանդ յոյս չունենալով, որ Հայոց մելիքներն այս անգամ եւս կ՚օգնեն իրան Աղա-Մամադ-խանի դէմ, վեր առաւ իւր ընտանիքը եւ գիշերով թողնելով Շուշի բերդը, փախաւ Բալաքան իւր աներոջ՝ Օմար-խանի մօտ։

Այդ ժամանակ Հայոց մելիքները նոյնպէս մեծ երկիւղի մէջ ընկան։ Նրանք դեռ Աղա-Մամադ-խանի առաջին արշաւանքի ժամանակ մերժել էին Շահի հրաւէրքը, որով կոչում էր նրանց ընդունել Պարսկաստանի հովանաւորութիւնը, խոստանալով ոչնչացնել Իբրահիմ-խանին եւ վերահաստատել Ղարաբաղում մելիքների վաղեմի իշխանութիւնը։ Բայց մելիքներն այնքան անխոհեմ գտնուեցան, որ բռնեցին Իբրահիմ-խանի կողմը եւ որպէս տեսանք XXIX գլխում, սկսեցին իրանց բոլոր ուժերով պաշտպանել նրան եւ Շուշի բերդը Շահի ահագին զօրութեան դէմ։ Իսկ այժմ ի՞նչ պիտի անէին, երբ նոյն Շահը աւելի մեծ պատրաստութեամբ յարձակուեցաւ Ղարաբաղի վրայ։

Մելիքների զօրքերը իրանց ժողովուրդն էր, իսկ ժողովուրդն սկսել էր ցրիւ գալ ոչ այնքան Աղա-Մամադ-խանի երկիւղից, որքան մի նոր եւ աւելի անգութ թշնամուց, որ այդ միջոցներում վրայ հասաւ։ Դա էր Ղարաբաղի սարսափելի սովը, որին հետեւեց ժանտախտը։

Մենք յետոյ ցոյց կը տանք, թէ սովն ու ժանտախտը խառնուելով քաղաքական տագնապների հետ, որպէս կործանիչ ներգործութիւն ունեցան Ղարաբաղի հայ իշխա-

նութիւնների վրայ, իսկ այժմ այսքանը կ'ասենք, որ մելիքները՝ որքան էլ ցանկանային, չէին կարող դէմ գնել Աղա-Մամադ-խանին, որովհետեւ նրանց ժողովուրդն այդ ժամանակ միայն հացի համար էր մտածում եւ վազում էր դէպի այն կողմը, ուր կարող էր հաց գտնել։

Դեռ Աղա-Մամադ-խանը չհասած Շուշի բերդին, Մելիք-Բէգլարեան Մելիք-Աբովը գնաց Վրաստանի կողմերը, իսկ Մելիք-Շահնազարեան Մելիք-Ջումշուդը կամենում էր գնալ Թիֆլիզ, բայց ճանապարհին պատահեց Աղա-Մամադ-խանի խմբերին, եւ նրանց հետ կռիւ ունենալով, գլխից վէրք ստացաւ։ Նրան վիրաւոր բերեցին Աղա-Մամադ-խանի մօտ, երբ նա արդէն բանակ էր դրած Ասկարանի աւերակների մօտ, Շուշի բերդից մի քանի մղոն հեռաւորութեան վրայ։

Քանի հազար թուման տուգանքը հազիւ կարողացաւ ազատել Մելիք-Ջումշուդի գլուխը Շահի դահիճների ձեռքից։ Նրա տունը կողոպտելուց ու կայքը յափշտակելուց յետոյ Շահը նրան ներում շնորհեց։

Մելիք-Ջումշուդն անձամբ առաջնորդեց նրան, տարաւ Շուշի բերդը, որ առանց ընդդիմութեան իւր դռները բաց արաւ ներքինի թագաւորի առջեւ։ Հայոց հոգեւորականութիւնը հանդէսով դուրս եկաւ նրա առաջ եւ տարաւ Իբրահիմ-խանի պալատը։

Այդ հանդիսի ժամանակ Շահի մանկահասակ սենեկապետներից մէկի՝ որ կոչվում էր Սաֆար-Ալի-բէկ, ուշադրութիւնը գրաւեց սուրբ Աստուածածնի պատկերը, ոսկեզօծ շրջանակի մէջ, որ կրում էր իւր կրծքի վրայ մանուկ Յիսուսին։ Նա հարցրեց՝ ո՞ւմ պատկերն է այդ. երբ պատասխանեցին, մօտեցաւ եւ համբուրեց։ Նոյն րոպէում նրա աչքերում երեւեցան մի քանի կաթիլ ար-

տասուք. իսկ այդ մի քանի կաթիլները պատճառ եղան շատ արեան կաթիլների...։

Աղա-Մամադ-խանը մնաց Շուշի բերդում 25 օր։ Այդ ժամանակ կամեցաւ նա պատժել այն բոլոր հայ եւ թուրք աւագներին, որոնք իրան ընդդիմութիւն էին գործել Շուշի բերդի առաջին պաշարման ժամանակ եւ որոնք Իբրահիմ-խանի կուսակիցներ էին։ Դրանց թւումն էին՝ Մելիք-Ռուստամը, Մելիք-Միրզախանեան Մելիք-Ալահվերդին եւ մի քանի հայ հոգեւորականներ, իշխաններ եւ տանուտէրներ. ինչպէս նաեւ Իբրահիմ-խանի եղբօր որդի Մամադ-բէկը եւ մի քանի ուրիշ բէկեր։ Ամենքն էլ բանտարկուած էին։

Մի գիշեր, որի առաւօտը բանտարկեալներին պիտի դուրս բերէին հրապարակի վրայ գլխատելու համար, Շահի մօտ մտաւ մեր վերեւ յիշած սենեկապետը՝ պատանի Սաֆար-Ալի-բէկը։ Նա այնքան սիրելի էր Շահին, որ համարձակուեցաւ նրա ոտները համբուրելով աղաչել, որ ներումն շնորհէ այն դատապարտեալներին, որոնց միւս օրը պիտի գլխատէին։ Երբ Շահից մերժում ստացաւ, նա սկսեց խնդրել, որ գոնէ խնայէ հայերին...։ Վերջին խնդիրքը սաստիկ բորբոքեց Շահի բարկութիւնը եւ նա ասաց հետեւեալ խօսքերը. “Կարմիր արիւնով ցողելով ‚սեւ այգին„[1], ես նրան վարդի գոյն պիտի տամ...։ Առաւօտեան այն բոլոր դաւաճանների գլուխներից հրապարակի վրայ մի աշտարակ պիտի կազմել տամ, իսկ քո գլուխը, Սաֆար-Ալի-բէկ, աշտարակի գագաթի վրայ պիտի դնեմ„...։

Պատանին սարսափած դուրս եկաւ Շահի սենեակից։

---

[1] Ղարա-բաղ թուրքաց լեզուով նշանակում է սեւ այգի.

Նրան ծանոթ էր իւր թագաւորի խստասրտութիւնը. նա գիտէր՝ ինչ որ ասաց նա, անպատճառ կը կատարէ։ Ծագեցաւ մի չար խորհուրդ...։

Նոյն գիշերը պալատում անհետացաւ նա Շահի մի այլ անձնապահի հետ, որ իրան խիստ մտերիմ էր։ Այդ վերջինը կոչվում էր Արատ-բէկ։ Դեռ առաւօտեան լոյսը չբացուած, երկուսն էլ մտան Շահի քնարանը։ Արատ-բէկը այնքան սրտի արիութիւն չունենալով, երկիւղից ուշաթափ եղաւ և ընկաւ քնարանի յատակի վրայ։ Շահը խորին քնի մէջ էր. նրա թանկագին մահճի շուրջ կողմում, ոսկեայ աշտանակների վրայ, դեռ վառվում էին մոմերը։ Սաֆար-Ալի-բէկը մօտեցաւ և խենջարի մի քանի հարուածով վերջացրեց գործը...։

Առաւօտեան ամբողջ բերդի մէջ շշուկ տարածուեցաւ թէ Աղա-Մահմադ-խանը սպանուած է։ Բայց ոչ ոք չէր հաւատում, մինչև նոյն Սաֆար-Ալի-բէկը, թագաւորի կտրած գլուխը իւր ձեռքին բռնած, դուրս եկաւ պալատից և բերդից ու գլորեց հրապարակի վրայ։ Այդ միջոցին բերդի հայ և թուրք բնակիչները թափուեցան պալատի վրայ ու սկսեցին կողոպտել Շահի գանձերը։

Պարսից զօրքերն անմիջապէս թողեցին բերդը և փախան դէպի Պարսկաստան։ Սադըղ-խան շաղաղին, որ Աղա-Մահմադ-խանի նշանաւոր զօրապետներից էր, հազիւ կարողացաւ երկու արքայասպաններից մէկին միայն՝ Արատ-բէկին, կալանաւորել և իւր հետ տանել Պարսկաստան, իսկ Սաֆար-Ալի-բէկը թաքնուեցաւ։

Մեզ համար շատ պարզ չէ այդ արքայասպանի ինչ ազգից կամ ով լինելը. միայն մի ձեռագիր պատմութեան մէջ, որ գրուած է Ղարաբաղի վանքերից մէկում, կարդում ենք, որ Սաֆար-Ալի-բէկը ազգով հայ էր. մահ-

կութեան հասակում իբրեւ գերի տարուած էր Պարսկաստան եւ այնտեղ բռնի մահմեդականութիւն էին ընդունել տուել: Բայց Նրա սրտում դեռ բոլորովին չէին հանգած հայութեան եւ քրիստոնէական կրօնի կայծերը, որոնք իսկոյն բորբոքուել սկսան, երբ նա Շուշի բերդը մտնելու ժամանակ տեսաւ հայոց եկեղեցական հանդէսը եւ համբուրեց սուրբ Աստուածածնի պատկերը:[1] . . .:

Չնայելով, որ Աղա-Մամադ-խանի սպանման լուրը տարածուեցաւ ամեն տեղ, բայց Իբրահիմ-խանը տակաւին չէր համարձակվում Բալաքանից վերադառնալ Շուշի բերդը: Նրա բացակայութիւնից օգուտ քաղելով, բերդին սկսեց տիրել Իբրահիմ-խանի եղբօրորդի Մամադ-բէկը:

---

[1] Մեր ծանօթութեան մէջ հարկաւոր ենք համարում դնել մի քանի քաղուածքներ յիշեալ ձեռագիր պատմութիւնից. "Բայց նա (Աղա-Մամադ-խանը) զօրօքն եկն մտանել ի բերդաքաղաքն Շուշի, Հայք վասն երկիւղի ելին ընդ առաջ Նորա դասուք քահանայից, խաչիւ եւ խաչվառաւ եւ ամենայն վարդիւք: Իբրեւ ետես զխումբս հայոց մեծ բռնաւորն, զկայ առեալ անդ ի տեղի, եւ եհարց ի մերձակայ Նախարարաց իւրայնոց. Թէ արդեօք ո՞յք են դոքա, զի այսպէս հրաշափառ զգեստուք եւ զարդուք գան ընդ առաջ մեր: Եւ որք հմուտք էին եւ տեղեակք իրացն գործելոց, ետուն զարժանն պատասխանի. Թէ ի հայս կան հնական սովորութիւնք այսպիսիք, գնալ ընդ առաջ Թագաւորաց ի մեծարանս եւ ի պատիւ երեսաց Նոցա, առ ի շարժել ի գթածութիւն եւ ի խնամս վասն ողորմելի ազգին իւրեանց: Առ այս պատասխան սիրայօրդոր բանիւք մխիթարեաց եւ քաջալերեաց զազգս մեր տառապեալ, բայց վերին երեսօք. զի գաղեալ Նենգութիւնն ծրարեալ պահէր ծածկարար ի մտի իւրում:

"Մինչ խօսէր բռնաւորն ընդ ազգիս մերոյ իշխանաց, ընդ իւր ունելով պ ա տ ա ն ե ա կ մի մտերիմ, եւ ամենայն ինչ ի ձեռս Նորա էր. ի ձեռաց Նորա կերակրիւր: Պ ա տ ա ն ի ն էր յ ա զ գ է ս հ ա յ ո ց ի փոքուց գերեալ եւ տարեալ ընծայեալ էին Նմա: Ետես ի Նմին ժամու զպատկեր Տիրամօրն որ ունէր ի գիրկս զմանկացեալն Յիսուս, կարի իմն գեղեցկազարդ եւ ոսկեզօծ Նկարեալ: Եհարց պատանին Թէ պատկերս այս որո՞յ է. Նոքա չծանեան, զի անդ յիշեաց զտառապանս ազգի մերոյ" . . .:

Յետոյ մանրամասնաբար Նկարագրում է այն շարժառիթները, որ դրդեցին պատանուն սպանելու Թագաւորին:

Այդ Մամադ-բէկի առաջարկից հայոց Մելիք-Ռուստամին միանալ իւր հետ, հալածելու Իբրահիմ-խանին, պայման դնելով, որ Ղարաբաղի հայերի գլխաւորը ինքը՝ Մելիք-Ռուստամը կը լինի, իսկ թուրքերի գլխաւորը՝ Մամադ-բէկը։

Հայերն ըստ մեծի մասին տիրասէր են դէպի օտարները, իսկ անհաւատարիմ դէպի իրանց հարազատ ազգայինները. այդ իսկ պատճառով Մելիք-Ռուստամը մերժեց Մամադ-բէկի առաջարկութիւնը եւ չկամեցաւ անհաւատարիմ լինել Իբրահիմ-խանին, որ այնքան չարիքներ էր հասցրել Ղարաբաղի հայ ժողովրդին։

Մելիքը նամակով յայտնեց Իբրահիմ-խանին բոլոր անցքերը, խոստացաւ նրան իւր օգնութիւնը, փութացնելով, որ առանց ժամանակ կորցնելու վերադառնայ Բալաքանից եւ կրկին ձեռք առնէ Շուշի բերդի իշխանութիւնը։ Իբրահիմ-խանն ինքը չվստահացաւ գալ, այլ ուղարկեց իւր որդի Մէհտի-խանին։ Մելիք-Ռուստամը կէս ճանապարհի վրայ իւր ձիաւորների խմբերով հանդիպեց Մէհտի-խանին, եւ նրան գլխելով մտցնելով Շուշի բերդը, ուղղակի տարաւ նրա հօր պալատը, որի մէջ այդ ժամանակ բնակվում էր Մամադ-բէկը։

Մամադ-բէկն իրան արդէն բերդի տէրը համարելով, ընդունեց Մէհտի-խանին իբրեւ մի հիւր։ Բայց Մելիք-Ռուստամը՝ առանց ժամանակ կորցնելու հայերից պահապաններ դրեց նրա տան վրայ եւ կալանաւորեց Մամադ-բէկին։

Այդ միեւնոյն Մելիք-Ռուստամը՝ որ նոյն տարուայ մէջ Իբրահիմ-խանին առաջնորդելով, պաշարեց Գանձակի բերդը եւ Մելիք-Մէջլումին սպանել տուեց, — այժմ նոյն մարդը, Մամադ-բէկին կալանաւորելով եւ Իբրահիմ-

խանի որդուն պաշտպանելով, կրկին հաստատեց Ղարաբաղի բռնակալների իշխանութիւնը մի այնպիսի ճգնաժամի ժամանակ, երբ խիստ յարմար միջոցներ կային ոչնչացնելու նրանց...։

Երբ ամեն ինչ խաղաղացած էր Շուշի բերդում Իբրահիմ-խանը վերադարձաւ Բալաքանից։ Մամադ-բէկն այդ ժամանակ բանտից փախաւ, գնաց Շամախի Մուստաֆա-խանի մօտ։ Այնտեղից երկու աչքերը կուրացրած կրկին յետ բերին փախստականին։

Աւելորդ չէր լինի մի երկու խօսք ասել, թէ ինչ եղաւ արքայասպան Սաֆար-Ալի-բէկը։

Աղա-Մամադ-խանի սպանումից յետոյ պարսից գահը ժառանգեց Փաթալի-շահը։

Իբրահիմ-խանը ցոյց տալու համար, թէ սպանութիւնը կատարուել է ոչ միայն առանց իր կամքի, այլեւ հակառակ իր կամքի, վատութեամբ կալանաւորեց նրան եւ ուղարկեց Պարսկաստան։ Այստեղ մէջ ենք բերում աշխարհաբար թարգմանութիւնը այն տողերի, որ քաղում ենք վերյիշեալ անտիպ պատմութիւնից.

“Բռնելով ողորմելի պատանու ձեռքից, տուեցին մարդախանձ եւ գիշատիչ գազանների ձեռքը։ Այդ կատաղիները կանչեցին նոյն ժամում մի պայտառ[1] արհեստաւոր. պատուիրեցին նրան կտրել եւ շինել մի նոր օրինակով պայտ, որ վշտակիր պատանու ոտների չափին համեմատ լինէր։ Նա փութաց անմիջապէս կատարելու նրանց պատուէրը։ Յետոյ նրա ոտները մերկացնելով, եւ ամեն կողմից երկաթէ կապանքներով պնդացնելով, դրեցին մահացու պայտերը նրա ոտների տակ եւ սրածայր մեխերով գամեցին։ Առուակի նման վազում էր հորդա-

[1] Պայտառ նշ. պայտ — նալ շինող։

Բայց ինչ որ ճշմարիտ է, այն է, որ այդ սենեկապետը առանձին համակրութիւն ունէր դէպի հայերը· նա Մելիք-Մէջլումի լաւ բարեկամն էր, եւ մելիքը նրա միջնորդութեամբն էր ազդում Աղա-Մամադ-շահի վրայ:

## XXXV.

Մենք համարեա մոռացութեան տուեցինք, թէ ինչ եղաւ Տիզակի իշխան Մելիք-Աւանեան Մելիք-Բախտամը, որ իբրեւ քաղաքական յանցաւոր աքսորուած էր Պարսկաստանի Արդաւիլ բերդում (տե՛ս գլ. XXI):

Այն օրից անցել էր ամբողջ տասն տարի, այդ հերոսը դեռ մաշվում էր հեռաւոր բանտարկութեան մէջ:

Երբ Աղա-Մամադ-խանը վերջին անգամ արշաւանք գործեց դէպի Ղարաբաղի կողմերը եւ Շուշի բերդում սպանուեցաւ (1797), նա գալու ժամանակ անցաւ Արդաւիլի բերդաքաղաքով: Այստեղ գտնվում է այն երեւելի մզկիթը, որի մէջ զետեղուած են Շէյխ-Սէֆիի եւ միւս Սէֆեվի թագաւորների շիրիմները: Պարսից նոր թագաւորների սովորութեան համեմատ, Աղա-Մամադ-խանը, որպէս ուխտաւոր, այցելութիւն գործեց արքաների գերեզմաններին: Այդ ծէսը կատարելուց յետոյ, նա պէտք է այցելութիւն անէր բերդի բանտարկեալներին՝ նաեւ ում որ արժան էր ներումն շնորհելու համար:

Այդ բերդում պահվում էին նշանաւոր քաղաքական յանցաւորները միայն: Աղա-Մամադ-խանը նրանց շատերին ներումն շնորհեց, որոնց թւում եւ Մելիք-Բախտամին, մանաւանդ երբ իմացաւ, որ նա Մելիք-Աւանխանի թոռն է, որի նախնիքը Պարսկաստանին մեծ ծառայութիւններ են արել:

հասկանալի է, որ աւելի կը սաստկացնէր Իբրահիմ-խանի երկիւղը Ցիզակի տիրապետողներից, եւ այդ պատճառով Մելիք-Բախտամին տմարդութեամբ ոչնչացնելուց յետոյ, սկսեց նա որոգայթներ լարել նրա ժառանգների համար։

Մելիք-Բախտամին յաջորդեց նրա որդին՝ Մելիք-Արասը։

Մեր ձեռքում գտնուած մի ձեռագիր պատմութիւնից քաղում ենք հետեւեալը Մելիք-Արասի յատկանիշների մասին.

"Նրանց (Մելիք-Աւանեանների) ազգի եւ սերունդների մէջ տակաւին չէր ծնուած, արդարեւ, մի այնպիսի տղամարդ պարթեւական, հսկայազօր կերպարանքով եւ ահագնակերպ հասակով։ Իւր քաջագործութիւններով սկսեց հետզհետէ նուաճել նա ոչ միայն իւր բոլոր հայրենիքը, այլեւ մահմեդականների ազգը։ Այդ պատճառով, տարածուելով սփռուեցաւ նրա քաջութեան եւ անաչառ դատաստանների համբաւը, որով պատժում էր յանցաւորներին եւ վնասակար անձինքներին։ Առանց արծաթասիրութեան եւ կաշառքի էր կատարում նա իւր դատավճիռները. մահապարտներին պատժում էր առանց խնայելու. շատերին կախում էր մեծ ճանապարհների վրայ կախաղաններից եւ շատերին տալիս էր իւր ծառաների ձեռքը, որ սրախողխող անեն հասարակութեան եւ աւազակ մարդկանց աչքի առջեւ, որպէս զի ոչ ոք այնուհետեւ չվստահանայ նոյն չարութիւնները գործելու։ Արդարեւ, սարսափելով դողում էր ամբողջ գաւառը նրանից։ Նրա քաջագործութիւնների համբաւը շատ վաղ հասել էր մեծ բռնաւորի (Իբրահիմ-խանի) ականջին...։ Բայց նա իւր սրտի ոխը ծածկած ունէր, չէր կամենում յանկարծ յայտնել մեր նախարարին (Մելիք-Արասին), որով-

հետեւ նրա նպատակն այն էր, որ դարձնէր նրան հայկական դաւանութիւնից մահմեդական դէնին....։

Աւելորդ երկար խօսել է այն միջոցների մասին, որ Իբրահիմ-խանը գործ դրեց իշխանի հաւատքը խախտելու համար։

Իբրահիմ-խանը, արդարեւ, այժմ փոխել էր իւր քաղաքականութեան եղանակը հայոց մելիքների վերաբերութեամբ։ Նա տեսնում էր, որ դաւաճանութիւնը, սպանութիւնը, թոյնը եւ այլ որոգայթները նրանց կեանքի դէմ, չեն հասցնում իւր ցանկացած նպատակին։ Սպանուած հօր փոխարէն իշխում էր որդին, կամ նրա ժառանգներից մէկը։ Վերջ ի վերջոյ համոզուեցաւ, որ փոխանակ թոյնի, աւելի լաւ էր նրանց ընդունել տալ մահմեդական կրօնը։ Կրօնը փոխելով՝ նրանք աւելի հեշտութեամբ կը ոչնչանային եւ կը խառնուէին թուրքերի հետ։

Առաջին փորձը կատարեց նա Մելիք-Աբովի վրայ, բայց նրա բոլոր խորամանկութիւնները փշրուեցան առաքինի իշխանի հաստատամտութեան առջեւ։ Իբրահիմ-խանը մինչեւ անգամ աշխատեց հրապուրել նրան իւր աղջիկների գեղեցկութեամբ. բայց երբ նկատեց, որ նրա հաւատքը խախտելու հնար չկայ, կրկին ձեռք առաւ սպանութեան հնարները....։

Մի անգամ Մելիք-Աբովն անձամբ գնացել էր Ցոր գիւղը մի քրէական գործ քննելու համար. գիշերն ստիպուեցաւ այնտեղ մնալ եւ հիւրասիրուեցաւ տեղային աւագ քահանայի տանը։ Գիշերը նոյն տան վրայ յարձակուեցան մի խումբ ձիաւորներ, որ պատրաստուած էր Իբրահիմ-խանից։ Նրանք գտան մելիքին քնած եւ անպատրաստ վիճակի մէջ։ Սրերի տակ կտրատեցին նրան։

Սպանուածի մարմինը բերուեցաւ իր Տող բերդը։ Նոյն ժամում, երբ եկեղեցու մէջ պատարագ էր մատուցվում եւ պատրաստվում էին թաղման հանդէսը կատարելու, Իբրահիմ-խանի հրամանով կատարուեցաւ մի այլ չարագործութիւն։ Յանկարծ եկեղեցի ներս մտան խանի զինուած մարդիկը եւ աշխատում էին յափշտակել հանգուցեալի մարմինը, ասելով, թէ նա կենդանութեան ժամանակ խոստովանուել էր մահմեդական կրօնը, ուստի իրաւունք չէ նրան քրիստոնէական ծէսով թաղելու։ Զայրացած ժողովուրդը մի կողմից, հանգուցեալի բարեկամները միւս կողմից, յարձակուեցան խանի մարդկանց վրայ, նրանցից շատերին կոտորեցին, ջարդեցին. տեղի ունեցան բաւական մեծ թւով սպանութիւններ։ Խանի մնացած մարդիկը փախչելով, իրանց ջարդուելու մասին լուր տարան Շուշի բերդը։ Այս անգամ զայրացած խանը զօրքեր ուղարկեց։ Բայց մինչեւ զօրքերի հասնելը թաղման խորհուրդը կատարուած էր։

Նրանք կամեցան գերեզմանից դուրս հանել հանգուցեալի մարմինը։ Այդ յանդգնութիւնը պատճառ տուեց մի աւելի սարսափելի կռուի հայերի եւ թուրքերի մէջ։ Բայց որովհետեւ հայերն անպատրաստ էին եւ չէին սպասում մինչեւ այս աստիճան բռնութիւն խանի կողմից. այս պատճառով յաղթուեցան։ Հանգուցեալի մարմինը դուրս հանեցին իր տոհմային գերեզմանատնից[1] եւ տարան մահմեդականների գերեզմանատան մէջ թաղեցին։

Ի՞նչ նպատակ կար այդ բարբարոսութեան մէջ։ — Այն, որ յետոյ Իբրահիմ-խանն առիթ ունենայ ասելու հանգուցեալի ժառանգներին, թէ ձեր հայրը մահմեդա-

[1] Մելիք-Աւանեանների տոհմային գերեզմանատունը գտնվում է Տող բերդի եկեղեցու գաւթում։

կան էր և մահմեդականութեան մեջ մեռաւ, դուք ևս պէտք է ընդունէք նոյն կրօնը։ Այդպէս էլ եղաւ։ Այնուհետև խանը, կալանաւորելով Մելիք-Աւանեանների արդէն բաւական ուժից ընկած ժառանգներին, սկսեց բացարձակ կերպով կրօնական հալածանքի ենթարկել նրանց։

Այդ միջոցներին Ղարաբաղում սովը և ժանտախտը սարսափելի կոտորածներ էին անում։ Գիւղերը հետզհետէ դատարկվում էին. Ժողովուրդը գաղթում էր։ Այդ ժամանակն էր, որ հանդուցեալ Մելիք-Աբասի որդի Մելիք-Ղահրամանը (որ և կոչվում էր Բաղր-բէկ) Տիզակի ժողովրդի մի մասը իւր հետ առնելով գաղթեց դէպի Վրաստան։

Մելիք-Աւանեան Բաղդադ-բէկը (Մելիք-Եսայու որդին)[1] մնաց Իբրահիմ-խանի բանտում։ Երկար չարչարանքներ կրելուց յետոյ, ստիպուեցաւ նա իւր երկու որդիների հետ, որոնք կոչվում էին Ասլան և Վահան, ընդունել մահմեդականութիւն։ Դրանց իշխանութիւնը կարճատև եղաւ, որովհետև Բաղդադ-բէկը մի հակառակութեան համար խեղդամահ եղաւ նոյն Իբրահիմ-խանի ձեռքով։ Իսկ նրա որդի Ասլանը, կամենալով կրկին վերադառնալ դէպի քրիստոնէական կրօնը, նոյն խանի մահադեղով սպանուեցաւ։ Վահանի վախճանը մեզ յայտնի չէ։

Եւ այսպէս՝ Մելիք-Աւանեանների՝ Տիզակի հզօր տիրապետողների, համարեա ամբողջ սերունդը կամ մահադեղով կամ սպանութիւնով ոչնչացաւ Իբրահիմ-խանի ձեռքով։ Եւ չմոռանանք, որ այդ նշանաւոր տոհմի առաջին ներկայացուցիչն էր այն մեծ մարդը, որ Պետրոս Մեծի հետ թղթակցութիւններ ունէր, որ փառաւոր ընդունելութիւն գտաւ Աննա Իվանովնա և Ելիզաւետա

[1] X, XI և հետևեալ գլուխներում։

Պետրովնա կայսրուհիների պալատում, որ ռուսաց կառավարութիւնից ստացաւ գեներալի աստիճան, իսկ Նադիր-Շահից — խանութեան աստիճան: Դա գեներալ Մելիք-Աւան-խանն էր, որի կատարած մեծագործութիւնների հետ ծանօթացանք մեր պատմութեան սկզբի գլուխներում:

Մելիք-Աւանեանների տոհմի վերջին ներկայացուցիչների մի ճիւղը մահմեդական դարձաւ, միւսը մնաց քրիստոնեայ: Նրանց ընդարձակ կալուածներին, Շուշի բերդի խաների օգնութեամբ, տիրեցին մահմեդական ժառանգները, իսկ քրիստոնեայ մնացածները զրկուեցան ժառանգութիւնից[1]: Այդ տոհմի մի այլ ճիւղը, որպէս էին՝ իշխան Մելիքովները, իշխան-Սումբատովները, Հայրապետեանները, Ռուսաստանում մեծ-մեծ պաշտօնների մէջ մտան, փայլեցին, իսկ թէ յետոյ ինչ եղան, մեզ յայտնի չէ:

## XXXVI.

*Սովը, ժանտախտը եւ Ղարաբաղի գաղթականութիւնը:*

1795 թուից մինչեւ 1798 թուի սկիզբը պարբերաբար կատարուեցան մի քանի՝ մինը միւսից աւելի կորստաբեր, աւելի փոթորկալի արշաւանքներ: Ղարաբաղը եւ նրա շրջակայ գաւառներն անընդհատ պատերազմների, ասպատակութեան եւ արեան ասպարէզ դարձան: Աղա-

---

[1] Տող բերդում, Մելիք-Աւան-խանի պալատում այժմ բնակւում է մի Փարհադ-բէկ անունով թուրք ազնուական, որ պարծանքով յիշում է, թէ ինքը Մելիք Աւանեանների նշանաւոր տոհմի ժառանգներիցն է: Եւ իրաւ, նա Բաղդադ-բէկի թոռը եւ Մելիք Ասլանի որդին է. իսկ Մելիք-Աւանեանների քրիստոնեայ մնացած ժառանգները այժմ թշուառ աղքատութեան մէջ բնակւում են նոյն Տող բերդում, թէեւ ազնուականներ են համարւում:

Մամադ-խանի առաջին արշաւանքից յետոյ տեղի ունեցաւ կոմս Զուբովի արշաւանքը, յետոյ Գանձակի պաշարումը, յետոյ Աղա-Մամադ-խանի երկրորդ արշաւանքը: Այդ արիւնահեղ կռիւների ժամանակ, որ տեւեցին ամբողջ երեք տարի, շինականների կեանքն այն աստիճան անապահով դրութեան մէջ էր, որ չկարողացան ո՛չ իւր ժամանակին ցանել եւ ոչ իւր ժամանակին հնձել: Եւ երբ տեղի ունեցաւ 1797 թուի սարսափելի երաշտութիւնը, որ ցամաքացրեց բոլոր բուսականութիւնը, այդ ժամանակ եղած ցանքերն էլ իսպառ ոչնչացան:

Կարծես, ինքը բնութիւնը միաբանուել էր մարդկային գազանութիւնների հետ Ղարաբաղը բոլորովին ամայի եւ անապատ դարձնելու համար: Մարդիկ սպառեցին բոլորը, ինչ որ կարելի էր ուտել, յետոյ անասունների նման սկսեցին կերակրուել խոտերով եւ արմատներով: Դա այն զարհուրելի սովերից մէկն էր, որոնց սարսափելի նկարագրութիւնները մեծ տեղ են բռնում Հայաստանի պատմութեան մէջ, Լանկ-Թէմուրների եւ այլ այսպիսի մարդկային հրէշների կատաղի արշաւանքներից յետոյ:

Անկարգ, անսովոր սնունդի պատճառով երկիրները ծածկուեցան դիակներով: Սովից յետոյ տեղի ունեցաւ 1798 թուի ժանտախտը, որ լրացրեց ժողովրդի դժբախտութեան պակասը:

Վաթսուն հազար տուն հայ բնակիչ ունեցող Ղարաբաղը համարեա թէ դատարկուեցաւ: Այդ ժամանակ տեղի ունեցաւ Սիւնեաց աշխարհի մեծ գաղթականութիւնը: Սարսափած ժողովուրդն սկսեց ցրիւ գալ, սկսեց թողնել հայրենիքը եւ հեռանալ դէպի Տաճկաստան, դէպի Պարսկաստան, դէպի Ռուսաստան եւ դէպի Վրաստան:

Թէ ինչ եղան Տաճկաստան, Պարսկաստան եւ Ռուսաստան գաղթողները, մենք նրանց մասին խիստ փոքր տեղեկութիւններ ունինք, բացի դրանից մեր պատմութեան նպատակից դուրս է նրանց վրայ խօսելը. միայն կը խօսենք Վրաստանի գաղթականների մասին։

Ղարաբաղի հայոց գաղթականութիւնը գլխաւոր պատճառը դարձաւ Ղարաբաղի հայկական իշխանութիւնների կործանման։ Փանահ-խանը, Իբրահիմ-խանը եւ այլ դրանց նմաններն այնքան չվնասեցին հայոց մելիքութիւններին, որքան վնասեցին իրանք մելիքները, երբ թողնելով հայրենի հողը, սկսեցին իրանց ժողովրդի հետ օտար հողի վրայ ապահովութիւն որոնել։ Կտրուելով հայրենի աշխարհից, նրանք զրկուեցան ամեն բանից....։

Թէեւ Ղարաբաղի մելիքներն այն նախատեսութիւնն ունէին, որ ամեն անգամ եւ հայրենիքում կեանքն անտանելի էր դառնում եւ ստիպուած էին լինում գաղթել մի օտար երկիր, նրանք միշտ պահանջել են թէ իրանց եւ թէ իրանց ժողովրդի համար առանձին արտօնութիւններ։ Բայց այդ արտօնական կացութիւնը մի օտար հողի վրայ չէր կարող կատարելապէս լրացնել այն կորուստը, որ նրանք պիտի կրէին հայրենիքը թողնելով։

1798 թուի յունուար ամսում վախճանուեցաւ վրաց Հերակլ իշխանը. նրան յաջորդեց որդին՝ Գիօրգի ԺԲ-րդը։

Հերակլ մահից յետոյ իշխանական ընտանիքի թէ՛ տղամարդկանց եւ թէ կանանց մէջ ծագեցան անհաշտ կռիւներ եւ անվերջանելի երկպառակութիւններ։ Ռուսաստանի Ցովլաէփ արքեպիսկոպոսը, որ վրաց իշխանական գերդաստանի մտերիմ բարեկամներից մէկն էր, շատ աշխատեց միաբանութիւնն ու խաղաղութիւնը նրանց մէջ

վերականգնելու համար, բայց նրա բոլոր ջանքերը ցանկալի արդիւնքը չունեցան։ Արքեպիսկոպոսն այդ երկպառակութիւնները վնասակար էր համարում Վրաստանի համար։

1797 եւ 1798 թուականներին, այսինքն սովի եւ ժանտախտի ամենասաստիկ ժամանակներում, Վրաստանում խմբուեցաւ Ղարաբաղի հայերի ահագին բազմութիւն։ Հայերի եւ վրացիների այդ միախմբումը Յովսէփ արքեպիսկոպոսն աւելի նպաստաւոր էր համարում իւր նպատակների իրագործմանը։ Բայց այդ բոլորը շատ ուշ էր արդէն։ Եթէ յարգելի արքեպիսկոպոսը իւր անչափ եռանդի եւ հայրենասիրութեան հետ փոքր ինչ լուրջ քաղաքագիտութիւն եւս ունենար, կարելի է այն սխալանքների մէջ չընկնէր, որոնց հանդիպեց նա իւր ամբողջ քաղաքական գործունէութեան ասպարիզում։ Նա սաստիկ շուտ յափշտակուող եւ հեշտ խաբուող մարդ էր...։

Եկատերինա Բ-ի վախճանուելուց եւ Պօղոս Ա կայսրի գահակալութիւնից յետոյ ռուսաց կառավարութեան քաղաքական հայեացքը Անդրկովկասի քրիստոնեաների վերաբերութեամբ բոլորովին փոխուեցաւ։ Այժմ ոչ ոք չէր մտածում իրագործելու Պետրոս Մեծի եւ Եկատերինա Բ-ի ունեցած նպատակները արեւելքի քրիստոնեաների մասին։ Այժմ Վրաստանը ուրիշ ոչինչ չէր, եթէ ոչ մի ռուսական նահանգ։

Այդ էր պատճառը, որ երբ Ղարաբաղի հայոց երկու իշխանները՝ Մելիք-Շահնազարեան Մելիք-Ջումշուդը եւ Մելիք-Բէգլարեան Մելիք-Ֆրէյդունը, կամեցան Վրաստանում հաստատ գաղթարաններ հիմնել, նրանք վշտացած Հերակլ իշխանի եւ նրա յաջորդ Գիօրգիի վարմունքից, այլեւս չկամեցան վերջինի հետ բանակցութիւններ

ունենալ, այլ ուղղակի դիմեցին Ս. Պետերբուրգ Պօղոս Ա կայսրին:

Վրաստան գաղթած Ղարաբաղի հայերն սկզբում խիստ անմարդասիրաբար ընդունուեցան վրացիների կողմից: Սովից տանջուած, աղքատ եկան նրանք այդ երկիրը. շատերը վրացիների դռներն ընկած մուրացկանութիւն էին անում: Վրաց իշխաններն ստիպում էին նրանց որ ճորտ գրուեն, որպէս զի փոխարէնը կերակրեն նրանց: Ողորմելիները մի կտոր հացի համար վաճառում էին իրանց զաւակներին եւ ստրկութեան էին մատնում[1]: Վրաց ազնուականների այդ անողորմ վարմունքն էր գլխաւոր պատճառը, որ ստիպեց հայոց մելիքներին Ս. Պետերբուրգ դիմել:

Հայոց մելիքներն իրանց հպատակների հետ[2] գաղթել էին մի երկիր, ուր այդ ժամանակ տիրում էր ճորտութիւնը: Բայց հայ ժողովուրդը սովորած չէր ճորտութեան: Թէ Հայաստանի անկախութեան ժամանակ, թէ պարսից եւ թէ օսմանցիների տիրապետութեան ժամանակներում հայ գիւղացին վայելում էր կատարեալ ազատութիւն: Մելիքները ցանկանում էին, որ իրանց ժողովուրդը պահպանէր իւր վաղեմի ազատութիւնը, իսկ իրանք վայելէին նոյն իրաւունքները, որ միշտ ունեցել են իրանց հպատակների վերաբերութեամբ: Նրանք պահան-

---

1 Վրաստանում մինչեւ վերջին ժամանակները գտնուած հայ ճորտերի մեծ մասն այս տեսակ հանգամանքների զոհ պէտք է համարել:

2 Վրաստան գաղթեցին գլխաւորապէս Գիւլիստան եւ Վարանդա գաւառների ժողովուրդը, այսինքն Մելիք-Բէգլարեանների եւ Մելիք-Շահնազարեանների հպատակները: Մելիք-Մէջլումի (որ արդէն մեռած էր) հպատակները մնացին Գանձակի գաւառում Ջաւադ-խանի հովանաւորութեան ներքոյ: Իսկ Խաչէնի եւ Ցիզակի ժողովուրդը մասամբ մնացին իրանց տեղերում, մասամբ գաղթեցին ուրիշ երկրներ եւ մասամբ եկան Վրաստան եւ խառնուեցան վերոյիշեալ երկու մելիքների ժողովրդի հետ:

ջում էին, որ Վրաստանի սահմաններում, որ այդ ժամանակ գտնվում էր ռուսաց հովանաւորութեան ներքոյ, տային իրանց ազատ հողեր, որպէս մշտական սեփականութիւն, եւ այդ հողերի վրայ նրանք հիմնէին իրանց գաղթարանները, եւ բնակուէին իրանց վաղեմի օրէնքներով ու սովորութիւններով։

Այդ նպատակներով Մելիք-Բէգլարեան Մելիք-Փրէյդունը[1] եւ Մելիք-Շահնազարեան Մելիք-Ջումշուդը գնացին Ս. Պետերբուրգ[2] անձամբ աղերսամատոյց լինելու կայսրին իրանց պահանջների մասին։

Մելիքները Ս. Պետերբուրգում արժանաւոր ընդունելութիւն գտան։ Պօղոս Ա կայսրի 1799 թ. 2 յունիսի բարձրագոյն հրովարտակով հրամայուեցաւ տալ մելիքներին Ղազախի գաւառը բնակութեան համար, եւ պահպանել իրանց հպատակների վերաբերութեամբ միեւնոյն իրաւունքները, որ նրանք վայելում էին իրանց հայրենիքում։ Այդ հրովարտակը գրուեցաւ Վարանդայի իշխան

---

[1] Մելիք-Փրէյդունը Մելիք-Աբովի եղբօր՝ Մելիք-Բէգլար Բ-ի որդին էր (տես գլ. XVI)։

[2] Մելիքների շքախմբի մէջ գտնվում էր եւ պատանի Ռոստոմը, որը Մելիք-Շահնազարի ջորեպանի որդին էր։ Նրա հօրը կոչում էին Մեհրաբենց Գիւքի։ Դեռ 14 տարեկան հասակում Ռոստոմը Ղարաբաղից փախչելով գնաց Հաշտարխան, այնտեղ մի "պօլկօվոյ մարկիտանտի„ մօտ աշակերտ դարձաւ։ Այդ պարապմունքը միջոց տուեց նրան սովորելու ռուսաց լեզուն։ Երբ մելիքները Հաշտարխանից անցնում էին Ս. Պետերբուրգ գնալու, պատանի Ռոստոմը խառնուեցաւ նրանց շքախմբի հետ, որ բաւական բազմաթիւ էր։ Նրան վեր առան, մտածելով թէ ճանապարհին հարկաւոր կը լինի, որպէս ռուսաց լեզուի թարգման։ Ս. Պետերբուրգն այն աստիճան գրաւեց պատանի Ռոստոմին, որ նա այլեւս վերադառնալ չցանկացաւ։ Մելիք-Ջումշուդը իւր հօր ջորեպանի որդուն ազնուականութեան թուղթ շնորհեց եւ նրա խնդրելով պատանի Ռոստոմը մտաւ զինուորական դպրոց։ Ահա այդ պատանին էր, որ վերջը դարձաւ հռչակաւոր իշխան գեներալ Մադաթովը, որ այնքան նշանաւոր գործեր կատարեց ռուսաց՝ տաճկական, ֆրանսիական եւ պարսկական արշաւանքների ժամանակ։

ունենալ, այլ ուղղակի դիմեցին Ս. Պետերբուրգ Պօղոս Ա կայսրին։

Վրաստան գաղթած Ղարաբաղի հայերն սկզբում խիստ անմարդասիրաբար ընդունուեցան վրացիների կողմից։ Սովից տանջուած, աղքատ եկան նրանք այդ երկիրը. շատերը վրացիների դռներն ընկած մուրացկանութիւն էին անում։ Վրաց իշխաններն ստիպում էին նրանց որ ճորտ գրուեն, որպէս զի փոխարէնը կերակրեն նրանց։ Ողորմելիները մի կտոր հացի համար վաճառում էին իրանց զաւակներին եւ ստրկութեան էին մատնում[1]։ Վրաց ազնուականների այդ անողորմ վարմունքն էր գըլխաւոր պատճառը, որ ստիպեց հայոց մելիքներին Ս. Պետերբուրգ դիմել։

Հայոց մելիքներն իրանց հպատակների հետ[2] գաղթել էին մի երկիր, ուր այդ ժամանակ տիրում էր ճորտութիւնը։ Բայց հայ ժողովուրդը սովորած չէր ճորտութեան։ Թէ Հայաստանի անկախութեան ժամանակ, թէ պարսից եւ թէ օսմանցիների տիրապետութեան ժամանակներում հայ գիւղացին վայելում էր կատարեալ ազատութիւն։ Մելիքները ցանկանում էին, որ իրանց ժողովուրդը պահպանէր իւր վաղեմի ազատութիւնը, իսկ իրանք վայելէին նոյն իրաւունքները, որ միշտ ունեցել են իրանց հպատակների վերաբերութեամբ։ Նրանք պահան-

[1] Վրաստանում մինչեւ վերջին ժամանակները գտնուած հայ ճորտերի մեծ մասն այս տեսակ հանգամանքների զոհ պէտք է համարել։

[2] Վրաստան գաղթեցին գլխաւորապէս Գիւլիստան եւ Վարանդա գաւառների ժողովուրդը, այսինքն Մելիք-Բէգլարեանների եւ Մելիք-Շահնազարեանների հպատակները։ Մելիք-Մէջլումի (որ արդէն մեռած էր) հպատակները մնացին Գանձակի գաւառում Ջաւադ-խանի հովանաւորութեան ներքոյ։ Իսկ Խաչէնի եւ Ջրաբերդի ժողովուրդը մասամբ մնացին իրանց տեղերում, մասամբ գաղթեցին ուրիշ երկրներ եւ մասամբ եկան Վրաստան եւ խառնուեցան վերոյիշեալ երկու մելիքների ժողովրդի հետ։

ջում էին, որ Վրաստանի սահմաններում, որ այդ ժամանակ գտնվում էր ռուսաց հովանաւորութեան ներքոյ, տային իրանց ազատ հողեր, որպէս մշտական սեփականութիւն, և այդ հողերի վրայ նրանք հիմնէին իրանց գաղթարանները, և բնակուէին իրանց վաղեմի օրէնքներով ու սովորութիւններով։

Այդ նպատակներով Մելիք-Բէգլարեան Մելիք-Ֆրէյդունը[1] և Մելիք-Շահնազարեան Մելիք-Ջումշուդը գնացին Ս. Պետերբուրգ[2] անձամբ աղերսամատոյց լինելու կայսրին իրանց պահանջների մասին։

Մելիքները Ս. Պետերբուրգում արժանաւոր ընդունելութիւն գտան։ Պօղոս Ա կայսրի 1799 թ. 2 յունիսի բարձրագոյն հրովարտակով հրամայուեցաւ տալ մելիքներին Ղազախի գաւառը բնակութեան համար, և պահպանել իրանց հպատակների վերաբերութեամբ միևնոյն իրաւունքները, որ նրանք վայելում էին իրանց հայրենիքում։ Այդ հրովարտակը դրուեցաւ Վարանդայի իշխան

[1] Մելիք-Ֆրէյդունը Մելիք-Աբովի եղբօր՝ Մելիք-Բէգլար Բ-ի որդին էր (տես գլ. XVI)։

[2] Մելիքների շքախմբի մէջ գտնվում էր և պատանի Ռոստոմը, որը Մելիք-Շահնազարի ջորեպանի որդին էր։ Նրա հօրը կոչում էին Մեհրաբենց Գիւքի։ Դեռ 14 տարեկան հասակում Ռոստոմը Ղարաբաղից փախչելով գնաց Հաշտարխան, այնտեղ մի "պօլկովոյ մարկիտանտի" մօտ աշակերտ դարձաւ։ Այդ պարապմունքը միջոց տուեց նրան սովորելու ռուսաց լեզուն։ Երբ մելիքները Հաշտարխանից անցնում էին Ս. Պետերբուրգ գնալու, պատանի Ռոստոմը խառնուեցաւ նրանց շքախմբի հետ, որ բաւական բազմաթիւ էր։ Նրան վեր առան, մտածելով թէ ճանապարհին հարկաւոր կը լինի, որպէս ռուսաց լեզուի թարգման։ Ս. Պետերբուրգն այն աստիճան գրաւեց պատանի Ռոստոմին, որ նա այլեւս վերադառնալ չցանկացաւ։ Մելիք-Ջումշուդը իւր հօր ջորեպանի որդուն ազնուականութեան թուղթ շնորհեց և նրա խնդրելով պատանի Ռոստոմը մտաւ զինուորական դպրոց։ Ահա այդ պատանին էր, որ վերջը դարձաւ հռչակաւոր իշխան գեներալ Մադաթովը, որ այնքան նշանաւոր գործեր կատարեց ռուսաց՝ տաճկական, ֆրանսիական և պարսկական արշաւանքների ժամանակ։

Մելիք-Ջումշուդ Մելիք-Շահնազարեանի եւ Գիւլիստանի իշխան Մելիք-Փրէյդուն Մելիք-Բէգլարեանի անունով։ Նոյն մելիքներին շնորհուեցան գերազանցութեան մեդալներ եւ նշանակուեցաւ մշտական թոշակ. Մելիք-Ջումշուդի համար տարեկան 1400 ռ., նրա որդու համար 600 ռ., իսկ Մելիք-Փրէյդունի համար 1000 ռ.։

Յիշեալ բարձրագոյն հրովարտակի մտքի համեմատ կայսրը նոյն թուով առանձին հրովարտակ ուղղեց վրաց իշխան Գիօրգիին. բացի դրանից նոյն թուի ապրիլի 16ից առանձին բարձրագոյն հրահանգով հրամայուեցաւ ստատսկի սովետնիկ Կովալենսկուն (որ այդ ժամանակ նշանակուած էր Վրաստանի մինիստր) հետեւեալը.

«Հայոց մելիքները՝ Ջումշուդ եւ Փրէյդուն, որոնք գտնվում են այստեղ (Ս. Պետերբուրգ) եւ միւսները, որոնք մնացել են Վրաստանում եւ Պարսկաստանում (Ղարաբաղում) իրանց այլ հայրենակիցների հետ, դիմեցին Նորին Կայսերական Մեծութեան հովանաւորութեան ներքոյ եւ ստացան ամենաողորմած թոյլտուութիւն բնակուելու Վրաստանում այն պայմանով, որ թագաւորը (վրաց Գիօրգի ԺԲ) պէտք է տայ նրանց հողեր բնակութեան համար թէ՛ իրանց հպատակների հետ եւ թէ Պարսկաստանի այն բնակիչների հետ, որոնք կարող կը լինին հետ դուրս գալ այնտեղից։ Թագաւոր Կայսրը ցանկանալով, որ մի այսպիսի քրիստոնեայ ժողովուրդ, որքան կարելի է, ծաղկէր Վրաստանում հէնց նոյն իսկ երկրի օգուտների համար, — դուք (Կովալենսկին) պէտք է աշխատէք, որ թագաւորը (Գիօրգին) հողերի այնպիսի զիջումներ անէր, որ մելիքների համար ամենաշահաւէտ պայմաններով լինէր. եւ որովհետեւ մի այսպիսի հասարակութիւն չէ կարող բնակութեան հաստատ հիմք ունենալ եւ ընդարձակել

իւր յառաջադիմութիւնը, մինչեւ որ պահպանուած չլինէին նրա սովորութիւնները եւ կառավարութեան ձեւերը, որոնք հին ժամանակներից յատուկ են եղել նրան, այդ պատճառով եւ ցանկալի կը լինէր, որ նա (հայոց հասարակութիւնը) ոչ այլ տեսակ կախումն ունենար Պարսկաստանից, բայց միայն վասալների տեսակով, վճարելով այնուամենայնիւ թեթեւ հարկ թագաւորին, եւ բաժանելով նրա հետ այն ամենը, ինչ որ հարկաւոր կը լինի թէ ծախսերի վերաբերութեամբ եւ թէ մարդկանց գործակցութեամբ երկրի պաշտպանութեան դէպքերում»։

Պարսկաստանն այդ ժամանակ այն սաստիկ խռովեալ դրութեան մէջ էր, որ իշխան Գիորգին խիստ նպաստաւոր համարեց հայոց մելիքների եւ նրանց հպատակների ահագին բազմութեամբ վրաց հողի վրայ բնակութիւն հաստատել։ Մելիքները կարող էին նրան օգտաւոր դաշնակիցներ լինել։ Կովկասեան լեռնաբնակների յարձակումները մի կողմից, վրաց իշխանական գերդաստանի անդամների երկպառակութիւնները միւս կողմից, երկիրն անդադար ալէկոծութեան մէջ էին պահում։ Գիորգիի եղբայրները, նրա ազգականները ամէն օր նորանոր խռովութիւններ էին յարուցանում։ Եղբայրներից մէկը՝ իշխանազն Ալէքսանդրը, հակուած էր պարսիկների կողմը եւ գործում էր հակառակ ռուսների եւ հակառակ իւր եղբօր։

Այդ հանգամանքներն էին պատճառ, որ մելիքների պահանջը կատարուեցաւ։ Մելիք-Շահնազարեան Մելիք-Ջումշուդն ստացաւ Գիորգի իշխանից Լոռիի գաւառը իւր սահմաններով եւ Բօրչալուի մի մասը, որոնց մէջ նա իւր հպատակների հետ բնակութիւն հաստատեց։ Մելիք-Բէգլարեան Մելիք-Փրէյդունն ստացաւ Բօրչալուի մնացած

մասը եւ Աղջա-Ղալան։ Իսկ Մելիք-Աբովը (Մելիք-Փրէյդունի հօրեղբայրը) ստացաւ Բօնիսը իւր սահմաններով։ Այնուհետեւ մելիքները ձեռք բերեցին եւ ուրիշ հողեր այն չափով, ինչ չափով որ հետզհետէ աւելանում էր նրանց հպատակների թիւը։

## XXXVII.

Երբ Ղարաբաղի հայ ժողովրդի մի մասն իրանց մելիքների հետ գնտեղաւեցան Վրաստանում, այդ ժամանակ Ղարաբաղի երեք կաթողիկոսները գտնվում էին զանազան տեղերում։ Նրանցից երկուսը մնացին Ղարաբաղում. Իսրայէլ կաթողիկոսը նստած էր Ամարասայ վանքում, իսկ փոքր Սիմոն կաթողիկոսը Երիցմանկանց վանքում. երրորդը Հասան-Ջալալեան Սարգիս կաթողիկոսը գտնվում էր Ղարաբաղի սահմաններից դուրս՝ Գանձակ քաղաքում (տես գլ. XVII)։

Բայց մի ճակատագրական դժբախտութեամբ կարծես անխուսափելի էր դարձել, որ Ղարաբաղի մելիքները ուր եւ գնային, պէտք էր որ մի եկեղեցական կռիւ չար դեւի նման հետեւէր նրանց։

Հէնց նոյն տարուայ մէջ, երբ մելիքներն իրանց ժողովրդի հետ գաղթեցին Վրաստան, Հասան-Ջալալեան Սարգիս կաթողիկոսը, իւր եղբօրորդի Բաղդասարի (որ արդէն վարդապետ էր ձեռնադրուած) եւ իւր այլ ազգականների ու մերձաւորների հետ, Գանձակից տեղափոխուեցան Թիֆլիզ (1797 թ. 25 մարտի)։ Հերակլ իշխանը սիրով ընդունեց կաթողիկոսին եւ մեռնելուց առաջ յանձնեց իւր ժառանգ Գիօրգիին, որ աւելի յարգանք ցոյց տուեց իւր վեհափառ հիւրին։

Թիֆլիզում այդ ժամանակ, որպէս Վրաստանի հայոց առաջնորդ, Ս. Էջմիածնի բարձր իշխանութեան կողմից

Այդ բոլորը, յայտնի բան է, պիտի հակառակէին “Գեղարդակրի„, որպէս Վրաստանի հայոց առաջնորդի, շահերին մի կողմից, իսկ Ս. Էջմիածնի իրաւասութեանը միւս կողմից։ Այդ էր պատճառը, որ երբ իշխան Գիօրգին առաջարկեց Ս. Էջմիածնի Ղուկաս կաթողիկոսին, խնդրելով որ Սարգիս կաթողիկոսը Ղարաբաղի գաղթականների առաջնորդ նշանակուի, Ղուկասը բացարձակապէս մերժեց իշխանի խնդիրքը, եւ այդ առիթ տուեց երկար դժգոհութիւնների վրաց իշխանի եւ Ս. Էջմիածնի միջեւ։

Գիօրգին Ղուկասի յամառութիւնից վշտացած, յայտնեց, որ եթէ իւր խնդիրքը չկատարուի, ինքն այնուհետեւ կարգելէ, որ Ս. Էջմիածնից ոչ մի հոգեւորական իրաւունք չունենայ Վրաստանի սահմաններից անց կենալու եւ տեղային հայերից հոգեւոր տուրք հաւաքելու։

Ղուկաս կաթողիկոսը տեսնելով, որ դրանով Վրաստանի հայերը բոլորովին պիտի կտրուեն Ս. Էջմիածնից, ստիպուեցաւ զիջում անել։ Նա խոստացաւ, թէ իշխանի ցանկութիւնը կը կատարէ, միայն պէտք է Սարգիս կա-

---

մէկն է, եւ հռչակուած է որպէս փարատող վարակիչ հիւանդութիւնների։ Ղուկաս կաթողիկոսը չկատարեց իշխանի խնդիրքը. Նախ այն պատճառով, որ ժանտախտը Վաղարշապատում էլ յայտնուել էր եւ սուրբ Գեղարդի օգնութեանն իրանք աւելի կարօտութիւն ունէին, իսկ երկրորդ պատճառն այն էր, որ վստահութիւն չունէր վրաց իշխանի վրայ, թէ կարող էր յիշեալ սրբութիւնը Վրաստանից կրկին յետ ստանալ։

Երբ Գիօրգին սկսեց աւելի եւ աւելի թախանձել, կաթողիկոսն ստիպուած եղաւ յիշեալ “գեղարդակիր„ Յովհաննէս արքեպիսկոպոսի ձեռքով ուղարկել։ Բայց սրբութիւնը Թիֆլիզ հասնելուց եւ հանդիսաւոր թափօրներ կատարելուց յետոյ կալանաւորուեցաւ։ Ս. Էջմիածնից քանիցս անգամ խնդրեցին յետ ուղարկել, բայց վրաց իշխանը, միշտ զանազան պատճառներ բերելով, խաբում էր։ Վերջը Յովհաննէս արքեպիսկոպոսը Մելիք-Աբովի օգնութեամբ մի գիշեր վեր առաւ սրբութիւնը եւ մի քանի ձիաւորների հետ ծածուկ փախաւ Ս. Էջմիածին։ Գուցէ այդ դէպքի պատճառով Նա ստացաւ “գեղարդակիր„ մականունը։

նման երկու խորշ ունէր, մէկից ինքն էր քաշում, միւսից առաջարկում էր այն անձինքներին, որոնց հարկաւոր էր ուղարկել ոգիների աշխարհը։ Սիմոն կաթողիկոսին վիճակուեցաւ վերջին խորշի մէջ ածած քթախոտով կազդուրել իր ռնգերը։ Նա թունաւորուեցաւ. թողեց Թիֆլիզը եւ գնաց Գանձակ։ Սակայն դեռ տեղը չհասած, կաթողիկոսի մօրուքի եւ գլխի մազերը թափուեցան եւ Գանձակում վախճանուեցաւ։ Դա Երիցմանկանց վանքի վերջին կաթողիկոսն էր։

## XXXVIII.

Մեր պատմութեան նախընթաց գլուխներից մէկում Ղարաբաղի մինը միւսին հակաթոռ բազմաթիւ կաթողիկոսների առիթով նկատեցինք, թէ դարերի ընթացքում, ամեն անգամ, երբ ծագել են բուն ազգային կամ ժողովրդական ամենակարեւոր խնդիրներ, միեւնոյն ժամանակ սատանան մէջ է գցել մի որեւիցէ եկեղեցական կռիւ, երկպառակութիւն։ Այդ թէեւ շատ տխուր է, բայց փաստ է։

Ռուսներն արդէն տիրել էին Վրաստանին եւ պէտք է տիրէին ամբողջ Անդրկովկասին։ Հայերի համար սկսվում էր մի նոր կեանք. պարսկական բռնապետութիւնը քայքայվում էր եւ տեղի էր տալիս քրիստոնեայ պետութեան կառավարութեանը։ Հայոց մելիքներն աշխատում էին պահպանել իրանց վաղեմի իրաւունքներն այդ նոր պետութեան հովանաւորութեան ներքոյ։ Ժողովրդի կեանքը գտնվում էր փոխանցական տագնապի մէջ. հազար ու մէկ կարիքներ կային, հազար ու մէկ հարցեր պիտի վճռուէին, իսկ հէնց այդ ժամանակ Ս. Էջմիածնում սկսուեցան կաթողիկոսական կռիւները, որ զբաղեցրին հայոց մտքերը

նման երկու խորշ ունէր, մէկից ինքն էր քաշում, միւսից առաջարկում էր այն անձինքներին, որոնց հարկաւոր էր ուղարկել ոգիների աշխարհը։ Սիմոն կաթողիկոսին վիճակուեցաւ վերջին խորշի մէջ ածած քթախոտով կազդուրել իր ռնգերը։ Նա թունաւորուեցաւ. թողեց Թիֆլիզը եւ գնաց Գանձակ։ Սակայն դեռ տեղը չհասած, կաթողիկոսի մորուքի եւ գլխի մազերը թափուեցան եւ Գանձակում վախճանուեցաւ։ Դա Երիցմանկանց վանքի վերջին կաթողիկոսն էր։

## XXXVIII.

Մեր պատմութեան նախընթաց գլուխներից մէկում Ղարաբաղի մինը միւսին հակաթոռ բազմաթիւ կաթողիկոսների առիթով նկատեցինք, թէ դարերի ընթացքում, ամեն անգամ, երբ ծագել են բուն ազգային կամ ժողովրդական ամենակարեւոր խնդիրներ, միեւնոյն ժամանակ սատանան մէջ է գցել մի որեւիցէ եկեղեցական կռիւ, երկպառակութիւն։ Այդ թէեւ շատ տխուր է, բայց փաստ է։

Ռուսներն արդէն տիրել էին Վրաստանին եւ պէտք է տիրէին ամբողջ Անդրկովկասին։ Հայերի համար սկսվում էր մի նոր կեանք. պարսկական բռնապետութիւնը քայքայվում էր եւ տեղի էր տալիս քրիստոնեայ պետութեան կառավարութեանը։ Հայոց մելիքներն աշխատում էին պահպանել իրանց վաղեմի իրաւունքներն այդ նոր պետութեան հովանաւորութեան ներքոյ։ Ժողովրդի կեանքը գտնվում էր փոխանցական տագնապի մէջ. հազար ու մէկ կարիքներ կային, հազար ու մէկ հարցեր պիտի վճռուէին, իսկ հէնց այդ ժամանակ Ս. Էջմիածնում սկսուեցան կաթողիկոսական կռիւները, որ զբաղեցրին Հայոց մտքերը

այնքան ժամանակ, մինչեւ ռուսները բոլորովին հաստատուեցան Անդրկովկասում։

1799 թ. 27 դեկտեմբերի վախճանուեցաւ Ս. Էջմիածնի Ղուկաս կաթողիկոսը։ Հայրապետական աթոռը ժառանգելու համար յայտնուեցան բազմաթիւ նախանձորդներ, որոնք մինը միւսին տեղի տալով, կռուի դաշտի վրայ մնացին հինգը։ Դրանք էին՝ Ռուսաստանի արքեպիսկոպոս Յովսէփը, Կ. Պոլսի պատրիարք Դանիէլը, Հաշտարխանի եպիսկոպոս Եփրեմը եւ Էնադեցի Դաւիթ եպիսկոպոսը, որ սաստիկ խորամանկ մարդ էր եւ միջոցների ընտրութեան մէջ ամենեւին խտրութիւն անել չգիտէր, իսկ հինգերորդն էր Թիֆլիզեցի “բոկոտն„ (բոբիկ) կոչուած Ստեփան արքեպիսկոպոսը[1]։

Ռուսաց կառավարութեան նպատակն այն էր, որ Ս. Էջմիածնի հայրապետական աթոռի վրայ նստէր մի մարդ, որ նշանաւոր ծառայութիւններ էր մատուցել Ռուսաստանին, մանաւանդ նրա արեւելեան պատերազմների ժամանակ՝ թէ պարսիկների եւ թէ օսմանցիների հետ։ Դա էր մեզ նախածանօթ Արղութեան Յովսէփ արքեպիսկոպոսը։ Այդ գործունեայ, եռանդոտ եկեղեցականը դեռ եւս պէտք էր ռուսաց տիրապետութիւններն առաջ տանելու համար։ Պարսիկների հետ գործը տակաւին վերջացած չէր. Երեւանեան նահանգը եւ ուրիշ շատ խանութիւններ դեռ մահմեդականների ձեռքումն էին։

Ինքը Յովսէփ արքեպիսկոպոսը վաղուց ձգտում էր այդ նպատակին, որ ընդհանուր հայոց կաթողիկոսը դառնայ, եւ նրա մի այդպիսի փառասիրական ձգտումը սաս-

---

[1] Համարեա այդ ժամանակից սկսուեցան Դաւթի եւ Դանիէլի կռիւները, որոնք Ս. Էջմիածնի վերջին կաթողիկոսների պատմութեան մէջ խիստ տխուր, միեւնոյն ժամանակ բաւական ընդարձակ տեղ են բռնում։

*տիկ վայր ձգեց նրա համարումը մտածող հայերի աչքում, երբ նա իւր աւելի ընդարձակ եւ աւելի ազգօգուտ գաղափարները թողնելով, սկսեց հետեւել իւր նեղ, եսական շահերին․․․։*

*Թէեւ նա Ս. Էջմիածնում եւ հայ հասարակութեան մէջ բազմաթիւ հակառակորդներ ունէր, բայց ռուսաց կառավարութեան եւ օսմանցոց Բ. Դրան հաճութիւնն ստացած, Ռուսաստանից ճանապարհ ընկաւ դէպի Անդրկովկաս, որ գնայ Ս. Էջմիածին հայրապետական օծումն ընդունելու համար։ Արքեպիսկոպոսի վարմունքը, որ բոլորովին հակառակ էր հայոց վաղեմի ընտրողական կարգերին, շատ կարելի է, որ մեծ խռովութիւնների պատճառ տար, եթէ ճակատագիրն այլ կերպ չտնօրինէր։ 1801 թ. փետրուարի 10-ին փառաւոր հանդէսով մտաւ նա Թիֆլիզ։ Նա գտաւ իւր բարեկամ վրաց Գիօրգի իշխանին արդէն դրած դագաղի մէջ[1]։ Իշխանի մահն արքեպիսկոպոսին սաստիկ տխրութիւն պատճառեց։ Նրա հետ մեռան սրբազանի սրտին խիստ մօտ՝ խորին բաղձանքները․․․։*

*Իշխանի դագաղը դեռ դրուած էր Սիօնի մայր եկեղեցում, երբ 1801 փետրուարի 16-ին նոյն եկեղեցում կատարուեցաւ Վրաստանի Ռուսաստանի հետ միաւորութեան տօնախմբութիւնը եւ կարդացուեցաւ Պօղոս Ա կայսրի հրովարտակը, որ աւետում էր այդ միաւորութիւնը։*

*Այդ ժամանակ Թիֆլիզում էր գտնվում գեներալ-մայօր Լազարեվը, որ կարգուած էր իբրեւ Վրաստանի զինուորական իշխանութեան ներկայացուցիչ։*

---

*[1] Գիօրգին վախճանուեցաւ 1800 թ. դեկտեմբեր ամսում։*

Կայսրի հրովարտակի ընթերցումից երեք օր յետոյ կատարուեցաւ իշխան Գէորգիի թաղման հանդէսը, որին ներկայ էր ինքը Յովսէփ արքեպիսկոպոսը։ Գէորգիի թաղ-ման հետ վրաց իշխանութիւնը վերջացաւ։

Այդ թաղմանից յետոյ ինքը Յովսէփ արքեպիսկո-պոսն անկողին մտաւ եւ կարճատեւ հիւանդութիւնից յե-տոյ վախճանուեցաւ, առանց Մ. Էջմիածինը տեսնելու, առանց կաթողիկոսական ս. օծումն ընդունելու։ Նրա հետ մեռան եւ հայոց մելիքների մնացած յոյսերը...։

Նոյն տարուայ մէջ (1801 թ. 12 մարտի) վախճա-նուեցաւ Պօղոս Ա կայսրը եւ ռուսաց գահի վրայ նստեց Աղէքսանդր Ա։

Գէորգիի մահից յետոյ աւելի սաստիկ կերպով յա-ղուեցաւ երկպառակութիւնը վրաց իշխանական ժառանգ-ների մէջ։ Գտնուեցան նրանց մէջ այնպիսիները, որ սկսե-ցին բողոք յայտնել Վրաստանի Ռուսաստանի հետ միա-ւորութեան մասին, սկսեցին գրգռել Կովկասի լեռնաբնակ-ներին եւ պարսիկներին ռուսների դէմ[1]։

Այդ բողոքողներից ամենանշանաւորը եւ ամենահաս-տատամիտն էր հանգուցեալ Գէորգիի եղբայր Աղէքսանդրը։ Նրա գործողութիւնները բաւական մեծ տեղ են բռնում այդ ժամանակի պատմութեան մէջ. բայց մենք համառօտ կերպով մէջ կը բերենք այնքանը միայն, ինչ որ վերա-բերում է հայոց մելիքներին։

Վրաստան գաղթած հայոց մելիքներից աւելի ոյժ եւ նշանակութիւն ստացաւ Մելիք-Բէգլարեան Մելիք-Աբովը։ Նա ինչպէս որ քաջ եւ պատերազմասէր էր Ղարաբա-ղում, նոյնը եղաւ եւ Վրաստանում։ Բացի Ղարաբաղից

[1] Այդ ժամանակ տեղի ունեցաւ Աւարիայի Օմար-խանի երկրորդ արշաւանքը Վրաստանի վրայ։

*տիկ վայր ձգեց նրա համարումը մտածող հայերի աչքում, երբ նա իւր աւելի ընդարձակ եւ աւելի ազգօգուտ գաղափարները թողնելով, սկսեց հետեւել իւր նեղ, եսական շահերին....:*

*Թէեւ նա Ս. Էջմիածնում եւ հայ հասարակութեան մէջ բազմաթիւ հակառակորդներ ունէր, բայց ռուսաց կառավարութեան եւ օսմանցոց Բ. Դռան հաճութիւնն ստացած, Ռուսաստանից ճանապարհ ընկաւ դէպի Անդրկովկաս, որ գնայ Ս. Էջմիածին հայրապետական օծումն ընդունելու համար: Արքեպիսկոպոսի վարմունքը, որ բոլորովին հակառակ էր հայոց վաղեմի ընտրողական կարգերին, շատ կարելի է, որ մեծ խռովութիւնների պատճառ տար, եթէ ճակատագիրն այլ կերպ չտնօրինէր: 1801 թ. փետրուարի 10-ին փառաւոր հանդէսով մտաւ նա Թիֆլիզ: Նա գտաւ իւր բարեկամ վրաց Գիօրգի իշխանին արդէն դրած դագաղի մէջ[1]: Իշխանի մահն արքեպիսկոպոսին սաստիկ տխրութիւն պատճառեց: Նրա հետ մեռան սրբազանի սրտին խիստ մօտ՝ խորին բաղձանքները....:*

*Իշխանի դագաղը դեռ դրուած էր Սիօնի մայր եկեղեցում, երբ 1801 փետրուարի 16-ին նոյն եկեղեցում կատարուեցաւ Վրաստանի Ռուսաստանի հետ միաւորութեան տօնախմբութիւնը եւ կարդացուեցաւ Պօղոս Ա կայսրի հրովարտակը, որ աւետում էր այդ միաւորութիւնը:*

*Այդ ժամանակ Թիֆլիզում էր գտնվում գեներալ-մայոր Լազարեվը, որ կարգուած էր իբրեւ Վրաստանի զինուորական իշխանութեան ներկայացուցիչ:*

---

1 Գիօրգին վախճանուեցաւ 1800 թ. դեկտեմբեր ամսում:

Կայսրի հրովարտակի ընթերցումից երեք օր յետոյ կատարուեցաւ իշխան Գիօրգիի թաղման հանդէսը, որին ներկայ էր ինքը Ցովսէփ արքեպիսկոպոսը։ Գիօրգիի թաղման հետ վրաց իշխանութիւնը վերջացաւ։

Այդ թաղմանից յետոյ ինքը Ցովսէփ արքեպիսկոպոսն անկողին մտաւ եւ կարճատեւ հիւանդութիւնից յետոյ վախճանուեցաւ, առանց Ս. Էջմիածինը տեսնելու, առանց կաթողիկոսական ս. օծումն ընդունելու։ Նրա հետ մեռան եւ հայոց մելիքների մնացած յոյսերը...։

Նոյն տարուայ մէջ (1801 թ. 12 մարտի) վախճանուեցաւ Պօղոս Ա կայսրը եւ ռուսաց գահի վրայ նստեց Աղէքսանդր Ա։

Գիօրգիի մահից յետոյ աւելի սաստիկ կերպով յուզուեցաւ երկպառակութիւնը վրաց իշխանազն ժառանգների մէջ։ Գտնուեցան նրանց մէջ այնպիսիները, որ սկսեցին բողոք յայտնել Վրաստանի Ռուսաստանի հետ միաւորութեան մասին, սկսեցին գրգռել Կովկասի լեռնաբնակներին եւ պարսիկներին ռուսների դէմ[1]։

Այդ բողոքողներից ամենանշանաւորը եւ ամենահաստատամիտն էր հանգուցեալ Գիօրգիի եղբայր Աղէքսանդրը։ Նրա գործողութիւնները բաւական մեծ տեղ են բռնում այդ ժամանակի պատմութեան մէջ. բայց մենք համառօտ կերպով մէջ կը բերենք այնքանը միայն, ինչ որ վերաբերում է հայոց մելիքներին։

Վրաստան գաղթած հայոց մելիքներից աւելի ոյժ եւ նշանակութիւն ստացաւ Մելիք-Բէգլարեան Մելիք-Աբովը։ Նա ինչպէս որ քաջ եւ պատերազմասէր էր Ղարաբաղում, նոյնը եղաւ եւ Վրաստանում։ Բացի Ղարաբաղից

[1] Այդ ժամանակ տեղի ունեցաւ Աւարիայի Օմար-խանի երկրորդ արշաւանքը Վրաստանի վրայ։

իւր հետ բերած հպատակներից, նա սկսեց հետզհետէ իւր իշխանութեան ներքոյ հաւաքել եւ այն գաղթականներին, որոնք Հայաստանի զանազան կողմերից փախչելով, Վրաստանում ապաստան էին գտնում: Այդպիսով նա այնքան բազմացրեց իւր ժողովրդի թիւը, որ կարող էր ամեն անգամ մի քանի հազար ձիաւոր կռուի դաշտը դուրս բերել: Դրանով չբաւականանալով, Մելիք-Աբովն աշխատում էր 1000 հայ ընտանիքներ Ախալցխայի վիճակից (որ այդ ժամանակ օսմանցոց իշխանութեան ներքոյ էր գտնվում) տեղափոխել Վրաստան իւր կալուածների վրայ: Այդ մտքով նա իւր ձիաւորների խմբերով անդադար արշաւանքներ էր գործում, անցնում էր Տաճկաստանի սահմաններից եւ ամեն անգամ աւարով յետ էր դառնում: Շատ անգամ նրա ասպատակները հասնում էին մինչեւ Էրզրումի պարիսպների մօտ: Եւ որովհետեւ այդ բոլորն այն ժամանակ սովորական իրերի կարգումն էր, այդ պատճառով Մելիք-Աբովի վստահութիւններին սահման չէր դրվում:

Մելիք-Աբովն այնքան նշանակութիւն տուաւ իւր քաջ ձիաւորների խմբերով, որ երկրի մէջ վաճառականական յարաբերութիւններն ապահով դրութեան մէջ պահելու եւ ճանապարհների վրայ կարաւանների երթեւեկութիւնն աւազակների յարձակումներից անվտանգ պահպանելու համար յանձնուեցաւ նրան քարվանբաշիութեան պաշտօնը: Այդ պաշտօնի նշանակութիւնն այն էր, որ նա պիտի պահէր ճանապարհների վրայ պահականոցներ, նրա ձիաւորները պէտք է ուղեկցէին կարաւաններին մի իջեւանից մինչեւ միւսը, որ վտանգ չպատահէր: Այդ հսկողութեան համար Մելիք-Աբովի մարդիկը իւրաքանչիւր բեռից հարկ էին առնում 1 ռուբլի, յօ-

գուտ մելիքի, որի տարեկան գումարը հասնում էր 500 թումանի[1], որպէս խոստովանվում է Մելիք-Աբովը իւր նամակներից մէկի մէջ։

Վրաց իշխանազն Ալեքսանդրը՝ այդ բոլորը նկատելով տեսնում էր Մելիք-Աբովի մէջ մի լաւ օգնական իւր նպատակներն իրագործելու համար։ Դեռ Գիօրգիի կենդանութեան ժամանակ նա թափառում էր երբեմն Դաղստանի լեռնաբնակների մէջ, երբեմն Ղազախի եւ Շամշադինի թարաքամաների մէջ եւ երբեմն Երեւանի կողմերում, եւ ամեն տեղ գրգռում էր մահմեդականներին ռուսների եւ իւր եղբայր Գիօրգիի դէմ։

Նա շատ անգամ՝ թէ նամակներով եւ թէ առանձին պատուիրակներ ուղարկելով, դիմում էր Մելիք-Աբովին, առաջարկելով միանալ իւր հետ եւ ռուսների հակառակ գործել։ Թէեւ Մելիք-Աբովը, հաւատարիմ մնալով այն երդմանը, որ տուել էր ռուսաց կառավարութեանը, ամեն անգամ մերժում էր իշխանազն Ալեքսանդրի առաջարկութիւնները, այսուամենայնիւ Թիֆլիզի ռուս աստիճանաւորները կասկածելով Մելիք-Աբովի վրայ, նրան կալանաւորեցին։ Նա մի քանի ամիս մնաց բանտում, մինչեւ Վրաստանի համար նշանակուած մինիստր Կովալենսկին Թիֆլիզ գալով (1800 թ.), արձակեց նրան։

Մելիք-Աբովն ունէր երեք որդի՝ Ռոստոմ-բէկ, Սայի-բէկ եւ Մանաս-բէկ։ Դրանցից իւր քաջութեամբ նշանաւոր եղաւ Ռոստոմ-բէկը։

---

[1] 500 թումանը մօտաւորապէս հաւասար է 1500 ռուբլու։ Եթէ իւրաքանչիւր բեռից ստացվում էր 1 ռուբլի, ուրեմն այդ հաշուով, ամբողջ տարուայ մէջ Վրաստան մտնող եւ դուրս եկող մթերքների քանակութիւնը պէտք է հաշուել 1500 բեռ։ Այդ ցոյց է տալիս երկրի այն ժամանակուայ վաճառականութեան ամենաստոր աստիճանի վրայ կանգնած լինելը։

# XXXIX.

1804 թուին ռուսաց զօրքերն իշխան Ցիցիանովի հրամանատարութեան ներքոյ մօտեցան Երեւանի պարիսպներին եւ բանակ դրեցին Ս. Էջմիածնի մօտ։ Միեւնոյն ժամանակ պարսկական բազմաթիւ զօրքեր, պարսից թագաժառանգ Աբաս-Միրզայի անձնական հրամանատարութեան ներքոյ, շտապեցին Երեւանն ազատելու եւ Ցիցիանովի արշաւանքների առաջն առնելու։ Պարսից զօրապետների թուում գտնվում էր վրաց իշխանազն Աղէքսանդրը մի քանի վրաց ազնուականների հետ։ Դրանք իրանց հետ առնելով մի քանի գունդ պարսկական հեծելազօր եւ միանալով Ղազախի ու Շամշադինի թարաքամաների հետ, եւ մի կողմից էլ ապստամբեցնելով լէզգիներին, բոլորովին կտրեցին Վրաստանի հաղորդակցութիւնը Ցիցիանովի բանակի հետ, որ գտնվում էր Երեւանի պարիսպների մօտ։

Ցիցիանովը, որ կամենում էր պաշարել Երեւանը, ինքը պաշարման դրութեան մէջ մնաց։ Պարսիկներն ամեն կողմից շրջապատեցին նրան։ Այդ ժամանակ պակասեց Ցիցիանովի զօրքի պաշարը։ Թէեւ Ս. Էջմիածնի վանքը իւր հացի ամբարներից մեծ օգնութիւն մատակարարեց, բայց Ցիցիանովը կարօտութիւն ունէր եւ ռազմամթերքի. վառօդը սպառուելու վրայ էր. նրան պէտք էին աւելի շատ թւով թնդանօթներ։

Այդ միջոցին Մելիք-Աբովի որդի Ռոստոմ-բէկը, իւր հետ առնելով 500 ռուսաց զինուոր, երկու անգամ զարմանալի քաջութեամբ անցաւ պարսիկների միջից եւ Ցիցիանովի բանակին Թիֆլիզից վառօդ, թնդանօթներ եւ այլ ռազմամթերք հասցրեց։

Երբ նա այդ նպատակով պիտի կատարէր իւր երրորդ արշաւանքը, Փամբակի ձորում, Ղուրսալու գիւղի մօտ

պատահեց պարսից զօրքերին։ Նրանց թիւը 800 հոգի էր, գտնվում էին Փիր-Ղուլի-խան անունով մէկի գլխաւորութեան ներքոյ։ Այդ միջոցին պարսից զօրքերի հետ միացաւ վրաց իշխանազն Ալէքսանդրը 3000 ձիաւորով։ Չնայելով պարսից ուժերի անհամեմատ գերազանցութեանը, նրանք ամբողջ երեք օր կանգնած մնացին եւ չէին վստահանում կռիւ սկսել Ռոստոմ-բէկի փոքրաթիւ խմբի հետ։ Երբ վերջապէս սկսուեցաւ կռիւը, Ռոստոմ-բէկն ընկած ռուսաց զօրքերի առաջ, երկար քաջութեամբ պատերազմում էր։ Ցանկարծ նրա ձին գնդակահար լինելով, ցած գլորուեցաւ։ Ռոստոմ-բէկը նստեց մի այլ ձիու վրայ եւ կրկին նետուեցաւ կռուի մէջ։ Չնայելով որ նա արդէն երկու վէրք էր ստացել, բայց տակաւին շարունակում էր կռուել։ Երբ երրորդ վէրք ստացաւ աջ ձեռքի վրայ, այդ ժամանակ արիւնաշաղախ ցած ընկաւ։ Նրա ընկնելուց յետոյ պարսիկները մայոր Մօնտրազորին սպանեցին եւ ռուսաց բոլոր զինուորներին կոտորեցին։

Ռոստոմ-բէկին տարան պարսից թագաժառանգ Աբաս-Միրզայի բանակը։

Վրաց իշխանազն Ալէքսանդրը լաւ ծանօթ էր Ռոստոմ-բէկի հետ, ճանաչում էր եւ նրա հօրը՝ Մելիք-Աբովին, որ, ինչպէս ցոյց տուինք նախընթաց գլխում, մերժեց Ալէքսանդրի առաջարկութիւնները, երբ նա խնդրում էր միանալ իւր հետ՝ ռուսների հակառակ գործելու համար։ Այժմ յամառ մելիքի աւելի եւս յամառ որդին առաջնորդելով ռուսաց զինուորներին, ընկաւ թշնամու ձեռքը։ Ալէքսանդրը կամեցաւ հօր վրէժն առնել որդուց։ Առաջուց տեղեակ լինելով, թէ պարսից թագաժառանգ Աբաս-Միրզան որ աստիճան ատելութիւն ունի դէպի Ղարաբաղի մելիքները, որոնք Աղա-Մամադ-

խանի սպանման պատճառը դարձան Շուշի բերդում, — այդ մտածութեամբ, իբրեւ մի լաւ առարկայ Աբաս-Միրզայի վրէժխնդրութեանը բաւականութիւն տալու, — Աղէքսանդրն ուղարկեց Ռոստոմ-բէկին Աբաս-Միրզայի մօտ:

Պարսից Թագաժառանգն իսկոյն սպանել չտուեց նրան, այլ շղթայակապ ուղարկեց Թաւրիզ, հրամայելով որ այնտեղ բանտարկեն եւ խնամք տանեն նրա վէրքերը բժշկելու համար:

Այդ հերոսը երեք ամիս բանտարկուած մնաց Թաւրիզում: Միեւնոյն բանտում կալանաւորուած էր այդ ժամանակ եւ Ս. Էջմիածնի ռուսաց կուսակից Դանիէլ կաթողիկոսը: Այդ վերջինը յետոյ Թաւրիզեցի Օհանէսաղայի երաշխաւորութեամբ ազատուեցաւ: Բայց Ռոստոմ-բէկը մնաց բանտում այնքան ժամանակ, մինչեւ Աբաս-Միրզան ռուսներից յաղթուած եւ բարկացած, վերադարձաւ Թաւրիզ: Նա իսկոյն տուեց քաջին դահիճների ձեռքը եւ հրամայեց գլխատել նրան: Թաւրիզի հայերը մեծ սուգով նրա մարմինը թաղեցին իրանց եկեղեցու բակում գտնուած գերեզմանատանը, եւ սովորեցրին իրանց զաւակներին երգել մի երգ, որ ինքը երիտասարդը գրել էր բանտում եղած ժամանակ: Երեւում է որ Ղարաբաղի հերոսը որքան յաջողակ էր զէնք գործ ածելու մէջ, նոյնքան հմուտ էր եւ բանաստեղծութեան մէջ: Այժմ այդ երգը բոլորովին մոռացուած է: Վաղեմի տխուր յիշողութիւնները կրկին զարթեցնելու համար մենք կը դնենք նրա ամբողջ օրինակը.

“Մունետիկն ի ձայն բարձր աղաղակէ,
Ժանտ դահիճն սուր ի ձեռին անյագ սրէ,
Վագեր հանգոյն զիմ կենաց թել կտրել խնդրէ,

Ի կախաղան եւ կամ ի սպանդ, — ո՛ւր զիս տանէ։
Քաղաքս համայն մահմեդական, ատ խուռն դան,
զիմ մահ սգան,
Դառնագին լան զիս Աբովեան՝ քաջ ախոյեան։

Մի՞թէ չիք ոք աստ քրիստոնեայ, զիս փրկեսցէ
Ցայս ամեհի եւ մահադրոյժ վայրագ դահճէ։
Ընդէ՞ր զանմեղ արիւն թափել, յէ՞ր[1] ցանկայ,
Նուիրական զենման իմոյ լերուք վկայ։
Սէր հայրենեաց ի թշնամեաց ձեռս մատնեաց,
— ուրախ մեռայց,
Եւ դասեցայց ընդ դիւցազանց իմոց նախնեաց։

Փշրանք մնացեալ եմ սիրելի հայոց ազգի,
Ողք գտանիք ի ձեռս պարսից յայս քաղաքի,
Մի՛ մոռասջիք պատմել եւ զայս յորդւոց յորդի,
Թէ քաջն Ռոստոմ վասն հայրենեաց ի սպանդ վարի։
Թէպէտ ցաւիմ զի չմեռանիմ ի մարտ ընդդէմ
թշնամեաց իմ,
Այլ յօժարիմ, զի զոհ լինիմ այսպէս վսեմ։

Այս քաջ բազուկք յաւեաց պարսից հսկայս հզօրս
Տապաստ արկին ի բազում նուագս հարիւրաւորս.
Աւա՜ղ, կնատ անգութ դահճի եղէ ես որս,
Պատմեսջի՛ք զայս վեհ դիւցազին՝ զառամեալ հօրս.
Քաջ նահատակ որդին միակ ի ձեռս վայրագ
պարսից էանկ,
Իւր յաղթանակ մահ դժնդակ էառ պսակ։

---

[1] „Յերկիր„, այս երգի մի այլ օրինակի մէջ, տպ. Վենետիկի „Բազմավէպ„ 1847 թ. (Ծան. հրատ.)

Մեծդ յարեաց, արքայորդիդ Աբաս-Միրզա,
Սուր ի ձեռին դաշհիճն հէգ առ ընթեր կայ,
Զիս թշնամիս քոյց ազգի պատրաստ ի մահ
Զիա՞րդ կամիս սպանանել՝ շուտ հրամայեա։
Միայն ազամ, զի կապեալ կամ. թէ միւս անգամ
հրացան, սուր իմ
Ի ձեռս ունիմ, — զբազուկս իմ ձեզ ցուցանեմ„ ....։

Սիրեղի որդու աղետալի վախճանից յետոյ, նրա ալեւոր հայրը՝ Մելիք-Աբովը, երկար չապրեց։ ծերունի հերոսի վերջին օրերն անցան ցաւերով եւ տրտմութեամբ...։

Ահա ինչ է գրում նա Ս. Պետերբուրգ իւր 1807 թ. նոյեմբեր 23-ի նամակի[1] մէջ աղա Մինաս Լազարեանին, որին, Յովսէփ արքեպիսկոպոսի վախճանուելուց յետոյ, ստէպ դիմում էին Ղարաբաղի մելիքները՝ իրանց զանազան վշտերը յայտնելով.

"Իմ մատուցած մեծ ծառայութիւնները Ռուսաստանի սուրբ գահին եւ Շուշիում իմ ցոյց տուած քաջագործութիւնները, դեռ Զուբով զօրավարի ժամանակից, — բոլորին յայտնի են։ Կարելի է, որ ձեզ եւս անյայտ չէ, թէ որպէս հալածական արինք եւ ցրուեցինք երկրի երեսից Աղա-Մամադ-խանի ահարկու զօրախումբը։ Այս պատճառով Հերակլ թագաւորը կամենալով մեզ (Ղարաբաղի մելիքներին) իրան օգնական ունենալ, երդումներով եւ թղթերով հաւատացրեց մեզ, որ գայինք իւր մօտ, բնակուէինք իւր տէրութեան մէջ եւ համարուէինք հաւասար նրա առաջնակարգ թաւադների ու կնեազների

[1] Այդ նամակի հայերէն բնագիրը մեր ձեռքում չունենալով, թարգմանուած է ռուսերէնից, որ տպուած էր պ. Երիցեանի „Кавказская Старина" ամսագրի համար 2, դեկտեմբեր ամսի 1872 թուի տետրակում։

հետ: Մենք եկանք: Իւր խոստման համեմատ թագաւորը տուեց մեզ Բօնիսը, իսկ իւր պալատում մեզ տեղ նշանակեց իւր բոլոր աւագներից բարձր: Մեր մի այսպիսի դրութիւնը տեւեց Հերակլի եւ Գիօրգիի թագաւորութեան ընթացքում: Իսկ այժմ մենք զրկուած ենք թէ՛ հողից, թէ՛ կալուածներից եւ թէ յարգանքից. որովհետեւ ամենքը նեղացնում են մեզ, աշխատում են խլել մեզանից Բօնիսը եւ պահանջում են տասներորդ մասը մեր հունձքերից: Այդ բոլորն այն աստիճան անախորժ է մեզ, որ մենք այսուհետեւ ամենեւին ցանկութիւն չունենք այլեւս բնակուել այստեղ (Բօնիսում): Երբ որ ես շինութիւններով եւ բնակիչներով ծաղկեցրի այս գաւառը, մաքրեցի նրան բոլոր թշնամիներից եւ վայրենիներից, — ապա այնուհետեւ միայն յայտնուեցան զանազան տէրեր, որոնցից մէկը տէր է կանգնում ջրանցքներին, միւսն աշխատում է սեպհականացնել իրան լեռները, երրորդը՝ հողը...: Այս բոլորից յետոյ, եթէ նոյն իսկ Բօնիսի բոլոր քարերը ոսկի դառնալու լինեին, այն ժամանակ եւս հրաժարուելով կը հրաժարուենք այս երկրից: Ո՛չ փող մնաց մեր քսակներում եւ ոչ համբերութիւն...: Մեր օրերն անց ենք կացնում ատենական տեղերի դռներում, եւ ոչ մի տեղից օգնութիւն չենք գտնում...:

«Այդ բոլորի առիթով ես մատուցի յանուն Կայսրի ամենախոնարհաբար խնդիր որպէս զի ամենաողորմածաբար թոյլ տրուէր մեզ մեր ժողովրդի հետ տեղափոխուել մեր հայրենիքը՝ Ղարաբաղ, ապրելու եւ բնակութիւն հաստատելու այնտեղ: Բոլորը, ինչ որ ես թղթի վրայ խոստացել եմ ամենաողորմած թագաւորին, միեւնոյնը այժմեանից երդումով խոստանում եմ կատարել յօգուտ արքունի գանձարանի:

«Թէ որքան մեծ է եղել իմ ծառայութիւնը իմ ամենաողորմած Թագաւորին, այդ մասին դեռ չգիտէ բարձր կառավարութիւնը։ Այլեւս ի՞նչ է մնում ինձ անել։ Ունէի ես անդրանիկ որդի — Ռոստոմ-բէկը, իմ ծերութեան զաւազանը եւ իմ նախնեաց ժառանգը, եւ նրան ես զոհ բերեցի իմ ամենաողորմած եւ ինքնակալ Կայսրին....։ Ինչ որ ես գործել եմ եւ ինչ որ այժմ կատարում եմ, դրանից աւելին ոչ ոք կարող չէ անել։

«Ես ունիմ մի կաթիլ արիւն, եւ այն ամեն րոպէ պատրաստ է թափուելու իմ Թագաւորի անուան համար։ Դրանից աւել էլ ի՞նչ կարող եմ անել ես։

«Իսկապէս երեւում է մի բան միայն, այն է, որ ես հայ եմ, եւ այդ պատճառով բոլոր գլխաւոր հրամանատարները եւ զօրավարները չարանում են ինձ վրայ՝ իմ կատարած յաղթութիւնների եւ քաջագործութիւնների համար։ Իմ գործողութիւնների մասին նրանք չեն կամենում տեղեկութիւն տալ, ուր որ հարկն է, որովհետեւ ցանկանում են, որ ես յուսահատուեմ եւ տխրութիւնից մեռնեմ անյայտութեան մէջ։ Աստուծոյ օգնութեամբն այդ չի լինի։ Մինչեւ գերեզման չմտնեմ, տխրութիւնն ու յուսահատութիւնը չեն կարող վհատեցնել ինձ։ Ընդհակառակն, ես եւ այսուհետեւ նպատակ ունիմ կատարելու այնպիսի յաղթութիւններ, որ զարմացնէին բոլորին։ Իսկ գերեզման կը մտնեմ իմ քաջագործութիւնների եւ արիութիւնների ժամանակ. երբէք չեմ մեռնի տկարների եւ հիւանդների նման, որոնք հոգի են տալիս անկողնու մէջ»։

Յետոյ մի առ մի թուելով իւր կատարած ծառայութիւնները Ռուսաստանին, ծերունի հերոսն աւելացնում է.

"Ես շատ անգամ խնդրել եմ կոմսին (Գուդովիչին) որ թոյլ տայ մեզ, Մելիք-Ջումշուդի նման տեղափոխուել մեր հայրենիքը՝ Ղարաբաղ: Բայց նա չյօժարեցաւ, պատասխանելով որ եթէ մենք թողնելու լինինք այս երկիրը (Վրաստանը), այն ժամանակ Բօլնիսը կը ոչնչանայ, իսկ ախալցխացիները, լէզգիները եւ այլ վայրենիներն ու աւազակները կը ոչնչացնեն Թիֆլիզի շրջակայ գիւղերը: Բայց երբ որ մենք ասում ենք՝ ողորմհեալ Հերակլ թագաւորը շնորհել է մեզ Բօլնիսը իւր բոլոր հողերով, ջրերով, անտառներով եւ այլ պատկանելիքներով, — ուրեմն խնդրում ենք ձեզ, որ այդ բոլորը հաստատէք մեր անունով, այն ժամանակ կոմսը մեր պահանջին պատասխանում է, ասելով՝ ես չեմ կարող ուրիշների կալուածները տալ ձեզ, եւ դրա նման խօսքեր: Ես չեմ կամենում ձանձրացնել ձեզ բոլոր մանրամասնութիւններով„....:

Մելիք-Աբովը վերջացնում է նամակը, խնդրելով Լազարեանի միջնորդութիւնը Կայսրի մօտ իւր առաջարկած մի քանի պահանջների մասին, որոնց մէջ դառնացած ծերունին առանձին կերպով շեշտում է, որ թոյլ տրուի իրան իւր հպատակների հետ վերադառնալ Ղարաբաղ:

Մեր ընթերցողներին յայտնի է՝ որ Պօղոս Ա կայսրի բարձրագոյն հրովարտակի համեմատ վրաց Գիօրգի իշխանը իւր առանձին հրովարտակներով Բօլնիսի գաւառը շնորհեց Մելիք-Աբովին, իսկ Լօռիի գաւառը շնորհեց Մելիք-Ջումշուդին, որոնց մէջ նրանք առանձին արտօնութիւններով գաղթականութիւն էին հիմնել դեռ Հերակլ իշխանի օրերում (տես գլ. XXXVI): Մելիք-Ջումշուդը, որպէս յետոյ կը տեսնենք, նկատելով Գիօրգիի մահից

յետոյ Վրաստանում տեղի ունեցած անախորժ հանգամանքները, եւ մելիքների յարաբերութիւնների՝ տեղային ռուս պաշտօնականների հետ աննպաստ կերպարանք ստանալը, վշտացաւ, եւ վաճառելով Լօռին ռուսաց կառավարութեանը, իւր հպատակների հետ վերադարձաւ Ղարաբաղ։ Նոյնը, նոյն հանգամանքների պատճառով, կամենում էր անել Մելիք-Աբովը։ Բայց նրան արգելում էին, որովհետեւ վրացիներն այժմ մելիքների շատ պէտք ունէին...։

Որքան էլ մեծ լինէր Մելիք-Աբովի ցանկութիւնը իւր հայրենիքը տեսնելու, իւր ժողովրդի հետ իւր նախահարց հողի վրայ ապրելու, այսուամենայնիւ նա իւր բաղձանքին հասնել չկարողացաւ։

Հետզհետէ նրա յարաբերութիւնները վրաց ազնուականների հետ՝ Բօշնիսի եւ այլ կալուածական խնդիրների պատճառով աւելի եւ աւելի թշնամական կերպարանք ստացան։ Եւ որպէս պատմում են, մի հրաւէրքի մէջ, Թիֆլիզում, թունաւորուած լօբին կարճատեւ հիւանդութիւնից յետոյ նրան գերեզման տարաւ (1808)։ Նոյն հրաւէրքի մէջ թունաւորուելով մեռաւ նաեւ նրա քարտուղարը՝ Միրզա-Դաաբախշը։

Մելիք-Աբովի մահից յետոյ, յաջորդութեան մասին երկպառակութիւններ ծագեցին Մելիք-Բէգլարեանների տոհմի մէջ։ Հանգուցեալի անդրանիկ որդին՝ Ռոստոմ-բէկը, որ մելիքների սովորութեամբ պէտք է յաջորդէր նրան, որպէս տեսանք, Թաւրիզում մահուան դատապարտուեցաւ։ Նրա միւս երկու որդիները՝ Մանաս-բէկը եւ Սայիբէկը, դեռ բաւական երիտասարդ էին։ Տոհմի մէջ նշանաւոր մնում էր հանգուցեալի եղբօրորդի[1] Փրէյդունը,

[1] Մելիք-Փրէյդունը Մելիք-Բէգլար Բ-ի որդին էր։

որ շատ խելացի եւ քաջ տղամարդ էր, եւ դեռ Մելիք-Աբովի կենդանութեան ժամանակ յայտնի էր իւր արժանաւորութիւններով։ Նա Ղարաբաղի մելիքների կողմից Ս. Պետերբուրգ ուղարկուած (1799 թ.) պատգամաւորներից մէկն էր, որ ներկայացաւ Պօղոս Ա կայսրին եւ արժանացաւ նրա ամենաողորմած շնորհներին (տես գլ. XXXVI)։

Ամենի ցանկութիւնն այն էր, որ Մելիք-Աբովի յաջորդը լինի Փրէյդունը եւ նա ընտրուեցաւ. բայց նրա իշխանութիւնը կարճատեւ եղաւ։ Նա գրգռեց իւր եղբօր՝ Սամի նախանձը, որ սաստիկ կատաղի մարդ էր։ Մի անգամ տաք վիճաբանութեան ժամանակ, Սամը յարձակուեցաւ Փրէյդունի վրայ եւ խէնջալով այնպիսի սաստիկ զարկ տուեց նրա գլխին, որ սպանեց հարազատ եղբօրը (1808)։ Այդ ցաւալի անցքից յետոյ եղբայրասպանն առել դարձաւ իւր տոհմի մէջ եւ չհասաւ այն փառքին, որին ձգտում էր։ Մելիք-Փրէյդունի[1] փոխարէն յաջորդ ընտրուեցաւ յանգուցեալ Մելիք-Աբովի որդի Մանաս-բէկը։

Այդ վերջինի ժամանակ մելիքների նշանակութիւնը Վրաստանում բաւական ընկաւ։ Հակառակ Պօղոս Ա կայսրի բարձրագոյն շնորհուած արտօնութիւնների, հակառակ այն իրաւունքների, որ նրանք վայելում էին Հերակլ եւ Գիօրգի իշխանների օրերից, — այժմ սկսեցին փոքր առ փոքր սահմանափակել նրանց իրաւունքները, իսկ յետոյ աշխատում էին իսպառ ոչնչացնել։

Այդ բոլորի պատճառն էր այն ժամանակուայ ռուս կառավարիչների կամայականութիւնը, որի դէմ սաստիկ

---

[1] Մելիք-Փրէյդունը թողեց վեց որդի՝ Մելիք-Յովսէփ, Շամիրխան, Դաւիթ, որ տեղափոխուեցաւ Հնդկաստան, Թալիշ, Թէյմուրազ եւ Բէգլար Գ.։

բողոքում էին մելիքները, շատ անգամ դիմելով ռուսաց բարձր կառավարութեանը։ Երբ Մելիք-Աբովի եւ Մելիք-Փրէյդունի մահից յետոյ Մանաս-բէկը դիմեց գլխաւոր հրամանատար զօրապետ Տօրմասովին, խնդրելով որ հաստատեն իրան ժառանգական տիրապետողի իրաւունքներով Բօնիսի բնակիչների վրայ, նրան բոլորովին մերժեցին, պատասխանելով, թէ ո՛չ Բօնիսը եւ ոչ այդ գաւառի բնակիչները ոչ ոքին չեն պատկանում, բացի Թագաւորից։ Եւ մինչեւ անգամ հրամայուեցաւ կալանաւորել Մանաս-բէկին եւ պահել Թիֆլիզում խիստ հսկողութեան ներքոյ, որ նա Բօնիսի բնակիչների մէջ այլեւս վրդովմունք չյարուցանէ։

Յայտնի է, որ Բօնիսը բնակեցրած էր ղարաբաղցի գաղթականներով, որոնք Մելիք-Բէգլարեանների հպատակներն էին եւ տեղափոխուած էին նրանց հայրենի Գիւլիստան գաւառից։ Այն եւս յայտնի է, որ Բօնիսը շնորհուեցաւ որպէս մշտական սեպհականութիւն Մելիք-Բէգլարեաններին իրանց հպատակների հետ բնակուելու համար։ Վրաստանում այդ ժամանակ տիրում էր ճորտութեան իրաւունքը։ Թէեւ մելիքները Վրաստան գաղթելով, չկամեցան իրանց հպատակների վերաբերութեամբ ընդունել ճորտութեան իրաւունքներ, այսուամենայնիւ նրանք պահպանեցին տիրապետողի եւ հպատակի իրաւունքները այն ձեւերի մէջ, որպէս վաղուց սովորական էին Ղարաբաղում։ Երբ այդ իրաւունքներից եւս կամենում էին զրկել նրանց, այնուհետեւ ուրիշ ոչինչ չէր մնում, բայց միայն թողնել Վրաստանը եւ կրկին տեղափոխուել Ղարաբաղ։

Այդ էր պատճառը, որ Մելիք-Բէգլարեանների ժառանգները եւ նրանց հպատակները, երկու վերջին նշա-

նաւոր իշխողների՝ Մելիք-Աբովի եւ Մելիք-Փրէյդունի մահից յետոյ սկսեցին հետզհետէ թողնել Վրաստանը եւ տեղափոխուել Ղարաբաղ[1]։ Նրանք մնացին Վրաստանում մօտաւորապէս տասներկու տարի (1797—1809 թ.)։ Մելիք-Բէգլարեանների բացակայութեան ժամանակ նրանց գիւղերը, կալուածները, մի խօսքով՝ ամբողջ Գիւլիստանի գաւառը, որ այդ տոհմի հայրենական ժառանգութիւնն էր, անցել էր Իբրահիմ-խանի ձեռքը։ Բայց Մելիք-Բէգլարեանները կրկին յետ խլեցին խանից բոլորը եւ իրանց հայրենի երկրի տէրը դարձան[2]։

## XL.

Ղարաբաղի հայոց գաղթականութիւնը Վրաստանում[3] բաղդաւոր լինել չկարողացաւ։ Դրա պատճառներն այնքան մթին են, որ այժմ անյարմար կը լինէր ամբողջութեամբ երեւան հանել։ Թէ մելիքները եւ թէ նրանց ժողովուրդը շատ դժբախտութիւնների հանդիպեցան։ Ժանտախտը, որի պատճառով նրանք ցիրուցան եղան եւ եկան Վրաստան, այստեղ եւս յայտնուելով, շատ զոհեր տարաւ։

---

[1] Մելիք-Բէգլարեանների տոհմը Ղարաբաղի միւս տիրապետող մելիքների մէջ կարելի է առաջինը համարել, որ կարողացաւ պահպանել մինչեւ վերջին ժամանակները իւր հայրենի ժառանգութեան եթէ ոչ ամբողջը, գէթ նրա մեծ մասը։ Այժմ Գիւլիստանի գաւառում, այդ տոհմի ներկայացուցիչների ձեռքում մնացել են 18 գիւղ, որ գտնվում են աւելի քան հարիւրհազար դեսեատին տարածութեան վրայ։ Գիւղերը բոլորը հայաբնակ են, մէկը միայն բնակեցրած է մալականներով։

[2] Ժողովրդի ամենափոքր մասը միայն մնաց Վրաստանում որ գաղթեց 1812 թուին դարձեալ դէպի Ղարաբաղ։

[3] Թէեւ մենք անդադար գործ ենք ածում Վրաստան բառը, բայց այն գաւառները, որպէս էին Բօրնիսը, Լօռին, Բօրչալուն, որ տուել էին հայ գաղթականներին բնակութեան համար, իսկապէս հայկական գաւառներ էին։

Մելիքներից աւելի խելացի գտնուեցաւ Մելիք-Շահնազարեան Մելիք-Ջումշուդը։ Հերակլի եւ Գիօրգիի մահից յետոյ, զզուելով տեղային անախորժ հանգամանքներից, կամեցաւ Լօռին վաճառել եւ կրկին տեղափոխուել Ղարաբաղ, իւր հայրենի երկիրը՝ Վարանդա։

Նոյն ժամանակուայ Վրաստանի լեռնային մասի կառավարիչ կոմս Մուսին-Պուշկինը օգտաւէտ համարեց գնել Մելիք-Ջումշուդից Լօռին, գնահատելով այդ երկիրը 6000 ռուբլի։ Դրա հակառակ, նոյն ժամանակուայ գլխաւոր հրամանատար իշխան Ցիցիանովը (վրացի) զանազան պատճառներ բերելով, կամենում էր ցոյց տալ, որ Լօռին Մելիք-Ջումշուդի սեպհականութիւնը չէ եւ վաճառելու իրաւունք չունի։ Բայց Ս. Պետերբուրգում արդէն գիտէին իշխան Ցիցիանովի անհամակրութիւնը դէպի հայոց մելիքները, որ արտայայտել էր նա շատ դէպքերի մէջ[1]։ Այդ էր պատճառը որ իշխանի կարծիքների հետ Ս. Պետերբուրգում չհամաձայնուեցան, եւ ներեւմտից Նախարարի 1805 թ. 22 մայիսի կարգադրութեամբ իրաւունք տրուեցաւ Մելիք-Ջումշուդին Լօռին վաճառելու եւ տեղային կառա-

---

[1] Նոյն կոմս Մուսին-Պուշկինը իւր 1802 թ. 9 սեպտեմբերի առաջադրութեամբ խնդրեց թագաւոր կայսրից պարգեւատրել Մելիք-Ջումշուդին նրա ռուսաց կառավարութեանը ցոյց տուած ծառայութիւնների համար ոսկեայ թրով։ Իսկ իշ. Ցիցիանովը դրա հակառակ իւր 1804 թուի 20 յունուարի զեկուցումով հաղորդեց, որ մի այդպիսի պարգեւատրութիւն հայոց մելիքին կարող էր վիրաւորել վրաց իշխաններին, եւ ամեն մի համեմատութիւն հայ իշխանների վրաց իշխանների հետ, վերջինների համար վիրաւորական պէտք է համարել։

Իւր 1804 թ. 30 դեկտեմբերի հաղորդագրութեան մէջ ի թիւս այլոց գրում է իշ. Ցիցիանովը թագաւորին. "Իբրահիմ-խանը (Շուշի բերդի) ունէր մինչեւ 60.000 տուն միայն Ղարաբաղի հայեր, որոնք կառավարվում էին հինգ նշանաւոր մելիքներով, որոնցից ոմանք, որպէս ես մտածում եմ, յիմարաբար իրանց ծագումը դուրս են բերում Հայաստանի թագաւորներից»․․․։

վարութեանը հրամայուեցաւ կալուածագիրը հաստատել։

Ի հարկէ եթէ մի քանի տարի եւս ուշացնելու լինէր Մելիք-Ջումշուդը, նա ամեն բանից կը զրկուէր, որպէս Մելիք-Աբովի ժառանգները զրկուեցան Բօլնիսից։ Բայց Լօռին վաճառուելուց յետոյ, նոյն տարուայ մէջ (1805) Մելիք-Ջումշուդը թողեց Վրաստանը եւ իւր հպատակների հետ տեղափոխուեցաւ Ղարաբաղ, իւր հայրենի գաւառը՝ Վարանդա։

Այդ քաջ, միեւնոյն ժամանակ խելացի պատերազմողը շատ նպաստեց ռուսաց տիրապետութեան տարածուելուն Անդրկովկասում։ Դեռ 1803 թուի դեկտեմբեր ամսում, երբ իշ. Ցիցիանովը պաշարեց Գանձակը։ Մելիք-Ջումշուդը իւր սեպհական ձիաւորներից կազմած հայկական գնդով կանգնած էր այդ բերդի պարիսպների մօտ։ Նրա զօրքերի թուում գտնվում էին Թիֆլիզի հայոց առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսը եւ Ներսէս վարդապետը, որ վերջը հայոց անմոռանալի Ներսէս Ե-րդ կաթողիկոսը դարձաւ։ Այդ եռանդոտ եկեղեցականը, իւր հայրենիքը պարսից լծից ազատելու համար, մասնակցում էր իշ. Ցիցիանովի արշաւանքներին, որպէս Երկայնաբազուկ-Արղութեան Յովսէփ արքեպիսկոպոսը մի ժամանակ մասնակցում էր կոմս Զուբովի արշաւանքներին։ Բերդի պաշարումը երկար տեւեց։ Ջաւադ-խանը, որ արդէն ծանօթ է մեր ընթերցողներին, քաջութեամբ պաշտպանվում էր։ Վերջը, 1804 թ. 3 յունուարի, ռուսաց եւ հայոց զօրքերը, սաստիկ յարձակում գործելով պարսպի մի մասը խորտակում են եւ ներս մտնում։ Բերդի մէջ մի քանի ժամ շարունակվում էր կռիւը եւ կոտորածը, որ դադարեց այն ժամանակ, երբ Ջաւադ-խանը սուրը ձեռքին իւր որդիների հետ ընկաւ։

Մելիքներից աւելի խելացի գտնուեցաւ Մելիք-Շահնազարեան Մելիք-Ջումշուդը։ Հերակլի եւ Գիօրգիի մահից յետոյ, զզուելով տեղային անախորժ հանգամանքներից, կամեցաւ Լօռին վաճառել եւ կրկին տեղափոխուել Ղարաբաղ, իւր հայրենի երկիրը՝ Վարանդա։

Նոյն ժամանակում Վրաստանի լեռնային մասի կառավարիչ կոմս Մուսին-Պուշկինը օգտուէտ համարեց գնել Մելիք-Ջումշուդից Լօռին, գնահատելով այդ երկիրը 6000 ռուբլի։ Դրա հակառակ, նոյն ժամանակում գլխաւոր հրամանատար իշխան Ցիցիանովը (վրացի) զանազան պատճառներ բերելով, կամենում էր ցոյց տալ, որ Լօռին Մելիք-Ջումշուդի սեպհականութիւնը չէ եւ վաճառելու իրաւունք չունի։ Բայց Ս. Պետերբուրգում արդէն գիտէին իշխան Ցիցիանովի անհամակրութիւնը դէպի հայոց մելիքները, որ արտայայտել էր նա շատ դէպքերի մէջ[1]։ Այդ էր պատճառը որ իշխանի կարծիքների հետ Ս. Պետերբուրգում չհամաձայնուեցան, եւ ներսւմից նախարարի 1805 թ. 22 մայիսի կարգադրութեամբ իրաւունք տրուեցաւ Մելիք-Ջումշուդին Լօռին վաճառելու եւ տեղային կառա-

[1] Նոյն կոմս Մուսին-Պուշկինը իւր 1802 թ. 9 սեպտեմբերի առաջադրութեամբ խնդրեց թագաւոր կայսրից պարգեւատրել Մելիք-Ջումշուդին նրա ռուսաց կառավարութեանը ցոյց տուած ծառայութիւնների համար ոսկեայ թրով։ Իսկ իշ. Ցիցիանովը դրա հակառակ իւր 1804 թուի 20 յունուարի զեկուցումով հաղորդեց, որ մի այդպիսի պարգեւատրութիւն հայոց մելիքին՝ կարող էր վիրաւորել վրաց իշխաններին, եւ ամեն մի համեմատութիւն հայ իշխանների վրաց իշխանների հետ, վերջինների համար վիրաւորական պէտք է համարել։

Իւր 1804 թ. 30 դեկտեմբերի հաղորդագրութեան մէջ ի թիւս այլոց գրում է իշ. Ցիցիանովը թագաւորին. "Իբրահիմ-խանը (Շուշի բերդի) ունէր մինչեւ 60.000 տուն միայն Ղարաբաղի հայեր, որոնք կառավարվում էին հինգ նշանաւոր մելիքներով, որոնցից ոմանք, որպէս ես մտածում եմ, յ ի մ ա ր ա բ ա ր իրանց ծագումը դուրս են բերում Հայաստանի թագաւորներից»...։

վարութեանը հրամայուեցաւ կալուածագիրը հաստատել։

Ի հարկէ եթէ մի քանի տարի եւս ուշացնելու լինէր Մելիք-Ջումշուդը, նա ամէն բանից կը զրկուէր, որպէս Մելիք-Աբովի ժառանգները զրկուեցան Բօլնիսից։ Բայց Լօռին վաճառուելուց յետոյ, նոյն տարուայ մէջ (1805) Մելիք-Ջումշուդը թողեց Վրաստանը եւ իւր հպատակների հետ տեղափոխուեցաւ Ղարաբաղ, իւր հայրենի գաւառը՝ Վարանդա։

Այդ քաջ, միեւնոյն ժամանակ խելացի պատերազմողը շատ նպաստեց ռուսաց տիրապետութեան տարածուելուն Անդրկովկասում։ Դեռ 1803 թուի դեկտեմբեր ամսում, երբ իշ. Ցիցիանովը պաշարեց Գանձակը։ Մելիք-Ջումշուդը իւր սեպհական ձիաւորներից կազմած հայկական գնդով կանգնած էր այդ բերդի պարիսպների մօտ։ Նրա զօրքերի թուում գտնվում էին Թիֆլիզի հայոց առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսը եւ Ներսէս վարդապետը, որ վերջը հայոց անմոռանալի Ներսէս Ե-րդ կաթողիկոսը դարձաւ։ Այդ եռանդոտ եկեղեցականը, իւր հայրենիքը պարսից լծից ազատելու համար, մասնակցում էր իշ. Ցիցիանովի արշաւանքներին, որպէս Երկայնաբազուկ-Արղութեան Յովսէփ արքեպիսկոպոսը մի ժամանակ մասնակցում էր կոմս Զուբովի արշաւանքներին։ Բերդի պաշարումը երկար տեւեց։ Ջաւադ-խանը, որ արդէն ծանօթ է մեր ընթերցողներին, քաջութեամբ պաշտպանվում էր։ Վերջը, 1804 թ. 3 յունուարի, ռուսաց եւ հայոց զօրքերը, սաստիկ յարձակում գործելով պարսպի մի մասը խորտակում են եւ ներս մտնում։ Բերդի մէջ մի քանի ժամ շարունակվում էր կռիւը եւ կոտորածը, որ դադարեց այն ժամանակ, երբ Ջաւադ-խանը սուրը ձեռքին իւր որդիների հետ ընկաւ։

Այնուհետեւ Մելիք-Ջումշուդը միւս մելիքների հետ իրանց զօրքերով մասնակցեցին իշ. Ցիցիանովի շիրվանեան եւ երեւանեան արշաւանքներին եւ ոչ սակաւ ծառայութիւններ ցոյց տուին։

Մելիք-Ջումշուդի խորհրդով եւ աշխատութեամբ Գանձակի բերդը գրաւելուց յետոյ, Շուշի բերդի Իբրահիմ-խանը՝ Ղարաբաղի մելիքների վաղեմի թշնամին, բոլորովին առանց պատերազմի ընդունեց ռուսաց հպատակութիւնը (1805 թ.)։

Իսկ երբ մի քանի ամսից յետոյ (1806 թ. 8 փետ.) իշ. Ցիցիանովը սպանուեցաւ Բագուի Ցուսէին-Ղուլի-խանի դաւաճանութեամբ[1], այդ քաղաքը ներս մտնելու միջոցին, — նոյն ժամանակ, հէնց որ ռուսաց զօրքերի գլխաւոր հրամանատարի մահուան լուրը տարածուեցաւ, Անդրկովկասի ամբողջ մահմեդական ազգաբնակութիւնը մեծ

[1] Իշխան Ցիցիանովի սպանման մանրամասնութիւնները յայտնի են Անդրկովկասի պատմութեան մէջ. բայց մեզ՝ հայերիս համար, հետաքրքիր է այն, որ Բագուի ամբողջ հայ հասարակութիւնը պէտք է ռուսաց գլխաւոր հրամանատարի վիճակին ենթարկուէր, եթէ մի բարեսիրտ պարսիկ չազատէր նրանց։ Դեռ Ցիցիանովը Բագուին չհասած, տեղային հայերը ցոյց տուին ռուսներին սաստիկ համակրութիւն եւ աջակցութիւն այդ բերդը տիրելու համար։ Բացի դրանից մի հայ, որ աւելի մօտ էր Ցուսէին-Ղուլի-խանին, եւ տեղեակ նրա չար դիտաւորութիւններին, իւր գաղտնի նամակով առաջուց իմացում տուեց իշխանին, որ զգուշանայ, որովհետեւ նրա դէմ դաւաճանութիւն կայ։ Իշ. Ցիցիանովը նրա նախազգուշութեան վրայ ուշադրութիւն չդարձրեց եւ պատժուեցաւ։ Այնուհետեւ խանը կամեցաւ պատժել Բագուի ամբողջ հայ հասարակութիւնը, նրանց ռուսներին ցոյց տուած համակրութեան համար։ Նա խորհրդակցեց քաղաքի մահմեդականների նշանաւորների հետ եւ ստացաւ նրանց հաւանութիւնը բոլոր հայերին հաւաքուել եկեղեցիների մէջ։ Բայց մի պարսիկ հաջի, որ խոհեմ եւ բարեսիրտ մարդ էր, շտապում է խանի մօտ, եւ ցոյց տալով նրա բարբարոսութեան վատ հետեւանքները, կարողանում է ամոքել նրա բարկութիւնը եւ ազատում է հայերի կեանքը։ Այնուհետեւ Բագուի հայերը միշտ մեծ յարգանքով եւ երախտագիտութեամբ են վերաբերուել դէպի այդ մարդուտունը։

յուղմունքի մէջ ընկաւ. համարեա ամեն տեղ սկսեցին ապստամբական ցոյցեր անել:

Այդ ժամանակ պարսից զօրքերը գտնվում էին Երասխ գետի աջ ափերի վրայ, պարսից թագաժառանգ Աբաս-Միրզայի անձնական հրամանատարութեան ներքոյ:

Նոյն ժամանակ Շուշի բերդի Իբրահիմ-խանը, չնայելով որ մի քանի ամիս առաջ հպատակութեան երդում էր տուել ռուսաց կառավարութեան, հէնց որ լսեց իշ. Ցիցիանովի մահը, կրկին դաւաճանեց իւր երդումը: Նա գաղտնի կերպով ուղարկեց իւր որդի Մամադ-Հասան-աղային Աբաս-Միրզայի մօտ, եւ յայտնելով նրան երկրի թափո̊ւր դրութիւնը ռուսաց զօրքերից, այլեւ մահմեդականների կատաղութիւնը ռուսների դէմ, հրաւիրեց նրան փութով անցնել Երասխը, խոստանալով թէ ինքն էլ կը միանայ պարսից զօրքերի հետ եւ կ՚առաջնորդէ նրանց ռուսներին ջարդելու:

Աբաս-Միրզան զօրքերի ահագին բազմութեամբ անցաւ Երասխը եւ մօտեցաւ Շուշի բերդին: Այնտեղ գտնվում էին մի քանի հարիւր ռուս զինուոր միայն փոքրաթիւ կազակների հետ, փոխ-գնդապետ Լիսանեւիչի հրամանատարութեան ներքոյ, որ յայտնի էր տեղացիներին անունով դալի-մայօր, որ նշանակում է գիժ-մայօր:

Աբաս-Միրզան արդէն բանակ էր դրած Շօշի գիւղի[1] մօտ գտնուած լեռան բարձրաւանդակի վրայ եւ այնտեղից պատրաստվում էր ամբակոծել Շուշի բերդը: Այդ միջոցին Իբրահիմ-խանը, իւր հետ առնելով իւր ընտանիքը, որ բաղկացած էր 24 հոգուց, գիշերով ծածուկ դուրս եկաւ բերդից, եւ կամենում էր դիմել դէպի Աբաս-

[1] Շօշի հայաբնակ գիւղը գտնվում է մօտաւորապէս երեք վերստ հեռաւորութեան վրայ Շուշի բերդից:

*Միրզայի բանակը։ Ոչ ոք չկարողացաւ նկատել այդ բացի Մելիք-Ջումշուդից, որին առաջուց յայտնի էին խանի դիտաւորութիւնները։ Մելիք-Ջումշուդն այդ ժամանակ իւր հեծելախմբով գտնվում էր բերդի մէջ։ Նա անմիջապէս իմացում տուեց փոխ-գնդապետ Լիսանեւիչին, եւ երկուսը միասին վերառնելով իրանց հետ մի խումբ ձիաւորներ, փութով հետամուտ եղան Իբրահիմ-խանին։ Նրան բռնեցին կէս ճանապարհի վրայ։ Խնայեցին կանանց եւ երեխաներին միայն, իսկ Իբրահիմ-խանին եւ հետը եղող նրա բոլոր ազգականներին կոտորեցին*[1] (1806 *թ. մայիս ամսում*)։

*Ղարաբաղի հայոց իշխանութիւնների կործանողը սպանուեցաւ։ Մելիք-Ջումշուդն առաւ ոչ միայն իւր, այլեւ բոլոր մելիքների վրէժը Իբրահիմ-խանից։ Նրա հայրը՝ Մելիք-Շահնազարը, բարձրացրեց այդ գազանին եւ բոլոր ղարաբաղցիների անէծքի ու նախատինքի առարկան դարձաւ։ Իսկ անպիտան հօր պիտանի որդին քաւեց հօր մեղքերը...։ Բայց արդէն շատ ուշ էր...։ Իբրահիմ-խանի մահը չէր կարող բժշկել այն վէրքերը, որ ստացել էին Ղարաբաղի մելիքները Շուշի բերդի խաներից...։*

*Այս բոլոր ծառայութիւնների համար Մելիք-Ջումշուդն ստացաւ գնդապետի աստիճան։*

*Ահա ինչ է գրում Մելիք-Ջումշուդը իւր* 1806 *թ.* 2 *դեկտեմբերի նամակի մէջ Ս. Պետերբուրգ Աղա-Մինաս Լազարեանին.*

*"Թէեւ սրանից առաջ մի քանի անգամ պատասխանել եմ ձեր նամակներին, բայց որովհետեւ չգիտեմ՝*

---

[1] Իբրահիմ-խանի որդի Մէհտի-խանը՝ հիւանդութեան պատճառով չկարողացաւ հետեւել հօրը, մնաց Շուշի բերդում եւ այսպիսով ազատուեցաւ կոտորածից։ Ռուսները յետոյ դրան նշանակեցին Իբրահիմ-խանի տեղը։

արդեօք հասնո՞ւմ են նրանք ձեր ձեռքը, այդ պատճառով հարկաւոր եմ համարում նորից պատասխանել ձեր բոլոր հարցերին։

"Նախ՝ դուք դժգոհ էք այն մասին, թէ ինչո՞ւ մեր (մելիքների) անունները չեն յիշւում վրաց կնեազների անունների թւում, որոնք նշանաւոր են գտնուել զանազան կռիւներում։

"Այդ առարկայի մասին թէև ես ինքս վշտացած եմ, բայց դարձեալ կ'ասեմ, որ մենք՝ Խ ա մ ս ա յ ի մելիքներս աւելի քան թէ նրանք (վրաց իշխանները) գերազանցել ենք պատերազմների մէջ և պէտք է արժանի լինէինք աւելի բարձր պարգևների ու շնորհների, — բայց հանգուցեալ իշխան Ցիցիանովի սրտում արմատացած ատելութիւնը դէպի հայոց ժողովուրդը (թէև Վրաստանում ծնուած հայերին նա վրացիներ էր համարում) թոյլ չէր տալիս նրան հասցնել ի տեղեկութիւն ամենաողորմած Թագաւորի մեր կատարած ամենադժուարին ծառայութիւնները, և այն քաջութիւնները, որ մենք ցոյց տուինք Գանձակի գրաւման ժամանակ, այլև Շիրվանի ու Երևանի արշաւանքների միջոցներում։ Այնտեղ իշխանը (Ցիցիանովը) տեսնելով ինձ իմ գեղեցիկ կերպով կազմակերպուած զօրքերի հետ, որ ծառայում էին ռուսաց կառավարութեանը առանց որևէ շահի (ձրի, առանց ռոճիկ ստանալու), խոստացաւ աղերսամատոյց լինել ինձ համար կայսրից դ ր օ շ ա կ բերել տալու, որ կարելի է թէ ստանայի, եթէ չպատահէր իշխանի հետ մի այնպիսի դժբախտութիւն (Բագուի մէջ սպանուելը)։

"Իշխան Ցիցիանովի մահից յետոյ ես գտնուելով այնտեղ (Թիֆլիզում) և տեղեակ լինելով պարսիկների բոլոր չար դիտաւորութիւններին, — և որպէս զի կարելի

*լինի հաստատել Ռուսաստանի տիրապետութիւնը Ղարաբաղի նոր գրաւած երկրի վրայ, — գրաւոր կերպով բացատրեցի իմ մի քանի խորհրդածութիւններս գեներալ-մայոր Նեսվետայեվին, իսկ ես ինքս անձամբ գնացի Շուշի բերդը եւ միացայ ռուսաց զօրքերին։*

*«Երբոր պարսիկները լսեցին իշխան Ցիցիանովի մահուան լուրը, իսկոյն Բաբա-խանի[1] որդի Աբաս-Միրզայի առաջնորդութեամբ, նրանց բազմաթիւ զօրքերը թափուեցան Ղարաբաղի վրայ, եւ միանալով տեղային թաթարների հետ, կամենում էին կոտորել ռուսաց ամբողջ զօրքերը եւ այն բոլոր հայերին, որ գտնվում էին բերդում (Շուշի)։ Այդ մտքի հետ համաձայն էր նաեւ Շուշիի տիրապետող Իբրահիմ-խանը, եւ այդ պատճառով էլ ստացաւ իւր արժանի պատիժը (սպանուեցաւ)։*

*«Միեւնոյն ժամանակ գեներալ-մայոր Նեսվետայեվին հաճոյ թուեցան իմ գրաւոր առաջադրութիւնները, եւ նա իմ խորհրդով ուղարկեց Տրոյիցկիյ զօրագունդը Ղարաբաղ՝ յօգնութիւն այնտեղ գտնուած ռուսաց զօրքերի։ Յիշեալ զօրագունդը, Գանձակից անցկենալու միջոցին, առաւ իւր հետ գնդապետ Կարեագինին նրա զօրքերի հետ եւ շտապեց մեզ մօտ (Շուշի) օգնութիւն հասցնելու։ Բայց դեռ ճանապարհի վրայ գտնուած ժամանակ նրանք գրեցին ինձ, որ իմ ձիաւորների խմբով դուրս գամ նրանց առաջ։ Թողնելով իմ զօրքից բաւականաչափ թուով բերդի (Շուշիի) պահպանութեան համար, ես վեր առայ իմ ձիաւորների մի մասը եւ գնացի, միացայ նրանց հետ. իսկ երեք օրից յետոյ մենք ամենքս միասին կռվում էինք, եւ Ամենաբարձրեալի օգնութեամբ կատա-*

[1] Բաբա-խան կամ Բաբա-խան-շահ կոչում էին պարսից Ֆաթալի-շահին։

ինչպէս յաղթեցինք մեր թշնամիներին (պարսիկներին) եւ նրանց հալածեցինք մի այնպիսի արագութեամբ, որ (Աբաս-Միրզայի) 20.000ի չափ հեծելազօրքը սարսափելի երկիւղով անցաւ Երասխի միւս կողմը։

"Գեներալ-մայոր Նեբօլսինը, միեւնոյն Տրոյիցկիյ զօրագնդի շէֆը, եւ գնդապետ Կարեագինը՝ Եգերեան զօրագնդի շէֆը, տեսան ինձ կռուելու ժամանակ, տեսան իմ եւ իմ զօրքի քաջութիւնները, վերջապէս տեսան իմ հաւատարմութիւնը, — որովհետեւ հացի պակասութեան ժամանակ ես մատակարարեցի պաշար ռուսաց զօրքերին եւ ցոյց տուի նրանց բազմաթիւ ծառայութիւններ, — այդ բոլորը խիստ հաճելի թուեցան նրանց եւ այդ պատճառով հաղորդագրելով իմ մատուցած բոլոր ծառայութիւնների մասին, նրանք խնդրեցին գեներալ-մայոր Նեսվետայեվից, որ նա հասցնէ ի տեղեկութիւն մեր ամենաողորմած թագաւորին։ Բայց դժբախտաբար եւ ինձ անյայտ պատճառներով նա (Նեսվետայեվը) չներկայացրեց։

"Իսկ երբոր ես եկայ այստեղ (Թիֆլիզ), այն ժամանակ խնդիր մատուցի նորին պայծառափայլութեան կոմս Ի. Վ. Գուդովիչին, որ, յոյս ունիմ, այն սիրոյ համար, որ ունի դէպի ձեզ եւ դէպի մեր ժողովուրդը (որին նա խնամք է ցոյց տալիս) կը վարձատրէ ինձ այն ամենի համար, ինչ որ ես մինչեւ այսօր կատարել եմ, ի հարկէ ես զրկուած չեմ լինի այդ դէպքում Ամենաբարձրեալի օգնութիւնից եւ ձեր ողորմածութիւնից։

"Երկրորդ՝ դուք գրում էք, թէ ինչու մենք չենք կազմակերպում կանոնաւոր զօրագնդեր։ Դուք հաւատացած եղէք, որ մենք հեշտութեամբ կարող էինք անել այդ եւ այն էլ առանց ուրիշի օգնութեան, եթէ մենք այժմ տէր լինէինք մեր առաջուայ հարստութեան եւ

ժողովրդին, որ սովի եւ ժանտախտի պատճառով ցրւեկաւ դէպի Շիրվան եւ Վրաստան։ Իմ հայրը (Մելիք-Շահնազարը) եւ մեր նախնիքը միշտ պահում էին իրանց մօտ այդպիսի զօրագնդեր, որոնց կազմակերպելը դուք ինձանից էք պահանջում։ Բայց այն ժամանակ նրանք տիրում էին ամբողջ Ղարաբաղի վրայ, եւ բոլոր հայերն ու Թուրքերը նրանց հպատակներն էին։ Ուրեմն եթէ դուք ցանկանում էք, որ հայոց ժողովուրդն ազատուէր բարբարոսների (Թաթարների) բռնակալութիւնից, եթէ ցանկանում էք, որ բոլորը (գաղթականները) կրկին վերադառնային դէպի իրանց հայրենիքը, պահպանէին կանոնաւոր զօրագնդեր եւ լաւ ծառայութիւններ մատուցանէին մեր ամենաողորմած Թագաւորին, պէտք է դուք միջնորդէք. 1ին՝ հրամայէին մեր ցրւ եկած ամբողջ ժողովրդին, որոնք գտնվում են Շիրվանում եւ Վրաստանում, որ նրանք կրկին վերադառնային իրանց հայրենիքը (Ղարաբաղ)՝ 2րդ՝ որ նրանք ազատ լինէին բոլոր հարկերից եւ տուրքերից երեք տարի ժամանակով. իսկ 3րդն այն է, որ հայերը չլինէին Թուրքերի իշխանութեան ներքոյ, որովհետեւ դրանք չեն կարող միշտ հաւատարիմ մնալ մեր քրիստոսապաշտ Թագաւորի կառավարութեանը[1],

---

[1] Ռուսները Ղարաբաղի մելիքների ջանքերով տիրելով Ղարաբաղին, նոյն մելիքների վաղեմի թշնամի Իբրահիմ-խանին թողեցին որպէս այդ երկրի գլխաւոր կառավարիչ։ Իբրահիմ-խանը դաւաճանեց ռուսներին եւ սպանուեցաւ։ Նրա տեղը նշանակեցին դաւաճանի մեծ որդուն՝ Մէհտի-խանին, աւելի ընդարձակ իրաւունքներով. դա եւս աւելի մեծ դաւաճանութիւն գործեց. 1822 թուին Ղարաբաղից փախաւ Պարսկաստան եւ պարսից զօրքերի հետ վերադառնալով, սկսեց պատերազմել ռուսների հետ։ Անհասկանալի է, թէ նոյն ժամանակուայ ռուսաց պաշտօնականներն, ի՞նչ էին գտնում այդ նենգաւոր խաների մէջ, որ նրանց գերադասում էին հայոց մելիքներից, որոնք ամենայն զոհաբերութեամբ անձնատուր էին եղած Ռուսաստանին։

այլ ընդհակառակն աշխատում են օրըստօրէ ուժաթափ անել հայոց ժողովուրդը, որպէս զի դիւրութեամբ կարողանան կատարել իրանց չար դիտաւորութիւնները. 4րդ՝ որ նշանակէին մեզ համար մի գումար, որով մենք կարողանայինք պատրաստել հարկաւոր եղած զէնքերը այն զօրագնդերի համար, որ պէտք է կազմակերպել, որպէս զի միշտ առանց որեւիցէ պակասութեան պատրաստ լինէին պատերազմ գնալու ռուսաց զօրքերի հետ։

«Եթէ մեր ամենաողորմած Թագաւորը ցոյց կը տայ մեզ այսպիսի գթածութիւն, այն ժամանակ դրանով Նա իրականապէս կը վերանորոգէ հայերի ուժերը եւ կը հարկադրէ նրանց ամեն կողմից գիմել Նորին Կայսերական Մեծութեան քաղցր հովանաւորութեան ներքոյ։

«Ես հարկաւոր չեմ համարում այդ մասին երկար ձանձրացնել ձեզ իմ խնդիրքներով, որովհետեւ դուք հազար անգամ աւելի քան թէ ես, աշխատում էք հայոց ժողովրդի ծաղկելու համար, եւ գիշեր ու ցերեկ չէք դադարում այդ մասին հոգ տանելուց։ Դրա համար ես յուսով եմ, որ առանց իմ խնդրելու եւս դուք եռանդով կ՚աշխատէք այդ գործի ի կատար ածելու համար, որով կը թողնէք ձեզանից յետոյ յաւիտենական յիշատակ՝ ձեր մի այսպիսի բարեգործութեան համար»....։

Ստորագրած է Մելիք-Ջումշուդ Մելիք-Շահնազարեան[1]։

1806 թուին, Ղարաբաղի տիրապետող հինգ մելիքները[2], բոլորը միասին համարեա միեւնոյն բովանդակու-

[1] Թէ այս նամակը եւ թէ հետեւեալը, որից քաղուածքներ ենք անում, թարգմանուած են պ. Երիցեանի „Кавказсвая Старина“ ամսագրի թիւ 2. 1872 թուի տետրակից։

[2] Այդ նամակին ստորագրել են. 1. Վ ա ր ա ն դ ա յ ի տիրապետող փոխ-գնդապետ Մելիք-Ջումշուդ Մելիք-Շահնազարեանը. 2. Ջ ր ա բ ե ր դ ի

թեամբ նամակ են գրում Աղա-Մինաս Լազարեանին Ս. Պետերբուրգ: Այդ նամակի մէջ մելիքները դարձեալ արտայայտում են միեւնոյն գանգատները, թէ նրանց մատուցած ծառայութիւնները ոչ միայն չեն գնահատվում,՝ այլ մինչեւ անգամ հարկաւոր չեն համարում հաղորդել ի տեղեկութիւն թագաւոր կայսրի, եւայլն:

«Դուք (Լազարեանը) ասում էք, թէ ափսոսում էք եւ միանգամայն զարմանում էք, որ մեր անունները եւ մեր մատուցած ծառայութիւնները ոչ մի տեղ չեն յիշատակվում, եւ թէ մեր աշխատութիւնները ի զուր կորչում են: Այդ հարցին մենք պատասխանում ենք, թէ ահա հէնց դրա մէջն է կայանում մեր ցաւն ու դժբախտութիւնը. որովհետեւ մենք մինչեւ մեր արեան վերջին կաթիլը չենք խնայում մեր անձը ռուսաց հայրենիքի համար եւ միշտ աշխատում ենք, որ մեր ամենահաւատարիմ հպատակութեան զգացմունքները հասնէին մինչեւ Նորին Կայսերական Մեծութեան ամենաողորմած գահը, բայց ինչ օգուտ, որ այդ բոլորը մնում է ծածկուած վարագոյրի տակ»:

Յետոյ իրանց նամակում ի միջի այլոց մելիքները խնդրում են. 1ին՝ որ թոյլ տրուի նրանց հաւաքել իրանց զանազան երկրներում ցրիւ եղած ժողովուրդը Ղարաբաղում, իրանց՝ մելիքների կառավարութեան ներքոյ. 2րդ՝ որ նրանք ազատ լինէին խանի իշխանութիւնից եւ նրանց ժողովուրդը բաժանուած լինէր Թուրքերից, եւ խանի փոխարէն նշանակուած լինէր մի ռուս աստիճա-

---

տիրապետող Մելիք-Ադամ Մելիք-Մէջլումեանը, 3. Գիւլիստանի տիրապետող Մելիք-Բաղիրը (հանգուցեալ Մելիք-Ֆրէյդունի եղբայրը) եւ Մելիք-Աբով Մելիք-Բէգլարեանը, 4. Խաչէնի տիրապետող Մելիք-Ալլահվերդին եւ Մելիք-Միրզախանեանը եւ 5. Տիզակի տիրապետող Մելիք-Ղահրաման Մելիք-Աւանեանը:

նաւոր. Յրդ՝ որ մելիքներին տրուէր, որպէս առաջուց խոստացել էին նրանց, նոյնպիսի ամենաողորմած արտօնութիւններ, որպիսին վայելում էր Նախիջեւան քաղաքը (Դօնի վրայ), այսինքն նրանց օրէնքները եւ դատարանները հիմնուած լինէին իրանց երկրի վաղեմի սովորութիւնների եւ աւանդութիւնների վրայ։ Եւ եթէ նրանց այսպիսի արտօնութիւններ տային, մելիքները խոստանում էին կազմել աւելի կանոնաւոր զօրքեր՝ օգնելու համար ռուսներին ամեն դէպքերում։ Բացի դրանից, խոստանում էին որպէս հարկ վճարել ռուսաց կառավարութեան իւրաքանչիւր տարի 4000 չետվերտ հաց եւ 4000 ոսկի փող։

Այդ նամակից երեւում է, որ մելիքներն այժմ իրանց պահանջները բաւական չափաւորել էին, նրանք այլեւս չէին մտածում Ղարաբաղի վաղեմի հայկական իշխանութիւնները վերականգնելու մասին, այլ պահանջում էին մի տեսակ ինքնավարութիւն, ռուսաց հովանաւորութեան ներքոյ, խոստանում էին պահպանել իրանց երկիրը իրանց զօրքերով, ամեն տարի վճարելով մի որոշեալ քանակութեամբ հարկ։

Մելիքների գործի թուլանալու գլխաւոր պատճառը պէտք է որոնել նրանց հպատակների գաղթականութեան մէջ։ Սովը, ժանտախտը, եւ զանազան քաղաքական հանգամանքներ նրանց ցիրուցան արեցին դէպի ամեն կողմը։ Ամեն տեղ նրանց փայլուն խոստմունքներ արեցին եւ ամեն տեղ նրանք խաբուեցան իրանց յոյսերի մէջ։

Կրկին ի մի վայր գումարել այդ ժողովուրդը, հայրենի հողի վրայ՝ նրանց ոչ միայն թոյլ չէին տալիս, այլ մինչեւ անգամ արգելում էին։ Այդ քաջ ժողովուրդն աւելի հարկաւոր էին համարում այն երկրների պահպա-

նութեան համար, ուր որ զետեղուած էին: Թէեւ Ղարաբաղի գաղթականների մի մասը Վրաստանից տեղափոխուեցաւ իւր հայրենիքը, բայց դարձեալ դեռ բաւական թուով մնացել էին այնտեղ: Շամախու գաւառը գաղթողներից դեռ ոչ ոք չէր վերադարձել:

Ամենակորստաբերն այն էր, որ գաղթականութեան պատճառով Ղարաբաղի հայ ժողովրդի բացակայութեան ժամանակ նրանց երկրները, գիւղերը, հողերը մնացին անտէր, դատարկ: Այդ դէպքից օգուտ քաղելով Շուշի բերդի Իբրահիմ-խանը եւ նրա յաջորդ Մէհտի-խանը՝ գրաւեցին մելիքների երկրները եւ բնակեցրին մահմեդականներով: Երբ Ղարաբաղի գաղթականների մի մասը կրկին վերադարձաւ իւր հայրենիքը, մելիքներին մեծ ջանք էր հարկաւոր, որ կարողանային խաներից յետ խլել իրանց գիւղերն ու հողերը, եւ նոր բնակեցրած մահմեդականներին հեռացնելով, նրանց տեղը հաստատէին երկրի վաղեմի բնակիչներին — հայերին: Ռուսաց նոր տիրապետութիւնն այդ ժամանակ դեռ այն աստիճան անհաստատ դրութեան մէջ էր, որ ռուսները ո՛չ միայն ժամանակ չունէին, այլ մինչեւ անգամ հարկաւոր չէին համարում մելիքների եւ խաների կալուածական վէճերի մէջ մտնել, եւ այդ էր պատճառը, որ մելիքներից շատերը կորցրին իրանց ընդարձակ կալուածները, կամ ձեռք բերեցին նրանց մի մասը միայն: Ինչպէս ասում են, խաների “խաթրին„ այդ ժամանակ չէին ուզում դիպչել, իսկ հաւատարիմ, քրիստոնեայ մելիքներին շողոքորթելու հարկ չկար:

## XLI.

Մնում է մեզ մի քանի խօսք ասել Գիւլ-Եաթաղ բերդի Մելիք-Ալահվէրդեան Մելիք-Ռուստամի մասին,

*եւ մենք շուտով կը վերջացնենք Խամսայի մելիքութիւնների պատմութիւնը։*

*Ընթերցողը յիշում է, որ Մելիք-Ռուստամը Խամսայի տիրապետող մելիքների կարգից չէր, այլ Շուշի բերդի մահմեդական խաներին մատուցած ծառայութիւնների համար մելիքութիւն ստացաւ։ Նա իւր զօրքերով օգնեց Իբրահիմ-խանին Գանձակի պաշարման ժամանակ եւ Մելիք-Մէջլումի սպանման պատճառը դարձաւ (տես գլ.* XXXIII)։ *Նա Աղա-Մամադ-խանի սպանուելուց յետոյ օգնեց Իբրահիմ-խանին, եւ վերջինը կրկին Շուշի բերդի տէրը դարձաւ (տես գլ.* XXXIV)։ *Նա ուրիշ շատ ծառայութիւններ կատարեց Շուշի բերդի բռնակալի օգտին ի վնաս հայոց մելիքների. այդ բոլորն իրանց տեղերում պատմել ենք։*

*Ղարաբաղի մելիքների վերջին գաղթականութեան ժամանակ Մելիք-Ռուստամը իւր հայրենիքից չհեռացաւ։ Նրա յարաբերութիւնները Շուշի բերդի Իբրահիմ-խանի հետ այնքան լաւ էին, որ նա կարիք չունէր օտար երկրներում ապահովութիւն որոնելու։ Բայց միւս կողմից նրան սպառնում էր մի վտանգ, այն է՝ Գանձակի Ջաւադ-խանի վրէժխնդրութիւնը։*

*Ջաւադ-խանը չէր կարող մոռանալ, որ նա Իբրահիմ-խանի հետ միանալով, պաշարեց իւր բերդը, դաւաճանութեամբ իւր աներ Ապրես-աղային մտցրեց բերդի մէջ, տեղային հայերին ապստամբացրեց իւր դէմ, Մելիք-Մէջլումին սպանել տուեց, եւայլն։*

1799 *թուին, այսինքն Մելիք-Մէջլումի մահից երեք տարի յետոյ, Ջաւատ-խանը յարմար ժամանակ գտաւ Մելիք-Ռուստամից վրէժխնդիր լինելու։ Նա իւր զօրապետներից մէկի առաջնորդութեամբ, որին կոչում էին*

Մըրղ-Հաջի, որ աւելի հսկայ էր, քան թէ հասարակ մարդ, բազմաթիւ ապստամբներ է ուղարկում Մելիք-Ռուստամի երկիրն աւերակ դարձնելու եւ նրան գերի բերելու համար։ Մելիք-Ռուստամն այդ լսելով, վեր է առնում իւր ձիաւորների խումբը եւ դուրս է գալիս թշնամու հանդէպ։ Մելիքի հետ է լինում իւր քաջ նիզակակից Տէր-Ցարութիւն քահանան[1]։ Նրանք հանդիպում են թշնամուն Սուլթանի տափ կոչուած դաշտում[2]։ Թշնամին մի քանի անգամ աւելի բազմաթիւ է լինում քան մելիքի զօրքերը։ Բայց որովհետեւ այդ ժամանակուայ կռիւների մէջ հակառակ կողմերի բախտը վճռվում էր շատ անգամ առաջնորդող անձինքների մենամարտութեամբ, քան թէ զօրքերի հաւաքական պատերազմով, այդ պատճառով Մըրղ-Հաջին կայծակի արագութեամբ նետվում է Մելիք-Ռուստամի վրայ։ Վերջինը ժամանակ չէ տալիս նրան իւր մօտ հասնելու եւ հեռուից հրացանի գնդակով ցած է գլորում նրա ձին, եւ հսկան մնում է ձիու տակը։ Այդ միջոցին Մելիք-Ռուստամն արծուի արագութեամբ վրայ է հասնում, թուրը մերկացնում եւ պատրաստվում է սպանել նրան։ Բայց հսկան աղաչում է խնայել իւր կեանքին. յայտնելով թէ անձնատուր է լինում։ Մելիքը մեծահոգութեամբ խղճում է նրան, սակայն իւր թուրը պատեանում դնելու միջոցին, ուխտազանց թուրքը, որ թաւալուած էր նրա ոտների մօտ, տակից յանկարծ արձակում է ատրճանակը եւ մելիքին մահացու վէրք է

---

[1] Այդ Տէր-Ցարութիւնը Աստուածատուր քահանայի որդին եւ նշանաւոր Դալի-Մահրասայի տոհմից էր, Ջրաբերդի Մեծշէն կոչուած գիւղից, ուր մինչեւ այսօր ապրում են Դալի-Մահրասայի ժառանգները եւ յայտնի են իրանց քաջութեամբ։

[2] Սուլթանի տափը գտնվում է Մարդակերտ գիւղի մօտ, Թարթար գետի աջ ափի մօտ։

պատճառում։ Այդ միջոցին վրայ է հասնում մելիքի նիզակակից Տէր-Յարութիւնը, գտնում է նրան հոգեվարքի մէջ։ Թողնելով նրան նոյն դրութեան մէջ, յարձակվում է Մըրղ-հաջիի վրայ եւ սպանում է նրան։ Բայց ինքը եւս սպանվում է նոյն կռուի մէջ, երբ կատաղած մահմեդականները՝ տեսնելով իրանց առաջնորդի դիակը, աւելի սաստկացնում են կռիւը։

Մելիք-Ռուստամի գլուխը կտրում են, տանում Գանձակ եւ նուիրում նրա թշնամի Ջաւադ-խանին, որից տեղային հայերը խնդրելով առնում են քաջ մարդու գլուխը եւ թաղում իրանց եկեղեցու դրան մօտ։ Իսկ մարմինը թաղվում է իւր հայրենի Գիւլ-Նաթաղ բերդի գերեզմանատանը[1]։

Մելիք-Ռուստամը որդի չթողեց[2], այդ պատճառով նրա մահից յետոյ մելիք եղաւ նրա եղբայր Միրզա-բէկի որդի Րօվշանը։

Մելիք-Րօվշանը իւր նախորդների նման բարեկամ չմնաց Շուշի բերդի խաներին եւ մասնակցում էր ռուսաց կռիւներին խաների դէմ։ Գանձակի պաշարման ժամանակ նա իւր խմբով գտնվում էր իշ. Ցիցիանովի բանակի մէջ եւ քաջութեամբ կռվում էր Ջաւադ-խանի դէմ, որի հետ ունեցած թշնամութիւնը՝ թէ Մելիք-Ռուստամի սպանման պատճառով եւ թէ առաջ, մեր ընթերցողներին յայտնի է։

Երբ իշ. Ցիցիանովը գրաւեց Գանձակը, Մելիք-Րօվշանը թողեց Ջրաբերդը եւ իւր ընտանիքով տեղափո-

[1] Մելիք-Ռուստամի եւ նրա քաջ նիզակակից Տէր-Յարութիւն քահանայի շիրիմները կից են, դրած են միմեանց մօտ. երկուսի տապանաքարերը եւս կրում են միեւնոյն թուականը՝ հայոց ռ. մ. խ. ը. (1799)։

[2] Մելիքի մահից չորս ամիս յետոյ նրա կինը՝ Վարդ խաթունը, ծնեց Բալա-բէկին։

Մըրղ-Հաջի, որ աւելի հսկայ էր, քան թէ հասարակ մարդ, բազմաթիւ ասպատակներ է ուղարկում Մելիք-Ռուստամի երկիրն աւերակ դարձնելու եւ նրան գերի բերելու համար: Մելիք-Ռուստամն այդ լսելով, վեր է առնում իւր ձիաւորների խումբը եւ դուրս է գալիս թշնամու հանդէպ: Մելիքի հետ է լինում իւր քաջ նիզակակից Տէր-Յարութիւն քահանան[1]: Նրանք հանդիպում են թշնամուն Սուլթանի տափ կոչուած դաշտում[2]: Թշնամին մի քանի անգամ աւելի բազմաթիւ է լինում քան մելիքի զօրքերը: Բայց որովհետեւ այդ ժամանակուայ կռիւների մէջ հակառակ կողմերի բախտը վճռվում էր շատ անգամ առաջնորդող անձինքների մենամարտութեամբ, քան թէ զօրքերի հաւաքական պատերազմով, այդ պատճառով Մըրղ-Հաջին կայծակի արագութեամբ նետվում է Մելիք-Ռուստամի վրայ: Վերջինը ժամանակ չէ տալիս նրան իւր մօտ հասնելու եւ հեռուից հրացանի գնդակով ցած է գլորում նրա ձին, եւ հսկան մնում է ձիու տակը: Այդ միջոցին Մելիք-Ռուստամն արծուի արագութեամբ վրայ է հասնում, թուրը մերկացնում եւ պատրաստվում է սպանել նրան: Բայց հսկան աղաչում է խնայել իւր կեանքին. յայտնելով թէ անձնատուր է լինում: Մելիքը մեծահոգութեամբ խղճում է նրան, սակայն իւր թուրը պատեանում դնելու միջոցին, ուխտազանց թուրքը, որ թաւալուած էր նրա ոտների մօտ, տակից յանկարծ արձակում է ատրճանակը եւ մելիքին մահացու վէրք է

---

[1] Այդ Տէր-Յարութիւնը Աստուածատուր քահանայի որդին եւ նշանաւոր Դալի-Մահրասայի տոհմից էր, Ջրաբերդի Մեծշէն կոչուած գիւղից, ուր մինչեւ այսօր ապրում են Դալի-Մահրասայի ժառանգները եւ յայտնի են իրանց քաջութեամբ:

[2] Սուլթանի տափը գտնվում է Մարդակերտ գիւղի մօտ, Թարթար գետի աջ ափի մօտ:

պատճառում։ Այդ միջոցին վրայ է հասնում մելիքի նիզակակից Տէր-Յարութիւնը, գտնում է նրան հոգեվարքի մէջ։ Թողնելով նրան նոյն դրութեան մէջ, յարձակվում է Մըրղ-Հաջիի վրայ եւ սպանում է նրան։ Բայց ինքը եւս սպանվում է նոյն կռուի մէջ, երբ կատաղած մահմեդականները՝ տեսնելով իրանց առաջնորդի դիակը, աւելի սաստկացնում են կռիւը։

Մելիք-Ռուստամի գլուխը կտրում են, տանում Գանձակ եւ նուիրում նրա թշնամի Ջաւադ-խանին, որից տեղային հայերը խնդրելով առնում են քաջ մարդու գլուխը եւ թաղում իրանց եկեղեցու դռան մօտ։ Իսկ մարմինը թաղվում է իւր հայրենի Գիւլ-Նաթաղ բերդի գերեզմանատանը[1]։

Մելիք-Ռուստամը որդի չթողեց[2], այդ պատճառով նրա մահից յետոյ մելիք եղաւ նրա եղբայր Միրզա-բէկի որդի Րովշանը։

Մելիք-Րովշանը իւր նախորդների նման բարեկամ չմնաց Շուշի բերդի խաներին եւ մասնակցում էր ռուսաց կռիւներին խաների դէմ։ Գանձակի պաշարման ժամանակ նա իւր խմբով գտնվում էր իշ. Ցիցիանովի բանակի մէջ եւ քաջութեամբ կռվում էր Ջաւադ-խանի դէմ, որի հետ ունեցած թշնամութիւնը՝ թէ Մելիք-Ռուստամի սպանման պատճառով եւ թէ առաջ, մեր ընթերցողներին յայտնի է։

Երբ իշ. Ցիցիանովը գրաւեց Գանձակը, Մելիք-Րովշանը թողեց Ջրաբերդը եւ իւր ընտանիքով տեղափո-

[1] Մելիք-Ռուստամի եւ նրա քաջ նիզակակից Տէր-Յարութիւն քահանայի շիրիմները կից են, դրած են միմեանց մօտ. երկուսի տապանաքարերը եւս կրում են միեւնոյն թուականը՝ հայոց ռ. մ. խ. ը. (1799)։

[2] Մելիքի մահից չորս ամիս յետոյ նրա կինը՝ Վարդ խաթունը, ծնեց Բալա-բէկին։

խուսեցաւ այդ քաղաքը, վայելում էր իշ. Ցիցիանովի առանձին համակրութիւնը։

Այնուհետեւ նա շատ ծառայութիւններ արաւ ռուսաց զօրքերին՝ թէ նիւթապէս եւ թէ իւր քաջ ձիաւորների խմբերով օգնելով նրանց։ Երբ գնդապետ Կարեագինը՝ Շուշի բերդի մօտ ջարդուելով պարսից բազմաթիւ զօրքերից, փախաւ եւ ամրացաւ Շահ-բուլաղի բերդի[1] մէջ, այստեղ նրա հրամանատարութեան ներքոյ յանձնուած ռուսաց զօրագունդը, ամէն կողմից պաշարուած պարսից զօրքերով, անպատճառ կը ոչնչանար քաղցածութիւնից, եթէ Մելիք-Րովշանը նրանց օգնութիւն չհասցնէր։ Նա իւր ձիաւորների խմբով պատառեց, անցաւ պարսից զօրքերի միջով եւ Կարեագինի զօրագնդին ուտեստի պաշար հասցրեց։

Այդ բոլորն այն աստիճան հռչակեցին Մելիք-Րովշանի անունը, որ ռուսները կամենում էին ուղարկել նրան իւր ձիաւորների հետ դէպի Կարսի կողմերը տաճկաց սահմանների վրայ։ Երբ նա պատրաստուել էր գնալու, մի գիշեր Գանձակի կամուրջից անցկենալու միջոցին, անյայտ ձեռքից հրացանի մի գնդակ արձակուեցաւ եւ նա մէջքից վէրք ստացաւ։

Մէլիք-Րովշանը ոչ ոքի վրայ չէր կարող կասկածել, բացի Մելիք-Մէջլումի որդի փոքր Մելիք-Աթամից, որ այդ ժամանակ Գանձակում էր գտնվում։ Հին տոհմային թշնամութիւնը նորից զրգռուեցաւ երկու ոխերիմ ընտանիքների մէջ, որոնք, որպէս տեսանք մեր պատմութեան ընթացքում, շատ չարիքներ էին գործել միմեանց

[1] Շահ-բուլաղի բերդը մի ամայի բերդ էր այդ ժամանակ, կառուցած Թառնագիւրտի (Տիգրանակերտի) հին աւերակների վրայ։ Այդ բերդը շատ մօտ է Շուշի բերդին։

դէմ: Մելիք-Բախշանը գանգատուեց եւ Գանձակի ռուս բերդապահը կալանաւորեց փոքր Մելիք-Աթամին: Բայց երբ ոչինչ չհաստատուեցաւ, մի քանի օրից յետոյ Մելիք-Աթամին արձակեցին: Այդ սաստիկ վիրաւորեց Մելիք-Բախշանին եւ նա բողոքեց ռուսաց բարձր կառավարութեանը բերդապահի դէմ: Վերջինս սաստիկ յանդիմանութիւն ստացաւ եւ մի քանի օր տնային բանտարկութեան ենթարկուեցաւ:

Բայց երբ իշ. Ցիցիանովը Բագուի մօտ սպանուեցաւ, այնուհետեւ Մելիք-Բախշանը կորցրեց իւր պաշտպանին, եւ նրա յարաբերութիւնները Գանձակի բերդապահի հետ հետզհետէ թշնամական դարձան: Մելիք-Բախշանը մտածեց հեռանալ Գանձակից: Նա իւր հայրենիքը՝ Ջրաբերդ գնալ չկարողացաւ, որովհետեւ Շուշի բերդի Իբրահիմ-խանի յաջորդ Մէհտի-խանի հետ նոյնպէս լաւ յարաբերութիւնների մէջ չէր: Կարեագինի անցքի պատճառով նա հրաւիրել էր իւր վրայ Շուշի բերդի խաների ատելութիւնը, որոնք թէեւ ռուսներին առերես հպատակութիւն էին ցոյց տալիս, բայց սրտով կապուած էին պարսիկների հետ:

Իւր անձնանուէր, բայց չվարձատրուած ծառայութիւնների համար վշտացած, Մելիք-Բախշանը թողեց Գանձակը եւ գնաց Շաքի Դաշ-բուլաղ գիւղը. որ հիմնել էր մի ժամանակ (տես գլ. XXVII) նրա հօրեղբայր Մելիք-Ռուստամը, եւ այնտեղ առանձնացաւ, իրան առժամանակ հեռու պահելով պատերազմի դաշտից: Դաշ-բուլաղում դեռ բնակւում էին Մելիք-Ռուստամի Ջրաբերդից տարած հայ գաղթականները: Մելիք-Բախշանը նրանց իւր հպատակութեան ներքոյ առաւ եւ խաղաղ կեանք էր վարում: Այնտեղ մի քանի տարուց յետոյ վախճանուե-

ցաւ նա այն վէրքի պատճառած հիւանդութիւնից, որ ստացել էր Գանձակի կամուրջի վրայ։ Նա թողեց մի որդի Ալահվէրդի-բէկ անունով, որ այդ տոհմի մէջ Մելիք-Ալահվէրդի Բ-ն էր[1], որի հետ այդ տոհմի մելիքութիւնը վերջացաւ։

Խօսելով Կարեագինի անցքի մասին, մենք չենք կարող չյիշել մի քաջ տղամարդի անուն, որ նշանաւոր եղաւ ռուսաց զանազան կռիւների մէջ։ Դա էր կապատցի Մելիք-Վանի Աթաբէկեանը։

Թէեւ Աթաբէկեանները հայոց հին ազնուականների ծագումից էին, բայց Վանիի հայրը, Զարգար-Թունին (Յարութին) մի հասարակ արհեստաւոր էր, պարապում էր ոսկերչութեամբ։ Վանին իւր պատանեկութեան հասակում աշխատում էր հօր արհեստանոցում եւ նրա լաւ օգնականն էր։ Բայց այդ զբաղմունքը շուտով ձանձրացրեց նրան, երբ Ղարաբաղում ամեն րոպէ լսվում էր զէնքի շառաչիւնի ձայնը, որոտում էր պատերազմների աղմուկը. նրա տոհմային արիւնը եռ եկաւ, մտածեց թողնել ոսկերչի փուքսն ու մուրճը, վճռեց զէնք կրել եւ նետուել կռուի դաշտը։ Նա առանց իւր դիտաւորութիւնը յայտնելու իւր ծնողներին, ծածուկ հեռացաւ հայրենի տնից։ Մի ժամանակ իմացան, որ Վանին Ջրաբերդի Մելիք-Րովշանի մօտ ծառայութեան է մտել, նրա հեծելազօրքի խմբերից մէկի գլխաւորն է դարձել եւ կոչվում է Վանի-իւզբաշի (հարիւրապետ Վանի)։

1804 թուին Ջրաբերդի բնակիչներից 300 ընտանիք, Իբրահիմ-խանի դաժանութիւնից ազատուելու համար, գաղթեցին Գանձակ եւ բնակուեցան այդ քաղաքի շրջա-

[1] Մելիք-Ալահվէրդի Բ-ից մնացին երեք որդի՝ Միքայէլ-բէկ, Ղահրաման-բէկ եւ Մէջլում-բէկ։

կայքում։ Տօթի եւ անսովոր կլիմայի պատճառով նոյն տարուայ ամառն այդ գաղթականներից մօտ 500 հոգի մեռան, մնացածները փախան Գանձակի գաւառի Ոսկանապատ գիւղը, ուր օդը համեմատաբար աւելի հովասուն էր։

Այդ գաղթականների հետ գտնվում էր եւ Վանի-իւզբաշին։ Գանձակում նա ծանօթացաւ գնդապետ Կարեագինի հետ այն ժամանակ, երբ Կարեագինին հրամայուած էր Շուշի բերդին օգնութեան հասնել։ Այդ այն ժամանակն էր (1805 թ.), երբ պարսից թագաժառանգ Աբաս-Միրզան բազմաթիւ զօրքերով պաշարել էր Շուշի բերդը, եւ տեղային Իբրահիմ-խանը, թէեւ ռուսաց կառավարութեանը հպատակութեան երդում էր տուել, բայց հէնց որ Աբաս-Միրզայի զօրքերը մօտեցան Շուշի բերդին, նա իւր ընտանիքով դիմեց ռուսաց նենգաւոր թշնամու՝ Աբաս-Միրզայի բանակը եւ կէս ճանապարհի վրայ սպանուեցաւ Մելիք-Ջումշուդի եւ մայոր Լիսանեւիչի ձեռքով (տես գլ. XL)։ Բայց Շուշին դարձեալ պաշարուած մնաց Աբաս-Միրզայի բազմաթիւ զօրքերով։ Մայոր Լիսանեւիչը եւ Մելիք-Ջումշուդը, փակուած բերդի մէջ, ունէին իրանց ձեռքի տակ խիստ աննշան թւով զինուորներ՝ թշնամուն ընդդիմադրելու համար։ Նրանց գլխաւորապէս օգնում էին բերդի մէջ բնակուող հայերը եւ դրսից օգնութիւն էին սպասում։

Օգնութիւնը պիտի հասցնէր գնդապետ Կարեագինը, որ արդէն Գանձակից ճանապարհ էր ընկել եւ հայ հեծելախմբով նրան առաջնորդում էր Վանի-իւզբաշին։ Ռուսաց զօրախումբը բաղկացած էր 600 զինուորից եւ ունէր երկու թնդանօթ միայն։ Նրանք Գարգար գետի մօտ հանդիպեցին պարսից առաջապահ զօրքերին, թւով աւելի

քան 10.000, որ գտնվում էին Փիր-Ղուլի-խանի հրամանատարութեան ներքոյ։ Կռիւն սկսուեցաւ յիշեալ գետի ափերի մօտ։ Չնայելով որ թշնամու զօրքը թւով անհամեմատ աւելի էր, քան թէ ռուսաց զինուորները եւ Վանի-խզլաշու հեծելախումբը, այնուամենայնիւ պարսիկներն սկզբում սարսափելի կերպով ջարդուեցան, եւ իրանց թնդանօթներն ու այլ ռազմամթերքը թողնելով պատերազմի դաշտի վրայ, պատրաստվում էին փախչել, երբ նրանց օգնութեան հասաւ ինքը Աբաս-Միրզան աւելի բազմաթիւ զօրքերով։ Վանի-խզլաշու հեծելախումբը եւ ռուսաց զինուորները մի քանի օր քաջութեամբ պաշտպանվում էին. բայց ի՞նչ կարող էր անել մի բուռն զօրքը Աբաս-Միրզայի ահագին բազմութեան դէմ։ Կարեագինը վէրք ստացաւ. Նրա զինուորներից կէսը չմնաց, մեծ մասն ընկաւ կռուի դաշտում, մնացածներն ամրացան մերձակայ Շահ-Բուլաղի ամայի բերդում[1]։

Ռուսաց զօրքը բոլորովին կը ոչնչանար այդ ամայի բերդի մէջ՝ թէ քաղցածութիւնից եւ թէ թշնամու կրակից, եթէ ութն օրուայ սարսափելի պաշարումից յետոյ Վանի-խզլաշին նրանց գիշերով դուրս չբերէր այնտեղից եւ չազատէր բոլորին՝ փախցնելով հայոց Մուխաթաղ գիւղը։ Այստեղ նա իւր սեպհական ծախքով բաւական ժամանակ պահեց եւ կերակրեց ռուսաց զօրքերին, մինչեւ նրանք նոր օգնութիւն ստացան, եւ Աբաս-Միրզայի ահագին զօրութիւնը ցրիւ տալով, հալածեցին մինչեւ Երասխ գետի աջ կողմը։ Այդ կռիւների ժամանակ

[1] Այդ ժամանակն էր, որ Մելիք-Րօվշանը՝ ուտեստի պաշար հասցնելով, ազատեց նրանց սովամահ լինելուց։ Իսկ Մելիք-Ջումշուդը, Շուշի բերդից իւր ձիաւորների խմբով վրայ հասնելով, ազատեց նրանց իսպառ կոտորուելուց։

մեծ քաջութիւններ գործեցին Մելիք-Ջումշուդը, Մելիք-Ռովշանը եւ Վանի-իւզբաշին։

Այնուհետեւ Վանի-իւզբաշին իւր սեպհական հեծելախմբով մասնակցում էր ռուսաց զանազան կռիւների մէջ եւ ամեն տեղ յայտնվում էր իւր զարմանալի քաջութիւններով։ 1812 թուին ձմեռը Աբաս-Միրզան զօրքերի ահագին բազմութեամբ կրկին անգամ յարձակուեցաւ Ղարաբաղի վրայ։ Այդ ժամանակ ռուսաց Տրոյիցկի գնդի ջոկատը (բատալիօն) մայոր Ժինէի զօրապետութեան ներքոյ, գտնվում էր Թարթառ գետի մօտ, Սուլթան-Բուդ կոչուած ձմերանոցում։ Պարսից հեծելազօրները Ջաֆար-Ղուլի-խանի[1] առաջնորդութեամբ յարձակվում են յիշեալ ձմերանոցի վրայ եւ ջարդում ռուսաց ամբողջ զօրագունդը։ Այդ միջոցին Շուշի բերդից օգնութիւն ուղարկեցին Վանի-իւզբաշուն 200 ռուս զինուորով, 2 թնդանօթով եւ իւր սեպհական հայ ձիաւորներով։ Բայց մինչեւ նրա հասնելը պարսիկները գործն արդէն վերջացրել էին։ Վանի-իւզբաշին այդ տեղեկութիւնն ստացաւ կէս ճանապարհի վրայ այն ժամանակ, երբ պարսիկները վերադառնում էին կոտորածից եւ պատահեցան նրան։ Նա ստիպուեցաւ ամրանալ Շահ-Բուլաղի բերդում, որ իսկոյն պաշարուեցաւ Ջաֆար-Ղուլի-խանի զօրքերով։ Մեծ քաջութիւն էր հարկաւոր Վանի-իւզբաշուն, որ կարողանար իւր փոքրաթիւ զօրքով պատերազմել պարսից ահագին բազմութեան դէմ, իսկ այդ քաջութիւնն ունեցաւ նա, մի քանի օր շարունակ պատասխանելով թշնամու ամեն կողմից տեղացող կրակներին։

---

[1] Ջաֆար-Ղուլի-խանը Մամադ-Հասան-աղայի որդին էր, իսկ այդ վերջինը Շուշի բերդի Իբրահիմ-խանի որդին։

Վերջը թնդանօթների հարուածներից բերդի դռները խորտակվում են, պարսից զօրքերը կատաղութեամբ ներս են թափվում, բայց մեծ է լինում նրանց զարմանքը, երբ բերդի մէջ ոչ ոքի չեն գտնում։ Վանի-ուզբաշին մի օր առաջ իւր զօրքերը գիշերով դուրս էր բերել բերդից եւ լեռների վրայով, սարսափելի բարձրաւանդակներից տարել էր հայոց Փարուղ կոչուած գիւղը։ Բերդի մէջ թողել էր նա իւր մարդկանցից մի քանի հոգի միայն, որոնք թշնամուն խաբելու համար ժամանակ առ ժամանակ պատասխանում էին։ Հէնց որ պարսիկները ներս մտան, այդ մարդիկը սատանայի նման աներեւութացան։

Իրանց կամաւոր զօրքերով ռուսաց տիրապետութիւնը Անդրկովկասում հաստատելու գործին ամենայն անձնանուիրութեամբ նպաստող հայոց քաջերից մէկն էր Վանի-ուզբաշին։ Երբ 1812 թուի հոկտեմբերի 2ին զօրապետ Կոտլարեւսկին ջարդեց Աբաս-Միրզայի զօրքերը Երասխի աջ ափի վրայ, Ասլան-Դիւզի ճակատամարտում, Վանի-ուզբաշին իւր մարդկանցով կռվում էր պարսից դէմ։ Հետեւեալ տարին (1813 թ. 1 յունուարի), Լէնքօրանի բերդը գրաւելու միջոցին, Վանի-ուզբաշին նոյն զօրապետ Կոտլարեւսկու քաջ գործակիցներից մէկն էր։

Բայց հայերն առհասարակ օտարի ծառայութեան մէջ մի առանձին համեստութիւն ունին՝ մեծ գործեր կատարել, բայց փոքր պահանջներով բաւականանալ։

Վանի-ուզբաշին իւր մատուցած ծառայութիւնների համար ստացաւ ռուսաց կառավարութիւնից յիսնապետի (պրապորշիկի) աստիճան, մեդալ եւ մշտական թոշակ։ Իսկ Շուշի բերդի Մէհտի-խանը (Իբրահիմ-խանի որդին) ընծայեց Վանի-ուզբաշուն որպէս սեպհականութիւն նրա հայրենի Կտապատ գիւղը եւ շնորհեց

մ ե լ ի ք ո ւ թ ե ա ն տիտղոս։ Նա կոչուեցաւ այնուհետեւ Մելիք-Վանի։

Ջրաբերդի հին տիրապետող մելիքների (Մելիք-Իսրայէլեանների) վերջին ժառանգը (Մելիք-Աթամ Բ-ը) տեղափոխուած լինելով Գանձակի գաւառը, իսկ նոր մելիքների (Մելիք-Ալահվերդեանների) վերջին ժառանգը (Մելիք-Րօվշանը) տեղափոխուած լինելով Նուխուայ գաւառը, Ջրաբերդը մնացել էր առանց մելիքների կառավարութեան։ Իւր արժանաւորութիւններով Ջրաբերդը կառավարելու եւ այդ գաւառը ժամանակի փոթորիկներից պահպանելու համար ընդունակ էր միայն Մելիք-Վանին, եւ նա ստացաւ Մէհտի-խանից ամբողջ Ջրաբերդի մելիքութիւնը։

Մելիք-Վանին իւր պատերազմական արժանաւորութիւնների հետ ունէր եւ կառավարչական ընդունակութիւններ։ Նա ամբողջ 42 տարի խաղաղութեամբ վարեց Ջրաբերդի մելիքութեան պաշտօնը, աշխատեց այդ երկրի ցրուած բնակիչներին հետզհետէ վերադարձնել իրանց հայրենիքը եւ ծաղկացրեց երկրագործութիւնն ու արհեստը։ Նա վախճանուեցաւ խորին ծերութեան մէջ (1854 թ.) եւ նրանից յետոյ Աթաբէկեանների տոհմն աւելի եւ աւելի նշանակութիւն ստացաւ Ղարաբաղում[1]։

## XLII.

1808 թուին վախճանուեցաւ Ղարաբաղի Իսրայէլ կաթողիկոսը։ Դա այն չարագործն էր, որ մատնեց Հայոց

---

[1] Մելիք-Վանին թողեց չորս որդի՝ Յովսէփ-բէկ, Սարգիս-բէկ, Աթա-բէկ (գնդապետ) եւ Միքայէլ-բէկ։ Իսկ Մելիք-Վանիի եղբայր Յակոբ-իւզբաշին ունէր մի որդի միայն՝ Ասլան-բէկը. դրանից ծնուեցան՝ Ներսէս-բէկ, Մովսէս-բէկ եւ Նիկօլա-բէկ։

մելիքներին, Յովհաննէս կաթողիկոսին սպանել տուեց եւ իւր դաւաճանութեամբ Իբրահիմ-խանի սիրելին դարձաւ (տես գլ. XX եւ XXI)։

Մեզ յայտնի է, որ նոյն չարագործից հալածուելով, սպանուած Յովհաննէս կաթողիկոսի եղբայր Հասան-Ջալալեան Սարգիս կաթողիկոսը Ղարաբաղի գաղթականների հետ ապրում էր Վրաստանի Հաղբատայ վանքում։ Այնտեղ մնաց նա ամբողջ 14 տարի (տես գլ. XXXVII)։

Երբ Սարգիս կաթողիկոսը լսեց իւր ոխերիմ հակառակորդի՝ Իսրայէլ կաթողիկոսի մահը, երբ իմացաւ որ Իբրահիմ-խանը՝ հայերի անհաշտ թշնամին, սպանուած է, եւ երբ տեսաւ որ հայոց մելիքներն իրանց հպատակների հետ Վրաստանից կրկին տեղափոխուեցան Ղարաբաղ, ինքը եւս մտածեց վերադառնալ Գանձասարի վանքը, եւ կրկին տիրանալ Աղուանից կաթողիկոսութեան աթոռին, որից բաւական ժամանակ անջատուած էր։

Նախ ուղարկեց նա իւր եղբօրորդի Բաղդասար վարդապետին, որ Գանձասարի վանքը կարգի դնէ, որ յետոյ ինքը գնայ։

1808 թուին, այսինքն հէնց նոյն տարուայ մէջ երբ Իսրայէլ կաթողիկոսը վախճանուեցաւ, Բաղդասար վարդապետը Թիֆլիզից ճանապարհ ընկաւ դէպի Ղարաբաղ[1]։ Նա գտաւ Գանձասարի վանքը բոլորովին ամայի դրու-

---

[1] Բաղդասար վարդապետի հետ Ղարաբաղ գնաց Սարգիս կաթողիկոսի միւս եղբօր (Գաբրիէլ-բէկի) որդի Մելիք-Գրիգորը։ Այս ծանօթութեան մէջ հարկաւոր ենք համարում նկատել եւ այն, որ Սարգիս կաթողիկոսի ազգականների թուում Վրաստանում գտնվում էր եւ նրա եղբայր Ալլահ-Ղուլի-բէկը։ Այդ դաւաճանը նոյն անձնաւորութիւնն է, որ Իբրահիմ-խանի մօտ մատնեց Ղարաբաղի մելիքներին՝ նրանց ռուսաց կառավարութեան հետ ունեցած գաղտնի յարաբերութիւնների համար (տես գլ. XX)։ Վրաստանում նա մի ժամանակ անպատիւ կերպով թափառում էր, մինչեւ Ղարաբաղի մելիքները վրէժխնդիր եղան նրանից եւ գլուխը կտրելով մարմինն անհետացրին...։

թեան մէջ։ Նուանդոտ, գործունեայ եւ ժրաջան վարդապետը կարողացաւ կարճ ժամանակում ոչ միայն կարգի դնել վանքը, այլեւ նրան յաջողուեցաւ մասամբ յետ խլել վանքի ընդարձակ կալուածները, որ զանազան Թուրք բէկեր, կամ Հայ ազնուականներ տիրացել էին։

Երբ Գանձասարի վանքում ամեն ինչ կարգի էր դրուած, Սարգիս կաթողիկոսը թողեց Վրաստանը եւ Հաղբատայ վանքից տեղափոխուեցաւ Ղարաբաղ (1812)։ Նրա հետ գնացին Ղարաբաղի գաղթականներից նրանք, որ դեռ եւս մնացել էին Վրաստանում։

Սարգիս կաթուղիկոսը Գանձասար տեղափոխուելով, շուտով նրա եւ Ս. Էջմիածնի մէջ նոր վէճաբանութիւններ ծագեցան։ Այդ վէճաբանութիւններին առիթ տուեց կաթողիկոսի փառասիրական վարմունքը։

Մեր պատմութեան XXXVII գլխում տեսանք, որ Սարգիս կաթողիկոսը Վրաստանում գտնուած ժամանակ, այնտեղից Ս. Էջմիածին գնալով, խոստումն տուեց, որ այլեւս չպիտի գործածէ կաթողիկոսական կնիք եւ տիտղոս, այլ պիտի բաւականանայ միայն արքեպիսկոպոսական տիտղոսով ու կնքով, եւ դրա համար նրան յանձնեցին Հաղբատայ վանքի վանահայրութիւնը եւ Վրաստանում գտնուած ղարաբաղցի գաղթականների առաջնորդութիւնը։ Եւ ամբողջ 13 տարի Վրաստանում կառավարում էր իւր հօտը որպէս արքեպիսկոպոս։ Բայց հէնց որ վերադարձաւ Ղարաբաղ, կրկին սկսեց իրան Աղուանից կաթողիկոս կոչել եւ կաթողիկոսական իրաւունքներ ի գործ դնել։ Սարգսի այդ վարմունքը, ի հարկէ, պէտք է յուզէր մի նոր կռիւ՝ նրա եւ Ս. Էջմիածնի միջեւ։

Ս. Էջմիածնից նրան ազդարարեցին, որ պահպանէ իւր խոստմունքը, բայց նա ոչ միայն ուշադրութիւն չդար-

ձրեց, այլ դիմելով Իբրահիմ-խանի յաջորդ Մէհտի-խանի պաշտպանութեանը, իրան բոլորովին Ս. Էջմիածնից անկախ յայտնեց։ Այդ երկպառակութիւնները տեւեցին երեք տարի, մինչեւ 1815 թ., երբ Ս. Էջմիածնի բարձր հոգեւոր կառավարութիւնը, ռուսաց իշխանութեան ուժով, հարկադրեց Սարգսին հրաժարուել կաթողիկոսական աթոռից եւ տուեց նրան միտրապօլիտութեան աստիճան արքեպիսկոպոսի աստիճանով։ Այնուհետեւ վերջացաւ Աղուանից կաթողիկոսութիւնը, որ սկսուած էր Լուսաւորչի թոռ Գրիգորիսի ժամանակից։

Դեռ իւր կենդանութեան ժամանակ Սարգիս միտրապօլիտը իւր եղբօրորդի Բաղդասար վարդապետին ուղարկեց Ս. Էջմիածին, որ եպիսկոպոս ձեռնադրուի, որպէս զի իւր յաջորդը նա լինի։ Որպէս Աղուանից կաթողիկոսութիւնը դարերով շարունակվում էր Հասան-Ջալալեանների տոհմի մէջ, Սարգիսը ցանկանում էր որ Աղուանից միտրապօլիտութիւնը եւս, որ իրանից սկսուեցաւ, նոյնպէս շարունակուէր նոյն տոհմի մէջ։

Բաղդասարը Ս. Էջմիածին գնալով, 1820 թուին Եփրեմ կաթողիկոսի ձեռքով եպիսկոպոս ձեռնադրուեցաւ, եւ վերադառնալով Գանձասարի վանքը, Սարգսի ծերութեան պատճառով համարեա ինքն էր կառավարում վիճակի հոգեւոր իշխանութիւնը։

1826 թուին Ղարաբաղը ենթարկուեցաւ մի նոր դժբախտութեան, պարսից թագաժառանգ Աբաս-Միրզան 80.000 հոգով անցաւ Երասխը, տիրեց Ղարաբաղին. տեղային մահմեդականները միացան պարսիկների հետ. Շուշիի բերդապահ գնդապետ Րէուտը ռուսաց փոքրաթիւ զօրքով մնաց փակուած բերդի մէջ։ Աբաս-Միրզան 48 օր պաշարուած դրութեան մէջ պահեց բերդը։ Մի-

եւնոյն ժամանակ Փաթալի-շահի փեսայ Ամիր-խան սարդարը եւ Աբաս-Միրզայի երեց որդի Մահմադ-Միրզան զօրքերի ահագին բազմութեամբ անցան Գանձակի գաւառը, տիրեցին Գանձակի բերդին, ու այնտեղից առաջացան մինչեւ Շամքօր. պատրաստվում էին գնալու, որ Թիֆլիզը եւս տիրեն: Երկրի քրիստոնեայ ազգաբնակութիւնը գտնվում էր սարսափի եւ մահուան տագնապի մէջ:

Մեր պատմութեան հետագայ գլուխներում ցոյց կը տանք, թէ որպէս հայազգի իշխան գեներալ Մադաթովի փառաւոր յաղթութիւններով պարսիկները ջարդուեցան եւ կրկին փախան դէպի Պարսկաստան, իսկ այժմ կ'ասենք այնքանը միայն, ինչ որ վերաբերում է Սարգիս միտրապօլիտին:

Հայերին սպասում էր ընդհանուր կոտորած: Սարսափած ժողովուրդը, ամեն ինչ թողած, ցրիւ էր եկել, թագնուել լեռների ու անտառների մէջ: Աբաս-Միրզան, Պարսկաստանի այդ հայրենասէր թագաժառանգը, Ղարաբաղի ռուսաց զօրքերով գրաւուիլը վերաբերում էր ոչ այնքան ռուս զինուորների յաղթական սուիններին, որքան հայերի գործակցութեանը յօգուտ ռուսների. (եւ իրաւ ռուսները Ղարաբաղը տիրելու համար ամենեւին արիւն չէին թափել:) Այդ էր պատճառը, որ նա կամենում էր պատժել հայերին, որոնք, նրա կարծիքով, դաւաճանել էին Պարսկաստանի դարեւոր հպատակութեան դէմ:

Աբաս-Միրզայի բարկութիւնն ամոքելու եւ հայ ժողովրդին նրա վրէժխնդրութիւնից ազատելու համար՝ ծերունի Սարգիս միտրապօլիտը վեր առաւ իր հետ Ջրաբերդի իշխող Մելիք-Վանի Աթաբէկեանին եւ Գիւլիստանի իշխող Մելիք-Յովսէփ Բ[1] Մելիք-Բէգլարեանին, եւ

[1] Մելիք-Յովսէփ Բ-ը հանգուցեալ Մելիք Ֆրէյդունի երեց որդին էր:

երեքը միասին գնացին Աբաս-Միրզայի մօտ: Պարսից Թագաժառանգն ընդունեց նրանց Խան-Քէնդի գիւղում, որ գտնվում է Շուշի բերդից մի քանի վերստ հեռաւորութեան վրայ:

Ծերունի միտրապօլիտը իւր արտասուքով եւ Աթաբէկեան Մելիք-Վանին իւր պերճախօսութեամբ կարողացան ոչ միայն ամոքել Թագաժառանգի բարկութիւնը, այլեւ արժանացան նրա առանձին յարգանքին: Աբաս-Միրզան շնորհեց նրանց փառաւոր "խալաթներ" եւ հանգստացնելով ճանապարհ դրեց, խոստանալով թէ հայոց ժողովրդին ոչինչ վնաս չի հասցնի, եթէ հայերը հաւատարիմ կը մնան Պարսկաստանին եւ կը դադարեն ռուսներին օգնելուց:

Ի հարկէ հայերը չէին կարող չհամակրել ռուսներին, եւ որպէս յետոյ կը տեսնենք, նրանք եղան, որ ամէն հնարներով նպաստեցին իշխան Մադաթովի յաղթութիւններին Աբաս-Միրզայի դէմ եւ Ղարաբաղը բոլորովին մաքրեցին պարսից զօրքերից: Այսուամենայնիւ Սարգիս միտրապօլիտի եւ նրա ընկեր երկու մելիքների տեսութիւնը Աբաս-Միրզայի հետ բաւական թանգ նստեց նրանց համար:

Երբ պարսից զօրքերը հեռացան Ղարաբաղից, իշխան Մադաթովը նրանց երեքին էլ կալանաւորել տուեց: Ռուսաց անհաշտ թշնամու հետ տեսութիւն անելը համարուեցաւ նրանց համար մի տեսակ դաւաճանութիւն: Սարգիս միտրապօլիտին ուղարկեցին Թիֆլիզ, ուր նա բանտարկուեցաւ. իսկ Աթաբէկեան Մելիք-Վանիին եւ Մելիք-Բէգլարեան Մելիք-Յովսէփին աքսորեցին Բագու, որ այնտեղից տանեն Սիբիր:

Ութն ամիս թէ՛ մելիքները եւ թէ Սարգիս միտրապօլիտը բանտարկուած մնացին: Վերջը նրանց անմեղութիւնը յայտնուելով ազատուեցան:

Սարգիս միտրապօլիտն ազատուեցաւ Ներսէսի (վերջը կաթողիկոս) աշխատութեամբ։ Բայց այն տանջանքները, որ նա կրեց իւր բանտարկութեան ժամանակ, սաստիկ մաշեցին նրա ծերացած կազմուածքը։ Նա բոլորովին հիւանդ վերադարձաւ Թիֆլիզից եւ նոյն հիւանդութիւնով 1828 թուին վախճանուեցաւ։

Սարգսի մահից երկու տարի յետոյ (1830) Ղարաբաղի մելիքները խնդիրքով դիմեցին Ս. Էջմիածնի Եփրեմ կաթողիկոսին, որ հանգուցեալի եղբօրորդի Բաղդասար եպիսկոպոսը նրա փոխարէն միտրապօլիտ նշանակուի։ Բաղդասարը կանչուեցաւ Ս. Էջմիածին եւ նոյն տարուայ մէջ ստացաւ միտրապօլիտութեան աստիճան։

Պէտք է մի առանձին բախտ համարել, որ այն ժամանակներում, երբ ռուսները տիրեցին Ղարաբաղին եւ Երեւանեան նահանգին, Ս. Էջմիածնում գտնվում էր Ներսէսի նման մի եկեղեցական, իսկ Գանձասարի վանքում Բաղդասար միտրապօլիտը։ Այդ երկուսն իրանց գործունէութեամբ բաւական նման էին միմեանց, այն զանազանութեամբ միայն, որ Ներսէսն ունէր քաղաքական իդէալներ, իսկ Բաղդասարը եկեղեցական եւ վանքային բարեկարգութեան եռանդ։

Եթէ չլինէր Բաղդասար միտրապօլիտը, այսօր Գանձասարի վանքը եւ Ղարաբաղի միւս վանքերը չէին ունենալ մի քանի հարիւր հազար դեսեատին տարածութեամբ վանքային կալուածներ։

Ղարաբաղի մելիքների եւ Սարգիս միտրապօլիտի Վրաստանում գաղթած ժամանակ Ղարաբաղի վանքապատկան կալուածները անտէր մնալով, ընկել էին զանազան թուրք բէկերի ձեռքը։ Բաղդասար միտրապօլիտի մեծ ջանքերին ենք պարտական, որ կարողացաւ ազատել եւ

կրկին վանքերի անունով հաստատել եթէ ոչ կորուսած կալուածների ամբողջը, այլ գոնէ նրանց մեծ մասը։

Պատմութեան դէմ չմեղանչելու համար պէտք է խոստովանել եւ այն, որ Բաղդասար միտրապօլիտը, որպէս առ հասարակ մեր բոլոր բարձրաստիճան եկեղեցականները, ունէր եւ իւր թոյլ կողմերը։ Այն է՝ իւր աղքատ ազգականների — Հասան-Ջալալեանների — վիճակը ապահովելու համար, նրանց օգտին վանքային կալուածներից փոքրիկ բաժիններ հանեց...։ Այդ բաժիններից իւր մասն ստացաւ եւ միտրապօլիտի վէզիրը։

Բայց այդ բոլոր թուլութիւնները համեմատելով այն մեծ ծառայութիւնների հետ, որ նա կատարեց՝ վանքապատկան կալուածները կորզելով զանազան յափշտակիչների ձեռքից, — այդ թուլութիւնները, կրկնում ենք, պէտք է ներելի համարել...։

Ղարաբաղի վանքապատկան կալուածների վերաբերութեամբ աւելի անազնիւ կերպով վարուեցաւ Իսրայէլ կաթողիկոսը, Սարգիս կաթողիկոսի (յետոյ միտրապօլիտի) ժամանակակիցը։ Չմոռանանք, որ այդ Իսրայէլ կաթողիկոսը՝ Իբրահիմ-խանի սիրելին, հայոց մելիքների մատնիչը, Գանձասարի վանքի Հասան-Ջալալեան կաթողիկոսների տոհմից չէր, այլ Երիցմանկանց վանքի ինքնիշխան եւ հակաթոռ կաթողիկոսներից մէկն էր։ Ընթերցողը յիշելիս կը լինի, որ Ղարաբաղի մելիքների եւ Սարգիս կաթողիկոսի Վրաստան գաղթած ժամանակ, Իբրահիմ-խանի պաշտպանութեամբ, այդ Իսրայէլն էր վարում Աղուանից կաթողիկոսութեան իշխանութիւնը։ Այդ դաւաճանը վախճանուեցաւ իւր ազգականներից մէկի տանը, որի մռայլոտ անունը յիշելու ցանկութիւն չունինք։ Նոյն տան մէջ կաթողիկոսը հաւաքած ունէր Ղարաբաղի մի քանի հա-

րուստ վանքերի արծաթեղէն անօթները, սրբութիւնները եւ թանկագին զգեստները։ Կաթողիկոսի վախճանուելուց յետոյ այդ բոլորը մնացին որպէս սեպհականութիւն նրա ազգականի։ Սակայն այդ մի մեծ կորուստ չէր լինի, եթէ նոյն տան մէջ չմնային եւ զանազան վանքերի կալուածագրերը։

Եթէ Բաղդասար միտրապօլիտին չյաջողուեցաւ ձեռք բերել Ղարաբաղի վանքապատկան բոլոր կալուածները, դրա գլխաւոր պատճառներից մէկն էլ այն էր, որ կալուածագրերը, մնացել էին նոյն մարդու մօտ, որի տանը վախճանուեցաւ Իսրայէլ կաթողիկոսը։ Այդ անպիտանը զանազան զարտուղի եւ մթին ճանապարհներով կամ ինքը տէր եղաւ նոյն կալուածքներին եւ կամ թոյլ տուեց որ թուրքերը տիրեն, ծածուկ նրանցից փողեր ստանալով եւ վանքային կալուածագրերը ոչնչացնելով, որ իւր գոյութիւնը չյայտնուի։

Բաղդասար միտրապօլիտը սկզբում ուշադրութիւն դարձրեց Խաչէնի գաւառում գտնուող եւ Գանձասարի վանքին պատկանող կալուածները թափել յափշտակողների ձեռքից։ Այդ կալուածներն այնքան լայնատարած էին, որ նրանց վրայ զետեղուած էին 60-ի չափ վանքապատկան գիւղեր՝ իրանց հարուստ անտառներով, արգաւանդ վարելահողերով եւ արօտատեղիներով։ Բայց նա կարողացաւ միայն 30,000 դեսեատինի չափ կրկին սեպհականացնել վանքին, իսկ մնացեալ մեծ մասը մնաց վիճելի։

Բաղդասար միտրապօլիտի աշխատութիւնների նպատակը վանքապատկան կալուածների վերաբերութեամբ այն չէր, որ նա դրանցով ապահովացնէր վանականների եւ վանքերի գոյութիւնը, այլ գլխաւորապէս այն էր, որ նրանք լինէին եկամուտների մշտական եւ հաստատուն

աղբիւր Ղարաբաղի զանազան տեղերում դպրոցներ հիմնելու համար։

Ինքը, Բաղդասար միտրապօլիտը, թէեւ անուս եւ որպէս ղարաբաղցի՝ կոշտ-կոպիտ մարդ էր, բայց որպէս ղարաբաղցի, ունէր եւ բնական խելք, տոկունութիւն եւ հեռատեսութիւն[1]։ Նա ուսում չունէր, բայց սաստիկ ուսումնասէր էր։ Սկզբում հիմնեց նա Գանձասարի վանքում մի դպրոց եւ Նուխիի կողմերից հրաւիրեց ճարտասան եւ լաւ հայկաբան Յովսէփ վարդապետին[2] որպէս վարժապետ եւ նոյն դպրոցի կառավարիչ։

1836 թուին Շուշի բերդում հաստատուեցաւ վիճակային հոգեւոր կառավարութեան կոնսիստորիա։ Բաղդասար միտրապօլիտը հրաւիրուեցաւ Ս. Էջմիածին, եւ այնտեղ հաւատարմութեան երդում տալով, Կարպեցի Յովհաննէս կաթողիկոսից նշանակուեցաւ Ղարաբաղի թեմական առաջնորդ (1837 թ.)։ Շատ հասկանալի է, որ դրանով Բաղդասարի իրաւունքները սահմանափակուեցան։ Մինչեւ այն օր նա համարվում էր Աղուանից միտրապօլիտ եւ ազատ էր իւր հոգեւոր իշխանութեան մէջ, բայց կոնսիստորիայի հաստատուելուց յետոյ, նա բոլորովին ենթարկուեցաւ Ս. Էջմիածնի իրաւասութեանը, որ ոչ սակաւ խոչընդոտներ դրեց միտրապօլիտի ազատ գործունէութեանը...։

---

[1] Բաղդասար միտրապօլիտի զուարճախօսութիւնները, նրա կեանքից ստեղծուած անեկդօտները, Ղարաբաղի հայի հասարակութեան մէջ նոյն ժողովրդականութիւնն են ստացել, որպէս Մօլլա-Նասրադդինի առակները։

[2] Այդ Յովսէփ վարդապետը՝ — որ բազմաթիւ հասցրած աշակերտներ ունի եւ մինչեւ այսօր լաւ անուն է թողել Ղարաբաղում, որպէս յետոյ իմացուեցաւ, — իսկապէս եպիսկոպոս է եղել, բայց իւր բարձր աստիճանը թագցնելով, պարապում էր մանկավարժութեամբ իբրեւ մի հասարակ վարդապետ։

Կոնսիստորիայի հաստատուելուց յետոյ նա հարկադրուեցաւ թողնել Գանձասարի վանքը՝ Աղուանից բազմադարեան կաթողիկոսարանը եւ տեղափոխուել Շուշի բերդը։ Այստեղ սպասում էր միտրապօլիտի գուծունէութեանն ընդարձակ ասպարէզ եւ միեւնոյն ժամանակ ծանր աշխատանք։

Միտրապօլիտի առաջին ջանքն եղաւ դուրս կորզել Մէհտի-խանի Խուրշիտ անունով դստեր եւ ուրիշ մի քանի թուրք բէկերի ձեռքից Խօթայ վանքի[1] լայնատարած կալուածները, որոնց՝ միեւնոյն հանգամանքների պատճառով, որպէս Ղարաբաղի միւս վանքերի կալուածները, անիրաւութեամբ տիրել էին։

Այս անգամ միտրապօլիտի հակառակորդները բաւական զօրաւոր եւ ազդեցութեան տէր անձինք էին. բայց տոկուն եւ ոչ մի դժուարութիւնից չյուսահատուող Բաղդասարը մի քանի տարի շարունակ դատ վարեց խանի դստեր եւ միւս բէկերի հետ, մինչեւ կարողացաւ վերջապէս նրանցից յետ խլել յիշեալ վանքի կալուածները, որոնք մօտ 150.000 դեսեատինի չափ ընդարձակութեամբ տարածւում են Թարթար գետի հիւսիսային եւ հարաւային ափերի երկարութեամբ եւ ընդհանուր անունով կոչւում են Դոդխու-Քալբաջար, Լեւա եւ Մարջումակ։ Իւր դատավարութեան ծախքերի համար միտրապօլիտը գործ դրեց մինչեւ 30.000 ռուբլի, որ այն ժամանակ մեծ գումար էր։

---

[1] Խօթայ կամ Խութայ վանքը գտնւում է Վերին-Խաչէնի մէջ, Թարթար գետի ափի մօտ։ 1214 թուին իւր սեպհական ծախքով այդ վանքը հիմնեց իշխանուհի Արզու-խաթունը Թադէոս առաքեալի անունով։ Չնայելով որ մի հարուստ լորդի չափ կալուածքներ ունի այդ վանքը, բայց այսօր՝ մեր ծոյլ եկեղեցականների անհոգութիւնից, գտնւում է բոլորովին ամայի դրութեան մէջ եւ ծառայում է խաշնարած թուրքերի համար որպէս գոմանոց։

Խօթայ վանքի կալուածները՝ այդ միլիօնների արժէք ունեցող ազգային մեծ հարստութիւնը, կարելի է մի ամբողջ գաւառ համարել: Նրանց մէջ բացի հրաշալի, կուսական անտառներից, բացի ընդարձակ արօտատեղերից ու լեռներից, բացի լայնատարած եւ արգաւանդ վարելահողերից, զետեղուած էին թւով մինչեւ 100 գիւղ: Նրանց լեռների բարձրաւանդակների վրայ եւ հովիտներում թափառում էին թւով մինչեւ 20 զանազան խաշնարած ցեղեր, զանազան անուններով: Դրանք Խօթայ վանքին (այսինքն Ղարաբաղի հոգեւոր իշխանութեանը) չնչին հարկ էին վճարում. եթէ ասեմ որքան, շատ ծիծաղելի կը լինի....:

Բաղդասար միտրապօլիտն՝ արդարեւ թողեց ազգի համար մի մեծ հարստութիւն, բայց նրա անպիտան յաջորդները հետզհետէ վատնեցին այդ հարստութիւնը[1]....:

Բաղդասար միտրապօլիտի օգտաւէտ աշխատութիւնների թւում կարելի է յիշել նրա 1843 թւին կառուցած հոյակապ առաջնորդարանը, որ Շուշի բերդի փա-

---

[1] Մեր՝ 1881 թւի Սիւնեաց աշխարհի ճանապարհորդութեան մէջ, որ դեռ եւս ի լոյս ընծայուած չէ, գտնվում են Ղարաբաղի վանքապատկան կալուածների թշուառ դրութեան նկարագիրներն ընդհանրապէս, իսկ Խօթայ վանքի կալուածների բարբարոսաբար վատնումը մասնաւորապէս: Իսկ առ այժմ այսքանը կ'ասենք, որ Բաղդասար միտրապօլիտի վախճանուելուց յետոյ, Ս. Էջմիածնի բարձր հոգեւոր իշխանութեան անհոգութիւնից եւ Ղարաբաղի թեմական առաջնորդների մի քանիսի կաշառակերութիւնից, Խօթայ վանքի կալուածների մի մասը դարձաւ անցաւ Մեհտի-խանի Խուրշիդ անունով դստեր ձեռքը, մի մասին տիրեց գեներալ Հասան-բէկ Աղալարովը, մի մասն անցաւ ուրիշ բէկերի ձեռքը, մի մասը եւս անտէր, անխնամ մնալով, տիրեցին կամ մասնաւոր անձինք եւ կամ արքունի գանձարանը: Այժմ զուտ, անվիճելի կալուածք Խօթայ վանքի տիրապետութեան ներքոյ մնացել է մօտ 100.000 դեսեատին, իսկ մնացեալ կէսը վիճելի է, եւ այս մի քանի տարի է, որ հոգեւոր կառավարութիւնն սկսել է նորից դատ վարել, գուցէ յետ դարձնէ իւր կորուստը:

ռաւոր տներից մէկը կարելի է համարել։ Նոյն առաջնորդարանին կից գնեց նա ընդարձակ գետին, որի վրայ դիտաւորութիւն ունէր իւր արդէն բաց արած հոգեւոր դպրոցի համար առանձին շէնք կառուցանել, բայց վաղահաս մահը միտրապօլիտի այդ ձեռնարկութիւնը թողեց անկատար[1]։

Բաղդասար միտրապօլիտի աշխատութիւններից մէկն էլ այն եղաւ, որ Թուրքերի եւ ռուսների ձեռքից ազատեց Ամարասայ սուրբ Գրիգորիսի վանքը։ Այդ վանքը բաւական ժամանակ անտէր մնալով, Թուրքերը գրաւել էին, եւ տալով նրան իրանց հասկանալի մի անուն՝ Աղ-Օղլան[2], համարում էին իրանց սրբավայր։ Վանքի շրջակայ հողերը եւ Ամարասայ ձորի ամբողջ կալուածները Թուրքերի տիրապետութեան ներքոյ էին։ Իսկ վանքի ընդարձակ սենեակները եւ ամբողջ շինութիւնը, բացի տաճարից, ռուսները ծառայեցնում էին որպէս մաքսատուն։

Միտրապօլիտի աշխատութեամբ 1848 թուին ռուսաց կառավարութեան հրամանով մաքսատունը տեղափոխուեցաւ Երասխի ափի մօտ, Ջաբրայէլ, իսկ վանքը իւր կալուածներով դարձաւ սեփականութիւն հայոց հոգեւոր կառավարութեան։

Բացի հոգեւոր դպրոցից Բաղդասար միտրապօլիտը հիմնեց Շուշի բերդում տպարան, որի մամուլները եւ

---

[1] 1872 թուին Սարգիս արքեպիսկոպոս Հասան-Ջալալեանն աւարտեց դպրոցի շէնքը եւ առաջնորդարանի շինութիւնն աւելի ընդարձակեց։ Այն օրից այդ տան մէջ զետեղուեցան Շուշիի Թեմական դպրոցը, առաջնորդարանը եւ կոնսիստորիան։

[2] Աղ Օղլան նշանակում է սպիտակ տղայ։ Ամարասայ վանքում ամփոփուած է Լուսաւորչի թոռ Գրիգորիսի մարմինը, որ իւր մանկութեան հասակում կաթողիկոս ձեռնադրուեցաւ։ Երեւի հէնց դրա համար էլ այլազգիք նրան կոչեցին “սպիտակ տղայ„։

տառերը գնեց նա Ղարաբաղում այն ժամանակ գտնուած գերմանացի միսիօնարներից, երբ նրանց՝ ռուսաց կառավարութեան հրամանով հեռացրին Ղարաբաղից։ Նա բաւական նշանաւոր գումար ուղարկեց Վենետիկի Մխիթարեանների վանքը եւ բերել տուեց մի-մի օրինակ նրանց բոլոր հրատարակութիւններից, եւ կազմեց հոգեւոր դպրոցին կից մի հարուստ գրադարան, այնտեղ հաւաքելով եւ Ղարաբաղի վանքերում գտնուած նշանաւոր գրչագիր մատեանները։ Այդ գրքերը հետզհետէ տպագրելու դիտաւորութիւն ունէր իւր սեպհական տպարանում [1]։

Գուցէ այդ գործունեայ եւ եռանդոտ մարդն աւելի մեծ օգուտներ կը հասցնէր Ղարաբաղին, եթէ մի քանի տարի աւելի եւս ապրելու լինէր։ Մաշող յօդացաւը, որստացել էր նա վերջին ժամանակներում, սկսեց սաստկանալ եւ 1854 թ. յունիսի 27ին նրան գերեզման տարաւ 79ամեայ հասակում։ Նրա մարմինը թաղուեցաւ Գանձասարի վանքի գաւթում, իւր երկու հօրեղբայրների՝ Յովհաննէս կաթողիկոսի եւ Սարգիս միտրապօլիտի շիրիմների մօտ [2]։ Նրա մահից յետոյ Աղուանից միտրապօլիտութիւնը բոլորովին վերջացաւ։

---

[1] Այդ հարուստ գրադարանն այժմ համարեա բոլորովին կողոպտուած է. բազմաթիւ գրչագիր մատեաններն այս եւ այն անձանց ձեռքն են անցել. մենք գտանք այնտեղ մի գրչագիր Աղուանից պատմութիւն միայն. որի կէս մասը կտրած է.

[2] Գերեզմանը կրում է հետեւեալ տապանագիրը.

“Այս է տապան միտրապօլիտին՝
Բաղդասարայ մեծի Արհին,
Կայսերապսակ հովուապետին,
Տանս Աղուանից հայոց ազգին։
Ցազգէ Ջալալ մեծ իշխանին,
Տեառն արցախական աշխարհին։

Թուին ռ. յ. գ. 1854, յուլիս 9։

*Բաղդասար միտրապօլիտից յետոյ, Ջալալեանների տոհմից միայն*[1] *Սարգիս արքեպիսկոպոսը բաւական ժամանակ վարեց Ղարաբաղի Թեմական առաջնորդի պաշտօնը. Նրա մահից յետոյ Հասան-Ջալալեաններից այլեւս նշանաւոր եկեղեցականներ չյայտնուեցան։*

*Խաչէնի Հասան-Ջալալեան վերջին մելիքներից նշանաւոր եղաւ Բաղդասար միտրապօլիտի եղբայր Մելիք-Ալլահվերդի Բ-ը, որ վախճանուեցաւ* 1827 *Թուին եւ նրանից յետոյ այդ տոհմի մելիքութիւնը վերջացաւ։ Նա թողեց չորս որդի՝ Երեմիա քահանայ, Մովսէս վարդապետ, Աբրահամ-բէկ եւ Յովսէփ-բէկ։*

## XLIII.

1813 *Թ. Հոկտեմբերի* 12*ին կայացաւ Գիւլիստանի դաշնադրութիւնը Զէյվա բերդի*[2] *մօտ, որի զօրութեամբ պարսից պետութիւնը թողեց յօգուտ Ռուսաստանի՝ Ղարաբաղի, Շամախու, Գանձակի, Շաքիի, Թալիշի, Բագուի, Ղուբայի եւ Դերբէնդի խանութիւնները։*

*Երեւում էր, որ այդ դաշնադրութեամբ պիտի վերջանային պարսից կռիւները ռուսաց հետ, եւ պիտի դադարէին պատերազմասէր Աբաս-Միրզայի անընդհատ յարձակումները ռուսաց նոր գրաւած երկրների վրայ։ Բայց հաշտութիւնը երկար չտեւեց։ Այդ հաշտութիւնը Աբաս-Միրզայի կողմից աւելի ժամանակ վաստակելու համար էր, որ Պարսկաստանը կազդուրէ իւր ուժերը եւ նորոգուած զօրութեամբ յետ խլէ իւր կորցրած գաւառները։*

---

[1] Որպէս յետոյ ստուգեցինք, Սարգիս արք-եպիսկոպոս Ջալալեանը Հասան-Ջալալեանների տոհմից չէ։

[2] Զէյվա բերդը Մելիք-Բէգլարեանների բերդն է։

*Վերոյիշեալ խանութիւնները պահպանելու եւ դեռ չզսպուած Կովկասեան լեռնաբնակներին նուաճելու համար հարկաւոր էր մի մարդ, որ ծանօթ լինէր տեղային պայմանների հետ։*

*Այդ միջոցներին իւր զարմանալի յաղթութիւններով արդէն մեծ փայլ եւ հռչակ էր ստացել հայազգի իշխան գեներալ Մադաթովը՝ մանաւանդ այն կռիւների մէջ, որ Ռուսաստանն ունեցաւ Թիւրքերի հետ։ Այդ հերոսը համարւում էր ռուսաց քաջ եւ ընդունակ զօրավարներից մէկը, եւ նրա արեւելեան ազգերի սովորութիւններին եւ նրանց հետ պատերազմելու եղանակներին ծանօթ լինելը միշտ նպաստում էր նրա անվրէպ յաջողութիւններին։*

*Իշխանի այդ յատկութիւններն ի նկատի առնելով, գեներալ Երմոլովի առաջարկութեամբ, երբ այդ վերջինը նշանակուեցաւ Անդրկովկասի գլխաւոր կառավարիչ, միեւնոյն ժամանակ,* 1816 *թուին, բարձրագոյն հրամանով իշխան Մադաթովը նշանակուեցաւ Անդրկովկասի առանձին զօրաբաժնի հրամանատար։*

*Իսկ* 1817 *թ. նշանակուեցաւ նա Ղարաբաղի, Շաքիի եւ Շիրվանի խանութիւնների զինուորական-նահանգային գլխաւոր։ Նրան յանձնուած էր հսկել յիշեալ խանութիւնների կառավարութեան եւ բարեկարգութեան վրայ։*

*Իշխան Մադաթովը դուրս էր եկել Ղարաբաղից տրեխներով, բայց վերադարձաւ իւր հայրենիքը գեներալ-լէյտենանտի աստիճանով, կուրծքը զարդարած բազմաթիւ շքանշաններով։ Բոլորը՝ ինչ որ ունէր նա, ստացել էր տօկուն զինուորի եւ քաջ պատերազմողի աշխատութեամբ։ Հայրենիքը ուրախութեամբ ողջունեց նրան. բոլոր հայերի սրտերը լցուած էին պարծանքով եւ հպար-*

տութեամբ։ Մելիքների ոգեւորութեանը չափ չկար. բոլորը յոյս ունէին, թէ իշխանի շնորհիւ կը վայելեն իրանց վաղեմի իրաւունքները։

Երկու տարի զբաղուեցաւ իշխանը Կովկասեան լեռնաբնակների հետ ամենադժուարին կռիւներով եւ նա պսակեց իւր յաղթութիւնները ամբողջ հիւսիսային Դաղստանը նուաճելով եւ տեղային կիսավայրենի, աւազակաբարոյ ցեղերը հանգստացնելով։

Վերադառնալով Ղարաբաղ, նա սկսեց զբաղուել իւր հսկողութեանը յանձնուած երեք խանութիւնների բարեկարգութիւններով. հիմնեց նրանց մէջ գաւառական դատարաններ կամ դ ի ւ ա ն ն ե ր, եւ ինքը շատ անգամ ներկայ էր գտնվում գործերի քննութեանը։

Իսկ Ղարաբաղի կառավարիչը դարձել մնացել էր Իբրահիմ-խանի յաջորդ Մեհտի խանը, որ այդ ժամանակ ռուսներից գեներալի աստիճան էր ստացել եւ պահպանում էր խաների՝ թէեւ սահմանափակուած, բայց վաղեմի իրաւունքները։ Սահմանափակուած ասում ենք նրա համար միայն, որ նրան արգելուած էր պատժել, մահուան դատապարտել, իսկ միւս արտօնութիւնների վերաբերութեամբ, կարելի է ասել՝ որ նա այժմ աւելի իրաւունքներ էր բանեցնում, քան թէ ունէր պարսից տիրապետութեան ժամանակներում։ Նա ինքնակամ կերպով հողեր, գիւղեր, կալուածներ էր ընծայում, ում որ ցանկանում էր (ի հարկէ ոչ իւր սեպհականութիւնից), կամ խլում էր մէկից եւ միւսին էր տալիս, մի խօսքով, վարվում էր երկրի, հողի եւ հպատակների հետ իբրեւ նրանց լիակատար տէրը։

Մեհտի-խանի այդ կամայականութիւնն առաջ եկաւ Ղարաբաղի նոր տիրապետող ռուսների սխալ հասկացո-

ղութիւնից առհասարակ խաների նշանակութեան եւ նրանց իրաւունքների որ աստիճան տարածուելու մասին։ Ռուսները, որ իրանց երկրում տեսել էին ճորտութիւն, տեսել էին կալուածատէրի անսահման իրաւունքներն իրանց հողերի եւ ճորտերի վերաբերութեամբ, որոնց մինչեւ անգամ որսորդական շների հետ էին փոխում, — հասկանալի է, որ ռուսներին չէր կարող օտարոտի երեւալ խանի վարմունքը, մանաւանդ որ արդէն համարում էին նրան իբրեւ Ղարաբաղի տիրապետող եւ ժառանգական իշխան։

Այդ ժամանակ ռուսները շատ փոքր ծանօթութիւններ ունէին Պարսկաստանի կառավարչական կարգերի, օրէնքների ու սովորութիւնների մասին։ Խանը եթէ ունէր մի գիւղ կամ այլ կալուածք, իբրեւ հասարակ սեպհականատէր, կարող էր վաճառել. բայց նա երկրի տէրը եւ թագաւորը չէր, որ իրաւունք ունենար հասարակաց հողերը բաշխելու, ընծայելու ում որ ցանկանար, կամ յետ խլելու ումից որ ցանկանար։ Կրկնում ենք, որ խանի այդ կամայականութիւնն առաջ եկաւ ռուսաց այն ժամանակուայ պաշտօնականների սխալ հասկացողութիւնից խաների նշանակութեան մասին, եւ այդ սխալից աշխատեցին օգուտ քաղել խաները։ Այդ կը տեսնենք յետոյ։

Մեր պատմութեան նպատակից դուրս է եւ շատ երկար կը լինէր բացատրել, թէ այն ժամանակ կալուածական կամ հողատիրական (մուլքադարութեան) որպիսի օրէնքներ կամ սովորութիւններ էին տիրում Պարսկաստանում ընդհանրապէս եւ Ղարաբաղում՝ իբրեւ պարսկական մի գաւառ, մանաւորապէս։ Բայց այսքանը կ'ասենք, որ Ղարաբաղում, ինչպէս ամբողջ Պարսկաստանում, հողը համայնքի (էլլիգի) սեպհականութիւն էր ոչ այն

կարգով, որ համայնքը պարտաւորուէր իւրաքանչիւր ընտանիք կազմող անդամների թուի համեմատ հողը բաժանել գիւղացիների մէջ, այլ իւրաքանչիւր գիւղացի իւր ձեռքում գտնուած հողի տէրն էր. Նա իրաւունք ունէր վաճառելու, գրաւ դնելու կամ իւր դրացուց աւելին գնելու։ Իսկ միեւնոյն ժամանակ իւրաքանչիւր գիւղ ունէր իւր գիւղատէրը. այդ գիւղատէրը կարող էր լինել մի որեւիցէ մելիք, խան կամ այս եւ այն վանքը։ Գիւղատէրը վայելում էր այն իրաւունքը միայն, որ ստանում էր գիւղացիների վարուցանքի կամ առհասարակ մշակութեան բերքի մի որոշ մասը (չօփբաշի)։ Բայց նա իրաւունք չունէր մէկ գիւղացու ձեռքում գտնուած հողը խլել եւ միւսին տալ, եւ մինչեւ անգամ եթէ ինքը՝ գիւղատէրը ցանկանալու լինէր իրան պատկանող գիւղի հողերի վրայ վարուցանք անել, գիւղացիները նրան թոյլ չէին տալ։ Դրա համար գիւղատէրն ունէր իւր ազատ հողերը, որոնց վրայ նա վարուցանք էր անում։

Ամբողջ Ղարաբաղի գ ի ւ ղ ա տ ի ր ու թ ի ւ ն ը[1] պատկանում էր կամ հայոց մելիքներին կամ հայոց վանքերին։ Խաներն սկզբում ոչ գիւղեր եւ ոչ մասնաւոր կալուածներ ունէին։

Մի քանի փաստեր բաւական են այդ իրողութիւնն ապացուցանելու համար։ Փանահ-խանը, որպէս մեր ընթերցողներին յայտնի է, առաջինն եղաւ, որ հետզհետէ տկարացնելով մելիքների զօրութիւնը, Ղարաբաղի մահմեդական խանութեան հիմքը դրեց։ Նա Ղարաբաղի ամբողջ գաւառում մի տեղ չունէր, որի վրայ բերդ հիմնէր. Շուշի բերդի տեղը գնեց Վարանդայի իշխան Մելիք-

[1] Գիւղատիրութիւն պէտք է հասկանանք մշակութեան բերքից մի որոշ մասն ստանալու իրաւունքը։

Շահնազարից։ Նա ամբողջ Ղարաբաղում մի կտոր գետին չունէր, որ ծառայեցնէր իւր տոհմային գերեզմանատան համար, եւ այդ պատճառով Խաչէնի Հասան-Ջալալեան իշխաններից գնեց Աղդամը (Ասկարանի մօտ), որ մինչեւ այսօր ծառայում է նրա ժառանգների համար իբրեւ տոհմային գերեզմանատուն։

Փանահ-խանի որդի Իբրահիմ-խանը, որ աւելի զօրաւոր եղաւ քան թէ իւր հայրը, նոյնպէս զուրկ էր կալուածներից. Ղարաբաղում հողեր չունէր նա, թէեւ համարվում էր այդ գաւառի իշխող խանը։ Իւր ժառանգների եւ եղբայրների ապրուստն ապահովացնելու համար, Ղարաբաղի սահմաններից դուրս, Բարդայի մահալում, նա կալուածներ գնեց Նուխուայ բէկերից։ Այդ բոլորից երեւում է, որ խաները ոչ թէ երկրի տէրերն էին, այլ երկրի կառավարիչները՝ նշանակուած պարսից պետութիւնից։

Երկրի արմատական տէրերը հայոց հինգ մելիքական տների ներկայացուցիչներն էին, որոնք դարերով, սերունդից սերունդ, ժառանգաբար տիրում էին Ղարաբաղին։

Երբ հայոց մելիքներն իրանց հպատակների հետ, որպէս ցոյց տուեցինք նախընթաց գլուխներում, գաղթեցին Վրաստանի, Շիրվանի եւ Գանձակի գաւառները, այդ ժամանակ նրանց հողերն ու գիւղերն անտէր ու դատարկ մնալով, իրաւ է, Իբրահիմ-խանը տիրապետեց եւ գաղթածների տեղը լցրեց մահմեդական բնակիչներով, բայց երբ, տարիներից յետոյ, մելիքներն իրանց ժողովրդի հետ վերադարձան գաղթականութիւնից, այդ ժամանակ հեռացրին մահմեդականներին եւ կրկին տէր եղան իրանց վաղեմի գիւղերին եւ հողերին։

Բայց որովհետեւ գաղթականների մի մասը *ցրւաց օտար երկրներում եւ մելիքներից մի քանիսի (որպէս էին Ջրաբերդի Մելիք-Իսրայէլեանները եւ Տիզակի Մելիք-Աւանեանները) վերջին ժառանգները բոլորովին ոչնչացան, այդ պատճառով նրանց հողերն անտէր մնալով, Իբրահիմ-խանը տիրեց, այսինքն՝ սկսեց ինքն ստանալ մշակութեան բերքի այն մասը, որ առաջ ստանում էին այն հողերի նախկին տիրապետողները: Բայց իսկապէս Իբրահիմ-խանը միայն վայելող էր եւ ոչ թէ սեպհականատէր իւր ընդարձակ նշանակութեամբ: Բացի բերքի մի որոշեալ մասն ստանալուց նա ուրիշ իրաւունքներ չունէր ոչ հողի եւ ոչ հողը մշակող գիւղացիների վրայ: Գիւղացիներն ազատ հպատակներ էին պետութեան, իսկ հողը սեպհականութիւն էր գիւղական համայնքի նոյն ձեւով, որպէս ցոյց տուինք վերեւում:

Իբրահիմ-խանի յաջորդ Մէհտի-խանի ժամանակ հանգամանքները փոխուեցան: Այն ժամանակ ռուսները թէեւ տիրել էին Ղարաբաղին, բայց կալուածական հարցը եւ խաների իրաւունքների չափը դեռ եւս որոշուած չէր: Թողեալ այդ, ռուսները, որպէս յիշեցինք, խիստ բարձր կարծիք ունէին խաների նշանակութեան մասին: Այդ հանգամանքներից օգուտ քաղելով Մէհտի-խանը, սկսեց աւելի իրաւունքներ բանեցնել, քան որ ունէր առաջ:

Թէ խանը եւ թէ նրա շրջապատողները շատ լաւ հասկանում էին, որ իրանց իշխանութիւնն արդէն անցել է, հասկանում էին, թէ որքան ժամանակաւոր եւ անհաստատ է իրանց դրութիւնը, այդ պատճառով շտապեցին ժամանակից օգուտ քաղել:

Մէհտի-խանն սկսեց աջուձախ իւր մերձաւորներին, բարեկամներին, ազգականներին՝ ամբողջ գիւղեր, կա-

լուածներ եւ հողեր պարգեւել։ Նրա կամայականութեանն աւելի վստահութիւն տուողը եղաւ ինքը իշխան Մագաթօվը, որ իբրեւ նահանգային-զինուորական գլխաւոր, ռուսաց կառավարութիւնից նշանակուած էր խանի գործողութիւնների վրայ հսկելու եւ նոր գրաւած երկրի մէջ կարգ պահպանելու համար։

Իշխան Մագաթօվի ծագումը մենք մանաւորապէս ցոյց տուինք մեր պատմութեան XXXVIրդ գլխի մի ծանօթութեան մէջ։ Նրա հայրը՝ Մեհրաբէնց Գիւքին, հասարակ գիւղացի էր, բնակվում էր Ջանախչի (Աւետարանոց) բերդում եւ մի ստորին պաշտօն էր կատարում Վարանդայի տիրապետող Մելիք-Շահնազարեանների տանը։ Նրա մօրեղբայր Պետրոս-իւզբաշի Մագաթեանը Մելիք-Շահնազարեան Մելիք-Ջումշուդի տան նազիրը (տնտեսն) էր։ Իշխանը կրեց իւր մօր տոհմի ազգանունը, որ փոքր ինչ պատուաւոր էր, եւ իւր Ռոստոմ անունը փոխելով, կոչուեցաւ Վալերիան Գրիգորեվիչ Մագաթօվ։

Ինչպէս որ իւր իշխանական տիտղոսն ստացաւ Ս. Պետերբուրգում Մելիք-Շահնազարեան Մելիք-Ջումշուդի շնորհած վկայականով (տես գլ. XXXVI), նա այժմ իւր բարձր փառքով իւր հայրենիքը՝ Ղարաբաղ, վերադառնալուց յետոյ, ցանկացաւ նոյն Մելիք-Շահնազարեաններին՝ իւր բարերարների, հայրենական կալուածքների վրայ ինքը կալուածատէր լինել։ Մէհտի-խանն ընծայեց նրան Վարանդայի գաւառում 15 գիւղ իրանց ընդարձակ հողերով, սահմաններով եւ բնակիչներով։ Այդ գիւղերը Մելիք-Շահնազարեանների դարեւոր կալուածներն էին։ Ամբողջ Վարանդան, որպէս ընթերցողին յայտնի է, ամենահին ժամանակներից Մելիք-Շահնազարեանների տիրապետութեան ներքոյ էր գտնվում։

Յիշեալ 15 գիւղերի թւում գտնվում էր եւ Ջանախչի (Աւետարանոց) բերդը, որի մէջ զետեղուած էին Մելիք-Շահնազարեանների ամրոցները. այնտեղ էին՝ Մելիք-Յուսէին Ա-ի, Մելիք-Բաղէի եւ Մելիք-Շահնազար Բ-ի պալատները։ Իշխան Մադաթովն այդ վերջինի պալատը քանդել տուեց եւ նրա տեղում իւր համար մի նոր պալատ հիմնեց։ Երբ նրանից հարցրին, թէ ինչո՞ւ է քանդել տալիս, նա ծիծաղելով պատասխանեց. «Երբ Մելիք-Շահնազարն այդ պալատը շինել էր տալիս, ես դեռ մանուկ էի. նա ինձ շատ քարեր է կրել տուել այդ պալատի շինուածքի համար. մինչեւ այսօր էլ այն ցաւն զգում եմ մէջքիս վրայ»....։

Մէհտի-խանի պարգեւագրի բովանդակութիւնը, որով յիշեալ 15 գիւղերն ընծայուեցան իշխան Մադաթովին, ինքն ըստ ինքեան ցոյց է տալիս այդ պարգեւագրի ինչ բնաւորութեամբ հեղինակուած լինելը։ Խանը իւր պարգեւագրի մէջ յայտնում է՝ որովհետեւ իշխան Մադաթովի նախնիքը վաղեմի ժամանակներից Ղարաբաղում տիրապետում էին յիշեալ 15 գիւղին իրանց ընդարձակ սահմաններով, իսկ իշխանի բացակայութեան ժամանակ այդ կալուածքները խլուեցան (ո՞վքեր խլեցին), ուստի ինքը խանը այդ գիւղերը կրկին վերադարձնում է իշխանին, որպէս իւր նախնիքների օրինաւոր ժառանգին, եւ այլն։

Իսկ ո՞վքեր էին նրա նախնիքը, — յայտնի է։ Ունէի՞ն արդեօք նրանք կալուածներ, — այն եւս յայտնի է....։

Թէ ո՛ր աստիճան իշխան Մադաթովի մատը գործել էր այդ պարգեւագրի խմբագրութեան մէջ, յայտնի է նրանից, որ իշխանն ստացաւ այդ գիւղերը իրանց բնակիչների հետ ճորտութեան իրաւունքներով։ Ճորտութիւնը

*թէ պարսկական եւ թէ տաճկական Հայաստանում երբէք գոյութիւն չէ ունեցել։*

*Իշխանը թէեւ ծնուած էր Ղարաբաղում, բայց իւր կրթութիւնն ստացած լինելով ռուսաց մայրաքաղաքների բարձր ազնուական շրջաններում, նոյն ժամանակուայ արիստոկրատիայի ոգւով էլ զարգացած էր։ Ռուսաստանում այն ժամանակ ճորտութիւն կար. իսկ ճորտութիւնը նրա համար մի անհրաժեշտութիւն էր. նոյնը ցանկացաւ մտցնել իրան ընծայուած գիւղերի մէջ։*

*Հասկանալի է, որ մի այսպիսի օտարոտի, միեւնոյն ժամանակ անմարդասէր նորաձեւութիւնը պիտի գրգռէր նրա դէմ գիւղացիների դժգոհութիւնը մի կողմից, իսկ Մելիք-Շահնազարեանների ժառանգների բողոքը միւս կողմից, որովհետեւ յիշեալ կալուածները նրանց տոհմին էին պատկանում։*

*Բայց ամենախնասակարն այն էր, որ իշխան Մադաթովի վարմունքը թուլացրեց Ղարաբաղի բոլոր տիրապետող. մելիքների ժառանգական իրաւունքները, եւ դրա հակառակ բարձրացրեց խանի նշանակութիւնը։*

*Երբոր նա խանի պարգեւագրով ընծայ ստացաւ 15 գիւղ, շատ հասկանալի է, որ այդ պարգեւագիրը վաւերական դարձնելու համար, ինքը իբրեւ տեղային նահանգային-զինուորական գլխաւոր, որ կարգուած էր խանի գործողութիւնների վրայ հսկելու համար, ոչ միայն ստիպուած էր ճանաչելու խանի մէջ բաշխելու եւ ընծայելու իրաւունք, այլ պիտի աշխատէր այդ իրաւունքը ճանաչել տալ եւ ռուսաց կառավարութեանը, որ դեռ եւս տեղային գործերի հետ լաւ ծանօթ չէր։ Միւս կողմից նա պիտի աշխատէր ոչնչացնել մելիքների տիրապետական իրաւունքները՝ երկրի տէր եւ իշխանը ցոյց տալով միայն խանին։ Այդպէս էլ վարուեց նա։*

Դրա հետեւանքն այն եղաւ, որ Մէհտի-խանն սկսեց Ղարաբաղի բուն, արմատական կալուածատէրերին (որպէս էին հայոց մելիքները, վանքերը եւ հայ ժողովուրդը) զրկել եւ նրանց հողերը աջ ու ձախ բաժանել իւր ազգականներին եւ մերձաւորներին։ Հայոց մելիքներից այդ ժամանակ նշանաւոր մարդիկ չէին մնացել, որ կարողանային խանի զեղծումների մասին բողոքել, տեղեկութիւններ տալ ուր որ հարկն էր։ Իսկ իշխան Մադաթովը, որպէս ասում են, մատների միջից էր նայում խանի անկարգութիւնների վրայ, եւ թոյլ էր տալիս նրան բաշխումներ անել, պարգեւներ տալ, որպէս զի իւր ստացածը եւս օրինական ձեւ ստանայ, այսինքն՝ խանի մէջ հաստատուի ընծայելու, պարգեւելու իրաւունքը։

Ով որ ուշի-ուշով քննել է Ղարաբաղի խոշոր կամ մանր կալուածատէրերի ձեռքում գտնուած թղթերը, անպատճառ նկատած կը լինի, որ այդ թղթերը, խիստ մասնաւոր բացառութեամբ, գրուած են Մէհտի-խանի ժամանակներում եւ վաւերացրած են նրա կնիքով։ Իսկ Մէհտի-խանի նախորդների՝ Փանահ-խանի եւ Իբրահիմ-խանի ժամանակներից, որոնք աւելի զօրաւոր մարդիկ էին եւ մի ժամանակ ամբողջ Ղարաբաղն իրանց իշխանութեան ներքոյ ունէին, — այդ խաներից տուած խիստ հազիւ են գտնվում այնպիսի թղթեր, որ դրանք որեւիցէ մէկին գիւղ կամ մի մեծ կալուածք ընծայած լինէին։

Այդ առատ բաշխումները կատարուեցան Մէհտի-խանի ժամանակ, երբ ռուսները տիրել էին Ղարաբաղին եւ երբ իշխան Մադաթովը կարգուած էր տեղային նահանգային-զինուորական գլխաւոր եւ նրան յանձնուած էր հսկել խանի գործողութիւնների վրայ։

Թէ ո՛րպիսի մարդիկ էին ստանում գիւղեր, ընդարձակ կալուածներ, մենք կը բերենք մի քանի օրինակ.

Փարաջուլլա-բէկ, Ռահիմ-բէկ, Իբրահիմ-բէկ եւ Հասան-բէկ եղբայրներն ստացան Մէհտի-խանից 8 գիւղ։ Դրանց հայրը (Ուղուրլուն) Մէհտի-խանի հօր մօտ դահճի պաշտօն էր կատարում։

Մէհտի-խանի ղալթրչի (ջորեպան) Մուրադի որդիքը՝ Վալի-բէկն ու Թայիր-բէկը, նոյնպէս ստացան մի քանի գիւղ։

Տեղ անունով հայաբնակ գիւղը, որ մի քանի հարիւր տուն բնակիչ ունի, պատկանում էր հայազգի Մելիք-Գէորգին։ Այդ գիւղից մի հասարակ հայ մշակ տարել էին Շուշի բերդի պարիսպների վրայ բանեցնելու. որովհետեւ նրան շատ էին աշխատեցնում, նա բարկութիւնից մահմեդականութիւն ընդունեց եւ կոչուեցաւ Ղասըմ։ Այդ Ղասըմի որդի Ռոստոմ-բէկը դարձաւ Մէհտի-խանի տան նազիրը (տնտեսը), իսկ վերջինի որդի Ասատ-բէկը խանից պարգեւ ստացաւ Տեղ գիւղը։

Պատմում են, երբ Մէհտի-խանի եղբօրորդի Ջաֆար-Ղուլի-խանը նկատեց, որ նա Ղարաբաղի գիւղերն այսպէս առատութեամբ բաժան-բաժան է անում, ինքը եւս 12 գիւղի ցուցակ կազմեց, եւ որովհետեւ նրա յարաբերութիւնները իւր հօրեղբօր հետ լաւ չէին, վերջիշեալ նազիր Ռոստոմ-բէկի միջնորդութեամբ ներկայացրեց Մէհտի-խանին, խնդրելով որ իւր անունով հաստատէ ցոյց տուած գիւղերը։ Ռոստոմ-բէկը 12 գիւղի պարգեւագիրը գրել տուեց եւ խանի կնքով վաւերացնելով, յանձնեց Ջաֆար-Ղուլի-խանին։ Իսկ այդ վերջինը մի քանի օրից յետոյ փոշմանեց, թէ ինչու Հայոց Խնածակ գիւղը եւս չէ մտցրել այն ցուցակի մէջ, որովհետեւ այդ գիւղը Շուշի բերդին բաւական մօտ էր եւ կարող էր իւր համար լաւ ամարանոց լինել։ Նա կրկին դիմում է նազիր

Ռոստոմ-բէկի միջնորդութեանը։ Նազիրը՝ պարսից սովորութեան համեմատ խանի պարգեւագրի լուսանցքի (հաշիա) վրայ աւելացնում է Խնածախ գիւղի անունը եւ ներկայացնում է կնքելու։ Բայց Մէհտի-խանը զարմանում է, նա բնաւ չէ յիշում, որ մի այդպիսի պարգեւագիր տուած լինէր իւր եղբօրորդուն, որին սաստիկ ատում էր։ Նա փոխանակ կնքելու, թուղթը պատառում է եւ մի կողմ ձգում։ Բանից դուրս է գալիս, որ սկզբում այդ թուղթը խանին վաւերացնել էին տուել այն րոպէների մէջ, երբ նա բնական դրութեան մէջ չէր եղել...։

Մէհտի-խանը սովորութիւն ունէր սաստիկ մեծ քանակութեամբ ռոմ գործ ածելու եւ խիստ հազիւ էր պատահում, որ նա զգաստ դրութեան մէջ գտնուէր։

Եւ այսպէս Մէհտի-խանի ազգականները, ջորեպանները, ախոռապանները եւ այլ մերձաւորները, "բէկ" տիտղոս ստանալով, միեւնոյն ժամանակ ստացան գիւղեր, ընդարձակ հողեր, եւայլն։ Իսկ այդ բոլորը խլուեցաւ հայոց մելիքների սեպհականութիւնից։

Բայց այդ անկարգութիւնները երկար շարունակուել չէին կարող։ Ամենքը գիտէին, որ ռուսաց կառավարութիւնը վերջիվերջ կը հասկանար այդ զեղծումները եւ խանի կամայականութեանը սահման կը դնէր։

Միեւնոյն ժամանակ գիտէին եւ այն, որ մշտական արբեցութեան մէջ գտնուող Մէհտի-խանը խիստ վատ յիշողութիւն ունի. Նա իւր երեկուայ ասած խօսքը, տուած թուղթը կարող է այսօր մերժել։ Այդ էր պատճառը, որ խանի դրութիւնից օգուտ քաղողներն աշխատեցին մի կերպով հեռացնել նրան Ղարաբաղից, որպէսզի նրանից ստացած թղթերը պահպանէին իրանց նշանակութիւնը։

Մէհտի-խանը բաւական երկչոտ մարդ էր։ Ամեն կողմից սկսեցին վախեցնել նրան, թէ ռուսները դիտաւորութիւն ունին նրան սպանել տալու, Սիբիր ուղարկելու եւայլն։ Ասում են, թէ ինքը իշխան Մադաթովը նոյնպէս կողմնակի կերպով նպաստում էր խանի անվստահութեանը։

1822 թուին Մէհտի-խանը փախաւ Պարսկաստան[1]։ Բայց նրա փախուստը ճանապարհ բաց արաւ պարսից թագաժառանգ Աբաս-Միրզայի 1826 թուի մի նոր արշաւանքին դէպի Ղարաբաղ եւ Գանձակի կողմերը, որ ռուսներին բաւական հոգսեր պատճառեց, եւ որի ժամանակ հայերը դարձեալ ցոյց տուին իրանց անձնանուիրութիւնը։

## XLIV.

1826 թուի ամառը պարսից թագաժառանգ Աբաս-Միրզան 80.000 զինուորով դարձեալ անցաւ Երասխ գետը։ Փաթալի-շահի անձնավստահ որդին, որ առաջին փորձն էր արել իւր զօրքերի մէջ մտցնելու եւրոպական կրթութիւն, որ իրան նպատակ էր դրել վերականգնելու Պարսկաստանի վաղեմի փառքը, չէր կարող համբերել, որ Պարսկաստանի մի ամենալաւ մասին, որպիսին էր Անդրկովկասը, տիրէին ռուսները։

Նրա բանակի մէջ գտնվում էին Ղարաբաղի Մէհտի-խանը, Շաքիի Սէլիմ-խանը եւ Շիրվանի Մուստաֆա-խանը, որոնք առաջ ռուսաց կառավարութեանը հպատակութեան երդում էին տուել, իսկ յետոյ դաւաճանելով, փախել էին Պարսկաստան եւ պարսից զօրքերի հետ

[1] Պատմում են, թէ խանի փախուստն այն աստիճան շտապով կատարուեցաւ, որ կնիկը մոռացութեամբ թողեց իւր քարտուղար Միրզա-Ջամալի մօտ. եւ խանի բացակայութեան միջոցին այդ կնիկը երկար ժամանակ գործ էր ածվում...։

վերադառնալով, աշխատում էին ապստամբեցնել Անդրկովկասի մահմեդականներին ռուսների դէմ։ Նրա զօրապետների թւում գտնվում էր եւ վրաց իշխանազն Ալեքսանդրը մի քանի վրացի ազնուականների հետ, որոնք յուզում էին Ղազախի, Բօրչալուի եւ Շամշադինի թարաքամաններին ռուսների դէմ։

Անցնելով Երասխ եւ մտնելով Ջանգէզուրի մահալը, Աբաս-Միրզան բոլորովին ջարդեց ռուսաց մի ջոկատ (բատալիօն), որ գտնվում էր Կորիս գիւղում։ Այստեղից արագութեամբ մտաւ նա Ղարաբաղի գաւառը եւ տիրեց ամեն տեղ։

Ղարաբաղի պաշտպանութեան համար ռուսները թողել էին Եգերեան զօրագնդից վեց վաշտ (ռօտա) միայն, գնդապետ Ի. Ա. Ռէուտի հրամանատարութեան ներքոյ, որոնք գտնվում էին Ջանախչի աւանում, որ այդ ժամանակ պատկանում էր իշխան Մադաթովին։ Երբ պարսից զօրքերը մտեցան, գնդապետ Ռէուտը թողեց Ջանախչին եւ իւր զինուորների հետ փախչելով, հազիւ կարողացաւ ամրանալ Շուշի բերդում։

Պարսիկները գրաւեցին Ջանախչին եւ Աբաս-Միրզայի առաջին գործն եղաւ հրամայել, որ քանդեն իշխան Մադաթովի պալատը, որ կառուցել էր նոյն աւանում։

Նախընթաց գլխում տեսանք, որ իշխան Մադաթովն ստացաւ Մէհտի-խանից 15 գիւղ, որոնց թւում գտնվում էր նաեւ Ջանախչին։ Այդ գեղեցիկ աւանը Մելիք-Շահնազարեանների ամրոցն էր. այնտեղ էին գտնվում այդ տոհմի վաղեմի պալատները։ Իշխան Մադաթովն այդ պալատները քանդել տալով, նրանց աւերակների վրայ հիմնեց իւր նոր պալատը, որի փառքը երկար վայելել չկարողացաւ նա...։

Աբաս-Միրզան Ջանախչին աւերակ դարձնելով, անցաւ եւ պաշարեց Շուշի բերդը։ Իւր առաջապահ զօրքերը իւր երեք որդի Մահմադ-Միրզայի եւ Ամիր-խան-սարդարի[1] առաջնորդութեամբ ուղարկեց նա դէպի Գանձակի գաւառը, որոնք տիրեցին Գանձակի բերդին, բոլորովին ոչնչացրին մերձակայ գերմանական կոլոնիաները, առաջացան մինչեւ Շամքօրի գետը եւ այնտեղից պատրաստւում էին գնալ նաեւ Թիֆլիզը տիրելու։

Ամբողջ Անդրկովկասեան քրիստոնեաները գտնվում էին սարսափի մէջ. ամենքն էլ սպասում էին, որ Աղա-Մամադ-խանի բարբարոսութիւնները պէտք է կրկնուեն։ Տեղային մահմեդականութիւնը մեծ յուզմունքի մէջ էր. բոլորը պատրաստուած էին միանալու պարսիկների հետ՝ ռուսներին ջարդելու եւ պարսկական իշխանութիւնը կրկին Անդրկովկասում վերականգնելու համար։

Իշխան Մադաթովը այդ ժամանակ գտնվում էր Կովկասեան հանքային ջրերում, ուր գնացել էր իւր առողջութիւնը կազդուրելու։ Այնտեղ տեղեկութիւն ստացաւ Վրաստանի գլխաւոր հրամանատար զօրապետ Երմոլովից, թէ որպիսի վտանգ էր սպառնում Անդրկովկասին։ Նա մոռացաւ իւր հիւանդութիւնը եւ երկու օրուայ մէջ ջրերից հասաւ Թիֆլիզ։ Անմիջապէս (10 օգոստոսի) նրան առաջարկուեցաւ ընդունել այն զօրքերի հրամանատարութիւնը, որ պատրաստել էին ուղարկելու պարսիկների դէմ։ Իշխանը մեծ ուրախութեամբ ընդունեց, որովհետեւ վտանգը գլխաւորապէս՝ իւր հայրենիքին էր սպառնում։

Մինչեւ իշխան Մադաթովի հասնելը դառնանք դէպի Շուշի բերդը, տեսնենք այնտեղ ինչ էր կատարվում։

---

[1] Ամիր-խան սարդարը Աբաս-Միրզայի հօր՝ Ֆաթալի-շահի փեսան էր։

Աբաս-Միրզայի բոլոր ջանքերը բերդը տիրելու համար իզուր անցան։ Իզուր նրա մօտ գտնուած Ֆրանսիացի ու Իտալացի ինժեներները գործ էին դնում իրանց բոլոր արհեստը։ Բնութիւնից անառիկ ստեղծուած բերդը գրաւելու հնար չկար։ Նա ընդդիմացաւ 48 օրուայ սարսափելի պաշարման։

Բայց միայն բերդի բնական ամրութիւնը չէր, որ նրան պահպանեց թշնամու յարձակումներից։ Նրան պահպանեց գլխաւորապէս հայերի անձնազոհութիւնը։

Բացի բերդի մէջ բնակուող հայերից, այնտեղ շրջակայ գիւղերից հաւաքուել էին բազմաթիւ հայեր։ Այնտեղ կային, որպէս յիշեցինք, վեց վաշտ ռուս զինուոր միայն, գնդապետ Ռէուտի հրամանի ներքոյ։ Թէ ինչպէս էին գործում հայերը, մենք իբրեւ ապացոյց մէջ կը բերենք մի փոքրիկ կտոր իշխան Մադաթովի կենսագրութիւնից.

“Ոչինչ չէր կարող խռովեցնել մի բուռն ռուսներին, որոնք ընկերաբար միանալով հայերի հետ (դրանք ըստ մեծի մասին իշխան Մադաթովի կալուածներիցն էին), քաջութեամբ պատասխանում էին պաշարուած բերդի բոլոր կէտերի վրայ թշնամու յարձակումներին, որ թուով երեսուն անգամ աւելի էր, քան թէ բերդի մէջ գտնուած պահապան զօրքը (գարնիզօն), որ չունէր ոչ բաւականաչափ ուտելու պաշար եւ ոչ հրանօթներ, որոնք մնացել էին Չանախչիի մէջ, 42րդ Եգերեան զօրագնդի բնակութեան տեղում։ Տեսնելով գարնիզօնի այդքան յամառ ընդդիմադրութիւնը եւ յոյս չունենալով ուժով նուաճելու նրան, Աբաս-Միրզան աշխատում էր տկարացնել նրան գիշերային անընդհատ յարձակումներով եւ կրակ թափելով...։ Վերջապէս դրա մէջ եւս յաջողութիւն չգտնելով, սկսեց զանազան խոստ-

մունքներով հրապուրել բերդի մէջ գտնուած հայերին, աշխատելով համոզել նրանց, որ բաժանուեն ռուսներից։ Բայց եւ այդ ձեռնարկութեան մէջ հանդիպեց հայերի կողմից միահոգի եւ հաստատուն մերժման։ Սահմանագլխի այդ նշանաւոր բերդի գրաւումն անպատճառ կ'ունենար մեզ (ռուսների) համար չափազանց վատ հետեւանքներ. որովհետեւ, Աբաս-Միրզան տիրելով նրան, այլեւս արգելք չէր ունենայ կանգնեցնել իւր արշաւանքը, եւ ուղղակի առաջ կը խաղար դէպի Թիֆլիզ, ուր կարող էր հասնել, նախ քան մեր զօրքերը ժամանակ կը գտնէին միանալու, որ պաշտպանէին այդ քաղաքը։ Շուշիի մէջ կատարուած գործողութիւնները սքանչելի էին։ Գիշերով պատրաստուած վառօդի եւ գնդակների քանակութիւնը գործ էր ածվում ցերեկով։ Մինչեւ անգամ (հայոց) կնիկները եւ մանկահասակ աղջիկները ցոյց էին տալիս եռանդ եւ քաջութիւն. օգնում էին պաշարուածներին հէնց պատնէշների վրայ՝ կռուելու ժամանակ բաժանելով նրանց պատրոններ։ Դեռ մինչեւ այսօր պատմվում են շատ զրոյցներ Շուշիի բնակիչների այդ ժամանակի ինքնազոհութիւնների մասին”[1]։

Այդ ինքնազոհութեան օրինակներից մենք կը յիշենք մէկը միայն, որի մէջ փայլում է Ղարաբաղցի կնոջ հերոսութիւնը.

Հէնց նոյն օրը, երբ Աբաս-Միրզայի զօրքերը պաշարում են Շուշի բերդը, մի աղքատ կին իւր ամուսնու հետ մի պարկ ցորեն էր տարել ջրաղաց՝ աղալու համար։ Շուշի բերդի ջրաղացները գտնվում են Գարգար գետի ձորի մէջ, Հիւնոտ անունով գիւղի մօտ։ Ո՛վ որ տեսել

[1] „Жизнь генералъ-лейтенанта князя Мадатова“. Изданіе второе. Санктпетербургъ 1863. Երես 115–116.

է այդ անդնդախոր ձորը, ով որ տեսել է այն նեղ ճանապարհը, որ քարափների կրծքի վրայով, սարսափելի գահավէժներից բարձրանում է դէպի բերդը, կարող է երեւակայել, թէ որքան քաջութիւն, որքան սրտի ամրութիւն պէտք էր մի կնոջ, որ նա կարողանար այդ ճանապարհով գնալու ժամանակ ոչ միայն իւր անձն ազատել պարսիկ սարվազների ձեռքից, այլեւ կոտորել նրանցից շատերին։

Աղքատ կնոջ ամուսինը ալիւրի պարկը շալակած, երկուսը միասին բարձրանում էին քարափներից, որ յանկարծ վրայ են հասնում մի խումբ սարվազներ։ Ամուսինը այրը պարկը ցած է գցում եւ սկսում է փախչել։ Իսկ կինը մնում է եւ սկսում է քարերով կռուել սարվազների հետ։ Նրան յաջողվում է մէկին ցած գլորել եւ խլել նրանից հրացանն ու սուրը։ Այնուհետեւ մի կողմից պատերազմելով սարվազների հետ, միւս կողմից ալիւրի պարկը իւր ետեւից քարշ տալով, նա բարձրանում է դէպի բերդը։ Բերդի միջից հեռուից տեսնում են նրա կռիւը եւ աղաղակներով քաջալերում են։ Նա ազատում է իւր զաւակների ալրուստի պաշարը եւ մինչեւ բերդը մտնելը սպանում է մի քանի սարվազ։

Մինչեւ այսօր ամեն մի շուշեցի չէ մոռացել այդ կնոջ անունը. նրան կոչում էին Խաթայի[1]։

Շուշի բերդը հայերի օգնութեամբ ամբողջ 48 օր պաշտպանուեցաւ Աբաս-Միրզայի բազմաթիւ զօրքերի դէմ։ Այդ սահմանագլխեան բերդը մի հզօր խոչընդոտն, մի մեծ արգելք էր նրա արշաւանքի առաջադիմութեանը դէպի Անդրկովկասի խորքերը։ Եթէ Աբաս-Միրզան այս-

[1] Գնդապետ Րէուտի առաջարկութեամբ ռուսաց կառավարութիւնը նշանակեց այդ կնոջ համար ցմահ կենսաթոշակ։

տեղ աջողութիւն գտնէր, գործերի դրութիւնը շատ պիտի դժուարանար ռուսների համար։ Ղարաբաղի Մեհ-տի-խանը, այդ՝ ռուսներից յարգուած եւ զօրապետի (գե-ներալ) աստիճանի հասցրած դաւաճանը, արդէն ոտքի էր կանգնացրել Ղարաբաղի մահմեդական բոլոր խաշնարած, կիսավայրենի ցեղերին ռուսների դէմ։ Բաց ի Աբաս-Միր-զայի կանոնաւոր զօրքերից, ռուսաց սահմանների մօտ Թա-փառող պարսից բոլոր աւազակ ցեղերը, ինչպէս էին շահ-սէվանները, ղարադաղցիքը, ահագին խմբերով անցել էին Երասխը՝ աւարառութեան եւ կողոպուտի նպատակով։

Բայց Շուշին պաշտպանվում էր։

Այդ ժամանակ Աբաս-Միրզայի առաջապահ զօրքերը նրա երէց որդի Մահմադ-Միրզայի եւ Ամիր-խան-սար-դարի առաջնորդութեամբ, տիրելով Գանձակին անցել էին մինչեւ Շամքօրի գետը. այդտեղից պատրաստվում էին գնալ Թիֆլիզը գրաւելու համար։

Դեռ օգոստոսի 4-ին ռուսաց զօրքերը Թիֆլիզից ճա-նապարհ էին ընկած թշնամու առաջն առնելու համար։ Իշխան Մադաթովն սկզբում նրանց հետ չէր. նա արա-գութեամբ յետոյ հասաւ իւր հրամանատարութեանը յանձնուած զօրքերին Կարմիր-կամուրջի մօտ, եւ այնտե-ղից առանց ժամանակ կորցնելու ճանապարհ ընկաւ դէպի Գանձակ։

Զագամ գետի մօտ իշխան Մադաթովը հանդիպեց վրաց իշխանազն Ալեքսանդրին, որ 2000 պարսիկ զօրքով եւ մի քանի վրացի ազնուականների հետ կամենում էր անցնել դէպի Նուխուայ գաւառը՝ լեզգիներին եւ տեղային մահմեդականներին ապստամբացնելու ռուսների դէմ։ Իւր զօրաբաժնից իշխան Մադաթովն առաւ փոքրաթիւ ձիա-ւորներ եւ յարձակուեցաւ Ալեքսանդրի վրայ։ Կարճատեւ

կռուից յետոյ վրաց իշխանազը ստիպուեցաւ խոյս տալ դէպի Շամքորի լեռները։

Յաջողակ ձեռքով ջարդելով թշնամու առաջապահ գնդերը, իշխան Մադաթովը սեպտեմբերի սկզբներին հասաւ Շամքորի գետի մօտ, որի աջ ափի վրայ սպասում էր նրան պարսից գլխաւոր զօրութիւնը, պատերազմական կարգով։ Նրանց թիւն անցնում էր 10.000-ից, չհաշուելով Ղազախի եւ Շամշադինի թուրքերին, որոնք ահագին խմբերով միացել էին պարսիկների հետ։ Այդ խառնիճաղանճ բազմութեան առաջնորդում էր Ամիր-խան-սարդարը, որ Շահի փեսան եւ նրա լաւ զօրապետներից մէկն էր. բացի նրանից, զօրապետների թւում գտնվում էր եւ Աբաս-Միրզայի երեք որդին։

Իսկ իշխան Մադաթովն ունէր իւր հրամանի ներքոյ միայն երկու ջոկատ (բատալիօն), 2 վաշտ (ռօտա) եւ 4 թնդանօթ։ Բայց քաջ եւ փորձուած զօրավարի անձնավստահութիւնը փշրեց թշնամու ահագին զօրութիւնը։ Նրա ահարկու անունը, որ արդէն մահմեդականների մէջ առասպելական նշանակութիւն էր ստացել, բաւական էր թշնամուն սարսափեցնելու համար։ Եւ իշխան Մադաթովը իւր պատերազմական ճարպկութիւնների մէջ գիտէր այնպիսի հնարքներ բանացնել, որ ազդէր արեւելքցիների երեւակայութեան վրայ։ Որպէս Հոմերոսի հերոսները Տրոյեան գրաւելու համար կազմեցին իրանց ամեհի փայտեղէն երիվարը, այնպէս էլ իշխան Մադաթովը սարքեց մի ահագին սայլ, որ իբրեւ մի հրէշաւոր մեքենայ, հանդարտ ընթացքով առաջ էր տանում իւր զօրքերի առջեւից։ Սայլի միջից որոտում էին թնդանօթները, որ կապուած էին նրա վրայ։ Սարսափած թշնամին կարծում էր թէ այդ վիթխարի հրէշը իւր բերանից էր հոսում անընդհատ կրակն ու գնդակները։

Պարսիկները չարաչար կերպով ջարդուեցան։ Նրանց գլխաւոր հրամանատարը, Ամիր-խան-սարդարն ընկաւ կռուի դաշտում։ Աբաս-Միրզայի որդի Մահմադ-Միրզան առաջինն եղաւ, որ փախչելով խոյս տուեց պատերազմի դաշտից։ Նրան հետեւեցին յաղթուած սարվազները, թողնելով Շամքոր գետի ափերի մօտ իրանց բոլոր ռազմամթերքը։

Իշխանն սկսեց հալածել թշնամուն, որ նա Գանձակի մօտ կանգ չառնէ տեղային հայերին վնասելու համար։ Սեպտեմբերի 4-ին հասաւ նա Գանձակի պարիսպների մօտ։ Քաղաքի հայ հասարակութիւնը մեծ հանդէսով հանդիպեց նրան, շնորհաւորելով նրա փառաւոր յաղթութիւնը։ Ամբոխը երգում էր նրա անունով արդէն յօրինուած ժողովրդական երգերը։

Շամքորի յաղթութիւնն ազատեց Գանձակը թշնամու բարբարոսութիւնից[1] և փոքր ինչ հանգստացրեց յուզուած մահմեդականներին[2]։ Բայց դեռ ամենագլխաւորը մնացել էր. Շուշի բերդը դեռ ևս գտնվում էր պաշարուած դրութեան մէջ Աբաս-Միրզայի զօրքերով, որոնց հետ միացան Շամքորի պարտութիւնից յետոյ փախած պարսիկները։

---

[1] Աբաս-Միրզան Նազար-Ալի-խան անունով դրօշակիր, 1500 մարդկանց առաջնորդելով, թողուած էր Գանձակի բերդի պահպանութեան համար։ Նա [illegible] պատրաստուել էր [illegible] տեղացի հայերին, բայց հենց որ լսեց իշխ. Մադաթովի Շամքորի յաղթութիւնը, շտապով թողեց Գանձակը և փախաւ։

[2] Պարսիկները տեղացի մահմեդականներին յուզելու համար [illegible] Պարսկաստանի [illegible] հոգեւորականների [illegible], որ [illegible], հրաւիրում էր տեղացի մահմեդականներին, որ [illegible] իշխ. Մադաթովը [illegible] և [illegible]։

Իշխան Մադաթովն արդէն պատրաստուել էր գնալու Շուշին ազատելու համար, երբ յանկարծ հրաման ստացաւ գեներալ Պասկեւիչից (որ այդ ժամանակ եկել էր Թիֆլիզ), որ Գանձակում սպասէ իրան։

Սեպտեմբերի 11-ին ինքը Պասկեւիչն անձամբ եկաւ Գանձակ եւ ընդունեց բոլոր զօրքերի հրամանատարութիւնը։

“Սեպտեմբերի 13-ին, գիշերը, պարսից բանակից յայտնուեցան երկու հայ, որոնցից մէկը, իբրեւ ռուսաց լեզուի թարգման, գտնվում էր Աբաս-Միրզայի մօտ եւ մի ժամանակ ծառայել էր իշխան Մադաթովի տանը։ Նրանք թախանձանօք պահանջում էին, որ իրանց թողնեն իշխանի (Մադաթովի) մօտ, որին հաղորդեցին թէ պարսիկները, իրանց բոլոր ծանրութիւնները թողնելով Թարթար գետի միւս կողմում, արդէն անցան Քիւրակչայ գետը, եւ առաջ են ընթանում, որ յանկարծակի յարձակում գործեն մեր (ռուսաց) զօրքերի վրայ։ Իշխան Մադաթովն անյապաղ այդ մասին տեղեկութիւն տուեց գեներալ-ադիւտանտ Պասկեւիչին, որի կողմից տրուեցան այդ դէպքի համար բոլոր հարկաւոր եղած հրամանները„[1]։

Եւ իրաւ, Աբաս-Միրզան Շամքօրի պարտութիւնից յետոյ իւր զօրքերի մի մասը թողնելով Շուշի բերդի մօտ եւ առնելով իւր հետ 15.000 կանոնաւոր հետեւակ եւ 20.000 ձիաւոր, 26 թնդանօթով, այնքան առաջ էր եկել, որ գտնվում էր 7 վերստ հեռաւորութեան վրայ Գանձակ քաղաքից։ Եւ ռուսները նրա շարժման մասին հազիւ թէ տեղեկութիւն կ'ունենային, եթէ վերոյիշեալ

[1] „Жизнь генералъ-лейтенанта князя Мадатова“. Изданіе второе. 1863. Երես 116։

երկու Հայը, որոնք Աբաս-Միրզայի ծառայութեան մէջ էին գտնվում, լրտեսի պաշտօն չկատարէին:

Գանձակի մօտ ռուսաց զօրքերը բաղկացած էին միայն 6 ջոկատ (բատալիօն) հետեւակներից եւ երեք գունդ (պօլկ) ձիաւորներից, ունէին 24 թնդանօթ: Զօրքերի այդ անհամեմատ սակաւութիւնը Աբաս-Միրզայի ահագին զօրութեան դէմ կարող էր միայն պաշտպանողական դիրք բռնել եւ ոչ յարձակողական, եւ այսպէս էլ վարուելու դիտաւորութիւն ունէր գեներալ Պասկեւիչը: Բայց իշխան Մադաթովը, որ աւելի լաւ ծանօթ էր արեւելքցիների հետ, համոզեց նրան, որ թշնամուն ժամանակ տալով, նրա զօրութիւնն աւելի կը բարդուի, տեղացի մահմեդականները կը միանան նրա հետ. բացի դրանից, հասկացրեց, որ ասիացիների հետ պատերազմելու համար զօրքերի թիւն այնքան նշանակութիւն չունի, որքան համարձակ եւ վճռական յարձակմունքը:

Վճռեցին կռուել: Իշխան Մադաթովի պատերազմական տաղանդը, որպէս Շամքօրի ճակատամարտում, նոյնպէս եւ Գանձակի մօտ կատարուած կռւում, ցոյց տուեց նրա զինուորական բարձր արժանաւորութիւնները:

Աբաս-Միրզան յաղթուեցաւ: Պարսիկներն այնքան շտապով սկսեցին փախչել, որ պատերազմի դաշտում եւ ճանապարհների վրայ թողեցին իրանց բոլոր ծանրութիւնները: Աբաս-Միրզան սեպտեմբերի 15-ին, իսկ նրա ջարդուած զօրքերը նոյն ամսի 17-ին անցան Երասխ գետը: Իշխան Մադաթովը հալածեց նրանց մինչեւ պարսից սահմանները:

Թշնամու հեռանալովը Շուշի բերդի պաշարումն ինքն ըստ ինքեան լուծուեցաւ: Իշխան Մադաթովն շտապեց այնտեղ բերդի դրութիւնը տեսնելու համար: Մի

քանի վերստ հեռաւորութեան վրայ ահագին բազմութեամբ նրա առաջ դուրս եկաւ գնդապետ Րէուտը հայոց հոգեւորականութեան հետ։ Մինչեւ անգամ կանայքը, երեխաները ուրախութեան աղաղակներով արտայայտում էին իրանց շնորհակալութիւնը իրանց ազատչին։

Այստեղ իմացաւ նա, որ թշնամին ոչ միայն աւերակ էր դարձրել նրա Զանախչի ամրոցը, այլ բոլորովին ոչնչացրել էր նրա գիւղերից 6ը։ Ինչ որ կարողացել էին տանել, տարել էին, ինչ որ չէին կարողացել, այրել էին։

Բայց կողոպտուած Ղարաբաղը տակաւին յուզման մէջ էր։ Մէհտի-խանը դեռ եւս գրգռում էր մահմեդականներին զանազան անկարգութիւններ գործելու, յորդորում էր նրանց թողնել Ղարաբաղը, անցնել Երասխի միւս կողմը՝ պարսից հողի վրայ, եւ այնտեղից յարձակումներ գործել։

Իշխան Մադաթովը պէտք է իրան ցոյց տար Ղարաբաղի բնակիչներին, մանաւանդ որ պարսիկները նրա մասին սուտ լուրեր էին տարածել, որ կռուի մէջ սպանուած է։

Բայց նա իւր ձեռքի տակ զօրք չունէր, որովհետեւ նրա հրամանատարութեան ներքոյ գտնուած զօրքն այդ ժամանակ յանձնուած էին գեներալ Պասկեւիչին։ Այդ դէպքում եւս նրան օգնութեան հասան հլու եւ հնազանդ հայերը։ Շուտով կազմուեցան կամաւորների խմբեր, որոնց իւր հետ առնելով, իշխանն սկսեց թռչել դէպի Ղարաբաղի զանազան կողմերը, եւ ամեն տեղ հանգցնել Մէհտի-խանի բորբոքած խռովութիւնները։

Հայերի օգնութեամբ իշխանը խաղաղացրեց մահմեդականների խռովութիւնները, որոնց անհաւատարմութիւնը շուտով մոռացուեցաւ, մոռացուեցաւ եւ հայերի

ռուսները մասամբ գրաւել էին եւ մնացածը եւս ցանկութիւն ունէին գրաւելու, Երասխ գետը թողնելով իբրեւ սահմանագիծ երկու պետութիւնների մէջ։

Աբաս-Միրզան թէեւ Նադիրի, Աղա-Մահմադ-խանի նման հզօր պատերազմող չէր, բայց խելացի քաղաքագէտ էր եւ երկրի լաւ կառավարիչ։ Նա այն տեսակ անձնաւորութիւններից էր, որ գիտէր ամեն տեսակ ուժերից օգուտ քաղել։ Իսկ Պարսկաստանի շինութեան համար մի մեծ ույժ նա տեսնում էր հայերի մէջ։ Այդ էր պատճառը, որ նա սկսեց հայերին օր ըստ օրէ բարձրացնել՝ նրանց լայն ասպարէզ եւ ընդարձակ արտօնութիւններ շնորհելով։ Նրա ողորմածութիւնը հայերի վերաբերութեամբ համակրում էր եւ նրա հայրը, բարի եւ մարդասէր Ֆաթալի-շահը, որի թագաւորութեան ժամանակ Պարսկաստանի հայերը վայելում էին կատարեալ բախտաւորութիւն։

Որպէս Շահ-Աբաս Մեծը մի ժամանակ Պարսկաստանի վաճառականութիւնը ծաղկեցնելու համար Սպահանի հայերից առեւտրական ընկերութիւններ էր կազմում եւ ինքը եւս իւր սեպհական դրամագլխով մասնակցում էր նրանց առեւտրական ձեռնարկութիւնների մէջ, այնպէս էլ Աբաս-Միրզան ունէր իւր հայ վաճառականները, որոնք գործում էին նրա դրամագլխով։

Երկրի հայ ազգաբնակութիւնը մահմեդական կառավարիչների հարստահարութիւններից ազատ պահելու համար նա բարձրացրեց հայոց մելիքների նշանակութիւնը, նրանց ընդարձակ իրաւունքներ տալով, նրանց համար ռոճիկներ սահմանելով, եւայլն։

Ճանաչելով որ հայ ժողովուրդը սերտ կերպով կապուած է իւր եկեղեցու եւ եկեղեցականների հետ, նա

սկսեց զսպել ոչ միայն մահմեդականների կրօնական հալածանքը քրիստոնեաների դէմ, այլ աշխատում էր աւելի ուժ եւ խրախոյս տալ քրիստոնէութեանը: Յաճախում էր հայոց եկեղեցին, ներկայ էր գտնւում հայոց եկեղեցական հանդէսներին, որ իւր օրինակով ցոյց տայ, թէ հայերի կրօնական պաշտամունքները ամենայն յարգանքի արժանի են: Նրա ժամանակ հայոց եկեղեցիներն սկսեցին զանգակ հարկանել, որ առաջ արգելուած էր:

Նոյն ժամանակուայ Ատրպատականի Իսրայէլ եպիսկոպոսը նրա ամենալաւ բարեկամն էր: Նա յատկացրեց եպիսկոպոսի համար նշանաւոր ռոճիկ. բացի դրանից, առաջնորդարանի ծախքերի համար, իբրեւ մշտական սեփականութիւն, ընծայեց ընդարձակ կալուածներ, որ նրանց եկամուտներով պահպանուի առաջնորդարանը[1]:

Ատրպատականի հայոց վանքերի գոյութիւնն ապահովացնելու համար շնորհեց նա, իբրեւ մշտական սեփականութիւն, իւրաքանչիւր վանքին մի-մի գիւղ՝ իրանց բնակիչներով, հողերով ու սահմաններով: Այդ գիւղերն ազատ թողեց նա արքունի հարկերից, այնպէս որ կառավարութեան փոխարէն ինքը վանքն իրաւունք ունէր ստանալ ոչ միայն մշակութեան բերքերի մի մասը, այլեւ արքունի հարկերը[2]:

---

[1] Այդ ժամանակ Ատրպատականի հայոց հոգեւոր կառավարութեան առաջնորդարանը գտնւում էր Սալմաստ գաւառի Հաւթվան գիւղում, եւ կալուածները այդ գիւղի հողերիցն էին, որոնք հետզհետէ վաճառուեցան հետագայ թեմական առաջնորդների ագահութեամբ...:

[2] Ատրպատականում երեք նշանաւոր վանք կայ. Նախավկայի վանքը, որ գտնւում է Երասխի ափի մօտ Հին-Ջուղայից ոչ այնքան հեռու. Թադէոս առաքեալի վանքը, Մակուի գաւառում, եւ Բարդուղիմէոս առաքեալի վանքը Հաղբակի գաւառում. Այդ վանքերը դեռ պահպանում են Աբաս-Միրզայի շնորհած կալուածները, բայց հոգեւոր իշխանութեան անհոգութիւնից խիստ ողորմելի դրութեան մէջ են:

*Թաւրիզը Աբաս-Միրզայի աթոռանիստն էր. այդ քաղաքի հայ հասարակութեան դրութիւնը բարւոքելու համար ազատեց նրանց ամեն տեսակ հարկերից։ Նոյն արտօնութիւնը Թաւրիզեցի հայերը վայելում են մինչեւ այսօր, իսկ նրանց հարեւան մահմեդականները հարկ են վճարում։*

*Երկար կը լինէր մի առ մի թուել, թէ որքան ողորմած էր նա դէպի հայոց ժողովուրդը եւ որքան բարձրացրեց նա այդ ժողովրդի դրութիւնը՝ նրան ամեն կերպ ապահովութիւններ շնորհելով։ Բայց այն եւս պէտք է նկատել, որ Աբաս-Միրզան այդ բոլորի մէջ ունէր եւ իւր քաղաքական նպատակները։ Նա ամեն հնար գործ էր դնում, որ հայերի սրտերն ամուր կերպով կապէ Պարսկաստանի հետ եւ նրանց համակրութիւնը դէպի ռուսները սառեցնէ։ Այսուամենայնիւ ինչ էլ որ լինէին նրա քաղաքական նպատակները, բայց դարձեալ նրա համակրութիւնը դէպի հայերը բոլորովին անկեղծ էր*[1]*։*

*Աբաս-Միրզան եւ նրա նախորդները հայերի մէջ գտնում էին ոչ միայն լաւ երկրագործի, վաճառականի եւ արհեստաւորի արժանաւորութիւններ, այլ եւ զինուորական տաղանդ եւ կառավարչական ընդունակութիւններ եւս։ Նրա ժամանակ կամ նրանից առաջ հայերից շատերը ոչ միայն զինուորական բարձր աստիճանների հասան, այլեւ վարում էին ամբողջ նահանգների փոխարքայութեան պաշտօն, դեր էին խաղում դիպլօմատիայի մէջ,*

[1] *Նրա անկեղծութեանը կարող է ապացոյց լինել այն, որ 1827 եւ 1828 թուերում Պարսկաստանի հայոց դէպի Անդրկովկաս գաղթականութեան ժամանակ շատ աշխատեց նա, որ հայերը չգաղթեն։ Բայց ռուսաց սուինները, Ներսէսը եւ Լազարեանները նրա բոլոր ջանքերը թողեցին ապարդիւն եւ աւելի քան 40 հազար հայ գաղթեցրին դէպի Արարատեան նահանգը եւ այլ տեղեր։*

սկսեց զսպել ո՛չ միայն մահմեդականների կրօնական հալածանքը քրիստոնեաների դէմ, այլ աշխատում էր աւելի ոյժ եւ խրախոյս տալ քրիստոնէութեանը։ Յաճախում էր հայոց եկեղեցին, ներկայ էր գտնվում հայոց եկեղեցական հանդէսներին, որ իւր օրինակով ցոյց տայ, թէ հայերի կրօնական պաշտամունքները ամենայն յարգանքի արժանի են։ Նրա ժամանակ հայոց եկեղեցիներն սկսեցին զանգակ հարկանել, որ առաջ արգելուած էր։

Նոյն ժամանակում Ատրպատականի Իսրայէլ եպիսկոպոսը նրա ամենալաւ բարեկամն էր։ Նա յատկացրեց եպիսկոպոսի համար նշանաւոր ռոճիկ. բացի դրանից, առաջնորդարանի ծախքերի համար, իբրեւ մշտական սեպհականութիւն, ընծայեց ընդարձակ կալուածներ, որ նրանց եկամուտներով պահպանուի առաջնորդարանը[1]։

Ատրպատականի հայոց վանքերի գոյութիւնն ապահովացնելու համար շնորհեց նա, իբրեւ մշտական սեպհականութիւն, իւրաքանչիւր վանքին մի-մի գիւղ՝ իրանց բնակիչներով, հողերով ու սահմաններով։ Այդ գիւղերն ազատ թողեց նա արքունի հարկերից, այնպէս որ կառավարութեան փոխարէն ինքը վանքն իրաւունք ունէր ստանալ ոչ միայն մշակութեան բերքերի մի մասը, այլեւ արքունի հարկերը[2]։

---

[1] Այդ ժամանակ Ատրպատականի հայոց հոգեւոր կառավարութեան առաջնորդարանը գտնվում էր Սալմաստ գաւառի Հաւթվան գիւղում, եւ կալուածները այդ գիւղի հողերիցն էին, որոնք հետզհետէ վաճառուեցան հետագայ թեմական առաջնորդների ագահութեամբ...։

[2] Ատրպատականում երեք նշանաւոր վանք կայ. Նախավկայի վանքը, որ գտնվում է Երասխի ափի մօտ Հին-Ջուղայից ոչ այնքան հեռու. Թադէոս առաքեալի վանքը, Մակուի գաւառում, եւ Բարդուղիմէոս առաքեալի վանքը Հաղբակի գաւառում. Այդ վանքերը դեռ պահպանում են Աբաս-Միրզայի շնորհած կալուածները, բայց հոգեւոր իշխանութեան անհոգութիւնից խիստ ողորմելի դրութեան մէջ են։

Թաւրիզը Աբաս-Միրզայի աթոռանիստն էր. այդ քաղաքի հայ հասարակութեան դրութիւնը բարւոքելու համար ազատեց նրանց ամէն տեսակ հարկերից։ Նոյն արտօնութիւնը Թաւրիզեցի հայերը վայելում են մինչեւ այսօր, իսկ նրանց հարեւան մահմեդականները հարկ են վճարում։

Երկար կը լինէր մի առ մի թուել, թէ որքան ողորմած էր նա դէպի հայոց ժողովուրդը եւ որքան բարձրացրեց նա այդ ժողովրդի դրութիւնը՝ նրան ամէն կերպ ապահովութիւններ շնորհելով։ Բայց այն եւս պէտք է նկատել, որ Աբաս-Միրզան այդ բոլորի մէջ ունէր եւ իւր քաղաքական նպատակները։ Նա ամէն հնար գործ էր դնում, որ հայերի սրտերն ամուր կերպով կապէ Պարսկաստանի հետ եւ նրանց համակրութիւնը դէպի ռուսները սառեցնէ։ Այսուամենայնիւ ինչ էլ որ լինէին նրա քաղաքական նպատակները, բայց դարձեալ նրա համակրութիւնը դէպի հայերը բոլորովին անկեղծ էր[1]։

Աբաս-Միրզան եւ նրա նախորդները հայերի մէջ գտնում էին ոչ միայն լաւ երկրագործի, վաճառականի եւ արհեստաւորի արժանաւորութիւններ, այլ եւ զինուորական տաղանդ եւ կառավարչական ընդունակութիւններ եւս։ Նրա ժամանակ կամ նրանից առաջ հայերից շատերը ոչ միայն զինուորական բարձր աստիճանների հասան, այլեւ վարում էին ամբողջ նահանգների փոխարքայութեան պաշտօն, դեր էին խաղում դիպլօմատիայի մէջ,

[1] Նրա անկեղծութեանը կարող է ապացոյց լինել այն, որ 1827 եւ 1828 թուերում Պարսկաստանի հայոց դէպի Անդրկովկաս գաղթականութեան ժամանակ շատ աշխատեց նա, որ հայերը չգաղթեն։ Բայց ռուսաց առլինները, Ներսէսը եւ Լազարեանները նրա բոլոր ջանքերը թողեցին ապարդիւն եւ աւելի քան 40 հազար հայ գաղթեցրին դէպի Արարատեան նահանգը եւ այլ տեղեր։

սկսեց զսպել ոչ միայն մահմեդականների կրօնական հալածանքը քրիստոնեաների դէմ, այլ աշխատում էր աւելի ուժ եւ խրախոյս տալ քրիստոնէութեանը։ Յաճախում էր հայոց եկեղեցին, ներկայ էր գտնվում հայոց եկեղեցական հանդէսներին, որ իւր օրինակով ցոյց տայ, թէ հայերի կրօնական պաշտամունքները ամենայն յարգանքի արժանի են։ Նրա ժամանակ հայոց եկեղեցիներն սկսեցին զանգակ հարկանել, որ առաջ արգելուած էր։

Նոյն ժամանակում Ատրպատականի Իսրայէլ եպիսկոպոսը նրա ամենալաւ բարեկամն էր։ Նա յատկացրեց եպիսկոպոսի համար նշանաւոր ռոճիկ. բացի դրանից, առաջնորդարանի ծախքերի համար, իբրեւ մշտական սեփհականութիւն, ընծայեց ընդարձակ կալուածներ, որ նրանց եկամուտներով պահպանուի առաջնորդարանը[1]։

Ատրպատականի հայոց վանքերի գոյութիւնն ապահովացնելու համար շնորհեց նա, իբրեւ մշտական սեփհականութիւն, իւրաքանչիւր վանքին մի-մի գիւղ՝ իրանց բնակիչներով, հողերով ու սահմաններով։ Այդ գիւղերն ազատ թողեց նա արքունի հարկերից, այնպէս որ կառավարութեան փոխարէն ինքը վանքն իրաւունք ունէր ստանալ ոչ միայն մշակութեան բերքերի մի մասը, այլեւ արքունի հարկերը[2]։

---

[1] Այդ ժամանակ Ատրպատականի հայոց հոգեւոր կառավարութեան առաջնորդարանը գտնվում էր Սալմաստ գաւառի Հաւթվան գիւղում, եւ կալուածները այդ գիւղի հողերիցն էին, որոնք հետզհետէ վաճառուեցան հետագայ թեմական առաջնորդների ագահութեամբ...։

[2] Ատրպատականում երեք նշանաւոր վանք կայ. Նախավկայի վանքը, որ գտնվում է Երասխի ափի մօտ Հին-Ջուղայից ոչ այնքան հեռու. Թադէոս առաքեալի վանքը, Մակուի գաւառում, եւ Բարդուղիմէոս առաքեալի վանքը Հաղբակի գաւառում. Այդ վանքերը դեռ պահպանում են Աբաս-Միրզայի շնորհած կալուածները, բայց հոգեւոր իշխանութեան անհոգութիւնից խիստ ողորմելի դրութեան մէջ են։

Թաւրիզը Աբաս-Միրզայի աթոռանիստն էր. այդ քաղաքի հայ հասարակութեան դրութիւնը բարւոքելու համար ազատեց նրանց ամէն տեսակ հարկերից։ Նոյն արտօնութիւնը Թաւրիզեցի հայերը վայելում են մինչեւ այսօր, իսկ նրանց հարեւան մահմեդականները հարկ են վճարում։

Երկար կը լինէր մի առ մի թուել, թէ որքան ողորմած էր նա դէպի հայոց ժողովուրդը եւ որքան բարձրացրեց նա այդ ժողովրդի դրութիւնը՝ նրան ամէն կերպ ապահովութիւններ շնորհելով։ Բայց այն եւս պէտք է նկատել, որ Աբաս-Միրզան այդ բոլորի մէջ ունէր եւ իւր քաղաքական նպատակները։ Նա ամէն հնար գործ էր դնում, որ հայերի սրտերն ամուր կերպով կապէ Պարսկաստանի հետ եւ նրանց համակրութիւնը դէպի ռուսները սառեցնէ։ Այսուամենայնիւ ինչ էլ որ լինէին նրա քաղաքական նպատակները, բայց դարձեալ նրա համակրութիւնը դէպի հայերը բոլորովին անկեղծ էր[1]։

Աբաս-Միրզան եւ նրա նախորդները հայերի մէջ գտնում էին ոչ միայն լաւ երկրագործի, վաճառականի եւ արհեստաւորի արժանաւորութիւններ, այլ եւ զինուորական տաղանդ եւ կառավարչական ընդունակութիւններ եւս։ Նրա ժամանակ կամ նրանից առաջ հայերից շատերը ոչ միայն զինուորական բարձր աստիճանների հասան, այլեւ վարում էին ամբողջ նահանգների փոխարքայութեան պաշտօն, դեր էին խաղում դիպլօմատիայի մէջ,

[1] Նրա անկեղծութեանը կարող է ապացոյց լինել այն, որ 1827 եւ 1828 թուերում Պարսկաստանի հայոց դէպի Անդրկովկաս գաղթականութեան ժամանակ շատ աշխատեց նա, որ հայերը չգաղթեն։ Բայց ռուսաց սաւլինները, Ներսէսը եւ Լազարեանները նրա բոլոր ջանքերը թողեցին ապարդիւն եւ աւելի քան 40 հազար հայ գաղթեցրին դէպի Արարատեան նահանգը եւ այլ տեղեր։

կառավարում էին պետական գանձը եւ մինչեւ անգամ իշխում էին շահերի կանանոցներում ներքինիների եւ ներքինապետների պաշտօնով[1]։

---

[1] Պարսկաստանում այդ ժամանակուայ ծաղկած հայ աւագների պատմութիւնն առանձին գրքի կարօտ է. մենք կը յիշենք նրանց անուններ միայն.

1. Իւսուֆ-խան՝ սպանդիար (մարզպան) Արաղստանի։ 2. Միւս Իւսուֆ-խան՝ թօփչի-բաշին (թնդանօթաձիգների գլխաւոր)։ 3. Մուսա-բէկ թօփչի-բաշի։ 4. Աղա-Եաղուբ ներքինապետ շահի։ 5. Աղա-Իբրահիմ՝ ղարաբաղցի, ազդեցութեան տէր ներքինի Ֆաթալի-շահի կանանոցում։ 6. Միւս Աղա-Եաղուբ՝ երեւանցի, ներքինի եւ մատակարար Ֆաթալի-շահի կանանոցում։ 7. Բժշկապետ Դաւիթ-խան Մկրտչեան՝ Նոր-Ջուղայեցի, Ֆաթալի-շահի եւ Մահմադ-շահի ժամանակներում բարձր Դրան բժիշկ։ 8. Խուդադադ-խան՝ սալմաստեցի, կառավարիչ Ատրպատականի զանազան գաւառների։ 9. Դաւիթ-խան ապետ եւ Միրզա-Իւսուֆ-խան Մելիք-Շահնազարեան դը-Շապուր. առաջինն էր թարգման Ֆաթալի-շահի մօտ եւ իբրեւ Պարսկաստանի լիազօր դեսպան ուղարկուեցաւ Նապոլէոն Ա-ի մօտ. երկրորդը առաջինի հօրեղբօր որդին էր. դա Պարսկաստանից դժգոհ լինելով եկաւ Թիֆլիզ, յետոյ գնաց Ս. Պետերբուրգ, ուր եւ վախճանուեցաւ։ 10. Ջոհրաբ-խան՝ խազնադար-շահրիար՝ այսինքն արքունի գանձապետ. դա Ֆաթալի-շահի գանձապետը եւ փեսան էր։ 11. Միւս Ջոհրաբ-խան՝ Վարդանեանցը արքունի գանձապետ էր Սպահանում։ 12. Աղա-Բահրամ-ներքինի, ամիր-դիւանխանէ, այսինքն պետական դիւանի գլխաւոր։ 13. Ջոհրաբ-խան՝ ղուլամ-փիշխդմաթ-բաշի — Շահի արքունիքի սենեկապետների գլխաւոր։ 14. Իւսուֆ-խան՝ ամիր-թօփխանէ — պարսից թնդանօթաձիգ զօրքի (արտիլերիայի) գլխաւոր, Թիֆլիզեցի, բաշկալ Գելսենց տնից։ 15. Ջոհրաբ-խան՝ ամիր-թօփխանէ։ 16. Սպանդիար-խան իշխանազն Ամատունի՝ թիֆլիզեցի, ղուլամ-փիշ-խդմէթ՝ Շահի սենեկապետ։ 17. Բէժան-խան զօրապետ։ 18. Ալլահվէրդի-բէկ ղարաբաղցի, Մահմադ-շահի մօհրդարը՝ կնքապահը. նրա հօրեղբայրը Մեհտի-խան սարհանգը, Բհագրան կոչուած գնդի զօրապետն էր, իսկ Ողա-Ղուլի-խանը Շահի փիշ-խդմէթն (սենեկապետ) էր։ 19. Աղա-ջան-խան սարհանգ (գնդապետ)։ 20. Ոսկան-Սամուրի սպահանցի, Ֆաթալի-շահի վաճառականը։ 21. Մահտեսի Յովհաննէս Ղազարեան՝ Թաւրիզեցի, Աբաս-Միրզայի վաճառականը. դա պատից Դանիէլ կաթողիկոսին բանտարկութիւնից։ 22. Մանուչար-խան, որ կրում էր մօհթամէդ-ուդդովլէ տիտղոսը, որ նշանակում է նեցուկ պետութեան։ Դա Էնիֆօլօփեանների տնից էր. Պարսկաստանում այն աստիճան բար-

*Մենք վեր կ'առնենք Աբաս-Միրզայի մօտ գտնուած հայ ծառայողներից մի անձնաւորութիւն միայն, որի գործունէութիւնը մեր պատմութեան հետ կապ ունի, եւ*

ձրացաւ, որ մի ժամանակ վարում էր հետեւեալ նահանգների փոխարքայութեան պաշտօնը՝ Բուշտի, Սպահանի, Լօռիստանի, Բախտիարիայի, Շուշթերի եւ Դասֆիզի: 23. Խոսրով-խան՝ վալի (տիրապետող իշխան)՝ Թիֆլիզեցի, Ղայթմազեանց տոհմից. դա չափազանց ուժեղ լինելու պատճառով կոչվում էր եւ Խոսրով-խան շիր (առիւծ): 24. Եաղուբ-խան՝ սուլթան (զօրապետ): 25. Սէթ-խան՝ բուշեհցի. սկզբում ծառայում էր անգլիական դեսպանատանը, յետոյ պարսից ծառայութեան մէջ մտաւ. դրա որդի Ծատուր-խան սարհանգը (գնդապետ) այժմ Թաւրիզի արտաքին գործոց նախարարի պաշտօնէութեան առաջին թարգմանն է: 26. Դաւիթ-խան կամ Ժան-Դաւութ-խան՝ զմիւռնացի, ներկայ Շահի առաջին թարգմանն է: 27. Թադէոս-խան կամ Թուրաբ-խան՝ Թաւրիզեցի, ջաւահիրչի-բաշի, Բ. Դռան ակնագործների գլխաւորը: 28. Ղուլամ-Յովսէփ-խան՝ սպանդիար (մարզպան) Արաղստանի, Իւսուֆ-խան սպանդիարի որդին: 29. Իսմայիլ-խան Մելիք-Մինասեան Թաւրիզեցի, ջաւահիրչի-բաշի, Բ. Դռան ակնագործների գլխաւոր: 30. Միրզա-Ֆարրուխ Ամիրխանեանց՝ ղարաբաղցի, նախ Ֆաթալի-շահի մօտ, իսկ յետոյ Մամադ-շահի մօտ քարտուղարի պաշտօն էր կատարում (որդին այժմ հայ-բողոքականների քարոզիչ է Թիֆլիզում): 31. Միրզա-Ռոստոմ Ենիկոլոփեանց: 32. Աղալար-խան Ենիկոլոփեանց: թէ առաջինը եւ թէ երկրորդը ծառայում էին Աբաս-Միրզայի մօտ: 33. Միրզա-Գիւրգին-խան Ենիկոլոփեանց՝ կուլամփիչ-խդմաթ (սենեկապետ) Աբաս-Միրզայի մօտ: 34. Իւսուֆ-բէկ Ենիկոլոփեանց, թիկնապահ Աբաս-Միրզայի: 35. Սուլէյման-խան Ենիկոլոփեանց՝ իբրեւ երեւելի զօրավար դա այն աստիճան բարձրացաւ Պարսկաստանում, որ կառավարութիւնը նրան շնորհեց սամր-դովլէ տիտղոսը, որ նշանակում է սուր պետութեան: Երկար ժամանակ վարեց Շիրազի, Բախտիարիայի, Լօռիստանի, Շուշթերի եւ Դասֆիզի փոխարքայութեան բարձր պաշտօնը: Դրա որդիներից մէկը, զօրապետ Նարիման-խանը, այժմ պարսից Վիեննայի դեսպանն է, իսկ միւսը զօրապետ Ջհանգիր-խանը այժմեան Շահի աջուդանբաշին (համհարզների — ադիւտանտների գլխաւորն) է եւ միեւնոյն ժամանակ ամբողջ Պարսկաստանի արտիլերիայի գլխաւորը: 36. Դաւութ-խան սարթիփ (զօրապետ) եւ Ջալ-խան սարհանգ (գնդապետ) Սագինեանց, քաջ եւ նշանաւոր զինուորականներ էին: 37. Աւագ-խան Մելիք-Մեհրաբեանց՝ հին-նախիջեւանցի, ծառայում էր Թաւրիզի ռուսաց հիւպատոսարանում, միեւնոյն ժամանակ տեղային ռուսահպատակ վաճառականների թաջիրբաշին, այսինքն առեւտրական գիւանի գլխաւորն էր. իւր կատարած նշանաւոր գործերով նա մեծ յարգանք եւ հռչակ ստացաւ Պարս-

*գուցէ դա լինի այն երկու հայերից մէկը, որ յիշում է իշխան Մադաթովի ռուս կենսագիրը։ Այդ քաջը կոչւում էր Բայինդուրեան կամ Բահաթուրեան Ասլի-բէկ։*

*Մեր պատմութեան մէջ աշխատել ենք փոքր ինչ ընդարձակ տեղ տալ ոչ թէ նշանաւոր տոհմական ազնուականներին, այլ ժողովրդի ստորին ծալքերից յայտնուած, ժողովրդի զօրութիւնը եւ ոգին արտայայտող հերոսներին, որպէս էին՝ Դալի-Մահրասան (Աւագ վարդապետը), Թիւլի-Արզումանը, Զալաղան-իւզբաշին, Մելիք-Վանին եւ դրանց նմանները։ Այդ տեսակ անձնաւորութիւններից մէկն էր եւ Բայինդուրեան Ասլի-բէկը, որ*

---

կատարում եւ թողեց անմոռանալի յիշատակ տեղային քրիստոնեաների մէջ՝ երկու անգամ ազատելով Թաւրիզի հայերին մոլեռանդութիւնից կատաղած մահմեդականների սարսափելի կոտորածից։ Դրա որդին՝ Սուլէյման-խանը Թիֆլիզում արեւելեան լեզուների աւագ գրագիրի պաշտօն ստացաւ։ 38. Միրզա-Իւսուֆ Ներսէսեանց՝ ղարաբաղցի, քարտուղար Շահի դիւանում (դա Մոսկուայի հանգուցեալ պրօֆեսօր Ներսէսեանի հայրն է)։ 39. Ասլի-բէկ Բըհաթուրեանց՝ Աբաս-Միրզայի մօտ թիկնապահի պաշտօն էր կատարում. դա միեւնոյն անձնաւորութիւնն էր, որ թողեց պարսից ծառայութիւնը եւ եկաւ իշխան Մադաթովի մօտ։

Բացի զինուորական, քաղաքական, դիւանագիտական ասպարէզներից, բացի Շահի Բարձր Դռան մօտ զանազան նշանաւոր պաշտօններ վարելուց, հայերը երեւելի գտնուեցան եւ պարսից հոգեւորական դասակարգի մէջ, ի հարկէ կրօնափոխ լինելուց յետոյ։ Դրանցից կը յիշենք Մօլլա-բաշի (մօլլաների գլխաւոր) Միրզա-Աբասի անունը եւ Հաջի-Մօլլա-Քարիմ Տէր-Գրիգորեանի անունը, որի եղբօր թոռն այժմ Թիֆլիզի Մողնու եկեղեցում քահանայ է։

Աւելորդ չենք համարում նկատել, որ վերոյիշեալ անձնաւորութիւններից ոմանք Աղա-Մամադ-խանի՝ Թիֆլիզից եւ Անդրկովկասի այլ տեղերից տարած (1795 Թ.) եւ ոմանք Աբաս-Միրզայի՝ իշխան Ցիցիանովի հետ ունեցած կռուի ժամանակ (1804 Թ.) Արարատից տարած գերիներից էին, որոնք իրանց բնական ձիրքերով Պարսկաստանում այնքան առաջ գնացին, որ բարձր պաշտօնների հասան։ Անուններէ պարսկական ձեւով փոփոխութիւնը թող չխաբեցնէ ընթերցողին, իբր թէ դրանք մահմեդականներ եղած լինին, ընդհակառակն՝ միայն մի քանիսի բացառութեամբ, մնացած բոլորը պահպանեցին իրանց հայութիւնը եւ քրիստոնէական կրօնը։

թողնելով Աբաս-Միրզայի ծառայութիւնը, եկաւ իշխան Մադաթովի մօտ եւ նրա հետ մեծ քաջութիւններ գործեց։

Ասրի-բէկի նախապապը՝ Բայինդուրը կամ ինչպէս պարսիկները կոչում էին Բահաթուրը, դեռ Շահ-Սուլթան Հուսէինի թագաւորութեան ժամանակ Սիւնեաց աշխարհից գնաց Պարսկաստան եւ պարսից ծառայութեան մէջ մնալով, Շահի քաջ եւ նշանաւոր զօրավարներից մէկը դարձաւ։ Յետոյ Պարսկաստանից զզուելով, եկաւ Վրաստան, այստեղ միացաւ Դաւիթ-բէկի հետ եւ գնալով իւր հայրենիքը, Սիւնեաց ապստամբութեան պարագլուխներից մէկը դարձաւ։ Դա մեր “Դաւիթ-բէկ„ վէպի հերոսներից մէկը՝ Բայինդուր իշխանն է, որ նրան միշտ պարսից թագաւորի “բաթման-ղլըճ„ էր կոչում։

Այդ Բայինդուրի թոռներից մէկն էր Ասրի-բէկը։ Նրա պապի քաջագործութիւններն աւանդութեամբ մնացել էին այդ տոհմի մէջ, եւ Ասրի-բէկը դեռ պատանեկութեան հասակում հրապուրուելով իւր պապի յիշատակներով, թողեց Ղարաբաղը եւ գնաց Պարսկաստան իւր բախտը փորձելու։ Համարձակ, վայելչահասակ պատանին յաջողուեցաւ մի ձիարշաւի ժամանակ Աբաս-Միրզայի ուշադրութիւնը դարձնել իւր վրայ եւ մտաւ պարսից թագաժառանգի համհարզների խմբի մէջ։ Յետոյ զանազան դժուարին դէպքերում իւր ցոյց տուած քաջութիւններով նա աւելի եւ աւելի շնորհ գտաւ Աբաս-Միրզայի մօտ։

Ղարաբաղի արշաւանքների ժամանակ Ասրի-բէկը գտնվում էր թագաժառանգի թիկնապահների խմբի մէջ։ Այդ միջոցին Աբաս-Միրզան յանձնեց նրան մի վտանգաւոր ծառայութիւն, որ իւր ամենամտերիմ պաշտօնեաներին միայն կարող էր հաւատալ։ Անդրկովկասեան մահ-

մեդականներին ռուսների դէմ ապստամբացնելու համար Աբաս-Միրզան գրել էր շրջաբերական թղթեր զանազան խաների, բէկերի եւ ազդեցութիւն ունեցող անձանց անունով. այդ թղթերը յանձնեց ճարպիկ Ասրի-բէկին տեղ հասցնելու համար։ Նա մի ընդարձակ շրջան պիտի գործէր Թալիշի, Բագուի, Շիրվանի եւ Շաքիի գաւառներով, իսկ յետոյ պիտի անցկենար դէպի Դաղստանի կողմերը։ Բայց Ասրի-բէկը քրիստոնեայ ռուսների շահերը գերադասելով պարսիկների շահերից, դաւաճանեց իւր տիրոջը։ Նա Աբաս-Միրզայի թղթերը փոխանակ իրանց նշանակած տեղը հասցնելու, ուղղակի դիմեց Գանձակ եւ բոլորը յանձնեց իշխան Մադաթովին։ Թէ որ աստիճան ծանրակշիռ նշանակութիւն ունէր ռուսների համար մի այդպիսի մատնութիւն պատերազմի ժամանակ, ինքն ըստ ինքեան հասկանալի է։ Թողեալ այդ, որպէս Աբաս-Միրզայի մերձաւորներից մէկը, Ասրի-բէկին յայտնի էին պարսից բանակի բոլոր գաղտնիքները, նրանց թոյլ եւ զօրաւոր կողմերը, թագաժառանգի դիտաւորութիւնները, եւայլն. այդ բոլորը հաղորդեց նա իշխան Մադաթովին այն ժամանակ, երբ պարսից զօրքերը գտնվում էին Գանձակից 7 վերստ հեռաւորութեան վրայ, իսկ գեներալ Պասկեւիչը եւ իշխան Մադաթովը՝ Գանձակում նստած, ամենեւին տեղեկութիւն չունէին։

Թէ որպէս վերջացաւ Գանձակի մօտի կռիւը, մեր ընթերցողներին յայտնի է։ Այդ յաղթութեամբ իշխան Մադաթովը եւ գեներալ Պասկեւիչը ազատեցին ամբողջ Անդրկովկասը։

Իշխան Մադաթովը մեծ խոստմունքներով ընդունեց Ասրի-բէկին իւր թիկնապահների խմբի մէջ։ Պարսից թագաժառանգի սիրելին դարձաւ նրա ձեռքում մի լաւ գործիք։

## XLVI.

Պարսիկներին մշտական սարսափի մէջ պահելու համար հարկաւոր համարուեցաւ նրանց մի սաստիկ հարուած տալ նոյն իսկ պարսկական հողի վրայ։ Այդ նպատակով 1826 թուի դեկտեմբերի սկզբներում իշխան Մադաթովը զօրապետ Երմօլովից գաղտնի հրահանգ ստացաւ մի արշաւանք գործելու դէպի Երասխի միւս կողմը։

Ձմեռային արշաւանքը՝ մի անծանօթ եւ լաւ ճանապարհներից զուրկ երկրում սաստիկ պիտի դժուարացնէր իշխան Մադաթովին ցանկացած յաջողութիւնը գտնելու, եթէ նա չունենար իւր հետ մի այնպիսի ճարպիկ առաջնորդ, որպիսին էր Աւրի-բէկը։ Այդ երիտասարդը երկար ժամանակ Պարսկաստանում մնալով, ծանօթ էր պարսից թէ երկրի եւ թէ բնակիչների բոլոր դրութիւնների հետ։

Իշխանն ունէր իւր հետ 42-րդ Եգերեան զօրագնդից մի ջոկատ միայն, նրա մնացած զօրքը բաղկացած էր Ղարաբաղի հայ հետեւակներից եւ ձիաւորներից։ Դեկտեմբերի 28-ին նա արդէն գտնվում էր Խուդափիրինի կամուրջի մօտ, որ այդ կողմից միակ անցքն է Երասխ գետից։ Այստեղ միացաւ նրա հետ գնդապետ Մեսչէնկօն իւր զօրքով։ Բայց կամուրջից անցկենալ անհնարին էր, պարսիկները նրա կամարներից մի քանիսը խորտակել էին։ Ձնայելով սաստիկ ցրտին, զօրքն անցաւ գետի միջով, ուր ջուրը հասնում էր մինչեւ նրանց թիկունքը։

Պարսից հողի վրայ նրանց ոչ ոք չհանդիպեց եւ Դիլախուրդի ձորամիջով սկսեցին առաջ գնալ դէպի Սամբուր գետը։ Տարուայ այդ ժամանակ, այդ կողմերում, իրանց անասունների հետ գետնափոր ձմերանոցներում բնակվում էին զանազան խաշնարած ցեղեր, որպիսիք էին

շահսէվանները, շաղաղինները, աջալըրցիները, եւայլն։ Դրանք երբեմն ասպատակութիւններ էին գործում Ղարաբաղի եւ ռուսաց նոր գրաւած միւս գաւառների վրայ եւ աւարառութիւններ էին անում։ Իշխան Մադաթովի առաջին գործն եղաւ պատժել դրանց՝ ասիացի աւազակների հետ վարուելով ասիական կերպով։ Յարձակուեցաւ նրանց ձմերանոցների վրայ, յափշտակեց մինչեւ 20.000 ոչխար, բազմաթիւ ուղտ, ձի, տաւար եւ այլ իրեղէններ։

Մտնելով Միշկինի գաւառը եւ օգուտ քաղելով տեղային շահսէվանների միամտութիւնից, իշխանը լուր տարածեց, թէ կամենում է այնտեղից անցնել դէպի Թալիշի խանութիւնը։ Շահսէվանները հաւատալով, յօժարուեցան նրան ճանապարհ տալ իրանց երկրի միջով։ Բայց իշխանը փոխանակ դէպի Թալիշի խանութիւնը գնալու, յարձակուեցաւ խաղաղ շահսէվանների ձմերանոցների վրայ եւ բարբարոսական կոտորածներից յետոյ, յափշտակեց նրանցից 2000 ուղտ, 10.000 կով եւ եզն, 60.000 ոչխար։

Դէպի ամեն կողմ սարսափ տարածելուց յետոյ նա մտաւ Միշկինի գաւառաքաղաքը, Լօռի, ուր ներկայացաւ նրան տեղային կառավարիչ խանը, խնդրելով խնայել իրանց։ Այստեղ նա երդում ընդունեց մահմեդականների ներկայացուցիչներից, որ հաւատարիմ մնան ռուսաց կայսրին, թէեւ սրի ուժով առած երդումը մի առանձին նշանակութիւն չունէր։

Թողնելով Լօռիի մէջ մի ջոկատ հետեւակ եւ 600 կազակ, իշխանը մնացած զօրքերով սկսեց դիմել դէպի Ահար, որ Ղարադաղի գլխաւոր քաղաքն է։ Ճանապարհին, Նասիր-Աբադ գիւղում, նրա առաջն եկան

Ղարադաղի խանի պատգամաւորները եւ յայտնեցին իրանց հնազանդութիւնը։ Այստեղ հանդիպեցին նրան Ղարադաղի հայոց քահանաները իրանց մելիքների եւ տանուտէրների հետ, որոնք նոյնպէս հպատակութիւն յայտնեցին։ Իշխանը պահեց նրանց իւր մօտ եւ յունուարի 6ին Թնդանօթների որոտմունքով միասին կատարեցին սուրբ ծննդեան եւ Մկրտութեան տօնի հանդէսը։ Բայց հայերն այդ համակրութեան համար սաստիկ պատժուեցան, երբ ռուսաց զօրքերը թողեցին պարսից հողը։

Յունուարի 7ին իշխանը գտնվում էր Ղարադաղի գլխաւոր քաղաքի՝ Ահարի մօտ. 17 վերստ հեռաւորութեան վրայ հանդիպեցին նրան քաղաքի աւագները՝ յայտնելով իրանց հնազանդութիւնը։ Ահարից նա առաջ չգնաց եւ նոյն ամսի 9ին կրկին վերադարձաւ դէպի Ղարաբաղ։

Այդ արշաւանքը կատարուեցաւ, որպէս վերեւում յիշեցինք, տարուայ ամենացուրտ եւ վտանգաւոր ժամանակում։ Ռուսաց զօրքերը մեծ արգելքների եւ անյաջողութիւնների պիտի հանդիպէին, եթէ չունենային մի այնպիսի ճարպիկ եւ քաջ առաջնորդ, որպիսին էր Ասրիբէկը։

Այդ արշաւանքն այն օգուտն ունեցաւ, որ իշխանը տարածեց սարսափ բոլոր սահմանակից ցեղերի վրայ, բացի դրանից ծանօթացաւ Պարկաստանի ներքին դրութեան հետ եւ իւր հաւաքած տեղեկութիւնները հաղորդեց կոմս Դիբիչին, որ այդ ժամանակ գտնվում էր Թիֆլիզում։ Արշաւանքն ունեցաւ եւ նիւթական օգուտ. նա բերեց իւր հետ ահագին աւար եւ կողոպուտ։ Իւր աւարի մի մասը բաժանեց նա հայոց կամաւորներին, որոնք ռուսաց կառավարութիւնից ոչինչ չէին ստանում, իսկ մնացած մասը թողեց ռուսաց զօրքերի վայելման համար։ 2000 ուղտը

գործ էին ածում նոր բորբոքուած ռուս-պարսկական պատերազմի ժամանակ ծանրութիւններ տեղափոխելու։

Ռուս-պարսկական նոր պատերազմն սկսուեցաւ 1827 թուի գարունքին։ Դեռ մարտի 17ին գեներալ Երմոլովը յանձնեց իշխան Մադաթովին մի առանձին զօրաբաժնի հրամանատարութիւնը եւ հրամայեց պատրաստ լինել գարնանային արշաւանքին մասնակցելու համար։ Նրան պատուիրուած էր իւր զօրքի պակասը լրացնել Ղարաբաղի կամաւորներով։ Այդ պատուէրն արագութեամբ կատարեց նա եւ կամաւորների մէջ հայերը մեծամասնութիւն էին կազմում։

Դեռ իրան խոստացուած զօրքի մեծ մասը չհասած, իշխան Մադաթովը իւր կամաւորներով եւ ձեռքի տակ գտնուած փոքրաթիւ պատրաստի զօրքերով առաջինն եղաւ, որ սկսեց յարձակողական գործողութիւններ դէպի Պարսկաստան։ Ապրիլի 18ին նա արդէն գտնվում էր Խուդափիրինի կամուրջի մօտ։ Այս անգամ գտաւ կամուրջը բոլորովին ոչնչացրած պարսիկներից. կամարների սիւներն էին մնացել միայն։ Գարնանային հեղեղների յորդութեան պատճառով գետի միջով անցնել անկարելի էր։ Թուով 5000 պարսիկ կանգնած էին գետի ափի մօտ։ Նրանց գնդակների տարափի տակ իշխանը հրամայեց կամուրջը պատել տախտակներով, որի վրայից անցաւ զօրքը։ Հէնց առաջին օրում նրան յաջողուեցաւ ցրուել պարսից զօրքը եւ ոտք դնել պարսից հողի վրայ Երասխի աջ կողմում։ Բայց այստեղից առաջ գնալ չկարողացաւ նա, հէնց այստեղ վերջացաւ նրա մասնակցութիւնը 1827 թուականի ռուս-պարսկական պատերազմին։

Ապրիլի 22ին յանկարծ հրաման ստացաւ նա գեներալ Պասկեւիչից, որ իւր հրամանատարութեանը յան-

ձնուած զօրաբաժինը յանձնէ գեներալ-մայօր Պանկրատեւին։

Տխուր, սրտաբեկ կերպով վերադարձաւ իշխանը Ղարաբաղ։ Այստեղ կանգ չառաւ նա, եւ մինչեւ անգամ առանց իւր կալուածները տեսնելու, հեռուից վերջին անգամ հայեացք ձգելով իւր հայրենիքի, իւր ծննդեան տեղի վրայ, հեռացաւ. գնաց Թիֆլիզ։

Թէ ինչ էր իշխան Մադաթովին այսպէս անակնկալ կերպով յետ կանչելու պատճառը, — այդ հարցը բացատրւում է միայն զանազան ենթադրութիւններով եւ զանազան տարակուսանքներով, որոնք ստուգութեան կարօտ են։ Այսքանը կ'ասենք, որ նա ամբողջ հինգ ամիս մնաց Թիֆլիզում կատարեալ անգործութեան մէջ, մինչեւ վերջապէս իրաւունք ստացաւ գնալ Ս. Պետերբուրգ։

Դեռ ռուս-պարսկական պատերազմը բոլորովին վերջացած չէր, երբ 1828 թ. ապրիլի 14ին հրատարակուեցաւ ռուս-թիւրքական պատերազմը։ Իշխան Մադաթովը նշանակուեցաւ առանձին զօրաբաժնի հրամանատար եւ Դունայի կողմից գնաց թիւրքերի հետ կռուելու։ Այդ արշաւանքի մէջ եւս, որպէս կարելի էր սպասել նրանից, ամեն կռիւների մէջ փառաւոր յաղթութիւններ կատարեց։ Բայց դեռ պատերազմի վախճանին չհասած, հիւանդացաւ եւ նոյն տարուայ սեպտեմբերի 4ին վախճանուեցաւ իւր բանակի մէջ Շումլայի պարիսպների մօտ, թշնամու երկրի վրայ։ Նրա մարմինը հանգիստաւոր կերպով տարուեցաւ նոյն բերդը, թաղուեցաւ սուրբ Գէորգ զօրավարի եկեղեցու գաւթում[1]։ Նրա թաղման հանգիսին

[1] Յետոյ հանգուցեալի ամուսնու խնդրելով, բարձրագոյն հրամանով մարմինը բերուեցաւ Ռուսաստան եւ դրուեցաւ Աղէքսանդր-Նեւեան մենաստանի մէջ (Александро-Невская Лавра)։

ներկայ էին մինչեւ անգամ նրա թշնամիները, թուրք օֆիցէրները եւ բազմաթիւ մահմեդականներ, որոնց նա շատ անգամ ռմբակոծել էր։

"Ճակատագրով վիճակուած էր իշխանին հանգիստել իր խաղաղ վախճանին թշնամու երկրի վրայ, որ վկայ էր եղել նրա յաղթութիւններին նրա երիտասարդական հասակում, որ տեսել էր նրա փառաւոր գործերը նրա այրական հասակում։ Նրա մարտակիցների անկեղծ տրտմութիւնը եւ յաղթուած թշնամիների խորին յարգանքը յուղարկաւորում էին նրան դէպի գերեզման։

"Այդ խիստ փաղաքշական է. այդ է պարգեւը կեանքի աշխատանքների եւ կռիւների։

"Մի հայեացք ձգելով նրա անցած ճանապարհի վրայ, նրա գործերի, բնաւորութեան եւ նրա թողած յիշատակների վրայ, համարձակ կարելի է յայտնել հետեւեալ կարծիքը նրա մասին՝ թէ բնութիւնն ստեղծել էր նրան միայն պ ա տ ե ր ա զ մ ո ղ լինելու համար։ Չնայելով կրթութեան պակասութեանը, բայց բնականից ունենալով անհամեմատ լուսաւոր խելք եւ հասկացողութիւն, ունենալով բնաւորութեան զօրութիւն եւ հաստատամտութիւն, նա իր պարզ եւ սուր ըմբռնողութեամբ փոխարինում էր այն հմտութիւնները, որոնց ուրիշները հազիւ կարողանում են ստանալ արհեստի եւ գիտութեան շնորհիւ։ Հայեացքների ճշտութիւնը երբէք չէր սխալեցնում նրան՝ ոչ պատերազմական դիրք ընտրելու ժամանակ եւ ոչ թշնամու ուժերն ու դիրքերը հետազօտելու ժամանակ։ Նրա կշռադատութեան ձիրքը երբեմն զարմացնում էր մինչեւ անգամ նրանց, որոնք ճանաչում էին նրան։ Բաւական էր հարեւանցօրէն հայեացք ձգել մի որեւիցէ անծանօթ երկրի վրայ եւ նա արդէն կատարեալ հաս-

կացողութիւն էր ստանում նրա տեղագրական գրութեան մասին։ Մի քանի անգամ հանդիպելով իւր նոր ախոյեանին, նա արդէն կը չափէր նրա ուժերը։ Երբեք չէր սխալվում նա, երբ նշանակում էր այն կէտերը, թէ որտեղ պէտք էր ընդդիմադրել թշնամուն կամ որտեղ պէտք էր հարուածել նրան։ Երբ հասնում էր յարձակման վճռական րոպէն, որ նա միշտ սկզբից նախագուշակում էր, գտնում էր նրան միշտ պատրաստ։

“Բայց հայեացքների եւ ըմբռնողութեան այդ ճշտութիւնը, խելքի եւ հասկացողութեան այդ խորութիւնը գտնվում են նաեւ շատ զօրավարների մէջ, բայց մնում են ապարդիւն։ Նրանք բաւական են մի խորհրդատուի համար, բայց բաւական չեն մի զինուորական առաջնորդի համար։ Մադաթովը միացնում էր դրանց հետ եւ ուրիշ ամենանշանաւոր յատկութիւններ. անձնական քաջութիւն, որ չէր վհատում ոչ մի վտանգի առջեւ, սառցային սառնասրտութիւն, որ չէր վրդովվում ոչ մի անակնկալ դէպքի ժամանակ, եւ այն, որ ամենից հազուագիւտն է, — այդ էր նրա բարոյական արիութիւնը, որ չէր վախենում ոչ մի պատասխանատուութիւնից։ Վճռելու մէջ խիստ համարձակ էր նա, իսկ իւր դիտաւորութիւնները կատարելու մէջ չափազանց շուտափոյթ։ Այդ արագութիւնը, որ մեծ զօրութիւն է պատերազմի գործի մէջ, որ նրա պաշտած հանճարների՝ Նապոլէոնի եւ Սուվօրովի գլխաւոր յատկանիշն էր, միեւնոյն ժամանակ հաստատ երաշխաւորութիւն էր իշխան Մադաթովի բոլոր ձեռնարկութիւնների յաջողութեանը։

“Այդ եզրակացութիւնները յակամայից ներկայանում են մեր մտքում, երբ քննում ենք իշխան Մադաթովի մշտական յաջողութիւնները անհամեմատ գերազանց ու-

ժերի դէմ, երբ տեսնում ենք այն նշանաւոր հետեւանքները, որոնց հասնում էր նա խիստ սահմանափակ միջոցներով, եւ երբ ի նկատի ենք առնում այն անհամեմատ փոքր կորուստը, որ կրում էին նրա զօրքերը ամենափառաւոր յաղթութիւնների մէջ։ Երիտասարդական հասակում իւր ուրախ բնաւորութեամբ գրաւեց նա ընկերների սէրը. իւր ստորադրեալների հետ սրտաբաց էր նա. խիստ սաստիկ կարգապահութիւն պահպանելով հանդերձ, սիրում էր նա իւր զինուորներին, միշտ էլ նրանց մասին ջերմ հոգատարութիւն ունէր, բորբոքում էր նրանց ոգին, իւր վարմունքով բարձրացնում էր նրանց բարոյական զօրութիւնը եւ դրանով ներշնչում իւր եւ նրանց մէջ այն փոխադարձ հաւատարմութիւնը, որ տանում է դէպի քաջագործութիւններ։ Բախտաւոր գտնուելով իւր բոլոր ձեռնարկութիւնների մէջ, նա հաւատում էր իւր բախտին, որ երբէք չէր դաւաճանում նրան։ Այդ հաւատը դէպի իւր աստղը շատ անգամ նկատուել է մեծ զօրավարների մէջ։ Հարեւանցօրէն դատողները ծաղրում են այդ հաւատը, իսկ աւելի խոր քննողները յարգում են նրան, որովհետեւ նրա մէջ միանում են մարդու թէ ճշմարիտ զօրութիւնը եւ թէ զօրութեան զգացմունքը։ Աւելացնում ենք, որ նա հաւատում էր ռուսաց զինուորի ոգուն եւ նրա համակրութեանը դէպի իւր գլխաւորը, եւ այդ պատճառով նրա հրամանատարութեան ներքոյ զօրքն առաջ էր գնում ուրախութեամբ, ասելով. «Մենք գիտենք, որ նրա հետ ոչ մի մարդ ի զուր չի կորչել»։

«Սկսած կապիտանի աստիճանից իշխան Մադաթովը իւր քաջութեամբ միայն ստացաւ այն բոլոր գերազանցութիւնները, այն բոլոր պատուանշանները, որ ունէր նա։

Այդպէս էր խօսում նա ինքը, եւ այդպէս կ'ասեն ամենքը, որոնք ծանօթ են նրա կատարած ծառայութիւնների հետ։

“Նա ապրեց եւ մեռաւ որպէս հայրենիքի հաւատարիմ որդի, իւր անձնազոհութեամբ միշտ նուիրուած մնաց իւր Թագաւորին, մշտապէս հոգ տանելով Ռուսաստանի փառքի համար„[1]։

Մենք մեր կողմից կ'աւելացնենք, որ Ղարաբաղն իրաւունք ունի պարծենալու, որ տուեց Ռուսաստանին մի այդպիսի հերոս, բայց ցաւում ենք, որ այդ քաջը իւր հայրենիքի սէրը գրաւել չկարողացաւ....։

Իշխան Մադաթովը ուղղակի ժառանգ չթողեց։ Մահից յետոյ նրա իշխանուհի տիկինը եկաւ Ղարաբաղ, որ հանգուցեալի ընդարձակ կալուածները բաժանէ նրա հեռաւոր եւ մերձաւոր ազգականների մէջ, եւ ինքն էլ իւր մասն ստանայ։ Բայց ժառանգների եւ տիկնոջ մէջ անհամաձայնութիւններ ծագեցան, այդ պատճառով տիկինը վշտացած գնաց Ս. Պետերբուրգ եւ բոլոր 15 գիւղն էլ տուեց արքունի գանձարանին եւ փոխարէնն ստացաւ մի նշանաւոր գումար։ Ժառանգները մնացին առանց բաւականութիւն ստանալու։

---

1827 թուի ռուս-պարսկական պատերազմը վերջացաւ յօգուտ Ռուսաստանի. Երասխ գետը նշանակուեցաւ սահմանագիծ երկու պետութիւնների մէջ, եւ այդ գետի ձախ կողմում գտնուած բոլոր պարսկական խանութիւնները մտան ռուսաց տիրապետութեան ներքոյ։

---

[1] „Жизнь генералъ-лейтенанта князя Мадатова.“ Изданіе второе С. Петербургъ. 1863. Երես 188—191։

*Ռուսաստանը Պարսկաստանի վրայ պատերազմական տուգանք դրեց, եւ որ ամենագլխաւորն էր, 40.000 հայեր Պարսկաստանից գաղթեցրեց եւ բնակեցրեց իւր նոր գրաւած երկրների վրայ։*

*Որպէս պարսից խաների, նոյնպէս էլ հայոց մելիքների իշխանութիւնը վերջացաւ։ Այնուհետեւ հայոց մելիքների ժառանգներն այլեւս ուրիշ բանի վրայ չէին մտածում, այլ աշխատում էին միայն մտնել ռուսաց ծառայութիւնների մէջ՝ աստիճան եւ շքանշաններ ստանալու համար։ Այդ փառասիրական ձգտումն անգիտակցաբար այն օգուտն ունեցաւ, որ մելիքների ժառանգները ռուսաց ծառայութեան մէջ գտնուելով եւ ռուսաց օրէնքների ու ազդեցութեան տէր անձանց հետ ծանօթանալով, կարողացան ձեռք բերել իրանց հայրենական կալուածների մի մասը։*

*Բայց մի հարց կը մնայ անվճիռ, թէ ինչո՞ւ հայոց տիրապետող մելիքների ժառանգներն ընդունուեցան իբրեւ տոհմական ազնուականներ եւ ոչ իբրեւ իշխանազներ, քանի որ Խամսայի հինգ մելիքութիւնները կազմող տներն իսկապէս իշխանական ծագումից էին։*



# ՎԵՐՋԱԲԱՆ

Խամսայի մելիքութիւնների պատմութիւնը վերջացաւ։ Երբ այդ պատմութիւնը մաս-մաս լոյս էր տեսնում “Մշակի“ համարների մէջ, ամեն անգամ երբ հանդիպում էի ծանօթներիս, նրանց առաջին խօսքն այս էր՝ “լաւ է„... իսկ յետոյ մի հարց՝ “ո՞րտեղից էք առել այդ տեղեկութիւնները„...։

Այդ հարցի մէջ, որ ստէպ առաջարկում էին ինձ, նշմարվում էր մի տեսակ կասկած, մի տեսակ անվստահութիւն...։ Բարեկամներիցս մի քանիսը մինչեւ անգամ նկատեցին ինձ. “Միթէ մենք ունեցել ենք Ղարաբաղում այդպիսի իշխանութիւններ. եթէ կային, ինչո՞ւ մենք չգիտէինք„...։

Այդ մարդիկ, որոնք Վանի բեւեռագրների վրայ դատողութիւններ են անում, որոնք նախաջրհեղեղեան անցքերի վրայ են խօսում, զարմանալի է, որ իրանց քթի տակ, մեզանից կէս դար առաջ կատարուած իրողութիւնների վրայ նայում են իբրեւ առասպել, իբրեւ ֆանտազիայի ծնունդ։

Ընթերցողներիս կասկածը փարատելու համար ես հարկաւոր եմ համարում ցոյց տալ այն աղբիւրները, որոնցից քաղել եմ իմ պատմութիւնը։

Դեռ 1881 թուի յուլիս ամսում, նախ քան իմ ճանապարհորդութիւնը դէպի Սիւնեաց աշխարհը, “Մշա-

կի, համարներից մէկում ես տպեցի մի յօդուած, որի մէջ բացատրում էի իմ ճանապարհորդական նպատակը, այն է՝ հաւաքել Ղարաբաղի մելիքների պատմութեան համար թէ գրաւոր եւ թէ բերանացի տեղեկութիւններ, եւ հրաւիրում էի ձեռնհաս անձինքներին օգնել ինձ իմ ձեռնարկութեան մէջ, եթէ գտնվում էին նրանց մօտ որեւիցէ պատմական նիւթ։

Որպէս մեր ամեն տեսակ հրաւէրքները մնում են ապարդիւն, իմ հրաւէրքը եւս մի առանձին հետեւանքի չհասաւ։ Ինձ մնում էր անձամբ գնալ Ղարաբաղ, մտնել ամբոխի մէջ եւ դիմել այն հարուստ պատմական աղբիւրին, որ դեռ եւս թարմ կերպով պահպանուած է ժողովրդական աւանդութիւնների մէջ։

Ես անցայ Ղարաբաղի հինգ գաւառները, որ կազմում էին Խամսայի հինգ մելիքութիւնների իշխանութեան տեղերը։

Գանձակից գնացի Գիւլիստանի գաւառը։ Այստեղ են Մելիք-Բէգլարեանների կալուածները, այստեղ տիրում էին նրանց նախնիքը։ Ղարա-Չինար գիւղում մի ամբողջ շաբաթ մնալով Մելիք-Բէգլարեան Սերգէյ-բէկ եւ Ալեքսան-բէկ եղբայրների տանը, տեղային ծերունիները գնում ու գալիս էին ինձ մօտ, ոգեւորուած պատմում էին իրանց երկրի մելիքների պատմութիւնը։ Ես գրում էի։ Յետոյ սկսեցի ճանապարհորդել Գիւլիստանի զանազան տեղերը այլ եւ այլ յիշատակարաններ քննելու համար։ Տեսայ Մելիք-Բէգլարեանների տոհմային գերեզմանատունը Հոռեկա վանքի մօտ, մի ամայի, անմարդաբնակ տեղում, մթին անտառի մէջ, եւ դարերով աճած թփերի, մացառների մէջ գտայ այդ տոհմի հերոսների մոռացուած շիրիմները։ Մեծ դժուարութեամբ յաջողուեցաւ ինձ

կարդալ մամռապատ տապանաքարերի արձանագրութիւնները, որոնք ժամանակագրական եւ տոհմագրական կողմից պատմութեան համար նշանակութիւն ունէին։ Հէնց նոյն վանքի մօտ դեռ կանգնած է մի հոյակապ, սիւնազարդ ամրոց, բարձր աշտարակներով, բազմաթիւ սենեակներով, որոնց մէջ մի ժամանակ բնակվում էին Մելիք-Բէգլարեանների նախնիքը։ Տեսայ եւ Գիւլիստանի ահռելի բերդը, որ իւր կիսաւեր դրութեան մէջ դարձեալ հրաշալի է։ Գիւղերը պտըտելով քննում էի եկեղեցիներում կամ մասնաւոր անձինքների մօտ գտնուած գրչագիր մատեանների յիշատակարանները, քննում էի եկեղեցիների կամ վանքերի պատերի վրայ գտնուած արձանագրութիւնները։ Գանձասարի վանքի պատի վրայ մի ընդարձակ արձանագրութիւն նուիրուած է Մելիք-Բէգլարեանների յիշատակին։

Գիւլիստանից անցայ Ջրաբերդի գաւառը։ Այստեղ հաւաքեցի այն աւանդութիւնները, որ պահպանուած էին Մելիք-Իսրայէլեանների մասին։ Գետաշէն գիւղի եկեղեցում գտայ մի գեղեցիկ գրչագիր աւետարան[1], արծաթէ կազմով, որի յիշատակարանի մէջ արձանագրուած էր Մելիք-Իսրայէլեանների տոհմագրութիւնը։ Թարթառ գետի հակառակ ընթացքով դէպի վեր բարձրանալով, ամեն քայլում հանդիպում էին Մելիք-Իսրայէլեանների յիշատակարանները։ Ես այցելութիւն գործեցի Եղիշէ առաքեալի ամայի վանքին, որ գտնվում է բոլորովին կուսական ան-

[1] Այդ աւետարանը մի ժամանակ գերի ընկած լինելով Պարսկաստան, Մելիք-Աթամ մեծը թափել է գերութիւնից, եւ գրել է տուել նրա վերջին թերթերի վրայ իւր տոհմի յիշատակարանը։ Այդ գիրքը հայկական արհեստի ամենագեղեցիկ գործերից մէկը կարելի է համարել. արծաթէ կազմն այնպիսի հրաշալի քանդակներ ունի, մագաղաթն այնքան նուրբ է, պատկերն այնքան կենդանի եւ գրիչն այնքան կանոնաւոր, որ կարող է ամենանշանաւոր թանգարանի զարդը լինել։

տառների խորքում, սարսափելի լեռների բարձրաւանդակի վրայ։ Դա վանք չէ, այլ վանքերի մի խումբ է։ Աւելի քան ութն տաճարներ կանգնած են միմեանց մօտ, այնքան մերձ, որ մի մարդ հազիւ կարող է նրանց մէջտեղից անցնել։ Այդ տաճարներից մէկի մէջ դրած է Վաչական Թագաւորի գերեզմանը, իսկ նրա դռան հանդէպ գտայ Ջրաբերդի հզօր տիրապետողի՝ Մելիք-Աթամ մեծի փառաւոր շիրիմը։ Այդ վանքում տեսայ այն աշտարակը, որի մէջ բնակվում էր իմ պատմութեան հերոսներից մէկը՝ երեւելի Դալի-Մահրասան (Աւագ վարդապետը)։ Աշտարակի վերին յարկի միջից այժմ աճել է մի ահագին կաղնի ծառ։ Մատաղիս գիւղից ինձ հետ վեր առած ուղեցոյցը, որ այն ահռելի լեռների եւ անտառների համարձակ որսորդներից մէկն էր, առանց լռելու պատմում էր ինձ Դալի-Մահրասայի գործերը։ Վարդապետ-հերոսի քաջագործութիւնները արձագանք էին գտել երիտասարդի տպաւորուող սրտում։

Եղիշէ առաքեալի վանքից անցայ Երիցմանկանց վանքը։ Այդ վանքի մօտ գտնվում է Ջրաբերդ կոչուած հռչակաւոր ամրոցը, որ եւ կոչվում է Ջերմուկի բերդ։ Այդ բերդի միջից վտանգի ժամանակ կռվում էին Մելիք-Իսրայէլեանները։ Երիցմանկանց վանքում մնացի մի օր։ Ծերունի Յօհի-ապէրը՝ միակ միաբանը այն վանքի, որի մէջ մի ժամանակ կաթողիկոսներ էին նստում, ամբողջ գիշեր պատմեց ինձ Չալաղան-իւզբաշու եւ Մելիք-Իսրայէլեանների տոհմի զանազան ներկայացուցիչների մասին, եւ զարմանում էր, որ իւր պատմածներին այնքան նշանակութիւն էի տալիս, որ գրի էի առնում։

Երիցմանկանց վանքից ոչ այնքան հեռու, Թարթառ գետի աջ ափերի մօտ, մի անտառապատ ձորի մէջ

գտնվում են աւերակները մի հին քաղաքի, որի տեղը մինչեւ այսօր կոչվում է "Մայրաքաղաք" կամ "Քաղաքատեղ": Այստեղ տեսայ Մելիք-Աթամ մեծի կիսաւեր պալատը, որ իւր փոշիների մէջ դարձեալ հրաշալի է: Իսկ Նոր Մոխրաթաղ գիւղի մօտ, Իննմասանց անապատի հանդէպ, տեսայ Մելիք-Աթամ մեծի ամրոցը, որ բոլորովին ամբողջութեամբ մնացած է: Դռների ճակատների վրայ կան երկար արձանագրութիւններ, որոնք պատմական նշանակութիւն ունին:

Այստեղից ես յատկապէս գնացի Մարդակերտ անունով գիւղը՝ մօտ հարիւրամեայ մի ծերունի տեսնելու համար, որի մասին առաջուց լսած էի: Նրան կոչում են Միրզա-Աարի, հմուտ է հայերէն, պարսկերէն, արաբերէն եւ թուրքերէն լեզուների գրագիտութեան մէջ. մի ժամանակ թարգմանի պաշտօն է կատարել Շուշի բերդի վերջին իշխողների՝ Իբրահիմ-խանի եւ Մէհտի-խանի մօտ. իսկ մի ժամանակ ծառայել է նոյն բերդում գտնուած գերմանացի միսիօնարների մօտ: Այդ կենդանի պատմագրութիւնը երկու ամբողջ օր ինձ գրել էր տալիս Ղարաբաղի մելիքների եւ Շուշիի խաների անցքերը, որոնք նրա յիշողութեան մէջ խիստ անմոռաց կերպով պահպանուած էին: Զառամեալ ծերունին երեխայի նման ուրախանում էր, որ վերջապէս գտնուեցաւ մի մարդ, որին հաղորդեց իւր սրտին մօտ եղած տեղեկութիւնները: Ինքը գրելու անընդունակ էր դարձել, աչքերը լաւ չէին տեսնում, իսկ ձեռքերը դողում էին: Նա տուեց ինձ մի հնամաշ տետրակ (թերթերից պակաս), որի մէջ կային զանազան ժամանակագրական նկատողութիւններ Ղարաբաղի նշանաւոր անցքերի մասին: Մարդակերտից անցնելով Կասապատ գիւղը, այստեղ տեղեկութիւններ հաւաքեցի Աթաբէկեանների

մասին։ Ցետոյ գնացի Գիւլ-Ծաթաղ բերդը, որ պատկանում էր Մելիք-Ալահվերդեաններին։ Այստեղ տեսայ Մելիք-Ռուստամի ամրոցը, տեսայ նրանց տոհմային գերեզմանատունը։ Մի քանի օր մնալով բժիշկ Աղասարեանցի տանը, ինձ յաջողուեցաւ բաւական նիւթեր հաւաքել Մելիք-Ալահվերդեանների պատմութեան համար։

Այստեղից գնացի Խաչէն՝ Հասան-Ջալալեան իշխանների դարեւոր բնագաւառը։ Տեսայ Գանձասարի հռչակաւոր վանքը — Աղուանից կաթողիկոսի վեհարանը, որ վերջին ժամանակներում դարձաւ Ղարաբաղի մելիքների գաղտնի ժողովների խորհրդարանը։ Գանձասարի վանքի տաճարի մէջ եւ նրա շուրջը գտնուած գերեզմանատնում ես քննեցի Հասան-Ջալալեան կաթողիկոսների եւ մելիքների շիրիմները։

Գանձասարի վանքի գիւղում, Վախթանգ-բէկ Հասան-Ջալալեանի տանը գտայ մի հնամաշ տետրակ (սկզբի թերթերը պակաս)։ Դա սկսած բայց չաւարտած մի պատմութեան սեւագրութիւն է, գրուած Բաղդասար միտրապօլիտի ձեռքով, գլխաւորապէս Հասան-Ջալալեանների տոհմի վերաբերութեամբ։ Առաջին մասն այնքան հետաքրքիր չէ, որովհետեւ քաղած է մեզ արդէն յայտնի Կաղանկատուացու եւ Կիրակոս գանձակեցու գրքերից։ Իսկ վերջին մասը բովանդակում է իւր մէջ հետաքրքիր տեղեկութիւններ Ղարաբաղի մելիքների՝ Պետրոս Մեծի եւ վրաց Վախթանգ իշխանի հետ ունեցած յարաբերութիւնների մասին. նրանց յարաբերութիւնների մասին Փանահ-խանի եւ Իբրահիմ-խանի հետ, վերջինիս կատարած բարբարոսութիւնները Հասան-Ջալալեան Յովհաննէս կաթողիկոսի եւ Ղարաբաղի Մելիքների վերաբերութեամբ. Համառօտ կերպով նկարագրուած է Ղարաբաղի մելիք-

ների իրանց հպատակների հետ դէպի Վրաստան գաղթականութիւնը եւ այնտեղից վերադարձը, եւայլն։ Պատմութիւնը հասցրած է մինչեւ 1808 թուականը, այսինքն մինչեւ այն ժամանակը, երբ Բաղդասար միտրապօլիտը հայ գաղթականների հետ ինքը եւս վերադարձաւ Վրաստանից։ Տետրակի մէջ տեղ-տեղ ջնջուած է եւ միեւնոյն գրչով յետոյ ուղղուած։ Լուսանցքների վրայ ժամանակ առ ժամանակ յաւելուածքներ են արել, գիրը նոյնն է, բայց մելանի գոյները զանազանվում են։ Ինչպէս յիշեցի, այդ տետրակը սեւագրութիւն է միայն. ցանկալի կը լինէր, որ դրա ամբողջը եւ սրբագրուածը գտնուէր։ Հեղինակն անցքերին ժամանակակից լինելով, նրա գրուածն աւելի արժանահաւատ պէտք է համարել։

Խաչէնում տեսայ Հասան-Ջալալի բերդը, որ այժմ կոչվում է Թարխանայ (Խօխանայ) բերդ, տեսայ այդ բերդի ստորոտում իշխանի պալատի աւերակները, որ կոչվում են "դարպասներ". տեսայ հրաշալի Կաչաղակաբերդը, այցելութիւն գործեցի սուրբ Ցակոբայ վանքին, վերջապէս տեսայ մի պատմական ժողովուրդ, որ ճանաչում է այդ յիշատակարանները եւ հազարաւոր բաներ է խօսում նրանց մասին։

Խաչէն գետի ընթացքով ցած իջնելով եւ թեքուելով դէպի Խնձրիստան գիւղը, տեղեկութիւններ հաւաքեցի Մելիք-Միրզախանեանների մասին։ Այստեղ մնացի միայն մէկ օր, որովհետեւ սաստիկ վատ ընդունելութիւն գտայ։ Ինձ առհասարակ չէր յաջողվում այն տեղերում, ուր գտնվում էին մելիքների ժառանգներ, եւ մանաւանդ երբ նրանց տոհմի պատմութեան մէջ կային արատաւոր կէտեր. իսկ Մելիք-Միրզախանեանների պատմութիւնը շատ էլ մաքուր չէ։

Այստեղից անցայ Շուշի բերդը։ Իջեւանելով տեղայն առաջնորդարանում, ինձ յաջողուեցաւ քննել հոգեւոր կոնսիստորիայի արխիւը։ Ոչինչ չգտայ։ Բոլոր հին վաւերաթղթերը (դօկումէնտ), որոնք կարող էին Ղարաբաղի պատմութեան վրայ փոքր ի շատէ լոյս ձգել, ինչպէս ասում էին, զանազան ժամանակներում գողացել էին։ Այստեղ ես ծանօթացայ ծերունի Հաթամի հետ, որ մի ժամանակ Բաղդասար միտրապօլիտի կանցլերն է եղել։ Նա տուեց ինձ բաւական մանրամասն եւ ընդարձակ տեղեկութիւններ Ղարաբաղի կաթողիկոսների, մելիքների եւ խաների մասին։ Յարգելի ծերունին իւր պատմութիւններին այնքան յաճախ անգամ էր կրկնել, որ “Հայր մեր„ի նման անգիր սերտած ունէր։

Շուշիում Գրիգոր-բէկ Հասան-Ջալալեանը յանձնեց ինձ մի հարուստ հաւաքածու զանազան ֆիրմանների, հրովարտակների, պաշտօնական թղթերի, որ շնորհուած են եղել պարսից շահերից եւ օսմանցոց տիրապետողներից Ղարաբաղի կաթողիկոսներին ու մելիքներին։ Այդ հաւաքածուի մէջ գտնվում է Հասան-Ջալալեան տոհմի ամբողջ ճիւղագրութիւնը ժամանակագրական կարգով. բացի դրանից հաւաքուած են օրինակները այն արձանագրութիւնների, որ մնացել են քարերի վրայ եւ որ վերաբերում են այդ տոհմին։ Հաւաքածուն կազմել է Բաղդասար միտրապօլիտը եւ իւրաքանչիւր թղթի թարգմանութեան տակ իւր ձեռքով ստորագրել է՝ “ուղիղ է ընդ նախագաղափարին„։ Թէ որ աստիճան տիրապետում էր Բաղդասար միտրապօլիտը պարսկերէն, թուրքերէն, ռուսերէն եւ վրացերէն լեզուներին, որ կարողանար այդ լեզուներով գրուած թղթերի թարգմանութիւնը համեմատել բնագրի հետ, այդ մեզ յայտնի չէ. միայն այսքանը

կասենք, որ թարգմանութիւնը սաստիկ անպիտան է, մանաւանդ աշխարհաբար թարգմանուածները. շատ տեղերում ոչինչ չէ հասկացվում։ Բաղդասար միտրապօլիտը մեծ սխալ է գործել, որ պատմութեան համար այդ թանկագին հաւաքածուի բնագրների օրինակները չէ դրել թարգմանութիւնների հետ։

Շուշիում բաւական տեղեկութիւններ հաւաքելով այդ բերդի վաղեմի իշխողների՝ Փանահ-խանի, Իբրահիմ-խանի եւ Մէհտի-խանի մասին, ես անցայ Վարանդայի գաւառը՝ Մելիք-Շահնազարեանների տիրապետութեան երկիրը։ Երկու օր մնացի Չանախչի կամ Աւետարանոց բերդում, ուր բնակվում էին Մելիք-Շահնազարեանները, ուր մինչեւ այսօր տեսնվում են նրանց ամրոցների աւերակները, ուր դրած են այդ տոհմի նշանաւոր ներկայացուցիչների շիրիմները։ Այդտեղ ամեն մի ծերունի դեռ եւս չէ մոռացել, թէ ինչեր են կատարուել այդ բերդում, գիտէ այդ բերդի իշխողների իւրաքանչիւրի կատարած գործերը։

Ցոյց տալու համար, թէ մեր գաւառներում ինչպիսի արգելքների եւ մինչեւ անգամ անախորժութիւնների կարող է հանդիպել մի ուղեւոր, որ ուսումնական նպատակներով ճանապարհորդութիւն է անում, ես մէջ կը բերեմ մի դէպք, որ տեղի ունեցաւ Չանախչի բերդում։

Այդտեղ գնալու ժամանակ Շուշուայ հոգեւոր իշխանութեան յաջորդն ինձ տուել էր տեղային կոնսիստորիայի անդամ քահանաներից մէկին իբրեւ առաջնորդ, որ ցանկացած տեղերը ման ածէ ինձ եւ գիւղացիներին հասկացնէ իմ ճանապարհորդութեան նպատակը։ Բացի դրանից գերապատիւ յաջորդն ինձ պատիւ էր արել, տալով իւր սեպհական ձին նստելու։ (Յաջորդի ձին էլ մեծ

նշանակութիւն ունի գիւղացիների աչքում։) Չնայելով այդ բոլոր նախապատրաստութիւններին, Ջանախչի բերդում հազիւ կարողացայ ազատուել մի մեծ սկանդալից։ Հիւրասիրուելով տեղային քահանաներից մէկի տանը, խնդրեցի ինձ մօտ կանչել մի քանի ծերունի, որոնք կարողանային ինձ բաներ պատմել Մելիք-Շահնազարեանների մասին։ Շատերը ներկայացան։ Նրանք խօսում էին, իսկ ես հարկաւոր համարած տեղեկութիւնները նշանակում էի իմ նկատողութեան գրքոյկի մէջ։ Յանկարծ հայհոյանքներով ներս թափուեցան մի խումբ մարդիկ եւ պատմողներին բռնութեամբ դուրս քաշեցին սենեակից եւ կամենում էին ծեծել նրանց։ Ես շուարուած մնացի։ Ինձ հետ եկած քահանան հազիւ կարողացաւ հանգստացնել նրանց։ Բանից դուրս եկաւ, որ այդ մարդիկը Մելիք-Շահնազարեանների տոհմից էին եւ նրանց շատ հաճելի չէր, որ իրանց նախնիքների պատմութիւնը գրուէր։

Առհասարակ ժողովուրդը սաստիկ վախենում է գրչից. հէնց որ նրա աչքի առջեւ մի բան ես գրում, նա սարսափում է։ Ինձ շատ անգամ առաջարկում էին այսպիսի հարցեր. "Աղա, դրանից խօ մեզ վնաս չի՛ լինի"....։ Ի՞նչ անէ խեղճ ժողովուրդը, նա ամեն գրութիւնների վրայ նայում է պաշտօնական կէտից։ Օրինակ, եթէ մի գիւղատնտես, կամենալով ուսումնասիրել երկրի բեղմնաւորութեան չափը, հարցնելու լինի գիւղացուց, թէ քո ցանքը հարիւրին որքան արդիւնք է բերում, նա իսկոյն կը սկսէ ստել, մտածելով, թէ կամենում են հարկերն աւելացնել։ Այսպէս էլ՝ երբ կամենում ես հարցնել մելիքների տոհմին պատկանող այս եւ այն անձնաւորութեան մասին, իսկոյն սկսում են մտածել, չլինի՞ թէ նոր քննութիւններ պիտի սարքեն. չլինի՞ թէ հողերի, ագ-

նուականութեան մասին էլի նոր բան կայ....: Այդ մար-
դիկը միշտ գործ են ունեցել ստորին պաշտօնեաների հետ,
իսկ ուսումնասէր գիտնականը, պատմաբանը նրանց չի
հանդիպել:

Վարանդայից անցայ Տիղակի գաւառը, գնացի Տող
բերդը: Այս բերդում իշխում էին Մելիք-Աւանեանները:
Տեսայ նրանց տոհմային գերեզմանատունը, տեսայ Մելիք-
Եգանի կիսաւեր պալատը, որի մէջ այժմ բնակվում է
մի մահմեդական բէկ, որ այդ տոհմի՝ կրօնափոխ եղած
ժառանգներից մէկն է:

Այստեղ ինձ յաջողուեցաւ ձեռք բերել երկու բա-
ւական հաստ հատորների մէջ ամփոփուած զանազան
պատմական գրուածքներ: Այս աշխատութեան հեղինակն
է Գտիչ վանքի վանահայր Առաքել վարդապետ Կոստա-
նեանցը: Եթէ մեր բոլոր վանքերի ծոյլ, հացկատակ վար-
դապետները հետեւէին Առաքել վարդապետի օրինակին,
եւ իրանց շրջապատող ժողովրդի ու պատմական տեղերի
աւանդութիւնները հաւաքելով գրէին, գրանով աւելի
մեծ ծառայութիւն արած կը լինէին մեր գրականու-
թեանը, քան թէ իրանց աղօթքներով:

Առաքել վարդապետը, իրաւ է, իւր պատմութեան
մէջ ժամանակագրական կարգ չէ պահպանել, նիւթերն
իրանց տեսակի համեմատ չէ դասաւորել, եւ նրա աշխա-
տութիւնն աւելի մի անկապ հաւաքածու է, քան թէ
պատմութիւն, այսու ամենայնիւ նրա գրքերը բովանդա-
կում են իրանց մէջ թէեւ անմշակ, բայց բաւական
առատ նիւթեր պատմութեան համար: Երկու հատորները
բաղկացած են 75 ընդարձակ գլուխներից եւ 428 երեսներից,

Նրա նիւթերի մեծ մասը կարող էր ծառայել Հայոց
Այսմաւուրքին, քան թէ պատմութեան. օրինակ, Հան-

գտնւում են սրանց նման շատ գլուխներ. "Պատմութիւն հրաշից ուրումն աղքատի". — "Յաղագս մարդակերպ հարսնաքար անուանեալ վիմին". — "Յաղագս հրաշագործ ջուղալու խաչին". — "Յաղագս ուրումն ագահ վաճառականի, թէ որպէս եղեւ այր կատարեալ ի ձեռն սատանայի", եւ այդպիսի գլուխների մէջ յանկարծ "Պատմութիւն Լանկթամուրայ" — մի բոլորովին անյայտ կտոր Լանկ-Թէյմուրի արշաւանքներից:

Առաջին վարդապետի երկու հատորների մէջ կան եւ այնպիսի գլուխներ, որ կարող են ծառայել իբրեւ աղբիւր Ղարաբաղի մելիքների պատմութեան համար: Այդ տեսակ գլուխներից բաւական ընդարձակ տեղ է բռնում Տիզակի Մելիք-Աւանեանների մանրամասն պատմութիւնը՝ սկսեալ Մելիք-Եգանից մինչեւ այդ տոհմի վերջին ժառանգները: Յետոյ Վարանդայի Մելիք-Շահնազար Բ-ի պատմութիւնը, նրա յարաբերութիւնները Շուշի բերդի խաների հետ. Աղա-Մամադ-խանի վերջին արշաւանքը, նրա սպանուելը Շուշի բերդում. Ղարաբաղի սովը եւ ժանտախտը Աղա-Մամադ-խանի արշաւանքներից յետոյ. ժողովրդի ցրիւ գալը դէպի զանազան կողմեր: Կան եւ այնպիսի գլուխներ, որ նուիրուած են ռուսաց զանազան գեներալների արշաւանքներին դէպի Ղարաբաղի կողմերը: Դրանց մէջ հետաքրքիր են՝ իշխան Մադաթովի ճակատամարտը Շամքոր գետի եւ Գանձակի բերդի մօտ, գեներալ Կոտլարեւսկու Լէնքօրանի եւ Ասլան-Դիւզի կռիւները, իշխան Ցիցիանովի արշաւանքները. այդ բոլորը թէեւ իրանց բովանդակութեան կողմից շատ հետաքրքիր են, բայց ժամանակագրական կարգով չեն դասաւորուած: Գրքերի մէջ պատահում են զանազան հին ձեռագրերից արտագրած յիշատակարաններ, նշանաւոր անձինքների չի-

րիմների տապանագրեր, Ղարաբաղի այլ եւ այլ վայրերի մասին ժողովրդի մէջ մնացած աւանդութիւններ, եւայլն։ Իսկ որ ամենից հետաքրքիրն է, այդ է մի ժամանակագրական ցուցակ Ղարաբաղի նշանաւոր անցքերի մասին՝ սկսեալ 1721 թուականից մինչեւ 1813 թուականը։ Այդ ժամանակագրութիւնը, հեղինակի ասելով, դուրս է բերել նա մի ձեռագիր Մաշտոցից, որ գրուած է եղել Տէր-Գասպար քահանայի ձեռքով։

Ինձ հետ առնելով Առաքել վարդապետի գրքերը, հեռացայ Տող բերդից, մի օր այնտեղ մնալուց յետոյ։ Այստեղից գնացի Ամարասայ վանքը, իսկ յետոյ վերադարձայ կրկին Շուշի բերդը։

Եւ այսպէս ես անցայ Ղարաբաղի բոլոր հինգ գաւառները — Գիւլիստան, Ջրաբերդ, Խաչէն, Վարանդայ եւ Տիզակ, որոնք մի ժամանակ կազմում էին Խամսայի հինգ մելիքութիւնները։ Այդ ճանապարհորդութիւնը տեւեց երկու ամիս։ Որքան կարող էի՝ թէ բերանացի եւ թէ գրաւոր տեղեկութիւններ հաւաքեցի մելիքների պատմութեան մասին։ Միեւնոյն անցքը ես պատմել էի տալիս զանազան անձինքների, համեմատում էի միմեանց հետ, ստուգում էի եւ յետոյ նշանակում իմ գրքոյկի մէջ։

Յայտնի բան է՝ միայն ժողովրդական աւանդութիւնների վրայ հիմնուելով, շատ դժուար կը լինէր կազմել մի քանի դարերի շարունակ պատմութիւնը։ Ժողովուրդը շատ անգամ շփոթում է անցքերը, մէկի գործողութիւնը միւսին է վերաբերում, եւ ամենադժուարինն այն է, որ ժամանակագրական եւ տոհմագրական ճշտութիւններ չէ պահպանում, պատմական իրողութիւնները տեղափոխում է կամ շատ առաջ եւ կամ շատ յետոյ։ Բացի դրան-

ցից, ժողովուրդն ունի իւր լեգէնդաները, իւր իդէալները, իւր սիրած հերոսները, որոնց ընծայում է նա այնպիսի մեծագործութիւններ, որ չէին կարող նրանց կատարածը լինել։ Օրինակ, ինձ շատ անգամ պատահում էր նկատել, որ միեւնոյն պատմական իրողութիւնը ամեն մի գաւառի աւանդութիւնների մէջ ընծայում էին նոյն գաւառի մի յայտնի հերոսին, այն ինչ այդ անձնաւորութիւնը չէր կարող այն գործը կատարած լինել. որովհետեւ կամ այն ժամանակ նա դեռ ծնուած չէր, կամ վաղուց մեռած էր։ Բայց պատմական փաստը դարձեալ մնում է իբրեւ իրողութիւն, միայն հարկաւոր է նրա կատարող տէրը գտնել։

Այդ բոլոր խառնաշփոթութիւններն ստուգելու եւ անցքերը, գործողութիւններն ու գործողները պատմական ճիշտ ձեւի մէջ դասաւորելու համար ես օգուտ եմ քաղել գրաւոր աղբիւրներից, որ ցոյց կը տամ յետոյ։ Իսկ որտեղ պակասել են ինձ գրաւոր աղբիւրներ, ես հիմնուել եմ աւանդութիւնների վրայ։

Պէտք է ասած, որ աւանդութիւնները Խամսայի մելիքների պատմութեան ամենահարուստ մասն են կազմում։ Աւանդութիւնների հետ ես վարուել եմ նոյն կերպով, ինչպէս որ վարվում է բնագէտը մի հնադարեան անծանօթ կենդանու ոսկորների կոյտի հետ։ Ընդհանուր կենդանաբանական օրէնքներով նա գիտէ խառնուած ոսկորների կտորները ջոկել միմեանցից, ամեն մի մասը իւր պատշաճաւոր տեղը դնել, եւ այսպիսով կազմել մի ամբողջ կմախք։ Գուցէ անդամներից մի քանիսը կը պակասեն, բայց բնագէտը դարձեալ կարող է գաղափար ստանալ, թէ իւր գիւտը կենդանիների ո՛ր տեսակին էր պատկանում։

Իբրեւ գրաւոր աղբիւրներ ես ի նկատի եմ ունեցել հետեւեալ՝ դեռ եւս չտպուած ձեռագիր աշխատութիւնները.

1. Բաղդասար միտրապօլիտի ժամանակագրութիւնը, որ գտայ ես Գանձասար գիւղում եւ որի մասին վերեւում տեղեկութիւններ տուի։

2. Բաղդասար միտրապօլիտի հրովարտակների, ֆիրմանների, կալուածագրերի, արձանագրութիւնների եւ զանազան պաշտօնական թղթերի հաւաքածուն, որ գտայ ես Շուշի բերդում եւ որի մասին վերեւում տեղեկութիւն տուի։

3. Առաքել վարդապետ Կոստանեանցի երկու հատոր հաւաքածուն, որ գտայ ես Տող բերդում եւ որի մասին վերեւում տեղեկութիւն տուի։

4. Երկու տետրակներ, բաղկացած 84 երեսից, քաղուածք է արած Միրզա-Ադիգօզալի պարսկերէն պատմութիւնից։ Այդ տետրակների մէջ բովանդակվում են հետեւեալ գլուխները. — Ա. “Որպիսութիւնք խանացն Գանձակայ„. — Բ. “Որպիսութիւնք խանացն Ղարաբաղու„. այդ գլխի մէջ խօսվում է Ղարաբաղի խաների ծագման մասին, Փանահ-խանի հետզհետէ զօրանալու մասին, թէ որպէս այդ խանը միանալով Վարանդայի իշխան Մելիք-Շահնազարի հետ, հիմնեց Շուշի բերդը եւ նրա հետ միասին սկսեցին պատերազմել Խամսայի միւս մելիքների եւ Շիրվանի խանի դէմ։ Նոյն գլխի մէջ պատմվում է Փանահ-խանի հիմնած Բայաթ եւ Շահբուլաղ բերդերի մասին, որ կործանեցին հայոց մելիքները։ — Գ. “Համառօտ պատմութիւն Խամսայի հինգ մելիքութիւնների„. այդ գլխի մէջ խօսվում է Տ ի զ ա կ ի Մելիք-Եգանի, Վ ա ր ա ն դ ա յ ի Մելիք-Շահնազարեանների, Խ ա չ է ն ի

Հասան-Ջալալեանների, Ջրաբերդի Մելիք-Աթամի եւ Մելիք-Ալլահղուլու եւ Թալիշի (Գիւլիստանի) Մելիք-Բէգլարեանների մասին: — Դ. “Հանգամանք Փանահ-խանին ընդ Խամսայ մելիքաց„. այդ գլխի մէջ խօսվում է Փանահ-խանի կռիւների մասին հայոց մելիքների հետ: — Ե. “Հիմնարկութիւն Շուշի բերդին„. այդ գլխի մէջ աւելի պարզ երեւում է Մելիք-Շահնազարի գործակցութիւնը Փանահ-խանի հետ ի վնաս Ղարաբաղի միւս մելիքների: — Զ. “Կալանաւորութիւն Քէրիմ-խանին, Քեազմ-խանին, Հէյդար-Ղուլի-խանին եւ ազատութիւն նոցա ի Հաջի-Չալապէն„. այդ գլխի մէջ խօսվում է վրաց Հերակլ իշխանի նենգաւոր արշաւանքի մասին դէպի Ղարաբաղի կողմերը եւ նրա պարտութեան մասին Հաջի-Չելէբիից: — Է. “Գալուստ աւշար Փաթալի-խանին ուրմեցւոյ ի վերայ Ղարաբաղայ եւ պատերազմ նորա„. այդ գլխի մէջ խօսվում է, թէ որպէս հայոց մելիքները միանալով Փաթալի-խանի հետ, սկսեցին կռուել Փանահ-խանի հետ եւ ստիպեցին նրան իւր որդի Իբրահիմ-աղային (յետոյ Իբրահիմ-խան) պատանդ տալ, որին Փաթալի-խանը տարաւ Պարսկաստան: Ցետոյ Փանահ-խանի՝ իւր որդու ազատութեան համար Պարսկաստան գնալը, այնտեղ մեռնիլը եւ Իբրահիմ-խանի վերադարձը Ղարաբաղ, որպէս այդ երկրի պալսից կառավարութիւնից նշանակուած կառավարիչ: — Ը. “Որպիսութիւնք Իբրահիմ-խանին„. այդ գլխի մէջ պատմվում է Իբրահիմ-խանի զօրանալու մասին, Աղա-Մամադ-խանի առաջին արշաւանքի մասին, որ Շուշի բերդը պաշարելով եւ չկարողանալով գրաւել, Մելիք-Մէջլումի եւ Ջաւատ-խանի առաջնորդութեամբ գնաց Թիֆլիզն աւերակ դարձրեց. կամ Զուբովի արշաւանքը. Իբրահիմ-խանի եւ ուրիշ մի քանի խաների ռուսաց

հպատակութիւն ընդունելը. Աւարիայի Օմար-խանի ասպատակութիւնը Վրաստանում. Հերակլի մահը եւ վրաց իշխանական գերդաստանի երկպառակութիւնները։ — Թ. “Յաղագս կրկնակի գալստեան Աղա-Մամադ-շահին ի վերայ Ղարաբաղայ եւ գնալոյ Իբրահիմ-խանին ի Բալաքիան„. այդ գլխի մէջ պատմվում է Աղա-Մամադ-շահի Շուշի բերդում սպանուելու մանրամասնութիւնները։ Հետեւեալ գլուխներում պատմվում է վրաց Հերակլ իշխանի մահը, Գիորգիի յաջորդելը, Աւարիայի Օմար-խանի երկրորդ արշաւանքը դէպի Վրաստան, գեներալ Լազրովի յաղթութիւնը նրա դէմ. գեներալ Ցիցիանովի արշաւանքը, եւայլն։ Միրզա-Ադիգօզալի պատմութիւնից քաղած վերոյիշեալ երկու տետրակները ես ստացել եմ Ղարաբաղի հոգեւոր իշխանութեան յաջորդ Կարապետ վարդապետ Այվազեանից։

5. Սարգիս արքեպիսկոպոս Ջալալեանցի “Պատմութիւն աշխարհին Աղուանից„ կոչուած անտիպ գրքոյկը։ Այդ գրքոյկը, որ Ղարաբաղի մելիքների պատմութեանն է վերաբերում եւ հեղինակը չգիտենք ինչու է նրան Աղուանից պատմութիւն կոչում, բովանդակում է իւր մէջ հետեւեալ գլուխները. — “Աւանխուզբաշի„. — “Յաղագս գալստեան տաճկաց ի Ղարաբաղ„. — “Գաղթումն Աւանայ ի Ռուսաստան„. — “Վերաբնակութիւն Մելիք-Եսայեայ ի Սիւնեաց յԱրցախ„. — “Յաղագս Մելիք-Եգանայ եւ գործոց նորա„. — “Յաղագս պատերազմին խանին Փանահայ ընդ Մելիք-Եգանայ„. — “Դարձեալ վասն պատերազմին խանին Փանահայ ընդ Մելիք-Եգանայ„. — “Յաղագս մելիքութեան Եսայեայ եւ յաղագս պատերազմի նորին„. — “Պատերազմ խանին Ղարաբաղայ, որ է մասն Փայտակարանի, ընդ Մելիք-

Նսայեայ„․ — “Տեղեկութիւն ի վերայ ազգին Մելիք-Շահնազարայ„․ — “Ցաղագս պաշարելոյ մելիքաց զբերդն Աւետարանոց„․ — “Ցաղագս միաբանելոյ Մելիք-Շահնազարայ ընդ խանին Փանահայ եւ յաղագս պատերազմին Հաջի-Չալաբիայ„․ — “Վասն հաստատութեան Մելիք-Միրզախանայ հայկազնւոյ ի Թուին հայոց ռ․ մ․ գ․„․ — “Ցաղագս պատերազմին Չալաբիայ ընդ արքային վրաց Թամրազայ„․ — “Վասն պատերազմի խանին Ուրմւոյ աւշար Փաթալի կոչեցելոյ ընդ խանին Փանահայ ի Թուին ռ․ մ․ ժ․„․ — “Ցաղագս պատերազմին Փանահայ ընդ Մելիք-Ադամայ ի Թուին ռ․ մ․ գ․„․ — “Դարձեալ պատերազմ խանին Փանահայ ընդ Մելիք-Ադամայ„․ — “Ծագումն ազգին Մելիք-Յովսէփայ տիրապետողին նահանգին Ողլիմիգորգու (Գիւլիստանի), որ ի հնումն Դիւթական„․ — “Գաղթումն Մելիք-Աթամայ եւ Մելիք-Յովսէփայ ի Գանձակ„․ — “Ցաղագս վերստին մարտի Իբրահիմ-խանին ընդ մելիքաց հայոց„․ — “Մահ խանին Շահվերդւոյ եւ գաղթումն Մխիթարայ Քալանթարին„․ — “Դարձ մելիքաց ի հայրենիս„․ — “Ցաղագս դիմելոյ մելիքաց հայոց առանձին գրութեամբ առ կայսրուհին ռուսաց Եկատերինէ„․ — “Դաշնագիր մելիքաց„․ — “Մահ Յովհաննէս կաթողիկոսին Հասան-Ջալալեանց„․ — “Ցաղագս պատճառաց հակառակ աթոռոցն Գանձասարայ„․ — “Ցաղագս դաղթելոյ Մելիք-Մէջլումայ եւ Մելիք-Աբովայ„․ — “Գալուստ Սարգիս միտրապօլիտին ի Ղարաբաղայ ի Գանձակ„․ — “Արշաւանք մելիքաց հայոց„․ — “Հարցումն Արղումանայ յումեմնէ ախունդէ„․ — “Ցաղագս դարձի Մելիք-Աբովայ ի Ղարաբաղ„․ — “Գալուստ Աղա-Մամատ-խանին ի Ղարաբաղ„․ — “Գալուստ Աղա-Մամատ-շահին ի Վիրս„․ — “Ցաղագս գալստեան

Ջուբովայ յաշխարհն Աղուանից„. — “Դարձ Ջուբովայ ի Ռուսաստան„. — “Պաշարումն քաղաքին Գանձակայ եւ մահ Մելիք-Մէջլումայ„. — “Դարձ Աղա-Մահմատշահին ի Ղարաբաղ եւ մահ նորա„. — “Դարձ Մելիք-Աբովայ ի Բօշնեաց հանդերձ բնակչօք„. — “Ցաղագս մեծ սովուն Արցախու եւ յաղագս գնալոյ Մելիք-Ջումշուդայ առ Կայսրն ռուսաց„, ընդամենը 39 գլուխ: Մնացեալ 8 գլուխները վերաբերում են ռուսաց զանազան գեներալների արշաւանքներին: Գրքոյկը բաղկացած է 124 երեսից: Սարգիս արքեպիսկոպոսը, թէեւ ինքը չէ յայտնում, բայց իւր պատմութիւնը կազմելու ժամանակ մեծ մասամբ օգուտ է քաղել վերեւ յիշած Միրզա-Ադիգօզալի պարսկերէն պատմութիւնից, իսկ մնացեալ մասը հաւաքել է աւանդութիւններից: Անցքերը ժամանակագրական կարգով չեն դասաւորուած. տեղ-տեղ հանդիպում են տոհմագրական սխալներ, որդին իւր հօր հայրն է դառնում, իսկ հարազատ եղբայրը՝ հօրեղբայր, եւայլն: Ժամանակագրական թուականներ համարեա թէ չկան: Այն տեղերում, որ քաղել է Միրզա-Ադիգօզալի պատմութիւնից, գործ է ածում հիջրէթի թուականները, որոնց շատերը չեն համապատասխանում իրանց ժամանակին: Ինչպէս Ղարաբաղի մելիքների պատմութիւնը նա “Պատմութիւն աշխարհին Աղուանից„ է կոչում, այնպէս էլ աշխարհագրական զանազան տեղերի անունները գործ է ածում հին պատմական ձեւով, որոնց շատերը չեն համապատասխանում այժմեան տեղերին: Զարմանալու է, որ Մելիք-Մէջլումին եւ Մելիք-Աբովին Հայկ կամ Արամ չէ կոչում: Ես միայն աչքի առաջ եմ ունեցել Սարգիս արքեպիսկոպոսի գրքոյկը, բայց նրան չեմ հետեւել: Այդ գրքոյկը ես ստացայ գնդապետ Ց. Դ. Լազրովից:

Եսայեայ„. — “Տեղեկութիւն ի վերայ ազգին Մելիք-Շահնազարայ„. — “Ցաղագս պաշարելոյ մելիքաց զբերդն Աւետարանոց„. — “Ցաղագս միաբանելոյ Մելիք-Շահնազարայ ընդ խանին Փանահայ եւ յաղագս պատերազմին Հաջի-Չալաբիայ„. — “Վասն հաստատութեան Մելիք-Միրզախանայ հայկազնւոյ ի թուին հայոց ռ. մ. գ.„. — “Ցաղագս պատերազմին Չալաբիայ ընդ արքային վրաց Թամրազայ„. — “Վասն պատերազմի խանին Ուրմւոյ աւշար Փաթալի կոչեցելոյ ընդ խանին Փանահայ ի թուին ռ. մ. ժ.„. — “Ցաղագս պատերազմին Փանահայ ընդ Մելիք-Ադամայ ի թուին ռ. մ. գ.„. — “Դարձեալ պատերազմ խանին Փանահայ ընդ Մելիք-Ադամայ„. — “Ծագումն ազգին Մելիք-Յովսէփայ տիրապետողին Նահանգին Իգլիմիգորդու (Գիւլիստանի), որ ի հնումն Դիւթական„. — “Գաղթումն Մելիք-Աթամայ եւ Մելիք-Յովսէփայ ի Գանձակ„. — “Ցաղագս վերստին մարտի Իբրահիմ-խանին ընդ մելիքաց հայոց„. — “Մահ խանին Շահվերդւոյ եւ գաղթումն Մխիթարայ Քալանթարին„. — “Դարձ մելիքաց ի հայրենիս„. — “Ցաղագս դիմելոյ մելիքաց հայոց առանձին գրութեամբ առ կայսրուհին ռուսաց Եկատերինէ„. — “Դաշնագիր մելիքաց„. — “Մահ Յովհաննէս կաթողիկոսին Հասան-Ջալալեանց„. — “Ցաղագս պատճառաց հակառակ աթոռոյն Գանձասարայ„. — “Ցաղագս գաղթելոյ Մելիք-Մէջլումայ եւ Մելիք-Աբովայ„. — “Գալուստ Սարգիս միտրապօլիտին ի Ղարաբաղայ ի Գանձակ„. — “Արշաւանք մելիքաց հայոց„. — “Հարցումն Արղումանայ յումեմնէ ախունդէ„. — “Ցաղագս դարձի Մելիք-Աբովայ ի Ղարաբաղ„. — “Գալուստ Աղա-Մահմատ-խանին ի Ղարաբաղ„. — “Գալուստ Աղա-Մահմատ-շահին ի Վիրս„. — “Ցաղագս գալստեան

Ջուբռվայ յաշխարհն Աղուանից„. — "Դարձ Ջուբռվայ ի Ռուսաստան„. — "Պաշարումն քաղաքին Գանձակայ եւ մահ Մելիք-Մէջլումայ„. — "Դարձ Աղա-Մահմատշահին ի Ղարաբաղ եւ մահ նորա„. — "Դարձ Մելիք-Աբովայ ի Բօշնիսէ հանդերձ բնակչօք„. — "Ցաղագս մեծ սովուն Արցախու եւ յաղագս գնալոյ Մելիք-Ջումշուդայ առ Կայսրն ռուսաց„, ընդամենը 39 գլուխ: Մնացեալ 8 գլուխները վերաբերում են ռուսաց զանազան գեներալների արշաւանքներին: Գրքոյկը բաղկացած է 124 երեսից: Սարգիս արքեպիսկոպոսը, թէեւ ինքը չէ յայտնում, բայց իր պատմութիւնը կազմելու ժամանակ մեծ մասամբ օգուտ է քաղել վերեւ յիշած Միրզա-Ադիգօզալի պարսկերէն պատմութիւնից, իսկ մնացեալ մասը հաւաքել է աւանդութիւններից: Անցքերը ժամանակագրական կարգով չեն դասաւորուած. տեղ-տեղ հանդիպում են տոհմագրական սխալներ, որդին իւր հօր հայրն է դառնում, իսկ հարազատ եղբայրը՝ հօրեղբայր, եւայլն: Ժամանակագրական թուականներ համարեա թէ չկան: Այն տեղերում, որ քաղել է Միրզա-Ադիգօզալի պատմութիւնից, գործ է ածում հիջրէթի թուականները, որոնց շատերը չեն համապատասխանում իրանց ժամանակին: Ինչպէս Ղարաբաղի մելիքների պատմութիւնը նա "Պատմութիւն աշխարհին Աղուանից„ է կոչում, այնպէս էլ աշխարհագրական զանազան տեղերի անունները գործ է ածում հին պատմական ձեւով, որոնց շատերը չեն համապատասխանում այժմեան տեղերին: Զարմանալու է, որ Մելիք-Մէջլումին եւ Մելիք-Աբովին Հայկ կամ Արամ չէ կոչում: Ես միայն աչքի առաջ եմ ունեցել Սարգիս արքեպիսկոպոսի գրքոյկը, բայց նրան չեմ հետեւել: Այդ գրքոյկը ես ստացայ գնդապետ Ց. Դ. Լազարեվից:

6. Մի այլ տետրակ, 16 մեծ երեսից բաղկացած, կրում է այսպիսի վերնագիր. “Ծագումն Ղարաբաղու մելիքների„ Սար. Վ. Ջալալեանցի, բովանդակում է իւր մէջ միայն 4 գլուխ. — Ա. “Ծագումն ազգին Մելիք-Աթամայ տիրապետողին նահանգին Ջարաբերդու„. — Բ. “Ծագումն ազգին Մելիք-Յովսէփայ տիրապետողին նահանգին Իգիրմիդորդու, որ ի հնումն Դիւթական„. — Գ. “Ծագումն ազգին Մելիք-Եգանայ տիրապետողին նահանգին Տիզակու„. — Դ. “Ծագումն ազգին Մելիք-Շահնազարայ տիրապետողին Վարանդու:„ Ստորագրած է. “Համառօտեալ զայս ի պատմութեանց (?) յինէն յօրինելոց. Սարգիս վարդապետ Ջալալեանց„: Այդ փոքրիկ տետրակն աւելի ամփոփ է եւ աւելի խղճմտանքով մշակուած, քան Ջալալեանի վերև յիշած ընդարձակ պատմութիւնը: Այդ տետրակը ես ստացայ պ. Սեդրակ Տէր-Առաքելեանից:

7. Հին գրչագիր մատեանների յիշատակարաններից քաղած Ղարաբաղի մելիքների վերաբերութեամբ արձանագրութիւններ. — եկեղեցիների, վանքերի, մելիքների ամրոցների, նրանց տոհմային շիրիմների վրայ գտնուած արձանագրութիւններ. — մելիքների ժառանգների կամ մասնաւոր անձինքների ձեռքում գտնուած հրովարտակների, ֆիրմանների, կալուածագրերի ու այլ պաշտօնական թղթերի օրինակներ. — մելիքների անունով կաթողիկոսների կոնդակների եւ օրհնութեան թղթերի պատճէններ. — յիշեալ վաւերաթղթերը (դօկումէնտ) որքան յաջողուել է ինձ հաւաքել ճանապարհորդութեանս ժամանակ, ծառայել են ինձ որպէս գլխաւոր աղբիւր ժամանակագրութեան եւ մելիքների տոհմային ճիւղագրութեան համար:

Մինչեւ այստեղ յիշած աղբիւրները դեռ եւս տպագրութեամբ լոյս չտեսած, ձեռագրերի մէջ մնացածներն էին. այժմ դառնանք դէպի այն աղբիւրները, որոնք արդէն տպուած են.

1. *Ջամչեան Հ. Միքայէլ վարդապետ*։ Պատմութիւն Հայոց ի սկզբանէ աշխարհի մինչեւ ցամ Տեառն 1784. Հատոր Գ-րդ։ Վենետիկ 1786.

2. *Առաքել դաւրիժեցի*։ Պատմութիւն սակս դիպուածոց Հայաստանեայց եւ եւս գաւառին Արարատոյ եւ մասին Գողթան գաւառի, սկսեալ ի թուոյն Հայոց 1054 մինչեւ յաւարտ պատմագրութեանս (1601—1666), այլ եւ ի յիշումն ածեալ մասնաւորաբար աստի եւ անտի։ Ամստելօդամ (Ամստերդամ) 1669։

3. *Հասան-Ջալալեանց Եսայի կաթողիկոս Աղուանից*։ Պատմութիւն կամ յիշատակ ինչ ինչ անցից՝ դիպելոց յաշխարհին Աղուանից ի թուականին Հայոց 1160, իսկ ի թուականին Տեառն մերոյ Փրկչին Յիսուսի 1711։ Շուշի 1839։ Այդ փոքրիկ գրքոյկը, ինչպէս երեւում է, համառօտութիւն է, քաղած մի ընդարձակ պատմութիւնից, որի բնականը, եթէ գտնուէր, մեծ գանձ կարելի էր համարել մեր նոր ժամանակների պատմութեան համար։ Հեղինակը՝ Աղուանից Եսայի կաթողիկոսը, ինքը լինելով Ղարաբաղի մելիքների ապստամբութեան (1700—1728 թ.) գլխաւոր պարագլուխներից մէկը, գրել է իւր ժամանակի անցքերի մանրամասն պատմութիւնը։

4. *Դաւիթ-բէկ*. Պատմութիւն Դաւիթ-բէկին եւ պատերազմաց Հայոց Խափանու, որք եղեն ընդդէմ Թուրքաց ի մերում ժամանակի, այն է յամի Տեառն 1722 եւ Հայոց 1171։ Վաղարշապատ 1871։ Այդ հե-

տաքըրքիր պատմութեան հեղինակը մինչեւ այսօր մնում է անյայտ. ձեռքից ձեռք անցնելով, հեղինակի անունը եղծուել է։ Ես այժմ անտեղի եմ համարում խօսել այդ մասին, միայն կը յիշեցնեմ հայկական առածը. «գողը գողից գողացաւ, Աստուած տեսաւ, զարմացաւ»....։

5. Աբրահամ կաթողիկոս կրետացի։ Պատմութիւն անցիցն իւրոց եւ Նադիր-շահին պարսից։ Վաղարշապատ 1870։

6. Գիլանենց Պետրոս դի Սարգիս։ Ժամանակագրութիւն 1722—1723։ Հայերէն բնագիրը, որ տպուած է եղել «Կռունկ Հայոց աշխարհին» ամսագրի 1863 թուի տետրակներում, ձեռքի տակ չունենալով, ես աչքի առաջ եմ ունեցել այդ ժամանակագրութեան Ք. Պատկանեանի ռուսերէն թարգմանութիւնը։ Ս. Պետերբուրգ 1870։

7. Արղութեանց-Երկայնաբազուկ Յովսէփ արքեպիսկոպոս։ «Ղարաբաղի ժառանգական տիրապետողների՝ որ կոչվում են մելիքներ, Ռուսաստան դեսպաններ ուղարկելու ստիպողական պատճառները եւ նրանց խնդիրքը Նորին Կայսերական Մեծութեան Պետրոս Մեծին»։ Այդ հետաքըրքիր պատմական գրութիւնը շարադրուած է Ռուսաստանի հայոց վիճակաւոր առաջնորդ Արղութեան-Երկայնաբազուկ Յովսէփ արքեպիսկոպոսի աշխատութեամբ եւ գեներալ-ֆելդմարշալ իշխան Գրիգորի Ալեքսանդրովիչ Պատեոմկինի միջնորդութեամբ 1790 թուին ներկայացրած է Եկատերինա Բ կայսրուհուն։ Այդ գրութեան հայերէն թարգմանութիւնը՝ Պետրոս Մեծի, Եկատերինա Բ-ի եւ Պօղոս Ա-ինի Ղարաբաղի մելիքներին շնորհած հրովարտակների հետ տպուեցաւ 1858 թուի Մանդինեանցի «Մեղու Հայաստանի» 4 եւ 5 համարնե-

րում, իսկ ռուսերէն բնագիրը է կարելի գտնել „Собраніе актовъ, относящихся къ обозрѣнію исторіи армянскаго народа ч. I, с. 165—201 и ч. II. с. 52—62. Այլ եւ Сѣв. Архивъ 1823, т. 6. No. 10, с. 233. Նոյն Յովսէփ արքեպիսկոպոսի նոյն թուով (1790 թ. 23 յունուարի) կազմած մի այլ գրութիւն այսպիսի վերնագրով՝ "Հայոց տիրապետող իշխանների կամ Ղ ա ր ա բ ա ղ ի մ ե լ ի ք ն ե ր ի մասին։ Նրանց անունները եւ տիրած երկիրները։ Շուշուայ Իբրահիմ-խանի Շուշին գրաւելու պատճառները։" Այդ գրութիւնը, որ նոյնպէս իշխան Պատեոմկինի միջնորդութեամբ ներկայացուեցաւ Եկատերինա Բ կայսրուհուն, բովանդակում է իւր մէջ Խամսայի հինգ տիրապետող մելիքների անունները, նրանց համառօտ պատմութիւնն ու յարաբերութիւնները Փանահ-խանի ու Իբրահիմ-խանի հետ։ Ռուսերէն բնագիրը տպուած է նոյնպէս „Собраніе актовъ, относящихся къ обозрѣнію исторіи армянскаго народа ч. II. с. 52—62. Պէտք է ասած, որ յիշեալ ա ք տ ե ր ի հ ա ւ ա ք ա ծ ո ւ ի ց ես քաղել եմ Ղարաբաղի կաթողիկոսների եւ մելիքների ռուսաց կառավարութեան հետ ունեցած յարաբերութիւնների այլ եւ այլ մանրամասները՝ սկսեալ 1701—1801 թուականը։

8. Ե ր ի ց ե ա ն Ա. Դ. Карабагскіе мелики въ Грузіи съ 1800 по 1808 годы. Кав. Стар. 1872 No. 2. Իւր պատմական յօդուածը կազմելու համար հեղինակը օգուտ է քաղել այն տեղեկութիւններից, որ բովանդակւում են 1—3 հատորների մէջ Актовъ Кав. Археогр Ком. եւ աչքի առաջ է ունեցել ուրիշ մի քանի աղբիւրներ։ Պ. Երիցեանի ամսագրի նոյն համարում զետեղուած են Յովսէփ արքեպիսկոպոսի եւ Ղարաբաղի մելիք-

ների մի շարք խիստ հետաքրքիր նամակների ռուսերէն թարգմանութիւնները։

Ես ձեռքի տակ եմ ունեցել նաեւ հետեւեալ գրքերը. Закавказье отъ 1803—1806 года. Н. Дубровина, С.-Петербургъ 1866. — Жизнь генералъ-лейтенанта князя Мадатова, изданіе второе, С.-Петербургъ, 1863. — Матеріалы для исторіи Кавказа П. Г. Буткова 3 ч. С.-Петербургъ 1869. Պէտք է խոստովանել, որ ցանկանալով իմ աշխատութեանը տալ, որքան կարելի է, հայոց տոհմային պատմութեան ձեւ, ես շատ դէպքերում գերադասել եմ այն նիւթերը, որ յաջողուել է ինձ գտնել հայոց թէ՛ գրաւոր եւ թէ բերանացի աւանդութիւնների մէջ, եւ այդ պատճառով ռուսաց աղբիւրների վրայ նայել եմ որպէս օժանդակող նիւթերի վրայ։

Եթէ Խամսայի մելիքութիւնների առաջին հատորն ընդունելութիւն գտաւ ընթերցող հասարակութիւնից եւ տպուած գրքերը վաճառուեցան, այն ժամանակ ես կը տպեմ մի երկրորդ հատոր որպէս յաւելուած առաջին հատորի։ Այդ վերջին հատորի մէջ զետեղուած կը լինին այն բոլոր նիւթերը, որոնք ծառայել են իբրեւ աղբիւր առաջին հատորը կազմելու համար։ Բովանդակութիւնը կը լինի հետեւեալ կարգով. — զանազան անձինքների՝ զանազան ժամանակներում Ղարաբաղի կաթողիկոսների, մելիքների մասին գրած եւ անտիպ մնացած պատմական աշխատութիւններ. — մեր պարբերական հրատարակութիւնների կամ այլ եւ այլ գրքերի մէջ ցրուած յօդուածները Ղարաբաղի մելիքների մասին. — ռուսաց ակտերի մէջ գտնուած տեղեկութիւնները Ղարաբաղի մելիքների մասին, որպիսի են Կովկասեան հնագրութեան մասնաժողովի ակտերը ((Акты Кав. Археогр. Ком.)։ Մոս-

կուայում տպուած Հաւաքածու ակտերի, որ վերաբերում են հայոց ազգի պատմութեան հետազօտութեանը (Собраніе актовъ, относящихся къ обозрѣнію исторіи армянскаго народа). — ռուսաց պատմագիրների՝ Սոլովեվի, Բուտկովի, Դուբրովինի, Ց. Արարատսկու (հայ) եւ այլոց գրքերի մէջ գտնուած տեղեկութիւնները Ղարաբաղի մելիքների մասին, այլեւ պարսից պատմագրութեան մէջ հայոց մելիքների մասին գտնուած տեղեկութիւնները. — ռուսաց կայսրների, պարսից շահերի, վրաց իշխանների եւ զանազան խաների Ղարաբաղի կաթողիկոսներին ու մելիքներին շնորհած անուանական հրովարտակների, ֆիրմանների օրինակները. — մելիքների տոհմերի վերաբերութեամբ գտնուած արձանագրութիւնների օրինակները՝ եկեղեցիների, վանքերի, շիրիմների քարերի վրայ, գրքերի յիշատակարանների մէջ. — մելիքների տոհմային ծիւղագրութեան աղիւսակները։ Այդ բոլորը տպուած կը լինին իմ սեպհական բացատրութիւններով եւ ծանօթութիւններով։

Այդ գիրքը կազմելու համար ես ձեռքի տակ ունիմ բաւական պատրաստի նիւթեր։ Անտարակոյս ուրիշների մօտ գուցէ գտնվում են եւ այնպիսի թղթեր, որոնք ինձ յայտնի չեն, որոնք աւելի լոյս կարող էին ձգել մելիքների դարու պատմութեան վրայ։ Ես որովհետեւ մի լիակատար, ճոխ հաւաքածու կազմելն աւելի ընդհանրութեան օգնութեանը կարօտութիւն ունի, ուստի այդ մտքով ես հրաւիրում եմ օգնել ինձ նրանով միայն, որ իւրաքանչիւր ոք՝ եթէ գտնվում է նրա մօտ մի որեւիցէ նիւթ, որ կարող էր ծառայել իմ նպատակին, ուղարկէր ինձ իմ հաւաքածուի մէջ զետեղելու համար։ Ես չեմ պահանջում թղթերի իսկականները, եթէ այդ հնարաւոր

չէ, այլ թող ինձ ուղարկեն ճիշտ պատճէնները, միայն թէ այդ պատճէնները պէտք է վաւերացրած լինին, որ համեմատ են իսկականի հետ։ Վաւերացնել կարելի է կամ տեղային ուսուցչական խմբի մօտ, որտեղ կան թեմական դպրոցներ, կամ տեղային կոնսիստորիայում, եթէ կ՚ընդունեն։

Ես աւելի շատ բան եմ սպասում մեր գաւառական վարժապետներից, որոնք թէ միջոցներ եւ թէ պատրաստականութիւն ունին պատմական նիւթեր հաւաքելու։ Իբրեւ օրինակ ես կը յիշեմ մի վարժապետի անուն. պարոնը Շուշուայ հոգեւոր դպրոցում ուսուցիչ է՝ Խօջամիրեանց։ Նա իրան նպատակ է դրել ամեն տեղ պատահած գրչագիր մատեանների յիշատակարաններն արտագրելու, այլեւ հաւաքելու այն բերանացի աւանդութիւնները, որոնք ժողովրդի մէջ պահպանուած են զանազան աւերակների, բերդերի, ժայռերի, բլուրների եւ այլ վայրերի մասին։ Շուշիում եղած ժամանակ պարոնը տուեց ինձ իւր հետաքրքիր հաւաքածուն։ Մի աւետարանի յիշատակարանում կարելի է գտնել հայոց մի նշանաւոր իշխանական տան շարունակութիւնը, որ պատմութեան համար կորած էր։ Այսպիսի շատ գիւտեր կարող են պատահել, միայն թէ հետախուզողներ լինէին։

Ի դէպ է յիշել, որ Խամսայի մելիքութիւնների պատմութիւնը գրելու ժամանակ ինձ աւելի նուազ օգնեցին նոյն իսկ մելիքների ժառանգները, որոնց աւելի պիտի հետաքրքրէր իրանց նախահայրերի պատմութիւնը։ Նրանք կարող էին ուղարկել ինձ իրանց տոհմային վաւերաթղթերի (դօկումէնտ) օրինակները. սակայն բացի մի քանիսից, միւսները ուշադրութիւն անգամ չդարձրին կամ երկիւղ կրեցին...։

Ես մասամբ իրաւացի եմ գտնում այդ երկիւղը։ Մելքերի ժառանգներից ոմանք աղքատ, աննշան մարդիկ են, բայց իրանց ձեռքում պահում են նշանաւոր թղթեր։ Շատ անգամ պատահել է, որ աւելի ճարպիկները նրանց խաբել են, թղթերն առել են, կամ գողացել են, եւ իրանց ազգանունը փոխելով, նրանց ազգանունը կրելով, ազնուական են դարձել, տիրացել են նրանց թէ հողերին եւ թէ տիտղոսին․․․։ Բայց մի պատմագրից այդ տեսակ կասկածներ ունենալ, կարծեմ, շատ ծիծաղելի կը լինէր, երբ նրա խնդրածը միայն թղթերի պատճէնն է եւ ոչ թէ իսկականը

Կան եւ այնպիսիները, որ մերժում են բոլորովին ազնուութիւնից։ Նրանց համար ոչինչ այնքան արժէք չէ ստանում, որպէս մի հին թղթի կտոր, որ ընկած է լինում նրանց տան փոշիների մէջ եւ իրանք էլ չգիտեն նրա նշանակութիւնը։ Բայց հէնց որ սկսում ես այդ թղթի կտորին նշանակութիւն տալ, պահանջել, իսկոյն ծագում է նրանց գլխում մի այսպիսի միտք․ "դրանում մի բան կայ„․․․ (անպատճառ փողի բան) եւ թագցնում են թղթի կտորը։ Այդպիսի շատ դէպքեր պատահեցան ինձ ճանապարհորդութեանս ժամանակ։

Ինչո՞ւ ենք զարմանում ռամկի վրայ։ Ես կարող եմ ցոյց տալ ուսեալ, զարգացած մարդիկ, որոնք լաւ հասկանում են, թէ ինչ է պատմութիւնը, եւ որոնք խոստացել էին ինձ տալ իրանց մօտ գտնուած այս եւ այն թղթերը, բայց վերջը չկատարեցին իրանց խոստմունքը։ Ինչո՞ւ․ — միայն նախանձից։ Որովհետեւ իրանք այնքան պատրաստականութիւն չունեին, որ կարողանան իրանց ձեռքի տակ եղած նիւթից օգուտ քաղել, իսկ ուրիշներին եւս թոյլ չէին տալիս օգուտ քաղելու։ Իսկ եթէ նոյն թղթերը իրանց երեխաների իրանց աչքի առջեւ պատառոտելու լինեին,

ես հաւատացած եմ, որ ամենեւին ցաւ չեն զգալ, միայն կը նայեն եւ կը զուարճանան իրանց զաւակների խաղի վրայ։

Թէ այսպէս եւ թէ այնպէս, մենք ունինք մի պատմութիւն, որ դեռ եւս ուսումնասիրուած չէ, որ դեռ եւս գրուած չէ. — այդ է մ ե լ ի ք ն ե ր ի տիրապետութեան ժամանակների պատմութիւնը։ Հայաստանը զանազան դարեշրջաններում, կորցնելով իւր թագաւորութիւնը, ունեցաւ կուսակալների, մարզպանների, ոստիկանների, կիւրապաղատների դարերը։ Իսկ վերջին ժամանակներում — մ ե լ ի ք ն ե ր ի դարերը։ Այդ դարերի պատմութիւնը պէտք է ներկայացնէ մեր ն ո ր պ ա տ մ ո ւ թ ի ւ ն ը։

Մեր նախնի գրողներն աւելի փութաջան գտնուեցան մեզանից։ Նրանք թողեցին մեզ իրանց ժամանակների պատմութիւնները։ Իսկ մենք, տասնեւիններորդ դարու զաւակներս, ի՞նչ պիտի թողնենք մեր ապագայ սերնդին։ Մի ամբողջ պատմութիւն կորչում է, անհետանում է, իսկ մենք դրա վրայ ուշադրութիւն չենք դարձնում։

Յայտնի գրողներից մէկն ասում է. "քրքրիր մի ազգի հնութիւնները եւ մի գիշերուայ մէջ կը զարթնէր նրա թմրած հոգին„...։ Պատմութիւնն այդպիսի ազդեցութիւն ունի ազգերի եւ ժողովուրդների համար։ Պատմութիւնը մի վարդապետարան է, մի դասարան է, որի մէջ ապագայ սերունդը կրթվում է, զգուշանալով իւր նախահայրերի սխալներից եւ հետեւելով նրանց լաւ գործերի օրինակին։

Կրկնում եմ, մենք ունինք մի պատմութիւն, որ կորչելու, անհետանալու վրայ է։

Խամսայի մելիքութիւնների պատմութիւնը գրելը միայն մի փորձ էր՝ ցոյց տալու համար, թէ ունինք նոր ժամանակների պատմութիւն, որի վրայ ուշադրութիւն չենք դարձնում։ Թէ ո՛րքան յաջողուեցաւ ինձ այդ փորձը,

այդ ուրիշ բան է. բայց կարծում եմ, որ ես կարողացայ ապացուցանել, թէ կայ պատմութիւն։

Իբրեւ փորձ ես վեր առայ մի գաւառ միայն Ղարաբաղը, եւ գրեցի այդ գաւառում եղած հայկական հինգ իշխանութիւնների պատմութիւնը եւ հասցրի մինչեւ ռուսաց տիրապետութեան ժամանակները։ Բայց մելիքութիւններ Անդրկովկասում եղել են բոլոր հայաբնակ գաւառներում։ Միայն Երեւանի նահանգում կային եօթն նշանաւոր մելիքութիւններ, որոնց ներկայացուցիչները՝ Մուղանի դաշտում, Աբրահամ կաթողիկոսի հետ, ներկայ գտնուեցան Նադիր-շահի թագադրութեան հանդիսին։ Մելիք-Աղամալեանները, Գեղամեանները, Լօռիս-Մելիքեանները, Արղութեանները եւ այլ իշխանական հին տներ յայտնի էին եւ ռուսաց տիրապետութեան սկզբի տարիներում։

Ես չեմ խօսում Շիրվանի, Շաքիի, Դերբէնդի եւ Բագուի գաւառների մասին, որովհետեւ այդ կողմերը չեմ եղել, այդ երկրների մելիքութիւնների մասին շատ փոքր տեղեկութիւններ ունիմ։ Բայց իմ անցեալ տարուայ ճանապարհորդութեանս ժամանակ, բացի Ղարաբաղից, ես պտըտեցի Գանձակի, Զանգեզուրի, Սիսիանի, Բարգիւշատի, Զաւնդուրի, Ղափանի, Մեղրիի եւ Օրդուբադի վիճակներում, անցայ Հին-Նախիջեւանի կողմերը եւ այնտեղից գնացի Պարսկաստան։ Յիշեալ երկրներում կային հզօր մելիքութիւններ, որոնք 1722 թուի ապստամբութեան ժամանակ մասնակցում էին Դաւիթ-բէկի եւ Ղարաբաղի մելիքների կռիւներին։ Օրինակ՝ Զանգեզուրի վիճակում յայտնի էին Մելիք-Հայկազեանները[1], Սիսիանի

[1] Շահ-Աբաս մեծի Մելիք-Հայկազին շնորհած մի փիրմանի մէջ տալիս է նրան ս ա գ ր - ն ի շ ի ն տիտղոսը, որ նշանակում է թագաւորի մօտ առաջին տեղում նստող՝ գահերէց։

մէջ (Տաթեւի կողմերում) յայտնի էին Օրբէլեանները, Բարգիւշատի մէջ՝ Մելիք-Փրանգիւլը, Զանգուրի մէջ՝ Թորոս իշխանը, Ղափանի մէջ՝ Մելիք-Փարսադանեանները, Մեղրիի կողմերում՝ Շահումեանները, Օրդուբաթի կողմերում՝ Մելիք-Մուսան, եւայլն։

Որքան կարող էի, որքան իմ ժամանակը եւ միջոցները ներում էին, ես տեղեկութիւններ հաւաքեցի վերոյիշեալ մելիքութիւնների մասին, բայց այդ տեղեկութիւնները դեռ այնքան թերի են, որ հազիւ թէ կարելի լինէր նրանց մասին մի ամբողջ բան գրել։ Այդ մթութեան մէջ մնացած իշխանութիւններն ի լոյս ածելու համար պէտք է սպասել մինչեւ նիւթերի քանակութիւնը բաւականաչափ հաւաքուի, որ կարելի լինի պատմութիւն գրելու ձեռնարկել։

Աւելորդ չեմ համարում յիշել որ իմ ճանապարհորդութիւնից Թիֆլիզ վերադառնալու ժամանակ գնացի Ս. Էջմիածնի վանքը։ Ես մեծ յոյսեր ունէի, որ ընդհանուր Հայոց Մայր-Աթոռի արխիւում կը գտնէի շատ թղթեր, որոնք նիւթ կը տային մեր նոր ժամանակների պատմութեանը։ Մանաւանդ, որ դեռ 1858 թուին Մանդինեանցի "Մեղուի" թիւ 15ում կարդացել էի Սանահնի վանքի գրադարանի՝ մօտ 100 նշանաւոր գրչագիր մատեանների թւում հետեւեալ գրքերի անունները, որոնք ինձ շատ հարկաւոր էին. "Պատմութիւն Դաւիթբէկի", — "Տետրակ պատմութեան խանիցն Ղարաբաղու, թարգմանեալ ի պարսից լեզուէ", — "Պատմութիւն Ղազի-Մօլլայի յԱբբահամ քահանայէ", — "Պատմութիւն Մանուէլ վարդապետի անցիցն Ս. Էջմիածնի 1801 ամէ ց1835ն", — "Վերլուծութիւն յԱրիստակէս վարդապետէ եւ հին նշանագիրք Հայոց"։ — Այդ պատմական գրքերը,

*ինչպէս եւ մօտ 100 հատոր միւս նշանաւոր գրչագրերի մեծ մասը Սանահնի վանքից այժմ անհետացել են, եւ յոյս ունէի գոնէ իմ ցանկացած գրքերը գտնել Ս. Էջմիածնի մատենադարանում։ Բացի դրանցից, «Մեղու» նոյն տարուայ 11 համարում կարդացել էի Մխիթարեան Աբէլ վարդապետի (յետոյ եպիսկոպոսի) 11 հատոր զանազան անտիպ աշխատութիւնների ցուցակը, որոնց թւում գտնվում էր «Պատմութիւն հայոց ի 1761 թուականէ ց1857, շարունակութիւն Չամչեան պատմութեան։» — Աբէլ եպիսկոպոսը ներկայ դարու Ս. Էջմիածնի միաբանների մէջ, Կարապետ վարդապետ Շահնազարեանից յետոյ, միակ եկեղեցականն էր, որ իւր անձը նուիրել էր գրականութեան։ Նա բանաստեղծ եւ լաւ պատմաբան էր։ Մի ժամանակ Պարսկաստանի հայոց թեմական առաջնորդ լինելով, մի ամբողջ ձմեռ ապրում էր նա իմ տան մէջ, շատ անգամ գիշերները կարդում էր ինձ իւր հետաքրքիր պատմութիւնը։ Միայն նա՛ Ս. Էջմիածնում երկար ժամանակ ապրած լինելով եւ այդ վանքի բոլոր գաղտնիքներին տեղեակ լինելով, կարող էր գրել մի այդպիսի պատմութիւն, որ իսկապէս Չամչեանի շարունակութիւն կարելի էր համարել։ Բայց ո՞ւր մնաց նրա աշխատութիւնը. — ինչպէս հալածուեցաւ հեղինակը, այնպէս էլ հալածուեցաւ նրա գիրքը...։ Այդ բազմարդիւն եւ բազմաշխատ գրողին թոյլ չտուեցին մինչեւ անգամ իւր հոգին աւանդել Ս. Էջմիածնի պարիսպների մէջ։ Նա քաղածութիւնից մեռաւ իւր ծառայի տանը, դառն չքաւորութեան մէջ։ Իսկ նրա պատմութեան գիրքը եւ ուրիշ շատ անտիպ մնացած աշխատութիւնները մի քանի հարիւր ռուբլու կաշառքով անցան մէկի ձեռքը, ուր այժմ կամ մոխիր են դարձել, կամ երբէք դուրս բերելու հնար չկայ...։*

Եւ այսպէս, Ս. Էջմիածնի մատենադարանում իմ նպատակներին համապատասխանող ոչինչ չգտայ։ Ես յոյս ունէի գտնէ արխիւում գտնել զանազան պաշտօնական թղթեր, որոնք կը ծառայէին իբրեւ նիւթ պատմութեան համար․ բայց իմ բարեկամ եպիսկոպոսներից երեքը, որոնք լաւ գիտէին, թէ Ս. Էջմիածնի արխիւում ի՛նչ է մնացել, յայտնեցին, թէ ի զուր կ՚անցնէր իմ աշխատանքը, որովհետեւ ոչինչ գտնել չէի կարող։ Ես չզարմացայ եւ հաւատացի։ Մի վանքում, ուր մի կաթողիկոս իւր նախորդների յիշատակը ոչնչացնելու համար փութերով այրել է տալիս նրանց ժամանակներից մնացած պաշտօնական թղթերը, այլ եւս ի՞նչ կարելի է գտնել արխիւում։ Իսկ այդ բարբարոսութիւնը կատարուել է մի քանի կաթողիկոսների փոխուելու ժամանակներում։

Յայտնի է որ ռուսաց կառավարութիւնը մի ժամանակ արտօնութիւն էր տուած Ս. Էջմիածնի կաթողիկոսներին քննելու զանազան աղնուական տոհմերի ծագումը եւ կաթողիկոսները եթէ իրաւացի էին գտնում նրանց աղնուականութիւնը, շնորհուած կոնդակներն ընդունվում էին իբրեւ հաստատ վկայականներ։ Երբ կաթողիկոսներն այդ տեսակ վկայականներ էին տալիս, հարկաւ, քննութեան գործերը պէտք է մնային Ս. Էջմիածնի դիւանում։ Իսկ այդ գործերն այժմ կարող էին պատմութեան նիւթ տալ, եթէ պահուած լինէին։

Ինչեւիցէ, մի այնպիսի ձեռնարկութիւն, որպիսին է հաւաքել եւ կազմել Անդրկովկասի նախ քան ռուսաց տիրապետութիւնը եղած մելիքների, տիրապետող իշխանների եւ զանազան նշանաւոր անձինքների պատմութիւնը, — այդ մի մարդու գործ չէ․ այդ մի ամբողջ խմբի, մի ընկերութեան գործ է։ Բայց որովհետեւ մեզանում եսա-

կանութիւնն այն աստիճան տիրած է, որ խմբեր չեն կազմվում, իսկ ընկերութիւններից մի օրինաւոր բան սպասելը յիմարութիւն կը լինէր, այդ տխուր երեւոյթները ի նկատի առնելով, աւելի նպատակայարմար կը լինէր միջոցներ տալ մասնաւոր, ձեռնհաս անձինքներին գործելու: Եւ փորձը մեր բոլոր ազգային հիմնարկութիւնների մէջ ցոյց է տալիս, որ մասնաւոր անձինք աւելի գործ են կատարում, քան թէ ամբողջ ընկերութիւններ:

Խամսայի մելիքութիւնների պատմութիւնը գրելով, ես կամեցայ ցոյց տալ, որ մենք ունինք մի պատմութիւն որ արդէն սկսել է մոռացուիլ, կորչել, անհետանալ: Ես իմ ծանօթներին անդադար ասում էի, թէ հարկաւոր է այդ պատմութիւնը ժամանակի հոսանքից ազատել, քանի որ դեռ աւանդութիւնները թարմ են, քանի որ մնացած գրաւոր նիւթերը բոլորովին չեն ոչնչացած զանազան անյայտ անկիւններում: Եւ գլխաւորապէս իմ եւ մի քանի բարեկամներիս յորդորմունքն էր պատճառ, որ այս տարի ծագեց դէպի Սիւնեաց աշխարհը ճանապարհորդներ ուղարկելու միտքը գիտնական հետազօտութիւնների նպատակով: Միտքը գեղեցիկ էր եւ նպատակն օգտաւէտ: Սիւնեաց աշխարհը, ուր կատարուել են այնքան նշանաւոր գործեր, ուր մինչեւ վերջին ժամանակները պահպանուել էին հայկական իշխանութիւնները, ուր ճանապարհորդն ամեն մի քայլում հանդիպում է հոյակապ հնութիւնների, պատմական վաղեմի արձանների, — արդարեւ Սիւնեաց աշխարհն առանձին ուսումնասիրութեան կարօտ է: Մի քանի բարեմիտ անձինք ձեռնարկեցին սորագրութեամբ մի գումար հաւաքելու այդ գիտնական արշաւանքի ծախքերը հոգալու համար: Հարցն սկսուեցաւ քննուել մինչեւ անգամ մեր մամուլի մէջ: Մամուլի մէջ էլ մեռաւ:

Դեռ գումարը չհաւաքած՝ որ յայտնի լինէր, թէ նրա քանակութեան համեմատ ինչ գործ կարելի էր կատարել, սկսեցին վիճել պարապմունքների տեսակի եւ մարդկանց ընտրութեան վրայ (ի հարկէ իւրաքանչիւրն աշխատելով, որ իւր մարդը ներս խրէ եւ երեւակայական գումարից նրան մի բաժին հանէ։) Դա միեւնոյն պարզամտութիւնն է, որ դեռ երեխան չծնուած, դեռ աղջիկ կամ տղայ լինելը չյայտնուած, վիճում են այն բանի վրայ, թէ ինչ անուն պէտք է տալ երեխային։

Վիճում էին, թէ ինչ անուն պէտք է տալ այդ գիտնական արշաւանքին, այսինքն՝ նա ինչո՞վ պէտք է զբաղուի։ Մէկն ասում էր, թէ պէտք է քարեղէն եւ բրօնզի դարեշրջանները քննել, պէտք է այրերի եւ գերեզմանների մէջ մտնել՝ տեսնելու համար, թէ Նոյ Նահապետից առաջ ինչ ազգեր են անցել Սիւնեաց աշխարհի վրայով։ (Կարծես մենք շատ ենք իմանում, թէ մի հարիւր կամ երկու հարիւր տարի առաջ ինչ անցքեր են կատարուել այնտեղ, իսկ հիմա հարկաւոր է միայն նախաջրհեղեղեան դարերը քննել)։ Միւսն ասում էր, թէ երկիրը՝ բնագիտական, հանքաբանական, աշխարհագրական եւ չգիտեմ այլեւս ինչ-ական կէտերից պէտք է ուսումնասիրել։ (Կարծես կառավարութիւնը, ահագին գումարներ գործ դնելով, չի արել այդ բաները եւ չէ շարունակում անել, թողել է, որ մենք մեր մի քանի կոպէկներով երկիրը հազար ու մէկ տեսակէտից ուսումնասիրենք)։ Մէկ ուրիշն առաջարկում էր՝ ծերունի, ալեզարդ Ալիշանին՝ որ իւր սենեակի դռնից դուրս գալ չէ կարողանում, անպատճառ բերել տալ, դնել պատգարակի վրայ, Ղարաբաղի լեռների վրայ ման ածել, որ քարերի արձանագրութիւնը կարդայ։ (Կարծես, հայր Ալիշանը իւր գեղե-

ցիկ գիրքը կազմելու համար ինքն անձամբ եկաւ, Շիրակի գաւառում ճանապարհորդեց եւ արձանագրութիւնները հաւաքեց։ Մխիթարեանները իրանց միլիօնների հարստութեամբ մեր օգնութեան կարօտութիւն չունին, նրանք, եթէ հարկաւոր համարեն, կարող են իրանց երիտասարդ աբեղաներից մէկին Հայաստանի ամեն կողմերն ուղարկել, եւ Ծերունի Ալիշանին երբէք չեն անհանգստացնի)։ Առաջարկվում էր եւ մի լուսանկար ուղարկել աւերակների պատկերը հանելու համար։ (Կարծեմ լուսանկարի մի մեծ պէտք էլ չկար, այդ առեւտրական մի գործ է. դրա համար հարկաւոր չէր ո՛չ օժանդակութիւն հաւաքել եւ ոչ գումար կազմել։ Եթէ Բարկանովը եւ Փիլիպովեչը իմանան, որ հայերը այն աստիճան գժուած են իրանց հայրենիքի աւերակների լուսանկարներով, որ 5 ռուբլի արժէք ունեցող պատկերը գնում են 20 ռուբլիով, անպատճառ իրանց աշակերտներից մէկին կ'ուղարկեն եւ Հայաստանի բոլոր աւերակների պատկերները հանել կը տան, գուցէ աւելի լաւ, քան թէ հանգուցեալ Արտիւրի աշակերտի լուսանկարները)։ Ինչեւիցէ, խօսքս էլ ի՛նչ երկարացնեմ, կարճ կ'ասեմ. գիտութեան, արհեստի, ճարտարութեան մէջ ո՛չ մի ճիւղ չէր մնում, որ չկամենային այդ ողորմելի ուսումնական արշաւանքի վզին փաթաթել, եւ այնքան փաթաթեցին որ խեղդուեցաւ...։

Մեզանում ամեն օգտաւէտ առաջարկութիւններ, ամեն գեղեցիկ մտքեր շատ անգամ հէնց նրա համար են մնում անկատար, որ կամ ոչինչ չենք շինում, եւ կամ եթէ կամենում ենք մի գործ կատարել, ցանկանում ենք անպատճառ ամեն ինչ միանգամից կատարել, մինչդեռ այդ “ամեն ինչի„ հարիւրերորդ մասն անգամ իրագործելու համար ո՛չ միջոցներ ունինք եւ ոչ պատրաստականու-

թիւն։ Մենք գործը փոքրից սկսելու սովոր չենք։ Գոնէ օտարներից օրինակ առնէինք։ Կան ընկերութիւններ, որ միմիայն իրանց նպատակ են դրել ժողովրդական առակները, առածները, հէքեաթները, նախապաշարմունքների, սնոտիապաշտութիւնների նկարագիրները հաւաքել։ Բայց այս տեսակ ընկերութիւններ երբէք չեն զբաղուիլ նոյն ժողովրդի բնակած երկիրը՝ բնագիտական, աշխարհագրական կամ գիտութեան այլ կէտերից ուսումնասիրելու. դրանք կարող են մի ուրիշ ընկերութեան պարապմունք լինել։

Ես դարձեալ կը կրկնեմ միեւնոյն միտքը, որ վերեւում յիշեցի. մեզանում ընկերութիւնները կազմվում են ոչ թէ գործ կատարելու համար, այլ գործը սպանելու համար։ Իսկ մասնաւոր մարդիկ իրանց եռանդով, անձնանուիրութեամբ, տոկունութեամբ աւելի են գործում, աւելի արդիւնք են ցոյց տալիս քան թէ մի ամբողջ ընկերութիւն։

Ինձ համար աւելի մեծ նշանակութիւն ունի մի երիտասարդ Նաւասարդեանցի աշխատութիւնը, որ աղքատ, ամեն միջոցներից զուրկ, բայց սիրտը լի եռանդով, դերվիշի նման ոտքով ման է գալիս հայոց գիւղերը, մտնում է ժողովրդի ամեն ծալքերի մէջ, հէքեաթներ է հաւաքում եւ մեր գաւառներին ընթերցանութեան տետրակներ է տալիս։ Բայց ի՞նչ է շինում Հայերէն գրքերի Հրատարակչական Ընկերութիւնը, — ոչ ոք չգիտէ։

Այդ բոլորն ինձ յակամայից ասել տուին մի քանի տխուր հանգամանքներ, որոնց վրայ երկար խօսելն աւելի հեռու կը տանէր։ Բայց ինչ որ ճշմարիտ է, այդ այն է, որ մեզանում մեծ պէտք է զգացվում մեր երկիրը, մեր ժողովուրդը, մեր անցեալն ու ներկան ուսումնասիրելու։

Աշխատութեան բաժանութեան սկզբունքի վրայ հիմնուելով, ես միւս բաժինները թողնում եմ աւելի ընդունակներին, աւելի կարող անձինքներին։ Իսկ ես ընտրել եմ մի մասը միայն, այն է՝ գրել Անդրկովկասում վերջին դարերում ապրող Հայոց իշխանների եւ մելիքների պատմութիւնը, եւ երջանիկ կը համարեմ ինձ, եթէ յաջողուի իմ այս ձեռնարկութեամբ մի փոքրիկ ծառայութիւն անել մեր գրականութեան։



## ՑԱՆԿ ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՆԵՐԻ

---

Մի քանի անուններ, որպէս են՝ Թիֆլիզ, Ղարաբաղ, Հայաստան, Վրաստան, Պարսկաստան, Ս. Էջմիածին, Ռուսաստան եւայլն, խիստ յաճախ կրկնուելու պատճառով, չգրեցինք ցանկի մէջ։



# ՂԱՐԱԲԱՂԻ ԱՍՏՂԱԳԷՏԸ

ԿԱՄ

## ՇՈՒՇԻ ԲԵՐԴԻ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԻՒՆԸ

1752 ԹՈՒԱԿԱՆԻՆ

ՊԱՏՄԱԿԱՆ ՎԷՊ

ՊԼԱՏՈՆ ԶՈՒԲՕՎԻ

ԹԱՐԳՄԱՆԵՑ ՐԱՖՖԻ

ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1906.

# ԹԱՐԳՄԱՆՉԻՑ

Թարգմանելով ռուսաց լեզուից Պլատոն Զուբովի “Ղարաբաղի Աստղագէտը„ (Карабагскій Астрологъ) անունով վէպը, մեր նպատակն է եղել ծանօթացնել հայ հասարակութիւնը այդ գեղեցիկ աշխատութեան հետ, որի նիւթը առնուած լինելով Ղարաբաղի մելիքների կեանքից, հարկաւ, մեզ, հայերիս համար, պէտք է շատ հետաքրքիր լինի։

“Ղարաբաղի Աստղագէտը„ տպուեցաւ Մոսկուայում 1834 թուականում, կը նշանակէ, մեզանից 48 տարի առաջ։ Բայց չնայելով, որ այդ գրքի լոյս տեսնելուց անցել է մի ամբողջ կէս դար, այսուամենայնիւ, մենք, հայերս, մինչեւ այսօր ոչ միայն նրա բովանդակութեան հետ ծանօթ չէինք, այլ նրա գոյութեան մասին անգամ տեղեկութիւն չունէինք։ Մենք չգիտէինք, որ ռուսաց գրականութեան մէջ կայ մի գիրք, որը ամբողջապէս նուիրուած է Ղարաբաղում կատարուած տխուր անցքերին . . .։

Այժմ ներկայացնելով “Ղարաբաղի Աստղագէտը„ մեր ընթերցող հասարակութեանը, մեր ցանկութիւնն է՝ ոչ միայն ծանօթացնել նրան մի գեղեցիկ վիպական ստեղծագործութեան հետ, որի մէջ արեւելեան կեանքը նկարուած է իր պարզ, նահապետական գոյներով, — այլ առաւել թանգագին է մեզ համար այդ գիրքը այն կողմից, որ իբրեւ մի պատմական արձանագրու-

թիւն, բաւական ճիշտ կերպով պատկերացնում է մեզ այն աղէտալի հանգամանքները, որոնք Ղարաբաղի հայկական իշխանութիւնների քայքայման եւ անկման պատճառը դարձան։ Եւ ինքը, յարգելի հեղինակը, այդ նպատակով է գրել իր վէպը, եւ դրա համար էլ կոչում է նրան «Անդրկովկասեան պատմական վէպ» (Историческій Закавказскій романъ)։

Երեսունական թուականների ռուս գրողներից միայն Զուբովի նման մէկը կարող էր տալ մեզ մի այսպիսի աշխատութիւն, որ պահանջում է բաւական ծանօթ լինել երկրի հետ, ուր կատարուել են վէպի մէջ նկարագրուած անցքերը, — պահանջում է խորին ուսումնասիրութիւն տեղային ժողովրդների կենցաղավարութեան, բնաւորութիւնների եւ նրանց միմեանց հետ ունեցած պատմական յարաբերութիւնների։ Զուբովը իր տեղում բաւական ուսումնասիրած էր այդ բոլորը։ Դեռ Պօղոս կայսրի թագաւորութեան վերջերում նա եկաւ Անդրկովկաս եւ մնաց այստեղ մինչեւ Նիկոլայի ժամանակները, եւ նրա աւելի քան երեսուն տարի կեցութիւնը Անդրկովկասում առիթ տուեց այդ հարցասէր գրողին ոչ միայն ծանօթանալ երկրի եւ տեղային ազգաբնակութիւնների հետ, այլ գրեց իր օրերում կատարուած ռուսաց արշաւանքների եւ նշանաւոր անցքերի պատմութիւնը, թէ պարսիկների, թէ Վրաստանի եւ թէ կովկասեան լեռնաբնակների վերաբերութեամբ։ Նա թողեց բազմաթիւ աշխատութիւններ, իբրեւ հարուստ նիւթ Անդրկովկասի պատմութեան համար[1]։ Իր աշխատութիւնների մէջ, որ-

[1] Պլատոն Զուբովի աշխատութիւնների ցուցակը կարելի է գտնել Մ. Միանսարեանցի բիբլիոգրաֆիայի հետեւեալ երեսներում 362, 678, 736, 745, 756. „Bibliographia Caucasica et Transcaucasica“.

տեղ Հայերի եւ Հայոց երկրի վրայ խօսք է լինում, նա միշտ համակրութեամբ է խօսում։

Կարդալով "Ղարաբաղի Աստղագէտը", ընթերցողը կը նկատէ այն ջերմ համակրութիւնը, որ արտայայտւում է հեղինակի իւրաքանչիւր տողից Հայոց ժողովրդի եւ մելիք-ների վերաբերութեամբ։ Իր վէպի մէջ Ջուբօվը շօշափում է այն զգալի վէրքերը, որոնք մեր ազգի պատմական կեան-քում շատ անգամ եղել են հայկական իշխանութիւնների անկման եւ մահացութեան պատճառները։ Այդ վէրքերն են՝ անմիաբանութիւնը եւ ներքին երկպառակութիւնը։ Ցոյց տալ դրանց վնասակար հետեւանքները, — կացուցանում է "Ղարաբաղի Աստղագէտի" գլխաւոր նպատակը։

Ահա ինչ է ասում հեղինակը Վարանդայի իշխան Մելիք-Շահնազարեանի բերանով. "Երկպառակութիւնը եւ ներքին կռիւները ոչնչացրին Հայոց թագաւորութիւնը, որ մի ժամանակ ծաղկած էր եւ կանգնած էր խիստ նշա-նաւոր աստիճանի վրայ հին թագաւորութիւնների շար-քում։ Մենք, միայն Ղարաբաղի լեռնական մելիքներս, պահպանեցինք մեր անկախութիւնը։ Մեր նախնեաց քա-ջագործութիւնները յարգուած էին մինչեւ անգամ Շահ-Աբասի մեծից...։ Բայց ինչով մեր նախնիքը կարողացան այնպէս յաջողութեամբ պատերազմել այդ մեծ թագաւ-որի դէմ։ — Միայն նրանով, որ Խամսայի բոլոր հինգ մելիքները միացած էին բարեկամութեան եւ արեան ա-մուր դաշնակցութեամբ։ Նրանց յաջորդները հետեւեցին նախորդների օրինակին, եւ մեր հայրենիքի անկախութիւնը պահպանուեցաւ"։ (Եր. 13)։

---

Опытъ справочнаго систематическаго каталога печатнымъ сочиненіямъ о Кавказѣ, Закавказьи и племенахъ, эти края населяющихъ. Составилъ М. Міансаровъ. Томъ I С. Петербургъ 1874—1876.

Նոյն դառն բողոքը յայտնում է հեղինակը եւ Թալիշի մելիքի բերանով, երբ Փանահ-խանը արդէն բաւականաչափ բռնացել էր Ղարաբաղի վրայ. ‟Այդ բոլորի պատճառը մեր նեղքին երկպառակութիւններն են։ Եթէ մենք միշտ միմեանց հետ կապուած լինէինք, ինչպէս մեր նախնիքը հին ժամանակներում կամ Շահ-Աբասի օրերում, այն ժամանակ այդ ջուանշիրցին (Փանահ-խանը) մտածել անգամ չէր համարձակուի լինել Ղարաբաղի իշխողը։ Բայց մենք բոլորս, Խամսայի հինգ փոքրիկ իշխանութիւններս, — որոնք հայոց հռչակաւոր թագաւորութեան վերջին մնացորդն են, — սկսեցինք անդադար միմեանց հետ վիճել. միմեանց հետ կռուել, եւ ամեն մի յիմար բանի վրայ, ամեն մի չնչին հարցի պատճառով սկսեցինք միմեանց հետ պատերազմել։ Եւ ի՞նչ եղաւ մեր նեղքին կռիւների արդիւնքը, — այն, որ շահեցինք մեզ վրայ մի օտար հրամայող...„ (Երես 206)։

Թէ որքան կործանաբեր հետեւանքներ է ունենում մի ազգի համար անմիաբանութիւնը եւ նեղքին երկպառակութիւնը, — այդ մահացու ախտը շօշափելի կերպով երեւան է հանում յարգելի հեղինակը, ոչ թէ հիմնուելով բանաստեղծական շինծու ապացոյցների վրայ, այլ ցոյց տալով մի պատմական փաստ, մի կատարուած աղէտալի իրողութիւն հայոց կեանքում։ Այդ հիմնական միտքը կազմում է Զուրօվի վէպի ամբողջ հիւսուածքը։

Իբրեւ նիւթ իր հետաքրքիր վիպասանութեան, հեղինակը վեր է առել 1750 թուականներում Ղարաբաղի մէջ կատարուած անցքերը։ Այդ ժամանակ Ղարաբաղի նահանգում կային հինգ հայկական իշխանութիւններ, որոնք զետեղուած էին հինգ առանձին գաւառներում եւ բոլորը միասին կոչւում էին Խամսայի մելիքու-

թիւններ։ Պատսպարուած իրանց անմատչելի լեռների մէջ, այդ հինգ գաւառների մելիքները (իշխանները) պահպանում էին կատարեալ անկախութիւն։ Քանի որ նրանք հաշտ էին, միաբան էին եւ վտանգի ժամանակ օգնում էին միմեանց, այնքան ժամանակ կազմում էին մի ամբողջ միացեալ զօրութիւն, որ սարսափի մէջ էր պահում թշնամիներին, եւ Ղարաբաղը պահպանվում էր որպէս մի բախտաւոր, հզօր իշխանութիւն։ Իսկ երբ սկսվում է ներքին երկպառակութիւնը մելիքների մէջ, երբ անմիաբանութիւնը ջլատում է նրանց ուժերը, այդ ժամանակ նրանց զօրութիւնը այն աստիճան թուլանում է, որ Փանահ-խանի նման մի հասարակ խաշնարած, մի թափառական ջուանշիրցի, որը մի ժամանակ Նադիր-Շահի մօտ մունետիկի պաշտօն էր կատարում, իսկ յետոյ մի յանցանքի համար փախաւ եւ Ջրաբերդի մելիքի մօտ ծառայութեան մէջ մտաւ, — մի այսպիսի բախտախնդիր, օգուտ քաղելով հայոց մելիքների անմիաբանութիւնից, այնքան բարձրացաւ, որ մտածեց նրանց վրայ իշխել։ Բայց Փանահ-խանը բանաստեղծական մարդ չէ, նա պատմական անձնաւորութիւն է։

Զուբօվը ներկայացնում է մեզ մեր պատմութեան տխուր ստուերագիրը։ Գուցէ նա մեր պատմութիւնը ամբողջապէս չէր ուսումնասիրած, գուցէ նա չգիտէր, թէ ինչեր են կատարուել Հայաստանի մէջ աւելի հին դարերում, — բայց այդ մի եւ նոյն է, բաւական է, որ նա ուսումնասիրել էր իրան խիստ մօտ ժամանակների անցքերը։

Պատմական անցքերը նոյնպէս կրկնվում են մի ազգի կեանքում, որպէս կրկնվում են նրանք մի անհատի կեանքում։ Զուբօվը վեր է առել միայն 1750 թուականների

Ղարաբաղում կատարուած անցքերը։ Բայց այդ մի փոքրիկ կտորի մէջ նա ցոյց է տալիս այն բոլոր դժբախտութիւնները, որ կրել է Հայաստանը աւելի հին դարերում։ Ով չգիտէ, որ ամեն անգամ, երբ հայրենիքը վտանգի մէջ է գտնուել, երբ թշնամին կամեցել է բռնանալ մեր երկրի վրայ, երբ օտարը մտածել է ոչնչացնել հայկական գահն ու կայխոնը, — այդ միջոցներում միշտ գտնուել է մի հայ, մի վատ դաւաճան, որը թշնամու ձեռքում գործիք է դարձել, որը առաջնորդել է նրան եւ իր հայրենիքը մատնել է օտարի ձեռքը։

Մելիք-Շահնազարեանի տիպի մէջ հեղինակը ցոյց է տալիս մեզ մի այսպիսի մարդ։

Մելիք-Շահնազարեանը Վասակի, Մեհրուժանի կամ Վեստ-Սարգսի նման տիպ չէ։ Նա բարի մարդ է, նա սիրում է իր հայրենիքը. բայց այնքան կամքի զօրութիւն եւ բնաւորութեան ուժ չունի, որ հայրենիքի ընդհանուր շահերը գերադասէ իր անձնական նեղ կրքերից։ Նա միանում է Փանահ-խանի հետ, օգնում է նրան, զօրացնում է, բարձրացնում է, միայն թէ կարողանայ նրա ձեռքով ոչնչացնել Ղարաբաղի մնացած հայ մելիքներին։

Քանի՛ քանի՛ անգամ այդ տխուր երեւոյթը կրկնուել է հայոց պատմական կեանքում, քանի անգամ հայոց իշխանները միացել են օտարների հետ եւ սկսել են իրանց հայրենիքի շահերին հակառակ գործել, սկսել են ոչնչացնել իրանց նման հայ իշխաններին։ Բայց պատմութիւնը միշտ պատժում է այսպիսիներին։ Նրանք ոչնչացնելով ուրիշներին, ոչնչանում են եւ իրանք։ Նրանք իրանց նմաններին օտարի լծի տակ դնելով, իրանք նոյնպէս օտարի ստրուկ են դառնում։ Նոյնը պատահեց եւ Մելիք-Շահնազարեանի հետ։ Նա սկզբում նպաստեց Փանահ-խանին

իշխել Ղարաբաղի անկախ մելիքների վրայ, վերջը ինքն եւս նոյն խանի հպատակը դարձաւ, կորցրեց իր անկախութիւնը։ (Երես 228։)

Իր գրքի վիպական մասնում հեղինակը նկարում է հայ ընտանիքի այն գլխաւոր գծերը, որ արտայայտում են նրա թէ առանին եւ թէ հասարակական բնաւորութիւնը։ Ընտանիքի պետը, մեծ հայրը, իշխում է ոչ միայն ընտանիքը կազմող անդամների անձնաւորութեան վրայ, այլ եւ նրանց սրտերի եւ հոգու վրայ։ Նա կամենում է իրան հպատակցնել եւ սէրը, որ իւրաքանչիւր անհատի անբռնաբարելի զգացմունքն է։ Դեռ Ջումշուդը երեխայ էր, երբ հօրեղբայրը (որը երեխայի վրայ հոգաբարձութեան պաշտօն ունէր) նշանադրում է նրա համար իբրեւ ապագայ հարսնացու Թալիշի մելիքի աղջկան, որը դեռ օրօրոցի մէջ կերակրվում էր մօր ստինքով։ Ջումշուդը չափահաս դառնալով, բողոք է յայտնում այդ ընտանեկան բռնութեան դէմ, եւ սիրելով գեղեցիկ Սալբհային, մերժում է Թալիշի մելիքի դստեր ձեռքը։ Այստեղից ծագում է բոլոր ինտրիգան, որ մելիքների երկպառակութեան պատճառն է դառնում։ Յոյները կռւում են տրօացիների հետ յափշտակուած Հեղինէի համար, իսկ Ղարաբաղի մելիքները կռւում են միմեանց հետ, այն անպատուութեան համար, որ նշանադրուած աղջիկը մերժուեցաւ։

Ջումշուդի եւ Սալբհայի սիրոյ մէջ հեղինակը կամենում է արտայայտել այն միտքը, թէ ամուսնական երջանկութիւնը կայանում է ոչ թէ նրա մէջ, որ մի իշխանազն երիտասարդ ընտրում է իր կենակից մի օրիորդին նոյնպէս իշխանական ծագումից, — այլ ամուսնութիւնը կարող է բախտաւոր լինել եւ այն ժամանակ, երբ

օրէորդը ընտրւում է ստոր ծագումից, միայն թէ ամուսնացու զոյգը կապուած լինէր ճշմարիտ սիրով։ Սալիհան հասարակ հովուի աղջիկ է, բայց հազիւ թէ կարելի է երեւակայել մի այնպիսի անկեղծ, բոցավառ սէր, որ անապատների այդ անմեղ դուստրը ունէր դէպի Ջումշուդը։

Ընտրելով իր հերոսի, Ջումշուդի, համար ամուսին Սալիհային, որը ծագումով թուրք էր եւ կրօնով մահմեդական, հեղինակը, կարծես, այդ օրինակով ցանկանում է խրատ տալ հայերին, թէ ոչ միայն պէտք չէ խորշել այլադաւաններից կամ այլազգիներից, — այլ ընդհակառակն, աննպատակ չէր լինի ամուսնանալ այլասեռ եւ այլակրօն հարեւան ցեղերի աղջիկների հետ, եւ նրանց քրիստոնէութիւն ընդունել տալով, հայացնել։ Սալիհան նոյնպէս քրիստոնէութիւն ընդունեց եւ հայացաւ։

Աւելի խորին խորհուրդ թագնուած է Ջումշուդի դաստիարակութեան մէջ։

Զուբօվի հերոսի, Ջումշուդի, հայրենիքը շրջապատուած է մի կիսավայրենի ցեղով, որպէս էին Ջուանշիրցիները։ Այդ ժողովուրդը հովուական պարզ կեանք է վարում, ապրում է իր անասուններով եւ աւազակութեամբ։ Նա քաջ է, պատերազմասէր է, գիտէ կռուելու արհեստը եւ վտանգ է սպառնում Ջումշուդի հայրենիքին։ Նրանց հետ մրցելու, նրանց յարձակումներից, ասպատակութիւններից անվտանգ պահպանուելու համար, պէտք է ունենալ նոյն լաւ յատկութիւնները, որ նրանց առաւելութիւններն են կազմում. այսինքն՝ լինել նրանց նման քաջ, ճարպիկ եւ վարժ կռուի գործի մէջ։ Հէնց այդ դիտաւորութեամբ Վարանդայի իշխան Մելիք-Շահնազարեանը իր եղբօրորդի Ջումշուդին չորս տարուայ ժամանակով ուղարկում է Ջուանշիրցիների մօտ, ուսումնասի-

րելու նրանց կենցաղավարութեան պայմանները, սովորելու նրանց ճարպկութիւնները ձիավարութեան եւ զէնաշարժութեան մէջ։

Ղարաբաղի հայոց մելիքները ներկայանում են Ջուբօվի վէպի մէջ իբրեւ քաջ, խստաբարոյ եւ չափազանց վեհանձն մարդիկ, բայց մի եւ նոյն ժամանակ, սաստիկ անքաղաքագէտ եւ դիւրախաբ մարդիկ։ Որոնց ընդհակառակն, նրանց թշնամին, Ջուանշիրցի Փանահ-խանը, ներկայանում է որպէս մեղմ, փափուկ, բայց չափազանց նենգաւոր մարդ։ Դա քաջութեան հետ միացրել է եւ խորամանկութիւնը, այդ պատճառով էլ յաղթող է հանդիսանում։ Քաջութիւնը առանց դիպլօմատիայի կորցնում է իր զօրութեան նշանաւոր մասը։

Փանահ-խանի գործիքը, աստղագէտ Հասանը, որ պտըտեցնում է իր փորձուած ձեռքում Ղարաբաղի ճակատագրական ա ս տ ղ ը, — այդ մեծ խաբեբան ներկայացնում է պարսկական մարմնացած խորամանկութեան կատարելատիպը։

Մի կողմում՝ քաջութիւն եւ պարզամտութիւն, միւս կողմում՝ քաջութիւն նենգաւորութեան հետ միացած, — այդ երկու հակառակ բնաւորութիւնների ընդհարումների մէջ “Ղարաբաղի Աստղագէտի„ յարգելի հեղինակը, կարծես, կամեցել է նկարել այն տխուր պատկերը, որ մեր ազգի պատմական կեանքում միշտ նրա դժբախտութեան պատճառն է եղել։

Ամէն մի հայ, առանձին վեր առած, խելացի է, գուցէ բաւական խորամանկ է իր մանր հաշիւների մէջ, բայց ազգովին վեր առած, չէ կարելի ասել, թէ խելացի է, այլ ընդ հակառակն, չափազանց դիւրախաբ եւ միամիտ ժողովուրդ է։

Հայկական բնաւորութեան այդ թոյլ կողմերը աւելի որոշ գծերով երեւում են “Ղարաբաղի Աստղագէտի„ մէջ, իսկ մանրամասները կարելի է տեսնել մեր “Խամսայի Մելիքութիւնները„ կոչուած գրքում, որ բովանդակում է իր մէջ Ղարաբաղի վերջին տարիների պատմութիւնը։

Այդ երկու աշխատութիւնները անմիջական կապ ունեն միմեանց հետ եւ լրացնում են մինը միւսի թերութիւնները, մէկը, որպէս վէպ, միւսը, որպէս պատմութիւն։ Եւ այդ մտքով էլ մենք թարգմանեցինք “Ղարաբաղի Աստղագէտը„, համարելով նրան իբրեւ մի օժանդակ կամ լրացուցիչ աղբիւր “Խամսայի Մելիքութիւնները„ կոչուած պատմութեան համար։

Մեր թարգմանութեան մէջ ոչինչ փոփոխութիւններ չենք արել, ամենայն հարազատութեամբ հետեւել ենք բնագրին։ Հեղինակի ծանօթութիւնների հետ աւելացրինք եւ մեր ծանօթութիւնները, գրքի մթութիւնները լուսաբանելու համար։ Մի քանի տեղերում ուղղեցինք այն սխալները, որ հեղինակը անում է թէ գրքի եւ թէ իր ծանօթութիւնների մէջ։

ՐԱՖՖԻ



# I.

## Աստղագէտ:[1]



Վարանդայի[2] տիրապետող Մելիք-Շահ-նազարեանը[3] մեծ քայլերով անցուդարձ էր անում իր հօյակապ ամրոցի սենեակներից մէկի մէջ, որ գտնվում էր Չանախչի[4] բերդում։ Երբեմն իր հայեացքը դարձնում էր նա դէպի լուսամուտը, որտեղից երեւում էին Ղարաբաղի անտառապատ լեռները, նայում էր սքանչելի հովտի վրայ, որով շրջապատուած էր Չանախչին, նայում էր

---

[1] Աստղագէտը պարսիկների մէջ համարվում է իսկապէս մի կարեւոր անձնաւորութիւն, որի ցուցմունքների համեմատ իբր թէ շատ բաներ են կատարվում։ Ամեն մի տգէտ, որը ծանօթ էր աստղագիտութեան առաջին կանոնների հետ-միայն, համարում է իրան աստղաբաշխ, ...հաւատներին խաբելու համար։ Ծանօթ. հեղ.։

Ղարաբաղի մելիքները, հետեւելով պարսից աւագների սովորութեան, ...իրանց դրանիկների թւում անհրաժեշտ էին համարում պահել, ...ց, եւ մի աստղագէտ։ Վարանդայի իշխան Մելիք-Շահ- ...եւ իր դաւան ծաղրածուն, որը յայտնի էր անունով

*այն հազարաւոր, գոյնզգոյն, գեղեցիկ ծաղիկների վրայ, այն շքեղ, դալար բուսականութեան վրայ, որ զարդարում էին այդ հիանալի հովիտը։ Դէպի աջ կողմը հոսում էր մի գետ, շրջապատած ձեռատունկ ծառերով, որոնց ճիւ-*

---

*Պըլի-Պօղի (գիժ Պօղոս)։ Պըլի-Պօղին Ղարաբաղի Բոլակիրեւն է. Նրա առածները, արածները մինչեւ այսօր չեն մոռացուել ժողովրդի մէջ։ Պարոն Գ. Շերմազանեանցի անեկդոտների հաւաքածուի մէջ կարելի է գտնել բաւական առակներ Պըլի-Պօղիի առածներից։ Ծանօթ. թարգ.։*

[2] *Վ ա ր ա ն դ ա կոչվում է մէկը Ղարաբաղի հինգ վիճակներից, որ կազմում են Խամսային մելիքութիւնները։ Վարանդան Մելիք-Շահնազա-րեանների տիրապետութեան երկիրն է։ Ծանօթ. թարգ.։*

[3] *Հեղինակը, խօսելով Վարանդայի իշխանի մասին, չէ յիշում նրա անունը, այլ գործ է ածում նրա տիտղոսը միայն այդ խօսքերով* „Владѣлецъ Варандинскій Мелихъ-Шахназаровъ“ (*Վարանդայի տիրապետող Մելիք-Շահնազարով*), *բայց թէ ո՞ր Մելիք-Շահնազարովը — այդ մասին լռում է։ Պատմութիւնից յայտնի է, որ Փանահ-խանի ժամանակակիցը, նրա հետ բարեկամական կապեր հաստատող եւ Խամսայի միւս մելիքների հակառակ գործող Վարանդայի տիրապետողը Մելիք-Շահնազար Բ-ն էր։ Դա հիմնեց Փանահ-խանի համար Շուշի բերդը, եւ բարձրացնելով նրան մինչեւ ամբողջ Ղարաբաղի իշխողի աստիճանը, հայոց մելիքութիւնների քայքայման պատճառը դարձաւ։ (Տես մեր “Խամսայի Մելիքութիւնները„ (Նիւթեր հայոց նոր պատմութեան համար) գրքի XIրդ եւ հետեւեալ գլուխները։) Ծան. թարգ.։*

[4] *Ջ ա ն ա խ չ ի բերդ, հայոց գիւղ է, ուր առաջ Վարանդայի տի-րապետողի աթոռանիստն էր, գտնվում է 1½ վերստ հեռաւորութեան վրայ Շուշի բերդից, որը Ղարաբաղի նահանգի գլխաւոր տեղն է։ Ծան. հեղ.։*

*Ջ ա ն ա խ չ ի կոչում են այդ բերդի* [illegible] *որ նշանակում է անօթներ շինող. այդ անունը առնուած* [illegible] *Բերդը անտառի մէջ գտնուելով, բնակիչների* [illegible] *իրանց անտառների փայտերից* [illegible] *իսկ հայերը կոչում են այդ բերդը* [illegible] *նուել է ժողովրդի մէջ* [illegible] *կան թագաւորը,* [illegible] *գիրքն առած, եկաւ,* [illegible] *եւ այն օրից այդ բերդը* [illegible] *նել այնտեղ Մելիք-Շահնազար*[illegible] *աշտարակներն ու ահագին* [illegible] *մնացած։ Ծան. թարգ.։*

ռերը ցոլանում էին նրա ալընթաց ալիքների մէջ։ Իսկ գետի միւս կողմում դարձեալ ձգվում էին լեռնային շար-քերը, եւ հետզհետէ հեռանալով, միախառնվում էին հորիզոնի հետ։ Արեգակը իր փայլուն ճառագայթներով լուսաւորում էր այդ բազմանկար պատկերները։ Բայց նրանք չունէին ոչինչ հրապուրանք Մելիք-Շահնազարեանի համար, որի մռայլուած դէմքը արտայայտում էր հոգեկան սաստիկ անհանգստութիւն։

Երբեմն նա յարդարում էր իր մօրուքն ու բեխերը, եւ անհամբերութեամբ, որ տհաճութեան էր հասնում, նայում էր դէպի մի կարմրաքիթ, կարճահասակ եւ պլանդակ թուրք, որը ծալապատիկ նստած էր գորգի վրայ, եւ ինչ որ գծագրում էր քարէ յատակի վրայ։ Այդ վերջինը երբեմն մատը տանում էր դէպի ճակատը, կարծես թէ, մի բանի վրայ մտածում էր։ Յետոյ նա վեր էր առնում իր արեւելեան ձեւով թանաքամանը, որ կոչվում էր գըվիթ-ղալամ,[1] թաթախում էր նրա մէջ եղէգնեայ գրիչը եւ նրանով ինչ որ գրում էր կոկած թղթի վրայ, որ դրած էր նրա մօտ։ Յետոյ կրկին խորասուզվում էր մտածութիւնների մէջ, կամ լուսամուտից նայում էր արեգակին։ Երեւում էր, որ նա չէր նկատում մելիքի ոչ անհամբերութիւնը եւ ոչ տհաճութիւնը, եւ մինչեւ անգամ ամենեւին ուշադրութիւն չէր դարձնում այն բոլորի վրայ, ինչ որ շրջապատում էր նրան։

Մելիքը, վերջապէս յոգնելով սենեակի մէջ ման-գալուց, կանգնեց մոայըղ թուրքի մօտ, նայում էր նրա աշխատութիւնների վրայ։ Նրա դժգոհութիւնը այժմ

[1] Դըվիթ-ղալամ, երկայնաձեւ արկղիկ, որը պատած է ճնա-նաքան նկարներով, որի մէջ պահվում են կաղամար եւ եղէգ-կրում են գօտիից քարշ տուած։ Ծան. հեղ.։

*աւելի եւ աւելի սաստկացած էր։ Վերջը իր համբերութիւնը բոլորովին կորցնելով, նա խլեց Թուրքի գլխից գառան մորթուց կարած երկայն գտակը, եւ ձգելով յատակի վրայ, բարկութեամբ գոչեց։*

*— Ո՛վ դու Հանաֆի եւ Մալեքի[1] զաւակ, Աբուբաքրի եւ Օմարի[2] ժառանգ, մինչեւ ե՞րբ պիտի սպասել տաս քո թուահաշւիններին։ Երեւի, դու այսօր քեզ նպատակ ես դրել բոլորովին գժուացնել ինձ։ Ասա՛, ե՞րբ պիտի վերջանան քո յիմարութիւնները։*

*Այդ յանկարծակի յարձակման միջոցին, սափրած գլխով Թուրքը, սարսափելով վեր թռաւ ոտքի վրայ, եւ աչքերը լայն բացած, նայում էր մելքի վրայ, չը խօսելով ոչ մի բառ։ Այդ դրութեան մէջ ունէր նա զարմանալի նմանութիւն կապկի հետ, որը նայում է իր*

---

[1] Հանիֆա էր առաջինը տասն եւ երկու սուրբ իմամներից, որ ապրում էր հիջրէթի առաջին դարում, նոյնպէս եւ Մալիքը։

Այդ երկուսին եւս ատում են Ալիի հետեւողները։ Ծանօթ. հեղ.։

Հանիֆա 12 իմամներից չէ. Նա կոչւում է եւ Աբու-Հանիֆա, իսկական անունը է Նէյման, Սաբիթի որդին, ծնիլ քուֆէցի։ Դա էր սուննիների չորս նշանաւոր աղանդներից մէկի հեղինակը, որի հետեւողները նրա անունով կոչւում են հանաֆի։ Ապրում էր հիջրէթի առաջին դարում։ Ծան. թարգ.։

Մալիք էր Անասի որդին, [illegible] սուննիների մի այլ աղանդի, որի հետեւողները [illegible] կոչւում են մալիքի։ Ապրում էր հիջրէթի [illegible] 12 իմամներից չէ եղել։ Ծանօթ. թարգ.։

[2] Աբու-բաքր [illegible] լամի խալիֆաներ (Մու[illegible] Ալիի հետեւողները (չիա[illegible] յափշտակեցին Մուհամ[illegible] Ալիին։ Աբու-բաքր[illegible] տոյ առաջին խալիֆան եղա[illegible] էր։ Իսկ Օմարը էր խալիֆ[illegible] խալիֆան դարձաւ։ Դրա Հա[illegible] կինն էր։ Ծան. թարգ.։

տիրոջ վրայ, սպասելով նրա հրամաններին, թէ ե՞րբ պէտք է սկսէ իր խաղերը, հանդիսականներին զուարճացնելու համար։ Նրա կերպարանքը այն աստիճան ծաղրաշարժ էր, որ մելիքի բոլոր բարկութիւնը անցաւ, եւ նա սկսեց սաստիկ ծիծաղել։

— Երդւում եմ իմ մօրուքով,[1] գոչեց նա, ձեռքերով փորը բռնելով, — որ մի ամենակորստաբեր աստղ, երեւի, հալածում էր քո մօրը, սիրելի իմ աստղագէտ, սկսեալ այն օրից, երբ դու գոյութիւն ստացար քո մօր արգանդումը, մինչեւ քո ծնունդը։ Որովհետեւ, դժուար է երեւակայել, թէ ի՞նչպէս ձեւակերպուեցան այդ բոլոր այլանդակ մասնիկները, որ բաղկացնում են քո մարմինը։

— Բայց, մելիք, ես շատ եւ շատ շնորհակալ եմ ձեզանից։

— Ի՞նձանից, ի՞նչու համար։

— Եթէ դուք չլինէիք, ես բոլորովին կորած էի։ Թող փառք լինի Ալիին եւ սուրբ Յուսէինին։[2] Նա զրանից

[1] Մօրուքով երդուելը հայոց սովորութիւն չէ, այլ միայն մահմեդականների սովորութիւն է, որոնց մօտ մօրուք կրելը առանձին հոգեւոր վարձատրութիւն ունի, բացի դրանից, համարվում է պատուի եւ հաստատութեան նշան։ Պարսկերէն ռիշ-սֆիդ եւ թուրքերէն աղսախալլու բառերը (որոնց իսկական նշանակութիւնն է սպիտակ-մօրուքաւոր) գործ են ածվում որպէս տիտղոսներ, որ տրվում են ժողովրդի աւագներին միայն։ Պարսից կառավարութեան ամենաանարգական պատիժներից մէկը այն է, երբ կտրել է տալիս յանցաւորի ոչ ձեռքը, քիթը, ականջը, այլ նրա մօրուքը։ Այդ նշանակում է զրկել նրան պատուից եւ ամէն իրաւունքներից։ Ծան. Թարգ.։

[2] Ալին էր Աբու-Թալէբի որդին եւ Մուհամմէդի սիրելին։ Մարգարէի Ֆաթիմա անունով դուստրը Ալիի կինն էր։ (Ծան. Թարգ.։) Իսկ Յուսէինը էր Մուհամմէդի փեսայ Ալիի որդին, որը մեռաւ Նա-
ան. Հեղ.։
նահատակուեցաւ Քարբալայում, Բաղդադ քաղաքի
Շիմրը կատարեց դահճի պաշտօնը։ Այդ դէպքը

յետոյ կը մնամ ողջ եւ անվնաս։ Վտանգը անցաւ. ես այդ չէի սպասում։ Արտասանելով այդ խօսքերը, նա խիստ սառնասրտութեամբ վեր առեց իր գտակը եւ դրեց գլխին։

— Լսիր, աստղագէտ, բոլոր ցնդած դէրվիշներից[1] ամենախելագարն անգամ պէտք է հազարապատիկ խելացի համարել քեզանից։ Դու կամ ղառանցութեան մէջ ես գտնվում, կամ բոլորովին գժուած ես։ Ես քեզ խնդրեցի նախագուշակութիւններ անել քո աստղներով, քո երկնային շրջաններով, եւ Աստուած գիտէ, ինչ սատանայական առեղծուածներով, որոնք ինձ բնաւ հասկանալի չեն։ Խնդրեցի քեզ՝ յայտնել ինձ, արդեօք հիմայ բարեյարմա՞ր ժամանակ է խօսելու իմ խելագար եղբօրորդու հետ, որը իր յիմարութիւններով շատ նման է քեզ։ Դու քո դանդաղկոտութեամբ զրգռեցիր իմ տհաճութիւնը։ Ես բարկացայ եւ քո գդակը մի կողմ ձգեցի, եւ աշխատեցի հայհոյել քեզ այն ընտիր անուններով, որոնց դուք, Ալիի հետեւողներդ,[2] շատ չէք սիրում։ Իսկ դու

---

առիթ տուեց սիւննիների եւ շիաների մէջ մշտական ատելութեան, որը շարունակվում է մինչեւ այսօր։ Ծան. Թարգ.։

[1] Դէրվիշ, այսպէս կոչվում են Թուրքաց յայտնի արեղաները, որ ապրում են մուրացկանութեամբ, որոնք զանազան ծամածռութիւններ են գործում ողորմութիւն ստանալու համար։ Ծան. հեղ.։

Դէրվիշներ ունեն բոլոր մահմեդական ցեղերը, դրանք մի տեսակ ճգնաւորներ են, որոնք իրանց անձը ենթարկում են ամենախիստ փորձութիւնների. տարբերվում են իրանց սովորութիւններով եւ վարդապետութիւններով։ Սեպհականութիւն չունեն, թափառական կեանք են վարում. ոմանք կատարում են հրապարակախօս [illegible] ոմանք երգում են փողոցներում։ [illegible] ցից են ծագում զանազան [illegible] թիւններ արեւելքում. ապրում են [illegible]

[2] Ալիի հետեւողներ [illegible] թիւն ունեն [illegible] քրին եւ միւս [illegible] Ծան. Թարգ.։

այդ բոլորի փոխարէն դեռ ես շնորհակալութիւն ես յայտնում ինձ։

— Ի հարկէ շնորհակալութիւն կը յայտնեմ, եւ միշտ շնորհակալ կը լինեմ, պատասխանեց աստղագէտը։ — Եթէ դուք, մելիք, փոքր ի շատէ գիտութիւն ունենայիք երկնային լուսատուների մասին, շատ հաւանական է, որ ինքներդ կը սարսափէիք այն կորստաբեր համաստեղութիւնից, որը վտանգ էր սպառնում ինձ, հէնց մի եւ նոյն րոպէում, երբ դուք խլեցիք իմ գլխարկը։ Ես բոլորովին մեռածի նման էի երկիւղից։ Բայց ինչով վերջացաւ նա, — շատ հասարակ բանով։ Ի՞նչպէս շնորհակալ չլինել ձեզանից։ Եթէ դուք իմ գտակը չխլէիք, ես, կարելի է, հէնց մի եւ նոյն րոպէում սարսափելի կերպով հոգիս կը տայի։

— Ծիծաղելի է, շատ ծիծաղելի, ասաց մելիքը, — որ ես կարող լինէի փոխել ճակատագրի վճիռը։ Նա պատրաստել էր քեզ համար մահ, իսկ ես քո գտակը վեր առնելով, դու ազատուեցար մահից։

— Ի հարկէ, պատասխանեց աստղագէտը, հանգիստ կերպով տեղաւորուելով գորգի վրայ, եւ ուրախանալով, որ առիթ գտաւ իր իմաստութիւնների վրայ խօսելու։ — Լսեցէք, մելիք, մենք, գիտնականներս, հետեւողներ ենք մի մեծ աստղագէտի (որին Թող Ալլահը հանգիստ պարգեւէ) եւ կարող ենք ամեն ժամանակ երկնային համաստեղութիւնների շնորհիւ նախագուշակել մարդիկների դժբախտութիւնները։ Մենք իմանում ենք այդ՝ մոլորակների եւ մեծ աստղերի միաւորուելուց կամ նրանց միմեանց հակառակ կանգնելուց։ Դրանցից ամեն մէկը ունի առանձին ազդեցութիւն մարդու վիճակի վրայ եւ գտնւում

ն յարաբերութիւնների մէջ նրա սեպհական

աստղի հետ։[1] Բայց ինչումն է իսկապէս կայանում աստղների սպառնացող վտանգը, — այդ խիստ հազւ-անգամ կարելի է ճշտութեամբ հասկանալ։ Թէեւ ոմանք խաբեբաներից (Թող Ալլահը ուղարկէ նրանց վրայ իր նզովքը) կոչելով իրանց աստղագէտներ, որոշ կերպով բացատրութիւններ են տալիս այդ մասին։ Բայց դա սուտ-թիւն է։ Դժբախտութիւնը, թէ մեծ լինէր նա եւ թէ փոքր, դարձեալ դժբախտութիւն է։ Ես տես-նում էի, որ ինձ սպառնում էր մի դժբախտու-թիւն, եւ այդ պատճառով խորասուզուած էի մի համաստեղութեան դիտողութեան մէջ։ Այդ կատարվում էր իսկ եւ իսկ նոյն րոպէում, երբ ձեր բարկութիւնը բորբոքուեցաւ ինձ վրայ։ Եւ հէնց ձեր բարկութիւնն էր չար աստղի ինձ սպառնացող դժբախտութիւնը։ Յետոյ...

Յետո՞յ, տհաճութեամբ կրկնեց մելիքը, — յետոյ վերջ կը դրու՞ք քո այդ անտանելի շատախօսութիւն-ներին։ Ի՞նչ են գուշակում այդ քո քանոններն ու գծա-գրութիւնները։ Կարո՞ղ եմ ես այժմ խօսակցել իմ եղբօրորդու հետ։ Այո՛, կա՛մ այո՛, կա՛մ ոչ։

— Շնորհ արէք, մելիք, մի տաքացէք։ Պէտք է քննել այդ հանգամանքը մանրամասն կերպով։ Շտապելով կարելի է բոլորը փչացնել։ Ես կը սկսեմ...

— Էլ ինչ պիտի սկսես, ապա ինչ էիր շինում, երբ գծեր էիր խազում յատակի վրայ։

— Ես չորրորդ անգամ պատրաստվում էի դիտողու-թիւններ անել, որպէս զի վերստուգէի իմ նկատողու-

---

[1] Մահմեդականները [illegible] իր առանձին աստղը երկնքում [illegible] ազդեցութեան [illegible] թիւնը եւ թէ դժբախ[illegible]

թիւնները։ Այդ միջոցին յանկարծ յայտնուեցաւ հէնց այն չար աստղը, որը իսկապէս իմ անձին էր վտանգ սպառնում։ Ես այնքան վախեցայ, որ թողեցի իմ գուշակութիւնները։

— Շնորհակալ եմ։ Դէ՛ հիմայ նորից սկսիր քո գուշակութիւնները, միայն աշխատիր շուտով վերջացնել։ Եթէ քո աչքերին կրկին անգամ կը յայտնուի այն չար աստղը, իսկոյն ասա՛ ինձ, ես կը խլեմ քո գաւակը, եւ ամեն ինչ կը փարատուի։

Աստղագէտը մինչեւ անգամ չժպտաց մելիքի այդ կատակի վրայ, այլ հանգիստ կերպով նստեց գորգի վրայ, կրկին շարունակելով իր դիտողութիւնները։

Մելիքը կրկին սկսեց անցուդարձ անել սենեակի մէջ, կծելով իր շրթունքները, եւ ինքն իրան մրմնջալով. "Մենք եւս խելագարներ ենք, որ հաւատում ենք այդ աստղագէտներին։ Քրիստոնեայ լինելով հանդերձ, հաւատում ենք նախասահմանութեան։ Ահա՛ ինչ է նշանակում պարսիկների ազդեցութիւնը, որ խիստ զգալի է դարձել Ղարաբաղի վրայ։ Այժմ մենք մեծ չափով մահմեդական նախապաշարմունքներ ենք ընդունել եւ համարեա կէս-մահմեդականներ ենք դարձել։ Դրանով պարսիկները եւ թուրքերը հայոց ամբողջ թագաւորութիւնը կարողացան բաժանել իրանց մէջ։ Մենք, հայոց մելիքներս, միայն մնացել ենք անկախ մեր լեռների մէջ։ Այդ խիստ ցաւալի բան է։ Միշտ կորստաբեր է լինում այն թուլութիւնը, երբ մի ժողովուրդ ընդունում է սովորութիւններ օտարներից։ Ես գիտեմ, որ յիմարութիւններ են այդ բոլոր նախագուշակութիւնները, այդ բոլոր աստղաբաշխական համարումները, այսու ամենայնիւ, չեմ վստահանում առանց նրանց վճռել մի որ եւ իցէ գործ, թէեւ շատ հասարակ լինէր նա։ Ինչպէս չեմ վստահանում խօսակցել ոլորդու հետ, որից կախուած է պատերազմ կամ

*— Կանչեցէք իմ եղբօրորդուն, հրամայեց մելիքը, — յայտնեցէք, որ այս րոպէիս ես պահանջում եմ նրան իմ մօտ։*

*Նօքարները վազեցին կատարելու հրամանը։*

*Մելիքը, դառնալով դէպի աստղագէտը, աւելացրեց։*

*— Հա՛, ճշմարիտ, դու խենթ ես եղել, աստղագէտ, եւ քո աստղներն էլ նոյնպէս...*

*Թուրքը չը պատասխանեց եւ նստեց դարձեալ գուշակութիւններ անելու համար։*

## II.

*Ջումշուդ:*

*Շուտով բացուեցաւ դուռը, յայտնուեցաւ մի երիտասարդ հրապուրիչ դէմքով, որի հայեացքը արտայայտում էր հոգեկան սաստիկ տխրութիւն։ Նա պատկառանքով ողջունեց իր հօրեղբօրը, որը լռութեամբ տեղ ցոյց տուեց նրան գորգի վրայ, իսկ ինքը նստեց նրանից փոքր ինչ հեռու։*

*— Ասա՛ ինձ, Ջումշուդ, վերջապէս խելքի եկա՞ր դու, այժմ զգում ես քո վարմունքի բոլոր անտեղիութիւնը։*

*— Ես շատ յանցաւոր եմ ձեր առջեւ, հօրեղբայր, եւ ինձ չեմ արդարացնում։ Բայց այդ չէր կարող ուրիշ կերպ լինել...։*

*— Ինչպէս չէր կարող ուրիշ կերպ լինել, յանդուգն պատանի, բարկութեամբ գոչեց մելիքը։ — Ստի-*

[illegible]կայի իշխանը Մելիք-Շահնազար Բ-ն էր — դրանում տարակոյս չկայ։ [illegible]ակը, ընտրելով այդ իսկ Մելիք-Շահնազարեանին իր վէպի գլխաւոր [illegible]անձինքներից մէկը, Ջումշուդին կոչում է նրա եղբօր որդի. գրա- [illegible]ւէմ մեղանչում է։ (Տես մեր "Խամսայի Մելիքու- XXVII եւ հետեւեալ գլուխները։) Ծան. Թարգ.։

պել ինձ երդմնազանց լինել, յաւիտեան կռուացնել ինձ Խամսայի բոլոր մելիքների[1] հետ — այդ բոլորը քո աչքում ոչի՞նչ բան է երեւում։

— Դուք խօսք եւ երդում տուեցիք առանց իմ համաձայնութեան, երբ ես դեռ երեխայ էի, պատասխանեց Ջումշուդը սառնութեամբ։ — Իսկ այժմ ես երիտասարդ եմ, բան եմ հասկանում, եւ չեմ ցանկանում համաձայնուել։ Եւ դրա մէջ ես մի պատճառ չեմ տեսնում, որ առիթ տար ձեզ բարկանալու, իսկ Թալիշի մելիքին ձեզ ստիպելու, որ կատարէք ձեր խոստմունքը։

— Այդ լաւ է։ Բայց դու դեռ շատ ջահիլ ես, որ կարողանաս մեզ բան սովորացնել։ Մի խօսքով, ես այդ կամենում եմ, ես պահանջում եմ, եւ որպէս քո տէրը, հրամայում եմ քեզ, եթէ ոչ, երդվում եմ իմ նախնեաց ստուերներով, որ այդ խենջալը իմ ձեռքով կը ցցեմ քո կուրծքի մէջ, որտայ մելիքը։

---

[1] Խամսայի Մելիքներ (Хамсинскіе Мелики)։ Դեռ հայոց թագաւորութեան գոյութիւն ունեցած ժամանակներում Ղարաբաղը կազմում էր Արցախի նահանգը։ Իսկ երբ Հայաստանը ընկաւ, հայոց հինգ տիրապետող իշխաններ, ամրանալով Ղարաբաղի լեռների մէջ, պահպանեցին իրանց անկախութիւնը, այդ պատճառով կոչուեցան խամսաեաններ (хамсинскіе)։ Իսկ «մելիք» տիտղոսը, որ արաբերէն նշանակում է թագաւոր, տրուած է նրանց Շահ-Աբաս ձեռքից։ Ծան. հեղ.։

Հեղինակի «խամսայի մելիքներ» բառերի բացատրութիւնը պէտք է փոքր ինչ պարզել։ Խամսա արաբերէն նշանակում է հինգ։ Ղարաբաղը որպէս այժմ, նոյնպէս եւ առաջ բաժանուած էր հինգ փոքրիկ գաւառներից, որոնք կոչվում էին Գիւլիստան կամ [illegible] Ջրաբերդ, Խաչէն, Վարանդա, Տիզակ կամ Դիզակ [illegible] մի-մի տիրապետող հայ իշխան, որ կրում [illegible] ների իշխանութիւնը ժառանգական էր։ [illegible]
Եւ որովհետեւ այդ հինգ գաւառների հին [illegible]
իրանց մէջ մի տեսակ [illegible] միութիւ[illegible]
էին հնգեկան կամ [illegible] (хамсинскіе) [illegible]
սայի Մելիքութիւնները. [illegible]

Ջումշուդը փոխանակ պատասխանի, բաց արեց իր կուրծքը եւ սկսեց սառնասրտութեամբ նայել հօրեղբօր վրայ։

Երիտասարդի այդ հերոսական վարմունքը զինաթափ արեց մելիքին։ Նա տեսաւ, որ Ջումշուդի հաստատամտութիւնը ոչնչացնում է իր բոլոր նպատակները։ Եւ յուսալով, որ մեղմութեամբ կարող է համոզել նրան, մօտեցաւ, բռնեց եղբօրորդու ձեռքը, ասելով.

— Ես մեծ բաւականութեամբ եմ տեսնում, սիրելի Ջումշուդ, որ հերոսների արիւնը վազում է քո երակների մէջ։ Տեսնում եմ քո հաստատամտութիւնը եւ նրա վրայ ուրախութեամբ զարմանում եմ։ Բայց լսիր. իւրաքանչիւր մարդ պէտք է յարմարուի հանգամանքների հետ։ Երկպառակութիւնը եւ ներքին կռիւները ոչնչացրին հայոց թագաւորութիւնը, որ մի ժամանակ ծաղկած էր եւ կանգնած էր խիստ նշանաւոր աստիճանի վրայ հին թագաւորութիւնների շարքում։ Մենք, միայն Ղարաբաղի լեռնական մելիքներս, պահպանեցինք մեր անկախութիւնը։ Մեր նախնեաց քաջագործութիւնները յարգուած էին մինչեւ անգամ Շահ-Աբասի[1] մեծից։ Նա Վարանդայի, Գիւլիստանի[2], Թալիշի եւ Խամսայի միացած մելիքներին աւելի գերադասեց, քան այդ ժամանակ Հայաստանը կառավարող հայոց միւս իշխանական տոհմերի ներկայացուցիչները։ Նա թոյլ տուեց մեզ մնալ անմատչելի, եւ շնորհեց «մելիք»[3] նշանաւոր կոչումը, որը մենք

---

[1] Շահ-Աբաս մեծը պարսից թագաւոր էր, ապրում էր ԺԶ-րդ դարու վերջում եւ ԺԷ-րդ դարու սկզբում։ Ծան. հեղ.։

[2] Հեղինակը այստեղ մի աշխարհագրական սխալ է անում, կարծելով, թէ Գիւլիստանը եւ Թալիշը առանձին առանձին գաւառներ են։ (Տես էջ 384, ծան. 1)։ Ծան. Թարգ.։

[3] [illegible]ք կամ մալիք թէ պարսկերէն եւ թէ արաբերէն նշանա-
[illegible]տիրապետող, այլ եւ արքայ։ Մելիք տիտղոսը կրում էին

կարողանայիր սովորել այդ անվեհեր, լեռնական ձիավարներից նրանց պատերազմական ճարպկութիւնները, նրանց զէնք եւ նիզակ գործածելու ձեւերը: Դու արդարացրիր իմ յոյսերը: Բայց այնտեղից վերադառնալուց յետոյ, ես քեզ տեսնում էի միշտ տխուր, միշտ խորասուզուած մռայլ մտատանջութիւնների մէջ: Թալիշի մելիքը, լսելով քո վերադարձը, դեսպանութիւն ուղարկեց մեզ մօտ, հրաւիրելով մեզ իր բերդը՝ Զէյվայ[1], քո եւ նրա դստեր պսակի խորհուրդը կատարելու համար: Այդ պատճառով ես առաջարկեցի քեզ մեր գնալու մասին, եւ մի եւ նոյն ժամանակ բացատրեցի իմ նպատակները: Իսկ դու, փոխանակ յայտնելու ինձ քո հնազանդութիւնը, որպէս հարկն էր, բոլորովին մերժում ես կատարելու այն խօսքը, որ ես տուել եմ դրանից տասն եւ չորս տարի առաջ: Դու կամենում ես, որ ես դաւաճանեմ իմ տուած խօսքին եւ երդմանը: Խօսիր, ի՞նչը կարող է արդարացնել քո այդ վարմունքը:

— Դուք իրաւունք ունէք, հօրեղբայր, պատասխանեց Ջումշուդը — ես չեմ կարող արդարացնել ինձ: Բայց ի նկատի ունեցէք, որ մարդու կեանքում երբեմն այնպիսի դէպքեր են պատահում, որոնց ժամանակ անկարելի է դառնում հետեւել խոհականութեան մինչեւ անգամ ամենախիստ ձայնին...

— Ես չեմ կամենում մտնել քո պատճառաբանութիւնների մէջ, քանի որ դու ինքդ չես կամենում յայտնել ինձ այդ պատճառաբանութիւնների գաղտնիքը: — Բայց ի՞նչ պատասխանեմ ես մելիքի դեսպանին:

---

[1] Զէյվայ մի աւան է նոյն անունով գետի մօտ, Գանձակի խա-ահմանի վրայ: Այժմ Թալիշի մահալի գլխաւոր տեղն է, իսկ ի մելիքի բնակութեան տեղն էր: Ծան. հեղ.:

*— Ինչ որ դուք կամենում էք:*

*— Այդ հեշտ է ասել, բայց դժուար է կատարել, Ջումշուդ, դու չե՞ս խղճում, որ քո վարմունքով պիտի աղմկես Ղարաբաղի խաղաղութիւնը: Ես ճանաչում եմ Թալիշի մելիքին. նա պատուապահութեան պայմանների մէջ չափազանց խիստ է: Մեր բոլոր պատճառաբանութիւնները նա կ'ընդունէ որպէս վիրաւորանք, եւ պատերազմը այնուհետեւ կը բորբոքուի նրա եւ մեր մէջ: Մնացած մելիքները ստիպուած կը լինեն բռնել՝ ոմանք մեր, ոմանք նրա կողմը, եւ Ղարաբաղը կը դառնայ ներքին արիւնհեղութեան ամօթալի մի հանդիսարան:*

*— Եթէ Թալիշի մելիքը խելացի մարդ է, նա պէտք է բաւականանայ, երբ իրանից ներողութիւն կը խնդրեն: Իսկ եթէ ոչ, թող շնորհ բերէ մեզ մօտ. մենք նրա ստրուկները չենք. մենք ազատ մարդիկ ենք. եւ զէնքը կը վճռէ գործը...*

*— Ի հարկէ, այդպէս է: Բայց մենք հազիւ թէ կարող ենք յոյս դնել յաղթութեան վրայ, երբ ինքներս ենք պատճառ տալիս պատերազմի: Ջումշուդ, լաւ մտածիր, թող երիտասարդական աշխոյժը չհրապուրէ քեզ. գործը վերաբերում է ամբողջ Ղարաբաղի խաղաղութեանը:*

*— Ես հասկանում եմ ձեր բոլոր առարկութիւնների կարեւորութիւնը, այսու ամենայնիւ, չեմ կարող համաձայնել Թալիշի մելիքի դաշի[illegible] [illegible] չեմ կամենում անբախտացնել նրան*

*— Ի՞նչ ես խօս[illegible]*

*— Բոլորովին [illegible]*

*ինձ համար վաղ[illegible]*

*կարող եմ միայն [illegible]*

*կորուստ...*

— Ի՞նչ սոսկալի խորհուրդ է թագնուած այդ խօսքերի մէջ, գոչեց մելիքը տեղից վեր թռչելով: — Դու պէտք է այդ գաղտնիքը յայտնես ինձ:

— Այդ ես չեմ կարող, սառնասրտութեամբ պատասխանեց Ջումշուդը:

— Հա՛, դու չե՞ս յայտնի, որոտաց մելիքը աւելի կատաղութեամբ: — Ի՞նչ յիմար եմ եղել ես, որ իզուր խօսքեր եմ վատնում մի համառի հետ, երբ կան ուրիշ շատ միջոցներ ստիպելու նրան որ հնազանդուի:

— Մտաբերեցէք, մելիք, որ ես մահից երկիւղ չունեմ, ասաց Ջումշուդը, իր նստած տեղից կանգնելով:

— Դու երկիւղ չունե՞ս մահից, գոչեց մելիքը բարկութեամբ: — Լա՛ւ, լա՛ւ: Բայց դու այնպէս շուտ չես մեռնի, որքան էլ ցանկանալու լինէիր: Ես կը ծանօթացնեմ քեզ այնպիսի մահուայ հետ, որը հազարապատիկ տաժանական է, քան թէ իսկական մահը...

— Բռնեցէք դրան, հրամայեց նա նօքարներին, — կաշկանդեցէք շղթաներով եւ բանտարկեցէք աշտարակի ստորերկրեայ նկուղի մէջ, որ գտնւում է գետի մօտ: Տուեցէք դրան միայն ցամաք հաց եւ ջուր, թող սովորի, թէ ինչ է նշանակում հայրենիքի խաղաղութիւնը վրդովելը իր դարտակ յամառութեամբ:

Նօքարները տարան Ջումշուդին, որը սենեակից դուրս գալու միջոցին, խիստ սառն կերպով ասաց իր հօրեղբօրը.

— Դուք դրանով ոչինչ չէք շահուի...

Մելիքը բարկութիւնից սաստիկ յուզուած, նստեց [illegible]ան մօտ: Մի քանի րոպէ մնաց լռութեան մէջ: Այդ ողագէտը հանգիստ կերպով նայում էր նրա

վրայ, կարծես, աշխատում էր գուշակել, թէ ինչ է կատարվում նրա սրտի մէջ: Վերջը մելիքը դառնալով նրան, սաստիկ տհաճութեամբ ասաց.

— Դէ, պարոն ստախօս, ո՞ւր մնացին քո այն բարեյաջող աստղերը, որոնցով հրապուրում էիր ինձ:

— Նրանք կային, բայց անցան, մելիք: Միթէ ես չասացի՞ ձեզ, որ նրանց ետեւից կը գան վատ աստղեր: Ո՞վ խորհուրդ տուեց ձեզ՝ շարունակել ձեր խօսակցութիւնը: Ես միայն չցանկացայ խանգարել ձեր երկար ճառախօսութիւնը, թէ չէ, արդէն պարզ տեսնում էի չարագուշակ աստղերի մօտենալը: Եւ ես չեմ զարմանում, որ Ջումշուդը այսպէս յամառ գտնուեցաւ:

— Ուրեմն քո կարգադրութեան համեմատ ես քանի րոպէ պէտք խօսէի Ջումշուդի հետ, որ լաւ լինէր: Ա՜խ, խաբեբաներ, ա՛յդ է ձեր նշանաւոր գիտութիւնը: Եւ ես, անխելքս, հաւատացի քեզ: Կարելի է, դու յիմարութեամբ քո բոլոր թուանշանները շփոթեցիր միմեանց հետ: Եւ ես քո տխմար գուշակութիւնների համեմատ, փոխանակ լաւ րոպէին, ընտրեցի վատ րոպէն իմ եղբօրորդու հետ խօսակցելու համար: Եւ այդ պատճառով նրա հետ կռուեցայ, նրա հետ, որին ես սիրում եմ աւելի քան մի հարազատ որդի: Դո՛ւ ես պատճառը այդ բոլոր երկպառակութեան: — Խօսիր, անպիտան, շարունակեց մելիքը, կատաղութեամբ բռնելով աստղագէտի մօրուքից, — հիմայ ինչ են նախագուշակում քո համաստեղութիւնները քեզ համար:

— Նրանք նախագուշա[illegible] իմ [illegible] կորուստից, ասաց աստղագէ[illegible]

— Նրանք [illegible] մելիքը,

եւ դառնալով [illegible]

— Վե՛ր առեցէք այդ ցնորուածին, ձգեցէք դրան մի եւ նոյն ստորերկրեայ նկրքնատան մէջ, որտեղ այժմ նստած է իմ եղբօրորդին։ Թող երկու խելագարներ մինը միւսին հէքաթներ պատմեն…

Աստղագէտին տարան։

Մելիքը կրկին նստեց գորգի վրայ, հրամայեց իրան տալ ղէյլան եւ սկսեց լռութեամբ ծխել։ Նրա աչքերը արտայայտում էին սաստիկ յուսահատութիւն եւ ոչ ոք տանեցիներից չէր համարձակւում մօտենալ նրան։

## III.

*Ջումշուդի յամառութեան պատճառը:*

Նեղ, մթին, ստորերկրեայ բանտում, շղթայակապ որպէս մի յանցաւոր, նստած էր Ջումշուդը։ Բանտի խոնաւ պատերը երբէք չէին զգացել Ղարաբաղի բոցավառ արեգակի բարերար ազդեցութիւնը։ Այդ մշտական տխրութեան նկուղը ծառայում էր միայն որպէս բնակարան կարիճների, մամուկների (փալանգ) եւ հազար այլ տեսակ զզուելի սողունների համար։ Վախենալով մարդու ներկայութիւնից, նրանք սողացին պատերի վրայով եւ թագնուեցան ճեղքերի մէջ, որոնք գոյացել էին խոնաւութիւնից եւ ժամանակի հնութիւնից։ Լեռնային գետակի աղմուկը, որը վազում էր ուղիղ նկուղի մօտով, աւելի եւս բազմապատկում էր այդ խաւար բանտի զարհուրանքը։ Բայց Ջումշուդը, երեւի, չէր զգում իր դրութեան բոլոր տաժանութիւնը, չէր զգում շղթաների ծանրութիւնը, որոնցով կաշկանդուած էր ինքը։ Նրա դէմքը արտայայտում [illegible] ցնծութիւն, կարծես թէ, ձեռքերը մեկնած, [illegible]նում էր նա, այսպէս բացականչելով․

— Ո՛վ սէր Ալլահի, ի սէր օրհնեալ մարգարէի եւ տասն երկու սուրբ իմամների[1] այդ ի՞նչ ասելու բան է, մելիք, իբր թէ ես ուղարկուած եմ ձեր հօրեղբօր կողմից, կամ ես կեղծաւորութիւն եմ անում։ Երդւում եմ ձեզ դրախտի այն ծառով[2], որ բուսնում է Մահմեդի բնակարանի մէջ, որ ձեր կարծիքը իմ վերաբերութեամբ ուղիղ չէ։ Ես ձեր հօրեղբօր կառավարութեան մի նոյնպիսի ողորմելի զոհն եմ, որպէս դուք, մելիք։

---

[1] Տասն եւ երկու սուրբ իմամներ կոչվում են այն աստուածաբանները, որ ապրում էին հիջրէթի առաջին դարում, որոնց մուսուլմանները սրբի տեղ են ընդունում։ Ծան. հեղ.։

Տասներկու իմամներ կոչվում են Ալիի ժառանգները, որոնք հիմք դրեցին շիաների աղանդին։ Դրանցից մէկը՝ Մէհտի սահաբզամանը (ժամանակների տէր Մէհտին) շիաների կարծիքով մնաց անմահ եւ աներեւութապէս հսկում է ուղղափառ մուսուլմանների վրայ։ Նա մի օր կը յայտնուի իր փառքով, եւ նրա միւսանգամ գալստեանը շիաները սպասում են նոյն ակնկալութիւններով, որպէս հրէաները Մեսիայի գալստեանը։ Ծան. Թարգ.։

[2] Մարգարէի տան դրախտի ծառը կոչվում է Թուբա կամ ծառ բախտաւորութեան։ Այդ ծառը մուսուլմանների աւանդութեան համեմատ գտնվում է Մուհամմէդի բնակարանի մէջ։ Նրա ճիւղերը, զարդարած նռներով եւ զանազան տեսակ գեղեցիկ պտուղներով, հասնում են մինչեւ ամեն մի ուղղափառ մահմեդականի բնակարանը։ Այդ ծառի ստուերը տարածվում է այնքան հեռու, որ ամենաարընթաց ձին եւս երբէք չէ կարող հասնել մինչեւ նրա վերջը։ Նրա արմատներից բղխում են կաթի, գինու եւ մեղրի վտակներ։ Ծան. հեղ.։

Թուբա մի առասպելական ծառ է Մուհամմէդի դրախտի մէջ, որի լայնատարած ստուերի ներքոյ զուարճանում են [illegible] մարգարէները։ Նրա ճիւղերից կարելի է ստանալ ամեն տեսակ պտուղներ, արմաւ, նուռ, նարինջ, անանաս, թուզ եւայլն։ [illegible] եւ այդ ծառը խոնարհեցնում է իր բարձր ճիւղերը [illegible] ղել իր խնդրած պտուղը։ Իսկ [illegible] րակ ծերացած արմաւենի է, [illegible] ներից, եւ որի պտուղներ[illegible] նուիրական է դարձել։ Մ[illegible] իբրեւ մի յիշատակ [illegible] մարգարէից։ Ծան. Թ[illegible]

Աստղագէտի խօսքերի արտասանութեան մէջ կային այնքան շատ համոզիչ ձայներ, որ Ջումշուդը պարզ կերպով նկատեց, թէ սխալուած է իր կարծիքի մէջ, եւ ասաց նրան աւելի մեղմ կերպով.

— Երբ որ այդպէս է, ես բոլոր սրտով ցաւում եմ քեզ վրայ, անբախտ աստղագէտ։ Բայց զարմանում եմ, թէ ի՞նչպէս դու քո ամբողջ գիտութեամբը չը կարողացար այդ դժբախտութիւնը հեռացնել քեզանից, կամ գոնէ նախատեսել, թէ ինչ էր պատահելու քեզ։

— Ձեր հօրեղբայրը մի առանձին ընդունակութիւն ունի իր բարկութեամբը խառնաշփոթելու իմ բոլոր նախագուշակութիւնները։ Բայց հաւատացէք, մելիք, որ ես տեսնելով ձեր անբախտութիւնը, մոռանում եմ իմը։ Դուք, ձեր այդ մատաղ հասակում, այսպէս գեղեցիկ, այսպէս քաջ մի երիտասարդ, պէտք է մաշուէք այդ օդից զուրկ բանտի մէջ։ Եւ ի՞նչի համար։ Ահա այսպիսի դէպքերում մենք, մուսուլմաններս, աւելի երջանիկ ենք ձեզանից. կարող ենք ամուսնանալ չորս կնիկների հետ։ Հիմայ ձեր հօրեղբայրը ձեր վզին կապում է մէկին միայն, եւ դուք վախենում էք, որովհետեւ յետոյ մի ուրիշ աւելի լաւի հետ անկարելի կը լինի ամուսնանալ....։

Նա խօսքը փոխեց, շարունակելով.

— Լսեցէք, մելիք, մենք երկուքս էլ այժմ գտնվում ենք վտանգի մէջ, պէտք է աշխատել ազատուելու այստեղից։ Հաւատարմութիւն ունեցէք դէպի ձեր ծառան, պատմեցէք, թէ իսկապէս ի՞նչ պատճառներ ստիպում են ձեզ՝ այսպիսի վճռականութեամբ ընդդիմանալ ձեր հօրեղբօր ցանկութիւններին։ Եւ ես կ'աշխատեմ հնարել մի միջոց ձեր ազատութեան համար։

— Այդ չեմ կարող յայտնել. դա մի գաղտնիք է, պատասխանեց Ջումշուդը։

— Մի՞թէ մոռանում էք դուք, մելիք, որ ես տեղեկութիւններ ունեմ երկնային լուսատուների ընթացքի մասին, կարող եմ նախագուշակել բախտաւորութիւնը եւ անբախտութիւնը, կարող եմ որոշել բարեյաջող րոպէները մարդերի գործողութիւնների համար։ Ես կարող եմ շատ օգտաւէտ լինել ձեզ, եթէ դուք միայն կ'արժանացնէք ինձ՝ ընդունել ձեզ մօտ որպէս ծառայ։ Երդւում եմ իմ մօրուքով, որ դուք չէք գտնի ինձանից աւելի հաւատարիմ եւ ջերմեռանդ մի սպասաւոր։ Ինձ բոլորովին ձանձրացրել է ձեր հօրեղբօր խիստ բնաւորութիւնը։ Ծառայելով նրա մօտ, ամեն րոպէ պէտք է մահը աչքի առաջ ունենալ։ Ի սէր Աստուծոյ, համաձայնուեցէք ընդունել ինձ ձեզ մօտ. դուք չափազանց կը բախտաւորացնէք ինձ, եւ ես կ'աշխատեմ արժանաւոր կերպով երախտամատոյց լինել ձեզ։

Ջումշուդը բնաւորութեամբ խիստ բարի էր։ Աստղագէտի գրութիւնը երեւաց նրան իսկապէս ցաւակցութեան արժանի։

— Լաւ, ասաց նրան, — ես ընդունում եմ քո խնդիրքը։ Բայց դու գիտես, որ նրա կատարումը դեռ եւս ինձանից կախուած չէ։ Նախ այն պատճառով, որ ես չը գիտեմ արդեօք ե՞րբ կը բարեհաճի հօրեղբայրս ինձ ազատել այդ փառաւոր ապարանքից, երկրորդ, արդեօք թոյլ կը տա՞յ քեզ ինձ մօտ ծառայելու։

— Շնորհակալ եմ, հազար անգամ շնորհակալ եմ ձեզանից, մելիք։ Թող ես լինեմ շնից պակաս, եթէ ամեն րոպէ աշխատելու չլինեմ արժանացնելու ինձ ձեր ողորմածութեանը։ Իսկ ինչ որ վերաբերում է մեր բանտար-

կութեանը, այդ, իմ կարծիքով, երկար չի տեւի։ Երբ ձեզ բերեցին այստեղ, ձեր հօրեղբայրը սաստիկ տխրեց, եւ մտածութիւնների մէջ ընկաւ։ Նա սկսեց նախատել ինձ, իբր թէ ես պատճառ դարձայ, որ նա կռուեց ձեզ հետ։ Նա մեղադրում էր ինձ, թէ ես սխալ գուշակութիւններ արեցի իմ աստղներով։ Որովհետեւ նախ քան ձեզ հետ ունեցած տեսութիւնը, նա հրամայեց ինձ նախագուշակել, արդեօք աստղները խոստանում են յաջողութիւն խօսակցութիւնը սկսելու համար, թէ ոչ։ Հէնց դրա համար էլ նա բարկացաւ ինձ վրայ եւ նստացրեց այդ զնդանի մէջ։ Ես ճանաչում եմ ձեր հօրեղբօրը, նա թէեւ չափազանց դիւրաբորբոք մարդ է, բայց շուտով մոռանում է անցեալը։ Երբ կը զայրանայ, պատրաստ է ոչնչացնել ամենին մահուան տանջանքով. իսկ երբ բարկութիւնը կ'անցնի, այդ ժամանակ ինքը կը զղջայ իր վարմունքի համար։ Բայց դուք, մելիք, ինքներդ էք մեղաւորը։ Լաւ մտածեցէք։ Դուք ստիպում էք նրան երդմնազանց լինել, եւ ենթարկում էք նրան նելքին պատերազմների վտանգներին....։

— Հասկանում եմ, շատ լաւ եմ հասկանում, գոչեց Ջումշուդը։ — Բայց նրա ցանկութիւնը կատարելը իմ կամքից կախուած չէ։ Այդ անկարելի բան է։ Եթէ քեզ բոլոր հանգամանքները յայտնի լինէին, դու ինքդ կ'ասէիր, որ ես իրաւացի եմ։

— Արժանացրէք ինձ, մելիք, ձեր հաւատարմութեանը, պատմեցէք ձեր մտերիմ սրտակին այդ նշանաւոր գաղտնիքը։ Դուք չէք զղջայ, եթէ ձեր սիրտը բացելու լինէք իմ առջեւ։ Ես իմ կեանքով ձեզ եմ պատկանում. պատրաստ եմ ձեզ համար ապրել եւ ձեզ համար մեռնել։

Զումրուդը տեսաւ, որ աստղագէտը անկեղծաբար կարեկցում էր իրան, եւ վճռեց հաղորդել նրան իր գաղտնիքը, աւելի այն պատճառով, որ պէտք էր զգում որ եւ իցէ մէկի առջեւ թափել իր սրտի ցաւերը։

— Լսիր, ասաց նա աստղագէտին, — ես կը պատմեմ քեզ բոլոր հանգամանքները, որոնք արգելում են ինձ ընդունելու հօրեղբօրս առաջարկութիւնը։ Բայց երդվում եմ, որ եթէ քո լեզուն մի որ եւ իցէ մարդու կը յայտնի իմ խորին գաղտնիքը, դու անպատճառ կորած կը լինես իմ ձեռքով, եւ ոչ մի զօրութիւն չի կարող ազատել քեզ իմ վրէժխնդրութիւնից։

Աստղագէտը պատասխանեց.

— Թող ես մի եւ նոյն րոպէում դօնկուսի[1] կերպարանք ստանամ, եւ այնպէս մնամ մինչեւ վերջին դատաստանի օրը, եթէ ես այս աստիճան անխորհրդապահ կը գտնուեմ։ Եւ ի՞նչ օգուտ ինձ՝ դաւաճանել իմ տիրոջ գաղտնիքին։ Ձեզ յայտնի է, մելիք, որ ոչ թէ լոկ հետաքրքրութեան համար խնդրում եմ հաղորդել ինձ ձեր պատմութիւնը, այլ առաւելապէս նրա համար, որ ես միջոց ունենամ լաւ մտածելու, արդեօք չէ՞ի կարող մի որ եւ իցէ օգուտ բերել ձեզ եւ դրանով ապացուցանել իմ անձնանուիրութիւնը։ Դուք գիտէք, մելիք, որ ես թափառել եմ ամբողջ աշխարհում, տեսել եմ եւ հնդկացիներին, եւ գաբրներին[2], եւ ուղղափառ մուսուլմաններին, եւ անմաքուր ջհուդներին, եւ...

---

1 Դօնկուզ նշանակում է խոզ, որը համարվում է ամենապիղծ անասուն մուսուլմանների կրօնքով։ Ծան. հեղ.։

2 Գաբր կոչվում են այն պարսիկները, որ դեռ պահպանել են հին կրակապաշտական կրօնը։ Գաբրները հալածվում են մահմեդական պարսիկներից եւ պիղծ են համարվում։ Ծան. Թարգ.։

Ջումշուդը ընդմիջեց աստղագէտի խօսքը ասելով.

— Լաւ, լաւ, ես քեզ հաւատում եմ, հիմա լսիր։

Եւ նա սկսեց պատմել հետեւեալը։

## IV.

### Ջումշուդը Ջուանշիրցիների մօտ:

«Իմ հայրը շուտ մեռաւ. Նրա մահից յետոյ հօրեղբայրս ինձ ընդունեց իր հոգաբարձութեան ներքոյ։ Տասն եւ եօթ տարեկան էի ես, երբ նա տուեց ինձ մի յանձնարարական նամակ, որ գրուած էր Ջուանշիրցիների[1] մի ծերունի ցեղապետի անունով։ Այդ քաջ եւ պատերազմասէր ցեղը բնակվում է մեր լեռների վրայ, արեւմտեան կողմում։ Նա ցանկանում էր, որ ես, ապրելով այդ լեռնաբնակների մէջ, ընտելանայի նրան բարքուվարքի պարզութեանը, սովորէի նրանց ճարպիկութիւնները նիզակ եւ զէնքեր գործածելու մէջ, եւ վերադառնայի որպէս մի վարժ պատերազմող, որ կարող լինէր ամեն անգամ փառքով հանդիսանալ կռուի դաշտում։ Իմ վարժութիւնների համար ժամանակ որոշեց նա չորս տարի, ընծայեց ինձ մի գեղեցիկ նժոյգ, հարուստ զէնքեր, երեսուն թուման փող եւ ես ճանապարհ ընկայ, գնացի։

---

[1] Ջուանշիրցիները Ղարաբաղի լեռնաբնակներ են, որոնք նշանաւոր են որպէս լաւ ձիաւորներ։ Ծան. հեղ.։

Ղարաբաղի լեռնային մասը, միշտ բնակեցրած լինելով հայերով եւ հայոց մելիքների տիրապետութեան ներքոյ գտնուելով, երբէք Ջուանշիրցիների բնակութեան տեղ չէ եղել։ Ջուանշիրցիք իրանց անունը առել են Ջուանշիրի տափարակ անապատներից, որ գտնվում են Կուր գետի աջ ափերի վրայ, Ղարաբաղի սահմանի մօտ։ Միայն մելիքների իշխանութիւնը ընկնելուց յետոյ Ջուանշիրցիք համարձակուեցան իրանց անասունների հետ ամառը անցկացնել Ղարաբաղի լեռների վրայ, իսկ ձմեռը դարձեալ վերադառնում էին դէպի Կուր գետի եզերքի տափարակները։ Այդ կեանքը շարունակվում է մինչեւ այսօր։ Ծան. Թարգ.։

«Իմ ճանապարհորդութիւնը տեւեց երեք օր, չորրորդում ես տեսայ իմ առջեւ Ջուանչերցիների եղեգնեայ տաղաւարները։ Նրանք չուել էին այդ ժամանակ, իրանց հօտերի հետ, լեռների ամենաբարձր գագաթների վրայ։ Որովհետեւ եղանակը սաստիկ տօթային էր, եւ արեգակի ջերմութիւնը անտանելի էր դարձել ոչ միայն հովիտներում, այլ մինչեւ անգամ լեռնային բարձրաւանդակների վրայ։

«Ո՜րքան մեծ բաւականութեամբ նայում էի ես Ջուանչերցիների օբաների[1] վրայ։ Նրանց բազմաթիւ հօտերը ազատ շրջում էին ճոխ, կանաչազարդ արօտամարգերի մէջ։ Անհամեմատ գեղեցիկ ձիաները թռչկոտում էին, կայտառում էին, ծփելով իրանց ագիներն ու բաշերը։ Օդը բարեխառն էր. մի առանձին տարօրինակ քաղցրութիւն թափուած էր նրա մէջ։ Ես հասայ այնտեղ արեւի մայր մտնելուց առաջ։ Ցղամարդիկը, շուրջ հաւաքուած, ինչ որ բանի վրայ խօսակցում էին։ Ոմանք անհոգ նստած էին իրանց տաղաւարների մուտքի առջեւ եւ ծխում էին։ Մանուկները խաղում էին նրանց մօտ։ Կանայքը ծածկուած չէին այն անտանելի քօղերով, որոնք մեզ մօտ գործածութեան մէջ են։ Նրանք բոլորովին բաց երեսներով նստած էին տաղաւարների առջեւ, եւ զբաղուած էին զանազան աշխատութիւններով։ Ոմանք բուրդ էին մանում, ոմանք գորգ էին գործում, ոմանք իրանց համար հագուստներ էին կարում, իսկ մի քանիսն էլ, ձեռքով բռնած ոչխարներին կամ գառներին, խուզում էին նրանց բուրդը։ Մի խօսքով, աչքի էր զար-

[1] Օբա կամ օվա նշանակում է իջեւան։ Այսպէս կոչվում է թափառաշրջիկ խաշնարածների ժամանակաւոր բնակութեան տեղը։ Ծան. Թարգ.։

կում կնիկների ժրաջան աշխատասիրութիւնը, իսկ տղամարդների կատարեալ անգործութիւնը, որոնք զբաղուած են լինում միայն իրանց նժոյգներով, զէնքերով եւ ճարպիկ ձիարշաւներով [1]:

"Հէնց որ ես յայտնուեցայ, իսկոյն իմ վրայ դարձրի ընդհանուրի ուշադրութիւնը: Հիւրասիրութիւնը համարվում է ամենագլխաւոր առաքինութիւններից մէկը ջուանշիրցիների մօտ: Նրանցից իւրաքանչիւրը, մինը միւսի հակառակ, ցանկանում էր բաւականութիւն գտնել, հիւրասիրելով ինձ իր մօտ: Ես մերձեցայ մի բնակարանի, որի հանդէպ նստած էր մի պատկառելի ծերունի, զարդարուած ալիքներով: Նրա դէմքի ազնիւ գծերը արտայայտում էին մի առանձին հրապուրանք: Ես ողջունեցի նրան, ասելով.

— "Սալամուն ալէյքում":

— "Ալէյքում աս սալամ"[2], պատասխանեց նա:

— "Թող շնորհէ քեզ Ալահը խաղաղութիւն եւ բարեբախտութիւն, բաբա, ասեցի ես, — կարո՞ղ ես ինձ ցոյց տալ, թէ որն է Հասան ցեղապետի տաղաւարը:

— "Թող բազմանան քո տարիքը, ինչպէս երկնքի աստղները, պատասխանեց ծերունին: — Հասանը այլ եւս չկայ մեր մէջ:

---

[1] Ինչպէս արեւելեան բոլոր հովիւ ցեղերի մէջ, այնպէս էլ ջուանշիրցիների մօտ, տնտեսական բոլոր աշխատութիւնները բարձուած են կնիկների վրայ: Տղամարդիկ վայելում են կատարեալ հանգստութիւն, զբաղվում են իրանց զէնքերով, ձիաներով, պարապվում են աւազակութեամբ: Ծան. Թարգ.:

[2] Սալամուն ալէյքում՝ նշանակում է խաղաղութիւն քեզ: Ալէյքում աս սալամ՝ նշանակում է քեզ եւս լինի խաղաղութիւն: Ծան. Թարգ.:

— “Ո՞ւր է գնացել։

— “Պարսկաստան, Քէրիմ-խանի[1] մօտ, որը մաքին դրել է նստել Իրանի գահի վրայ։

— “Ի՞նչ պատճառ ունէր Հասանը հեռանալու իր հայրենիքից, շարունակեցի ես, ձիուց ցած իջնելով և ծալապատիկ նստելով ծերունու մօտ։

— “Հասանը չկարողացաւ հաշտուել մեր նոր տանուտէրի հետ և ստիպուեցաւ մեր երկրից հեռանալ, որովհետև երկիւղ ունէր նրա վրէժխնդրութիւնից։

— “Ուրեմն դուք նոր տանուտէր ունէ՞ք։

— “Ինչպէս չէ։ Նրան կոչում են Փանահ-խան[2]. նա ծնուած է մեր լեռներում։ Ես նրան ճանաչում էի, երբ դեռ երեխայ էր. այդ հասակում ևս նա այնքան յանդուգն էր և կռուարար, որ ոչ ոք չէր սիրում նրան։ Տեսնելով, որ մեզ մօտ բնակուելը իրան շատ շահաւէտ չէ հեռացաւ դէպի Պարսկաստան, այնտեղ մտաւ ծառայութեան մէջ Նադիր-շահի մօտ և ջ ա ռ չ ի ի (մունետիկ) պաշտօն էր կատարում։ Իսկ յետոյ վերադարձաւ մեզ մօտ։ Նրա ճարպկութիւնը, խորամանկութիւնը, խօսելու մէջ վարպետութիւնը, որը սովորել էր իրանցիներից, նրան յաջողեցրին գրաւելու մեր պարզամիտ ջուանշիրցիների խելքը, և դրանով եղաւ նրանց տանու-

---

1 Ք է ր ի մ - խ ա ն ը էր հիմնողը զանդիների տոհմի թագաւորութեանը պարսից գահի վրայ, ապրում էր ԺԸ-րդ դարու երկրորդ կիսաբաժնի սկզբում։ Ծան. հեղ.։

Ք է ր ի մ - խ ա ն, տես մեր “Խամսայի Մելիքութիւնները” գրքի 76, 77, 128, 138 երեսներում։ Ծան. թարգ.։

2 Փ ա ն ա հ - խ ա ն։ Իր վէպի մէջ հեղինակը պատմական կէտից բաւական ճիշտ կերպով նկարագրում է Փանահ-խանի ծագումը և նրա զօրանալու պատճառները։ Իսկ աւելի ընդարձակ մանրամասները ընթերցողը կարող է գտնել մեր “Խամսայի Մելիքութիւնները” գրքի IX—XV գլուխներում։ Ծան. թարգ.։

տէր։ Միայն Հասանն էր, որ ընդդիմացաւ Փանահ-խանի ընտրութեանը, բայց այդ վերջինը յաղթող հանդիսացաւ, եւ Հասանը ստիպուեցաւ հեռանալ։

— "Ափսոս, շատ ափսոս, պատասխանեցի ես, — նա ինձ շատ հարկաւոր էր։ Ես ունեմ նրա անունով մի յանձնարարական նամակ իմ հօրեղբօրից՝ Վարանդայի իշխանից։

— "Լսիր, ասաց ծերունին. — ոչ ոքին չի պիտի յայտնես, թէ դու Հասանի բարեկամն ես, եթէ այդ գիտենան, քեզ համար վատ կը լինի։ Դատակ սրտով խորհուրդ եմ տալիս քեզ։

"Ես գոհունակութեամբ շնորհակալութիւն յայտնեցի ծերունուն նրա նախազգուշութեան համար։ Երբ նա իմացաւ իմ նպատակը, թէ դիտաւորութիւն ունեմ ջուանշիրցիների մօտ սովորելու պատերազմական արհեստը, սկսեց խնդրել ինձ, որ բնակուեմ իր մօտ։

— "Իմ որդիները կը լինեն քո ընկերները, ասաց նա, — նրանք համարվում են ամենալաւ ձիավարներ մեր ցեղի մէջ։ Իմ տունը կը լինի քո տունը։

"Ցեղոյ կանչեց իր որդիներին եւ նրանց ներկայացրեց ինձ։ Այդ երիտասարդները եղբօր պէս ընդունեցին ինձ։ Նրանց անկեղծ դէմքերը ինձ շատ հաճելի թուեցան։ Երէցը, որ կոչվում էր Արզուլ, կարծես թէ, պատկանում էր հսկաների սերունդին. նա խիստ բարձրահասակ էր։ Նրա մարմնի բոլոր գծերի մէջ արտայայտվում էր արիութիւն եւ քաջութիւն։ Նրա բոլոր անդամները ցոյց էին տալիս գիրքաթեքութիւն եւ արագաշարժութիւն։ Ամեն ինչ նրա մէջ էր հոյակապ եւ վեհանձնական։ Արզուլին չէր կարելի գեղեցիկ համարել, բայց դէմքը բաւա-

կան դիւրեկան էր, թէեւ արտայայտում էր մի ինչ որ խորին խստասրտութիւն։ Կրտսեր որդին, որ կոչվում էր Իսմայիլ, բարձրահասակ չէր. Նրա բոլոր գծերի մէջ երեւում էին կանացի քնքշութիւններ։ Նրա ձայնը այնքան գրաւիչ էր, որ թափանցում էր ուղիղ մարդու հոգու մէջ։

“Ծերունին իմ վերաբերութեամբ հնարեց մի չեղած պատմութիւն, որը հաղորդեց իր որդիներին, ասելով, իբր թէ ես մի մուսուլման եմ Խօրասանի կողմերից. թէ Նշանաւոր պատճառներ ստիպել են ինձ թողնել իմ հայրենիքը. թէ ես սպանել եմ մի պարսիկ աստիճանաւորի, որը ցանկանում էր վիրաւորել ինձ, եւ այդ սպանման պատճառով հեռացել եմ Խօրասանից, ապաստան գտնելու ազատ ջուանշիրցիների մօտ։

“Երիտասարդները լսելով այդ առասպելը, երդուեցան իմ եղբայրներ լինել, եւ խնդրեցին, որ ես համարեմ նրանց կայքը եւ բնակարանը որպէս իմ սեպհականութիւն։

— “Բայց դուք չի պիտի զարմանաք, զաւակներ[illegible], շարունակեց խօսքը ծերունին, — երբ կը տեսնէք, որ մեր հիւրը մեզ հետ չի կատարում այն սուրբ պա[illegible]մունքները, որոնք սահմանուած են մեզ համար եր[illegible]ային գրքով։ Որպէս պահած իր գործած յանցանքի, Ն[illegible] շարունակ հինգ տարի չէ կարող [illegible] [illegible] անելու եւ մեր կրօնական մի[illegible] կատարելու [illegible] մար։ Այդ [illegible] պէս սատիկ [illegible]

---

1 Նամազ [illegible]

2 Շէյխ. մահ[illegible]

երկնքի վրայ գտնուած բոլոր աստղները չէին կարող հա-
մեմատուել նրա սեւ աչքերի փայլի հետ։ Նրա արեւից
վառուած դէմքի վրայ նկարուած էր մի տեսակ կախար-
դիչ հրապուրանք։ Ես չէի կարողանում աչքերս հեռաց-
նել նրանից, եւ խորին հոգեզմայլութեամբ գաղտուկ նայում
էի սքանչելի Սալիհայի վրայ։

“Ես բնակուեցայ այդ բարեսիրտ մարդիկների մօտ,
եւ ամեն օր բախտ ունէի տեսնելու իմ նազելի Սալի-
հային։ Ես օրըստօրէ զգում էի աւելի սաստիկ սէր դէպի
այդ աննման աղջիկը, որը իր գրաւիչ պարզամտութեան
հետ միացրել էր խիստ ուրախ եւ կենդանի բնաւորու-
թիւն։ Նա կոչում էր ինձ կ ա ր դ ա շ (եղբայր) եւ
երեւում էր. որ մի առանձին բաւականութիւն էր զգու-
նում իմ ներկայութիւնից։ Այդ երջանիկ լեռնաբնակներ
բարք ու վարքի պարզութիւնը չէր արգիլում ազատ յ
բարեկամութիւններ երկու սեռերի մէջ։ Այդ միջոց էր
լիս ինձ աւելի մօտ լինել Սալիհային եւ քաղցրացն
էր մեր բարեկամութիւնը միշտ նորանոր վայելչութ
ներով։ Նրա եղբայրների հետ շատ անգամ ես
ման էի գալիս, գնում էինք որսորդութեան, ե
եղայ նրանց հետ աւելի մտերիմ, քան թէ
էր լինել մի սերտ բարեկամ։ Մենք սիրում
սանձահարել անզուսպ, սաստիկ ... Նո
սիրում էինք՝ թռչելով նրան
ցած սլանալ
բարձրանալ աշխ
կատարում էինք զա
տիկ արագավազ
էինք բարձրացնում
կրկին նետում էինք մի

միր շրթունքները։ Բոլոր այդ դէպքերում նա չէր ընդդիմանում, դնում էր իր գեղեցիկ գլուխը իմ ուսի վրայ, եւ երեխայական քնքոյշ հաւատարմութեամբ նայում էր իմ աչքերի մէջ, հարցնելով. — «Եղբայր, դու ինձ միշտ պիտի սիրես»։ Ես խոստանում էի նրան մշտական սէր եւ բարեկամութիւն։ Դրանով նա ուրախանում էր, եւ որպէս մի թեթեւ այծեամն, վազվզում էր, թռչկոտում էր, իրան գոհ եւ բախտաւոր էր համարում։ Շատ անգամ իմ դիւրագրգիռ արիւնը բորբոքվում էր եւ ես զգում էի, թէ որպիսի սաստիկ կրակ այրում էր իմ սիրտը...։ Բայց Սալբիհան այնքան անմեղ կերպով հաւտացած էր ինձ, նա այնքան միամիտ էր եւ պարզասիրտ, որ ես վախենում էի խանգարել նրա երեխայական բախտաւորութիւնը...

«Այդ դրութեան մէջ էին մեր յարաբերութիւնները, երբ սկսեց մօտենալ ժամանակը, որ պէտք էր ցած իջնել լեռներից տափարակների վրայ ձմերելու համար։ Կարծեմ, դու շատ լաւ գիտես, որ Ղարաբաղի բոլոր խաշնարած ցեղերը գարնան սկզբից սկսում են հեռանալ դէպի լեռները, եւ հետզհետէ աստիճանաբար բարձրանում են նրանց վրայ, այն չափով, ինչ չափով տաքանում է արեգակի օդը, որը ցամաքացնում է բուսականութիւնը տափարակների վրայ, եւ գաւառային [illegible] մարդկային կեցութիւնը դարձնում է — [illegible] է աշունքը, այդ խաշնարածները [illegible] փոքր ցած իջնել [illegible] զգալի է դառնում [illegible] ձմեռնային խրճիթ[illegible]

¹ Չնայելով, որ [illegible] մէկ եւ կէս դար, ջուանշիր[illegible]

Այսպէս չուելով մի տեղից միւս տեղ, նրանք տարուայ ամբողջ ընթացքում վայելում են ծաղկեալ գարուն. եւ նրանց բազմաթիւ հօտերը, գեղեցիկ նժոյգների ընտիր երամակները միշտ գտնում են դալար եւ սննդարար կերակուր։

"Եւ այսպէս, Ջուանշիրցիները վերադարձան ամառանոցից եւ բնակուեցան իրանց ձմեռնային գետնափոր խըրճիթներում։ Այդ ժամանակ պատահեց մի անցք, որը ունեցաւ նշանաւոր ազդեցութիւն իմ վիճակի փոփոխութեան վրայ։

"Քարիրլուցիները՝ քշեցին, տարան մեր ձիաները։ Ջուանշիրցիները սաստիկ վրդովուեցան այդ յափշտակութեան պատճառով։ Վճռեցին վրէժխնդիր լինել։ Մեր բոլոր ընտիր ձիաւորները հաւաքուեցան եւ ուխտեցին չ ա փ ո ւ ն անել (ասպատակել) քարիրլուցիների ձմերանոցը։ Ես էլ մասնակցեցի այդ արշաւանքի մէջ։ Սալիհայի երէց եղբայրը եւ մինչեւ անգամ ծերունի հայրը միացան քաջերի հետ։ Ես շատ թախանձեցի ծերունուն, որ նա յետ մնայ այդ վտանգաւոր ձեռնարկութիւնից, բայց նա չկամեցաւ լսել ինձ։ Նա կորցրել էր իր ամենալաւ նժոյգներից մէկը, արաբական ցեղից, որին խիստ թանգ էր գնահատում։ Սալիհայի կրտսեր եղբայրը մնաց տանը։ Նա խիստ տխուր էր, որ նրան զրկեցին մասնակցել մեր քաջագործութիւնների մէջ, բայց այդ անհրա-

---

թեան եղանակները։ Նրանք եւ մինչեւ այսօր բնակվում են գետնափոր խրճիթներում, այն եւս ձմեռը միայն. իսկ տարուայ տաք եղանակներում թափառում են զանազան տեղեր. բնակուելով շարժական տաղաւարների մէջ, որ պատրաստվում են եղէգներից ու ծածկում են թանձր թաղիքներով. Թարգ.։

¹ Քարիրլուցիները մի առանձին խաշնարած ցեղ են Ղարա-որգ.։

ժեշտ էր, որովհետեւ մէկը պէտք է մնար տան վրայ հսկելու համար։ Բոլոր կնիկները քնած էին, երբ մենք ճանապարհ ընկանք, այդ պատճառով ես միջոց չունեցայ Սալիհային մնաք բարեաւ ասելու։

«Հետեւեալ գիշերը մենք հասանք քարիրլուցիների ձմերանոցը։ Գիշերային մթութիւնը նպաստեց մեզ անտեսանելի կերպով մտնենալ այն տեղին, ուր պահուած էին մեր եւ նրանց ձիաների երամակները։ Կոտորելով պահապաններին, մենք քշեցինք նրանց երամակները եւ ոչխարների հօտերը մեզ մօտ։ Բայց խաւարի մէջ չկարողացանք նկատել, որ հովիւներից մէկը միջոց գտաւ ազատուելու, եւ փախչելով իմացում տուեց քարիրլուցիներին մեր յարձակման մասին։ Մի ակնթարթում այդ վերջինները պատրաստուելով, վրայ պրծան մեր ետեւից։ Եւ որովհետեւ մենք, ծանրաբեռնուած լինելով մեր հարուստ աւարով, չէինք կարող արագութեամբ շատ հեռու գնալ, այդ պատճառով նրանք կարողացան միւս օրուայ կէսօրին հասնել մեր ետեւից եւ շրջապատել մեզ։ Կռիւը երկու կողմից եւս խիստ արիւնահեղ էր։ Վերջը քարիրլուցիները յաղթող հանդիսացան։ Մենք կորցրինք շատ տղամարդիկ, եւ թողնելով ամբողջ աւարը, [illegible] ազատութիւն որոնել փախուստի մէջ։ Սալիհայի հայրը մահացու վէրք ստանալով [illegible] մէջ, ընկաւ հէնց իմ մօտ, չարտասանելով [illegible] վէրք ստացայ գլխիս [illegible]

«Կռուից [illegible]

տեցանք մեր ձի[illegible] մեզ ընդառաջ։ [illegible] հանդիպել մեզ, [illegible] թիւնը, սկսեցին լայ[illegible]

ծամերը եւ պատառոտել իրանց հագուստը։ Չկար նրանց մէջ մի այնպիսին, որ սուգ չանէր իր տոհմայիններից որ եւ իցէ մէկի համար, որ սպանուած չլինէր կռուի դաշտում։ Սալիհան գունաթափ, կիսամեռ, նայում էր ինձ վրայ իր գեղեցիկ աչքերով, որ լցուած էին արտասուքով։ Նրա մայրը լաց էր լինում սպանուած ամուսնի համար։

«Սալիհան սկսեց հոգ տանել իմ առողջութեան մասին, պատրաստեց ինձ համար հանգիստ անկողին, որ կազմուած էր մի քանի թաղիքներից։ Նա աւելի մեծ խնամք ունէր իմ վրայ, քան թէ իր եղբօր վրայ, որը նոյնպէս վիրաւորուած էր, բայց թեթեւ կերպով։ Այդ վերջինը շուտով առողջացաւ, եւ կրտսեր եղբօր հետ շատ անգամ հեռանում էին տնից, գնում էին անտառը գազաններ որսալու։ Մայրը միշտ զբաղուած էր իր տնտեսական գործերով, եւ ես վայելում էի մի անգնահատելի բախտաւորութիւն, շատ անգամ միայնակ տեսնելով իմ մօտ անման Սալիհային։

«Նա մի առանձին կարեկցութեամբ աշխատում էր նախագիտել իմ ցանկութիւնները. երբեմն մի քանի ժամ շարունակ անց էր կացնում իմ անկողնի մօտ, քնքշութեամբ նայում էր իմ վրայ, աշխատելով գուշակել իմ զգացմունքները, իմ դրութիւնը։ Ախ, որքան անսահման ուրախալի էին այդ րոպէները։ Մի այսպիսի բախտաւորութիւն խիստ հազիւ անգամ շնորհվում է մարդկանց։ Ես շնորհակալ էի լինում Աստուծուց իմ ստացած վէրքի համար եւ այն բոլոր տանջանքների համար, որ այդ վէրքը պատճառեց ինձ։

«Մի օր Սալիհայի եղբայրները տանը չէին։ Մայրը, ... մ դուրս էր գալիս, նոյնպէս հեռացաւ

ընտանիքը, դու խեղճ, միամիտ Սալիհայի կորստեան պատճառը դարձար: Միթէ դրա համար մենք ընդունեցինք քեզ մեր օջախի մէջ, որպէս մեր հարազատ որդի: Մենք հաւատում էինք քո խստակութեանը, բայց դու խաբեցիր մեզ: Կարելի է ձեզ մօտ, այնտեղ, Խօրասանում, այդ համարվում է մի հասարակ բան: Բայց մեզ մօտ, այդ լեռների մէջ, միշտ սարսափելի մահ է սպասում այն կոյսին, որ մեղանչում է ողջախոհութեան դէմ: Չարագործ, դու էլ անպատիժ չես մնայ. իմ որդիների խէնջարները կը ցցուեն քո կուրծքի մէջ: Ա՜խ, սուրբ Ալի, ինչեր են պատահում: Ես պիտի տեսնեմ, թէ ինչպէս իմ թանգագին Սալիհային ամեն կողմից կը քարկոծեն մարդիկ: Ահ, Ալլահ, առաջ փակիր իմ աչքերը, որ չտեսնեն այդ սարսափը... Խղճալի պառաւը սկսեց աւելի սաստիկ կերպով լաց լինել:

"Դժբախտաբար նա խօսում էր բաւական բարձր ձայնով: Սալիհան, որ այդ ժամանակ գտնվում էր գետնափոր խրճիթի միւս բաժնում, լսեց պառաւի զարհուրելի խօսքերը: Նա հասկացաւ բոլորը, եւ մեռելի նման գունաթափ դէմքով նորա վազեց մեզ մօտ, մի քանի րոպէ լուռ կանգնած մնաց, յետոյ տատանուելով օրօրուեցաւ եւ ցած ընկաւ համարեա իմ ոտքերի մօտ:

"Թէ ինչ կրեցի ես այդ սարսափելի րոպէներում, չեմ ցանկանում իմ ամենաչար թշնամուն անգամ: Երկինքը սոսկալի կերպով պատժում էր ինձ իմ յանցանքի համար: Այդ րոպէում ես մոռացել էի մեր կրօնքների տարբերութիւնը, մոռացել [illegible] իմ հօրեղբօրս [illegible] մոռացել էի ամբողջ աշխարհը եւ [illegible] միայն զարհուրելի դրութիւնը [illegible] անկի թանգագին էր [illegible]

«Այդ դէպքում անկարելի էր նրանց բացատրել, թէ որքան էլ ես սրտով ցանկանայի ազատել Սալիհայի կեանքը, դարձեալ չէի կարող, որովհետեւ ես քրիստոնեայ էի։ Այդ կը նշանակէր սպանել նրան։ Եւ ո՞ր բարբարոսը, եթէ նա լինէր իմ տեղը, այսպէս կը վարուէր։ Ես հետեւեցի իմ սրտի ձայնին, եւ բարձրացնելով կիսամեռ Սալիհային, եւ պահելով նրան իմ գրկի մէջ, ասեցի.

— «Հանգստացիր, իմ սիրելի եւ թանգագին ամուսին, հանգստացիր եւ դու, ով յարգելի մայր, փոխանակ տրտմութեան, թող ուրախութիւնը լցնէ մեր սրտերը։ Ես յանցաւոր եմ ձեր առջեւ, բայց հէնց այսօր կը քաւեմ իմ յանցանքը։ Հէնց որ կը վերադառնան Սալիհայի եղբայրները, ես իսկոյն կը խնդրեմ նրանց համաձայնութիւնը, որ մենք միանանք օրինաւոր ամուսնութիւնով։ Չենք յայտնի նրանց պատահածի մասին, կը ծածկենք նրանցից մեր գաղտնիքը։ Դու, իմ թանգագին Սալիհա, կը լինես իմ սիրելի կինը, իսկ դու, յարգելի մայրիկ, կ'ունենաս մի նոր որդի։

«Արտասանելով այդ խօսքերը, ես մոռանում էի, որ խոստանում էի մի անկարելութիւն, որով ստիպուած պիտի լինէի կամ դաւաճանել իմ կրօնին, կամ մեղանչել իմ խոստման դէմ։ Ես տեսնում էի միայն իմ Սալիհայի սարսափելի վիճակը եւ պատրաստ էի ամեն քայլ անել։

«Չեմ կարող նկարագրել այն ուրախութիւնը, որ տեղի ունեցաւ իմ խօսքերից յետոյ։ Սալիհան անսահման հոգեզմայլութեամբ ընկաւ իմ գիրկը։ Նրա մայրը չոքեց գետնի վրայ, աղօթում էր ինձ համար։ Ես այդ րոպէում լողում էի անչափ բախտաւորութեան մէջ։

## VI.

*Ջումշուղի ամուսնութիւնը Սալիհայի հետ:*

«Երբ որ վերադարձան Սալիհայի եղբայրները, ես յայտնեցի նրանց իմ ցանկութիւնը, թէ դիտաւորութիւն ունեմ ամուսնանալու նրանց քրոջ հետ։ Նրանք ուրախութեամբ տուեցին իրանց համաձայնութիւնը, որովհետեւ եղբօր պէս սիրում էին ինձ։ Միւս օրը նշանակուեցաւ մեր ամուսնութեան խորհուրդը կատարելու համար։ Առաջին օրը հաւաքուեցան մեր խրճթում շատ տղամարդիկ եւ կանայք, զուարճանում էին, երգում էին եւ քէֆ էին անում։ Երկրորդ օրը կատարուեցաւ խինայով[1] ձեռքեր ներկելու սովորութիւնը։ Երրորդ օրը բոլոր պատրաստութիւնները պսակի խորհուրդը կատարելու համար արդէն կարգի էին դրուած։ Եւ չը նայելով բարք ու վարքի պարզութեանը, որ տիրում է ջուանշիրցիների մէջ, ես ստացայ այդ օրուայ մէջ բազմաթիւ ընծաներ իմ հարսնացուի ազգականներից եւ բարեկամներից։ Ես հագնուած էի փառաւոր կերպով. բոլորը աշխատում էին ցոյց տալ ինձ իրանց համակրութիւնը. եւ ես էի այն օր կատարելապէս բոլոր հրաւիրեալների պետը։ Իմ հարսնացուի երկու եղբայրները էին այնօրուայ հանդէսի մէջ իմ սաղդաստը եւ սոլդաստը.[2] դրանք ամենայն ճշտութեամբ կատարում էին

---

[1] Խինա առանձին բոյս է [illegible] տրորում են իրանց ձեռները եւ [illegible]
Խինան մի առանձին բոյս [illegible]
շաղախում են ջրով, եւ դրա [illegible]
ներկելու համար, գլխաւորապէս [illegible]
ծիրանի գոյն է առնում [illegible]

[2] Սաղդաստ [illegible]
Ծան. հեղ.։

իմ բոլոր հրամանները։ Ես մոռացայ քեզ ասելու, որ հարսանիքի հանդէսը կատարելու ժամանակ ինձ յատկացրել էին մի առանձին խրճիթ, որը բաւական հեռու էր Սալեհայի խրճիթից։ Սալեհան այնօր հագած ունէր իր ամենաշքեղ զգեստները, օծուած էր անուշահոտ իւղերով, ստանում էր նոյնպէս ընծաներ։ Բոլոր կանայքը, որ հաւաքուած էին նրա մօտ, անընդհատ հանաքներ էին անում եւ զուարճացնում էին նրան։

"Երբ որ ժամանակը հասաւ, ես նստեցի ձիու վրայ, եւ իմ բոլոր հիւրերի ուղեկցութեամբ, գնացի Սալեհային ընդառաջ։ Նա եւս մօտենում էր ինձ հակառակ կողմից, նոյնպէս ձիին վրայ նստած եւ շրջապատուած իր ազգականներով ու բարեկամներով։ Ջուանշիրցիների սովորութեան համեմատ, դեռ Սալեհան բոլորովին ինձ չմօտեցած, ես նետեցի դէպի նրան մի խնձոր, որ այս նպատակով ձեռքումս բռնած ունէի։ Դա մի նշան էր խաղերը սկսելու համար։ Այդ միջոցին Սալեհան, որ նստած էր մի ամենալաւ նժոյգի վրայ, նետի նման սլացաւ դէպի իր բնակարանը։ Իմ խումբը ընկաւ նրա ետեւից։ Նրա խումբը ընդդիմադրում էր, աշխատում էր օգնել փախստականին։ Իսկ իմ մարդիկը աշխատում էին բռնել Սալեհայի ձիու սանձից եւ կանգնեցնել նրան։ Երկար մրցութիւնից յետոյ, մէկը իմ խմբից կարողացաւ կանգնեցնել նրան։ Մենք միացանք եւ ամբողջ խումբերով դիմեցինք դէպի իմ բնակարանը։ Երբ որ հասանք իմ խրճիթին, ես սկսեցի խնդրել Սալեհային, որ ցած իջնէ

[illegible]-դ-գ ա տ ա տ նշ. աջ ձեռք, իսկ տօլ-գ ա տ ա տ նշ. ձախ ձեռք.
[illegible]ում են այն [illegible], որոնք հարսանիքի հանդէսը կա-[illegible]ախ կողմերից շրջապատում են փեսային։ Դրանք ն ե ր ի ն։ Ծան. թարգ.։

ձիուց․ ինձ հետ ծանօթացրին եւ նրա բոլոր ազգականները։ Բայց կանայքը, որ ուղեկցում էին Սալիհային, յորդորում էին նրան չկատարել իմ խնդիրքը։ Այդ հասարակ ծէսի համար տեղի ունեցան երկար հակաճառութիւններ։ Վերջապէս Սալիհան ձիուց ցած իջաւ, ես ընդունեցի նրան եւ հանդիսաւոր կերպով ներս տարայ իմ խրճիթը։ Մօլլան պատրաստ էր․ նա կատարեց պսակի խորհուրդը, կարդալով մի քանի գլուխներ ղօրանից։ Յետոյ բոլորը հաւաքուեցան իմ խրճիթում, աղաղակում էին․ երգում էին եւ թռչկոտում էին։ Երբ նուագածուները իրանց քամանչաներով[1] յայտնուեցան, հանդիսականների ուրախութիւնը աւելի կենդանացաւ։ Սկսեցին պարել։ Բոլորը միմեանց ձեռքից բռնելով, եւ շրջանակներ կազմելով, նուագարանների եղանակի համեմատ, զանազան շարժումներ էին գործում մինչեւ կէս գիշեր։ Մեր ձմերանոցի բոլոր խաշնարածները զուարճանում էին իմ հարսանիքում։ Սալիհան գոհ էր եւ ուրախ, ինչպէս մի երեխայ, նա բոլորովին նուիրուած էր ինձ եւ անսահման կերպով սիրում էր ինձ։ Նրա եղբայրները եւ մայրը նոյնպէս գոհ էին Սալիհայի բախտաւորութիւնով։ Իսկ ես գոհ էի իմ նուիրած զոհաբերութեամբ, որով դարձայ փրկիչ այն աղարածի կեանքին, որին սիրում էի, եւ բախտաւորացրի նրա ընտանիքը։

“Ինձ տուեցին որպէս մշտական սեպհականութիւն այն խրճիթը, որի մէջ կատարուեցաւ իմ ամուսնական խորհուրդը, եւ ես բնակուեցայ այնտեղ իմ անգին կենակցի հետ։ Ո՜րպիսի բերկրալի օրեր անց էի կացնում ես նրա հետ․ ո՜րքան անսահման բաւականութիւն էի

1 Քամանչա, մուզիկայի գործիք է։ Ծան. հեղ.։

վայելում նրա կուրծքի վրայ։ Սալիհան այնքան բարի էր, այնքան հնազանդ էր, այնքան սիրելի էր, որ ես համարում էի ինձ այս աշխարհի մարդիկներից ամենաբախտաւորը եւ բոլորովին մոռացել էի իմ դրութիւնը։

«Երբեմն իմ առանձնակի խորհրդածութիւնների ժամանակ, ինձ ներկայանում էր իմ գործած յանցանքը, — այն զեղծումը, որ ես կատարել էի մեր կրօնի կանոնների հակառակ, որոնք արգելում են քրիստոնեային ամուսնական կապով միանալ մահմեդականի հետ։ Ես զգում էի, որ ես շատ վատ եմ, եւ չգիտէի, թէ ինչ երեսով պիտի յայտնուեմ հօրեղբօրս մօտ եւ ինչ պիտի ասեմ նրան։ Այսպէս երբեմն տանջվում էի ես եւ յուսահատութեան մէջ պատրաստ էի ամեն ծայրայեղութիւնների դիմել։ Բայց հէնց որ նայում էի Սալիհայի վրայ, իմ բոլոր մթին մտածութիւնները իսկոյն անհետանում էին, եւ բաւականանում էի միայն նրան տեսնելու զուարճութեամբ։

«Այսպէս անցաւ երեք տարի։ Ես հայր եղայ մի որդու եւ մի դստեր։ Զաւակներիս ծնունդից յետոյ Սալիհան երեւում էր ինձ աւելի պաշտելի եւ աւելի կատարեալ։ Ես ապրում էի, ես շնչում էի միայն նրանով։ Հետեւելով ամեն բանի մէջ ջուանշիրցիների պարզ կենցաղավարութեան եղանակներին, մենք նրանց հետ գարունքին չուում էինք դէպի լեռների բարձրութիւնները, իսկ երբ սկսվում էր ձմեռը, կրկին վերադառնում էինք դէպի մեր գետնափոր խրճիթները։

«Իմ երջանկութիւնը կատարեալ լինելու համար, պակաս էր միայն՝ տեսնել իմ Սալիհային քրիստոնեայ։ Դրանով ես կամենում էի հանգստացնել իմ խիղճը, սաստիկ բողոքում էր իմ ամուսնութեան դէմ։ Այդ

Նպատակով ես աշխատում էի ծանօթացնել իմ կնոջը մեր կրօնի մտքերի եւ սուրբ ճշմարտութիւնների հետ։ Սալիհան մեծ հաճութեամբ լսում էր բոլորը, ինչ որ պատմում էի նրան։ Նա շուտով ստացաւ բաւական հիմնաւոր տեղեկութիւններ մեր կրօնի վարդապետութիւնների մասին։ Տեսնելով նրան բոլորովին պատրաստուած, յայտնեցի նրան, որ ես քրիստոնեայ եմ եւ Վարանդայի մելիքի եղբօր որդին։ Պատմեցի նրան իմ ջուանշիրցիների մօտ ուղարկուելու իսկական նպատակը եւ բոլոր անցքերը, ինչպէս որ ճշմարտապէս էին։ Նա զարմացած լսում էր իմ պատմութիւնը եւ զգում էր, թէ որքան շատ նրա համար զոհել էի ես, եւ խորին հրճուանքով հաւատացնում էր ինձ, որ պատրաստ է լինել քրիստոնեայ, եւ ամեն տեղ հետեւել ինձ, ուր որ ես գնալու լինեմ։

"Ուրախացած այդ բարեբախտ նորութիւնով, ես միայն մտածում էի, թէ արդեօք ինչպէս պէտք է ի կատար ածել իմ ցանկութիւնները, որոնք կայանում էին նրանում, որ Սալիհային մկրտել տամ, եւ իմ հօրեղբօր համաձայնութիւնը ստանամ, որ նա ընդունէ մեր ամուսնութիւնը։

"Հօրեղբօրս ինձ համար նշանակած ժամանակամի[illegible] արդէն անցել էր, եւ ես կարող էի վերադառնալ [illegible] մօտ, առանց որ եւ է դժուարութեան հանդիպելու [illegible] յայտնեցի Սալիհային իմ դիտաւորութիւնը. Նա [illegible] ձայնուեցաւ, թէեւ չէր կարող [illegible] ծել, որ սախպուած [illegible] ինձանից։ Նա աշ[illegible] լով, որ բաժանվ[illegible] օրով։ Նա յանձնեց[illegible]

"Լսելով այդ խօսքերը, ես շուարած մնացի, իմ բոլոր յոյսերը կորան։ Իսկ հօրեղբայրս խօսում էր այդ խնամութեան վրայ խիստ մեծ փափագով։ Դրանով նա յոյս ունէր ամրացնել հաստատուն հիմքի վրայ մի սերտ, բարեկամական կապ Խամսայի բոլոր մելիքների մէջ։ Տեսնելով նրա դիտաւորութիւնները, այլ եւս չհամարձակուեցայ յայտնել նրան, թէ ես արդէն ամուսնացած եմ, որովհետեւ գիտէի, որ նա իր քաղաքական նպատակների համար, պատրաստ կը լինի զոհել իմ թանգագին Սալբհային։ Բայց ես չէի կարող համաձայնուել նրա առաջարկութեան հետ. այդ պարզ տեսնում ես դու։ — Ահա բոլոր պատճառները, որ ստիպեցին ինձ այնպէս յամառութեամբ մերժել նրա ցանկութիւնները եւ չյայտնել նրան իմ գաղտնիքը։ Ինքդ դատիր, աստղագէտ, արդեօք իմ վարմունքը իրաւացի չէ՞ր։

Այդ պատմութեան ժամանակ աստղագէտը իր բոլոր լսածների պատճառով գտնվում էր զարմացած եւ հիացած դրութեան մէջ։

— Դուք բոլորովին իրաւացի էք, յարգելի մելիք, պատասխանեց նա. — երդւում եմ իմ մօրուքով, հազար անգամ իրաւացի էք։ Ես երբէք այդ գաղտնիքը չէի հասկանայ, եթէ դուք ինքներդ չը բաց անէիք։ Ի նկատի առնելով ձեր հօրեղբօր դիւրաբորբոք բնաւորութիւնը եւ գործի այժմեան դրութիւնը, իրաւ է, որ չէ կարելի յայտնել նրան ձեր ամուսնութեան մասին Սալբհայի հետ։

— Ինձ առաւելապէս անհանգստացնում է այն, պատասխանեց մելիքը, — որ ես մինչեւ այժմ չկարողացայ տեղեկութիւն ստանալ իմ կնոջ եւ զաւակների մասին, եւ չկարողացայ նաեւ իմ մասին տեղեկութիւն տալ նրանց, որովհետեւ վախենում էի հօրեղբօրիցս։

Երեւակայում եմ, թէ որքա՜ն անհանգիստ կը լինեն նրանք, ամբողջ երկու ամիս ոչ մի լուր չը ստանալով իմ մասին։ Բայց ես նրանցից բաժանուելու ժամանակ խոստացայ, որ ինքս կը վերադառնամ քանի օրից յետոյ։

Աստղագէտը պատասխանեց.

— Եթէ Ալին եւ սուրբ մարգարէն յաջողութիւն կը շնորհեն եւ ես շուտով կ'ազատուեմ այդ վէրայից, ես ձեզ ապահովացնում եմ, մելիք, որ դուք վստահութեամբ կարող էք յանձնել ինձ ձեր մասին տեղեկութիւններ տանել ձեր կնոջը եւ զաւակներին։ Ես կ'աշխատեմ ապացուցանել ձեր առջեւ իմ հաւատարմութիւնը, որ դուք մտածէք, թէ աստղագէտ Հասանն էլ մի որ եւ է բանի պէտք կը գայ։ Ես ձեզ այնքան սիրեցի, մելիք, որ պատրաստ եմ կրել երկու հարիւր հարուածներ իմ ոտների տակ, միայն թէ տեսնէի ձեզ հանգիստ եւ բախտաւոր։

— Շնորհակալ եմ, Հասան, պատասխանեց երիտասարդը, — ես կը վարձատրեմ քո հաւատարմութիւնը, երբ որ կը կարողանամ, եւ այն չափով, որ դու միշտ կը յիշես։ Եթէ ես գիտենայի, որ իմ կինը եւ զաւակներս հանգիստ ու առողջ են, այն ժամանակ ես համբերութեամբ կը տանէի այդ բանտի չարչարանքները, որովհետեւ կը մտածէի, որ այդ բոլորը կրում եմ նրանց համար, որոնք այդ աշխարհում ամեն բանից աւելի թանգագին են ինձ համար։

Այսպէս խօսելով, նրանք չնկատեցին, որ ամառնային կարճատեւ գիշերը արդէն անցել էր. եւ արշալոյսի առաջին ճառագայթները, ծագելով հրեղէն ժապաւէնի նման, աւետում էին նոր եւ պայծառ առաւօտ։ Բայց նրանց ստորերկրեայ վիրապի մէջ լոյսի շառաւիղները թափանցել չէին կարող։

Թալիշի մելիքի որդին արդէն տասն օր էր, որ գտնվում էր Ջանախչի աւանում եւ տհաճութեամբ սպասում էր մի վճռական պատասխանի, որը օրըստօրէ յետաձգելով, ուշացնում էին։ Նա մտածում էր, որ իր քրոջ հետ ամուսնանալու պատիւը պէտք է ուրախութեամբ լցնէր Ջումշուդի սիրտը, բայց տեսնում էր դրա հակառակը։ Այն ծածկամտութիւնը, որով թագցնում էին նրանից Ջումշուդի եւ իր հօրեղբօր մէջ տեղի ունեցած խօսակցութիւնները, որոնք նրա կարծիքով բոլորովին աւելորդ էին, միանգամայն համբերութիւնից դուրս էր բերում նրան։ Նա արդէն վճռել էլ գնալ մելիքի մօտ եւ բացարձակ կերպով յայտնել իր պահանջը, երբ նրան կանչեցին մելիքի մօտ։

— Շատ ցաւում եմ, սիրելի Յուսէին[1], որ ես պիտի յայտնեմ քեզ անախորժ նորութիւն... ասաց նա։

— Ինձ թւում է, պատասխանեց դիւրաբորբոք երիտասարդը, — որ ոչինչ բան այնքան անախորժ չէր կարող լինել, քան ինձ ի զուր սպասել տալը, որով այդքան ժամանակ տանջեցիք ինձ։

— Ի՞նչպէս, մի՞թէ դուք ձանձրանում էք իմ հիւրասիրութիւնից։

---

[1] Յուսէին։ 384 էջի, 1. ծանօթութեան մէջ ցոյց տուեցինք, որ Մելիք-Շահնազար Բ-ի ժամանակակիցը եւ նրա հետ թշնամական յարաբերութիւններ ունեցող Թալիշի կամ Գիւլիստանի իշխանը էր Մելիք-Բէգլարեան Մելիք-Յովսէփը։ Իսկ արդեօք այդ Մելիք-Յովսէփը ունէ՞ր Յուսէին անունով որդի, որին որպէս հերոս յիշում է հեղինակը իր վէպի մէջ, — մեզ յայտնի չէ։ Մեզ յայտնի է այդքանը միայն, որ Մելիք-Յովսէփը ունէր Մելիք-Բէգլար անունով մի որդի, որը դեռ եւս հօր կենդանութեան ժամանակ յայտնի էր իր քաջագործութիւններով եւ չափազանց անվեհեր բնաւորութեամբ։ Տես մեր "Խամսայի Մելիքութիւնները" գրքի 64, 82—84, 179 երեսները։ Ծան. Թարգ.։

— Ի հարկէ, ձանձրանում եմ, որովհետեւ ես եկած եմ այստեղ գործի համար, որը վաղուց պէտք է վերջացած լինէր։ Ես չէի կարծում, որ տասն եւ չորս տարի առաջ տուած խօսքը կատարելու համար, կրկին հարկաւոր կը լինէին այդքան խորհրդակցութիւններ, այդքան յետաձգումներ։

Մելիք Շահնազարեանին չափազանց տհաճութիւն պատճառեց իւր հիւրի վարմունքը, որը այդպէս գոռոզաբար էր խօսում նրա հետ։ Բայց, որքան կարելի է, զսպելով իր բարկութիւնը, շարունակեց.

— Ես վաղուց ցանկութիւն ունէի եւ մեծ ուրախութեամբ կը փութայի ձեր հօտ հետ տեսութիւն անել. ես զգում եմ դէպի նա խորին յարգանք եւ բարեկամութիւն. նա միշտ գտնուել է ինձ հետ սերտ դաշնակցութեան մէջ։ Բայց ինչ պէտք է արած։ Ես աշխատում եմ համոզել իմ եղբօրորդուն, բայց նրա յամառութիւնը միակ պատճառն է գործի բոլոր յետաձգութեան...

— Ի՞նչպէս, ընդմիջեց նրան մելիք Ցուսէնը աւելի բորբոքուելով, — Ջումշուդը չէ՞ համաձայնվում պսակուել իմ քրոջ հետ։ Մի՞թէ նա կարծում է, որ կարող է մեզ հետ անպատիժ կերպով այսպիսի կատակներ անել։ Եւ դուք, մելիք, լինելով այդ տան գլխաւորը, լինելով նրա հօրեղբայրը, թո՞յլ էք տալիս նրան այդպէս վարուել։ Ես պարզ տեսնում եմ, որ դուք նրա հետ կամակից էք եւ գործում էք ընդհանուր համաձայնութեամբ։ Էլ ինչու էիք ինձ ի զուր տեղը այսքան սպասել տալիս։ Կարելի էր շատ շուտով տալ այդ գեղեցիկ պատասխանը։ Ո՞վ կը մտածէր, որ Վարանդայի մելիքը կը խաղայ իր տուած խօսքի հետ, ինչպէս մի երեխայ...

— Հանդարտուիր, հանդարտուիր այ տղայ, ընդհատեց նրան մելիք Շահնազարեանը, — դու մոռանում ես քեզ…

— Ամենեւին չեմ մոռանում… պատասխանեց գայրացած երիտասարդը։ — Իսկ դուք զգո՞ւմ էք, մելիք, թէ ի՛նչ կարծիք պէտք է ունենալ մի մարդու վրայ, որ տասն եւ չորս տարի առաջ, Խամսայի բոլոր մելիքների ներկայութեամբ տուած խօսքը, առանց որ եւ իցէ պատճառի, այժմ կամենում է ոչնչացնել։ Ի՞նչ անուն պէտք է տալ մի այսպիսի մարդուն…

— Յուսէփն, մտածիր, որ դու քո տանը չես…

— Ես ամեն տեղ մի եւ նոյն եմ. կը խօսեմ ճշմարիտը ամեն տեղ եւ ամեն մարդու երեսին։ Դուք համարձակվում էք ծածկել նախատինքով իմ քրոջ եւ մեր ամբողջ տան անունը, իսկ ես պէտք է լռե՞մ…

— Բայց Յուսէփն, միթէ այդ իմ մեղն է…

— Մելիք, ես երեխայ չեմ, ես լաւ հասկանում եմ ձեր անտեղի պատճառաբանութիւնները։ Մի ծածկեցէք իսկութիւնը այսպիսի դատարկ հէքեաթներով, որոնց ես բնաւ չեմ հաւատում։ Մենք ունենք թրեր եւ խէնջարներ, որոնք ձեր ունեցածից ամենեւին սուր չեն. մեր զօրքը ձերից պակաս չէ։ Դուք շուտով կը տեսնէք, թէ Թալիշի մելիքը գիտէ արդեօք վրէժխնդիր լինել իր վիրաւորանքի համար, թէ ոչ։ Ձեր Չանախչին սարերից չէ կազմուած…

— Յուսէփն, պատիւ դնելով քո հօրը, ես միայն ներում եմ քեզ քո գոռոզ խօսքերի համար։

— Ես կարօտութիւն չունեմ ձեր ներողամտութեան։ Ահա իմ պաշտպանը։ Նա ձեռքը դրեց խէնջարի վրայ։ — Նրանով համարձակ կ'ասեմ ամենի առջեւ, թէ Մելիք-Շահնազարեանը խաբեբայ է…

*Մելիքի բարկութիւնը բորբոքուեցաւ ինչպէս կայծակ, աչքերը լցուեցան արիւնով, եւ նա գոչեց.*

*— Լիրբ տղայ, դուրս իմ անից, թէ չէ, երդվում եմ բոլոր սրբերի անունով, որ ես ակնածութիւն չեմ անի հիւրասիրութեան սուրբ օրէնքներին, որոնք պաշտպանում են քեզ իմ հարուածներից: — Դուրս, կրկնում եմ քեզ: Ես արհամարհում եմ քեզ, արհամարհում եմ քո բոլոր ընտանիքը, քո զօրքը եւ ամբողջ Թալիշի ժողովուրդը: Թող լինի անէծք, մահ եւ մշտական պատերազմ մեր մէջ, մինչեւ ես կը կործանեմ քո Ջէյվան եւ կը շաղախեմ արիւնով ձեր բնակարանների մոխիրը: Եթէ ես չվախենայի պղծել իմ ձեռքերը, քեզ անպատճառ կտոր-կտոր կ'անէի եւ քո մարմինը կը տայի գիշակեր թռչուններին ուտելու համար: — Տէր Աստուած, ինչ եմ տեսնում ես, մի համբակ համարձակվում է հայհոյել ինձ...*

*— Մի կատաղիր, մելիք, ասաց Յուսէինը սառնասրտութեամբ, — դու ի զուր քո արիւնը կը պղտորես... Նա դուրս եկաւ սենեակից, հեծաւ իր ձին եւ իր խմբի հետ հեռացաւ Ջանախչիից:*

*Մելիքը մնաց որպէս քարացած: Սրտմտութիւնից երկար չէր կարողանում արտասանել մի բառ անգամ: Բարկութիւնը բոլորովին տիրել էր նրան:*

## VIII.

*Ծառ խոստացողը:*

*Մեր լեղձ կալանաւորները, որոնք տանջվում էին վիրապի մէջ, ազատուեցան: Դեռ կէսօր չէր եղած, նրանց կանչեցին մելիքի մօտ:*

Նա սիրով ընդունեց նրանց, խնդրեց մոռանալ բոլոր անցածը, եւ յայտնեց Ջումշուդին իր մշտական բարեկամութիւնը, ասելով․

— Ներիր ինձ, սիրելի Ջումշուդ, իմ բարկութեան համար։ Ես, արդարեւ, վիրաւորեցի քեզ, բայց պէտք է գիտենաս, որ դու ինքդ առիթ տուեցիր...։ Ինձ այժմ սաստիկ ցաւ է պատճառում, մտածելով, որ կրկին պիտի սկսուի մեր երկրում ներքին պատերազմը, որը այժմ բոլորովին անխուսափելի է դարձել։ Նստիր, Ջումշուդ, այդ մասին աւելի մանրամասնաբար պիտի խօսեմ քեզ հետ։

Ջումշուդը նստեց, ասելով․

— Ոչ թէ ձեզ, այլ ինձ, հօրեղբայր, պէտք է ներողութիւն խնդրել․ ես այնքան յանցաւոր եմ ձեր առջեւ, որ չգիտեմ, թէ ի՞նչով կարող եմ քաւել իմ յանցանքը։

— Մոռացութեան տանք այդ բոլորը, սիրելի Ջումշուդ, ասաց մելիքը։ — Ինձ ծանօթ է քո փորձառութիւնը եւ քո քաջութիւնը պատերազմական գործերում, այդ պատճառով ցանկանում եմ յայտնել քեզ իմ դիտաւորութիւնները։ Ես մերժեցի Թալիշի մելիքի առաջարկութիւնը․ դրանից յետոյ դու ազատ ես քո պարտաւորութիւնից․ այդ մասին կարող ես անհոգ լինել․ ես այլ եւս չեմ ստիպելու քեզ ամուսնանալ նրա աղջկայ հետ։ Ես այժմ դժոխքի նման ատում եմ նրանց բոլոր ընտանիքը։

— Ա՜խ, ո՜րքան շնորհակալ եմ ձեզանից, հօրեղբայր, ո՜րքան բախտաւոր եմ ես եւ ո՜րքան ուրախ։ Դուք չափազանց ողորմած էք դէպի ինձ։

— Շնորհակալ մի լինիր ինձանից, Ջումշուդ։ Ես կռուեցայ Թալիշեցիների հետ, որովհետեւ քո նախկին

հարսնացուի եղբայրը, այն լիրբ, անպիտան տղան, համար-
ձակուեցաւ իմ տան մէջ ինձ խրատներ տալ... հա-
մարձակուեցաւ կոչել ինձ խաբեբայ...: Չեմ կարող
առանց կատաղութեան մտաբերել այդ բոլորը: Ես յայտ-
նեցի նրան պատերազմ եւ մենք պէտք է դրա համար
պատրաստուենք: Ինձ շատ լաւ յայտնի է, հէնց որ
Թալիշի մելիքը կը հրատարակէ իրան իմ թշնամի, այն
ժամանակ Խամսայի բոլոր մնացած մելիքները անպատճառ
կը միանան նրա հետ, եւ ես ստիպուած կը լինեմ
պատերազմել չորս մելիքների դէմ: Մենք ունենք բաւա-
կան զօրք, այդ ճշմարիտ է, եւ կասկած չունենք մեր
զօրքերի քաջութեան մէջ, այսուամենայնիւ, ուժերի
գերազանցութիւնը դարձեալ նրանց կողմը կը մնայ. —
չորսը մէկի դէմ: Մենք պէտք է աւելի հիմնաւոր կեր-
պով մտածենք, թէ ինչով կարող ենք առաջը առնել
այն փոթորիկի, որը սպառնում է մեզ: Ասա ինձ, Ջում-
շուդ, դու այնքան երկար գտնվում էիր Ջուանշիրցիների
մօտ, ծանօթ ես նրանց բարքուվարքին ու քաջութեանը
ասա՛, դու ի՞նչ կարծիք ունես նրանց մասին: Արդեօք
նրանք նոյնքան արի են, նոյնքան ճարպիկ են կռիւների
մէջ եւ նոյնքան անձնավստահ են յարձակումների մէջ, որ-
քան նրանց մասին խօսվում է:

— Ջուանշիրցի ասպատակները ոչ առանց պատ-
ճառի հռչակուած են իրանց արհեստով եւ քաջու-
թիւններով:

— Երբ որ այդպէս է, ուրեմն ես կը յայտնեմ քեզ
իմ նպատակը: Ես կամենում եմ խնդրել Փանահ-
խանից եւ նրա Ջուանշիրցիներից, որ ինձ օգնեն մեր
մելիքների դէմ: Այդ անհրաժեշտ է: Դիտաւորութիւն
ունեմ քեզ յանձնել այդ պատգամաւորութիւնը: Լաւ

ծանօթ լինելով բոլոր հանգամանքներին, որ վերաբերում են այդ լեռնաբնակների բարքուվարքին, դու աւելի հեշտ կարող ես կատարել այդ դեսպանախօսութիւնը։

— Մեծ ուրախութեամբ կը կատարեմ ձեր հրամանը, հօրեղբայր, պատասխանեց հիացած Ջումշուդը։ — Չէ՞ կարելի, որ հէնց այսօր թոյլ տաք ինձ ճանապարհ ընկնելու։ Որքան շուտ, այնքան լաւ։ Որովհետեւ մենք կը փութացնենք գործը, դժուարութեան մէջ դնելով մեր թշնամիներին, եւ միջոց կ'ունենանք նախապէս յարձակում գործելու նրանց երկրների վրայ։

— Քո գաղտնութիւնը շատ խելացի է, Ջումշուդ, բայց հարկաւոր է գոնէ մէկ օրով յետաձգել քո գնալը։ Ես կամենում եմ, որ դու ներկայանաս Փանահ-խանին այն փառքով, որ պատշաճ է Վարանդայի իշխանին։ Ես կը տամ քեզ մեծաքանակ ախտայ (շքախումբ) եւ կը յանձնեմ տանելու թանգագին ընծաներ։ Փանահ-խանը երկար տարիներ ապրել է պարսիկների մէջ, որոնց մօտ առանց փ ի շ ք է շ ի[1] չէ կատարվում ոչ մի գործ, եւ նա ինքը, անտարակոյս, կը սիրէ փ ի շ ք է շ ն ե ր։

Յետոյ նա դարձաւ դէպի աստղագէտը, ասելով.

— Իսկ դու, իմ թանգագին աստղագէտ, նոյնպէս մոռացիր մեր անցեալ տարաձայնութիւնը, եւ ուղիղ կերպով որոշիր, թէ էգուց ո՞ր ժամին աւելի յարմար կը լինի իմ դեսպանութիւնը ճանապարհ դնելու։ Միայն խնդրում եմ, մի՛ խառնափնթորիր քո նախագուշակութիւնները, ինչպէս երէկ արեցիր, գործը դատարկ բանի չէ վերաբերում։

---

[1] Փ ի շ ք է շ. ընծայ։ Ծան. հեղ.։

— Ամենամեծ ուրախութեամբ, մելիք, պատասխանեց աստղագէտը. — միայն թոյլ տուեցէք խնդրել ձեզ, որ ինձ եւս ուղարկէք Ջումշուդի հետ։

— Ի՞նչու համար։

— Նրա համար, որ ձեր դեսպանութիւնը կարողանայ իր բոլոր քայլերը, իր ամեն մի վարմունքը տնօրինել ըստ ժամանակին, համեմատ բարեյաջող աստղերի ազդեցութեանը։ Ես կը լինեմ ձեր դեսպանութեան ուղեցոյցը, եւ դուք կարող էք յոյս դնել կատարեալ յաջողութեան վրայ։

— Համաձայն եմ, պատասխանեց մելիքը, — աւելի լաւ է, որ ես առժամանակ զրկուած լինել մի այնպիսի իմաստուն մարդու ներկայութիւնից, որպիսին դու ես, որը կարող է ինձ համար որոշել ժամանակները, թէ երբ պէտք է չիբուխ ծխել, երբ պէտք է գնալ որսորդութեան եւայլն։ Կարծեմ, դրանից աւելի մի այլ կարեւոր պարապմունք չի պիտի ունենամ մինչեւ ձեր վերադառնալը։ Որովհետեւ Թալիշի մելիքը միայնակ չի համարձակուի արշաւանք գործել իմ երկրի վրայ. իսկ մինչեւ միւս մելիքներին իր հետ միացնելը, դուք Աստուծոյ յաջողութեամբ վերադարձած կը լինիք, եւ ես քաջ ջուանշիրցիների աջակցութեամբ երկիւղ չեմ ունենայ մեր ուժերի անհաւասարութեան մասին։ Մնաք բարեաւ, իմ սիրելիներ, գնացէք հանգստացէք, երէկուայ անախորժութիւններից յետոյ, ձեզ պէտք է հանգստանալ եւ պատրաստուել ճանապարհի համար։ Ընծաների եւ ձեր սվիտայի համար ես ինքս հոգ կը տանեմ։

Ջումշուդը հրաւիրեց աստղագէտին իր սենեակը, այն պատրուակով, իբր թէ կամենում է նրանից լսել մի քանի նախազգուշակութիւններ։ Երբ նրանք առանձնացան,

Ջումշուդը սկսեց գժի նման վազվզել իր սենեակում, բացականչելով.

— Ինչ բախտ է, ինչ բախտ է, ես այժմ ազատուած եմ այն բարբարոսական ամուսնութիւնից, որը ինձ այնքան տանջում էր։ Ես հաշտուեցայ հօրեղբօրս հետ, ես կրկին կը տեսնեմ իմ սիրելի, գեղեցիկ Սալէհային եւ կը գրկեմ իմ երեխաներին։ Ա՜խ, որքան բախտաւոր եմ ես. որքան ցանկանում եմ, որ շուտով անցնէինք այդ օրը, որը անտանելի է ինձ իր երկարութեամբ... Այստեղ ընդհատեց նա իր խօսքը, եւ դառնալով աստղագէտին, որը այդ միջոցին ինչ որ գրում էր, ասաց.

— Դէ՛ն գցիր, խնդրեմ, քո այդ կախարդական համարութիւնները, եւ ուրախացիր ինձ հետ...

— Ես մեծ բաւականութեամբ ուրախակից եմ լինում ձեզ, պատասխանեց աստղագէտը գլուխը վեր բարձրացնելով. — եւ հէնց այդ րոպէում ձեր ուրախութիւնը բազմապատիկ անելու համար էի կատարում իմ համարութիւնները։

— Ես այդ բաներին շատ չեմ հաւատում. դու հաշւում ես աստղերի ընթացքը, բայց հիմայ ցերեկ է, նրանց տեսնել անկարելի է։

— Հարկաւոր չէ անպատճառ տեսնել նրանց։ Ինձ յայտնի են նրանց շրջանները, նրանց պտըտուելու ժամանակները, թէ իրանց առանցքի շուրջը եւ թէ երկրագնտի շուրջը...

— Լսիր, դու խոստացար լինել իմ հաւատարիմ ծառայ, իսկ այժմ քո կեղծապատիր պատմութիւններով աշխատում ես խաբել ինձ, ինչպէս խաբում ես ուրիշներին։ Խոստովանիր, որ քո բոլոր աստղաբաշխական գիտութիւնը կատարեալ ստութիւն է։

— Դէ՛, մելիք...

— Պահիր քո քարոզները նրանց համար, որոնք հաւատում են քեզ։ Ես չեմ մեղադրում քեզ քո խորամանկութիւնների համար. պէտք է մի բանով հաց ճարել, եւ ի հարկէ, աւելի լաւ է աստղագէտ լինել, քան թէ մուրացկանութիւն անել։ Ճակատագիրը ամենին հարստութիւն չէ տալիս։ Դու ինչով ես մեղաւոր որ քեզ չվիճակուեցաւ խան լինել։ Այն ժամանակ դու էլ քո կողմից կը հաւատայիր եւ կը վարձատրէիր մի որ եւ իցէ աստղագէտին նրա նախագուշակութիւնների համար։

— Ի՞նչպէս, մելիք, միթէ դուք այդպիսի կարծիք ունէք իմ մասին...

— Ոչ միայն կարծիք, այլ համոզուած եմ, որ այդպէս է։

— Ուրեմն ես չունե՞մ ձեր աչքում ոչ մի արժանաւորութիւն։

— Ընդհակառակն, դու ունես հաւատարիմ ծառայի արժանաւորութիւններ, եթէ միայն ցանկանալու լինես։ Եւ հաւատա ինձ, որ այդ ծառայութիւնը քեզ համար աւելի օգտաբեր եւ շահաւէտ կը լինի, քան թէ քո բոլոր աստղաբաշխական գիտութիւնը։ Ես կամենում եմ յանձնել քեզ մի կարեւոր գործ։ Լսիր.

Մենք էգուց պիտի ճանապարհ ընկնենք դէպի Ջուանշիրցիների օբաները. երբ կը մօտենանք Փանահ-խանի բնակարանին, դու պէտք է աննկատելի կերպով բաժանուես իմ սվիտայից եւ գնաս իմ սիրելի Սալիհայի օբան։ Այնտեղ զգուշութեամբ նրա մասին տեղեկութիւններ պէտք է հաւաքես, յետոյ պիտի աշխատես տեսնուել իմ կնոջ հետ այնպէս, որ ոչ ոք նրա ազգականներից չնկատէ։ Յետոյ նոյնպէս զգուշութեամբ կը

վերադառնաս ինձ մօտ եւ քո բոլոր տեղեկութիւնները կը հաղորդես ինձ։ Եթէ դու այդ բոլորը խոհեմութեամբ կը կատարես, այն ժամանակ ես կարող եմ նախագուշակել քեզ համար, աւելի ճշգութեամբ քան բոլոր աստղագէտները, որ շատ թ ո ւ մ ա ն ն ե ր[1] իմ քսակից կը թռչեն եւ կը մտնեն քո գրպանը։ Տես, պէտք է զգոյշ լինես, եւ դրանից յետոյ, այդ գործի մասին մի բառ անգամ չի պիտի հանես բերանիցդ։ Որքան ուզում ես, քո աստղներով խաբիր իմ հօրեղբօրը եւ իմ բոլոր ազգատոհմին. այդ քո գործն է. միայն պէտք է գիտենաս, որ ես չեմ հաւատում քո համաստեղութիւններին։

— Ես պատրաստ եմ իմ ծառայութիւնը մատուցանել ձեզ, մէլիք, եւ դուք ինքներդ կը տեսնէք, թէ արդեօք ես կարող եմ տեղեկութիւններ հաւաքել մի գործի մասին, որ ճանաճն էլ չհասկանայ։ Պէտք է խոստովանուել, մէլիք, որ դուք առաջին խելացի մարդն էք, որոնց պատահել է ինձ տեսնել այս աշխարհում։ Խօսքը թող մեր մէջ մնայ, միթէ յիմարութիւն չէ՞ հաւատալ, թէ աստղները ազդեցութիւն ունեն մարդկային գործողութիւնների կամ վիճակի վրայ։ Այստեղ դեռ ոչինչ։ Նայեցէք, Պարսկաստանում մի քայլ անգամ չեն անում առանց աստղագէտի հետ խորհուրդ անելու. եթէ ձախ ոտքով անցար շէմքի վրայից — դժբախտութեան կը հանդիպես.[2] եթէ փռշտացիր — վատ

[1] Թ ո ւ մ ա ն պարսից դրամ է, որը հաւասարվում է 4 արծաթ րուբլու։ Ծան. հեղ.։

[2] Աջ եւ ձ ա խ ձեռքերի կամ ոտների խորհրդաւոր նշանակութիւնից առեղծուեցան մեզանում յ ա ջ ո ղ ա կ եւ յ ա ջ ո ղ ո ւ թ ի ւ ն, ձ ա խ ո ղ ա կ եւ ձ ա խ ո ր դ ո ւ թ ի ւ ն բառերը։ Ոչ միայն պարսիկների մէջ, այլ եւ հայերի մէջ աջ ոտքով առաջին քայլը անելը կամ մէկի շէմքից ներս մտնելը բարեյաջող խորհուրդ ունի, որի ընդհակառակը, ձախ ոտքի առաջին քայլը

է.[1] եթէ աղը վլթեցիր — կատարեալ դժբախտութեան նշան է։ Իսկ մեր եղբայր աստղագէտները, քաղցածութիւնից տխրած, վայրիվերոյ կերպով սովորում են աստղերի դրութիւնը, անգիր սերտում են նրանց անունները, եւ յետոյ սկսում են ողորմելի ռամիկների մօտ լուրջ կերպով ցնորաբանութիւններ անել, խօսել համաստեղութիւնների մասին եւ բացատրել նրանց դիրքը, կացութիւնը, եւ միայն Ալլահը գիտէ, թէ ուրիշ ինչ յիմարութիւններ են խօսում։ Սնահաւատ իրանցիները վախենում են մի քայլ անգամ տնից դուրս դնել, առանց խորհրդակցելու աստղագէտի հետ[2]։ Եթէ նա պատահմամբ մի բան նախագուշակում է, ո՛րքան գովասանքներ, փառք եւ փող է ստանում։ Իսկ եթէ նախագուշակութիւնը սխալ է յայտնվում, դարձեալ ինքը մնում է իրաւացի, ասելով. թէ յետաձգեցին գործը. այն օրը ա ռ ա ջ չգրեցին, որ

---

անաջողութիւն կարող է բերել։ Այդ հասկացողութիւններից առաջ են եկել ժողովրդի մէջ զանազան ասացուածներ, օրինակ, "Նրա ոտքը խէրով էր" — "Նրա ոտքից նստեցաւ գործը" եւայլն։ Ծան. Թարգ.։

[1] Մէկ անգամ փ ռ շ տ ա լ ը հայերի մէջ չար է գուշակում, եւ այդ պատճառով, եթէ պատահում է այդ որ եւ իցէ գործի սկսելու սկզբում, իսկոյն դադարեցնում են գործը։ Երկու անգամ փ ռ շ տ ա լ ը բարի է գուշակում, իսկ երեք անգամը աւելի բարի։ Երեքից աւելը ոչինչ նշանակութիւն չունի։ Այստեղից մնել է մեր ժողովրդի մէջ այն սովորութիւնը, երբ մէկը փռշտում է, իսկոյն ամեն կողմից բարեմաղթում են նրան, ասելով "ա ռ ո ղ ջ ո ւ թ ի ւ ն", որովհետեւ, միանգամ փռշտալով նրա առողջութիւնից մի բան պակասեց։ Բայց փռշտալու նշանակութիւնները փոխվում են, նայելով, թէ օրուայ որ ժամանակումն են պատահում։ Օրինակ. ժողովրդի մէջ մինչեւ անգամ առած է դարձել՝ թէ «գիշերուայ սարբը (միանգամ փռշտալը) խէր է»։ Ծան. Թարգ.։

[2] Ճանապարհ գնալու կամ ճանապարհորդութիւն սկսելու լաւ եւ վատ, չար եւ բարի րոպէները, ժամերը ու օրերը որոշելու համար մեր հին աստղագիտութեան մէջ առանձին կանոններ կան։ Մեր "Իւֆէմերդին" եւս այդ մասին որոշումներ է անում։ Իսկ ռամիկը շատ անգամ շաբաթներով յետաձգում է իր ճանապարհորդութիւնը, երբ գուշակողները նրան ասում են՝ "ջէր բարի սըհաթի չէ"....։ Ծան. Թարգ.։

պէտք էր. այնպէս պէտք չէր նայել. երեւի, մի մարդ չար աչքով տուեց, եւ հազարաւոր այսպիսի յիմար պատճառներ կը բերեն, որ անկարելի է մի ըստ միոջէ յիշել։ Եւ ի՞նչու էք զարմանում, մելիք, որ մեզ մօտ աստղագէտների թիւը օրըստօրէ բազմանում է. դա խիստ շահաւէտ մի պարապմունք է...

— Հաւատում եմ, պատասխանեց Ջումշուդը, — բայց իմ աստղը ասում է ինձ, որ մենք անցեալ գիշերը չքնեցինք, երբ գտնվում էինք ստորերկրեայ վիրապի մէջ, իսկ էգուց պէտք է ճանապարհ գնանք, ուրեմն հիմայ պէտք է հանգստանալ։ Ցտեսութիւն, աստղագէտ։

Նրանք պառկեցին գորգերի վրայ եւ շուտով քնեցին խորին քնով։

## IX.

*Փանահ-խանի մօտ հասնելը։*

Միւս օրը, կէսօրուայ պահին, դեսպանախումբը ճանապարհ ընկաւ։ Ջումշուդը հագած ունէր մի տեսակ զգեստ, թուրքաց ձեւով, որ հարուստ կերպով զարդարուած էր ոսկեհուռ ժապաւէններով։ Նա նստած էր սեւ նժոյգի վրայ, որը իր վայելչագեղ կազմուածքով եւ փոքրիկ գլխով ցոյց էր տալիս իր արաբական ծագումը։ Երեք հարիւր ողամարդիկ, զինուած ոտից գլուխ, կազմում էին նրա սվիտան։ Դրանց [illegible] այդ ձիաւորները գնում էին նրա [illegible] բաւական հեռաւոր [illegible]

Ճանապարհի [illegible]
աստղների բարեյաջ [illegible]
տրուակով, Ջումշ[illegible]
իր ձիու հետ հաւա[illegible]

ղանայ նրա հետ խորհուրդներ անել։ Բայց փոխանակ աստղների վրայ խօսելու, ճանապարհի ձանձրոյթը ցրուելու համար, հազիւ լսելի ձայնով, խօսում էր նրա հետ իր Սալիհայի մասին, տալիս էր զանազան պատուէրներ, թէ ինչպէս պէտք էր նրա հետ տեսնուել, ինչպէս առանձնանալ, որովհետեւ մի ուրիշի ներկայութեամբ Սալիհայի հետ խօսելը կարող էր հակառակ հետեւանքների հասցնել, եւ նրա չափազանց պարզմտութիւնը կարող էր երեւան հանել իրանց գաղտնիքը։

Երբ մօտեցան Ջուանշիրցիների օ բ ա ն ե ր ի ն, ճանապարհի վրայ կանգ առին։ Այդ միջոցին աստղագէտը, Ջումշուդի ցանկութեան համեմատ, նստեց մարգագետնի վրայ եւ սկսեց նախագուշակութիւններ անել, թէ երբ կը հասնի բարեյաջող րոպէն օբաները մտնելու համար։ Ջումշուդի ամբողջ խումբը, նոյնպէս ձիերից ցած իջնելով, զարմացած նայում էին աստղագէտի պարապմունքների վրայ։ Նրանց հայեացքները արտայայտում էին յոյս եւ երկիւղ։ Լաւ ճանաչելով իրան շրջապատող անձինքների հասկացողութիւնը, աստղագէտը դիտմամբ ցոյց էր տալիս երեւակայական դժուարութիւններ, որոնք իբր թէ ներկայանում էին նրան աստղների ընթացքը հետազօտելու ժամանակ։ Բոլորը զարմանում էին նրա իմաստութեան վրայ, բացի Ջումշուդից, որը ժպտալով լսում էր նրա իմաստակութիւնները։ Վերջապէս աստղագէտը ուրախութեամբ բացականչեց.

— Երեկոյեան ժամուն, երբ արեգակը խոնարհուած կը լինի դէպի իր մուտքը, դուք եւս կարող էք մուտք գործել Փանահ-խանի օբայի մէջ, եւ կարող էք խոյն [illegible] մտա։ Նա կ'ընդունէ ձեզ սիրով եւ դուք յաջողէք ձեր նպատակների մէջ։ Իսկ ինձ

այժմ անհրաժեշտ է բաժանուել ձեզանից եւ առժամանակ թագնուել մի ուրիշ օբայի մէջ։ Ցետոյ կը վերադառնամ եւ կը հաղորդեմ միայն մելիք-Ջումշուդին այն գաղտնիքը, որը աստղների շնորհիւ պիտի երեւան հանեմ։ Պատուիրում եմ. թէ իմ գնալը եւ թէ վերադարձը պէտք է, որպէս մի գաղտնիք, նոյնպէս ծածկուած մնայ Փանահ-խանից կամ նրա մարդիկներից։ Ոչ ոք պէտք չէ որ գիտենայ, թէ ես պատկանում եմ ձեր խումբին, մինչեւ ես ինքս յայտնելու չլինեմ այդ։ Եթէ դուք իմ այս պատուէրները ճշտութեամբ չէք կատարի, այն ժամանակ ոչինչ յաջողութիւն ունենալ չէք կարող։

— Մենք խոստանում ենք ճշտութեամբ կատարել քո պատուէրները, ով իմաստուն աստղագէտ, պատասխանեց Ջումշուդը, մի առանձին պատկառանքով նշանակութիւն տալով նրա խօսքերին։

Ցետոյ իր խումբին հրամայեց նա ձիաների թամբերը վեր առնել, հանգստանալ, սպասելով աստղագէտի նշանակած ժամանակին։ Իսկ ինքը այս վերջինի հետ հեռացաւ ծառերի ստուերի ներքոյ, եւ գրելով մի քանի խօսքեր, տուեց նրան Սալիհային յանձնելու համար։ Աստղագէտը մնաք-բարեաւ ասելով, հեռացաւ։

Երեկոյեան պահուն Վարանդայի մելիքի գլխաւորութիւնը մտաւ Փանահ-խանի օբան։ Ջուանշիրցիների այդ նոր տանուտէրը, թէեւ բնակւում էր նոյնպիսի ալաչուղի մէջ, որպէս միւսներն ունէին, բայց դա կազմուած էր աւելի ամուր կերպով, դրսից ծածկուած էր [illegible] թաղիքներով, իսկ ներսից զարդարուած էր [illegible] գորգերով։ Տաղաւարը բաժանուած էր մի քա[illegible] կանանց բնակութե[illegible] օրացու-[illegible] ճան ամուր կերպով [illegible] էր կա[illegible]

ցրած գլխից, որ դարձել էր ինչպէս մի քարեղէն շի-նուածք։ Մի քանի ներքիններ պահապան էին կարգուած այդ արգելեալ բնակարանի վրայ, որի մուտքը բաց էր միայն Փանահ-խանի համար։ Հակառակ Ջուանշիրցիների կենցաղավարութեան պարզ սովորութիւններին, Փանահ-խանի կնիկները կրում էին չ ա դ ր ա, երբ դուրս էին գալիս ներքինների առաջնորդութեամբ, եւ պարսից սովորութեան համեմատ, ծածկում էին իրանց երեսները թանձր, ցանցատեսակ քօղերով։

Փանահ-խանը ընդունեց Վարանդայի իշխանի դեսպանութիւնը մի առանձին ուրախութեամբ, որը ծածկել չկարողացաւ։ Նա պարզ կերպով նախատեսում էր, որ իր մասնակցութիւնը այն պատերազմի մէջ, որը մելիք-Շահնազարեանը պիտի վարէր Խամսայի մելիքների դէմ, իրան միջոց կը տար աւելի եւս բարձրանալու, հէնց նոյն իսկ մելիքների հաշուով։ Նա խոստացաւ հինգ օրից յետոյ պատրաստ լինել իր օգնութիւնը մատուցանելու համար, եւ հրամայեց տեղաւորել Ջումշուդին ու նրա սվիտային առանձին տաղաւարներում, իր բնակարանի մօտ։ Նա խիստ փաղաքշանքով էր վարվում դեսպանի հետ եւ աշխատում էր ամեն կերպով նրան բաւականութիւն տալ։

Դեսպանութիւնը Փանահ-խանի մօտ ժամանելուց միւս օրը Ջումշուդին խմացում տուին, թէ աստղագէտը սպասում է նրան մերձակայ անտառում, մի կարեւոր տեղեկութիւն հաղորդելու համար։ Ջումշուդը իսկոյն վազեց նրա մօտ, եւ տեսնելով աստղագէտի մթին դէմքը, մնաց ապշած։

— Ասա՛, ի՞նչ տեղեկութիւն ունես, գոչեց նա. —
ւ մահուան բօթաբե՞ր ես։

— Հանգստացէ՛ք, մելիք, պատասխանեց աստղագէտը, — պատրաստուեցէք լսել մի անախորժ նորութիւն…

— Խօսի՛ր, մի ծածկի՛ր, կրկնեց երիտասարդը անհամբերութեամբ, — ի՞նչ է պատահել, իմ Սալիհան մեռա՞ծ է…

— Ո՛չ, նա կենդանի է, բայց գտնվում է ուրիշի տիրապետութեան ներքոյ…

— Ո՞ւմ… ո՞վ է այդ բարբարոսը… ես իմ խէնջարը կը ցցեմ նրա կուրծքի մէջ, թէ նա գետնի տակում եւս թաքնուած լինի։ — Ասա՛, ո՞վ է, ինչու ես լռել…

— Նա գտնվում է Փանահ-խանի հարեմի մէջ…

— Փանահ-խանի հարեմի՞ մէջ… կրկնեց երիտասարդը, եւ կայծակնահարի նման մնաց շփոթուած։ Երկար չկարողացաւ նա յուշի գալ. վերջը թոյլ ձայնով բացականչեց, — ես կորած եմ… այդ խօսքերի հետ օրօրուեցաւ, ընկաւ խոտերի վրայ։

Աստղագէտը հոգատար կերպով բռնեց նրա ձեռքից, ասելով.

— Մելիք, մի՛ տխրէք, կայ հնար ձեր դժբախտութեանը օգնելու…

— Ի՞նչ հնար։ Մի՞թէ դու չգիտես, որ եթէ ես կռիւ սկսեմ Փանահ-խանի հետ, դրանով պիտի զրկեմ իմ հօրեղբօրը այն օգնութիւնից, որ սպասում է նրանից։ Այն ժամանակ մեր թշնամիները իրանց ոխակալութիւնը կը յագեցնեն մեր արիւնով եւ Ջանախչին մելիք կը դարձնեն։ Իսկ մնալով Փանահ-խանի հետ բարեկամական յարաբերութիւնների մէջ, ես հարկադրուած կը լինեմ յաւիտեան զրկուել Սալիհանից։ — Ա՜խ, այդ սարսափելի՜ է… Բայց ո՞րտեղ են իմ ղուլամները…

— Նրանք մնացել են Սալբհայի մօր խնամատարութեան ներքոյ։

— Պատմի՛ր այդ սոսկալի դէպքի բոլոր մանրամասները, գոչեց Ջումշուդը զայրացած կերպով։ — Ես պատրաստ եմ ամեն ինչ անել, միայն թէ իմ Սալբհան ազատուած լինի։

— Ձեր հեռանալուց անմիջապէս յետոյ, որպէս պատմեց ինձ Սալբհայի մայրը, Փանահ-խանը մտածեց անձամբ շրջել բոլոր օբաները եւ տեսնել իր նոր հպատակներին, որոնք առաջ նրա հաւասար մարդիկ էին։ Մէկը նրա մերձաւորներից պատահմամբ տեսաւ ձեր կնոջը, եւ հիացած նրա գեղեցկութեամբ, պատմեց Փանահ-խանին Սալբհայի անհամեմատ չքնաղութեան մասին։ Փանահ-խանը տեղեկանալով, որ նա մի խորասանցու կին է եղել, որի ամուսինը հեռացել է դէպի իր հայրենիքը, իրան իրաւունք համարեց անտէր մնացած կնոջը ձեռք բերել, այնպիսի խորամանկութեամբ, որ ոչ ոք նրա գլացիներից չկարողացաւ գիտենալ, թէ ո՛րտեղ անհետացաւ այդ կինը։ Միայն Սալբհայի մայրը եւ եղբայրները գիտեն, թէ որտեղ է գտնվում նա, որովհետեւ ինքը Փանահ-խանը յայտնել է նրանց, ի հարկէ, խոստանալով իր հովանաւորութիւնը եւ հարուստ ընծաներ[1]։ Այժմ բալքուվալքի ապականութիւնը այն աստիճան տիրել է Ջուանշիրցիներին, որ նրանք ուրախութեամբ ընդունել են

[1] Մահմեդականների ամուսնական օրէնքներով ամուսին այրը՝ մոլլայի ձեռքով վաւերացրած թղթով՝ իր կնոջը գրաւական է տալիս կամ անշարժ կալուածքով եւ կամ մի պայմանաւորեալ գումարով. եթէ կնոջը յետոյ արձակելու լինի, նշանակած գրաւականը կը դառնայ վերջինի սեփականութիւն։ Դա մի ապահովութիւն է կնոջ ապագայի համար, եւ զսպում է ամուսինների ինքնահաճութիւնը, որոնք իրանց կնիկներին դուրս վռնդելով, նում են նրան քաղցած։ Ծան. Թարգ.։

խանի խոստմունքները։ Այն էլ պէտք է ասած, որ Սալհայի թէ մայրը եւ թէ եղբայրները յոյս չէին ունեցել, որ միւս անգամ կը տեսնեն ձեզ։ Հիմայ ձեր խեղճ կինը, հէնց ձեր հիւր եղած տան մէջ, տանջվում է տխրութիւնից, անջատուած լինելով իր ամուսնից եւ զաւակներից։ Նա անդադար արտասուք է թափում, եւ այդ արտասուքը դառնացնում է Փանահ-խանի սիրտը, որովհետեւ սիրում է նրան աւելի քան իր բոլոր կիներից։ Եւ խեղճ կինը այն աստիճան հոգեպէս տանջուեցաւ եւ մաշուեցաւ, որ այժմ բոլորովին հիւանդ է, եւ Փանահ-խանը հիմայ գտնվում է սաստիկ յուսահատութեան մէջ...

— Իմ կինը մեռնում է, Տէր Աստուած, Տէր Աստուած... գնանք, աստղագէտ, մի՛ ուշացիր, կամ կ'ազատենք նրան, կամ կը կորչենք... Ես արդէն վճռեցի... ես մոռանում եմ բոլորը... Այդ խօսքերով սաստիկ զգածուած երիտասարդը քաշ էր տալիս աստղագէտին իր ետեւից։

— Սպասեցէք, մելիք, սպասեցէք, մենք կը կորչենք ի զուր տեղը, առանց կարողանալու ազատել ձեր ամուսնին։ — Կայ մի ուրիշ հնար...

— Ի՞նչ հնար, ասա, սիրելիդ իմ աստղագէտ, դու յաւիտեան կը պարտաւորես ինձ։ — Բայց արդէօք չես խաբում ինձ...

— Ամենեւին։ Փանահ-խանը գտնվում է յուսահատութեան մէջ, նրա համար, որ ոչ ոք չէ կարողանում առողջացնել նրա սիրելի Սալհային։ Ես կը ձեւացնեմ ինձ բժիշկ։ Դարմանականութեան մէջ ես վարպետ եմ. դուք, կարծեմ ինձ ճանաչում էք։ Ես նրան կը համոզեմ, որ Սալհային առողջացնելու համար, անպատճառ հարկաւոր է, որ ես [illegible] տեսնեմ,

որ կարողանամ որոշել նրա բախտաւոր եւ անբախտ աստղները, որ կարողանամ հետազօտել հիւանդութեան էական որպիսութիւնը, եւ նրա համեմատ կարգադրեմ բժշկելու հնարները։ Փանահ-խանը կը հաւատայ ինձ. նա երկար ժամանակ ապրել է Պարսկաստանում, եւ երեւի, սովորած է պարսիկների սնահաւատութեանը։ Իմ կեր-պարանքը հրապուրիչ չէ, այդ պատճառով էլ վտան-գաւոր չէ կարող լինել նրա հարեմի համար։ Ինձ թոյլ կը տան մնալ ձեր կնոջ մօտ, եւ այսպիսով միջոց կը գտնեմ նրան տեղեկութիւն տալու, որ դուք գտնվում էք այստեղ, իսկ յետոյ կ'աշխատեմ նրան գողանալ հա-րեմից եւ տանել Զանախչի։ Իսկ դուք, այսու ամենայնիւ, շարունակեցէք ձեր դեսպանախօսութիւնները Փանահ-խանի հետ, վարուեցէք նրա հետ ամենայն հաշտու-թեամբ, եւ ցոյց մի տուէք ամենափոքր նշան անգամ, թէ դուք ճանաչում էք ինձ։ Ես ինձ պատասխանատու եմ համարում գործի յաջողութեան վերաբերութեամբ։ Հիմայ բաժանուենք, ձեր երկար բացակայութիւնը կարող է նկատելի լինել...

— Մնաք բարեաւ, իմ սիրելի աստղագէտ, դու հաւատացած եղիր, որ Շահնազարեան Մելիք-Ջումշուդը կը գիտենայ, թէ որպէս պէտք է շնորհակալ լինել քեզանից։

Նրանք բաժանուեցան։

## X.

*Աստղագէտը ներկայանում է Փանահ-խանին:*

Իր փառաւոր տաղաւարի մէջ նստած էր Փանահ-խանը, եւ խորին մտախոհութեան մէջ ընկղմուած, ծխում էր ղէլյանը։ Նրա անհանգիստ դէմքի վրայ նշմար-ւում բազմատեսակ կրքերի կռիւը. երբեմն սր-

տայայտում էր բաւականութիւն, երբ մտաբերում էր Վարանդայի իշխանի բարեկամական հրաւէրը եւ նրա ձեռքով իր բարձրանալու ապագայ յոյսերը. իսկ երբեմն տխրութիւն, երբ մտաբերում էր իր սիրած կնոջ ծանր հիւանդութիւնը։

Այդ միջոցին նրա ծառաներից մէկը ներս մտաւ, յայտնեց թէ մի ինչ որ օտարական, որ կոչւում է իրան աստղաբաշխ եւ Ղազվինի[1] գիտնական բժիշկ, ցանկանում է ներկայանալ։ Փանահ-խանը գլխի շարժումով նշան տուեց ներս թողնելու նրան։

— Ալլահը եւ սուրբ մարգարէն թող օրհնեն քաջ ջուանշիրցիների մեծափառ հրամանատարին, եւ թող լինեն նրա օրերը պայծառ, ինչպէս արեգակի ճառագայթները, եւ բազմաթիւ, ինչպէս երկնքի աստղերը, ասաց ղազվինցի բժիշկը, գլուխ տալով, որի միջոցին մի ձեռքը դրեց կուրծքի վրայ, իսկ միւսը նախ տարաւ դէպի ճակատը, յետոյ խոնարհեցնելով կպցրեց գետնին։

Փանահ-խանը բաւական նայեց նրա վրայ, եւ լռութեամբ երկար զննում էր նրա օտարոտի կերպարանքը. վերջը հարցրեց.

— Ի՞նչ ես ուզում դու ինձանից։

— Սուրբ Յուսէֆը թող առաքէ ձեզ վրայ իր օրհնութիւնը։ Ես լսեցի ձեր ամենաթանկագին ամուսնի հիւանդութիւնը եւ եկայ առաջարկելու ձեզ իմ ծառայութիւնները։

— Մի՞թէ դու յոյս ունես աւելի բախտաւոր լինել, քան թէ քո միւս արհեստակիցները, որոնք ի զուր գործ դրին իրանց բոլոր հմտութիւնները։

---

[1] Ղազվին, պարսից նշանաւոր քաղաք է, որը գտնվում է Թեհրանի եւ Թաւրիզի մէջ տեղում։ Ծան. հեղ.։

— Կարելի է նրանք հասկացողութիւն չունէին աստղների շրջանների եւ նրանց ունեցած ազդեցութեան մասին մարդու վիճակի վրայ…

— Իսկ դու հասկացողութիւն ունե՞ս։

— Քսան սուրբ իմամների[1] ինձ շնորհած կարողութեամբը, ես ուսումնասիրել եմ բնութեան գրքի ամենաբարձր խորհուրդները։ Իմ վարդապետը եղել է հռչակաւոր Շէյխ-Աբդուլ-Փաթիհ-Ալին, որին մարգարէի մասը պէտք է համարել ամբողջ երկրի վրայ։

— Լաւ, դու կարող ես փորձել քո արհեստը, եւ կարող ես յոյս ունենալ, որ կը ստանաս նշանաւոր ընծաներ, եթէ յաջողութիւն ցոյց կը տաս։ Ես կը հրամայեմ իմ կնիկների վերատեսչուհուն, եւ նա կը պատմէ քեզ Սալիհայի հիւանդութեան բոլոր մանրամասնութիւնները։ Նրա պատմութիւնից դու կարող ես անել քո եզրակացութիւնները հիւանդութեան որպիսութեան մասին, այնուհետեւ, յարմարուելով աստղների ցուցումների հետ, դու կը նշանակես բժշկելու եղանակները, թէեւ ես շատ յոյս չունեմ…

— Բ ա լ ի, բ ա լ ի[2], ինքը իմաստութիւնն է խօսում ձեր շրթունքներով։ Բայց ներեցէք ձեր դռան շէմքի ստրուկին իր խոնարհ կարծիքը յայտնել, որ տարաշեայ բժշկութիւնը երբէք չէ կարող իր նպատակին հասնել։ Առանց ճիշտ կերպով որոշելու, թէ ինչ աստղ է առաջնորդել ձեր մեծապայծառ կնոջ ծննդեանը (որի գեղեցկութիւնը թող գերազանցէ լուսնից), չէ կարելի եւ որոշել բժշկելու եղանակները…

---

1 Քսան սուրբ իմամներ։ Շիաները միայն 12 իմամներ ունեն եւ ոչ թէ քսան։ (Տես էջ 396, ծան. 1)։ Ծան. Թարգ.։

2 Բալի, նշ. լաւ։ Ծան. հեղ.։

— Ուրեմն ի՞նչ ես պահանջում դու, հարցրեց Փանահ-խանը սուր կերպով նայելով աստղագէտի երեսին։

— Միայն թոյլտուութիւն տեսնուելու հիւանդի հետ, եւ կէս ժամի չափով առանձին խօսելու նրա հետ, առանց վկաների ներկայութեան, այնուհետեւ ես վստահ կը լինեմ իմ բժշկութեան կատարեալ յաջողութեան մէջ։

— Խօսել նրա հետ... կէս ժամ... այն եւս առանց վկաների... կրկնեց խանը, կասկածաւոր կերպով նայելով աստղագէտի վրայ։

Բայց լաւ հետազօտելով նրա այլանդակ կերպարանքը եւ այն անփոյթ ձեւը, որով պահում էր իրան աստղագէտը, խանը պատասխանեց.

— Լաւ, համաձայն եմ։ Ե՞րբ ես ցանկանում տեսնել իմ կնոջը։

— Հէնց այս րոպէիս, եթէ կը բարեհաճի ջուանշիրցիների մեծ հրամանատարը։

— Հետեւիր ինձ, ասաց խանը, կանգնելով նստած տեղից։

Աստղագէտին շատ հաճելի չէր տեսնել, որ ջուանշիրցիների գլխաւորը ինքը պիտի անձամբ ներկայ գտնուի Սալիհային բժշկելու ժամանակ, եւ դրանով կարող էին խանգարուել իր բոլոր դիտաւորութիւնները։ Նա առաւելապէս վախենում էր միամիտ Սալիհայի պարզամտութիւնից, որի մի անզգոյշ խօսքը կարող էր դաւաճանել իրան եւ վտանգի ենթարկել։ Բայց ուրիշ հնար չկար։ Նա ճնշուած սրտով գնաց Փանահ-խանի ետեւից, օգնութեան կանչելով իր բոլոր հմտութիւնը խաբեբայութեան արհեստում, եւ յոյս դնելով իր խորամանկութիւնների վրայ, որոնց մէջ խիստ լաւ վարժուած էր։

Երբ որ նրանք մտան հարեմը, զարմացած կնիկները, տեսնելով իրանց հրամանատարի հետ մի օտար մարդ, սաստիկ ճիչ բարձրացրին, եւ փախչելով ծածկուեցան իրանց սփածանելիքների մէջ։ Սալիհան պառկած էր անկողնի մէջ, որը պատրաստուած էր տախտի վրայ, եւ շուրջանակի պատած էր պարսկական գորգերով։ Նրա չքնաղ դէմքը գունաթափուած էր, գեղեցիկ աչքերը խորն էին ընկած, եւ բոլոր գծերի մէջ նկարուած էին հոգեկան սաստիկ տանջանքի նշմարները։

— Ջ ա ն ի կ,[1] ասաց Փանահ-խանը, մօտենալով նրա անկողնին. — ես բերեցի քեզ համար մի նոր եւ շատ հմուտ հ ա ք ի մ,[2] որը մի եւ նոյն ժամանակ լաւ աստղաբաշխ է. ես հաւատի եմ, որ դա կը բժշկէ քեզ։ Խօսիր նրա հետ։

Սալիհան իր տխուր հայեացքը դարձրեց դէպի Նորիկը, եւ տեսնելով աստղագէտի ծիծաղելի կերպարանքը, չը կարողացաւ զսպել իր ժպիտը։ Բայց այդ ժպիտը նման էր լուսնային ճառագայթի րոպէական փայլին, որ երբեմն նշմարվում է աշնանային գիշերի մթին մառախուղների մէջ։ Նրանից յետոյ առաջուայ դառն տխրութեան խաւարը կրկին պատեց նրա ճակատը։ Նա խօսեց թոյլ ձայնով.

— Շնորհակալ եմ ձեր աշխատութեան համար, որը բոլորովին ի զուր է....։ Իմ հիւանդութիւնը անբժշկելի է... դուք ինքներդ գիտէք այդ...

— Ի՞նչու էք դուք, խ ա ն ո ւ մ,[3] անձնատուր լինում յուսահատութեան, մէջ մտաւ աստղագէտը. —

---

[1] Ջ ա ն ի կ, ջան բառից, որ նշանակում է հոգի։ Ծան. Թարգ.։

[2] Հ ա ք ի մ բառը մի քանի նշանակութիւններ ունի, որոնք փոխվում են արտասանելու եւ գրելու ձեւից։ Նշանակում է՝ հրամանատար կամ կառավարիչ, իմաստուն, այլ եւ բժիշկ։ Ծան. Թարգ.։

[3] Խ ա ն ո ւ մ, նշ. տիրուհի։ Ծան. Հեղ.։

Ալլահը եւ սուրբ մարգարէն տնօրինել են ձեզ համար շուտափոյթ առողջութիւն…

— Ի՞նձ համար… պատասխանեց Սալիհան, աչքերը բարձրացնելով նրա վրայ։

Այդ միջոցին աստղագէտը այնպիսի մի ճարպկութեամբ կարողացաւ իր աչքերի ու յօնքերի խորհրդաւոր շարժումներով նրան նշաններ ցոյց տալ, որ խանը ոչինչ չնկատեց, միայն Սալիհան հասկացաւ։

— Այսպէս, ուրեմն դուք կարծում էք, շարունակեց հիւանդը, դառնալով դէպի խանը, — որ ես կարող եմ վստահ լինել այդ հաքիմի բժշկութեան վրայ։

— Անտարակոյս։

— Երբ այդպէս է, մօտ եկէք, հաքիմ, դարձաւ նա դէպի աստղագէտը, — եւ ասեցէք, ես ի՞նչ պիտի անեմ։

— Թոյլ տուեցէք ինձ, խանում, պատասխանեց աստղագէտը, — նախ հաշուել աստղների ընթացքը եւ որոշել այն աստղը, որը լուսաւորել է ձեր ծննդեան րոպէն։[1]

— Այդ ո՞րքան ժամանակ կը տեւէ, հարցրեց Փանահ-խանը։

— Ժամանակը ճշգութեամբ ասել չեմ կարող, դա ինձանից կախուած չէ, այլ սուրբ մարգարէի կամքից, պատասխանեց աստղագէտը։

— Իսկ այդ գուշակութիւնները, կարծեմ, կարելի է կատարել եւ իմ առանձին բնակարանում, խօսեց Փանահ-խանը։

---

[1] Ծննդեան աստղ։ Աստղագէտները հաստատում են, թէ իւրաքանչիւր մարդ ծնվում է մի առանձին աստղի ազդեցութեան ներքոյ։ Ծան. հեղ.։

— Ամենեւին, խան, պատասխանեց աստղագէտը։ — — Ոչ միայն ձեր բնակարանում չէ կարելի կատարել, այլ մինչեւ անգամ այստեղ եւս չէ կարելի, եթէ դուք հրաման չէք տայ ինձ՝ մնալու խանումի հետ միայնակ։

— Քե՞զ . . . միայնա՞կ . . . կրկնեց խանը. — այդ նո՛ր բան է . . .

Նա դարձաւ սկսեց ուշադրութեամբ երկար նայել աստղագէտի վրայ, որի կատարելապէս այլանդակութիւնը փոքր ինչ հանգստացրեց խանի կասկածը, եւ նա հարցրեց.

— Մի՞թէ չէ կարելի թողնել այստեղ գոնէ մի ներքինի։

— Ոչ մէկին, խան, այդ անմիտ մարդիկը ունեն ամենավատ ազդեցութիւն մանկահասակ խանումների ճակատագրի վրայ։ Նրանք բոլորը ստեղծուած են անբարեյաջող աստղների ներգործութեան ներքոյ։

— Լսիր, աստղագէտ, ասաց Փանահ-խանը, — դու առաջինն ես իմ տեսած բոլոր հաքիմներից եւ աստղաբաշխներից, որ պահանջում ես այսպիսի նախազգուշութիւններ։ Արդեօք, թագնուած չէ՞ մի բան այդ օտարոտի պահանջումների տակ։ Տե՛ս, զգոյշ կա՛ց։ Փանահ-խանը գիտէ արժանաւոր կերպով վարձատրել ծառայութիւնները, գիտէ եւ խիստ կերպով պատժել անհաւատարմութիւնը։

— Մի բարկացէք, խան, ասաց Սալիհան անզգուշութեամբ, — կարելի է դա աւելի հմուտ է բոլորից։ Թոյլ տուեցէք ինձ խօսել դրա հետ։

Փանահ-խանը այդ խօսքերից հասկացաւ աւելի շատ բան, քան թէ սպասում էր։ Նոյն րոպէում հրամայեց նա ներքինիներին տանել բոլոր կնիկներին հարեմի միւս

բաժնում եւ թողնել աստղագէտին միայնակ Սալի-հայի հետ։

— Ես հեռանում եմ, ասաց նա աստղագէտին, — եւ յոյս ունեմ, որ դու կ՚աշխատես շուտով աւարտելու քո գուշակութիւնները . . . եւ հաւատացած եմ, որ դու կը վարձատրուես քո բժշկութեան համար . . . աւելացրեց նա կծու ժպիտով եւ դուրս եկաւ հիւանդի սենեակից։

## XI.

*Աստղագէտը առանձնացած Սալիհայի հետ:*

Երբ որ ամենքը հեռացան, աստղագէտը սկսեց նախ ուշադրութեամբ հետազօտել սենեակի բոլոր անկիւնները, կասկածելով, որ կարող են լսել նրա խօսակցութիւնը, յետոյ մօտեցաւ հիւանդի անկողնին, եւ գլուխը խոնարհեցնելով, հազիւ լսելի ձայնով ասաց.

— Դուք խանում, անզգոյշ գտնուեցաք. պէտք չէր յայտնել ձեր ցանկութիւնը ինձ հետ խօսակցելու մասին . . . Ես ձեր ամենախոնարհ ստրուկն եմ . . . Այժմ պէտք է ուշադիր լինէք իմ խօսելուն, եւ ինչ որ ես ասելու կամ հարցնելու կը լինեմ, դուք պէտք է այնպէս ցոյց տաք, թէ ամեն բանում համաձայն էք ինձ հետ։ Ձեր ամուսինը՝ Ջումշուդը այստեղ է, շատ մօտիկ է, եւ նոյնպէս սիրում է ձեզ . . .

— Այստե՞ղ, այստե՞ղ, ի սէր Ալլի . . .

Աստղագէտը նշանացի անելով, հասկացրեց նրան, որ լռէ, իսկ ինքը նստեց փոքր ինչ հեռու, գորգի վրայ, սկսեց զանազան հարցմունքներ անել, թէ քանի տարեկան է, թէ նա ինչ մի առանձին դէպք է յիշում իր մանկութիւնից եւ այլն։ Բոլորը քննելով, վերջը աստիճանաբար

հասաւ մինչեւ տիկնոջ տասն եւ վեց տարեկան հասակը եւ հարցրեց.

— Այդ հասակում դուք շրջապատուած էք եղել ամենաչար աստղերով. պէտք է, որ այդ ժամանակ մի որ եւ իցէ նշանաւոր դէպք պատահած լինի ձեզ։

— Այո, այո, բացականչեց Սալիհան, — ես այդ ժամանակ չափազանց երջանիկ էի...

— Երջանի՞կ, խանում, անկարելի է։

— Ի՞նչպէս չէ։

— Ի հարկէ չէ։ Այդ ձեզ այնպէս երեւում էր միայն, երբ թէ երջանիկ էիք։ Բայց բոլորը, ինչ որ վայելում էիք այն ժամանակ, տանում էր ձեզ դէպի անբախտութիւն։ Պէտք է աշխատէք մոռանալու այդ...

— Մոռանա՞լ, միթէ այդ կարելի՞ է... պատասխանեց Սալիհան խորին վրդովմունքով։

Բայց աստղագէտը խորհրդաւոր կերպով ակնարկեց նրան, նա հասկացաւ եւ փոխեց խօսքը.

— Մոռանա՜լ... միթէ դուք կարծում էք, որ այդ լաւ կը լինի...

— Այդ կը փրկէ ձեզ, խանում, կը փարատէ ձեր հիւանդութիւնը եւ կը բախտաւորացնէ ձեզ։ Այդ ես պարզ տեսնում եմ այն բարի աստղերից, որոնք այժմ շրջապատում են ձեզ։ Ջուանշիրցիների հրամանատարի աստղը պտտվում է իր կատարեալ ծագման մէջ...

— Իսկ իմ զաւակնե՜րը... ի սէր Ալլի, ասեցէք, ի՞նչ են անում իմ զաւակները... ի՞նչու համար ինձ բաժանել են նրանցից...

— Հանգստացէք, խանում, ձեր զաւակները առողջ են եւ բախտաւոր։ Բայց նրանք կը լինեն աւելի բախ-

երբ որ դուք կ՚առողջանաք եւ դրանով կ՚ուրա-

*խացնէք խանին։ Ես հաւատացած եմ, որ նա յանձն կ'առնի տնօրինելու ձեր զաւակների բախտը։ Իսկ հիմայ դառնանք դէպի ձեր հիւանդութիւնը։ Դուք զգում էք սաստիկ ջերմութիւն, այդպէս չէ՞։*

*— Խիստ սաստիկ։*

*— Լաւ, երբեմն ձեր գլուխը մտնում են մթին մտածութիւններ եւ դուք բոլորովին անձնատուր էք լի֊նում այդ մտածութիւններին։*

*— Այո՛, ես տխրում եմ, տանջվում եմ, մեռնում եմ սրտիս ցաւերից…*

*— Ձեր սրտի ցաւը է հետեւանք ձեր մտատանջու֊թիւնների, եւ աւելի ոչինչ։ Ասեցէք, արդեօք զգո՞ւմ էք ձեր մէջ այնքան ուժ, որ կարողանաք ձիով ման գալ։*

*Այդ հարցման միջոցին աստղագէտը աչքերով նշան տուեց հիւանդին։*

*— Զգում եմ։*

*— Շատ լաւ, ձեզ հարկաւոր է թարմ օդ, խա֊նում։ Մեկնեցէք դէպ ինձ ձեր ձեռքը։*

*Հիւանդը մեկնեց դէպի բժիշկը իր ձեռքը, եւ նա ցոյց տալով, իբր թէ շօշափում է նրա երակը, հազիւ լսելի ձայնով ասաց. «Ականջ դրեցէք ինձ եւ դուք ազա֊տուած կը լինէք։»*

*Յետոյ նա նստեց սենեակի մէջտեղը, գրպանից դուրս հանեց իր դ ը վ ի թ - ղ ա լ ա մ ը եւ եղեգնեայ գրիչը, սկսեց աստղաբաշխական համարումներ անել։ Սալիհան հետաքրքրութեամբ նայում էր [illegible] ծիծաղելի ծամածռութիւններ[illegible] որ [illegible] իր գործո֊ղութիւնները [illegible] կը ցանկանար [illegible] իր սիրելի ջամշ[illegible]*

բայց վախենալով, մի գուցէ իր հարցուփորձով խանգարէր նրան, այդ պատճառով լռեց։ Բայց աստղագէտը խորասուզուած էր իր գործի մէջ. ուշադրութեամբ քննում էր բոլորակները եւ զանազան գծերը, որ գրել էր թղթի վրայ, մի եւ նոյն ժամանակ ինքն իրան մի առանձին ծանրութեամբ խօսում էր.

"Շատ գեղեցիկ... ծ ն ն դ ե ա ն  ա ս տ ղ ը մօտենում է... նա ընթանում է աւելի բարձր եւ բարձր... նա կանգնեց... հասկանում եմ, առաւօտը դեռ խիստ վաղ է... դէպի աջ կողմը՝ աստղները բարեյաջող են... դէպի ներքեւ՝ մէկը վնասակար է... բայց ես գիտեմ, թէ երբ է ծագում նա, կարելի է դրանից խոյս տալ... ուղեղ կանգնած է մի աստղ, որ մեծ խոչնդոտ կարող է լինել... բայց ահա ձին... նա ազատուած է... այդ չափազանց լաւ է... Այդ ինչ փայլուն աստղ է, հա՛, դա խանի աստղն է... որքան երջանիկ է նա... ինչ փառք է շրջապատում նրան... Նա այնքան պայծառ փայլում է, որ նայել անկարելի է նրա վրայ... զարմանալի է... Խանումը կատարելապէս կ'առողջանայ, եթէ խոյս կը տայ այդ աստղի ազդեցութիւնից... Ահա, մի ինչ որ Խորասանի աստղ է վազում հօրիզոնի վրայ... նա վազում է բռնելու խանումի աստղին. — ահա նրանք զարկուեցան միմեանց... խանումի աստղը հրճուանքի մէջ է... եւ...

— Կարելի՞ է վերջապէս ներս մտնել, հարցրեց Փանահ-խանը, որը դրսից ծածուկ կերպով ականջ էր դնում նրանց ամբողջ խօսակցութեանը, որովհետեւ վստահութիւն չունէր աստղաբաշխի վրայ։

Աստղագէտը վեր թռաւ գորգի վրայից, ասելով.

— Համեցէք, խան, միայն ի սէր Ալիի, աջ ոտքով եւ ... ... կոտ երեք անգամ Թքեցէք դէպի ձախ կողմը։

*նրա դէմքի վրայ, երբ խօսում էր իր ստանալիք ապագայ ընծաների մասին։*

*— Ես համաձայն եմ, ասաց նա, — էգուցուայ օրից կը սկսենք Սալիհային բժշկելու կարգադրութիւնները։*

*Յետոյ մօտեցաւ հիւանդին, բայց նա, կամենալով խոյս տալ անտանելի բռնակալի ներկայութիւնից, ձեւացրեց իրան իբր թէ քնած է։ Խանը կրկին կանչել տուեց իր կնիկներին եւ ներքինիներին իրանց տեղում, եւ ինքը աստղագէտի հետ հեռացաւ։*

## ԱՌԱՋԻՆ ՄԱՍՆ ՎԵՐՋԸ





որպէս զի իր հօրեղբօրը տեղեկութիւն տայ, թէ խանի զօրքերը շուտով նրան օգնութեան կը հասնեն։ Փանահ-խանը, յայտնելով նրան իր ափսոսանքը, թէ զրկւում է մի մեծ բաւականութիւնից, որ չէ կարող աւելի երկար ժամանակով պահել իր մօտ թանկագին հիւրին, — ասաց, որ նա կարող է գնալ, երբ որ կը ցանկանայ, իսկ ինքը, առանց ժամանակ կորցնելու, նրա ետեւից իր զօրքերով կը գայ։

Հրաժարական ողջոյն տալով Փանահ-խանին, Ջումշուդը ճանապարհ ընկաւ։ Բայց մի օրուայ ուղեւորութիւնից յետոյ, նա յանձնեց իր խումբը իր հաւատարիմ նօքարներից մէկին, հրամայեց գնալ Ջանախչի, տալով նրան մի նամակ իր հօրեղբօր անունով, հետեւեալ բովանդակութեամբ.

“Ամենակարող Աստուծոյ կամքով մեր գործերը յաջողակ են ընթանում։ Փանահ-խանը չորս հազար ջուանշիրցիներով կը գայ մեզ օգնելու, ոչ այնքան ուշ, քան տասն օրից յետոյ։ Նա յանձնեց ինձ յայտնել ձեզ իր մշտական անկեղծ բարեկամութեան զգացմունքը եւ իր փափագը նպաստելու ձեր յառաջադիմութեանը։ Ներեցէք, որ ես ինքս չեմ բերում ձեզ այդ համբաւը։ Մի կարեւոր հանգամանք պահանջում է իմ շուտափոյթ գնալը ջուանշիրցիների օբաներից մէկում, որտեղ ես անցուցել եմ այն չորս տարիները, երբ սովորում էի պատերազմական արհեստը։

“Անհանգիստ մի լինիք իմ մասին։ Ես շուտով դարձեալ կը յայտնուեմ ձեզ մասնակից լինելու համար մեր ընդհանուր թշնամիների դէմ„։

Երկու հաւատարիմ նօքարներ իր հետ առած, Ջումշուդը բաժանուեցաւ իր խումբից եւ զարկեց ճա-

նապարհներով յետ դառնալով, եկաւ, թագնուեցաւ այն անտառի մէջ, որ շատ հեռու չէր Փանահ-խանի բնակարանից, եւ բոլորովին մօտ էր այն լեռանը, որի վրայ, աստղագէտի կարգադրութեան համեմատ, Սալիհան պիտի այցելութիւն գործէր Ղօրան կարդալու համար։

Արեգակը դեռ նոր էր մայր մտել, երբ աստղագէտը եկաւ Զումշուդին տեսնելու։ Նրան դժուար չէր գտնել երիտասարդին, որովհետեւ առաջուց ժամադիր էին եղած, թէ անտառի որ վայրում պէտք է սպասէ աստղագէտին։ Այդ վերջինը բերեց Զումշուդի եւ նրա երկու նօքարների համար Խօրասանի սաղաւարտներ եւ զրահներ[1], որոնց գնելու համար սկզբից փող էր ստացած երիտասարդից։

— Որքան ուրախ եմ եւ շնորհակալ քեզանից, իմ սիրելի աստղագէտ, որ դու ճշտութեամբ կատարեցիր քո խոստմունքը։ Հիմայ ասա՛ ինձ, սկսուեցա՞ւ արդեօք իմ նազելի Սալիհային բժշկելու հրաշալի եղանակը։

— Այսօր առաւօտեան առաջին անգամ նա ձիով դուրս եկաւ։ Թէեւ ես սաստիկ արգելեցի, որ ոչ ոք չուղեկցէր նրան, բայց կասկածամիտ Փանահ-խանը, նստած ձիու վրայ, հեռուից իր հայեացքով հետեւում էր նրան։ Խանին ես համառակել չկարողացայ։ Նրա այդ կասկածանքը ստիպում է մեզ աւելի զգոյշ լինել։ Էգուց, երբ տիկինը կը բարձրանայ սարի վրայ եւ ձիուց ցած կիջնէ Ղօրանի ընթերցանութեան համար, — դուք ձեր նօքարների հետ, ցած թողնելով ձեր սաղաւարտների երեսակալները, պէտք է յարձակում գործէք եւ յափշտակէք Սալիհային։ Շտապեցէք, որքան կարելի է, շուտով մտնել անտառը։ Ես էլ նստելով Սալիհայի ձիու վրայ, իսկոյն

[1] Խօրասանում պատրաստուած սաղաւարտները եւ զրահները շատ էին Պարսկաստանում։ Ծան. հեղ.։

կը մնանամ ձեզ հետ։ Պէտք է զգուշանանք մեր ետեւից ընկնողներից։

— Գեղեցիկ խորհուած է. դրանից աւելի լաւը մտածել անկարելի էր։ Բայց չգիտեմ, ինչու իմ սիրտը այսպէս սաստիկ կերպով բաբախում է։ Երեւի, դա մի որ եւ է դժբախտութեան նախազգացումն է։ Բայց ինչ էլ որ պատահելու լինի, արդէն վճռուած բան է... ես պիտի ամեն ինչ զոհեմ Սալհայի փրկութեան համար։ Միայն չգիտեմ, ո՞րտեղ ես պիտի տանեմ իմ կնոջը։

— Զանախչի, ուղիղ ձեր հօրեղբօր մօտ. ահա իմ խորհուրդը։ Դուք վաղ թէ անագան պէտք է յայտնէք ձեր գաղտնիքը եւ պէտք է ցոյց տաք նրան ձեր կնոջը։ Այժմ ամենայարմար ժամանակն է։ Ձեր հօրեղբօր Թալէշի մելիքի հետ ունեցած երկպառակութիւնը, նրա անհրաժեշտ կարօտութիւնը ձեր սրի եւ խորհուրդների մէջ՝ սկսուող պատերազմի վերաբերութեամբ, — այդ բոլորը կը հարկադրեն նրան հաշտուելու ձեզ հետ եւ ամեն ինչ կը մոռացուի։

Ջումշուդը համաձայնուեցաւ աստղագէտի ենթադրութիւնների հետ, եւ նա վերադարձաւ Փանահխանի մօտ։

Միւս օրուայ առաւօտը, երբ պէտք է կատարուէր առեւանգումը, էր այն հրապուրիչ եւ շքեղ առաւօտներից մէկը, որոնք սովորական են Ղարաբաղում, առաւել ամառնային եղանակների ժամանակ։ Հէնց որ ծագեցին արեգակի առաջին ճառագայթները, Սալհան նստած իր պատուական նժոյգի վրայ, գիւղից դէպի լեռը, սկսեց բարձրանալ նրա գագաթի վրայ։ Փանահ-խանը ոչ մի կերպով չէր կարող համբերել, որ հեռուից չդիտէր նրա գործողութիւնները։ Ջումշուդը եւ նրա երկու ծառաները,

ոտքից ցգլուխ պատած ղլահի մէջ, և դէմքերը ծածկած երկաթեայ երեսակալներով, թագնուած թաւախիտ թուփերի մէջ, ուշադրութեամբ նայում էին այն գործողութիւնների վրայ, որ նրանց աչքի առջև կատարվում էին։ Աստղագէտը գործի յաջողութիւնը աւելի դիւրացնելու համար, բռնած Սալիհայի ձիու սանձից, տանում էր մինչև սարի գագաթը։

Ցիկլինը ձիուց վայր իջածին պէս, աստղագէտը տարածեց նրա ոտների տակ գորգը, որի վրայ ծալապատիկ նստելով, սկսեց նա խելի ձայնով կարդալ Ղօրանի այաթները։ Այդ րոպէին Ջումշուդը իր երկու նօքարների հետ թռան նժոյգների վրայ, և նետի նման սլացան դէպի նոյն լեռը։ Ցափշտակելով ապշած Սալիհային իր գրկի մէջ, Ջումշուդը կայծակի արագութեամբ անհետացաւ անտառի խորքում։ Նօքարները և աստղագէտը հետևեցին նրան։ Վերջինը կարողացաւ նստել Սալիհայի ձիու վրայ։ Փանահ-խանը տեսնելով այդ անցքը, նոյն րոպէում հասկացաւ, որ ինքը խաբուած է, և իր հետ եղած խումբով նետուեցան փախստականների ետևից։ Բայց փախստականները ունէին ամենալաւ ձիաներ և միջոց գտան մի քանի տասնեակ րոպէներով առաջ անցնել։ Բացի դրանից, անտառի մէջ, խոտորնակի պտոյտներով, նրանք աշխատում էին այնպէս շուտ-շուտ փոխել ճանապարհը, որ Փանահ-խանը մի ամբողջ ցերեկ նրանց հետամուտ լինելուց յետոյ, երեկոյեան բոլորովին կորցրեց նրանց հետքերը։ Բայց դժբախտաբար աստղագէտի ձին, փախչելու միջոցին սայթաքելով, ցած գլորուեցաւ։ Նա ընկաւ այնպէս անաջող կերպով, որ աստղագէտի մի ոտքը մնաց ձիու տակին։ Այդ դժբախտ դրութեան մէջ նա չկա-
ազատուել վերահաս վտանգից։

Փանահ-խանը իր խումբի հետ վրահասաւ, եւ տեսնելով ողորմելի աստղագէտին, մի առանձին գազանային ուրախութեամբ աղաղակեց.

— Փառք սուրբ մարգարէին, որ դու վերջապէս իմ ձեռքը ընկար։ Խաբեբայ, այդ անտառը կը լինի քո գերեզմանը...

Յետոյ դառնալով դէպի իր խումբը, հրամայեց.

— Դուրս քաշեցէք այդ անիրաւին ձիու տակից, որին նա իզուր տեղը փչացրեց, եւ բերեցէք ինձ մօտ։ Թէեւ մենք կորցրինք իմ սիրելի Սալէհային յափշտակողների հետքերը, այժմ գոնէ կ'իմանանք, թէ ովքեր էին նրանք։ Անպատճառ այդ ստախօսին արժանի բարեկամները կը լինեն, որը համարձակուեցաւ այնպէս խորամանկ կերպով խաբել ինձ։ Բայց ես դրա հատուցումը կը տամ...

Նօքարները դուրս քաշեցին աստղագէտին, որը երկիւղից դողդողում էր, բերեցին Փանահ-խանի մօտ։ Նա նստած էր մի ծառի կոճղի վրայ, իր քննական հայեացքը դարձրել էր դէպի աստղաբաշխը։ Նրա բարկութիւնը չափ չունէր։

— Իմանո՞ւմ ես արդեօք, ասաց նա, — թէ ո՞րպիսի պատժի արժանի ես։ Կարո՞ղ ես որոշել նրա չափը։

Աստղագէտը ոչինչ չպատասխանեց։

— Հասկանում եմ, շարունակեց Փանահ-խանը, որ դու ինքդ չես կարող որոշել։ Լաւ, ես ինքս կը նշանակեմ։ Նախ, դու պէտք է յայտնես, թէ ո՞վքեր էին սահակները, որոնք համարձակուեցան յափշտակել իմ կնոջը, եւ ի՞նչ նպատակով։ Այդ պարզ է, որ դու նրանց հետ համախոհ ես եղել։ Յետոյ ես կը մտածեմ, թէ ո՞րը լաւ կը լինի, կախե՞լ քեզ ոտներից այդ անտառի մէջ գիշակեր թռչուններին կերակուր դառնալու համար, թէ կեն-

դանի թաղել գետնի մէջ[1]։ Այսուամենայնիւ, ես այնքան ներողամիտ կը լինեմ, որ այդ երկուսից մէկի ընտրութիւնը կը թողնեմ քո կամքին... Հիմայ առանց այլեւայլութեան դառնանք դէպի գործը։ Սկզբից նախազգուշացնում եմ քեզ, որ դու ամեն մի հարցի մէջ, եթէ դարձեալ կ'աշխատես խաբել ինձ, ամեն անգամ կը ստանաս հինգհարիւրական հարուածներ քո ոտների տակ։ Յօսիփ։

Աստղագէտը չոքեց ծնկների վրայ, ասաց․

— Ամենակարող խան, ես զգում եմ իմ վարմունքի բոլոր գարշելիութիւնը, բայց եթէ ջուանշիրցիների հրամանատարի ողորմածութիւնը թոյլ կը տայ ինձ, ես կը հաղորդեմ նրան բոլորը, ինչ որ ինձ յայտնի է։ Ես ցոյց կը տամ այն բոլոր միջոցները վեհափառ Փանահխանին, որոնցմով նա կը լինի ամբողջ Ղարաբաղի պետը։

— Դու կամենում ես կրկի՞ն խաբել ինձ։

— Թող հէնց այդ րոպէում շան կերպարանք ստանամ[2], եթէ իմ ասածները ճշմարիտ չլինեն։

— Տեսնենք։ Ես կը շնորհեմ քեզ մի քանի ժամ եւս կեանք։ Բայց յիշիր, որ եթէ քո պատմութեան մէջ կը ստախօսես, իւրաքանչիւր սուտի համար կը ստանաս հինգ հարիւր հարուածքներ ոտներիդ տակ։ Վեր կաց, քո ծնրադրութիւնը ամենեւին չի փրկի քեզ։

Աստղագէտը վերկացաւ եւ սկսեց պատմել այն բոլորը, ինչ որ մեզ արդէն յայտնի է Ջումշուդին եւ Սալիհայի ամուսնութեան վերաբերութեամբ. բացատրեց այն պատճառները, որ ստիպել էին Ջումշուդին իրան ձեւա-

[1] Այս տեսակ պատիժները խիստ սովորական են արեւելքում։ Ծան. հեղ.։

[2] Երդուելու մի առանձին ձեւ է պարսիկների մէջ։ Ծան. հեղ.։

ցնել խօրասանցի. յայտնեց, թէ ինչ գաղտնիք կար, որ առիթ էր տալիս Ջումշուդին ծածուկ պահելու իր ամուսնութիւնը իր հօրեղբօրից. — վերջը, որ նա վճռեց առեւանգել Սալհային, ինչ կերպով եւ լինէր, իսկ ինքը, աստղագէտը, նրա գիտաւորութեանը օգնում էր, կատարելով հաւատարիմ ծառայի պարտաւորութիւնը:

Այդ պատմութեան միջոցին Փանահ-խանը ոչ սակաւ անգամ արտայայտում էր իր զարմացումը եւ կարեկցութիւնը դէպի Ջումշուդի անել դրութիւնը, որից ստիպուած, վճռել էր նա ծայրայեղութեան դիմել: Վերջապէս ասաց նա.

— Ցաւում եմ, որ ես այդ բոլորը առաջուց չը գիտէի, այն ժամանակ, շատ կարելի է, որ ես չէի ցանկանայ զրկել այդ սիրարժան երիտասարդին իր կնոջից, որին նա այնքան զոհաբերութեամբ տիրացել էր: Այդ պատմութիւնը մեղմացնում է իմ աչքում եւ քո յանցանքը: Ծառայի համար ամեն պարտաւորութիւններից նախադաս է լինել հաւատարիմ իր տիրոջը: Դու կատարել ես քո պարտքը: Բայց թէեւ դու ինձ խաբեցիր, իսկ ես հանգամանքները ի նկատի առնելով, ներում եմ քեզ: Հիմայ դու ինձ այն ասա, թէ ինչ միջոցով կարող եմ ես հասնել ամբողջ Ղարաբաղի վրայ տիրելու բարձր իշխանութեանը: Հաւատացած եղիր, որ ես կը վարձատրեմ քեզ արժանաւոր կերպով:

— Թող Ալլահը եւ սուրբ Մարգարէն առաքեն ամենազօր, ամենաողորմած եւ ամենաբարի խանի վրայ իրանց օրհնութիւնը եւ թող բազմացնեն նրա կեանքի տարիները Մեծ ծովի[1] աւազների թուով: Ձեր դէպի ինձ ցոյց տուած գթութեան համար, խան, ես կը հաղորդեմ այդ

[1] Մեծ ծով. ովկիանոս: Ծան. հեղ.:

նշանաւոր գաղտնիքը։ Երկպառակութիւնները, որ ծագել են Խամսայի մելիքների մէջ, բոլորովին քայքայել են նրանց միաբանութիւնը։ Իսկ այդ նոր սկսուող պատերազմը կը հասցնէ վերջին հարուածը։ Նրանց զօրութիւնը իսպառ կը թուլանայ։ Ամբողջ Ղարաբաղի վրայ բարձր իշխանութիւն ձեռք բերելու համար անհրաժեշտ է ունենալ միայն մի բերդ, որը կառուցուած լինէր մի անմատչելի տեղում։ Իսկ ես գիտեմ մի այսպիսի տեղ։ Ջանախչիից 12 վերստ հեռաւորութեան վրայ կայ մի սար, որի գագաթի վրայ ստորոտից բարձրանալու համար հարկաւոր կը լինի մէկ եւ կէս ժամ։ Սարափելի զառիվերներ տանում են դէպի նրա ժայռոտ գագաթը։ Այդ սարը երեք կողմից բոլորովին անմատչելի է։ Նա շրջապատած է պարսպաձեւ ապառաժներով, որոնց ներքեւից աղմկելով որոտում է մի գետ եւ արագութեամբ վազում է քարերի միջով։ Միայն մի կողմից կարելի է մուտք գործել դէպի սարի գագաթը, եւ այդ կողմը կարելի է ամրացնել պարիսպներով։ Իսկ մնացած կողմերը պաշտպանվում են բնական ամրութիւններով։ Սարի գագաթի վրայ կայ մի տափարակ տարածութիւն, որի շրջապատը երկու ժամուայ ճանապարհ կը լինի։ Այդ տեղում կարելի է հիմնել մի քաղաք եւ բնակեցնել նրան քաջ պատերազմողներով։ Այնուհետեւ դուք կը լինէք անմատչելի, երբ մի որ եւ իցէ վտանգ կը սպառնայ թշնամին, եւ կարող էք միշտ հարուածել ձեր թշնամիներին, պահելով շրջակայ բնակիչներին սարսափի մէջ, եւ սրի ուժով կը հարկադրէք նրանց ձեզ հպատակելու։

— Շատ գեղեցիկ եւ չափազանց լաւ մտածուած է, պատասխանեց Փանահ-խանը։ — Դու, ով աստղագէտ, թէեւ վատ բժիշկ ես, թէեւ խաբեբայ ես, բայց որպէս

երեւում է, հնարագիտութեան մէջ խիստ վարպետ ես։ — Ո՞ւմն է պատկանում հիմայ այդ տեղը։

— Վարանդայի մելիքին։ Եւ որովհետեւ դուք այժմ հրաւիրուած էք նրան օգնելու համար, այդ պատճառով խիստ դիւրին կը լինի ձեզ պահանջել նրանից, որ այդ տեղը ընծայէ ձեզ։ Մի բան էլ կայ. իմ տուած խորհրդի համեմատ, Ջումշուդը պէտք է իր կնոջը ներկայացնէ իր հօրեղբօրը։ Դուք կարող էք պահանջել ձեզ համար բաւականութիւն այն յափշտակութեան մասին, որ կատարեց Ջումշուդը, առեւանգելով Սալըհային, որը արդէն ձեր կինն էր դառնալ։ Ձեզ հետ իր բարեկամական կապերը պահպանելու համար եւ իր եղբօր որդուն ձեր վրէժխնդրութիւնից ազատելու համար, որ նա կրկին բախտ ունենայ իր Սալըհայի ամուսինը լինել, — ես հաւատացած եմ, որ Վարանդայի մելիքը ուրախութեամբ կը համաձայնուի ընծայել ձեզ այն տեղը, եթէ դուք կ՚ընդունէք այդ որպէս վարձատրութիւն ձեզ հասցրած անպատւութեան փոխարէն։

— Դու չափազանց խելացի մարդ ես, աստղագէտ։ Այն պարգեւը, որին դու արժանի ես, կը լինի քո ազատութիւնը պատժուելուց եւ վարձատրութիւն փողերով։ Դու կը ստանաս թէ առաջինը եւ թէ երկրորդը, հետեւիր ինձ։

Նրանք գնացին։

## II.

*Գիշերային պատերազմ Չանախչիի մօտ — Նրանց ազատուելը [illegible].*

Ջումշուդը իր [illegible]
էին մի ամբողջ օր, [illegible]

զգալով սաստիկ յոգնութիւն, եւ այլ եւս չտեսնելով իրանց ետեւից հետամուտ եղողներին, նրանք կանգ առին։

Սալիհան, որ սկզբից սաստիկ վախեցած էր, ուրախացաւ, երբ լսեց ծանօթ ձայնի հնչիւնները, որոնք այնքան մօտ էին նրա սրտին։ Հասկանալով կատարուած անցքի նպատակը, նա ճանապարհի ամբողջ ընթացքում միայն նայում էր Ջումշուդի վրայ, այն աչքերով, որ լցուած էին հոգեկան բերկրութեամբ, եւ չէր կարողանում իր հրճուանքին բաւականաչափ սնունդ տալ։ Երբ որ նրանք կանգ առին, Սալիհայի հարցմունքները չափ չունէին։ Անդադար գրկում էր իր ամուսնին, ճնշում էր իր կուրծքի վրայ, աշխատում էր արտայայտել իր սրտի բոլոր բորբոքը, բոլոր սէրը, բոլոր տանջանքները, որ կրել էր նա իրանց անջատման միջոցում։ Ջումշուդը նոյնպէս գտնվում էր մի այնպիսի հիացման մէջ, որ խօսքեր չէր գտնում իր ուրախութիւնը արտայայտելու։ Փափուկ խոտերը ծառայում էին նրանց անկողնի տեղ, իսկ միլիօնաւոր աստղերը, որոնք շքեղ կերպով սփռուած էին կապոյտ երկնակամարի վրայ, լուսաւորում էին նրանց։ Ո՛վ սիրոյ քաղցր րոպէներ, ի՞նչու ամենին չէք վիճակվում դուք։ Բայց աւա՜ղ, զուարճութիւնները խեղճ մահկանացուների գնվում են խիստ թանկ գնով եւ հոգեկան դառնութիւնների հետ գտնվում են մի եւ նոյն կարգում, — դառնութիւններ, որոնք վաղ թէ անագան յաջորդում են ուրախութիւններին...

Երրորդ օրուայ երեկոյեան պահուն Ջումշուդը տեսաւ իր առջեւ մի խումբ զինուած մարդիկ, որոնք, ինչպէս երեւում էր, հանգստանում էին, որովհետեւ նրանց ձիաները արածում էին նրանց շուրջը։ Երիտասարդը հե-

ուեցաւ գիտենալ, թէ ովքեր էին նրանք, այդ

մօքով իր նօքարներից մէկին հրամայեց, որ գնայ տեղե-կանայ։ Երբոր նա վերադարձաւ, Ջումշուդը իմացաւ, որ նրանք իր մարդիկն էին, որոնց առաջուց ինքը ճանապարհ էր դրել, որ գնային Զանախչի։ Նա զարմացաւ, թէ ինչ արգելք կարող էր այդքան ժամանակ նրանց պահած լի-նել այդ տեղում, եւ իսկոյն մօտեցաւ, սկսեց պատճառը հարցնել մի եւ նոյն նօքարից, որին յանձնել էր իր խմբի գլխաւորութիւնը։

— Գուցէ ձեզ յայտնի չէ, իշխան, պատասխանեց նա, — որ Խամսայի բոլոր մելիքները ապստամբուեցան մեր դէմ, եւ Թալիշեցիք, ջարդելով ձեր հօրեղբօր զօր-քերը, արդէն պաշարել են Զանախչին։ Մենք չհամար-ձակուեցանք առանց ձեզ առաջ գնալու եւ վճռեցինք սպասել ձեր վերադարձին։

— Հօ՛, այդ շատ վաղ են սկսել... ես այդ չէի սպասում... — Շա՞տ է թշնամիների թիւը։

— Մօտ երեք հազար։

— Այդ ոչինչ. ես կ՚աշխատեմ շուտով ծանօթա-նալ Թալիշեցիների հետ... Մենք հէնց այդ գիշեր պէտք է յարձակուենք թշնամիների վրայ եւ ազատենք Զանախ-չին պաշարումից։

Ջումշուդը խորհուրդ տուեց Սալիհային հագնուել տղամարդի ձեւով եւ յարձակումի գործելու միջոցին չը բաժանուել իրանից։ Ժամանակը նպաստում էր քաջ երիտասարդի գիտաւորութեանը։ Երկինքը ծածկուեցաւ մէգերով, որոտը որոտում էր, կայծակը կտրատում էր մթին ամպերը։ Ամեն ինչ ցոյց էր տալիս, որ գիշերը փո-թորկային եւ խաւար կը լինի։ Ջումշուդը բաժանեց իր խումբը երեք մաս, հրամայելով իւրաքանչիւր մասին հա-րուածել թշնամուն միմեանց [illegible] կողմերից։ Որ-

պէս զի խաւարի մէջ միմեանց ճանաչէին, նրանք ընտրեցին որպէս նշանաբան Ս ա լ ի հ ա անունը։

Գիշերից։ Սաստիկ անձրեւը հեղեղի նման թափվում էր ամպերից։ Անընդհատ որոտման միջոցում կայծակի փայլատակումը հետեւում էր մինը միւսին. շանթահար երկինքը, կարծես թէ, վառվում էր կրակի մէջ։ Կամաց, առանց աղմուկի, Ջումշուդի խումբը առաջ էր ընթանում։ Անձրեւի ձայնը խլացնում էր նրանց քայլերի խշխշոցը։ Նրանք գնում էին հետիոտն, ձիաները իրանց ետեւից քարշ տալով։ Չանախչի բերդին խիստ մերձ հեռաւորութեան վրայ նրանք տեսան թշնամիների մի խումբ, որ զետեղուած էր տաղաւարների մէջ։ Տաղաւարները հիւսուած էին ծառերի ճիւղերից։ Եղանակի վատութիւնը ստիպել էր նրանց ծածկուել այդ ժամանակաւոր բնակարանների մէջ։ Միայն տեղ-տեղ տեսնվում էին կանգնած պահապաններ, որոնք անձրեւից պահպանուելու համար մինչեւ ականջները ցած էին թողել իրանց փափախները եւ նայում էին դէպի հակառակ կողմը։

Հետազօտելով այդ բոլորը կայծակի լուսով, որը անդադար փայլատակում էր, Ջումշուդը նշանացի կերպով իմացում տուեց նստել ձիաների վրայ։ Նրա հրամանը կատարուեցաւ այնքան հանդարտութեամբ, որ անկարելի էր լսել ամենափոքր շարժման ձայն անգամ։ Հարիւր մարդ դիմեց դէպի գետի կողմը, միւս հարիւրը դիմեց դէպի բերդի հիւսիսային կողմը, իսկ Ջումշուդը մնացածների գլուխը անցնելով, ընտրեց գործել դէպի կենտրոնը։ Մի ակնթարթում երեք խումբերը միասին, սարսափելի աղաղակներով, յարձակուեցան քնաթաթախ, ընդարմացած թալիշեցիների վրայ։ Արիւնհեղութիւնը սոսկալի էր։ Թշնա-[illegible] տիրեց շփոթութիւն եւ իրարանցում։ Նրանք

չհասկանալով թէ ում հետ գործ ունեն, կամ խլում էին իրանց զէնքերը եւ յարձակվում էին միմեանց վրայ, կոտորում էին միմեանց, կամ ընկնում էին վէրք ստանալով վարանդացիների խէնջարներից ու թրերից։ Այդ միջոցում կայծակը, կարծես թէ, կամենալով նպաստել Ջումշուդի յաջողութեանը, փայլատակեց մի տաղաւարի վրայ եւ այրեց նրան։ Որոտման զարհուրելի պայթիւնը դղրդեց ամբողջ շրջակայքը, եւ լեռների խորքից հազարաւոր բոմբիւններ վերադարձրին նրա արձագանքը։ Կրակը արագութեամբ տարածուեցաւ բոլոր տաղաւարների մէջ եւ հրդեհի լուսաւորութեան առջեւ վարանդացիները կոտորում էին իրանց թշնամիներին, ինչպէս գիշատիչ գազաններին։

Թալիշի մելիքի որդին, որը բերդը պաշտպանողների հրամանատարն էր, գործ դրեց բոլոր հնարաւոր միջոցները, որ կարողանայ հաւաքել իր զինուորներին, որպէս զի ընդդիմադրէ յարձակուողներին, բայց նրա ջանքերը ի զուր անցան։ Վերջապէս նրան յաջողուեցաւ միացնել մինչեւ հինգ հարիւր հոգի, որոնք գտնվում էին անպատրաստ եւ անկարգ վիճակի մէջ։ Նա իսկոյն յայտնեց նրանց, թէ թշնամու թիւը շատ փոքր է, եւ թէ չափազանց ամօթալի բան կը լինէր մի բուռն գայլերից խոյս տալը, կորցնելով այն բոլոր օգուտները, որոնք ձեռք էին բերուած այնքան թանկ գներով։

“Ամաչեցէք, աղաղակում էր նրանց, — ամաչեցէք, երկչոտ զինուորներ, ո՞ւր էք փախչում այսպէս շտապով։ Միթէ չէ՞ք տեսնում, որքան փոքրաթիւ են այն ստահակները, որ համարձակվում են մեզ անհանգստացնել։ Միթէ դուք նոյն Թալիշեցիները չէ՞ք, որոնք մի քանի օր առաջ մահ եւ սարսափ էին տարածում Վարանդայի զօրքերի

մէջ։ Ինչի՞ց էք վախենում դուք, ձեր տաղաւարների հրդեհի՞ց, թէ այդ մի բուռն մարդիկներից։ Սրբէ՛նք դրանց արիւնով մեր սրերը եւ դրանով փարատենք մեր նախատինքը։ Երեւի, դուք ցանկանում էք, որ ես ամաչելով յիշեմ, որ ձեր հրամանատարն եմ եղել։ Եկէ՛ք, եկէ՛ք հաւաքուենք եւ ստիպենք զղջալ այդ յանդուգն յիմարներին, որոնց ես չեմ ճանաչում։ Խելքի եկէք, Թալիշեցիք, եթէ ոչ, երդվում եմ բոլոր սրբութիւններով, որ ես կոտորել կը տամ ձեզ, ինչպէս անպիտան ստրուկների, որոնք իրանց տէրերից եւս վախենում են"։

Այսպէս աղաղակելով, թուրը շարժելով եւ անհնազանդներին իր ոտքերի տակ ձգելով, Մելիք-Յուսէֆը հաւաքեց իր զօրքերից մնացածներին, մի կողմը տարաւ, որպէս զի ժամանակ ունենայ նրանց կարգի բերելու։ Վարանդացիները, այլ եւս չտեսնելով թշնամիներին, վազեցին աւարի առնելու Թալիշեցիների բանակը, որը արդէն մոխիր էր դարձած։ Յանկարծ նրանց ետեւից լսելի եղաւ խառնաձայն աղաղակ։ Մելիք-Յուսէֆը իր մարդիկներով յարձակուեցաւ Ջումշուդի զօրախմբի վրայ եւ չորս կողմից պաշարեց նրան։ Կռիւը նորոգուեցաւ այժմ աւելի յամառութեամբ։ Յուսէֆը պատառելով թշնամու խումբը, մօտեցաւ Ջումշուդին, եւ երկուսի մէջ սկսուեցաւ սաստիկ մենամարտութիւն։ Ջումշուդին ազատեց նրա զրահը եւ սաղաւարտը, իսկ Յուսէֆին նրա անհամեմատ ճարպկութիւնը։ Ջումշուդը խնայում էր նրան, բայց նա ամենեւին չէր մտածում խնայել Ջումշուդին։ Նրա մանկահասակ կինը, ամուսնի մօտից չբաժանուելով, կռւում էր զարմանալի քաջութեամբ։ Յանկարծ, Ջումշուդը իր նժոյգը սաստիկ արագութեամբ դարձնելու միջոցին, ասպանդակները կտրուեցան, եւ ինքը գլխիվայր թռաւ գետնի

վրայ։ Ցուէլինը շտապեց օգուտ քաղել այդ դէպքից եւ պատրաստվում էր իր մահաբեր սուրը իջեցնել ոսոխի գլխին։ Բայց Ջումշուդի պահապան հրեշտակը այնտեղ կանգնած էր։ Մանկահասակ Սալիհան մի ակնթարթում դուրս է կորզում թուրը Ցուէլինի ձեռքից եւ իր երկրորդ հարուածով նրան գլորում է գետին։ Տեսնելով իրանց հրամանատարին ընկած, թալիշեցիները նոյն րոպէում ցրիւ եկան, եւ արշալուսի առաջին ճառագայթները ողջունեցին վարանդացիների յաղթութիւնը։ Ջանախչի բերդը ազատուեցաւ թշնամու պաշարումից։

Պաշարուածները ամբողջ գիշերը անցկացրին բերդի պարիսպների վրայ, չկարողանալով հասկանալ, թէ արդեօք ովքեր պէտք է լինեին նոր յարձակում գործողները, կամ բերդի շրջակայքում ինչեր էին կատարվում։ Քամու շվշվոցը, անձրեւի աղմուկը, որոտի սաստիկ դղրդիւնը թոյլ չէին տալիս նրանց մի բան լսել։ Եւ վախենալով, մի գուցէ իրանց սխալմունքով Ջանախչին մտանեն թշնամու ձեռքը, նրանք չվստահացան բերդից դուրս գալ եւ մինչեւ առաւօտ մնացին փակուած նրա մէջ։

## III.

*Գաղտնիքը յայտնվում է — Փանահ-խանի գալուստը։*

Մեծ ուրախութեամբ Վարանդայի իշխանը իր ամրոցի պարիսպներից տեսաւ Ջումշուդին, որը յաղթական փառքով, իր խմբի հետ, մտնում էր շարժական կամուրջին։ Հօրեղբայրը եւ եղբօրորդին ցնծութեան բացականչութիւններով վազեցին եւ միմեանց գիրկը ընկան։ Երբ անցաւ հոգեզմայլութեան առաջին րոպէն, մելիքը ասաց․

— Հազար անգամ գոհութիւն կը մատուցանեմ Ամենաբարձրեալին, որ քեզ, իմ սիրելի Ջումշուդ, եւ ոչ մի ուրիշին պարտական եմ ես թշնամիների պաշարումից ազատուելս։ Դու շահեցիր մի նոր իրաւունք իմ երախտագիտութիւնը գրաւելու համար։ Բայց ո՞վ է այդ գեղեցկադէմ երիտասարդը, որ կանգնած է քո մօտ։

— Դա իմ փրկիչն է, հօրեղբայր, եթէ դա չլինէր, դուք այլ եւս ինձ չէիք տեսնի։

— Ի՞նչպէս։

Ջումշուդը պատմեց մեզ արդէն յայտնի անցքը։ Վարանդայի մելիքը հիացմամբ գրկեց Սալիհային, համբուրեց. ասելով.

— Սիրելի երիտասարդ, քո ինձ մատուցած ծառայութիւնը այնքան անգնահատելի է, որ բարձր է ամեն տեսակ վարձատրութիւնից։ Պահանջիր ինձանից, ինչ որ կամենում ես։ Եթէ քո պահանջածը լինի միայն իմ իշխանութեան ներքոյ, երդվում եմ քեզ իմ սրով, որ դու անպատճառ կը ստանաս։

Այդ խօսքերի միջոցին Ջումշուդը բռնեց Սալիհայի ձեռքից, երկուսն էլ ծունկ իջան մելիքի առջեւ։

— Մենք խնդրում ենք ձեր ներումը, հօրեղբայր, դա մեզ համար աւելի թանկագին է, քան ամեն տեսակ պարգեւներ։

— Ներո՞ւմ... ձեր երկուսի՞դ... այդ ի՞նչ է նշանակում... ես չեմ հասկանում...

— Այդ երիտասարդը, հօրեղբայր, այդ երիտասարդը...

— Ասա՛, շուտով, մի՛ տանջիր ինձ։

— Այդ երիտասարդը... իմ կինն է։

— Քո կի՞նն է, եւ նա...

— Մահմեդականուհի է...

— Ի՞նչպէս, դու ամուսնացա՞ր մահմեդական աղջկայ հետ, եւ հրաժարուեցա՞ր մեր կրօնի սուրբ ծէսերից... Տէր Աստուած, այդ ի՞նչպէս կարելի է։

Սալիհան զուարթ կերպով մէջ մտաւ.

— Ես արդէն համարեա թէ քրիստոնեայ եմ. իմ ամուսինը պատմել է ինձ բոլորը, ինչ որ վերաբերվում է ձեր կրօնին։ Ես սիրում եմ քրիստոնեաներին եւ պատրաստ եմ քրիստոնեայ լինել։ Ես կը ցանկանայի եւ մկրտութիւն ընդունել. դուք այնքան բարի էք եւ ներողամիտ, որ կ՚օգնէք ինձ կատարելու իմ բաղձանքը։

Սալիհայի խոստովանութեան մէջ այնքան անկեղծութիւն եւ բարեհոգութիւն կար, որ Վարանդայի իշխանը բոլորովին հիացած մնաց նրա խօսքերից։ Նա վեր բարձրացրեց Ջումշուդին ու նրա կնոջը, գրկեց երկուսին, ասելով.

— Բախտաւոր եղէք, իմ զաւակներ, եւ միշտ բախտաւոր, իսկ ինձ մնում է այսուհետեւ ուրախանալ, ձեր երջանկութիւնը տեսնելով։

Ո՛րպիսի հրճուանքով Ջումշուդը եւ Սալիհան լսեցին այդ խօսքերը, որոնց մէջ բովանդակվում էր նրանց ապագայ բարեբախտութիւնը եւ յոյսը աւելի լաւ ապագայի։

Միւս օրը հրաւիրուեցաւ մի քահանայ, որը կատարեց Սալիհայի մկրտութեան սուրբ խորհուրդը. իսկ երրորդ օրը նա ամուսնացաւ Ջումշուդի հետ օրինաւոր պսակով, քրիստոնէական սուրբ կրօնի ծէսերի համեմատ։

Սալիհայի ամուսնութեան միւս օրը Փանահ-խանը, իր քաջասիրտ ջուանշիրցիների հետ, յայտնուեցաւ Ջանախչի ամրոցի պարիսպների մօտ։ Վարանդայի մելիքը ուրախութեամբ շտապեց դիմաւորելու նրան։ Բարեկամական

խոստմունքները երկու կողմից եւս թափվում էին գետի նման: Փանահ-խանը խորամանկ կերպով հրապուրում էր մելիքի խելքը, յայտնելով այն միտքը, թէ իր ապագայ բարձրանալու անկախութիւնը պէտք է հիմնուած լինի իր եւ նրա հետ կապուելիք դաշնակցութեան վրայ: Մելիքը, անհրաժեշտութիւնից ստիպուած, փաղաքշում էր ջուան-շիրցիների գլխաւորին, որովհետեւ առանց նրա աջակցութեանը չէր կարող Խամսայի բոլոր մելիքների միացեալ ուժերին դէմ դնել:

Խանի գալուց յետոյ Չանախչին դարձաւ խնճոյքների մի մեծ դահլիճ. բոլոր դէմքերի վրայ կարելի էր տեսնել ուրախութիւն եւ բաւականութիւն: Բայց այդ զուարճութիւնների միջոցում Փանահ-խանը չէր մոռանում իր ներքին խորհուրդները: Նա միայն մի յարմար առիթ էր որոնում խօսակցելու մելիքի հետ, եւ այդ առիթը շուտով տեղի ունեցաւ: Վարանդայի մելիքը տեղեկութիւն ստացաւ, որ Թալիշի մելիքը, վշտանալով եւ զայրանալով իր կրած կորուստների պատճառով, բանակցութիւններ սկսեց Խամսայի միւս մելիքների հետ եւ արդէն կապեց նրանց հետ դաշնակցութիւն հակառակ Վարանդայի իշխանի: Նա իմացաւ, որ պատերազմի պատրաստութիւնները կատարվում են խիստ եռանդով եւ շուտով պէտք էր սպասել թշնամու մի նոր եւ աւելի զօրաւոր յարձակմանը: Այդ բոլորը ի նկատի առնելով, Վարանդայի մելիքը անհրաժեշտ համարեց խորհրդակցել Փանահ-խանի հետ, մտածել այն նախապատրաստութիւնների մասին, որպիսիքը պէտք էր ձեռք առնել թշնամու դէմ պաշտպանուելու համար: Իսկ Փանահ-խանը մտածում էր օգուտ քաղել այդ հանգամանքներից եւ իրագործել իր վաղեմի բաղձանքները: Նա ասաց.

— Մելիք, թշնամիները սաստիկ զօրաւոր են, եւ որպէս երեւում է, դիտաւորութիւն ունեն գործելու բոլորովին վճռական կերպով։ Հարկաւոր է սկզբից ապահովացնել իրան եւ պատրաստ լինել նրանց յարձակումների դէմ։ Երբ դուք ապահովուած կը լինէք, այն ժամանակ ինքներդ կարող էք դուրս գալ կռուի դաշտը, առանց սպասելու, որ նրանք ձեզ մօտ շնորհ բերէին։ Ձեր Զանախչի բերդը պաշտպանուելու համար խիստ անյուսալի դիրք ունի։ Պէտք է որոնել մի աւելի ամուր դիրք, եւ ես մի այսպիսի տեղ ի նկատի ունեմ, որի վրայ բերդ հիմնելով, կը լինենք այնուհետեւ բոլորովին ապահովուած։ Բացի դրանից, մելիք, ես դիտաւորութիւն ունեմ ձեզանից բաւականութիւն պահանջել այն սաստիկ վիրաւորանքի համար, որ հասցրել է ինձ ձեր եղբօրորդին։

— Ի՞նչպէս, նա համարձակուեցաւ վիրաւորե՞լ ձեզ։

— Խիստ ծանր կերպով, ասաց Փանահ-խանը ծիծաղելով։ — Նա փախցրեց իմ կնոջը։

— Ձեր կնո՞ջը։ Բայց...

— Նրա այժմեան կինը իմ կինն էր...

— Այդ ես չեմ հասկանում...

— Այդ դժուարին չէ, պատասխանեց խանը եւ սկսեց մանրամասնաբար պատմել բոլոր անցքը։

Յետոյ աւելացրեց.

— Դուք, կարծեմ, կը համաձայնուէք ինձ հետ, մելիք, որ ձեր եղբօրորդին մեղանչել է հիւրասիրութեան սրբութեան դէմ։ Նա եկաւ ինձ մօտ իբրեւ դեսպան ձեր կողմից, բայց յափշտակեց իմ հարեմից իմ կնոջը, գործ դնելով իր ձեռնարկութեան համար նենգաւոր աստղագէտի խորամանկութիւնները...։ Ի՞նչ կ՚ասէք մի այդպիսի վարմունքի մասին։

Մելիքը մնաց շուարած։

Փանահ-խանը, նկատելով իր խօսքերի յաջող ազդեցութիւնը, շարունակեց,

— Մի բարկացէք, մելիք, թող մոռացութեան տանք անցեալը, եւ որպէս ճշմարիտ բարեկամներ, աշխատենք որոնել հնարներ, որոնցմով կարելի լինէր համաձայնացնել մեր փոխադարձ շահերը այն վարձատրութեան հետ, որը դուք ինձ պարտաւոր էք։ Այն տեղը, որի վրայ ես առաջարկեցի բերդ հիմնել, պատկանում է ձեզ[1]։ Տուեցէք ինձ այդ տեղը։ Ես նրա վրայ կը կառուցանեմ մի բերդ, եւ այդ բերդը կը ծառայէ իբրեւ պաշտպանողական ապահով ամրութիւն մեր երկուսի համար։ Որովհետեւ ես յոյս ունեմ, գոնէ իմ կողմից, որ մեր բարեկամութիւնը մշտապէս կը շարունակուի, եւ վարանդացիները ջուանշիրցիների հետ կը կազմեն մի ժողովուրդ։

Մելիքը, չհասկանալով Փանահ-խանի խորամանկ նպատակները, որ թաքնուած էին այդ փաղաքշական խօսքերի մէջ, ուրախութեամբ ընդունեց նրա առաջարկութիւնը։ Նա ուրիշ ճար չունէր. գտնուելով այնպիսի կրիտիկական հանգամանքների մէջ, կարօտութիւն ունէր նրա օգնութեանը։ Նա յայտնեց իր կատարեալ համաձայնութիւնը, վճռեցին միւս օրը գնալ այն տեղը տեսնելու, որը նշանակուած էր բերդի կառուցանելու համար։

## IV.

*Սալիհան կրկին յափշտակվում է:*

Մթին գիշերը տարածել էր խաւարը Ղարաբաղի վրայ։ Ոչ մի աստղ չէր փայլում երկնքից. օդը թանձր

[1] Շուշի բերդը շինուած է մի այնպիսի բարձրաւանդակի վրայ, որ այնտեղ սեպտեմբեր ամսից սկսվում է ձմեռը։ Ծան. հեղ.։

էր եւ ծանր. ամեն ինչ նախագուշակում էր փոթորկի մերձաւորութիւնը, որը ամառնային եղանակների ժամանակ ոչ սակաւ անգամ պատահում է Ղարաբաղի հովիտներում։

Սալէհան միայնակ էր իր սենեակում, որը գտնվում էր Ջանախչի ամրոցի հիւսիսային աշտարակի ամենաբարձր յարկում։ Այդ միջոցին Ջումշուդը գտնվում էր իր հօրեղբօր մօտ, այն խորհրդի մէջ, որին մասնակցում էր եւ Փանահ-խանը։ Նրա մանկահասակ ամուսինը անհամբերութեամբ սպասում էր երիտասարդին։ Յանկարծ լսեց նա խիստ պարզ կերպով այդ խօսքերը. «Ցած թողեցէք մի պարան ձեր աշտարակի լուսամուտից, ձեզ կը տան տեղեկութիւններ, որոնք ձեզ համար խիստ կարեւոր են»։ Նա վախեցաւ։ Մի եւ նոյն ձայնը երկրորդ եւ երկրորդ անգամ արտասանեց մի եւ նոյն խօսքերը։ Յետոյ աւելացրեց. «Ոչինչից մի վախեցէք եւ շտապեցէք։ Եթէ դուք կատարելու չլինէք ձեր բարեկամի պահանջածը, յետոյ ինքներդ պիտի զղջաք... բայց այդ շատ ուշ կը լինի... գործը վերաբերում է Ջումշուդի կեանքի ապահովութեանը»...

— Ջումշո՜ւդ... Աստուած իմ, բացականչեց Սալէհան, — այս րոպէիս, այս րոպէիս, եւ վեր առնելով առաջին պատահած պարանը, ցած թողեց լուսամուտից։ Երբ որ իմացաւ, որ նրա ծայրին արդէն կապուեցաւ մի ինչ որ ծանր բան, վեր քաշեց պարանը դէպի ինքը։ Նա տեսաւ մի թուղթ, որ կապած էր քարի հետ, սկսեց շտապով կարդալ հետեւեալը. «Մի մարդ, որ ջերմ կարեկցութիւն ունի ձեր բախտաւորութեան համար, յայտնում է, որ մի նշանաւոր դժբախտութիւն սպառնում է Ջումշուդին, որից նա ոչինչով չի կարող ազատուել, եթէ

դուք չշտապէք փրկելու նրան։ Հէնց այս րոպէիս պէտք է գաղտնի կերպով գաք այն ծառի մօտ, որը գտնվում է ճանապարհի մօտ, ձախ կողմում։ Այնտեղ դուք կը ստանաք մի թիլիսման,[1] որը կարող է վտանգից պահպանել ձեր ամուսնին։ Բայց այդ մասին պէտք է գաղտնիք պահել։ Շտապեցէք, եթէ ձեզ համար թանկ է Ջումշուդի կեանքը։ Ձեզ շատ չեն ուշացնի. ոչ ոքի ցոյց մի տուէք այդ թուղթը. ոչնչացրէք նրան եւ գաղտնիքը ծածուկ պահեցէք, որովհետեւ դրանից է կախուած բոլորը»։

Սալիհան չափազանց երկիւղի մէջ ընկաւ։

— Աստուած իմ, դարձեալ բացականչեց նա, — իմ սիրելի Ջումշուդը վտանգի մէջ է, կը վազեմ ազատելու նրան։ Բայց ինչպէս։ Առանց մելիքի հրամանին պահապանը ինձ թոյլ չի տայ դուրս գալ ամրոցից։ Իսկ ինձանից պահանջում են գաղտնիք պահել... Շուտով հագուստս կը փոխեմ, կ'ասեմ, որ ես ուղարկուած եմ մելիքի կողմից։ Երբ որ գործը վերաբերում է իմ Ջումշուդի ազատութեանը, այլ եւս ոչինչ չէ կարող ինձ վախեցնել...

Մեր հերոսուհին շտապով փոխեց հագուստը, վազեց դէպի շարժական կամուրջը։

— Թո՛ղ տուր, շուտով, գոչեց նա պահապանին, — մելիքը ուղարկեց ինձ գետից ջուր բերելու։

Պահապանը ցած թողեց շարժական կամուրջը։ Նա նետի նման սլացաւ դէպի նշանակած ծառը։ Բայց հէնց

[1] Թիլիսման կամ մեր ժողովրդական բարբառով թըլըսում կոչվում են զանազան տեսակ կախարդական բժժանքները, որ սնահաւատները կրում են իրանց վրայ այլ եւ այլ գիւթական նպատակներով։ Ծան. Թարգ.։

որ հասաւ այնտեղ, իսկոյն մի քանի հոգի շրջապատեցին նրան, բերանը կապեցին թաշկինակով, թեւքերը կաշկանդեցին պարանով, եւ յափշտակելով նրան, արագութեամբ անհետացան։

Խեղճ Սալիհա, եւ այսպէս դու զոհ եղար քո ջերմեռանդութեանը, որ ունէիր դէպի Ջումշուդը, զո՜հ, հրաբորբոք սիրոյ եւ նենգաւոր դաւաճանութեան։ Ո՞ր երկիրը կը տանեն քեզ քո յափշտակողները, ի՞նչ են կամենում նրանք, կամ ո՞վքեր են նրանք, — այդ բոլորը գուցէ մի ժամանակ կ'իմանանք մենք, բայց այժմ դառնանք դէպի Ջումշուդը։

Վերջացնելով բոլոր կարգադրութիւնները, որ վերաբերում էին մօտալուտ պատերազմական գործողութիւնները սկսելուն, մելիքը, Փանահ-խանը եւ Ջումշուդը բաժանուեցան միմեանցից։ Այդ վերջինը վազեց ամրոցի այն կողմը, որտեղ յոյս ունէր գտնել իր նազելի կենակցին։ Որպիսի սարսափ տիրեց նրա սրտին, երբ մտնելով իր բնակարանը, այնտեղ չգտաւ իր կնոջը։ Տղամարդի հագուստը, որը ինքը հագնում էր ճանապարհորդութեան ժամանակ, նոյնպէս անհետացած էր։ Արդէն հասկացաւ... ուրեմն նա գնաց... թողեց նրան... նրան, որին այնքան սիրում էր... Այդ անհաւատալի բան է... դրանից մի գաղտնիք պետք է լինի... դրա մէջ ծածկուած է մի նշանաւոր, կործանարար գաղտնիք... Այսպէս էր մտածում Ջումշուդը եւ խելագարի նման վազում էր [illegible] ժական կամուրջը։

Պահապանից ստացած տեղեկութիւններից [illegible] նա իրան հասած դժբախտութիւնը [illegible] լեհան, առանց ոչ ոքից հարցափորձուած [illegible] դուրս է եկել ամրոցից։ Նրա սիրտը [illegible]

կամենում էր վազել նրա ետեւից, իմանալ նրա մի այդպիսի անսովոր վարմունքի պատճառը։ Նա աւելի բարւոք էր համարում մեռնել, քան թէ մնալ անգիտակցութեան մէջ։ Նա վազեց իր հօրեղբօր մօտ։ Մելիքը տեսնելով նրան, անհանգիստ կերպով ոտքի ելաւ։ Երիտասարդի մռայլուած, այլայլուած դէմքը, վրդովուած աչքերը ցոյց էին տալիս, որ մի որ եւ է սարսափելի դէպք պէտք է պատահած լինի։

— Ի՞նչ է պատահել, ինչ է պատահել... գոչեց մելիքը ամբողջ մարմնով դողալով. — ի սէր Աստուծոյ, ասա՛, ի՞նչ է պատահել քեզ։

— Հօրեղբայր, շտապեցէք... գնա՛նք... գնա՛նք...

— Ո՞ւր, ի՞նչու համար...

— Ես կորած եմ, ես կը մեռնեմ... ա՛խ, մի տանջէք ինձ, գնա՛նք... կարելի է դեռ ժամանակ կ'ունենանք նրա ետեւից հասնելու... Այսպէս խօսելով, նա քաշ էր տալիս կիսահագնուած մելիքին։

— Յուշի՛կ, Ջումշուդ, ի՞նչ ես կամենում դու, ո՞ւր գնանք, ո՞ւմ որոնենք, ի՞նչը քեզ այդ դրութեան մէջ դրեց։

— Իմ Սալիհան... իմ Սալիհան տղամարդի հագուստով հեռացաւ ամրոցից. նա գնաց, Աստուած գիտէ, թէ որտեղ եւ ինչու համար։ Նա ինձ թողեց։ Ի՞նչով ես առիթ տուի նրա մի այդպիսի վարմունքին, ե՛ս, որ այնքան սիրում էի նրան, որի համար մոռացայ ամեն ինչ այս աշխարհում, որի համար զոհեցի ամեն ինչ։ Այդ ... է նշանակում։ Նա փախաւ եւ ինքնայօժար կերպով... ...ով։ Կարելի՞ էր մի այդպիսի բան սպասել։ Ա՛խ, ...ք ձեր անբախտ, լքած, խաբուած ...նքը անտանելի կը լինի ինձ այ-

սուհետեւ. ես չեմ կամենում այլ եւս ապրել, եւ պէտք չէ ապրել... Ամեն ինչ հակառակում է ինձ... եւ ես կը գնամ բնութեան հակառակ, որը դատապարտել է ինձ մշտական տանջանքի...

Արտասանելով այդ խօսքերը, նա խլեց խէնջարը եւ շտապեց այդ մահացու զէնքը դարձնել դէպի ինքը, բայց մելիքը բռնեց նրա ձեռքը, որ պատրաստ էր անձնասպանութիւն գործելու։

— Այդ ի՞նչ ես անում, անխելք, աղաղակեց մելիքը, — եթէ Սալիհան թողեց քեզ, ուրեմն նա այլ եւս չարժէ դրան, որ դու նրա համար անձնատուր լինես այս աստիճան յուսահատութեան։ Իսկ եթէ որ եւ իցէ մէկը յափշտակել է նրան, այժմ շատ ուշ է որոնելու նրանց։ Գիտե՞ս արդեօք, թէ դէպի ո՞ր կողմը փախել են նրանք։ Կասկածո՞ւմ ես արդեօք որ եւ իցէ մէկին այդ յափշտակութեան մէջ։ Դու չես պատասխանում։ Միթէ քո լռութիւնը ցոյց չէ՞ տալիս, որ քեզ յայտնի չեն իմ հարցերը։ Հիմայ դէպի ո՞ւր գնանք մի այսպիսի մթին գիշերում։ Կարելի՞ է արդեօք չմտածել, որ մեր թշնամիները, գիշակեր գայլերի նման, չեն մռնչում մեր չորս կողմում, եւ թէ, մենք չենք գտնւում զոհ նրանց կատաղութեանը ու մեր անխոհեմութեանը։ Խելքի եկ, Ջումշուդ, արիացիր եւ համբերող եղիր։ Մենք յետոյ կ՚աշխատենք ամեն միջոցներ ձեռք առնել քո Սալիհայի ազատութեան համար, եթէ նա յափշտակուած է միայն...

— Ա՜խ, եթէ նա յափշտակուած լինէր միայն, բացականչեց Ջումշուդը, — այն ժամանակ ես կը հետեւէի նրա ետեւից մինչեւ աշխարհի վերջին ծայրը, մինչեւ մեծ ծովի յատակը։ Բայց [illegible] նա յափշտակուած չէ,

նա ինքնայօժար կերպով թողեց ինձ։ Ի՜նչպէս անբախտ եմ ես...։ Բայց չլինի՞ թէ Փանահ-խանը յանդգնեցաւ հրապուրել նրան։ Ոչ, ո՛չ, այդ անկարելի է, այդ աներեւակայելի է... Տէր Աստուած, նա իր յօժարութեամբ թողեց ինձ. նա արհամարհեց իմ սէրը...։ Հօրեղբայր, խղճացէք անբախտ, խաբուած Ջումշուդի վրայ։ Ես ամաչում եմ նայելու ձեր երեսին, ես, որ Սալիհայի սիրոյ համար մինչեւ անգամ մեղանչեցի մեր սուրբ կրօնի օրէնքների դէմ, իսկ նա այսպէս անխիղճ կերպով խաբեց ինձ։ Բայց ես կը գտնեմ նրան, եւ այդ խէնջարը կը ցցեմ այն անհաւատարիմ սրտում եւ... Բայց ես, որ այնքան սիրում էի նրան, միթէ կարող եմ... ո՛չ, ո՛չ...։ Տէր Աստուած, Տէ՛ր Աստուած, որքա՜ն անբախտ եմ ես...

Ի զուր մելիքը գործ էր դնում ամեն միջոցներ Ջումշուդին հանգստացնելու համար, ի զուր վատնում էր իր բոլոր պերճախօսութիւնը նրան համոզելու համար, թէ նա ի զուր տանջում է իրան մի այնպիսի կնոջ համար, որը ինքը իրան անարժան դարձրեց նրա ամուսին լինելու համար։ Յուսահատուած երիտասարդը փետում էր իր գլխի մազերը եւ ցոյց էր տալիս խելագարութեան բոլոր նշանները։ Ամրոցի մէջ բոլորը յուզուած էին այդ անցքի պատճառով։ Մելիքը, որպէս զի փոքր ինչ հանգստացնէ իր եղբօրորդուն, դիտմամբ ուղարկեց զանազան կողմեր զինուած մարդիկ, եթէ կարելի էր, գտնէին փախստականների հետքերը, բայց նրանց բոլոր հետախուզութիւնները ապարդիւն անցան։ Գիշերային խաւարը անթափանցելի քօղով ծածկել էր այդ անցքը։ Ամբողջ գիշերը ոչ մի մարդ ամրոցի մէջ չպառկեց քնելու, բոլորը վրդովուած էին, բոլորը ափսոսում էին, որ Ջումշուդին վիճակուեցաւ մի այնպիսի դժբախտութիւն։ Մինչեւ անգամ ինքը

Փանահ-խանը մոռացաւ այն վիրաւորանքը, որ նրան պատճառել էր Սալիհայի ամուսինը։ Նա եւ միւսների նման ցաւակցում էր երիտասարդի վիճակին եւ տարուբերվում էր զանազան կարծիքների մէջ, թէ ինչ պատճառներ պէտք է դրդած լինէին Սալիհային փախչել մի այնպիսի ամուսնից, որին այնքան պաշտում էր նա, որին միշտ ցոյց էր տուած իր անկեղծ սիրոյ հաւաստիքը։ Այսպէս տխրութեամբ եւ խռովութեան մէջ անցաւ Զանախչի բերդում այն գիշերը, որի առաւօտը պէտք է սկիզբը դրուէր անմոռանալի Շուշիի հիմնարկութեանը։

## V.

### Շուշի բերդի հիմնարկութիւնը — տեղեկութիւններ Սալիհայի մասին:

Արեգակը փայլում էր իր կատարեալ լուսաւորութեան մէջ։ Բնութիւնը գիշերային փոթորիկից յետոյ, կարծես թէ, կրկին զարթնեց նոր փառքով եւ պայծառութեամբ։ Լեռներից հոսում էին հազարաւոր առուակներ եւ իրանց բարերար հեղանիւթով ոռոգում էին կանաչազարդ հովիտների բուսականութիւնը։ Անտառապատ լեռները երեւում էին աւելի կենդանացած, թարմ զեփիւռը տարածում էր հովիտների մէջ խիստ ախորժելի զովութիւն։

Այդ միջոցին Փանահ-խանը, Վարանդայի մելիքը եւ Ջումշուդը դուրս եկան Զանախչի ամրոցից եւ գնում էին դէպի հիւսիսային կողմը։ Մի ահագին զինուած խումբ առաջնորդում էր նրանց։ Անցնելով լեռնային շղթաները, նրանք սկսեցին վեր ելնել աւելի եւ աւելի բարձր։ Նրանց առջեւ կանգնած էին հսկայական ժայռեր, ծածկուած անտառի եւ [illegible] մէջ։ [illegible]

բարձրանալով լեռան վրայ, վերջապէս հասան նրանք մի ընդարձակ տափարակի, որը գտնվում էր սարի բարձրաւանդակի վրայ։ Այդ տափարակից կարելի էր նշմարել ամենահեռաւոր տեսարանները, կարելի էր տեսնել բազմաթիւ գիւղեր, որ սփռուած էին հովիտների վրայ, կարելի էր հիանալ խաղողաբեր այգիների չքնաղութեամբ եւ գեղեցիկ լեռների պատկերներով, որ ծածկուած էին խիտ անտառներով։ Իսկ այդ բոլորը այնքան անորոշ կերպով էին երեւում, որ կարելի էր մտածել, որ նրանք շատ փոքրիկ առարկաներ են։ Այդ տափարակը երեք կողմից բոլորովին անմատչելի էր, որովհետեւ շրջապատած էր համարեա պարսպի նման սեպացած ժայռերով։ Միայն հիւսիսային կողմից կարելի էր բարձրանալ դէպի յիշեալ տափարակը։

— Ահա, ասաց Փանահ-խանը, բոլոր շրջակայքը ուշադրութեամբ հետազօտելուց յետոյ, — ահա այդ տափարակը ամենայարմար տեղ է բերդ շինելու համար. համաձա՞յն էք, մելիք, տալ ինձ այդ տեղը։

— Բայց, ասաց մելիքը, — նա որքան ընդարձակ է…

— Երեք կողմերը ամրացնելու պէտք չունեն, իսկ չորրորդ կողմից մենք կը կառուցանենք պարիսպներ եւ աշտարակներ, որոնց բարձրութիւնից կարելի կը լինի սարսափեցնել բոլոր ստահակներին, որոնք կը յանդգնեն մօտենալ մեզ։

— Լաւ, ես համաձայն եմ։ Էգուցուայ օրից մենք կը սկսենք բերդի հիմնարկութիւնը։

— Ի հարկէ, եւ մինչեւ աշնան վերջը կարելի կը լինի տեղափոխուել այդ նոր քաղաքում։

— Բայց ինչ անուն տանք մենք այդ քաղաքին։

— Այստեղ տեսարանները այնքան գեղեցիկ են եւ բոլոր շրջակայքը այնքան պարզ տեսնվում են, կարծես

*թէ, Թափանցիկ ապակու միջից երեւնալիս լինեն, — աւելի յարմար կը լինէր կոչել նոր բերդը Շ ու շ ա*[1]*:*

*— Շուշա՛, շատ գեղեցիկ անուն է, կրկնեց մելիքը, շնորհաւորում եմ ձեզ, որպէս Շուշայի տիրոջը:*

*Բոլորը ցած իջան ձիաներից, եւ իւրաքանչիւրը վեր առնելով մի-մի քար, կիտեցին միմեանց վրայ եւ կազմեցին փոքրիկ բլրակ: Փանահ-խանը կանգնելով նրա վրայ, հանդիսաւոր կերպով արտասանեց.*

*— Եւ Թող առաքէ Ալլահը իր օրհնութիւնը նորակառոյց բերդի վրայ, եւ Թող ծաղկի նա, որպէս Գիւլիստանի շքեղ վարդերը*[2] *եւ որպէս մարգարէի տան դրախտի ծառը: Եւ Թող լինի նա մի ժամանակ ամբողջ Ղարաբաղի մայրաքաղաքը եւ Թող փառաւորուի նա հրաշալի անցքերով: Եւ Թող խոնարհուեն նորակառոյց բերդի զօրութեան առջեւ բոլոր շրջակայ իշխանութիւնները, եւ Թշնամիները Թող չքանան, որպէս մոխիր...*

---

[1] Շ ո ւ շ ա, Թուրքերէն նշանակում է ապակի: Ծան. հեղ.:

Հեղինակը կարծում է, որ Շուշի բերդը իր անունը առել է շ ո ւ շ ա բառից. դա սխալ ենթադրութիւն է: Պատմութիւնից յայտնի է, երբ Մելիք-Շահնազար Բ-ը Փանահ-խանի հետ կառուցին Շուշի բերդը, այնտեղ տեղափոխեցին այդ բերդին մերձակայ մի հայաբնակ գիւղի բնակիչներին: Այդ գիւղը մինչեւ այսօր էլ գոյութիւն ունի եւ կոչվում է Շ օ շ ի կամ Շ օ շ գիւղ: Եւ որովհետեւ բերդի սկզբնական բնակիչները եղան Շօշի գիւղացիները, այդ պատճառով էլ բերդը նրանց նախկին բնակութեան տեղի անունով կոչուեցաւ Շօշի կամ Շուշի: Տես մեր "Խամսայի Մելիքութիւնները" գրքի XI գլ. 57 եր.: Ծան. Թարգ.:

[2] Գ ի ւ լ ի ս տ ա ն պարսկերէն նշանակում է վարդանոց կամ վարդարան. այսպէս կոչվում է Ղարաբաղի հինգ գաւառներից մէկը իր գեղեցիկ վարդերի պատճառով: Գիւլիստանը գտնվում է Գանձակ գաւառի սահմանի մօտ. նրա այն մասը, որ [illegible] է Կուր գետի ափերին, այն աստիճան տօթային է, որ [illegible] ծածկւում են եւ հասունանում են բոլորովին վայրենի դրութեան մէջ [illegible] ծածկուած են այդ պտուղների թփերով: [illegible] մութեան մէջ, որ այդ [illegible] մինչեւ անգամ [illegible] Ծան. Թարգ.:

Այդ խօսքերը վերջացնելուց յետոյ, նա իր աջը նախ տարաւ դէպի ճակատը, յետոյ նոյն ձեռքով շօշափեց գետինը, վեր առեց մի բուռն հող եւ ցրուեց կիտած քարերի վրայ։ Նրա օրինակին հետեւեցին բոլորը։

Թէ՛ ճանապարհորդութեան ամբողջ ընթացքում եւ թէ բերդի հիմնարկութեան ժամանակ, Ջումշուդը պահպանում էր խորին լռութիւն։ Բոլորովին զբաղուած իր սրտի ցաւերով, համարեա մեքենաբար հետեւում էր նա Փանահ-խանին եւ իր հօրեղբօրը, — մեքենաբար հետեւում էր նրանց օրինակին, եւ բերդի հիմնարկութեան գործողութիւնների ժամանակ, իսկ նրա մտածութիւնները սլացել էին խիստ հեռու, նրանք թափառում էին զանազան ենթադրութիւնների մռայլի եւ յուսահատութեան քաօսի մէջ...

Երբ որ մելիքը իր խմբի հետ սկսեցին ցած իջնել սարից եւ ուղեւորուեցան դէպի Չանախչի, այդ միջոցին Ջումշուդը, խորասուզուած դառն մտածութիւնների մէջ, իր ձին քշում էր այնքան դանդաղ կերպով, որ բաւական տարածութեամբ նրանցից յետ մնաց։ Յանկարծ նրա ձին խրտնելով, նետուեցաւ դէպի մի կողմ։ Երիտասարդը վեր բարձրացրեց աչքերը, տեսաւ աստղագէտին, որ մօտենում էր իրան։

— Ողջոյն, մելիք Ջումշուդ, ասաց նա. — վաղուց է, շատ վաղուց է, որ ես չեմ տեսնուել ձեզ հետ, բայց միշտ ձեր վրայ էի մտածում։

— Ի՞նչպէս, այդ դո՞ւ ես, ես քեզ բոլորովին կորած էի համարում։ Ի՞նչու համար մինչեւ այժմ դու չեկար առնելու այն պարգեւը, որ ես խոստացել էի քո կատարած ծառայութիւնների համար։ Բայց, ա՛խ, անօգո՛ւտ, ա՛յն անօգո՛ւտ ծառայութիւն...

միմեանց, ես ստիպուած կը լինէի գնալ Զանալուչի, այնտեղ ձեզ որոնելու համար, չնայելով այն վտանգին, որ սպառնում է ինձ...

— Հա՛, երբ որ այդպէս է, — գոչեց Ջումշուդը, — ես դուրս կը կորզեմ նրան իմ թշնամու ձեռքից։ Ես կամ մոխիր կը դարձնեմ նրանց Ջէյվան, կամ ինքս կը ոչնչանամ...

— Մելիք, չափաւորեցէք ձեր բարկութիւնը, նա ոչ միայն օգտաւէտ լինել կարող չէ, այլ մինչեւ անգամ կարող է վնասակար լինել ձեր Սալիհայի համար։ Առժամանակ պէտք է համբերել, յետոյ գործել որպէս հարկն է։

— Բայց մի՞թէ ես այժմ չեմ կարող...

— Կարող էք, բայց աւելի լաւ կը լինի, որ գործը թողնէք ինձ, որ ես աշխատեմ գաղտնի կերպով եւ զգուշութեամբ...

— Ո՛չ, ո՛չ, պատասխանեց Ջումշուդը, — մի՞թէ ես կարող եմ թոյլ տալ չարագործներին, որ անպատուեն իմ Սալիհային, երբէք, երբէք։ Իմ սուրը մեր մէջ դատաւոր կը լինի։ Ջէյվան շրջապատուած չէ անմատչելի ժայռերով, ինչպէս մեր նոր կառուցուող Ճուշին։ Եկ ինձ հետ, ես քեզ համար ներողութիւն կը խնդրեմ հօրեղբօրիցս...

— Ո՛չ, մելիք, չեմ կարող։

— Ի՞նչու։

— Կան պատճառներ, որ դուք յետոյ կ՚իմանաք. իսկ եթէ դուք բոլորովին վճռել էք գնալ Ջէյվան...

— Կը գնամ, անպատճառ կը գնամ...

— Ցանկանում եմ ձեզ յաջողութիւն, մնաք բարեաւ, մելիք, ես կ՚աշխատեմ միւսանգամ եւս ձեզ առիթ

տալ համոզուելու, որ ես ձեր ամենահաւատարիմ ստրուկն եմ...

Բաժանուելով աստղագէտից, Ջումշուդը արագութեամբ քշեց իր ձին եւ համարեա Ջանախչիի մօտ հասաւ իր հօրեղբօրը, որը սաստիկ անհանգիստ էր նրա բացակայութեան պատճառով: Երբ որ պատմեց նրան իր հանդիպումը աստղագէտի հետ, մելիքը ասաց.

— Այդ անիրաւը կարող է պիտանի լինել շատ դէպքերում: Դու հիմայ ինչ ես կամենում անել, Ջումշուդ:

— Գնալ Ջէյվայի վրայ, հիմքից կործանել նրան, մոխիր դարձնել դաւաճանների բնակարանները, կամ ազատել իմ Սալբհային, կամ թողնել այնտեղ իմ գլուխը:

— Գրկիր ինձ, իմ սիրելի Ջումշուդ, ասաց մելիքը. — Ես տեսնում եմ քո մէջ հերոսական յատկութիւններ, դրա համար պարծենում եմ քեզանով: Ափսոս, որ ես Ռուստէմ[1] անուն չդրեցի քեզ, պարսից այդ մեծ հերոսի անունը: Բայց քո անունն էլ փառաւոր անուն է. այդ անունը կրում էր Պարսկաստանի հռչակաւոր իշխողներից մէկը[2]: Ե՞րբ պէտք է դուրս գալ...

---

[1] Ռուստէմ. պարսից առասպելաբանական Հերքուլէսի անունն է: Ծան. հեղ.:

Ռուստէմ կամ ինչպէս հայերը արտասանում են Ռոստոմ պարսից նշանաւոր բանաստեղծ Ֆիրդուսու հերոսի անունն է, որին նա երգեց իր Շահ-Նամէ կոչուած անմահ գրքի մէջ: Խորենացին կոչում է նրան Ռոստոմ Սագճիկ, որ պէտք է հասկանալ սագաստանցի Ռոստոմ, որովհետեւ հերոսը այնտեղացի էր: Մեր ծերունի պատմաբանը ծաղրում է պարսկական առասպելը Ռոստոմի վերաբերութեամբ, որի համար երգում էին, թէ հարիւր քսան փիղի ուժ է ունեցել, եւ նրանից գերազանցում է մեր հայկայ Տորքին: Ծան. հեղ.:

[2] Ջումշուդ էր չորրորդ թագաւորը պարսից Փիշդադեան կոչուած առասպելաբանական տոհմից: Ծան. հեղ.:

— Ընդուց, լուսանալուն պէս...

— Իմ բարեկամ Փանահ-խան, դու կը տաս Ջումշուդին մի մասը քո քաջ ջուանշիրցիներից։

---

Ջումշուդ կամ ըստ պարսկական արտասանութեան Ջամշիդ, իրաւ է, Փիշդադիաններից չորրորդ թագաւորն էր։ Փիշդադիանների դարաշրջանը պարսից պատմութեան միթական ժամանակներն է ներկայացնում։ Նրանից յետոյ սկսում են տիրել Քէյեան կոչուած տոհմի ներկայացուցիչները, որոնցից յետոյ սկսվում է պարսից Արշակունիների թագաւորութիւնը։

Ջամշիդի իսկական անունը Ջամ էր, բայց որովհետեւ նրա դէմքը լոյսի ճառագայթների նման փայլում էր, այդ պատճառով կոչուեցաւ Ջամ-շիդ։ Նրան համարում են Թէյմուրասի եղբայրը կամ եղբօրորդին։ Թէյմուրասը ժառանգ չթողնելու պատճառով, պարսիկները ընտրեցին լուսաւոր Ջամշիդին։ Պարսից պատմագրների կարծիքով, նա թագաւորեց եօթն հարիւր տարի, եւ այդ եօթն հարիւր տարուայ ընթացքում Պարսկաստանում տիրում էր խաղաղութիւն, արդարութիւն եւ իրաւունք։ Ժողովուրդը ապրում էր երջանկութեան եւ գոհութեան մէջ։ Ջամշիդի մասին պատմվում են անթիւ առասպելներ. իբր թէ նա մի կախարդական թաս ունէր, որը ջրով լցրած միշտ դրած ունէր իր առջեւ, եւ ջրի յատակութեան մէջ տեսնում էր իր ամբողջ պետութիւնը, — տեսնում էր, թէ մարդիկներից որը բարի էր գործում, որը չար, լաւերին վարձատրում էր իսկ վատերին խրատում էր։

Ջամշիդի համար ասում են, իր հպատակներից երդում էր առել, որ ամենեւին մեղք չգործեն։ Քանի որ ժողովուրդը պահպանում էր այդ ուխտը, նա ապրում էր կատարեալ բախտաւորութեան մէջ։ Իսկ երբ որ մարդիկ սկսեցին չար գործել, այն ժամանակ Եազդանը (Որմիզդը, պարսիկների Աստուածը) բարկացաւ նրանց վրայ, նրանց միջից վեր առեց բարի եւ լուսաւոր Ջամշիդին եւ նրա փոխարէն թագաւոր դրեց չար Զոհաքին որը սկսեց երկաթի գաւազանով կառավարել ժողովուրդը եւ տանջել նրան։

Ինչ որ ճշմարիտ է Ջամշիդի պատմութեան մէջ, այն է, որ այդ “բարի„ եւ “լուսաւոր„ թագաւորի եօթն հարիւր տարուայ տիրապետութեան մէջ անձնաւորվում է պարսից քաղաքակրթութեան եւ կուլտուրայի թէ սկզբնաւորութիւնը եւ թէ զարգանալը։ Եւ պարսից պատմագրներից ոմանք նրան ընդունում են Սողոմոն իմաստունի տեղ, ասում են, թէ նա պարսիկներին վայրենի կեանքից վերածեց ընտանեկան կեանքի. ժողովուրդը զանազան դասակարգերի բաժանեց, սովորացրեց տուն շինել, սովորացրեց բամբակ ցանել, կտաւ գործել եւ հագուստ հագնել, մի խօսքով, ծաղկեցրեց արհեստը եւ ճարտարութիւնը։ Մինչեւ այսօր Պարսկաստանում մնացած մի պալատի հսկայական աւերակները, որ կոչվում են Թախտ Ջամշիդ (Ջամշիդի գահ) համարվում են նրանից մնացած։ Ծան. Թարգ.

— Հազար հոգի իմ ամենաընտիր քաջերից, սիրելի Ջումշուդ, ասաց Փանահ-խանը։ — Հաւատա, որ ես յարգել գիտեմ ամեն մի հերոսական գործողութիւն։

— Իսկ ես տալիս եմ հինգ հարիւր հոգի իմ վարանդացիներից, պատասխանեց մելիքը։ — Եւ թող օրհնէ Աստուած Ջումշուդի ձեռնարկութիւնը, որովհետեւ արդարութիւնը բոլորովին նրա կողմն է։

## VI.

*Ջումշուդը դուրս է գալիս Թալիշի մելիքի դէմ:*

Նոր ծագող արեգակը արդէն ճանապարհի վրայ ողջունեց քաջ Ջումշուդին իր զօրախմբի հետ, որը բաղկացած էր հազար եւ հինգ հարիւր զինուորներից։ Ամենալաւ ցեղին պատկանող Ղարաբաղի նժոյգները[1], որոնք ոչ աւանց պատճառի հռչակուած են իրանց գեղեցկութեամբ եւ թեթեւաշարժութեամբ, թռչում էին նրանց տակին։ Զինուորներից շատերը հագած ունէին թեթեւ զրահներ, ոմանք կրում էին վերտեր, ոմանք սաղաւարտներ, իսկ մնացածները փափախներ։ Համարեա բոլորի թրերը եւ խէնջարները Շամի[2] գործ էին։ Նրանց ուսերից քարշ էին ընկած պարսկական երկայնափող հրացաններ, որոնց կոն-

[1] Ղարաբաղի նժոյգները եւ այժմ համարվում են ամբողջ Անդրկովկասում որպէս ձիաների ամենալաւ ցեղ։ Ծան. Թարգ.։

[2] Շամ Սիրիան է։ Ծան. Հեղ.։

Շամ կոչվում է Սիրիայի Դամասկոս քաղաքը։ Հեղինակը սխալվում է, կարծելով, թէ Ղարաբաղի հայոց մելիքների զօրքերի զէնքերը Շամի կամ պարսից գործ էին. Ղարաբաղի հայերը կղզիացած լինելով իրանց լեռների մէջ, եւ անդադար պատերազմական կեանք վարելով, կարիքը ստիպել էր նրանց Դաղստանի լեռնաբնակների նման զարգանալ զինագործութեան արհեստի մէջ. Ղարաբաղցիք իրանք էին պատրաստում իրանց զէնքերը. Եւ այսօր մեր մէջ ամենալաւ զինագործները ղարաբաղցիներ են. Ծան. Թարգ.։

— Ըղուց, լուսամալուն պէս...

— Իմ բարեկամ Փանահ-խան, դու կը տաս Ջումշուդին մի մասը քո քաջ ջուանշիրցիներից։

---

Ջումշուդ կամ ըստ պարսկական արտասանութեան Ջամշիդ, իրաւ է, Փիշդադիաններից չորրորդ թագաւորն էր. Փիշդադիանների գաբեշրջանը պարսից պատմութեան միթական ժամանակներն է ներկայացնում. Նրանից յետոյ սկսում են տիրել Քէյեան կոչուած տոհմի ներկայացուցիչները, որոնցից յետոյ սկսվում է պարսից Արշակունիների թագաւորութիւնը։

Ջամշիդի իսկական անունը Ջամ էր, բայց որովհետեւ նրա դէմքը լոյսի ճառագայթների նման փայլում էր, այդ պատճառով կոչուեցաւ Ջամ-շիդ։ Նրան համարում են Թէյմուրասի եղբայրը կամ եղբօրորդին. Թէյմուրասը ժառանգ չթողնելու պատճառով, պարսիկները ընտրեցին լուսաւոր Ջամշիդին։ Պարսից պատմագրների կարծիքով, նա թագաւորեց եօթն հարիւր տարի, եւ այդ եօթն հարիւր տարուայ ընթացքում Պարսկաստանում տիրում էր խաղաղութիւն, արդարութիւն եւ իրաւունք. Ժողովուրդը ապրում էր երջանկութեան եւ գոհութեան մէջ։ Ջամշիդի մասին պատմվում են անթիւ առասպելներ. իբր թէ նա մի կախարդական թաս ունէր, որը ջրով լցրած միշտ դրած ունէր իր առջեւ, եւ ջրի յատակութեան մէջ տեսնում էր իր ամբողջ պետութիւնը, — տեսնում էր, թէ մարդիկներից որը բարի էր գործում, որը չար, լաւերին վարձատրում էր իսկ վատերին խրատում էր.

Ջամշիդի համար ասում են, իր հպատակներից երդում էր առել, որ ամենեւին մեղք չգործեն. Քանի որ ժողովուրդը պահպանում էր այդ ուխտը, նա ապրում էր կատարեալ բախտաւորութեան մէջ. Իսկ երբ որ մարդիկ սկսեցին չար գործել, այն ժամանակ Եզդանը (Որմիզդը, պարսիկների Աստուածը) բարկացաւ նրանց վրայ, նրանց միջից վեր առեց բարի եւ լուսաւոր Ջամշիդին եւ նրա փոխարէն թագաւոր դրեց չար Զոհաքին որը սկսեց երկաթի գաւազանով կառավարել ժողովուրդը եւ տանջել նրան։

Ինչ որ ճշմարիտ է Ջամշիդի պատմութեան մէջ, այն է, որ այդ “բարի„ եւ “լուսաւոր„ թագաւորի եօթն հարիւր տարուայ տիրապետութեան մէջ անձնաւորվում է պարսից քաղաքակրթութեան եւ կուլտուրայի թէ սկզբնաւորութիւնը եւ թէ զարգանալը։ Եւ պարսից պատմագրներից ոմանք նրան ընդունում են Սողոմոն իմաստունի տեղ, ասում են, թէ նա պարսիկներին վայրենի կեանքից վերածեց ընտանեկան կեանքի. ժողովուրդը զանազան դասակարգերի բաժանեց, սովորացրեց տուն շինել, սովորացրեց բամբակ ցանել, կտաւ գործել եւ հագուստ հագնել, մի խօսքով, ծաղկեցրեց արհեստը եւ ճարտարութիւնը. Մինչեւ այսօր Պարսկաստանում մնացած մի պալատի հոյակապ աւերակները, որ կոչվում են Թախտ Ջամշիդ (Ջամշիդի գահ) համարվում են նրանից մնացած. Ծան. Թարգ.։

— Հազար հոգի իմ ամենաընտիր քաջերից, սիրելի Ջումշուդ, ասաց Փանահ-խանը։ — Հաւատա, որ ես յարգել գիտեմ ամեն մի հերոսական գործողութիւն։

— Իսկ ես տալիս եմ հինգ հարիւր հոգի իմ վարանդացիներից, պատասխանեց մելիքը։ — Եւ թող օրհնէ Աստուած Ջումշուդի ձեռնարկութիւնը, որովհետեւ արդարութիւնը բոլորովին նրա կողմն է։

## VI.

*Ջումշուդը դուրս է գալիս Թալիշի մելիքի դէմ։*

Նոր ծագող արեգակը արդէն ճանապարհի վրայ ողջունեց քաջ Ջումշուդին իր զօրախմբի հետ, որը բաղկացած էր հազար եւ հինգ հարիւր զինուորներից։ Ամենալաւ ցեղին պատկանող Ղարաբաղի նժոյգները[1], որոնք ոչ առանց պատճառի հռչակուած են իրանց գեղեցկութեամբ եւ թեթեւաշարժութեամբ, թռչում էին նրանց տակին։ Զինուորներից շատերը հագած ունէին թեթեւ զրահներ, ոմանք կրում էին վերտեր, ոմանք սաղաւարտներ, իսկ մնացածները փափախներ։ Համարեա բոլորի թրերը եւ խէնջարները Շամի[2] գործ էին։ Նրանց ուսերից քարշ էին ընկած պարսկական երկայնափող հրացաններ, որոնց կոն-

[1] Ղարաբաղի նժոյգները եւ այժմ համարվում են ամբողջ Անդրկովկասում որպէս ձիաների ամենալաւ ցեղ։ Ծան. Թարգ.։

[2] Շամ Սիրիան է։ Ծան. հեղ.։

Շամ կոչվում է Սիրիայի Դամասկոս քաղաքը։ Հեղինակը սխալվում է, կարծելով, թէ Ղարաբաղի հայոց մելիքների զօրքերի զէնքերը Շամի կամ պարսից գործ էին։ Ղարաբաղի հայերը կղզիացած լինելով իրանց լեռների մէջ, եւ անդադար պատերազմական կեանք վարելով, կարիքը ստիպել էր նրանց Դաղստանի լեռնաբնակների նման զարգանալ զինագործութեան արհեստի մէջ։ Ղարաբաղցիք իրանք էին պատրաստում իրանց զէնքերը։ Եւ այսօր մեր մէջ ամենալաւ զինագործները ղարաբաղցիներ են։ Ծան. Թարգ.։

— Ըղուց, լուսանալուն պէս...

— Իմ բարեկամ Փանահ-խան, դու կը տաս Ջումշուդին մի մասը քո քաջ ջուանշիրցիներից։

---

Ջումշուդ կամ ըստ պարսկական արտասանութեան Ջամշիդ, իրաւ է, Փիշդադիանների չորրորդ թագաւորն էր։ Փիշդադիանների դարեշրջանը պարսից պատմութեան միթական ժամանակներն է ներկայացնում. Նրանից յետոյ սկսում են տիրել Քէյեան կոչուած տոհմի ներկայացուցիչները, որոնցից յետոյ սկսվում է պարսից Արշակունիների թագաւորութիւնը։

Ջամշիդի իսկական անունը Ջամ էր, բայց որովհետեւ նրա դէմքը լոյսի ճառագայթների նման փայլում էր, այդ պատճառով կոչուեցաւ Ջամ-շիդ։ Նրան համարում են Թէյմուրասի եղբայրը կամ եղբօրորդին։ Թէյմուրասը ժառանգ չթողնելու պատճառով, պարսիկները ընտրեցին լուսաւոր Ջամշիդին։ Պարսից պատմագրների կարծիքով, նա թագաւորեց եօթն հարիւր տարի, եւ այդ եօթն հարիւր տարուայ ընթացքում Պարսկաստանում տիրում էր խաղաղութիւն, արդարութիւն եւ իրաւունք։ Ժողովուրդը ապրում էր երջանկութեան եւ գոհութեան մէջ։ Ջամշիդի մասին պատմվում են անթիւ առասպելներ. իբր թէ նա մի կախարդական թաս ունէր, որը ջրով լցրած միշտ դրած ունէր իր առջեւ, եւ ջրի յստակութեան մէջ տեսնում էր իր ամբողջ պետութիւնը, — տեսնում էր, թէ մարդիկներից որը բարի էր գործում, որը չար, լաւերին վարձատրում էր իսկ վատերին խրատում էր։

Ջամշիդի համար ասում են, իբր հպատակներից երդում էր առել, որ ամենեւին մեղք չգործեն։ Քանի որ ժողովուրդը պահպանում էր այդ ուխտը, նա ապրում էր կատարեալ բախտաւորութեան մէջ։ Իսկ երբ որ մարդիկ սկսեցին չար գործել, այն ժամանակ Եազդանը (Որմիզդը, պարսիկների Աստուածը) բարկացաւ նրանց վրայ, նրանց միջից վեր առեց բարի եւ լուսաւոր Ջամշիդին եւ նրա փոխարէն թագաւոր դրեց չար Զոհաքին որը սկսեց երկաթի գաւազանով կառավարել ժողովուրդը եւ տանջել նրան։

Ինչ որ ճշմարիտ է Ջամշիդի պատմութեան մէջ, այն է, որ այդ “բարի„ եւ “լուսաւոր„ թագաւորի եօթն հարիւր տարուայ տիրապետութեան մէջ անձնաւորվում է պարսից քաղաքակրթութեան եւ կուլտուրայի թէ սկզբնաւորութիւնը եւ թէ զարգանալը։ Եւ պարսից պատմագրներից ոմանք նրան ընդունում են Սողոմոն իմաստունի տեղ, ասում են, թէ նա պարսիկներին վայրենի կեանքից վերածեց ընտանեկան կեանքի. ժողովուրդը զանազան դասակարգերի բաժանեց, սովորացրեց տուն շինել, սովորացրեց բամբակ ցանել, կտաւ գործել եւ հագուստ հագնել, մի խօսքով, ծաղկեցրեց արհեստը եւ ճարտարութիւնը։ Մինչեւ այսօր Պարսկաստանում մնացած մի պալատի հոյակապ աւերակները, որ կոչվում են Թախտ Ջամշիդ (Ջամշիդի գահ) համարվում են նրանից մնացած։ Ծան. Թարգ.։

դաշները շքեղ կերպով զարդարած էին սաղաֆով, ոսկեայ եւ արծաթեայ դրուակներով եւ զանազան օտարոտի նկարներով։ Ուրախ եւ զուարթ սլանում էր այդ աներկիւղ զօրախումբը մի յանդուգն ասպատակութեան համար։ Նրանք գիտէին, որ կործանելով Ջէյվան, կարելի է շահուել հարուստ աւարով։ Այդ զինուորները, ամեն ինչ, որ ստացվում է զինուած ձեռքով, համարում էին օրինաւոր կողոպուտ։

Ջումշուդը, վառուած սաստիկ անհամբերութեամբ, հանգստութիւն չէր տալիս իր զօրախմբին։ Նրանք, որպէս զի կարճացնեն ուղին, գնում էին Վերին Ղարաբաղի ճանապարհով, լեռնային բարձրաւանդակների վրայով, ցած էին իջնում երկարատեւ զառիվայրներից, եւ դիմում էին դէպի հին կամուրջը, որ շինուած էր մրրկածուփ Թարթարի[1] վրայ։ Օրը հասած էր իր վախճանին, երբ նրանք իրանց ձիաները ջրում էին այդ աղմկալի գետի ալիքներով, որը վազում է նեղ փապարների միջով։ Ջումշուդը բորբոքուած էր այն ցանկութեամբ, որքան կարելի է, շուտով կատարուի իր նպատակը, այդ պատճառով խիստ դժուարութեամբ համաձայնուեցաւ գիշերը անցկացնել

---

[1] Տէրտէր (Тертеръ), ամենաարընթաց լեռնային գետ է, որ գտնըվում է Գանձակի եւ Ղարաբաղի սահմանի վրայ. որի անունը նշանակում է попъ (տէրտէր)։ Ծան. հեղ.։

Հեղինակը սխալվում է այդ գետի թէ անուան բացատրութեամբ եւ թէ տեղի վերաբերութեամբ։ Ի հարկէ. եթէ Թարթարը ռուսաց ձեւով Տերտեր արտասանենք, դուրս կը գայ տէրտէր (քահանայ)։ Բայց թէ՛ հայ եւ թէ մահմեդական ժողովրդի մէջ այդ գետը յայտնի է Թարթար անունով, որը մեր պատմական Տրտու գետն է։ Եւ Թարթարը չէ գտնվում Գանձակի եւ Ղարաբաղի սահմանի վրայ, որպէս ցոյց է տալիս հեղինակը, այլ հոսում է Ղարաբաղի նահանգի մի մասի միջով եւ բաժանում է այդ նահանգի երկու գաւառները (Թալիշը եւ Ջրաբերդը) միմեանցից։ Ծան. Թարգ.։

Թարթարի մերձակայքում։ Այստեղ հարաւային կողմի դաշտը, որ տարածվում էր լեռների ստորոտում, ծածկուած էր դալար խոտերով։ Մի այսպիսի տեղ անհրաժեշտ էր յոգնած ձիանները հանգստացնելու համար, որ կարելի լինի գիշերը Զէյվայի վրայ յանկարծակի յարձակում գործել։

Բարձի փոխարէն իր փափախը դնելով քարի վրայ, եւ գլուխը խոնարհեցնելով նրա վրայ, ծածկուած թանձր եափունջիով, պառկած էր Ջումշուդը Թարթարի ափի մօտ։ Աղմուկը, որ առաջ էր գալիս այդ լեռնային գետի հոսանքից, միայն այդ աղմուկը խանգարում էր խորին լռութիւնը, որ թագաւորում էր նրա ափերի մօտ։ Երկինքը պարզ էր. միլիոնաւոր աստղեր փայլում էին նրա գլխի վրայ, թափելով իրանց դողդոջուն լոյսը։ Աջ եւ ձախ կողմերից ձգվում էին լեռների հսկայական գագաթներ, որոնք շատ տեղերում դեռ ծածկուած էին մշտական ձիւնով։ Գիշերը ցուրտ էր եւ խոնաւ։ Չնայելով իր սաստիկ յոգնածութեանը, Ջումշուդը դարձեալ չը կարողացաւ քնել։ Զանազան ստածութիւններ, մինը միւսից աւելի մռայլոտ, նկարվում էին նրա երեւակայութեան մէջ։ Նա ներկայացնում էր իր մտքում Սալիհային, որպէս մի գերի, կաշկանդուած շղթաններով, որը ծառայում էր իր թշնամիների յաղթանակի ուրախութիւնը աւելացնելու համար։ Նրան այնպէս էր թւում, իբր թէ տեսնում է իր սիրելիին ենթարկուած ամեն տեսակ տանջանքների, տեսնում է, թէ որպէս Յուսէֆը եւ նրա քոյրը հայհոյանքներ էին թափում անպաշտպան զոհի վրայ․․․։ Նա վեր թռաւ պառկած տեղից, սառն քրտինքը պատեց նրա ճակատը։ Նա ձեռքը տարաւ դէպի թուրը, կռւում էր իր երեւակայութեան ստեղծած ցնորք-

ների հետ։ Յետոյ յուշի գալով, զայրանում էր գիշերի վրայ, որ այնքան երկար շարունակւում էր, հրաւէր էր կարդում վաղորդեան լոյսին, որը դեռ շատ հեռու էր, եւ կրկին ընկնում էր քարի վրայ, յուսահատ դրութեան մէջ բողոքելով, թէ ինչու բնութիւնը նրան չէր հնազանդւում։

Քունը կարճ ժամանակով փակեց նրա աչքերը։ Բայց այդ կարճատեւ հանգստութեան րոպէներում հրէշաւոր ցնորքներ հալածում էին նրան։ Նրան երեւում էր, թէ ինքը լողում է արեան մէջ, եւ շղթաներով կապկապած, արգելուած է մի մթին ներքնատան մէջ։ Ինչ որ ձայն կոչում է նրան իր մօտ, արտասանում է նրա անունը։ Այդ արտասանութեան մէջ ճանաչում է նա իր նազելի Սալիհայի ձայնը։ Աչքերը բարձրացնում է, տեսնում է նրան տարածուած գետնի վրայ, շաղախուած արեան մէջ։ Աշխատում է վազել նրա մօտ, բայց ի զուր, շղթաները բռնում են նրան։ Նա ջանք է անում խորտակել իր կապանքները։ Վերջապէս նրանք կոտրատուեցան եւ նա զարթնեցաւ։

Արեւելքում արդէն նշմարւում էր առաւօտեան թոյլ, դողդոջուն լոյսը։ Բացուող արշալոյսի նշոյլը սաստիկ ուրախացրեց Ջումշուդին։ Նա արագութեամբ վեր թռաւ իր բացօթեայ անկողնից, սկսեց զարթեցնել զինուորներին, որոնք սաստիկ յոգնածութեան պատճառով, գտնւում էին խորին քնի մէջ։ Քաջասիրտ ղարաբաղցիները շուտով պատրաստուելով, ճանապարհ ընկան։ Նոր ծագող արեգակը իր ճառագայթները տարածեց նրանց վրայ այն ժամանակ, երբ նրանք արդէն գտնւում էին հովտի մէջ, լեռների միւս կողմում։ Նրանք կարող էին մինչեւ կէսօր հասնել Ջէյվայի մօտ։ Բայց որովհետեւ վճռուած էր

գիշերային յարձակում գործել, այդ պատճառով նրանք մեղմացրին իրանց ձիաների արագ ընթացքը, գնում էին աւելի հանդարտ քայլերով։

Փոքր ինչ առաջ Ջումշուդը հրաւէրք էր կարդում արեգակին, ցանկանում էր, որ նա շուտ ծագէ, իսկ այժմ գժգոհ էր, թէ ինչու նա այնպէս դանդաղ կերպով էր հոլովւում երկնքի կապոյտ կամարի վրայով։ Եթէ նրանից կախուած լինէր, նա նոյն րոպէում կը խորասուզէր տուընջեան պայծառ լուսատուին ովկիանոսի ջրերի մէջ, եւ նրա փոխարէն կը կանչէր մթին գիշերը։ Վերջապէս ցերեկուայ լուսատուն մօտեցաւ իր մուտքին։ Արեւմտեան կողմում երեկոյեան վերջալոյսը արիւնի գոյն ստացաւ։ Կարծես թէ, դա նախագուշակում էր այն արիւնոտ տեսարանը, որ շուտով պիտի հանդիսանար։ Ջումշուդը ուրախութեամբ նայում էր, թէ որպէս գիշերը տիրում էր տիեզերքին եւ երկնային կամարը հետզհետէ ծածկւում էր մթին խաւարով։ Նա փափագում էր մթութեան, փափագում էր այն րոպէին, երբ կարող կը լինէր սուր եւ հուր մտցնել Ջէյվայ բերդի մէջ, կորզելով իր Սալիհային Թալիշի մելիքի ձեռքից, եւ իր թշնամիների արիւնով շաղախելով նրանց կործանուած բնակարանների մոխիրը։

Վերջապէս երեկոյեան վերջալոյսը բոլորովին հանգաւ։ Լուսինը առժամանակ իր թոյլ լուսով դեռ լուսաւորում էր արեւմուտքը, վերջը նա եւս մայր մտաւ։ Ամպերը սկսեցին ծածկել երկնքի երեսը. աստղերը թաքնուեցան. հասաւ այն րոպէն, որին վաղուց սպասում էր Ջումշուդը։

## VII.

*Գիշերային յարձակումն Ջէյվայի վրայ — Ջումշուդի գերուիլը:*

Օգուտ քաղելով գիշերային խաւարից, Ջումշուդի զինուորները, առանց շշուկ բարձրացնելու, մօտենում էին Ջէյվային։ Բերդի մէջ ոչ ոք յարձակում չէր սպասում։ Բոլոր բնակիչները հանգիստ էին, եւ անհոգութիւնը մինչ այն աստիճան էր հասած, որ ոչինչ նախազգուշութիւններ գործ դրած չէին։ Երբ որ բոլորովին մօտեցան բերդին, Ջումշուդը հրամայեց զինուորներին շտապել։ Նրանցից հինգ հարիւր հոգի թողնելով ձիաների մօտ, մնացածների հետ յարձակուեցաւ նա Ջէյվայի վրայ, որ էր Թալիշի մելիքի աթոռանիստ բերդը։ Իր զինուորներին բաժանել էր նա չորս մասն, որոնց իւրաքանչիւրը բաղկացած էր 250 հոգուց։ Յանկարծ բերդի բոլոր չորեքկողմից լսելի եղան Ջումշուդի զինուորների սոսկալի աղաղակները, որոնք բռնութեամբ ներս մղուեցան ամրոցի մէջ։ Շատ տեղերում հրդեհի լոյսը սկսեց առաջ ընթանալ հրեղէն գետի նման։ Սարսափած բնակիչները վազվզում էին յետ ու առաջ, առանց հասկանալու, թէ ինչ է կատարվում իրանց հետ։ Թէ՛ վարանդացիները եւ թէ ջուանշիրցիները զանազանութիւն չէին դնում ոչ հասակի եւ ոչ սեռի։ Ամեն հանդիպողները կոտորվում էին նրանց սրերի հարուածներից։ Գնդակների փշփշոցը, հրացանների որոտը, կործանուող շէնութիւնների դղրդոցը, կնիկների հառաչանքը, երեխաների լացը, տղամարդերի աղաղակը, Ջումշուդի զինուորների կատաղի գոռում-գոչումները, նրանց թրերի եւ խէնջարների շառաչիւնը, վիրաւորների հեծութիւնը, մեռնողների խռխռոցը, արեան ճապաղիքը, որ

միախառնվում էին ամեն տեղ ճարակող կրակի բոցերի հետ, — այդ բոլորը ներկայացնում էին այն գիշերուայ սարսափելի պատկերը։

Թալիշի մելիքը եւ նրա որդին, հէնց որ իմացան յարձակման առաջին նշանները, շտապեցին հաւաքել իրանց զօրքերը, թշնամուն ընդդիմադրելու համար։ Բայց նրանք այն աստիճան շփոթուած էին, որ չգիտէին, թէ դէպի որ կողմը դիմեն։ Մի տեղում նրանք հանդիպեցին վարանդացիներին. սկսուեցաւ կռիւը ամենայն կատաղութեամբ։ Կռիւը կատարվում էր դիակների կոյտերի եւ կիսավառ խրճիթների աւերակների վրայ, իսկ նրանց ետեւից լսելի էին լինում խեղճ Թալիշեցիների յուսահատ աղաղակները։ Նրանք վազեցին դէպի այն կողմը։ Յանկարծ մի այլ կողմում լսելի էին լինում ջուանշիրցիների յաղթական աղաղակները եւ կրակը տարածվում էր Չէյվայի մէջ։ Ջումշուդը, որ սկզբից առանձին պատուէր էր տուած իր զինուորներին, որ չմտնէին ամրոցը առանց իր կարգադրութեան, վերջապէս հէնց նրա պարիսպների մօտ միացրեց իր բոլոր զինուորներին։ Այդ միջոցին Թալիշի մելիքը իր որդի Յուսէինի հետ թափառում էին կիսակործան Չէյվայի մէջ։ Այստեղ կրկին նորոգուեցաւ կռիւը աւելի սաստկութեամբ։ Թուի մէջ գերազանցութիւնը Ջումշուդի կողմն էր եւ նա յոյս ունէր կատարեալ յաղթութեան վրայ։ Յանկարծ Չէյվայի հիւսիսային կողմից լսուեցան աղաղակներ եւ մի քանի րոպէի մէջ Ջումշուդի զօրախումբը ամեն կողմից պաշարուեցաւ Խաչէնի մելիքի[1]

[1] Խաչէնը գտնվում է Ջրաբերդ եւ Վարանդա գաւառների մէջ տեղում։ Խաչէնի տիրապետող մելիքներն էին Հասան-Ջալալեան իշխանների սերունդը։ Տես "Խամսայի Մելիքութիւնները„ գրքի I գլ. 3-եր. եւ II գլ. 15-եր.։ Ծան. Թարգ.։

զօրքերով։ Այդ զօրքերը եկած էին մի քանի օր առաջ եւ զետեղուած էին Զէյվայ գետի միւս ափի վրայ, որպէսզի միանալով Թալիշեցիների հետ, միահամուռ կերպով գործէին թշնամու դէմ։ Ջումշուդը, նկատելով սպառնացող վտանգը, մտածեց պատառելով անցնել թշնամիների միջով, բայց ի զուր։ Երկու կողմից եւս կռիւը ամենայն յամառութեամբ շարունակուեցաւ մինչեւ առաւօտ։ Այդ միջոցին Ջումշուդի հինգ հարիւր զինուորները, որ թողուած էին ձիաների մօտ, տեսնելով այնքան երկարատեւ կռիւը, եւ տեղեկանալով, թէ որպիսի վտանգ է սպառնում Ջումշուդին, վճռեցին թողնել միայն հարիւր հոգի ձիաների մօտ, իսկ մնացածները նետուեցան իրանց զօրապետին օգնելու։ Իրաւ է, որ նրանց գալուստը, գնելով խաչէնցիներին եւ Թալիշեցիներին երկու կրակների մէջ, բաւական փոխեց պատերազմի կերպարանքը, բայց այդ երկար չտեւեց։ Որովհետեւ այդ միջոցին Զէյվայի սարսափած եւ փախստական բնակիչները, ժամանակ գտնելով խելքի գալու, նոյնպէս զինուորուեցան եւ շտապեցին օգնելու իրանց մելիքին, որը պաշտպանվում էր խաչէնցիների օգնութեամբ միայն։ Ի զուր Ջումշուդը գործ էր դնում բոլորը, ինչ հրաշքներ որ կարող է կատարել յուսահատ քաջութիւնը եւ անհրաժեշտութիւնը։ Նրա զօրքերը ջարդուեցան եւ արեգակի առաջին ճառագայթները ծագեցին նրա վրայ այն ժամանակ, երբ նա արդէն ենթարկուած էր ծանր գերութեան։

— Բարով, իմ փեսացու, ասաց Թալիշի մելիքը գաղանային ժպիտով, երբ շղթայներով կապկապած Ջումշուդին բերեցին նրա մօտ։ — Դու քաջ պատերազմող ես, բայց ոչ բոլորովին յաջողակ։ Ի՞նչու համար շնորհ բերեցիր ինձ մօտ, երեւի, քո կնոջը տանելու համար։

Ինչու չէ, ես կը կատարեմ քո փափագը, դու նրան կը տեսնես, նա բոլորովին ողջ եւ առողջ է։ Տե՛ս, ինչ սատանայ է, մտածեց ծածուկ մտնել իմ Զէյվայ բերդը, այրել նրան եւ իմ հպատակներից շատերին կոտորել։ Բայց ինչու համար, — մի կնոջ պատճառով, որին ես վեր առի ինձ մօտ կրթելու համար եւ փայփայում եմ իմ հարազատ զաւակի պէս։ Հա՛, նա էլ շատ բարի պտուղ է, փոքր էր մնում, որ իմ սիրելի Յուսէփին պիտի ուղարկէր միւս աշխարհը։ Դու եւ նա լաւ զոյգ էք, ինչ ասել կ'ուզէ։ Պէտք է ձեզ միջոց տալ տեսնուելու միմեանց հետ։ Տեսնենք, կը հաւանե՞ս դու իմ հիւրասիրութիւնը. ես կ'աշխատեմ ամեն կերպ բաւականութիւն տալ իմ թանկագին հիւրին, որ նա ոչ մի բանի մէջ կարօտութիւն չունենայ։ Ընդունո՞ւմ ես իմ առաջարկութիւնը, մելիք Ջումշուդ։

— Չարագործին միայն վայելուչ է հայհոյանքներ կարդալ անզէն գերիի վրայ, պատասխանեց Ջումշուդը։

— Ի՞նչ հարկ կայ այդքան խօսքերի, մէջ մտաւ յանդուգն Յուսէփը. — վաղուց պէտք էր դրան կախաղան բարձրացնել։ Շնորհեցէք այդ զուարճութիւնը մեր թալիշեցիներին։

— Պէտք չէ տաքանալ, որդի, շարունակեց Թալիշի մելիքը։ — Մի այդպիսի մահը դեռ շատ վաղ է. պէտք է մեր հիւրին նախ եւ առաջ ծանօթացնել երկարատեւ զուարճութիւնների հետ։ Մենք պարտաւոր ենք մեր շնորհակալութիւնը յայտնելու նրան մեզ մօտ այցելութիւն գործելու համար, եւ կը տանք նրան մի վայելուչ սենեակ։ — Բերէք դրան իմ ետեւից, ասաց նա, դառնալով դէպի պահապանները, որ շրջապատել էին Ջումշուդին։

Նրանք մօտեցան մի աշտարակի, որի միջից լսելի էին լինում ծանր հառաչանքներ։ Ջումշուդի սիրտը կտրատւում էր, նրան թւում էր, որ լսում է իր նազելի Սալիհայի ձայնը։ Դուռը բացուեցաւ եւ ինչ սարսափելի տեսարան հանդիպացաւ նրա առջեւ. Սալիհան, նրա սիրելի, անգին կենակիցը, կաշկանդուած երկաթեայ կապանքներով, ամրացրած պատի հետ, պատառոտած հագուստներով նստած էր քարի վրայ։ Լոյսի թոյլ շառաւիղը, որ հազիւ թափանցում էր այդ մթին զնդանի մէջ, թոյլ էր տալիս որոշել նրա դէմքի գծերը, որ այլանդակուած էին սրտի դառնութիւնից։ Ջումշուդը, տեսնելով այդ սոսկալի տեսարանը, քարացածի նման մնաց անշարժ։ Նա պատրաստ էր իր խէնջարը ցցել նրան այդ դրութեան մէջ պահող եղեռնագործի սրտի մէջ, բայց չէր կարող, որովհետեւ այժմ ինքն եւս մի անզէն գերի էր։ Նա գոչեց սրտաշարժ ձայնով եւ Սալիհան ճանաչեց նրան։

— Այդ իմ Ջումշուդն է, աղաղակեց նա, — Աստուած իմ, ուրեմն ես ազատուած եմ։

— Հա՛, ի հարկէ, վրաբերեց Թալեշի մելիքը, — դու դրանից յետոյ ամեն րոպէ նրան կը տեսնես. նա կը մնայ այստեղ քեզ մօտ. ես չեմ կամենում ձեզ բաժանել միմեանցից. դուք բոլորովին արժան էք միմեանց։

Նա հրամայեց Ջումշուդին եւս շղթաներով ամրացնել բանտի հանդիպահայեաց պատի վրայ, իսկ ինքը հեռացաւ, ցանկանալով նրանց ամեն տեսակ բարեյաջողութիւններ։

Երկար, շատ երկար դժբախտները նայում էին միմեանց վրայ եւ խօսել չէին կարողանում։ Արտասուքը խեղդում էր նրանց։ Վերջապէս Սալիհան ասաց.

— Հաց մի՛ լինիր, սիրելի Ջումշուդ, մենք թէեւ անբախտ ենք, բայց միասին ենք, այդ էլ բաւական է։ Ո՛րքան ես տանջուեցայ առանց քեզ, — այդ միայն Աստուած գիտէ։ Դու կամենում էիր ազատել ինձ, եւ ինքդ դժբախտութեան մէջ ընկար։ Մոռանանք մեր դրութիւնը, արհամարհենք մեր թշնամիներին եւ մխիթարուենք միմեանցով։ Ես քեզ տեսնում եմ, եւ ես բախտաւոր եմ. տանջվում եմ քեզ հետ միասին, եւ չեմ զգում իմ տանջանքները։

— Տէր Աստուած, գոհութիւն եմ մատուցանում քեզ, բացականչեց Ջումշուդը, — որ իմ դառնութիւնների հետ անգամ առաքում ես ինձ մխիթարութիւն։ Ես պարծենում եմ քեզանով, իմ անգին Սալհա, ես ուրախանում եմ քո սիրով եւ ցաւում եմ միայն, որ չեմ կարող սեղմել քեզ իմ հրաբորբոք սրտի վրայ։ Այսպէս, թող ուրեմն չարագործները մտածեն, թէ դրանով բազմապատկում են մեր չարչարանքները, տեսնելով մեզ նայել սիրած եւ պաշտած առարկաների տանջանքների վրայ։ Նրանք սխալվում են։ Մեր սրտերը արհամարհում են մարմնի չարչարանքը եւ միշտ միացած կը լինեն միմեանց հետ։ Մենք ապրում ենք միմեանց հանդէպ, շնչում ենք մի եւ նոյն օդով, — այդ էլ բաւական է…

Այդպէս անբախտները մխիթարում էին միմեանց։

Այդ միջոցին Թալիշի մելքը, ցանկանալով, որ Ջումշուդի վիճակը ծածկուած լինի անյայտութեան խաւարի մէջ, կանչել տուեց վարանդացի գերիներից մէկին, եւ յանձնելով նրան մի գլուխ, որը բոլորովին այլանդակուած էր թրերի հարուածներով. ասաց.

— Դա ձեր հրամանատար Ջումշուդի գլուխն է. գնա Վարանդայի մելիքի մօտ. յանձնիր նրան այդ գլուխը եւ ասա. Թէ ահա այդպէս կ'ոչնչանան այն ամենքը. որոնք կը համարձակուեն յարձակում գործել իմ դէմ:

Այդ խօսքերով նա ճանապարհ դրեց գերեալին դէպի Զանախչի:

## VIII.

### Աստղագէտը գնում է Ջէյվայ:

Վարանդայի իշխանը, ստանալով Թալիշի մելիքի ուղարկած բօթաբեր ընծան, սաստիկ յուսահատութեան մէջ ընկաւ: Նա մեծ սուգ կատարեց իր սիրելի եղբօրորդու սպանման պատճառով, եւ ցանկանալով պահպանել նրա յիշատակը, խնդրեց Փանահ-խանից, որ թոյլ տայ բերելու Զանախչի Ջումշուդի զաւակներին, եւ դաստիարակում էր նրանց որպէս իր սիրելի թոռնիկներին:

Պատերազմը նրա եւ Խամսայի միւս չորս մելիքների մէջ դեռ շարունակվում էր աւելի սաստկութեամբ եւ փոփոխակի բախտով: Բայց յաղթութիւնը երկու կողմից եւս տակաւին մի որ եւ իցէ վճռական վախճանի չէր հասած: Վարանդայի իշխանին օգնում էր Փանահ-խանը, իսկ Խամսայի չորս մելիքները գործում էին միացեալ ուժերով Վարանդայի իշխանի դէմ:

Հայոց մելիքների այդ ներքին կռիւների ժամանակ, կարծես թէ, մի կախարդական ձեռքով կառուցվում էր Շուշին: Արդէն Գանձակի ճանապարհի կողմից կանգնած էին քարէ բարձր պարիսպները, ամրացրած սպառնալից մարտկոցներով եւ ահռելի աշտարակներով: Բերդի մէջ շինուած էին ոչ այնքան մեծ ամրոցներ քառանկիւնի ձեւով, որոնց մէջ բնակութիւն հաստատեց Փանահ-խանը

իր կուսակիցների հետ։ Մինը միւսի ետեւից կործանւում էին բազմաթիւ շինուածքներ, որոնց մէջ բնակեցնում էին ընտիր պատերազմող մարդիկներին, որոնց հաւաքել էին ամբողջ Ղարաբաղից։ Եւ 1752 թուականի աշնանը Շուշին բոլորովին շինուած, ամրացրած եւ բնակիչներով լցուած էր։

Երբ որ Փանահ-խանը տեսաւ, որ արդէն հասաւ այն բաղձալի ժամանակը, որ կարող է յաջողութեամբ պաշտպանուել իր բերդի մէջ եւ մինչեւ անգամ գործել բացարձակ կերպով, նա ձգեց իր դիմակը եւ այնուհետեւ սկսեց վարուել իբրեւ ամբողջ Ղարաբաղի իշխան։ Մինը միւսի ետեւից զանազան թափառական ցեղերին խոնարհեցնում էր նա իր իշխանութեան ներքոյ։ Շուտով Խաչէնի եւ Գիւլիստանի[1] մելիքները հպատակուեցան նրան եւ նա իշխում էր այն բոլոր երկրների վրայ, որ սկսվում էին Թարթար գետից եւ տարածվում էին մինչեւ Երասխ գետը[2]։ Մնում էին միայն երկու մելիքներ՝ Վարանդայի

---

[1] Այստեղ հեղինակը մի աշխարհագրական սխալ է անում, կարծելով, որ Գիւլիստանը եւ Թալիշը առանձին-առանձին գաւառներ են, մինչդեռ երկուսն էլ մի եւ նոյն գաւառն են, միայն զանազան անուններով։ Նա յայտնում է, որ շուտով Գիւլիստանի մելիքը խոնարհուեցաւ Փանահ-խանին։ Իսկ մի քանի տողերից յետոյ աւելացնում է. "Մնում էին միայն երկու մելիքներ՝ Վարանդայի եւ Թ ա լ ի շ ի մելիքը։ Բայց Թալիշի մելիքը մի եւ նոյն Գիւլիստանի մելիքն էր, որը դեռ խոնարհուած չէր, որին խանը առաջադէտի ձեռքով նամակ է գրում, հրաւիրում է հպատակել իրան, բայց սաստիկ վիրաւորական պատասխան է ընդունում, եւ այդ պատճառ է տալիս մի նոր կռուի խանի ու մելիքի մէջ։ Ծան. Թարգ.։

[2] Ե ր ա ս խ կամ Ա ր ա զ. Նշանաւոր մեծ գետ է, որ բաժանում է ռուսաց այժմեան անդրկովկասեան նահանգները Ադրբէյջանից (Ատրպատականից։) Ծան. հեղ.։

Փանահ-խանի տիրապետութիւնը երբէք չէ տարածուել Թարթար գետից մինչեւ Երասխ գետը, եւ նա իր կենդանութեան ժամանակ, թէեւ վարեց հայոց մելիքների հետ բազմամեայ պատերազմ, բայց չկարողացաւ տիրել Ղարաբաղի ամբողջ նահանգին։ Միայն նրա որդի Իբրահիմ-խանի ժա-

եւ Թալիշի մելիքները։ Դրանցից առաջինին՝ Վարանդայի մելիքին նա խնայում էր իր քաղաքական զանազան նպատակների պատճառով, որովհետեւ նա շատ նպաստել էր խանի բարձրանալուն, եւ դեռ առաջուայ խաբուած դրութեան մէջ գտնուելով, իր ձեռքում եղած բոլոր միջոցներով անդադար գործում էր խանի իշխանութեան մեծանալու եւ ընդարձակուելու համար, համարելով նրան իր ճշմարիտ բարեկամը։ Իսկ Թալիշի մելիքի երկրի հեռաւորութիւնը արգելք էր դնում Փանահ-խանին տիրապետելու նրան, եւ այդ պատճառով մտածում էր նա՝ դեռ առաջ իր իշխանութիւնը ամուր կերպով հաստատել Ղարաբաղի վրայ, յետոյ դառնալ դէպի Թալիշի մելիքութիւնը։ Բայց այդ րոպէն արագութեամբ մօտենում էր։ Եւ Փանահ-խանը դիտաւորութիւն ունէր, Թալիշի մելիքին իր վերջին հարուածը տալուց յետոյ, դառնալ դէպի իր բարեկամ Վարանդայի իշխանը եւ պահանջել նրանից հպատակութիւն։

Մեր աստղագէտը, որը առաջինը եղաւ եւ Փանահ-խանին ցոյց տուեց բոլոր այն հնարները, որոնցով նա կարող կը լինէր Ղարաբաղին տիրելու, — այդ բանսարկուն այժմ վայելում էր խանի մօտ մեծ հաւատարմութիւն եւ շնորհ։ Խանը, հետեւելով իր ժամանակի սնահաւատութիւններին, հաւատում էր նրա գուշակութիւններին եւ աստղաբաշխական գիտութեանը։ Այդ էր պատճառը, որ աստղաբաշխը օր ըստ օրէ

---

մանակ, երբ զանազան հանգամանքների պատճառով հայոց մելիքների զօրութիւնը թուլացաւ, — այդ խանը փոքր ինչ ընդարձակեց իր իշխանութիւնը, այն եւս ոչ Թարթառ գետից մինչեւ Երասխ գետը։ Այդ կարելի է տեսնել մեր "Խամսայի Մելիքութիւնները" գրքի IX—XXIX գլուխներում։ Ծան. Թարգ.։

աւելի եւ աւելի գրաւում էր Ղարաբաղի խանի հաւատարմութիւնը։

Միանգամ խանը նստած էր իր նորակառոյց, փառաւոր կերպով զարդարած ապարանքում, Շուշի բերդի մէջ, եւ խօսում էր աստղագէտի հետ։ Յանկարծ անսպասելի կերպով յիշեց նա Ջումշուդին, ասելով.

— Գիտե՞ս, աստղագէտ, որ ես ամենեւին չեմ հաւատում այն հանելուկին, որը հնարուած էր Ջումշուդի մահուան մասին։ Այդ Թալիշի մելիքը շատ խորամանկ է։ Իմ զինուորներից շատերը, որոնք վերադարձան նոյն կռուից, հաստատում են, որ Ջումշուդը գերի բռնուեցաւ։ Ինձ շատ ափսոսելի է այդ երիտասարդի կորուստը. ես նրան սրտով յարգում էի։ Նա քաջ է եւ արի։ Փորձիր, աստղագէտ, իմ կասկածանքը փարատելու, եւ աստղների ընթացքից տեղեկացիր, արդեօք իրա՞ւ է, որ Ջումշուդը սպանուեցաւ կռուի մէջ, թէ Թալիշի մելիքը պահում է նրան որպէս գերի եւ մեզ խաբում է։

Հարցը խիստ դժուարին էր. աստղագէտը շատ լաւ իմանում էր, որ բաւական էր մի անյաջող գուշակութիւն անել, եւ դա պատճառ կը տար իրան բոլորովին զրկուելու խանի հաւատարմութիւնից։ Իսկ Ջումշուդի մասին ստոյգ ոչինչ յայտնի չէր նրան։ Եթէ նա գիտենար, որ իրան այսպիսի հարց կ'առաջարկէին, այն ժամանակ առաջուց կ'աշխատէր գոնէ մօտաւորապէս ծանօթանալ այն հանգամանքների հետ, որոնց մասին պէտք էր փոքր ի շատէ տեղեկութիւն ունենալ։ Իսկ այժմ հարկաւոր էր չափազանց նրբամտութիւն, նախագուշակութիւնների մէջ չսխալուելու համար, որոնք սաստիկ անորոշ էին։ Այդ պատճառով նա լոյս դրեց իր ամբողջ ճարպկու-

թեան եւ խորամանկութեան վրայ․ ձեւացրեց իրան իբր խորասուզուած մտածութիւնների մէջ, սկսեց երկարացնել իր հետազօտութիւնները ու համրութիւնները, եւ վերջապէս ձայն տուեց․

— "Ջումշուդի սաղը ծածկուած է թանձր մառախուղի մէջ․․․ պէտք է կարծել, որ նա կենդանի է․․․ Բայց այդ չէ կարելի հաստատապէս պնդել․․․ Ամեն նշաններից երեւում է, որ նա պէտք է որպէս գերի պահուած լինի Թալիշի մելիքի մօտ, եթէ սպանուած չէ կռուի մէջ․․․ Այդ սաղը արիւնի գոյն ունի եւ խիստ խառնակ կերպով է փայլում, եւ նրա ընթացքը այնքան օտարոտի է, որ դժուար է հասկանալ Ջումշուդի սաղի ճշմարիտ դրութիւնը․․․ Այո, ես հաւատացնում եմ, որ կարելի է, եթէ Ջումշուդը սպանուած չէ կռուի դաշտում, ուրեմն որպէս գերի գտնվում է Չէյվայի մէջ․․․

— Շատ լաւ, պատասխանեց Փանահ-խանը, — եթէ չկայ մի ստոյգ տեղեկութիւն Ջումշուդի մահուան մասին, ուրեմն ամենից հաւանական կը լինի կարծել, որ նա գերի է Թալիշի մելիքի մօտ։ Այդ պատճառով ես դիտաւորութիւն ունեմ պահանջել նրան։ Կը տեսնեմ, թէ ինչպէս կ'ընդունէ մելիքը իմ հրամանը, որը կ'ուղարկեմ նրան քո ձեռքով, որովհետեւ դու կարող ես այդ բանը ուրիշից լաւ գիտենալ, թէ երբ պէտք է ընտրել մի բարեյաջող րոպէ, իմ նամակը նրան յանձնելու համար։ Ես կամենում եմ, Ջումշուդին վերադարձնելով, ուրախացնել նրա հօրեղբօրը, եւ իբրեւ հատուցում իր երախտագիտութեան, ստիպել նրան ճանաչելու իրան իմ հպատակ։ Որովհետեւ ցանկալի չէ ինձ ուժով հարկադրել նրան, ինչպէս միւս մելիքներին։ Ես չեմ կարող մոռանալ, որ նա նպաստեց իմ բարձրանալուն, թէեւ, ի հարկէ,

անգիտակցաբար, առանց ցանկութեան եւ կամքի. բայց այդ մի եւ նոյն է։ Իսկ եթէ, չնայելով այդ նշանաւոր ծառայութեանը, որ ես պիտի կատարեմ նրա համար, նա կը սկսէ հակառակել ինձ, եւ չի ընդունի ինձ որպէս իր թագաւոր, — այն ժամանակ ես ստիպուած կը լինեմ մոռանալ մեր բոլոր բարեկամական յարաբերութիւնները, որոնք եղել են մեր մէջ եւ մինչեւ այսօր շարունակվում են, եւ կը հարկադրեմ նրան ընդունելու իմ կամքը։ Բայց ես աւելի բարւոք եմ համարում գործ դնել նրա դէմ մեղմ միջոցներ. իսկ Ջումշուդին վերադարձնելը, որին նա արդէն սպանուած է համարում, է ամենալաւ միջոցներից մէկը։ Գնա, աստղագէտ, եւ պատրաստուիր էգուց ճանապարհ ընկնելու դէպի Ջէյվայ։

Աստղագէտը խիստ յօժարութեամբ կը ցանկանար, որ մի ուրիշին յանձնուած լինէր այդ դեսպանութիւնը։ Նա գիտէր, որ Թալիշի մելիքը ամենակամակոր եւ սաստիկ յամառ մարդերից մէկն էր ամբողջ աշխարհում։ Մի այսպիսի մարդու հետ խօսելու համար նրան չէին կարող օգնել ոչ մի համաստեղութիւն, ոչ մի նախագուշակութիւն եւ ոչ ամբողջ աստղաբանութիւնը։ Բայց ճար չկար։ Նա պատրաստուեցաւ ճանապարհի համար, տանելով իր հետ Փանահ-խանից մի նամակ հետեւեալ բովանդակութեամբ.

«Շուշի բերդի տէր եւ ամբողջ Ղարաբաղի հրամանատար Փանահ-խանից իր հպատակ Թալիշի մելիքին.

«Ամենակարողի կամքով, Որի ձեռքումն են ամբողջ աշխարհի բոլոր թագաւորները եւ թագաւորութիւնները, ես կոչուած լինելով ստանձնելու ամբողջ Ղարաբաղի հրամանատարութեան իշխանութիւնը, ես ինձ առաջին պարտք եմ համարում հակելու, որ իմ իշխանութեան

ներքոյ գտնուած բոլոր երկրներում չլինէին ոչ մի նեղութիւն եւ ոչ անիրաւութիւններ: Իսկ դու, մելիք, կատարեցիր ամենամեծ անարդարութիւն, գերի վեր առնելով Վարանդայի մելիքի եղբօր որդի Ջումշուդին եւ նրա կնոջը Սալւիհային: Դրանց դու պահում ես քեզ մօտ, առանց այդ մասին ինձ տեղեկութիւն տալու կամ ինձանից հրամաններ խնդրելու: Այդ պատճառով ես, որպէս քո թագաւորը[1], հրամայում եմ՝ յիշեալ Ջումշուդին եւ նրա կնոջը անյապաղ արձակելով, ուղարկել ինձ մօտ այդ նամակաբեր՝ աստղագէտներից իմաստնագոյն Հասանի ձեռքով (որի հետ թող լինի խաղաղութիւն): Իսկ եթէ դու ունես որ եւ իցէ մեղադրանք այդ երիտասարդների դէմ, ինքդ անձամբ յայտնուիր ինձ մօտ եւ ներկայացրու քո գանգատները: Այն ժամանակ ես ողորմածաբար կը քննեմ գործը, եւ եթէ դու արդար լինես, քեզ բաւականութիւն կը տամ, իսկ եթէ ոչ, կը մերժեմ: Այսու ամենայնիւ, յոյս ունեցիր իմ գթասրտութեան վրայ, եւ այսուհետեւ մի համարձակուիր ինքնակամ կերպով կատարելու քո հաճութիւնները, որովհետեւ Ղարաբաղը այժմ ունի իր բարձրագոյն հրամանատարը:„

## IX.

*Աստղագէտի կրած վիրաւորանքը Ջէյվայումն:*

Ջէյվայի ամրոցի սենեակներից մէկի մէջ, մտախոհ կերպով նստած էր Թալիշի մելիքը: Սենեակը զարդարած

---

¹ Փանահ-խանը երբէք թագաւոր լինելու ձգտումներ չէ ունեցել եւ իրան թագաւորական տիտղոս չէ յատկացրել: Նա սկզբում մի հասարակ հովիւ էր, որ հանգամանքների շնորհիւ պարսից կառավարութիւնից խանութեան տիտղոս ստացաւ, յետոյ նոյն պարսից կառավարութիւնից իր անհաւատարմութեան համար սպանուեցաւ: Տես մեր "Խամսայի Մելիքութիւնները„ գրքի IX—XV գլուխները: Ծան. Թարգ.:

էր պարսից ճաշակով[1]. պատերի վրայ երեւում էին գոյն-գզոյն նկարներ, որոնք պատկերացնում էին ծաղիկներ, պտուղներ, որպիսիները բնութեան մէջ գոյութիւն չունէին, պատկերացնում էին մարդիկներ, որոնց իւրաքանչիւրի գլուխը իրանի կէսի չափ կը լինէր։ Բայց չնայելով այդ նկարների այլանդակութեանը, նրանք խիստ հարուստ կերպով նախշած էին ոսկով։ Հօր հանդէպ մի եւ նոյն դրութեան մէջ նստած էր նրա որդին՝ Յուսէինը։ Այդ վերջինը ծխում էր պարսկական թամբաքուից պատրաստած ղէլյանը եւ տհաճութեամբ անդադար դուրս էր թողնում բերանից թամբաքուի թանձր ծուխը։

Վերջապէս մելիքը ընդհատեց տիրող լռութիւնը, ասաց վրդովուած ձայնով.

— Ահա, ինչ ժամանակների հասանք... մի օտարական, մի հասարակ ջուանշիրցի, որը Նադիր-շահի մօտ ծառայում էր նրա համար միայն, որ իր բողազը պատռէ պոռալով, թէ խանը այս հրամայեց, այն հրամայեց եւայլն[2], — այժմ իր լայն կոկորդի շնորհիւ եւ մեր Վարանդայի մելիքի յիմարութեան պատճառով (որը ինձ հետ կռուելու համար կանչեց նրան իրան օգնելու) — այժմ մի

---

[1] Պարսից նկարչութիւնը առհասարակ յայտնի է իր ոսկով եւ վառ գոյներով, բայց կերպարանքները բնաւ համաչափութիւն (пропорціональность) չունէին։ Ծան. հեղ.։

Երեւի հեղինակը տեսել է վերջին ժամանակների հայոց մելիքների ամրոցները եւ նրանց համեմատ է նկարագրում Թալիշի մելիքի պալատը։ Այդ հոյակապ պալատը մինչեւ այսօր գոյութիւն ունի, գտնվում է Հին-Թալիշ բերդի մօտ, Հոռեկի վանքի հանդէպ։ Նրա մի մասը պահպանել է իր ամբողջութիւնը։ Նրա մէջ բնաւ չէ երեւում պարսկական ճաշակ, այլ շինուած է հայկական մի առանձին ճարտարապետութեան ոճով։ Ծան. Թարգ.։

[2] Փանահ-խանը մի ժամանակ մունետիկի (ջառչիի) պաշտօն էր կատարում Նադիր-Շահի մօտ։ Տես մեր "Խամսայի Մելիքութիւնները„ գրքի IX գլ. 45 եր.։ Ծան. Թարգ.։

այսպիսի բախտախնդիրը, որպէս մի ինքնակալ իշխան, սկսել է հրամաններ կարդալ Ղարաբաղի վրայ... Ամօթ մեզ։ Խամսայի բոլոր մելիքները, բացի ինձանից միայն, հպատակում են նրան, որպէս մի թագաւորի։ Ի՞նչ ես մտածում դու մի այսպիսի ամօթալի խայտառակութեան վրայ, սիրելի Յուսէփ։

— Ես մտածում եմ, պատասխանեց բորբոքուած երիտասարդը, — որ, եթէ ինձանից կախուած լինէր, ես բոլոր այդ մելիքներին, որոնք խոնարհվում են մի աննշան օտարականի առջեւ, կարգով կախ կը տայի մի ծառի վրայից։ Միթէ նրանք մոռացել են, որ մելիքները Հայաստանի վաղեմի թագաւորող տան շառաւիղն են։

— Ո՞վ է տուել նրանց այդքան խելք, որ մտաբերեն իրանց անցեալը։ Նրանք այժմ սողում են մի որ եւ իցէ ջուանշիրցու առջեւ, որը իր խորամանկութեամբ խաբելով մեր վարանդացուն[1], բարձրացաւ այն անմատչելի ժայռի վրայ, այնտեղ բերդ հիմնեց, եւ այնտեղից, ինչպէս որ կամենում է, մեր քթին է խփում[2]...

---

[1] Թալիշի մելիքը, “վարանդացի„ ասելով, ակնարկում է Վարանդայի իշխան Մելիք-Շահնազարեանին, որը օգնեց Փանահ-խանին հիմնելու Շուշի բերդը։ Ծան. Թարգ.։

[2] Շուշի բերդի կառուցումը մեծ հարուած տուեց հայոց մելիքներին եւ դրա հակառակ, ամրացրեց Փանահ-խանի զօրութիւնը։ Թէ որքան անառիկ էր այդ սոսկալի բերդը, բաւական է յիշել այն, որ 1795 թուին պարսից Աղա-Մամադ-շահը իր ահագին զօրութեամբ երկար ժամանակ մնաց նրա պարիսպների մօտ եւ չկարողացաւ տիրել։ (Տես “Խամսայի Մելիքութիւնները„ XXIX գլ. 141—143 եր.։) Դարձեալ 1826 թուին, պարսից թագաժառանգ Աբաս-Միրզան 80.000 զօրքով պաշարեց այդ բերդը եւ չկարողացաւ գրաւել, թէեւ բերդը պաշտպանուելու համար ունէր խիստ չնչին թուով զինուորներ։ Տես մեր “Խամսայի Մելիքութիւնները„ գրքի XLIV գլ. 254—257 եւ հետեւեալ երեսները։ Ծան. Թարգ.։

— Այո՛, եւ մենք ամենքս որքան յիմար էինք, որ չմտածեցինք արգելել այդ անմատչելի բերդի կառուցումը, որը նրան նպաստում է Ղարաբաղին տիրելու[1]։

— Այդ բոլորի պատճառը մեր ներքին երկպառակութիւններն են։ Եթէ մենք միշտ միմեանց հետ կապուած լինէինք, ինչպէս մեր նախնիքը հին ժամանակներում կամ Շահ-Աբասի օրերում, այն ժամանակ այդ ջուանշիրցին մտածել անգամ չէր համարձակուի՝ լինել Ղարաբաղի իշխողը։ Բայց մենք բոլորս, Խամսայի հինգ փոքրիկ իշխանութիւններս, — որոնք հայոց հռչակաւոր թագաւորութեան վերջին մնացորդն են, — սկսեցինք անդադար միմեանց հետ վիճել, միմեանց հետ կռուել, եւ ամեն մի յիմար բանի վրայ, ամեն մի չնչին հարցի պատճառով սկսեցինք միմեանց հետ պատերազմել։ Եւ ինչ եղաւ մեր ներքին կռիւների արդիւնքը, — այն, որ շահեցինք մեզ վրայ մի օտար հրամայող...

Այդ միջոցին ներս մտաւ մի նօքար, յայտնեց, թէ Փանահ-խանի կողմից եկել է մի դեսպան, կամենում է ներկայանալ։

— Լսո՞ւմ ես, Յուսէին, ասաց Թալիշի իշխանը, — այդ դեսպանութիւնը լաւ բան չէ նախագուշակում։ Ես պատրաստ եմ մարջ բռնել[2], որ Փանահ-խանը պահանջում է, որ մենք ճանաչենք նրան որպէս մեր թագաւոր։

---

[1] Քանի որ Խամսայի մելիքները միաբան էին, քանի որ նրանց մէջ տիրում էր սէր եւ սերտ դաշնակցութիւն, Փանահ-խանը չհամարձակուեցաւ Ղարաբաղում իր համար բերդ հիմնել։ Թէեւ նա փորձ փորձեց հիմնել Բայաթ եւ Ասկարանի բերդերը, բայց հայոց Մելիքները միանալով, երկուսն էլ ոչնչացրին։ (Տես "Խամսայի մելիքութիւնները" գրքի IX գլ. 48 եւ 49 եր.։) Իսկ Շուշի բերդի կառուցանելը արգելել չկարողացան, որովհետեւ այդ ձեռնարկութեան մէջ խանի հետ միացած էր իրանցից մէկը — Մելիք-Շահնազարեանը։ Ծան. Թարգ.։

[2] Մ ա ր ջ բ ռ ն ե լ, նշ. գրավ գալ, пари держать։ Ծան. Թարգ.։

— Աւելի հեշտ է, որ արեգակը մայր մտնի կէս գիշերին, իսկ լուսինը կէսօրին, քան թէ մենք այս աստիճան կը ստորացնէինք մեզ, ասաց Յուսէինը տհաճութեամբ։ — Բայց միթէ նա թոյլ կը տայ իրան մի այդպիսի լրբութիւն. դա արդէն չափը անցնում է եւ մինչեւ անգամ աներեւակայելի է։

— Հիմայ կը տեսնես, ասաց մելիքը եւ հրամայեց ներս թողնել դեսպանին։

— Թող Աստուած օրհնէ, գեղազարդէ եւ երկարացնէ Թալիշի մեծազօր իշխանի օրերը, եւ թող սփռէ նրա վրայ բախտաւորութեան պարգեւները, եւ թո՛ղ բազմացնէ նրա փառքի եւ բարօրութեան շնորհները։ Աղերսում եմ ներողամիտ գտնուել դէպի մեծն Փանահ-խանի ստրուկը, որը յանդգնում է ներկայացնել ձեզ իր տիրոջ նամակը։ Այդ խօսքերով մօտեցաւ աստղագէտը եւ տուեց մելիքին Ղարաբաղի նոր տիրապետողի թուղթը։

Մելիքը ոչինչ չպատասխանեց աստղագէտի ճառախօսութեանը, լռութեամբ ընդունեց նամակը, որը ծրարած էր մետաքսեայ թանկագին կերպասի մէջ։ Նամակի ընթերցանութեան միջոցին մելիքի դէմքի վրայ կարելի էր նկատել բարկութիւն, կատաղութիւն եւ զզուանք։ Բայց մտածելով, որ Փանահ-խանի իշխանութիւնը արդէն բաւական հաստատուած է, եւ թէ միայն Թալիշի մելիքութիւնը չէ կարող ընդդիմանալ ամբողջ Ղարաբաղին նա չափաւորեց իր վրդովմունքը, պատասխանելով աստղագէտին.

— Դու կարող ես ասել Փանահ-խանին, որ ես հաճութեամբ կը կատարէի նրա ցանկութիւնը (եւ ոչ թէ հրամանը), բայց չեմ կարող, որովհետեւ նա ինքը գիտէ, որ Ջումշուդը սպանուած է կռուի մէջ։ Իսկ թէ ո՞րտեղ

է գտնվում Սալիհան, ես չգիտեմ։ Ուրեմն ինձանից կախուած չէ նրան բաւականութիւն տալը...

— Ի՞նչ բան է, ընդմիջեց Ցուսէֆը տաքացած կերպով. — նա համարձակվո՞ւմ է պահանջել, որ մենք տանք Ջումշուդին ու Սալիհային եւ ինչ իրաւունքով։ Եւ ինչ մի աղա է դարձել մեր գլխին այդ Փանահ-խանը...

— Ցուսէֆ... ասաց մելիքը, խորհրդաւոր կերպով նայելով նրա վրայ։

— Ես չեմ կարող լինել ստրուկ մի օտարականի, շարունակեց զայրաբորբոք երիտասարդը, — ցոյց տուեցէք, ինչ է գրել նա։

— Եթէ դու քեզ հանգիստ կը պահես, ես կը տամ քեզ նամակը...

— Ես այսպէս էլ հանգիստ եմ, հայրիկ։

Նա վեր առեց նամակը, սկսեց կարդալ։ Ամեն մի տողից յետոյ բարկութիւնը աւելի եւ աւելի սկսվում էր նկարուել երիտասարդ մելիքի դէմքի վրայ։ Վերջը զայրացած կերպով տրորեց նամակը իր ձեռքի մէջ, եւ կատաղութիւնից խեղդուող ձայնով ասաց աստղագէտին.

— Թշուառական, դու իմանո՞ւմ ես այստեղ ինչ է գրած։

— Ոչ, մելիք։

— Ճշմարիտ ես ասում, երդուի՛ր...

— Երդվում եմ իմ նախնեաց աստուածներով, երդվում եմ իմ մօրուքով, որ չունեմ ամենափոքր տեղեկութիւն անգամ, թէ ինչ է գրած այդ նամակի մէջ։

— Լաւ։ Վե՛ր առ, կուլ տուր այդ ցնորաբան նամակը եւ ասա՛ քո Փանահ-խանին, որ նա այդ աշխարհի խելագարներից ամենամեծ խելագարն է, եւ մինչեւ անգամ աւելի մեծ, քան թէ խենթութեան հայրը։

— Այդ ի՞նչ ես անում, Յուսէֆին, մտածի՛ր...

— Մի՞թէ, հայրիկ, դուք թոյլ էք տալիս մի որ եւ իցէ օտարականին հայհոյել մեզ: Ոչ, քանի դեռ կենդանի եմ ես, թոյլ չեմ տայ մինչ այդ աստիճան...

— Դէ, մելիք... ասաց աստղագէտը:

— Լո՛ւռ կաց, եւ կատարի՛ր, ինչ որ քեզ հրամայում եմ, աղաղակեց Յուսէֆինը, եւ տեսնելով որ աստղագէտը ուշանում է, խլեց նրա օձիքից, սեղմեց պատի վրայ, եւ մի ձեռքով բռնելով խէնջարը, միւսով Փանահ-խանի նամակը, որոտաց կատաղութեամբ.

— Ընտրի՛ր, որը կամենում ես. կամ պիտի կուլ տաս այդ ժպիրհ նամակը եւ պիտի ասես իմ կողմից Փանահ-խանին, որ նա ամենամեծ խելագարն է, կամ այս րոպէիս քեզ կ՚ուղարկեմ միւս աշխարհը... Այդ խօսքերը ասելով, նա կոխեց նամակը աստղագէտի կոկորդի մէջ, որը խեղդուելով աղաղակում էր խնայել իրան:

— Լաւ, առաջ տարաւ Յուսէֆինը, այդ անպիտան նամակը այնքան լի է յիմարութիւններով, որ միանգամից ամբողջութեամբ նրան կուլ տալը անկարելի է:

Նա պատառոտեց նամակը, եւ մի քանի կտորներ դարձնելով, ասաց.

— Դէ՛, հիմայ կուլ տո՛ւր, թէ չէ, կը սպանուես...

Աստղագէտը, երկիւղից դողդողալով, հնազանդուեցաւ: Յուսէֆինը չհեռացաւ նրանից, մինչեւ խեղճ դեսպանը կուլ չտուեց թղթի վերջին պատառը[1]:

— Հիմայ գնա՛, ասաց Յուսէֆինը ժպտալով, — եւ պատասխանը տա՛ր քո Փանահ-խանին:

---

1 Պատմական անցք է: Ծան. հեղ.:

Այդ պատմական անցքի մանրամասները տես մեր “Խամսայի Մելիքութիւնները„ գրքի XII գլ. 64 եր.: Ծան. թարգ.:

*Մելիքը ցաւելով տեսնում էր, որ որդու վրդովմունքը դարձրեց պատերազմը իր եւ Փանահ-խանի մէջ անխուսափելի։ Բայց ինչ պէտք էր արած, նա չէր կարող իրան ստորացնել թշնամու դեսպանի մօտ. մի այդպիսի վարմունք կը հրաւիրէր հօր վրայ որդու զզուանքը, մի որդու, որը այնքան թանկագին էր հօր համար։*

*Աստղագէտը հեռացաւ սաստիկ վշտացած իր կրած վիրաւորանքի համար։ Վրէժխնդրութեան դառնութիւնը բորբոքվում էր նրա սրտում։ Հէնց նոյն օրուայ գիշերային պահուն, նա վստահացաւ մուրացկանի հագուստով մտնել Զէյվայ, եւ կարողացաւ խօսակցութեան մէջ գրաւել Թալիշի մելիքի նօքարներին, եւ նրանցից տեղեկացաւ ոչ միայն Ջումշուդի ու Սալիհայի բանտարկութեան մասին, այլ եւ այն տեղի մասին, ուր նրանք կալանաւորուած էին։ Նա անցաւ այն աշտարակի մօտից, որտեղ բանտարկուած էին նրանք. աչքերով չափեց բարձրութիւնը, քննեց պարիսպների ամրութիւնը, եւ ցաւելով համոզուեցաւ, որ մի մարդու ջանքը բաւական չէր լինելու նրանց ազատելու համար։ Բայց կամենալով մխիթարել նրանց, նա բարձր ձայնով ասաց. “Շուտով կը հասնի ձեր ազատութեան րոպէն. յոյս դրեցէք աստղագէտ Հասանի խօսքերի վրայ„։ Այդ խօսքերը առողջարար բալասանի ազդեցութիւն ունեցան անբախտ գերիների սրտերի վրայ։ Այդ ասելուց յետոյ աստղագէտը սկսեց ամենայն արագութեամբ վերադառնալ դէպի Շուշի։*

## X.

*Զէյվայի գրաւումը — Յուսէինի մահը:*

*Փանահ-խանը, տեղեկութիւն ստանալով այն վիրաւորանքի մասին, որով անպատուել էին նրա դեսպա-*

նին, վճռեց շուտով խոնարհեցնել Թալիշի մելիքի հպարտութիւնը։ Դրանով կամենում էր նա եւ ուրիշներին օրինակ ցոյց տալ, թէ անկարելի է վշտացնել Ղարաբաղի նոր իշխողին եւ անպատիժ մնալ։ Նա հրամայեց իր իշխանութեան ներքոյ գտնուող ցեղերին եւ մելիքներին, որ զէնքի կոչեն բաւականաչափ զինուորներ։ Վարանդայի իշխանը սաստիկ ուրախացաւ, երբ իմացաւ, որ նրա սիրելի եղբօրորդին կենդանի է։ Նա հաւատացած էր, որ Փանահ-խանի պատերազմելու գլխաւոր նպատակն այն էր, որ ազատէ Ջումշուդին գերութիւնից։ Եւ այդ պատճառով, նա առաջինը եղաւ, որ իր զօրքերով յայտնուեցաւ Շուշի բերդում։ Եւ այդպէս, գումարուելով աւելի քան տասն հազար հոգի, Փանահ-խանը արշաւեց դէպի Չէլվայ։

Թշնամին խիստ զօրաւոր էր։ Այնուամենայնիւ, Թալիշի մելիքը, որքան իրանից կախուած էր, գործ էր դնում բոլոր հնարները, որպէս զի յաջողութեամբ կարողանայ ընդդիմադրել թշնամուն։ Թէեւ նա յաղթութեան վրայ մեծ յոյս չունէր, որովհետեւ երկու կողմերի ուժերի չափազանց անհաւասարութիւնը արդէն նախագուշակում էր նրա պարտութիւնը։ Նա, որքան կարելի էր, ամրացրեց իր բերդը Չէլվայի մէջ, բայց փոքր ինչ առաջ Ջումշուդի ձեռքով աւերակ դարձած քաղաքը կրկին նորոգելու ժամանակ չունեցաւ։ Բնակիչների մի մասը ամրացաւ բերդի մէջ, իսկ մնացած բոլորը, որոնք զէնք կրելու վարժ էին, պէտք է դուրս գային կռուի դաշտը։ Իր չորս հազար հոգուց բաղկացած զօրքից հազարը նա թողեց ամրոցը պահպանելու համար, իր որդի Յուսէֆի առաջնորդութեամբ։ Իսկ մնացած երեք հազարով դուրս եկաւ թշնամու հանդէպ, որը թուով եռապատիկ աւելի էր։ Երկու կողմերի զօրքերն եւս հանդիպեցին միմեանց Թարթար գետի

ափերի մօտ։ Սկսուեց արիւնահեղ կռիւը։ Երկար երկու կողմերն եւս պատերազմում էին միանման կատաղութեամբ։ Փրփրադէզ Թարթարի արընթաց ջրերը ներկուեցան արիւնով. եւ երկրի ամէն մի քայլը նշանաւոր դարձաւ քաջութեան եւ արիութեան հրաշալի անցքերով։ Վերջապէս գիշերային խաւարը բաժանեց պատերազմողներին։

Աւելի մեծ էր կորուստը Փանահ-խանի զօրքերի մէջ. բայց դա այնքան զգալի չէր, որքան Թալիշցի զօրքերի կորուստը։ Շուշիի խանի զօրքերից դեռ մնացել էին վեց հազար հոգի, որ կարող էին շարունակել կռիւը, բայց մելիքի զօրքերից մնացել էին միայն ութ հարիւր հոգի։ Զանազանութիւնը սարսափելի էր։

Մելիքը, օգուտ քաղելով գիշերային խաւարից, թողեց իր բռնած դիրքը եւ շտապով յետ քաշուեցաւ դէպի Ջէյվայ։ Նա պարզ տեսնում էր, որ եթէ սկսելու լինի երկրորդ ճակատամարտը, իզուր կը կորցնէ իր զօրքերի մնացորդը։ Իսկ եթէ նրանց միացնելու լինի Ցուսէնի զօրախմբի հետ եւ պատսպարուի ամրոցի պարիսպների մէջ, այն ժամանակ աւելի հեշտ կարող կը լինի պաշտպանուել Փանահ-խանի յարձակումների դէմ։

Ղարաբաղի նոր խանը միւս օրուայ առաւօտեան պահուն նկատեց իր թշնամիների տեղի տալը, եւ առանց ժամանակ կորցնելու, մօտեցաւ Ջէյվայի ամրոցին, եւ ամէն կողմից խիստ անձուկ կերպով պաշարեց նրան։

Սկզբում պաշարուածները իրանց ամրոցի պարիսպների բարձրութիւնից ծիծաղում էին Փանահ-խանի զօրութեան վրայ, որը միայն իր լռութեամբն էր պատասխանում նրանց յարձակումներին, եւ վճռել էր սովով ստիպել նրանց անձնատուր լինելու։ Շուտով մարդկու-

թեան այդ անողորմ պատուհասը տարածուեցաւ Թալի-շեցիների մէջ։ Նրանք զգացին իրանց դրութեան բոլոր զարհուրանքը եւ սկսեցին ստիպել մելիքին, որ անձնատուր լինի։ Յուսէֆը լսելով ժողովրդի տրտունջը, եւ հասկանալով, թէ ո՛րպիսի դժբախտութիւն էր սպառնում իրանց, ցանկացաւ գնալ Փանահ-խանի մօտ, հաշտութեան պայմանների վրայ խօսելու համար։

— Ես եմ եղել այդ պատերազմի պատճառը, ասաց աներկիւղ երիտասարդը, — նոյնպէս ես պէտք է աշխատեմ վերջ տալու նրան։

Ամրոցի պարիսպների վրայից թոյլտուութիւն խնդրեցին Փանահ-խանից, թէ ուղարկվում է նրա մօտ մի պատուիրակ խօսակցելու համար։ Մելիքը դառնացած սրտով իրաւունք տուեց Յուսէֆին գնալ թշնամու բանակը։ Մի առանձին նախազգացութիւն, կարծես, ազդում էր հօրը, թէ այլ եւս չի տեսնի սիրելի որդուն։

Յուսէֆը ներկայացաւ Ղարաբաղի իշխողի առաջ մի այնպիսի յանդուգն վստահութեամբ, որը ցոյց էր տալիս, որ նա արդէն կանխապէս վճռել էր կատարելու մի նշանաւոր դիտաւորութիւն։ Հպարտ կերպով գլուխ տալով, ասաց նա.

— Փանահ-խան, ի՞նչ իրաւունքով դու եկել ես վրդովեցնել հանգստութիւնը մի իշխանի, որը երբէք վիրաւորած չէ քեզ, որին դու, դեռ ես չճանաչած, ինքդ վիրաւորեցիր, պահանջելով նրանից հպատակութիւն։ Անյայտ չէ նոյնպէս, թէ ես ի՞նչ իրաւունքով վիրաւորեցի քո դեսպանին, որովհետեւ չկարողացայ համբերել քո անարդարութեանը։ Խօսի՛ր, այժմ ի՞նչ հատուցում ես պահանջում դու։ Ես կանգնած եմ քո առջեւ, բայց հանգիստ թող իմ հօրը եւ ձեռնամուխ մի լինիր նրա

գործերի մէջ։ Մեր նախնիքը արդէն մի քանի դարեր մելիքներ էին եւ այդ կողմերի տիրապետողներն էին, ուրեմն դու պատճառներ չունես տարածելու քո պահանջները մեր երկրի վրայ։ Դու կարող ես լինել մեր դաշնակիցը, իսկ մեր հրամանատարը՝ — երբէք։

— Ցուսէին, պատասխանեց Փանահ-խանը, — յարգելով քո հաստատամտութիւնը եւ քո քաջութիւնը, ես ներում եմ քո վարմունքը իմ դեսպանի վերաբերութեամբ, ներում եմ քո յանդուգն խօսքերին։ Բայց իմացի՛ր, որ Խամսայի միւս մելիքները, որոնք իրանց արժանաւորութիւններով ձեզանից պակաս չեն, վաղուց արդէն ընդունել են իմ հպատակութիւնը։ Այժմ Ղարաբաղը ունի իմ անձնաւորութեան մէջ մի տէր, որը աշխատում է ոչնչացնել բոլոր երկպառակութիւնները, որը ցանկանում է իր իշխանութեան ներքոյ գտնուող ժողովրդին տալ բարօրութիւն։ Հպատակեցէք եւ դուք։ Ձեր իշխողը ցոյց կը տայ ձեզ իր մեծահոգութիւնը։

— Մի որ եւ իցէ օտարական մեծահոգութիւն պիտի ցոյց տայ այն ամենահին տոհմերին, որ եղել են այդ երկրների տիրապետողները։ Դա արդէն խիստ ծիծաղելի է, Փանահ-խան։ Միթէ դու չե՞ս հասկանում, թէ ինչ ես խօսում։

— Ցուսէին, պատասխանեց Փանահ-խանը, — դու պահանջեցիր խօսակցել ինձ հետ գործի վրայ։ Ինչ պէտք է ի զուր խօսքեր վատնել։ Ես գիտեմ արհամարհել վիրաւորանքները...

— Իմ առաջարկութիւնը յայտնեցի հէնց մեր խօսակցութեան սկզբից։ Ես մեղաւոր չեմ, որ դու չհասկացար։ Բայց դու, որպէս ես տեսնում եմ, դիտմամբ չես ցանկանում հասկանալ ինձ. եւ ձգտում ես դառնալ իշ-

*խող նրանց, որոնք ամենեւին չեն ցանկանում քեզ հնազանդուել:*

*— Ես կը հարկադրեմ նրանց: Կը տեսնենք, կարո՞ղ են արդեօք դիմանալ նրանք դեռ եւս երկար ժամանակ առանց սնունդի: Իսկ ես վճռել եմ ամենեւին չհեռանալ այստեղից մինչեւ դուք չհնազանդուէք ինձ:*

*— Ուրեմն դու ոչինչի տե՞ղ ես դնում սովի մահով կորցնել մի քանի հազար հոգեր, նրա համար միայն, որ նրանք չեն համաձայնվում ընդունել քեզ այնպէս, ինչ որ դու երբէք չես եղել, այսինքն՝ իրանց վրայ — իշխող:*

*— Դա կը լինի քո վերջին խօսքը: Ես չեմ կամենում երկար լսել քեզ: Գնա՛, ես կարող եմ հնար գտնել, որ ստիպեմ քեզ եւ բոլոր թալիշեցիներին հպատակելու ինձ:*

*— Ի՛նձ, գոչեց Յուսէնը լի վրդովմունքով: — Կրկնի՛ր այդ խօսքը:*

*— Այո՛, քեզ, դրանում ինչ մի զարմանալի բան կայ:*

*Այդ խօսքերի միջոցին Յուսէնը մերկացրեց իր խէնջարը, եւ կայծակի արագութեամբ յարձակուելով Փանահ-խանի վրայ, աղաղակեց. — Մեռի՛ր, չարագործ...*

*Փանահ-խանը, որպէս սառնասիրտ մարդ ամեն դէպքերում, կանխապէս նկատելով աներկիւղ երիտասարդի յանդուգն դիտաւորութիւնը, խոյս տուեց նրա հարուածից եւ ազատուեցաւ: Յետոյ հրամայեց նա իր թիկնապահներին բռնել Յուսէնին: Բայց նա, չկամենալով կենդանի մնալ եւ ականատես լինել իր փառքի եւ հայրենական ազատութեան ոչնչանալուն, ինքն իր խէնջարը ցցեց իր կուրծքի մէջ եւ ընկաւ Փանահ-խանի մօտ: Խանը ապշած մնաց, տեսնելով այդ հերոսական վարմունքը:*

— Հիմա բոլորը քեզ է պատկանում, Փանահ-խան, և տացէ Աստուած, որ ղարաբաղցիք մի ժամանակ չզղջային իրանց սխալների համար... Արտասանելով այդ խօսքերը, նա աւանդեց հոգին։

Երբ որ նրա մահուան բօթը տարածուեցաւ Ջէյվայի մէջ, հէնց նոյն րոպէում բացուեցան ամրոցի դռները Փանահ-խանի առջև։

## XI.

*Փանահ-խանը դառնում է ղարաբաղի խան:*

Թալիշի մելիքը հանդիպեց Փանահ-խանին խոնարհութեամբ, և ընդունելով իր վրայ նրա բարձր իշխանութիւնը, մի և նոյն ժամանակ մնաց հաստատ թէ իր մելիքութեան աստիճանի մէջ և թէ իր երկրի տիրապետութեան մէջ, որպէս էր առաջ։ Չկամենալով, որ յաղթողը տեսնէ, թէ որպիսի բանտում կամ որպիսի տաժանական դրութեան մէջ տանջվում էին Ջումշուդը և Սալիհան, մելիքը շնորհեց նրանց ազատութիւն նախ քան ամրոցի դռների բացուիլը Փանահ-խանի առջև։ Անբախտ երիտասարդները իսկոյն հրճուանքով միմեանց գիրկը նետուեցան և նոյն րոպէի քաղցրութեան մէջ մոռացան բոլոր նեղութիւնները, որ կրել էին։ Նրանք ներեցին իրանց թշնամիներին, և մտնելով մի նոր և աւելի երջանիկ կեանքի մէջ, արդէն երկրի վրայ զգում էին երկնային ամենաբարձր երանութիւն։

Երբ որ բացուեցան ամրոցի դռները, նրանք ընկան, իրանց հօրեղբօր գիրկը, որը նրանց տեսնելով, ուրախութեան սաստկութիւնից չկարողացաւ զսպել իր արտասուքը։ Բայց որպիսի դառն զգացմունք միացաւ նրա բերկրութեան զգացմունքի հետ, երբ տեսաւ նրան կրած

տանջանքների հետքերը, որոնց տպաւորութիւնը խիստ որոշ գծերով նկարուած էր երկու մանկահասակ ամուսինների դէմքի վրայ։ Փանահ-խանը վախենալով, մի գուցէ Թալիշի մելիքի բարբարոսական վարմունքը իր երկու պատուաւոր գերիների վերաբերութեամբ կրկին նորոգէր նրա և Վարանդայի մելիքի մէջ արդէն դադարած երկպառակութիւնը, — ամեն միջոցներով աշխատում էր, որ հանգստացնէ Վարանդայի մելիքին, մոռանալ տալով նրան հին անախորժութիւնների յիշատակները։

— Մոռանանք, մելիք, բոլոր անցեալը, ասում էր նա, — և գոհ լինելով ներկայից, դադարեցնենք այն երկպառակութիւնները, որոնք այնքան երկար ժամանակ խռովութեան մէջ էին պահել Ղարաբաղը։ Ձեր եղբօրորդին, որ ձեր գիրկը վերադառնալով այժմ վայելում է ձեր սէրը, փառքի արժանի կերպով համբերեց բոլոր փորձանքներին, որոնց ճակատագիրը կամեցել էր առաքել նրան։ Բայց աւելի ևս զարմանում եմ ես նրա մանկահասակ ամուսնի վրայ։ Այդ Սալըհան մի կենդանի օրինակ է հաստատամտութեան, տոկունութեան և արիութեան, որի նմանը շատ դժուար է գտնել։ Ես կ՚աշխատեմ, որ դրանից յետոյ այդ երկու սիրարժան երիտասարդները այլ ևս դառնութիւններ չկրեն։

Մելիքը շնորհակալութիւն յայտնեց Փանահ-խանին, որը շուտով վերադարձաւ Շուշի բերդը, հրաւիրելով այնտեղ Վարանդայի իշխանին և Ջումշուդին իր կնոջ հետ։

Շքեղ խնջոյքներով զուարճանում էին նրանք Ղարաբաղի իշխողի նոր տան մէջ, որ կանգնած էր սեպացած ժայռի եզրի վրայ, իսկ նրա ստորոտը քերելով, և ահագին քարերին զարկուելով, արագութեամբ վազում էր

լեռնային գետը։ Բայց նրա որոտալից ձայնը միայն թոյլ կերպով հասնում էր Փանահ-խանի հիւրերի ականջին, որովհետեւ գտնվում էին ահագին բարձրութեան վրայ։

Մի օր Փանահ-խանը, կամենալով իմանալ Վարանդայի իշխանի կարծիքը գործերի նոր դրութեան վերաբերութեամբ, ասաց.

— Խոստովանուեցէք, մելիք, որ սկսեալ այն ժամանակից, քանի որ ես տիրում եմ Շուշի բերդին, Ղարաբաղը հանգստացաւ անդադար խռովութիւններից։ Տեսնում էք, թէ որքան օգուտներ են բովանդակվում միապետութեան մէջ։

— Միապետութեան մէջ։ Ուրեմն դուք ցանկանում էք լինել Ղարաբաղի ընդհանուր կառավարիչ։

— Անկասկած, միթէ դուք չէ՞ք տեսնում, մելիք, որ այդ արդէն կատարուած իրողութիւն է։ Եւ դուք ձեր կողմից նոյնպէս կարող էք պարծենալ մի այսպիսի անցքի համար, որովհետեւ, ինչպէս դուք եղաք իմ բարձրանալու գլխաւոր պատճառը եւ հասցրիք ինձ Ղարաբաղի խանի աստիճանի։ Եւ ես հաւատացած եմ, մելիք, որ դուք, յարգելով Ղարաբաղի խաղաղութիւնը, չէք հրաժարուի ճանաչել ինձ այդ կոչման մէջ։

— Դուք, երեւի, կատակ էք անում, Փանահ-խան, միթէ դուք մոռացե՞լ էք, որ խոստացաք կառուցանել Շուշի բերդը մեր երկուսի ապահովութեան համար։

— Այո՛, ես յիշում եմ այդ։ Բայց հանգամանքները փոխուեցան, մելիք։ Այն ժամանակ ես մտածում էի միայն նրա վրայ, թէ ինչպէս պէտք է ապահովացնել ինձ եւ ձեզ թշնամիների յանկարծակի յարձակումներից, իսկ այժմ ներկայացաւ խիստ ընդարձակ ասպարէզ, այն է՝ հնազանդացնել եւ խաղաղացնել ամբողջ Ղարաբաղը։

Ես ճանաչում եմ, մելիք, ձեր խոհեմութիւնը, եւ հաւատացած եմ, որ դուք չէք ցանկանայ նորոգել այդ գեղեցիկ երկրների դժբախտութիւնը, որոնք հազիւ թէ դեռ նոր սկսել են շունչ առնել եօթնամեայ ծանր պատերազմներից[1]:

— Լսեցէք, Փանահ-խան, ինձ երեւում է, որ դուք պահանջում էք, որ ես ճանաչեմ ինձ ձեր հպատակ:

— Ո՛չ, մելիք, դուք սխալ էք հասկանում: Ես կամենում եմ, որ դուք միայն առ երես ցոյց տաք ուրիշների առջեւ, թէ հնազանդվում էք իմ հրամաններին, որովհետեւ, այն ժամանակ միւսները ձեզանից օրինակ կ'առնեն: Բացի դրանից, ես կ'ասեմ ձեզ, մելիք, ով որ չի ցանկանայ հնազանդուել ինձ, ես վճռել եմ ուժով ստիպել, — հէնց իրանց սեպհական շահերի համար . . .

— Հասկանում եմ . . . դուք կը դարձնէք եւ իմ դէմ ձեր զէնքը, երբ որ ես ձեզ լսելու չլինեմ:

— Ո՛չ, մելիք, ես գիտեմ, որ դուք ձեզ չէք հասցնի մինչ այդ աստիճան ծայրայեղութեան:

— Իսկ եթէ կը հասցնե՞մ: Բայց էլ ի՞նչ խօսել կ'ուզէ: Ձեր նպատակն այն է, որ լինէք Ղարաբաղի լիազօր խանը, եւ մեզ, այդ երկրի վաղեմի տիրապետողներիս, ստիպէք, որ պար գանք ձեր դուդուկի համեմատ . . .: Հիմայ մեզ պէտք է հնազանդուել ձեր կամքին, որովհետեւ մենք ինքներս պատճառ դարձանք մեր անկմանը, բայց կարելի է մի ժամանակ . . .

---

[1] Եօթնամեայ պատերազմ: Հայոց մելիքները Փանահ-խանի հետ իսկապէս 16 տարի կռիւներ են ունեցել, այսինքն 1747 թուից մինչեւ 1763 թուականը, միայն երբեմն հաշտուել են, երբեմն կարճ ժամանակով զինադադար է եղել: Ծան. Թարգ.:

Փանահ-խանը, կամենալով ուրիշ ուղղութիւն տալ իրանց խօսակցութեանը, որ արդէն սկսել էր թշնամական ձեւ ստանալ, հարցրեց.

— Դուք հաւատո՞ւմ էք աստղաբաշխութեան, մելիք։

— Հաւատում եմ. ինչպէս կարելի է չհաւատալ։

— Դուք այլ եւս բարկացած չէ՞ք այն աստղագէտի վրայ, որը առաջ ծառայում էր ձեզ մօտ, իսկ այժմ ծառայում է ինձ մօտ։

— Ոչ, բարկացած չեմ. նա մեզ համար շատ օգտակար է եղել։

— Ուրեմն մենք կը կանչենք նրան եւ կը հրամայենք, որ գուշակութիւններ անէ Ղարաբաղի ապագայ վիճակի մասին։

— Մեծ ուրախութեամբ։

Փանահ-խանը հրամայեց իր նօքարներին, որ կանչեն աստղագէտին։ Նա ներս մտաւ, ողջունելով արեւելեան չափազանց պերճախօսութեամբ։ Լսելով Փանահ-խանի հրամանը, նա մի առանձին ջանքով սկսեց կատարել իր աստղաբաշխական գործողութիւնները։ Նրա դէմքի վրայ այնքան կենդանի կերպով արտայայտվում էին նրան տիրող բոլոր զգացումները, որ մելիքը անհամբերութեամբ եւ մի եւ նոյն ժամանակ մի առանձին սարսափով սպասում էր աստղաբաշխի մարգարէական ձայնին։ Փանահ-խանը խորին զուարճութեամբ նկատում էր մելիքի սրտի մի այսպիսի տրամադրութիւնը, որի հետ դեռ եւս չէր կամենում թշնամանալ, եւ սպասում էր աստղագէտի պատասխանին։

Այդ վերջինը, նստած տեղից կանգնելով, եւ աչքերը դէպի երկինք դարձնելով, խօսեց հանդիսաւոր կերպով.

— “Ղարաբաղի հրամանատարի աստղը գտնվում է իր լիակատար ծագման մէջ... Նա փայլում է պայծառ կերպով եւ նրա բարերար ազդեցութեան ներքոյ բախտաւորութիւն է վայելում ամբողջ երկիրը, սկսեալ Երասխից մինչեւ Գանձակի սահմանը... Նրա ապագայ սերունդը տիրապետում է այդ երկրին, եւ վա՜յ նրանց, որոնք կը յանդգնին չհնազանդուել նրա իշխանութեանը եւ չեն ընդունի նրա ապագայ ժառանգներին... Ի՞նչ եմ տեսնում ես... ինչ որ խելագարներ ապստամբվում են երկնքի սիրելիի դէմ... գնում են, հպարտացած իրանց ոչնչութեամբ... բայց երկա՞ր կը տեւէ նրանց յաղթանակը, այդ խաբուսիկ յաղթանակը... Անմատչելի Շուշիի վրայ հաւաքուեցան սպառնալից, մթին ամպեր... Որոտման սարսափելի հարուածը ահագին թմբուկներով դղրդեց լեռների հիմքը... Կայծակը գալարուեցաւ ստահակների շուրջը եւ նրանք շառաչմամբ գլորուեցան անյատակ անդունդի մէջ...։ Պայծառ ճաճանչներով փայլում է պսակը Ղարաբաղի հրամանատարի գլխի վրայ... բոլոր հակառակորդները ոչնչանում են նրա առջեւ...

Վարանդայի իշխանը մտածութիւնների մէջ ընկաւ... մի քանի րոպէ տիրեց լռութիւնը։ Վերջը ասաց նա.

— Ես չեմ կամենում հակառակել ճակատագրի կամքի դէմ։ Ընդունում եմ Ղարաբաղի հրամանատարին իբրեւ իմ հրամանատար, եւ թող չքանան երկպառակութիւնները, որոնք ալեկոծում էին Ղարաբաղը այնքան ժամանակ...

— Իսկ ես իմ կողմից խոստանում եմ, ասաց Փանահ-խանը, — միշտ համարել Վարանդայի իշ-

խանին իմ բարեկամ, իսկ նրա թշնամիներին — իմ թշնամիներ։

Երկու բարեկամներն եւս գրկախառնուեցան։

— Փառք լինի Ալլին, ասաց աստղագէտը խորին բերկրութեամբ։ — Վերջին մելիքը եւս հնազանդուեցաւ։ Եւ Ղարաբաղը, այժմ ունենալով իր ինքնակալ խանին, խաղաղութիւնը նրա մէջ հաստատուեցաւ աւելի ամուր հիմքերի վրայ։ Իմ հոգիս լի է ցնծութեամբ, որ իմ կարողութեան չափով նպաստեցի երկու նշանաւոր անցքերի կատարմանը. նախ, անմատչելի Շուշիի կառուցմանը, յետոյ խանութեան իշխանութեան հիմնուելուն ամբողջ Ղարաբաղի վրայ . . .



## ՎԵՐՋԱԲԱՆ

Ջումշուդը եւ Սալիհան բնակուեցան Ջանախչի ամրոցի մէջ։ Նրանց հրճուանքին եւ ուրախութեանը չափ չկար, երբ առաջին անգամ գրկեցին իրանց զաւակներին։ Բայց երկար չվայելեցին նրանք ամուսնական երանաւէտ սիրոյ եւ բարեկամութեան երջանկութիւնը։ Սաստիկ ժանտախտը, որ դրացի պարսկական երկրներից ներս մտաւ Ղարաբաղ, մի քանի օրուայ մէջ գերեզման տարաւ Նազելի Սալիհային եւ նրա երկու զաւակներին։ Ջումշուդը չկարողացաւ տանել այդ երրակի կորստեան տրտմութիւնը եւ միացաւ իր սիրելիների հետ միւս աւելի լաւ աշխարհում։ Աստղագէտը, հրապուրուելով պարսից Շահի խոստմունքներից, աշխատում էր խռովութիւն յարուցանել Ղարաբաղի մէջ եւ տապալել խանին, դրա համար էլ մահուան դատապարտուեցաւ։

Փանահ-խանը իր բարեկամութեամբ երկար չփայփայեց Վարանդայի մելիքին, այլ շուտով սկսեց վարուել նրա հետ գոռոզ հրամանատարի ձեւով, որը եւ առիթ տուեց շատ անախորժութիւնների երկուսի մէջ։ Փանահ-խանի որդին եւ ժառանգը, Իբրահիմ-խանը, աւելի բռնակալութեամբ սկսեց կառավարել Ղարաբաղը, չը համբերելով ամենափոքր հակառակութեան։ Բայց երբ սկսուեց ԺԹ-րդ դարը, երբ Ռուսաստանը տարածեց իր

տիրապետութիւնը Անդրկովկասում, այդ ժամանակ Իբրահիմ-խանը սկզբում ընդունեց իր վրայ Ռուսաստանի բարձր գերիշխանութիւնը, բայց շուտով կրկին խռովութիւններ բարձրացնելով, զոհուեցաւ կեանքից նոյն կռուի մէջ, որ տեղի ունեցաւ այդ դէպքի առիթով։[1] Իբրահիմ-խանին յաջորդ նշանակուեցաւ ռուսաց կառավարութիւնից նրա որդի Մէհտի-Ղուլի-խանը, որը յետոյ հօր նման նոյնպէս դաւաճանեց ռուսներին եւ հեռացաւ, գնաց Պարսկաստան։[2] Այն ժամանակից Ղարաբաղը դարձաւ ռուսաց նահանգ եւ կառավարւում է զինուորական առանձին կոմենդանտի (բերդապահի) ձեռքով։ Շուշի բերդը եւ այժմ համարվում է Ղարաբաղի խանութեան գլխաւոր տեղը։ Բացի կոմենդանտից, այդ բերդում յատկապէս նշանակուած է մի գեներալ, որ կրում է այդպիսի տիտղոս զինուորական-նահանգային գլխաւոր մուսուլմանների գաւառների (Военно-окружной начальникъ мусульманскихъ провинцiи)։ Այդ գաւառներն էին՝ Ղարաբաղի, Շաքիի եւ Շիրուանի խանութիւնները։ Շուշի բերդը առաւելապէս հռչակուեցաւ ռուսների յամառ պաշտպանութեամբ 1826 թուին, երբ 1500 զինուորներ 42-րդ

---

[1] Փանահ-խանի որդի Իբրահիմ-խանը ընդունեց ռուսաց հպատակութիւնը։ Բայց երբ 1806 թուին պարսից թագաժառանգ Աբաս-Միրզան զօրքերի ահագին բազմութեամբ անցաւ Երասխ գետը եւ մօտեցաւ Շուշի բերդին, այդ ժամանակ Իբրահիմ-խանը, չնայելով, որ ռուսներին հաւատարիմ մնալու երդւում էր տուել, գաղտնի կերպով թողեց բերդը, դիմեց դէպի պարսից բանակը։ Մելիք-Շահնազարեան Մելիք-Ջումշուդը (Ջուբուլի վէպի հերոսը) այդ իմանալով, իմացում տուեց բերդապահ գնդապետ Լիսանեւիչին, եւ երկուսը միասին հետամուտ լինելով փախստականին, կէս ճանապարհի վրայ բռնեցին Ղարաբաղի բռնակալին եւ սպանեցին։ Տես մեր "Խամսայի Մելիքութիւնները" գրքի XL գլ. 206–208 եր.։ Ծան. Թարգ.։

[2] Իբրահիմ-խանի որդի Մէհտի-Ղուլի-խանը իր հօր նման նոյնպէս դաւաճանեց ռուսներին, 1822 թուին փախաւ Պարսկաստան, եւ

*եգերեան գունդից, քաջ պօլկօվնիկ (այժմ գեներալ-մայօր) Ի. Ա. Ռէուտի հրամանատարութեան ներքոյ, փակուելով Շուշւայ բերդում, ընդդիմացան 48-օրուայ պաշարման, պարսից բոլոր զօրքերի դէմ, որ բաղկացած էր 80.000 հոգուց, որոնց անձամբ առաջնորդում էր ինքը՝ պարսից գահի Թագաժառանգ Աբաս-Միրզան, որի բոլոր ջանքերը այդ բերդը գրաւելու համար ի զուր անցան։*[1]

---

[1] *Առաջնորդելով պարսից Թագաժառանգ Աբաս-Միրզային, 1826 թուին զօրքերի ահագին բազմութեամբ յարձակում գործեցին Ղարաբաղի վրայ։ Ղարաբաղը այդ ժամանակ ռուսների ձեռքումն էր։ Աբաս-Միրզան պաշարեց Շուշի բերդը եւ իր զօրքերի մնացած մասը ուղարկեց դէպի Գանձակի գաւառը։ Նրանք գրաւեցին Գանձակ բերդը եւ անցան մինչեւ Շամքօրի գետը։ Այդ ժամանակ ռուսաց զօրքերով վրահասաւ հայազգի իշխան գեներալ Մադաթօվը, եւ Շամքօր գետի մօտ կատարած փառաւոր յաղթութիւնից յետոյ, պարսիկներին յետ մղեց եւ հալածեց նրանց մինչեւ Երասխի միւս կողմը։ Շուշի բերդը գնդապետ Ռէուտի եւ հայերի ջանքերով դիմացաւ 48 օրուայ պաշարման։ Հայերի անձնազոհութիւնը այդ պաշարման միջոցում ամենայն գովասանքի արժանի պէտք է համարել։ Տես մեր "Խամսայի Մելիքութիւններ" գրքի 256—266 երեսները։ Ծան. Թարգ.։*

## ՎԱԽՃԱՆ Բ-ՐԴ ԵՒ ՎԵՐՋԻՆ ՄԱՍԻ։



# “ԳԱՂՏՆԻՔ ՂԱՐԱԲԱՂԻ„

ՀԵՂԻՆԱԿՈՒԹԻՒՆ


ԱՊՐԵՍ ԲԷԿՆԱԶԱՐԵԱՆՑ


ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ


ՄԱԿԱՐ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԲԱՐԽՈՒԴԱՐԵԱՆՑ




ՔՆՆԱԴԱՏԵՑ ՐԱՖՖԻ




ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1906.



## “ԳԱՂՏՆԻՔ ՂԱՐԱԲԱՂԻ„

*Հեղինակութիւն Աղեքսի Բէկնազարեանց, Թարգմանութիւն Մակար վարդապետի Բարխուդարեանց: Տպուած է Առաքել աղա Ծատուրեանցի ծախքով, Ս. Պետերբուրգում, 1886 ամի:*



### Ա.

Վերջապէս լոյս տեսաւ յօդուածիս վերնագիրը կրող գիրքը, որ դեռ չհրատարակուած, այնքան աղմուկ բարձրացրեց մեր լրագրութեան մէջ։ Այդ աղմուկը ծագեց առաւելապէս այն մթին, տարօրինակ երեւութից, որի մէջ պարածածկուած, այդ գիրքը պիտի ներկայանար հայ հասարակութեանը։ Այդ էր պատճառը, որ լրագիրներից ոմանք խօսեցին ի նպաստ եւ ոմանք աննպաստ։

Կանխահաս քննադատութիւնը թողեց հարցը անվճիռ։ Իսկ այժմ երկպառակութեան խնձորը դրած է

հասարակաց սեղանի վրայ, նրան կարելի է ամեն կողմից քննել։

“Գաղտնիք Ղարաբաղի„ն, լսաւ որ, թագցրած ունի իւր մէջ մի մեծ գաղտնիք, բայց այդ գաղտնիքը ոչ թէ Ղարաբաղի գաղտնիքն է, այլ այդ գրքի՝ իբր թէ թարգմանիչ Մակար վարդապետի՝ գաղտնիքն է։ — Իմ յօդուածի նպատակը կը լինի՝ քննել գլխաւորապէս վերջին գաղտնիքը։

Ահա ինչ է ասում Մակար վարդապետը իւր յառաջաբանի մէջ. (Ես քաղում եմ նրա համառօտ բովանդակութիւնը միայն)։

1881 թուի մայիսի 5ին Մակար վարդապետը միայնակ նստած է լինում իւր սենեակում, (ծառան բացակայ էր) յանկարծ դուռը բացվում է, ներս է մտնում մի “գրեթէ հարիւրամեայ„ ծերունի, մուրացկանի հագուստով։ Նա փաթաթած թաշկինակների միջից հանում է մի ձեռագիր գիրք, յանձնում է հայր սուրբին, ասելով, որ այդ գրքի մէջ կան “թէ շատ վտանգաւոր գաղտնիքներ եւ թէ Ղարաբաղի պատմութեան համար անգին գանձեր„։ Եւ հասարակութեանը աւելի հասկանալի դարձնելու համար, ծերունին խնդրում է, որ վարդապետը այդ աշխատութիւնը “թարգմանէ„, գրաբարից աշխարհաբարի վերածէ, եւ “երկու տարի„ սպասելուց յետոյ, տպագրել տայ։

Վարդապետի բոլոր ջանքը՝ այդ խորհրդաւոր ծերունու ով լինելու մասին՝ մնում է ապարդիւն, որովհետեւ նա, որպէս յանկարծակի մտնում է հայր սուրբի սենեակը, այնպէս էլ հեռանում է, միայն յայտնելով, թէ “իմ անունը եւ ազգանունը կ'իմանաք ձեռագրից„։ —

Այդ ծպտեալ ծերունին “Գաղտնիք„ի հեղինակ Ապրես Բէկնազարեանցն է եղել։ Թէ յետոյ ո՞ւր գնաց նա, ի՞նչ եղաւ, ո՞րտեղ կորաւ, — այդ մասին լռում է հայր սուրբը։ Բայց նրա “կ տ ա կ ը„ ճշտութեամբ կատարւում է, գիրքը թարգմանւում է, իսկ գրաբար բնագիրը, դժբախտաբար, — կորչում է....։

Այդ դժբախտութիւնը պատահում է 1884 թուին, օգոստոս 30ին։ Որ նշանակէ՝ գիրքը ստանալուց ուղիղ 3 տարի, 3 ամիս եւ 25 օր յետոյ։

Դժբախտութիւնը պատահում է հետեւեալ կերպով. վարդապետը, քաղքարոտ Շուշիի փողոցների դարափոններով, “ե ր ե կ ո յ ե ա ն մ ո ւ թ ի„ ժամանակ, իւր բնակարանի իրեղէնները տեղափոխում է մի այլ բնակարան։ Ճանապարհին, բեռնակրի անզգուշութիւնից, “ծ ր ա ր ի„ միջից գրքի թանկագին բնագիրը ընկնում, կորչում է, իսկ թարգմանութիւնը, բարեբախտաբար, մնում է...։

Եթէ գրքի բնագիրը անհետացած չլինէր, դարձեալ կարելի էր փոքր ի շատէ հաւատալ այդ բոլոր առեղծուածային հանելուկներին։ Բայց բնագրի կորուստը, ինքն ըստ ինքեան, առաջ է բերում ամէն մի ուշադիր ընթերցողի մտքում մի խոշոր կասկած. արդեօք այդ գիրքը չէ՞ գրել ինքը՝ Մակար վարդապետը, արդեօք այդ բոլորը չէ՞ հնարել նա՝ իւր աշխատութիւնը աւելի հետաքրքրական դարձնելու համար։

Փաստերը աւելի կասկածանքի կողմն են թեքվում։

Արդարեւ, եթէ “Գաղտնիք Ղարաբաղի„ն լինէր մի հին, հարազատ գրուածք, նա այդ երկրի պատմութեան համար կարող էր մի հարստութիւն համարուել։ Բայց նոր գրուածքը, այն եւս պատմագրութեան մէջ, հին արձանագրութեան անունով տալ հասարակութեանը, —

դա նոյնն է, որպէս մէկը կեղծ թղթադրամներ, կամ կեղծ վկայականներ է խարդախում։

Ի՞նչ իրաւունքով Մակար վարդապետը թարգմանեց իրան յանձնուած գիրքը։ Եթէ այդ աշխատութիւնը ունէր մի անձանի նշանակութիւն, նա կարող էր ունենալ միայն իւր հին ձեւի մէջ, իւր հին լեզուով։ Բաւական չէ, որ Մակար վարդապետը իւր յառաջաբանի մէջ ասում է, իբր թէ յանձնող ծերունին խնդրեց թարգմանել գիրքը...։

Ի՞նչ կ'ասէին մեզանից ամեն մէկին, որ կամենալով հարստահարել Խորենացու անունը, գրէինք մի գիրք, լի առասպելներով, եւ ասէինք. դա Խորենացու պատմութեան երկրորդ հատորն է։ — Ո՞ւր է բնագիրը, կը հարցնէին մեզանից։ Բնագիրը կորցրինք, միայն աշխարհաբար թարգմանութիւնը մնաց մեր ձեռքում... Ո՞վ կը հաւատար մեզ։

Մակար վարդապետի վարմունքը շատ չէ զանազանվում այդ օրինակից։

1881 թուին ես ճանապարհորդում էի Ղարաբաղում՝ տեղային մելիքների պատմութեան համար նիւթեր հաւաքելու։ Սեպտեմբեր ամսի 10ին գնացի Շուշի, իջեւանեցի առաջնորդանում, թեմի յաջորդ արժ. Կարապետ վարդապետ (այժմ եպիսկոպոս) Այվազեանի մօտ։ Իմ ճանապարհորդութեան նպատակը իմ բոլոր ծանօթներին յայտնի լինելով, իւրաքանչիւրը աշխատում էր օգնել ինձ։ Մէկը բերանացի աւանդութիւններ էր հաղորդում, միւսը բերում էր մի որ եւ է ձեռագիր, որ պատմական նշանակութիւն ունէր։ Այնպէս որ, Շուշիում ինձ յաջողուեցաւ հաւաքել բաւական պաշար։

Ես մնացի այդ քաղաքում ամբողջ երկու շաբաթ։ Այդ ժամանակ Մակար վարդապետը համարեա ամեն օր

իմ մօտ էր լինում։ Երբեմն Կարապետ հայր սուրբի եւ իմ հետ ճաշում էր, երբեմն մեզ մօտ թէյ էր խմում։ Մեր խօսակցութեան առարկան բատ մեծի մասին Ղարաբաղի մելիքները եւ նրանց գործերն էին։ Ինքը Մակար վարդապետը աշխատում էր ինձ նիւթեր մատակարարել, երբեմն ամբողջ օրով այս կողմ եւ այն կողմ էր գնում՝ նիւթեր որոնելու։

Այդ ժամանակ «Գաղտնիք Ղարաբաղի» բնագիրը պէտք է Մակար վարդապետի մօտ լինէր, որովհետեւ, որպէս ինքը յայտնում է իւր յառաջաբանի մէջ, այդ գիրքը նա ստացել էր խորհրդաւոր ծերունուց 1881 թուի մայիսի 5ին, իսկ ես գտնվում էի Շուշիում 1881 թուի սեպտեմբերի 10ին։ Ուրեմն իմ այնտեղ լինելուց 4 ամիս 5 օր առաջ ստացած պէտք է լինէր այդ գիրքը։

Ի՞նչու Մակար վարդապետը, որ ամեն ջանք գործ էր դնում ինձ նիւթեր մատակարարելու, բայց իւր մօտ գտնուած մի ամենահետաքրքիր հնութիւն, ինչպէս էր «Գաղտնիք Ղարաբաղի» բնագիրը, ցոյց չտուեց ո՛չ ինձ եւ ո՛չ Կարապետ հայր սուրբին։

Շատ հաւանական է, եթէ մի այսպիսի հնութիւն գոյութիւն ունենար, նա չէր թաքցնի ինձանից, — ՝չէր թաքցնի եւ այն պարոններից, որ այդ ժամանակ Շուշիումն էին, եւ որոնք հետաքրքրուած էին Ղարաբաղի պատմութիւնով։ Այն ժամանակ Շուշիումն էին պ. պ. Ղազարոս Աղայեանցը, Տիգրան Նազարեանցը («Աղբիւրի» խմբագիր) եւ մի ամբողջ վարժապետական խումբ, որի մէջ էր Մակար վարդապետը, եւ խիստ յաճախ հանդիպում էինք միմեանց։

Մակար վարդապետ կարող է ասել. ես այն ժամանակ թագցրի, որպէս զի ինքս օգուտ քաղէի։ — Դար-

ձեռալ կարող էր օգուտ քաղել, ով ուժով կը խլէր նրա ձեռքից։

Այդ, ինչն ըստ ինքեան, խիստ ծանր կասկած է ձգում գրքի գոյութեան վրայ, որ Մակար վարդապետը այդ աշխատութիւնը խորհրդաւոր ծերունիից ստանալուց, մինչեւ նրա բնագրի կորչելը, 3 տարի, 3 ամիս եւ 25 օր պահում է իւր մօտ, եւ իւր բարեկամներից ու ծանօթ-ներից ոչ մէկին ցոյց չէ տալիս, որ գոնէ վկայ լինէին, թէ մի այդպիսի ձեռագիր տեսել են նրա մօտ։

Տարակոյս չկայ, երբ մի մարդ մի այդպիսի երեւելի գիւտ է անում, եւ նրան յաջողվում է ձեռք-բերել մի երկհատոր հին աշխատութիւն, որ բովանդակում է իւր մէջ մի երկրի պատմական գաղտնիքները, — նա ոչ միայն կը թագցնէ այդ աշխատութիւնը (որ յետոյ կորցնէ), այլ կը հրատարակէ լրագիրներում ի գիտութիւն հասարակութեան։ Մակար վարդապետը այդ եւս չի արել, ամէն ինչ ծածկել է մթու-թեան մէջ։

Իսկ Մակար վարդապետը պարտաւոր էր հրապարակ հանել իւր երեւելի գիւտը։ Եթէ ճշմարիտ են նրա այն խօսքերը, որ նա ասում է իւր յառաջաբանի մէջ, թէ խորհրդաւոր ծերունին, յանձնելով նրան այդ գիրքը, “կտակեց„ տպագրել տալ, — ուրեմն, նրա կտակը ճշտութեամբ կատարելու համար, նա հրապարակաւ պէտք է դնէր հասարակութեանը եւ օժանդակութիւն խնդրէր, որովհետեւ ինքը աղքատ մարդ էր։ Եւ ես համոզուած եմ, որ Թիֆլիզի տպագրական ընկերութիւնը, կամ ամէն մի կարողութիւն ունեցող հայ՝ չէր խնայի մի այդպիսի նշանաւոր հնութեան տպագրութեան ծախքը իւր գրպանից վճարել, մանաւանդ որ, պատմական աշխատութիւնների

համար հանգուցեալ Իզմիրեանցի թողած գումարից պրեմիաներ կան նշանակուած։

Ուրեմն ինչով բացատրել Մակար վարդապետի 3 տարի, 3 ամիս եւ 25 օրուայ լռութիւնը։

Ես այս եւս կը վերաբերէի հայր սուրբի վերին աստիճանի ծածկամտութեանը, եթէ նա դրան-նրան նամակներով դիմած չլինէր, որ տպագրեն իւր աշխատութիւնը, — կրկնում եմ, իւր աշխատութիւնը եւ ոչ թէ երեւակայական Այրիս Բեկնազարեանցի։

Մի այդպիսի նամակ Մակար վարդապետը գրել է եւ ինձ, որով խնդրում էր, որ ես նրա աշխատութիւնը "Մշակ"ի մէջ տպել տամ։

Այդ նամակները կը պատռեն "Գաղտնիք"ի վարագոյրը եւ Մակար վարդապետի վարմունքը կը մերկացնեն հասարակութեան առջեւ[1]։

Ինչպէս երեւում է, Մակար վարդապետը սկզբում նպատակ չէ ունեցել այնպիսի վարմունք թոյլ տալ իրան, որի օրինակ մինչեւ այսօր ամենեւին չէ տեսնուել մեր գրականութեան մէջ։ Նրան կամ խելքից հանել են ուրիշները, կամ մոլորութեան մէջ է ձգել իւր շահասիրութիւնը։ Թէ այսպէս, թէ այնպէս, — յանցանքը կատարուած է։ Նա այժմ մի դատապարտեալ է գրական քննադատութեան ատեանի առջեւ։

---

[1] Որովհետեւ դրանով պէտք է մերկանայ գրականական մի մեծ խարդախութիւն, որ եթէ անլուծելի մնայ, կարող է ապագայում գայթակղութեան մի քար դառնալ մեր պատմագրութեան մէջ, — այդ ի նկատի ունենալով, ես վստահանում եմ հրապարակաւ պարտք դնել այն բոլոր պարոնների վրայ, որոնք Մակար վարդապետից նամակներ են ստացել, ամբողջապէս հրատարակեն, իսկ եթէ նամակները չեն պահել, գոնէ հրատարակեն նրանց բովանդակութիւնը։ Իսկ ես իւր ժամանակին կը հրատարակեմ իմ ձեռքում եղածները։

Ես իմ յօդուածի շարունակութեան մէջ ցոյց կը տամ, թէ նա ինչպէս է կազմել “Գաղտնիք Ղարաբաղի„ն։ Այդ գիրքը գրելուց յետոյ, հեղինակի փառասիրութիւնը դրդել է նրան տպագրուած տեսնել իւր աշխատութիւնը։ Դիմել է զանազան անձանց եւ ոչ մի տեղից օժանդակութիւն չի գտել։ Յետոյ մտածել է՝ իւր անունը մի կողմ դնելով, իւր աշխատութիւնը պսակել մի երեւակայական հեղինակի անունով, իբրեւ մի գրուածք, որ մի քանի հարիւր տարուայ հնութիւն ունի, եւ բովանդակում է իւր մէջ “ամենավտանգաւոր գաղտնիքներ„ եւ “ամենահարուստ պատմական գանձեր„ եւայլն։ — Այդ հրապոյրներով մտածել է նա, մի բարեսիրտ մարդ գտնել, որ տպագրութեան ծախքը հոգայ, բացի դրանից, գիրքը հետաքրքրական դարձնել, որ լաւ ծախուի։

Բարեսիրտ մարդը գտնուեցաւ — Բագուի Մեծ. Առաքել աղա Ծատուրեանցը, որ իրան յատուկ առատաձեռնութեամբ 800 րուբլի նուիրեց գրքի հրատարակութեան համար։

Կրկնում եմ, վերջին միտքը Մակար վարդապետի մէջ ծագել է շատ ուշ։ Այդ երեւում է այն հանգամանքից, որ երբ հայր սուրբը իւր մէջ վճռել է՝ իւր աշխատութիւնը մի աւելի հրապուրիչ հեղինակի անունով ներկայացնել, այդ միջոցին ստիպուած է եղել փոխել իւր առաջին յառաջաբանը եւ գրել այն նոր յառաջաբանը, որ այժմ դրած է “Գաղտնիք„ի սկզբում, եւ որի մէջ նկարագրուած է խորհրդաւոր ծերունու ամբողջ առասպելը։ Յառաջաբանի փոխելու մասին, իւր ծանօթութեան մէջ, այդպէս է արդարացնում իրան հայր սուրբը. “Մենք մեր նախկին յառաջաբանութիւնը չէինք փոխել,

եթէ կորուսուած չլինէր "Գաղտնիք Ղարաբաղ"ի բնագիրն։ Բնագրի կորստից ցաւօք սրտի ստիպեալ փոխեցինք մեր նախկին յառաջաբանութիւնը"։

Մի այլ հետաքրքրական փաստ։

Հայր սուրբը "Գաղտնիք Ղարաբաղ" բնագիրը, որպէս ինքն ասում է, կորցրել է 1884 թուի Օգոստոս 30ին։ Իսկ այս գիրքը ցենզորից թոյլտուութիւն է ստացել 1885 թուի դեկտեմբերի 31ին։ Ուրեմն մինչեւ ցենզորից թոյլտուութիւն ստանալը, արդէն 16 ամիս առաջ բնագիրը կորած էր։ Այլ եւս ինչ հարկ կար, որ նա ստիպուած լինէր՝ բնագիրը կորցնելու պատճառով յառաջաբանը փոխել։ Եթէ բնագրի կորուստը պատահած լինէր ցենզորից թոյլտուութիւն ստանալուց յետոյ, այդ թերեւս հասկանալի է, կարելի է ընդունել, որ յառաջաբանը փոխեց, որպէս զի բնագրի կորստեան մասին բացատրութիւններ տայ։

Յիշեալ երկու՝ միմեանց հակառակ յառաջաբանները շատ բան պիտի պարզեն, եւ այդ շատ հեշտ է ստուգել։ Տպագրական օրէնքով, թէ առաջին եւ թէ վերջին յառաջաբանի օրինակները պէտք է մնացած լինեն Ս. Պետերբուրգի Ի. Ն. Սկորոխոդովի տպարանում, որտեղ տպուել է "Գաղտնիք Ղարաբաղ"ն։ Ես կ'աշխատեմ նրանց պատճէնները ձեռք բերել[1]։

[1] Մակար վարդապետը մի օրինակ եւս իւր աշխատութեան ուղարկած է եղել Մոսկուա հանգուցեալ Յակոբ քահանայ Սուրեննեանցին՝ իւր հրատարակելիք "Նոր-Հանդէս"ի մէջ տպելու համար։ Այդ ամսագրի նախապատրաստական ժողովներում, արժանապատիւ հօր տանը, կարդացվում էր եւ Մակար վարդապետի աշխատութիւնը։ Մի քանի ուսանողներ, որ ներկայ էն եղել այդ ժողովներին, ինձ պատմեցին Մակար վարդապետի առաջին յառաջաբանի բովանդակութիւնը. պատմեցին եւ այն, որ այդ աշխատութիւնը առաջ այն ծաւալը չունէր, որ այժմ ունի, այլ բաղկացած էր մի քանի փոքրիկ տետրակներից միայն։ Այդպէս էլ պէտք է լինէր,

Եթէ “Գաղտնիք Ղարաբաղի„ն լինէր մի վէպ կամ այլ աշխատութիւն, չարժէր նրա վրայ ուշադրութիւն անգամ դարձնել։ Նա այն աստիճան անշնորհք կերպով կազմուած է, որ ինքնիրան կը մեռնէր։ Բայց այդ գիրքը մի պատմական յիշատակարան է։ Պատմագրից, այն եւս հին պատմագրից, այնքան գրական մեծ արժանաւորութիւններ չէ պահանջւում, որքան փաստերի ճշտութիւն։ Իսկ կեղծ փաստերը միշտ կարող են մոլորեցնել։ Այդ ի նկատի առնելով, եթէ այժմեանից չմերկացուի “Գաղտնիք Ղարաբաղի„ի խարդախութիւնը, կ'անցնեն տարիներ, գործը կը մոռացուի, եւ այդ գիրքը կը մնայ մեր գրականութեան մէջ որպէս մի անհարազատ վկայական, որ շատերին կը գայթագղեցնէ։

Բ.

Իմ նկատողութիւնները կարող են ոմանք լոկ ենթադրութիւններ համարել, եթէ չփիմենք նոյն իսկ “Գաղտնիք„ին քննելով նրան, արդեօք այդ գիրքը կրո՞ւմ է իւր վրայ հնութեան դրոշմ, ցո՞յց է տալիս մի նշոյլ անգամ հին գրուածքի, — թէ նա մի նոր աշխատութիւն է, միայն հին անուան տակ ծածկուած, որպէս դրամնենգը իւր նոր շինած դրամը անթիքայի անունով է վաճառում, որպէս զի աւելի շահ ստանայ։

Իմ հետազօտութեան մէջ ես պէտք է շօշափեմ գլխաւորապէս հետեւեալ կէտերը.

1։ “Գաղտնիք„ի հեղինակները — հայր եւ որդի Բէկնազարեանները — իրակա՞ն անձնաւորութիւններ են թէ մտացածի՞ն։

---

որովհետեւ, որպէս ես պիտի ցոյց տամ, Մակար վարդապետը յետոյ է ստուարացրել այդ գիրքը եւ նրան երկու հատոր դարձրել։ (Մեծ. դգ. Սուրէն Սուրէնեանցի ուշադրութիւնն եմ դարձնում այս եւ նախընթաց ծանօթութեան վրայ։)

2. “Գաղտնիք„ի հիւսուածքը, լեզուն, գաղափարները, նկրտումները արտայայտում են արդեօք իրանց ժամանակի յատկանիշները։

3. Ի՞նչ աղբիւրներից է կազմուել այդ գիրքը։ Կարելի՞ է վաւերական համարել այն անթիւ թղթակցութիւնները, որ զետեղուած են այդ գրքի մէջ։ Արդեօք “Գաղտնիք„ը տալիս է մեզ իւր խոստացած “ամենավստահ գաղտնիքները„ եւ այն պատմական “անգին գանձերը„, որ մինչեւ այսօր յայտնի չեն եղել մեր գրականութեան մէջ։

4. Պատմական սխալներ, որ չի պիտի անէր ժամանակակից գրողը։ “Գաղտնիք„ի գործող անձինքը։

5. Հրէշաւոր չափազանցութիւններ, որ զուրկ են պատմական ճշմարտութիւնից։

6. Ի՞նչ անստուգութիւններ կարող են առաջ գալ պատմութեան մէջ, եթէ ընդունուի այդ գիրքը իբրեւ մի հարազատ գրուածք։

7. Մի քանի խօսք այն անձանց նկատմամբ, որոնք ոչ միայն ներելի են համարում Մակար վարդապետի վարմունքը, այլ մինչեւ անգամ ջատագովում են։

Սկսենք “Գաղտնիք„ի հեղինակներից։

Դրանք երկու հոգի են. հայրը՝ Աբրահամ Բէկնազարեանցը եւ որդին՝ Ապրես Բէկնազարեանցը։

Թէ՛ հայրը եւ թէ որդին, որ ամեն ջնջին անցքերի մասին թուականներ են դնում, բայց իրանց ծննդեան թուականը չեն նշանակում, որպէս զի յայտնի լինէր, թէ ո՞ր դարուն էին ապրում այդ մի զոյգ մատենագիրները եւ ո՞րքան ապրեցին, որ ամեն ինչ գրում են իբրեւ ականատեսներ, իբրեւ ժամանակակիցներ, եւ մանաւանդ, համարեա բոլոր անցքերի մէջ՝ իբրեւ անմիջական գործիչներ։

Թէեւ այդ տարօրինակ հեղինակների ծննդեան թուականները մնում են որպէս գաղտնիք “Գաղտնիք„ի մէջ, բայց անզգուշաբար բաց են թողուած գրքի մէջ այնպիսի յիշատակութիւններ, որոնցով շատ հեշտ է գտնել՝ նրանց ծննդեան եթէ ոչ ճիշտ թուականները գոնէ աւելի հաւանականը։ “Գաղտնիք„ի հէնց առաջին գլխի սկզբում (եր. 17) որդի Բէկնազարեանցը իւր հօր մասին ասում է.

“Հայրս — Բէկնազարեանց Աբրահամ — Ներսէս կաթողիկոսին մօտ իւր ուսմունքը աւարտած, նորա մօտ երկար ժամանակ մնացած եւ Ղարաբաղի հոգեւոր եւ մարմնաւոր կեանքի վերաբերեալ պատմութիւններ ընդօրինակած էր։ Այս այն Ներսէսն է, որ նախ Երիցմանկանց վանքի կաթողիկոսն էր եւ յետոյ եղած էր Գանձասարի կաթողիկոսն։ Գանձասարն Աղուանից մայր աթոռն էր, իսկ Երիցմանկանց վանքը սորա հակաթոռն„։

Այդ իւր տեղումը ես ցոյց կը տամ, որ յիշեալ Ներսէսը երբէք Ղարաբաղի պատմութիւն չէ գրել, որ նրա աշակերտ Աբրահամ Բէկնազարեանցը ընդօրինակած լինէր իւր “Գաղտնիք„ը կազմելու համար, — այլ, ընդհակառակն, Ղարաբաղի պատմութիւնը գրել է եւ մեզ թողել է Գանձասարի Ջալալեան Եսայի կաթողիկոսը, որի հակառակորդն էր Ներսէսը։ — Այժմ մեզ համար հետաքրքիր է գիտենալ այսքանը միայն, թէ ո՞ր թուականներումն էր ապրում այդ Ներսէսը, որպէս զի նրա համեմատ՝ գտնենք նրա աշակերտ Աբրահամ Բէկնազարեանցի ծննդեան տարեթիւը։

Ներսէս Երիցմանկանց վանքում[1] հակաթոռ կաթողիկոս ձեռնադրուեցաւ, ընդդէմ Գանձասարի Ջալալեան

[1] Երիցմանկանց վանքը գտնվում է Թարթար գետի ձախ կողմում, մի անտառապատ ձորի մէջ, հինգ թէ վեց վերստաչափ հեռաւորութեան

Եսայի կաթողիկոսի եւ նրա կենդանութեան ժամանակ, Հայոց 1155 թուին, իսկ փրկչական 1705ին[1]։

Ով որ գիտէ այդ Ներսէսի պատմութիւնը, թէ որքան զբաղուած էր նա իւր անընդհատ կռիւներով, մի կողմից՝ Գանձասարի Ջալալեան Եսայի կաթողիկոսի հետ, որի ներհակ հակաթոռ կաթողիկոս էր դարձել, միւս կողմից՝ Էջմիածնի Աղէքսանդր կաթողիկոսի եւ նրա յաջորդների հետ, մինչեւ Սիմէոն կաթողիկոսը, որոնցից բանադրուեցաւ նա իբրեւ ըմբոստ եւ ապստամբ[2], — կրկնում եմ, ով որ գիտէ այդ Ներսէսի պատմութիւնը, որ բացի յիշեալ կռիւներից, նա զբաղուած էր եւ զանազան քաղաքական հարցերով, — ով որ գիտէ այդ բոլորը, կարող է համոզուած լինել, որ նա իւր կաթողիկոսութեան օրերում մի րոպէ անգամ ժամանակ չէր ունենայ պարապելու Աբրահամ Բէկնազարեանցի կրթութեամբ։

---

վրայ Ջրաբերդ ամրոցից։ Իսկ Գանձասարի վանքը, որ Աղուանից կաթողիկոսների աթոռատեղին է, գտնվում է Ղարաբաղի Խաչէն գաւառակում, Խաչէն գետի ձախ կողմում, մի լեռան վրայ։

1 Այդ Ներսէսը՝ նոյնպէս հակաթոռ՝ Սիմոն կաթողիկոսի ազգականն էր, որը հիմնեց Երիցմանկանց վանքը, եւ նրա տոհմից մի քանի հակաթոռ կաթողիկոսներ նստեցին յիշեալ վանքում, որոնք ոչ սակաւ խռովութիւններ յարուցին իրանց ժամանակում եւ Ղարաբաղի կործանման պատճառ դարձան։ Ներսէսի գործերի հետ ծանօթանալու համար խորհուրդ ենք տալիս կարդալ հետեւեալ աշխատութիւնները. "Խամսայի Մելիքութիւնները" եր. 27, 34, 39, 40, 87, 89, 91։ "Ջամբռ" եր. 81—86. Ներսէս կաթողիկոսի անունը գտնում ենք եւ Եկատերինա Ա. կայսրուհու 1726 թ. 22 փետրուարի հրովարտակի մէջ. ի թիւս Եսայի կաթողիկոսի, Եգան իշխանի (Տիգակի մելիք Եգանի) եւ Աւան իւզբաշու անունների, որոնք այդ ժամանակ քաղաքական յարաբերութիւններ ունէին ռուսաց արքունիքի հետ։

2 Աղուանից կաթողիկոսները, թէ Գանձասարում եւ թէ այլ տեղերում, որ յետոյ յայտնուեցան, ամենքը կախումն ունէին Էջմիածնից, այն աւանդական սովորութեան համեմատ, որ այդ երկրի առաջին կաթողիկոսը՝ Գրիգորիսը Լուսաւորչի թոռն էր։ Առանց Էջմիածնի, իբրեւ Մայր աթոռի, թոյլտուութեան ձեռնադրուողները համարվում էին ապստամբ։

Բացի դրանցից, իբրեւ կաթողիկոս, նրա բարձր աստիճանը չէր ների՝ մի որ եւ իցէ խնածախցի հասարակ շինականի՝ Աբրահամ Բէկնազարեանցի՝ վարժապետութեամբ պարապուել:

Եթէ ընդունենք, որ Աբրահամ Բէկնազարեանցը, ինչպէս վերեւում յիշուած է, այդ Ներսէսի մօտ աշակերտութիւն է արել, ուսումը աւարտել է, եւ նրա մօտ “երկար ժամանակ„ մնացել է, — այդ կարող էր լինել Ներսէսի թէ՛ կաթողիկոսութիւնից եւ թէ եպիսկոպոսութիւնից առաջ, այսինքն նրա աբեղայութեան ժամանակ:

Իսկ եթէ ընդունենք եւ այն, որ Աբրահամ Բէկնազարեանցը, Ներսէսի մօտ ուսումը աւարտելուց յետոյ, այնքան զարգացած էր, որ պատմութիւններ էր ընդօրինակում իր “Գաղտնիք„ը կազմելու համար, — այդ ժամանակ նա, անպատճառ, պէտք է գոնէ 30 տարեկան լինէր: Ուրեմն, նա պէտք է ծնուած լինէր 1675 թուին, այսինքն իր վարժապետի կաթողիկոս ձեռնադրուելուց 30 տարի առաջ: Այդ 30 տարին ես այդպէս եմ բաժանում. մի որ եւ է վանք մտնելու համար՝ վանական կանոններով՝ պատանու երեսի մազերը պէտք է դուրս եկած լինեն. եթէ Աբրահամ Բէկնազարեանցը 18 կամ 20 տարեկան էր, երբ մտաւ Երիցմանկանց վանքը, մի 10 կամ 12 տարի էր հարկաւոր, որ նա այնքան ուսում առնէր, զարգանար, որ պատմութիւն գրէր, մանաւանդ այն ժամանակ, որ մարդիկ իրանց ամբողջ կեանքը նուիրում էին ուսման եւ ոչինչ չէին սովորում:

Այժմ Աբրահամ Բէկնազարեանցի ծննդեան թուականը մեր ձեռքում ունենք: Նա ծնուել է 1675 թուին: Որոնենք, թէ որ թուին մեռաւ նա:

Հօր գրած պատմութիւնը շարունակող որդին — Ապրես Բէկնազարեանցը — որ թուականների սիրահար է, իւր հօր մահուան տարեթիւը չէ դնում “Գաղտնիք„ի մէջ, այլ դնում է միայն ամսաթիւը՝ հոկտեմբերի 10ին (եր. 390)։ Այդ եւս մի գաղտնիք է....։

Բայց նա մոռանում է, որ իւր հայրը 1828 ամի, սեպտեմբերի 20ին հիւանդութեան անկողնում, ստանում է մի նամակ Ղարաբաղի Բաղդասար միտրապօլիտից եւ պատուիրում է որդուն պատասխանը գրել (եր. 387)։ Եթէ նոյն տարուայ մէջ մեռած լինի նա, ուրեմն ապրել է ամբողջ 153 տարի (1675—1828)։

Ի՞նչու է տուել Մակար վարդապետը իւր երեւակայական պատմագրին այդքան երկար կեանք, — այդ շատ հետաքրքիր է գիտենալ։ Որովհետեւ եթէ Աբրահամ Բէկնազարեանցը 153 տարի չապրէր, չէր կարող ականատես լինել այն բոլոր անցքերին, որ գրել է “Գաղտնիք„ի մէջ։ Այդ 153 տարուայ շրջանակի մէջ ամփոփվում է Ղարաբաղի մելիքների ամբողջ պատմութիւնը, սկսեալ Պետրոս Մեծի օրերից, մինչեւ 1828 թուի վերջին ռուս-պարսկական պատերազմը, երբ Ղարաբաղի մելիքները դադարում են ռուսաց արշաւանքներին մասնակցել եւ երբ Աբրահամ Բէկնազարեանցը հարկաւոր չէ համարում աւելի ապրել — մեռնում է... եւ պատմութիւնը գոցվում է....։

Ոչ սակաւ հետաքրքիր է որդու՝ Ապրես Բէկնազարեանցի՝ կեանքի երկարութիւնը։ Մակար վարդապետը պարգեւել է նրան այնքան տարիներ, որ հասցրել է մինչեւ իւր ժամանակը, 1881 թուականը, որպէս զի նա միջոց ունենար “Գաղտնիք„ը իւր ձեռքով յանձնել հայր սուրբին։ Այդ թուականից յետոյ անհետացրել է խեղճին....։

Որդի Բէկնազարեանցի ծննդեան տարեթիւը գտնելու համար՝ դարձեալ պէտք է այլ փաստերի դիմել, որոշ յիշատակութիւն չկայ գրքի մէջ։

1795 թուին տեսնում ենք նրան, իւր ուսումը իրանց գիւղի քահանայի մօտ աւարտած, Շղէշէն եւ քերականութիւնը սովորած, մի աշխոյժ եւ անվախ պատանի, գտնվում է իւր հօր քաջերի թւում որ կռւում էին Աղա-Մամադ խանի զօրքերի հետ, երբ նա պաշարել էր Շուշի բերդը (եր. 16—37)։ Եթէ նա այդ ժամանակ 20 տարեկան լինէր, ուրեմն ծնուել է 1775 թուին։ Մինչեւ 1881 թիւը այդ մարդը դեռ կենդանի էր (գուցէ այժմ եւս կենդանի է)։ Այդ թուականում յայտնուեցաւ նա Մակար վարդապետի մօտ եւ իւր ձեռքով յանձնեց նրան "Գաղտնիք„ը։ Ուրեմն ապրել է նա 106 տարի։ Դարձեալ մի պատկառելի հասակ։ Այդ հասակում, 15.000 ոսկի իւր հագուստի ծալքերի մէջ կարած եւ "Գաղտնիք„ը նրանց թւում իւր ցնցոտիների մէջ թագցրած, մուրացկանի կերպարանքով, ցուպը ձեռին, ոտով, 39 տարի ճանապարհորդել է[1]

---

[1] Իւր ճանապարհորդական նկարագրութիւնների մէջ, մի տեղում (եր. 395) Ապրես Բէկնազարեանցը ասում է. «Պէտք չէ մոռանալ, որ շատ վանքերում, քաղաքներում եւ գիւղերում գիս Սաւրի գեղացի Խ ա չ ա- գ ո ղ կարծելով՝ ցուրտ կերպով էին ընդունում եւ հիւրընկալում„… Զարմանալի նմանութիւն կայ "Գաղտնիք„ի հերոսների եւ «Խաչագողի Յիշատակարան„ի տիպերի մէջ։ Իմ յօդուածի շարունակութեան մէջ ես առիթ կ'ունենամ այդ նմանութիւնը ցոյց տալու։ Դա, ինքն ըստ ինքեան, մի պարզ ապացոյց է "Գաղտնիք„ի շինծու եւ մոգացածին լինելուն։ Ոչ Աբրահամ Բէկնազարեանցը եւ ոչ դրա որդի Ապրես Բէկնազարեանցը չէին կարող կարդացած լինել "Խաչագողի Յիշատակարանը„, որ հետեւէին նրան։ Այդ Մակար վարդապետը միայն կարող էր կարդալ եւ, նրանից օգուտ քաղելով, պատմական անձնաւորութիւնների փոխարէն, զանազան խաբեբայ եւ խարդախ քաւոր Պետրոսներ ստեղծել։ 15.000 ոսկի իւր հետ ունենալուց յետոյ, ի՞նչ հարկ կար մուրացկանի կերպարանքի մէջ մտնել։ Այդ խաչագողներն են միայն անում։ 15.000 ոսկիով կարելի էր փառաւոր կերպով ճանապարհորդութիւններ անել։

ամբողջ տաճկական Հայաստանը, անցել է Պարսկաստանը, մինչեւ եկել է Ղարաբաղ եւ Մակար վարդապետին գտել է, խորհրդաւոր գիրքը նրան յանձնելու համար։ Զարմանալի է, որ ոչ մի թուրք կամ քուրդ նրան չի հանդիպել, եթէ «Գաղտնիք»ը չյափշտակէին ոսկիներին, կարծեմ՝ չէին խնայի (եր. 394—398)։

Այժմ «Գաղտնիք»ի երկու հեղինակների՝ հօր եւ որդու՝ կեանքի տարիները մեր ձեռքում ունինք։

Հայրը ապրել է 153 տարի։

Որդին 106 տարի։

Երկուսը միասին՝ 259 տարի։ Ուղիղ երկու եւ կէս դարից ինն տարի աւել։ Լաւ է հաշուել Մակար վարդապետը։ Եթէ յիշեալ թուանշանները երեւակայական չլինէին, կարելի էր ընդունել, որ հայր եւ որդի Բէկնազարեանները հայոց մելիքների բոլոր գործողութիւններին վկայ, ականատես եւ ժամանակակից են եղել, եւ ամեն ինչ տեսնելով են գրել, եւ այսպէսով կազմուել է այն հրաշալի գիրքը, որ բովանդակում է իւր մէջ հայոց պատմութեան համար «թանկագին գանձեր» եւ այլն։ Պէտք չէ մոռանալ եւ այն, որ այդ մի զոյգ պատմագիրները ոչ միայն ականատես են եղել անցքերին, այլ իրանք անմիջական եւ գլխաւոր դերն են կատարել բոլոր գործողութիւնների մէջ։ Մասնակցել են մելիքների պատերազմներին, մասնակցել են նրանց գաղտնի յարաբերութիւններին եւ դեսպանախօսութիւններին օտար պետութիւնների հետ, մի խօսքով, ոչինչ չէ կատարուել առանց նրանց մասնակցութեան եւ գիտութեան։

Թողնենք այդ հրէշաւոր երկու եւ կէս դարերը, որ մի պարզ ապացոյց են «Գաղտնիք»ի հեղինակների երեւակայութեան ծնունդ լինելուն, — եւ ընդունենք թէ,

իրաւ, եղել են մի զոյգ հայր եւ որդի, որոնք 259 տարի ապրել են, ամեն ինչ տեսել են, եւ յիշեալ գիրքը գրել են։ Այժմ դիմենք նոյն իսկ “Գաղտնիք„ին, արդեօք կարո՞ղ էր այդ գիրքը 1881 թուին հասած լինել Մակար վարդապետի ձեռքը։

“Գաղտնիք„ը կազմելու ժամանակ, ինչպէս երեւում է, Մակար վարդապետը իւր միտքը բաւական յոգնեցրել է, որքան կարելի է, ծածկել իւր վարմունքը, — բայց նրա անզգուշութիւնը նրանումն է եղել, որ, որտեղ հարկաւոր էր թուականներ եւ թուանշաններ դնել, նա չէ դրել, իսկ որտեղ հարկաւոր չէր, նա առատութեամբ դրել է, առանց մտածելու, որ այդ թուականները եւ թուանշանները կարող էին մատնել իրան։

Իւր յառաջաբանի մէջ Մակար վարդապետը ասում է, 1881 թուին մայիսի 5ին Այրես Բէկնազարեանցը մուրացկանի կերպարանքով յայտնուեցաւ նրա մօտ եւ „Գաղտնիք„ը յանձնեց նրան։ Տեսնենք, Այրես Բէկնազարեանցը կարո՞ղ էր յիշեալ թուին Մակար վարդապետին տեսած լինել։

Այրես Բէկնազարեանցը “Գաղտնիք„ի վերջաբանի մէջ (394—398) ասում է, որ գտնուելով պարսից ծառայութեան մէջ, երկար ժամանակ դիտաւորութիւն ունէր թողնել Պարսկաստանը, վերջապէս, 1838 թուին յաջողվում է նրան ուխտաւորի անունով դուրս գալ Թաւրիզից եւ ուղեւորուել դէպի Երուսաղէմ։ Այնտեղ մտնում է սուրբ Յակոբեանց վանքի հայ միաբանութեան կարգը եւ ընդունում է նրանց հագուստի եւ մօրուքի ձեւը(?)։ Այդ վանքում մնում է նա ամբողջ 9 տարի։ Յետոյ ս. պատրիարգի օրհնութիւնն առնելով, 1846 թուին թողնում է այդ վանքը եւ հեռանում է Երուսաղէմից։

Այնուհետեւ, որպէս զի թեթեւ լինի, իւր փողերը ոսկիների փոխարկելով, 15.000 ոսկի կարում է հագուստի ցնցոտիների մէջ, եւ մուրացկանի կերպարանքով, սկսում է զանազան երկրներում ճանապարհորդութիւններ անել։ Որտեղ ասէք, լինում է նա։ Այդ վերջին ճանապարհորդութիւնները տեւում են 39 տարի, մինչեւ գալիս է հասնում է Ղարաբաղ եւ իւր հայրենական Խնածախ գիւղում մնում է 10 օր միայն։

Այժմ հաշուենք։

1838 թուին նա թողել է Պարսկաստանը։

9 տարի մնացել է Երուսաղէմում։

39 տարի ճանապարհորդութիւններ է արել։

Եթէ այդ բոլորը ի մի գումարենք, կը ստանանք ներկայ 1886 թուականը, որի մէջ ապրում ենք։ Ուրեմն այս տարի Ապրես Բէկնազարեանցը պէտք է յանձնած լինէր Մակար վարդապետին իւր «Գաղտնիք»ը եւ ոչ թէ 1881 թուին, երբ նա Ղարաբաղում չէր կարող գտնուել։

Այդ հաշուով պարզվում է այն ամբողջ առասպելը, որ Մակար վարդապետը հնարել է, թէ 1881 թուին ստացաւ «Գաղտնիք»ը, թարգմանեց, յետոյ բնագիրը կորցրեց, եւ այլն, — դրանցից եւ ոչ մէկը չէր կարող պատահել, որովհետեւ ներկայ թուականից առաջ յիշեալ գիրքը նրա ձեռքը հասնել չէր կարող։

Այդ բոլորից այն եզրակացութեանն ենք հասնում, որ «Գաղտնիք»ի մի զոյգ հեղինակները — հայր եւ որդի Բէկնազարեանները — երեւակայական անձնաւորութիւններ են, թէ այդ գիրքը Մակար վարդապետի խարդախած աշխատութիւնն է, եւ թէ Մակար վարդապետը այդ գրքի վերջարանի մէջ, ի դէմս Ապրես Բէկնազարեանցի, նկարագրել է միայն իւր սեփական կեանքը Տաճկական

եթէ ինքը ներկայ չէ, միւս գործիչների հետ սերտ կապեր ունի եւ նրանցից ստանում է հարկաւոր տեղեկութիւնները։ Եւ այսպէսով, յիշատակարանի մէջ գործող անձը դառնում է, մի եւ նոյն ժամանակ, նրա գրողը, նրա հեղինակը։

Պատահում են շատ վէպեր, եւ իմ վէպերից մի քանիսը այդ ձեւով է գրուած, որ ամբողջ վէպը սկզբից մինչեւ վերջը պատմում է գործող անձինքներից մէկը։ Բայց այստեղ հեղինակը յայտնի է։ Նա միայն իր խօսքը իր ստեղծած տիպի բերանն է դնում, եւ իր վիպասանութեան վերաբերութեամբ՝ բոլոր պատասխանատուութիւնը իր վրայ է առնում։

Բայց Մակար վարդապետը հրաժարվում է իրան «Գաղտնիք»ի հեղինակը ճանաչել։ Մնում են Բէկնազարեանները, որոնք թէ անձամբ խառն են կատարուած անցքերի մէջ, եւ թէ իրանց յիշատակարանի մէջ գրում են նոյն անցքերը։ Եւ այդպէս, անցքերի ճշտութեան պատասխանատուութիւնը մնում է վերջինների վրայ։ Ուրեմն, եթէ յայտնուին փաստերի մէջ զեղծումներ եւ խոշոր զեղծումներ, — պէտք է ընդունել երկուսից մէկը. կամ Բէկնազարեանները ստախօսներ են եւ իրանց երեւակայութեան ցնորքները տալիս են մեզ իբրեւ զուտ պատմական փաստեր, կամ նրանք բանաստեղծական անձնաւորութիւններ են, այլ մի անյայտ հեղինակ գրել է այդ յիշատակարանը եւ Բէկնազարեանների անունով նոյն զեղծումներն է անում, — աղաւաղում է պատմութիւնը։

Վերջին դէպքում, «Գաղտնիք»ը կը կորցնէ իր հաւաստիութիւնը եւ կը դառնայ մի անհատի կեղծ աշխատութիւն։ Թող լինի այդ անհատը Մակար վարդապետը, — մի եւ նոյն է։

ների բազմութեամբ[1] սկսում է չուել դէպի Պարսկաստան: Նա Ղարաբաղից իւր հետ է տանում թէ՛ հայր եւ թէ որդի Բէկնազարեաններին (եր. 172): Հէնց բանակի մէջ, ճանապարհին գնալու ժամանակ, շահը վարժապետ է կարգում, որ պատանի Աբրեսին պարսկերէն սովորացնէ: Բաւական մեծ հոգացողութիւն պէտք է համարել շահի կողմից...

"Պարսիկ վարժապետս, Շուշու բանակատեղից սկսած՝ Շահի ստիպմամբ, աշխատում՝ էր ինձ ուսուցանել պարսկերէն խօսել, գրել եւ կարդալ...: Սկսայ յաճախ կարդալ Գիւլստան դասագիրքս եւ ձանձրացած ժամանակներս ընդօրինակել: Եւ ահա այսպիսի շարունակութեամբ ունակութիւնս օր քան զօր զօրացաւ... եւ յառաջադիմեցի իմ ձեռնարկութեան մէջ: Ո՛րքան ուրախանում՝ էր իմ բարերար Շահն, երբ իւր հետ խօսակցում՝ էի պարսկերէն եւ արտագրում՝ էի գեղեցիկ. վասն որոյ Շահն հրամայեց իւր դիւանապետին, որ հետզհետէ ինձ օրինակել տար արքունի հ ր ո վ ա ր տ ա կ ն ե ր, շ ր ջ ա բ ե ր ա կ ա ն ն ե ր եւ գ ա ղ տ ն ի ն ա մ ա կ ն ե ր, որպէս զի այդ մասնաճիւղը մշակելով ապագայում՝ ես լինէի իւր գաղտնի նամակագիրը" (եր. 221):

Այդ բոլորը խիստ հետաքրքիր է

Թողնենք այն, որ շահի "գ ա ղ տ ն ի ն ա մ ա կ ա գ ի ր ը" մանրամասնաբար չէ պատրաստւում եւ նրանից այնքան խորին գիտութիւն չէ պահանջւում, որքան բարոյական յատկութիւններ, այն է՝ հաւատարմութիւն եւ ծածկապահութիւն. իսկ այդ յատկութիւնները շահը

[1] "Խամսայի Մելիքութիւնները", եր. 143–146: „Исторія войны и ва русскихъ на Кавказѣ". Н. Дубровина т. III. 38—49.

պատանի Բէկնազարեանի մէջ նախագուշակել չէր կարող։ Թողնենք եւ այն, որ Աղա-Մամադ-շահը այնքան միամիտ մարդ չէր, որ իւր հրովարտակները, շրջաբերականները եւ գաղտնի նամակները տար պատանի Բէկնազարեանի ձեռքը, որ նա իբրեւ վարժութեան կամ գեղագրութեան օրինակներ գործ ածէր։ Որովհետեւ եթէ նա կարող էր հաւատալ մի անփորձ պատանու, բայց երբէք չէր հաւատայ նրա վարժապետ մօլլային։ Թողնենք եւ այն, թէ ինչ էր գտել Աղա-Մամադ-շահը մի խնածախցի հասարակ գիւղացու որդու մէջ, որ նրա վրայ առանձին ուշադրութիւն էր դարձնում, քանի որ նրա Թիֆլիսից տարած 12.000 գերիների թւում կային շատ հայ եւ վրացի ազնուականների որդիներ։ — Այդ բոլորը թողնում եմ ես, այլ կարեւոր եմ համարում ընթերցողի ուշադրութիւնը դարձնել միայն այն կէտի վրայ, արդեօք կարո՞ղ էր պատանի Բէկնազարեանը Շուշիից մինչեւ Թէհրան գնալու ժամանակ, ճանապարհին այնքան պարսկերէն սովորել, որ շահին հիացնէր իւր պարսկերէնով եւ սկսէր հրովարտակներ, շրջաբերականներ եւ գաղտնի նամակներ ընդօրինակել։

Այդ կէտը ես ուշադրութեան արժան եմ համարում, — ահա ինչ պատճառով.

Դա է կազմում «Գաղտնիք»ի հիմքը, այստեղից են բղխում այն անթիւ պաշտօնական գաղտնի նամակները, շրջաբերականները եւ այլն, որ այդ գրքի մէջ բաւական մեծ տեղ են բռնում։ Պատանի Բէկնազարեանը ընդօրինակում է նրանց իբրեւ աշակերտ եւ, մի եւ նոյն ժամանակ, գետեղում է «Գաղտնիք»ի մէջ իբրեւ — պատմագիր...

Հաշուենք, թէ [illegible] Բէկնազարեանը որքան ժամանակ [illegible] շահի [illegible] մինչեւ այդ կատարելու-

թեանը հասաւ։ (Ներքեւում կը տեսնենք, որ նա ապրում էր շահի պալատում)։

1795 թուի սեպտեմբեր ամսի վերջերում Աղա-Մամադ-շահը վերադարձաւ Թիֆլիսի արշաւանքից։ Իւր ծանր բանակի դանդաղ ընթացքով, մինչեւ յիշեալ թուականի վերջը նա հազիւ Թեհրան կը հասնէր։ Իւր աթոռանիստ քաղաքում երկար չմնաց նա. անմիջապէս սկսեց մի նոր արշաւանք դէպի Խորասան[1]։ (Այդ կը տեսնենք հետեւեալ գլխում)։ Իսկ Խորասանից 1797 թուի գարունքին ուղղակի արշաւեց կրկին դէպի Անդրկովկաս, առանց պատերազմի գրաւեց Շուշի բերդը եւ նոյն բերդում սպանուեցաւ իւր երկու սենեկապետներից[2]։

Այդ հաշուից երեւում է, որ Աղա-Մամադ-շահը ամենեւին ժամանակ չէր կարող ունենալ զբաղուելու պատանի Բէկնազարեանի կրթութիւնով։ Որովհետեւ Աղա-Մամադ-շահի Թիֆլիսի արշաւանքից Պարսկաստան վերադառնալը, Խորասանի արշաւանքը կատարելը եւ այնտեղից կրկին Շուշի գնալը եւ սպանուելը՝ տեւեց ընդ ամենը մէկ ու կէս տարի (այսինքն՝ 1795 թուի սեպտեմբեր ամսից, մինչեւ 1797 թուի ամառը), եւ այդ մէկ ու կէս տարուայ ընթացքում նա զբաղուած էր անընդհատ պատերազմներով, եւ Թեհրանում չմնաց նա, որ իւր հրովարտակները, շրջաբերականները եւ պաշտօնական գաղտնի նամակները տար պատանի Բէկնազարեանին ընդօրինակելու եւ այլն։

---

[1] "Պատմութիւն Պարսից„ Մեսրովպայ Դ. Թաղիադեանց, Հատոր Ա. տպ. ի Կալկաթա, 1846, եր. 214։

[2] "Խամսայի Մելիքութիւնները„ եր. 162—164 „Исторія войны и чества русскихъ на Кавказѣ". Н. Дубровина т. III. 209. "Պատմու. Պարսից„ Մեսրովպայ Դ. Թաղիադեանց, Հատոր Ա. եր. 216։

մէջ խռովութիւններ յարուցանել եւ ժողովուրդը պարսից դէմ ապստամբեցնել (ինչու): Շահն, աւելի զբաղուած լինելով քաղաքական եւ պատերազմական գործերով ժամանակ չունեցաւ կամ պատժել եւ կամ քննութեամբ արդարացնելով ազատել, վասն որոյ բանտարկեալ մնացած էր, որի մօտ յաճախում էի ուսանելու,,.

Այդ ասացուածների մէջ որքան տողեր կան, այնքան եւս սխալներ կան։ Ուրմի քաղաքում երբէք Հայ-կաթոլիկ վարդապետներ չեն եղել եւ այժմ նոյնպէս չկան։ Երբէք Հայ-կաթոլիկ վարդապետները քաղաքական ձգտումներով Պարսկաստան չեն մտել, որովհետեւ նրանք քաղաքական շահեր չունեն։ Ուրմիում եղել է, այժմ նոյնպէս կայ, ասորի-կաթոլիկ հասարակութիւն, բայց նրանց կրօնաւորները ոչ հայեր են, այլ եւրոպացիք, լազարիստների կարգից։ Երեւի, "Գաղտնիք„ի հեղինակը, ինքը Պարսկաստանում ապրելով, այնքան չէ ուսումնասիրել երկիրը, որ Ուրմին շփոթել է Սպահանի հետ, որտեղ, իրաւ, կայ Հայ-կաթոլիկ հասարակութիւն։ — Թողնենք այդ, մեզ համար հետաքրքիր կէտը պատանի Բէկնազարեանի ֆրանսերէն սովորելն էր բանտարկեալ վարդապետի մօտ, մի տարուայ ընթացքում, այն եւս պարսկական դժոխային բանտում, որի դռները ոչ մի օտար մարդու առջեւ չեն բացվում։

Այժմ տեսնենք, թէ ինչպէս էր ապրում պատանի Բէկնազարեանը շահի պալատում։

"…անի պալատում ամենից սիրականն ես էի։
կուքոյրերն, վրացի եւ պարսիկ աղախին-
…մ էին զիս անյագ սիրով, փայփայում եւ
…ր կարող չյիշել մի գլխաւոր պարագայ,
… թագուն՝ Հայ-կաթոլիկ վարժապետս

(քանտում՝) քարոզում էր ինձ ընդունել Փափի գերիշխանութիւնը, պարսիկ վարժապետս՝ Մահմետի լոյս կրօնը եւ Ս. Ալու իմամութիւնը, եւ վրացի աղախինները՝ յունադաւանութիւնը եւ վրացիութիւնը: Թէ եւ հօրիցս կանխաւ խրատուած էի բնաւ այո կամ ոչ չպատասխանելու՝ սակայն խոստովանում եմ մեղքս, ինչպէս տղայական տաք արեան յատուկ է՝ վարդապետին պատասխանեցի. — "Աւելի լաւ կը լինէր դու հայ մնանէիր քան թէ փափականութեան մէջ ապրէիր,,՝ պարսիկ վարժապետիս. — "Դու ինձ պարտաւոր ես պարսկերէն ուսուցանել եւ ոչ կրօնափոխութիւն,,. իսկ վրացի Թամար եւ Եղիզա աղախիններին. — "Դուք աւելի լաւ կ'անէիք ձեր շահամոլ եւ դիւրափոփոխ ազգականներին մահմետականութիւնից արգիլել, քան ինձ վրացիութիւն ընդունել տալու ճգնել,, (եր. 229—230)։

Այդ բոլոր միամիտ խոստովանութիւնները փոքր ի շատէ հաւանական կարող էին լինել, եթէ Աղա-Մամադ-շահը կանանոց ունենար։ Դժբախտաբար նա ներքինի էր եւ զուրկ պարսից շահերի կանանոց ունենալու բաւականութիւնից։ Դեռ տղայական հասակում Ադլ-շահի հրամանով ներքինիացրին նրան եւ պահվում էր նոյն շահի արքունիքում, որ գտնվում էր Թաւրէզ քաղաքում։ Իսկ երբ Զէնդ-Քարիմ-խանի զօրավարը, Շրխալի խանը, սպանել տուեց նրա հօրը՝ Մամադ-Յուսէֆն-խանին, եւ նրա որդիներից շատերին կոտորել տուեց Աստարապատում, այդ կոտորածից ազատուեցաւ Աղա-Մամադ խանը, որովհետեւ գտնվում էր Ադլ-շահի մօտ[1]։

[1] "Պատմութիւն Պարսից [illegible] հատ. եր. 216։ "Պատմութիւն [illegible] Յովհաննէսեանցի, տպուած ի Նոր-Ջուղա, 18[illegible]

Աղլ-շահի թագաւորութիւնը տեւեց 6 ամիս միայն։ Այնուհետեւ զօրացաւ Զենդ-Քարիմ-խանը։ Դա Աղա-Մամադ-խանին բերել տուեց Շիրազ եւ պահում էր իւր կանանոցում, իբրեւ պատանդ։ Այդ կանանոցից փախաւ նա եւ Ղաջարեան թագաւորութեան սկիզբը դրեց[1]։

Աղա-Մամադ-շահը ինչպէս կանանոց չունէր, նոյնպէս տանը մնացած երկու քոյրեր չունէր, որ սիրէին Այրես-Բէկնազարեանին։ Նա միայն մի հօրաքոյր ունէր, որի վրայ ամուսնացաւ Զենդ-Քարիմ-խանը, նրա հօրը սպանել տալուց յետոյ[2]։

Այստեղ ծիծաղելի է այն կէտը, որ Այրես Բէկնազարեանը, ապրելով Աղա-Մամադ-շահի պալատում եւ ծանօթ լինելով նրա բոլոր գաղտնիքների հետ, այնուամենայնիւ, չգիտէ ամենահասարակ անցքերը նրա տոհմային պատմութեան։ — Նա չգիտէ, որ Աղա-Մամադ-շահի հայրը, Մամադ-Հուսէին-խանը, մօտ 40 տարի առաջ սպանուած էր (1759 թ.)[3], իսկ նրա մայրը նոյնպէս վաղուց վախճանուած էր։ Ուրեմն այդ երկու քոյրերը ո՛վ պիտի ծնէր Աղա-Մամադ-շահի համար, որ սիրէին Այրես Բէկնազարեանին...

Եթէ ընդունենք անգամ, որ պարսից այդ ներքինի թագաւորը կանանոց ունէր, բայց դարձեալ խիստ տարապայման կը լինէր ընդունել, որ Այրես Բէկնազարեանը ապրում էր նրա պալատում եւ նրա կանանոցի հետ յա-

---

1 “Պատմութիւն Պարսից„ Մ. Գ. Թաղիադեանցի Ա. հատ. եր. 206։ “Պատմութիւն Նոր-Ջուղայու„ Ա. հատ. եր. 279, 280։ “Խամսայի Մելիքութիւնները„ եր. 138։

2 “Նամէյի խոսրովան„ (Գիրք թագաւորաց) Աշխատութիւն Ջալալ-Միրզայի որդւոյ Ֆաթալի-շահի, Գ. հատ. եր. 422։ Տպուած է Թեհրանում 1871 ամի։

3 Չամչեանի Պատմութիւն Հայոց Գ. հատ. եր. 859։

բարերութիւններ ունէր։ Ապրես Բէկնազարեանը այդ ժամանակը անպատճառ քսան տարեկան կը լինէր, իսկ այդ հասակում նրան կանանոցը ներս չէին թողնի, մանաւանդ, որ նա քրիստոնեայ եւ նրա ներկայութիւնը, ըստ պարսից կրօնի, կարող էր ամեն ինչ պղծել մահմեդական ընտանիքում, եւ աւելի, մոլեռանդ Աղա-Մամադ-շահի ընտանիքում։

Զարմանալին այն է, Աղա-Մամադ-շահը, որ Թիֆլիսից տարած 12.000 գերիների մեծ մասը զանազան հրապոյրների կամ մորակի ուժով մահմեդական դարձրեց, բայց Ապրես Բէկնազարեանի կրօնին չդիպաւ։ Եւ նրան ոչ միայն որպէս քրիստոնեայ սնուցանում էր իւր պալատում, այլ մինչեւ անգամ նպաստում էր նրա մէջ հայրենական կրօնի պահպանուելուն։

‘‘Ինչպէս իմ բարերար Շահն կարգադրած էր՝ — գրում է Ապրես Բէկնազարեանը — ես ամէն շաբաթ երեկոյեան եւ կիւրակէ առաւօտեան եւ կէսօրին մեր եկեղեցին էի գնում, աղօթում եւ ուզած ժամանակս հաղորդվում եւ վերադառնում„ (եր. 229)։

Նա մինչեւ անգամ շահի պալատում շարունակում էր հայերէնով պարապել։

‘‘Բարձի թողի արած չէի եւ հայերէնս, այլ ինչպէս կանխաւ պատուիրած էր ինձ հայրս՝ գիշերներն առանձնացած ժամանակներս կարգաւ կարդում էի Ս. Աւետարանս իբրեւ կրօնագիրք, Եղիշէս՝ իբրեւ պատմագրութիւն ուսուցանող գիրք եւ Նարեկս՝ իբրեւ աղօթագիրք„ (եր. 222)։

Այդ բոլորը գուցէ լաւ կը լինէր մի վէպի մէջ, բայց ոչ թէ պատմութեան մէջ։ Երեւում է, որ միամիտ Ապրես Բէկնազարեանը ոչ Աղա-Մամադ-շահին է տեսել

եւ ոչ էլ նրա պալատն է տեսել, որ գիտենար, թէ ինչեր կատարուեցան այդ պալատում։ Եթէ նա այնտեղ եղած լինէր, անպատճառ կը տեսնէր ուրիշ շատ հայ պատանիներ, որոնց Եղիշէն եւ Նարեկը ամեն գիշեր կարդում էր։ Նա կը տեսնէր Մանուչար — խանին[1], Խօսրով-խանին[2], Գիօրգին-խանին[3] եւ ուրիշ շատերին, որոնց ոչ միայն մահմեդականացրել էին, այլ եւ — ն ե ր ք ի ն ի ա ց ր ե լ էին...։ Առանց ներքինի դարձնելու եւ առանց մահմեդական դարձնելու, պարսից շահերը ոչ մի օտար մարդու թոյլ չեն տալիս բնակուելու իրանց պալատում...։

Ով որ փոքր ի շատէ ուսումնասիրել է Աղա-Մամադ-շահին, հարկաւ, ծանօթ կը լինի նրա վերին աստիճանի կրօնական մոլեռանդութեան հետ։ Նա մինչեւ անգամ բուն Պարսկաստանի, որի թագաւորն էր ինքը, մի նահանգից հայ գերիներ էր տանում դէպի միւսը՝ մահմեդականացնելու նպատակով[4]։ Իսկ նրա Թիֆլիսից տարած

---

1 Մանուչար-խանը Թիֆլիսի Էնիկօլօփեանների տոհմից էր։

2 Խօսրով-խանը Թիֆլիսի Տէր Սամուէլի որդին էր, Ղալթմազեան տոհմից։

3 Գիօրգին-խանը Մանուչար-խանի ազգականն էր, նոյնպէս Թիֆլիսեցի։

Այդ երեք անձանց մասին, որ բարձր պաշտօնների եւ աստիճանների հասան Պարսկաստանում, կը խօսուի հետեւեալ գլխում։

4 1785 թուի յուլիս ամսի 23ին Աղա-Մամադ-շահը գերի վարեց Սպահանի նահանգի Փերիայ կոչուած գաւառի հայ բնակիչներից շատերին, որոնք Շահ-Աբաս մեծի Պարսկաստան տարած գաղթականներից էին։ («Պատմութիւն Նոր-Ջուղայու» Ա. հատ. եր. 342—343.)

Հետեւեալ տարին (1786 թ.) Աղա-Մամադ-շահը մի նոր արշաւանք կատարեց դէպի Սպահանի կողմերը։ Այս անգամ Փերիայ գաւառի հայ բնակիչները երկիւղից ամբացան լեռներում. իսկ Շահը հրամայեց իւր զօրքերին աւարի առնել նրանց անտէր մնացած գիւղերը։ («Պատմ. Նոր Ջուղայու» Ա. հատ. եր. 347.)

1787 թուին դարձեալ արշաւեց Աղա-Մամադ-շահը դէպի Սպահանի կողմերը եւ այս անգամ գերի վարեց հայոց Բուրվարի կոչուած գաւառի բնակիչներից շատերին, որոնք նոյնպէս Շահ-Աբաս մեծի տարած հայ գաղ-

ահագին գերիվարութեան հետքերն անգամ չեն մնացել այժմ Պարսկաստանում։

Բայց ինչ է ասում այդ գերիների մասին Ալպիս Բէկնազարեանը։

“Պարսկաստան փոխադրած հայ եւ վրացի գերիներն բնակութիւն հաստատած էին Թաւրիզում, սորա շրջականերում եւ փոքր մասամբ Թեհրանում։ Վրացիք զգալի կերպիւ պարսկանում էին մահմեդական կրօնը ընդունելով, իսկ Հայք ընդհակառակն պահպանում էին իւրեանց կրօնը եւ լեզուն, եկեղեցիներ շինելով եւ երեխայքը քահանայից ձեռօք ուսուցանելով„ (եր. 229)։

Այդ խօսքերից խունկի հոտ է բուրում... երեւում է, որ գրողը մի հոգեւորական է... չէ ցանկացել, որ հայերը կորչէին Պարսկաստանում։

Եթէ Ալպիս Բէկնազարեանցը Պարսկաստանը տեսած լինէր, եւ Աղա-Մամադ-շահի գերիների հետ այնտեղ գնացած լինէր, հէնց այդ փոքրիկ հատուածի մէջ այնքան սխալներ չէր անի, որը ես այժմ պիտի ցոյց տամ։

Ինչպէս վերեւում յիշեցի, Աղա-Մամադ-շահի տարած հայ եւ թէ վրացի գերիների հետքերն չեն մնացել Պարսկաստանում։ Մահմեդականութիւնը բոլորին կլանեց։ (Ի հարկէ, իմ խօսքը մի քանի զերծ մնացած անհատների մասին չէ։) Սխալ է այն, որ Աղա-Մամադ-շահը բնակեցրեց նրանց Թաւրիզում, նրա շրջակայ գիւղերում եւ մասամբ Թէհրանում։ 12.000 գերին փոքր բան չէ, եթէ այդ քաղաքներում բնակեցրած լինէր, չէին կորչի, որովհետեւ հնուց հայ ազգաբնակութիւն կար։

Թականներից էին։ Այդ գերիներն Աղա-Մամադ-շահը բնակեցրեց Թեհրանի շրջակայ գաւառներում [illegible] մասամբ [illegible] եր. 348—349։)

Թաւրիզի հայ ազգաբնակութիւնը բաղկացած է գլխաւորապէս երկու տարրերից՝ բնիկներից եւ Ղարադաղի գաղթականներից, որոնք մինչեւ այսօր պահպանել են իրանց բարբառը եւ, թէ սովորութիւններով, թէ պարապմունքներով, բոլորովին որոշվում են միւսներից։ Եթէ այդ քաղաքում բնակեցրած լինէին Թիֆլիսի գերիներին, այսօր կը տեսնէինք նրանց, մանաւանդ, որ խումբերով տարուած գաղթականները միշտ առանձին թաղեր են կազմում, եւ այդ թաղերը իրանց անունով են կոչում։ Ինչպէս Շահ Աբասի Սպահան տարած գերիները բաժանուած էին զանազան թաղերի, եւ երբէք Ջուղայեցին չխառնուեցաւ Երեւանցու հետ, կամ Երեւանցին Դաշտեցու (Ներքին ագուլեցու) հետ։

Իսկ Թաւրիզի շրջակայքում, որ ցոյց է տալիս Բէկնազարեանը, ոչ միայն Թիֆլիսեցոց գիւղեր չկան, այլ մինչեւ անգամ մահմեդականների — Թուրքաց կամ պարսից — գիւղեր չկան։ Թաւրիզի շուրջը անապատ է, իսկ գիւղերը բաւական հեռու են։ Հայոց երեք գիւղեր կան միայն, մի օրուայ ճանապարհի հեռաւորութեան վրայ, որոնց բնակիչները ոչ թէ Թիֆլիսեցիներ են, այլ բնիկներ կամ ղարադաղցիք։ Թեհրանում նոյնպէս Թիֆլիսեցի գաղթականներ չեն եղել, եւ այժմ չկան։

Ուրեմն ինչ եղան Աղա-Մահմադ-շահի տարած գերիները։

Աղա-Մահմադ-շահը նրանց մի մասը բնակեցրեց Մազանդարանում, որ իր հայրենական երկիրն էր, մի մասը բնակեցրեց Կասպից ծովի հարաւային գաւառներում, մնացածներին ցրւեց տուեց Պարսկաստանի զանազան խորքերում, հեռու քրիստոնեայ ազգաբնակութիւններից, որ- լինէր նրանց մահմեդականացնելը։

Այդ գլխում յիշուած բոլոր օրինակներից, որ ես քաղել եմ “Գաղտնիք„ից, ինքն ըստ ինքեան ծագում է մի հարց. միթէ Ապրես Բէկնազարեանը, որ այնքան մերձաւոր էր Աղա-Մամադ շահին, որ նրա պալատումն էր ապրում, որ անձամբ ականատես եւ ներկայ էր իւր ժամանակի անցքերին, միթէ նա այսքան սխալներ կ'անէր, եթէ իրօք մի այդպիսի անձնաւորութիւն գոյութիւն ունենար։

Այդ սխալները Մակար վարդապետի սխալներն են։ Եթէ նա փոքր ի շատէ ծանօթ լինէր պարսից կարգերի եւ սովորութիւնների հետ, եթէ նա լաւ ուսումնասիրած լինէր այդ ժամանակներում կատարուած անցքերը, ի հարկէ, իւր ստեղծած պատմագրին մոլորութիւնների մէջ չէր ձգի։

Հետեւեալ գլխում ես ցոյց կը տամ աւելի խոշոր սխալներ հայր Բէկնազարեանի գործունէութեան մասին Պարսկաստանում, իսկ այժմ չեմ կարող առանց նկատողութեան թողնել մի մեծ հակասութիւն, որ իսպառ ոչնչացնում է “Գաղտնիք„ի մի զոյգ հեղինակների գոյութիւնը եւ ցոյց է տալիս, որ նրանց գրածները երեւակայական առակաբանութիւն է, եւ աւելի ոչինչ։

Վերեւում տեսանք, թէ Բէկնազարեանները որտեղ բնակեցրին Աղա-Մամադ-շահի Պարսկաստան տարած հայ եւ վրացի գերիներին, — Թաւրիզ քաղաքում, նրա շրջակայ գիւղերում եւ Թէհրանում։

Բայց երեւում է, որ “Գաղտնիք„ի մի զոյգ հեղինակները սաստիկ մոռացկոտ են, գրքի մի տեղում գրածը միւս երեսում մոռանում են եւ նրա հակառակն են գրում։ Նրանք “Գաղտնիք„ի 169 երեսում Աղա-Մամադ-շահի վերառած հայ եւ վրացի գերիներին, հէնց առա-

ջին Իջեւանից, Սօղանլուխից, Մելիք-Մեջլումի[1] միջնորդութեամբ, վերադարձնում են կրկին իրանց տեղը — Թիֆլիս։ Իսկ յետոյ, 229 երեսում, բնակեցնում են մի եւ նոյն գերիներին Պարսկաստանի Թաւրիզ քաղաքում, նրա շրջակայ գիւղերում, Թէհրանում եւ այլն։ Այլ եւս ինչ գերիներ կը մնային այդ տեղերում բնակեցնելու համար, քանի որ բոլորին վերադարձրել էր շահը։

Ահա «Գաղտնիք»ի խօսքերը.

“Սօղանլու կոչուած տեղից, Մելիք-Մեժլումի միջնորդութեամբ՝ գերիներից Տփղիս վերադարձան տասն եւ երկու հազար վրացի եւ հայ գերուածներ՝ հանդերձ բոլոր եկեղեցական անօթներով եւ զարդերով„ (եր. 169)։

Գերիների թիւը ընդ ամենը՝ 12.000 էր։ Այդ թիւը առնուած է «Խամսայի Մելիքութիւններից», որի մէջ նոյնպէս 12.000 է նշանակուած (եր. 145)։ Իսկ Դուբրովինը նրանց թիւը աւելի պակաս է դնում — 10.000 (Ист. войны и влодычества Русскихъ на Кавказѣ Т. III. стр. 42)։

Այս տեսակ հակասութիւններ անում են այն հեղինակները, որոնցից մէկը — հայր Բէկնազարեանը — Աղա-Մամադ-շահի զօրապետն է եւ անձամբ մասնակցել է նոյն արշաւանքին, իսկ միւսը — որդի Բէկնազարեանը — ապրել է Շահի պալատում եւ գրել է ժամանակի պատմութիւնը...։

---

[1] Մելիք-Մէջլումը Ղարաբաղի Ջրաբերդ գաւառակի մելիքն էր, որ վիրաւորուած լինելով վրաց Հերակլ թագաւորից, առաջնորդեց Աղա-Մահին Թիֆլիսի արշաւանքի ժամանակ։

**Դ.**

*Այժմ տեսնենք հայր Բէկնազարեանի — Աբրահամի — գործունէութիւնը Պարսկաստանում: Քննելով նրան, մենք քննած կը լինենք "Գաղտնիք„ը:*

*Պէտք է չմոռանալ, որ Աղա-Մամադ-շահը, Թիֆլիսը աւերակ դարձնելուց յետոյ, երբ վերադառնում էր Պարսկաստան, հայր եւ որդի Բէկնազարեաններին տարաւ իւր հետ:*

*"Շահն յայտնեց մելիքին (Մելիք-Մէջլումին) որ ինքն ստիպուած էր փութալ ի Պարսկաստան եւ իւր հետ տանել եւ հայրս եւ զիս„,* — *այսինքն հայր եւ որդի Բէկնազարեաններին* (եր. 171):

*"Երբ Թաւրիզ հասանք*[1], — *շարունակում է որդի Բէկնազարեանցը* — *հայրս Շահից զօրավար կարգուեցաւ եւ 10.000 սարվազ առնելով գնաց Հերաթի եւ Ղանդահարի ապստամբութիւնները զսպելու ... Իսկ Շահն յաղթական փառքով մտաւ Թէհրան, ուր Պարսից աթոռանիստ քաղաքն էր*[2]„, (եր. 221):

*"Հայրս վերադարձաւ եւ պատմեց հետեւեալը.*

*"Սիրելի Աւրես, խապատ նուաճեցինք Հերաթի եւ Ղանդահարի ապստամբութիւնները: Տեղական ապստամբ խաններն սպանուեցան պատերազմում եւ յաջոր-*

---

[1] *"Գաղտնիք„ը չի է անմիւ աշխարհագրական սխալներով, 172 եւ 173 երեսներում ասուած է, որ թէ իրանք, Բէկնազարեանները, եւ թէ շահը անցան Խորասանը [illegible], իսկ այստեղից անցան [illegible] նէին, Թաւրիզը չէին տեսնի:*

[2] *Պարսից աթոռանիստ [illegible] էր, թէ Թեհրանն էր աթոռանիստ քաղաքը, — [illegible] չգիտէ, որ Պարսից աթոռանիստ քաղաքը Սպահանն է [illegible] Մամադ-շահը եւ գլխաւորապէս նրա [illegible]*

ղեցին Տահի հրամանաւ նոցա որդիքն: Տահն բաւական մնաց իմ այս ծառայութեամբ,, եւ այլն (եր. 222)։

Նա կարծում է, որ Հերաթը եւ Ղանդահարը առանձին երկրներ են, չգիտէ, որ երկուսն էլ Աւղանիստանի քաղաքներ են։ Այդ թողնենք։

Հետաքրքրականն այն է, թէ որքան շուտ են կատարվում “Գաղտնիք„ի մէջ գործերը։ Հայրը գնաց, այն եւս 10.000 սարվարով (հեծեալ զինուոր) հզօր Աւղանիստանի ապստամբութիւնները նուաճեց, տիրող խաներին սպանեց, նրանց որդիներին յաջորդ կարգեց, Տահի շնորհակալութիւնը ստացաւ եւ եկաւ սիրելի Այրեսին պատմեց, — եւ այդ բոլորը կատարվում է մի քանի րոպէում։

“Գաղտնիք„ի համար, որպէս շատ օրինակներ կը տեսնենք, աշխարհագրական տարածութիւններ եւ ժամանակների տարբերութիւններ չկան։ Մարդիկ օդի մէջ են շրջում. մի վայրկեան կը տեսնէք նրանց՝ Թաւրիզում, իսկ մի վայրկեանից յետոյ՝ Հնդկաստանում։ Մինչեւ Բէկնազարեանցը կը գնար Աւղանիստանի ապստամբութիւնները կը նուաճէր եւ կը վերադառնար, շահին արդէն սպանուած կը գտնէր, եւ այլ եւս նրա շնորհակալութիւնը չէր կարող ստանալ, որովհետեւ, յիշեալ արշաւանքից յետոյ, շահը ապրեց մի եւ կէս տարի միայն։ Այդ տեսանք նախորդ գլխում։

Բայց հարցը դրանում չէ։ Մեզ համար հետաքրքրականն այն է. արդեօք տեղի ունեցե՞լ է մի այդպիսի արշաւանք։

Այդ հարցը պարզելու համար, ես հարկաւոր եմ համարում բերել “Խամսայի Մելիքութիւններից„ մի քանի քաղուածքներ մի եւ նոյն արշաւանքի մասին եւ ...տաբար դնել “Գաղտնիք„ի պատմածների հետ։

"Որովհետեւ Աղա-Մամադ-խանը իր յաղթութիւնով (Թիֆլ. վերաբերութեամբ) առաւել պարտական էր Մելիք-Մէջլումին, Ճանապարհին, հէնց առաջին իջեւանում (Սօղանլու ղխում) հրամայեց իր զօրապետներին, որ աւարից նրա մարդիկների համար բաժին հանեն, ասելով. "Քրիստոնեային պատկանածը՝ քրիստոնեային տուեցէք": Մելիք-Մէջլումի ձիաւորները իրանց եափունջիները տարածեցին գետնի վրայ, եւ պարսից զօրքերը որքան խաչեր, եկեղեցական անօթներ եւ զգեստներ կողոպտել էին Թիֆլիսի եկեղեցիներից, բոլորը թափեցին նրանց եափունջիների վրայ։ Մելիք-Մէջլումը այդ բոլորը յետ ու դարձեց Թիֆ-

"Սօղանլու կոչուած տեղից, Մելիք-Մէժլումի միջնորդութեամբ՝ գերիներից Տփղիս վերադարձան տասն եւ երկու հազար վրացի եւ հայ գերուածներ[1] հանդերձ բոլոր եկեղեցական անօթներով եւ զարդերով" ("Գաղտնիք" եր. 169)։

[1] Պարզ երեւում է, որ [illegible] Մելի-քութիւններից [illegible] Մելիք-Մէջլումի միջնորդութեամբ [illegible] իւր վերառած 10.000 հոգի եւ վրացի [illegible] "Գաղտնիք"ի [illegible] եր. 229 [illegible] բիղ քաղաքու [illegible] տուի Նախորդ [illegible]

լիս» (Խամսայի Մելիք. եր. 145)։

«Շահը շնորհեց Մելիք-Մեջլումին այդ երեք արտօնութիւնները. 1. երբ եւ կամենայ, կարող է անար-

«Շահն նուիրեց Մելիք-Մէժլումին մի առիւծա-դրօշմ՝ շքանշան[1], երկու ջորաբեռն ջխտանոց[2] ար-

---

[1] Ես առիթ կ'ունենամ ուրիշ տեղերում եւս ցոյց տալու, որ «Գաղտնիք»ի պատմական մասը ամբողջապէս առնուած է «Խամսայի Մելիքութիւններից»։ Եւ ինչպէս այդ քաղուածքի մէջ երեւում է, ինչ փոփոխութիւններ որ արել է «Գաղտնիք»ի հեղինակը, դրանք կամ խոշոր սխալներ են կամ փաստերի աղաւաղումներ։ Այդ՝ եւ յետագայ ծանօթութեան օրինակները բաւական կը լինեն իմ կարծիքը ապացուցանելու համար։ Աղա-Մահմադ-խանի օրերում ա ռ ի ւ ծ ա դ ր օ շ մ շ ք ա ն շ ա ն ը դեռ գործածական չէր, եւ նա մինչեւ անգամ իրաւունք չունէր տալու, որովհետեւ, այդ միջոցին՝ նա դեռ հասարակ խան էր, ճանաչուած չէր՝ իբրեւ թագաւոր։ Առիւծադրօշմ շքանշանը գործածական դարձաւ նրա յաջորդների — Ֆաթալի-շահի, Մահմադ-շահի եւ մանաւանդ պարսից ներկայ շահի օրերում։

[2] «Ջխտանոցը» «Գաղտնիք»ի ծանօթութեան մէջ բացատրուած է. «Վրացւոց թագաւորների կտրած միաձոյլ 40 կոպէկանոց դրամ»։ Վրաց թագաւորների եւ ոչ մէկի ժամանակ այդ դրամը չկար։ Երբ վրաց վերջին թագաւորը, Գիորգին, մահուան անկողնի մէջն էր, այդ միջոցին նրա Ս. Պետերբուրգ ուղարկուած պատգամաւորները, ի թիւս այլ պայմանների, առաջարկում էին ռուսաց արքունիքին եւ դրամ հատանելու իրաւունք ունենալ։ Այդ առաջարկութիւնը չիրագործուեցաւ, որովհետեւ Գիորգին շուտով վախճանուեցաւ եւ նրա հետ վրաց թագաւորութիւնը վերջացաւ։ (Исторія войны и влобычества Русскихъ на кавказѣ, Н. Дубровина Т. III. 335 - 351)։ Յիշեալ դրամը, թէեւ վրաց տառեր է կրում, բայց ռուսաց փող է, Թիֆլիսում հատանել սկսեցին 1805 թուին մինչեւ 1837 թուականը, այսինքն. սկսեալ այն ժամանակից, երբ վրաց թագաւորութիւնը բոլորովին վերջացած էր եւ Վրաստանը միացած էր Ռուսաստանի հետ։ Իսկ Աղա-Մահմադ-շահի արշաւանքը եւ նրա Թիֆլիսը աւերակ դարձնելը տեղի ունեցաւ ոչ թէ Գիորգիի օրերում, այլ նրա նախորդ Հերակլի օրերում, երբ այդ դրամները ամենեւին գոյութիւն չունէին։ Ուրեմն որտեղից [illegible] շահը իւր ջորիների բեռները յիշեալ դրամներով... Աւելորդ չեմ համարում յիշել եւ այն, որ վրաց վերջին թագաւորների ժամանակ, Թիֆլիսում եղած դրամահատութեան տունը, որ գտնւում էր իշխան Բէհբու-[illegible]ում, — դա պարսից հիմնարկութիւն էր եւ պարսից դրամ-

գել կերպով եւ եւ մուտ գործել իր մօտ. 2. ինչ որ խնդրելու լինի, նրա կամքը կը կատարուի. 3. արքունի գանձարանը նրա տրամադրութեան ներքոյ կը լինի„ (Ոսմ. Մելիք. եր. 145—146)։

"Բայց Մելիք-Մէջլումը այն աստիճան հպարտ եւ անշահասէր մարդ էր, որ Շահից ուրիշ ոչինչ չպահանջեց, միայն Թիֆլիսը աւերակ դարձնելուց յետոյ, խնդրեց նրա օգնութիւնը Շուշի բերդը նոյնպէս կործանել, Իբրահիմ-խանին ոչնչացնել եւ աւելի հաստատութիւն տալ Ղարա-

ծաղի եւ երկու քաղաքների... նոյն չափով եւ Ջաւադ-խանին„ ("Գաղտնիք„ եր. 171)։

"Բայց առաջինն (Մելիք-Մէջլումը) չընդունեց (դրամները), բոլոր ճ ը ռ ե ր ի՝ (Շուշու Իբրահիմ-խանի եւ նրա կուսակիցների) ջնջումը գերադաս համարելով քան թէ այդ դրամը. միայն ընդունեց շքանշանը, պատճառելով թէ ինքն բաւական կը լինէր միայն ճըռերի ջնջելովն եւ այն Շահն

ներ էին կտրում, որովհետեւ Վրաստանը, իբրեւ պարսկական մի աւատական նահանգ, իրաւունք չունէր իւր սեպհական դրոշմով դրամ հատանելու։ Այդ պարսից դրամները եւ այսօր կարելի է տեսնել Թիֆլիսի հնավաճառների կամ սառաֆների մօտ։

[1] "Ճըռ„ բառը, որ խիստ [illegible] "Գաղտնիք„ի մէջ եւ ամեն բացէ [illegible] գաղտնաթեան մէջ [illegible] պատմ [illegible] Բայց ճըռ [illegible] ջըռմաք [illegible] կամ հերձ [illegible] բաժանուած էին [illegible] նրանց թշնամի [illegible] Շուշին եւ Ղարաբ[illegible]

բաղի մելիքների իշխանութեանը„ (Խամս. Մելիք. եր. 146)։

“Շահը յօժարուեցաւ ուղղակի գնալ Ղարաբաղ, Շուշին գրաւելու եւ Մելիք-Մէջլումի ցանկութիւնները կատարելու համար։ Բայց դժբախտաբար այդ միջոցներում Ղ ա ն դ ա հ ա ր ի եւ Հ ե ր ա թ ի կողմերում խռովութիւններ ծագեցան, եւ նա ստիպուեցաւ շտապել Պարսկաստան ապստամբութիւնները զսպելու համար„ (Խամս. Մելիք. եր. 146)։

“Նա (Շահն) յայտնեց Ջաւադ-խանին եւ Մելիք-Մէջլումին սպասել, խոստանալով, որ շուտով կը վերադառնայ„ (Խամս. Մելիք. եր. 146)։

“Ջաւադ-խանը Մելիք-
ո գնացին Գան-

ինքն անձամբ (այսինքն որ Շահը անձամբ մասնակցէր ծրուերի ջնջման գործին)„ (“Գաղտնիք„ եր. 172)։

“Եւ մինչդեռ հայ զօրականաց սրտերն լցուած ուրախութեամբ եւ Շահի տուած խոստմամբ աճապարում' էին Շուշի, յանկարծ Շահն մի նամակ ստացաւ Պարսկաստանից, որն յայտնում' էր Շահին թէ զօրաւոր ապստամբութիւններ երեւան ելած էին Ղ ա ն դ ա հ ա ր ի եւ Հ ե ր ա թ ի կողմերում։ Հարկ էր փութալ ի Պարսկաստան„ (“Գաղտնիք„ եր. 170)։

“Շահն յայտնեց Մելիքին (Մելիք-Մէջլումին), որ ինքն ստիպուած էր փութալ ի Պարսկաստան… եւ խոստացաւ առաջիկայ գարնան կրկին գալ, գրաւել Շուշին եւ կատարել իր խոստումները„ (“Գաղտնիք„ եր. 171)։

“Շահն շնորհակալութեամբ հանդերձ, հրաժա-

մական սխալ կայ, եւ այդ սխալը նոյնութեամբ մտել է "Գաղտնիք"ի մէջ։

Այն կտորը, թէ Աղա-Մամադ-շահը թողեց Շուշի բերդը գրաւելու դիտաւորութիւնը եւ շտապեց Պարսկաստան՝ Ղանդահարի եւ Հերաթի ապստամբութիւնները զսպելու համար, — դա բոլորովին սխալ է։ Այսպիսի ապստամբութիւններ ոչ տեղի են ունեցել եւ ոչ էլ Աղա-Մամադ-շահը գնացել է նրանց զսպելու։

Թէ ինչն է սխալեցրել ինձ, — այդ ես գիտեմ, եւ իմ սխալը ինքս ուղղում եմ։

Բայց ինչ որ ներելի կարող է լինել ինձ, որ գրել եմ "Խամսայի Մելիքութիւնները" յիշեալ անցքից 87 տարի յետոյ, — այն չէ կարող ներելի լինել Աբրահամ Բէկ-Նազարեանին, որ ոչ միայն գրում է յիշեալ երեւակայական արշաւանքի պատմութիւնը, այլ ինքը, Աղա-Մամադ-շահից զօրապետ կարգուելով, 10.000 սարվազով գնում է Աւղանիստան, Ղանդահարի եւ Հերաթի ապստամբութիւնները նուաճում է, տեղային խաներին կոտորում է, նրանց որդիներին յաջորդ է կարգում եւ այսպիսով խաղաղացնում է մի ամբողջ երկիր (եր. 221, 222)։

(Յիշեալ արշաւանքի մասին "Գաղտնիքից" առած վկայութիւնները դրեցինք այս գլխի սկզբում, նորից կրկնել՝ աւելորդ ենք համարում)։

Բայց ինչով բացատրել այդ հանելուկը։ —

Ահա ինչով. Մակար վարդապետը ցանկացել է իր ստեղծած պատմագիրներին — հայր եւ որդի Բէկնազարեաններին — ուղարկել Պարսկաստան, որ նրանք աղբիւրի հէնց մաքուր ակնից քաղեն բոլոր տեղեկութիւնները եւ արձանագրեն "Գաղտնիք"ի մէջ։ Այդ նպատակով նա որդի եանին մտցրել է Աղա-Մամադ-շահի պալատը։

Այնտեղ նա պարսկերէն է սովորում, Շահի գաղտնի նամակները, հրովարտակները, շրջաբերականներն է ընդօրինակում եւ, մի եւ նոյն ժամանակ, նրանց օրինակները մտցնում է “Գաղտնիք„ի մէջ։ (Այդ տեսանք Գ. գլխում)։ Մնում է հայր Բէկնազարեանը։ Մակար վարդապետը մտածել է՝ դրա համար եւս մի նպատակայարմար պաշտօն գտնել։ Եւ կարգել է նրան զօրապետ Աղա-Մամադ-շահի մօտ, որպէս զի, նրա բոլոր զինուորական գործողութիւնների գաղտնիքները իմանայ եւ նոյնպէս մտցնէ “Գաղտնիք„ի մէջ։ Բայց նրան պէտք է մի որ եւ է գործ տալ, որի մէջ յայտնուի, նշանակութիւն ստանայ։ Մակար վարդապետը “Խամսայի Մելիքութիւնների„ մէջ կարդացել է, թէ մի ինչ որ Հերաթի եւ Ղանդահարի ապստամբութիւններ են եղել։ Եւ այդ զուտ ոսկու տեղ ընդունելով, իսկոյն օգուտ է քաղել եւ Աբրահամ Բէկնազարեանին ուղարկել է Աւղանիստան, որ նոյն ապստամբութիւնները զսպող հերոսը դառնայ։

Այժմ, կարծեմ պարզ է, թէ ով է գողը...։

Եթէ ուրիշ ոչինչ չը լինէր, Աւղանիստանի երեւակայական արշաւանքն միայն բաւական էր՝ ցոյց տալու “Գաղտնիք„-ի կեղծութիւնը։

Աղա-Մամադ-շահը այնքան զբաղուած էր բուն Պարսկաստանի ներքին գործերով, եւ դեռ եւս այնքան շատ գործեր ունէր տեղային խաների հետ, մինչեւ կարողանար բոլորին նուաճել եւ ի մի ձուլել ամբողջ Պարսկաստանը, — որ նա Պարսկաստանի սահմաններից դուրս աշխարհակալութիւններ անելու ոչ ժամանակ ունէր եւ ոչ ցանկութիւն։

Աղա-Մամադ-շահի [illegible] Աւղանիստանը նոյնքան եւ գուցէ աւելի մի [illegible] —թիւն էր, որքան

Պարսկաստանը, եւ ամենեւին կախում չունէր վերջինից, որ Աղա-Մամադ-շահը ստիպուած լինէր՝ կամ ինքը գնալ, կամ Աբրահամ Բէկնազարեանին ուղարկել՝ տեղային ապստամբութիւնները զսպելու։

Դեռ շատ ժամանակ չէր անցել այն օրից (ընդ ամենը 68 տարի) որ սէֆէվիների գահի վրայ Սպահանում, նստում էին աւղանները։ Նադիր-շահի հզօր ձեռքը միայն կարողացաւ մաքրել Պարսկաստանը աւղաններից։ Այլ եւս ինչ հարկ կար, որ Աղա-Մամադ-շահը իւր զգոյշ ձեռքը մխէր օձերի բոյնի մէջ. . .։

Բայց մի անցք շտապեցրեց Աղա-Մամադ-շահին, Թիֆլիսի աւերումից յետոյ, թողնել Շուշի բերդը եւ շտապել դէպի Պարսկաստան։

Այդ անցքը ոչ թէ Ղանդահարի եւ Հերաթի ապստամբութիւններն էին, այլ Բուխարայի թաթարների յարձակումները Աղա-Մամադ-շահի նոր հիմնած պետութեան սահմանների վրայ։ Եթէ Մակար վարդապետը գիտենար այդ, տարակոյս չկայ, որ նա Աբրահամ Բէկնազարեանին այլ եւս Աւղանիստան չէր ուղարկի, այլ Բուխարայ կ՚ուղարկէր թաթարներին զսպելու համար։

Թաթարներին պատժելու նպատակով սկսուած արշաւանքը՝ Աղա-Մամադ-շահը սքօղեց Խորասանի ուխտագնացութեան պատրուակով։ Այդ պատրուակի ներքոյ թաքնուած էր մի այլ նպատակ եւս, այն է՝ ձեռք բերել [illegible]իր-շահի գանձերը, որ դեռ եւս մնացել էին նրա [illegible]ների մօտ։

[illegible] էր պատճառը, որ Թիֆլիսից Պարսկաստան [illegible]ց յետոյ, նա անմիջապէս դիմեց դէպի

Դեռ կենդանի էր կուրացեալ Շահ-Ռուխը — Նադիր-շահի թոռը։ Երբ Աղա-Մամադ-շահը հասաւ Խորասանի սրբազան քաղաքը, Մաշհադ, դժբախտ թագաւորը դիմաւորեց նրան եւ, նրա ձեռքից բռնելով, տարաւ իմամի սրբավայրը։ Այստեղ Աղա-Մամադ-շահը իւր աղօթքը կատարելուց յետոյ, սկսեց Շահ-Ռուխից պահանջել Նադիր-Շահի գանձերը։ Ծերունի թագաւորի բոլոր աղաչանքները ապարդիւն եղան՝ ամոքելու Աղա-Մամադ-շահի ագահութիւնը։ Նա սկսեց սարսափելի չարչարանքներով տանջել նրան։ Իւր անգթութիւնը այն աստիճանի հասցրեց, որ դրեց Շահ-Ռուխի գլխին մի պսակաձեւ շրջանակ եւ նրա մէջը հալած արճիճ լցնել տուեց։ Այսպիսով ստացաւ նա այն խոշոր յակինթը[1], որ մի ժամանակ զարդարում էր Ովրանգզէբայի թագի ճակատը, եւ որը բերել էր Նադիր-շահը Հնդկաստանից։ Իւր կրած տանջանքներից մեռաւ Շահ-Ռուխը եւ նրա հետ հանգաւ աւշարեանների թագաւորութեան վերջին շառաւիղը[2]։

Խորասանից Աղա-Մամադ-շահը պատրաստւում էր գնալ Բուխարայ թաթարներին պատժելու, երբ լսեց, որ ռուսները նոր զօրքեր են ուղարկել Անդրկովկաս։ Այնտեղից ուղղակի դիմեց Շուշի, առանց պատերազմի գրաւեց, եւ այնտեղ սպանուեցաւ իւր երկու սպասաւորներից (1797 թ.)։

Եւ այսպէս, Աբրահամ Յէնիքոլոպեանի գործունէութիւնը Պարսկաստանում [illegible] է մի [illegible], այն

---

¹ Այդ [illegible] յակինթը [illegible] քունքում [illegible] — գոհարի ծով։

² "Պատ[illegible] 214—215։

է՝ Աւղանիստանի արշաւանքից, որ բնաւ պատմական հիմք չունի։ Աղա-Մամադ-շահի օրերում մի այսպիսի արշաւանք տեղի չէ ունեցել։

Աւղանիստանի արշաւանքը տեղի է ունեցել ոչ թէ Աղա-Մամադ-շահի օրերում, որ նրա հերոսը երեւակայական Աբրահամ Բէկնազարեանը լինէր, այլ — նրա յաջորդ Փաթալի-շահի օրերում։ Այդ ժամանակ Աւղանիստանի թագաւոր Զաման-շահը իւր ասպատակութիւններով սարսափի մէջ էր դրել ամբողջ Հնդկաստանը։ Հնդկական թագաւորները մինը միւսից յետոյ ընկնում էին նրա զօրութեան առջեւ։ Եւ որովհետեւ Զաման-շահի տիրապետութիւնները սաստիկ վնասում էին անգլիացիների շահերին Հնդկաստանում, այդ պատճառով, անգլիական քաղաքագիտութիւնը յաջողեցրեց Թէհրանում՝ Փաթալի-շահին իւր զօրքերով շարժել դէպի Աւղանիստանի սահմանները, որպէս զի Զաման-շահը ստիպուած լինի թողնել Հնդկաստանը եւ վերադառնալ իւր երկիրը պաշտպանելու պարսիկներից։ Այդ արշաւանքը կատարելու համար, մի քանի տարի շարունակ, Փաթալի-շահը ստանում էր անգլիացիներից օրեկան 1000 թուման ոսկի։[1]

Ո՞ւր մնաց Աբրահամ Բէկնազարեանը, որը մինչեւ անգամ չգիտէ, որ իւր 10.000 սարվազով նուաճած Աւղանիստանի տիրապետողները հասարակ խաներ չէին, այլ սարսափելի Զաման-շահն էր։

Փաթալի-շահի օրերում Բէկնազարեանները դարձեալ շարունակում են մնալ պարսից ծառայութեան մէջ, բայց թէ ինչ է նրանց պաշտօնը, — այդ մասին որոշ յիշա-

[1] Պարսից„ Մ. Գ. Թաղիադեանցի Ա. հատ. եր. 222։

բոլորը առակարանութիւն է, որովհետեւ Այրիս Բէկնազարեանը ոչ շահի պալատումն է եղել եւ ոչ պարսկերէն կամ ֆրանսիերէն է սովորել։

Սպանվում է Աղա-Մամադ-շահը եւ գահակալում է Փաթալի-շահը։

Այժմ Փաթալի-շահի դիւանը կարօտութիւն ունի՛ մի տարուայ մէջ պարսկերէն եւ ֆրանսիերէն սովորած մի քանամեայ պատանու — Այրիս Բէկնազարեանին... (Մակար վարդապետը միշտ մոռանում է նրա հասակը)։ "Շահական դիւանը հարկաւորութիւն ունի նրա ներկայութեան՝ գ ա ղ տ ն ի  ն ա մ ա կ ն ե ր  գ ր ե լ ո ւ  ե ւ  խ ո ր հ ր դ ա պ ա հ ո ւ թ ե ա ն  համար„... Նա այդ խօսքերը ո՞վ է ասում, — Աբաս-Միրզան, Պարսկաստանի երեւելի թագաժառանգը, որ իւր խորին քաղաքագիտութեամբ մատների վրայ էր խաղացնում իւր ժամանակի թէ ռուսաց եւ թէ եւրոպացոց ներկայացուցիչներին, եւ որի դրանը այդ ժամանակ վխտում էին ոչ միայն երկրի ամենաառաջնադասւոր պարսիկ դպիրները, այլ շատ նշանաւոր հայ եւ եւրոպացի ծառայողներ։

Բայց ի՞նչն է ստիպել Մակար վարդապետին այս տեսակ երեխայական միամտութեամբ՝ իւր քանամեայ Այրիս Բէկնազարեանին մտցնել "շ ա հ ա կ ա ն  դ ի ւ ա ն ի„ մէջ եւ պարսից թագաւորի բոլոր գ ա ղ տ ն ի ք ն ե ր ը նրա ձեռքը տալ։ — Այդ հարցին կը պատասխանէ ինքը Այրիս Բէկնազարեանը։

Բերելով մի շարք նամակներ, որ Փաթալի-շահը ստացել է զանազան տեղերից, նա աւելացնում է.

"Ցանկալի էր մեզ բոլոր նամակները նոյնութեամբ …ագրել այս տեղ ("Գաղտնիք„-ի մէջ) բայց այդ …ն անհնարելի էր, վասն զի հարկ էր հատորներ

կազմել մեծամթիւ քանակութեամբ: Դիւանական թղթոց կարգադրութիւնն, գ ա ղ տ ն ի  ն ա մ ա կ ա ց պատասխանններն, ներքին շ ր ջ ա բ ե ր ա կ ա ն ն ե ր ի գրութիւններն եւ արտաքին յարաբերական թղթակցութիւններն յափշտակում էին մեր ժամանակի ամենամեծ մասը: Անա պատճառներն, յորոց ստիպեալ մենք համառօտում ենք յաճախ թղթակցութիւնները, բայց ոչ սակաւ: Թողնում ենք յիշեցնել այն կասկածալի երկիւղը, որ պաշարում էր զմեզ այդպիսի գ ա ղ տ ն ի  ն ա մ ա կ ն ե ր ը (որքան գործ է ածվում գ ա ղ տ ն ի բառը "Գաղտնիք„-ի մէջ), մանաւանդ պարսկերէնը, արտագրելու կամ համառօտագրելու ժամանակ ("Գաղտնիք„-ի մէջ մտցնելու համար): Եթէ յայտնուէր մեր այդ գ ա ղ տ ն ի ծեռնարկութիւնն Պարսիկ կառավարութեան՝ մահուան վտանգն պատրաստ էր մեզ համար նոյն րոպէին„ (եր. 275):

Կարդալով այդ տողերը, մարդ չգիտէ՝ ծիծաղէ՞ թէ զարմանայ: Մի՞թէ Փաթալի-շահը վէզիրներ, վէքիլներ եւ այլ պաշտօնակատարներ չէ ունեցել, որ իր կառավարութեան բոլոր թէ ներքին եւ թէ արտաքին գործերը յանձնել էր մի որ եւ է [illegible] Բէկնազարեանի ձեռքը:

Փաթալի-շահի օրերից շատ ժամանակ չէ անցել. եթէ մի այսպիսի անձնաւորութիւն գոյութիւն ունենար, հարկաւ, չէր մոռացուիլ ու [illegible] յիշատակութիւնից եւ ոչ պատմութ[illegible] [illegible] Մնլքութիւնն[illegible] [illegible] րելի է գտնել՝ Փ[illegible] րում, Պարսկաստան[illegible] պաշտօնակալների [illegible]

է։ Այդ անունների ցանկում ոչ Ապրես Բէկնազարեանի եւ ոչ նրա հօր անունը կայ։

Եւ, վերջապէս, ինչպէս եղաւ, որ այդ մի զոյգ հայր եւ որդի Բէկնազարեանները, որոնք պարսից երեք թագաւորների — Աղա-Մամադ-շահի, Փաթալի-շահի, Մամադ-շահի — եւ մի թագաժառանգի — Աբաս-Միրզայի մօտ այնքան մեծամեծ պաշտօններ էին վարում, եւ այդ թագաւորների ամենասիրելիներն էին, բայց ոչ մի աստիճան եւ ոչ մի տիտղոս չստացան։ Հայր Բէկնազարեանը ծառայում է 33 տարի (1795—1828), իսկ որդի Բէկնազարեանը 43 տարի (1795—1838), բայց երկուսից եւ ոչ մեկը որ եւ է աստիճան չէ ստանում։ Պարսից թագաւորները տիտղոսներ եւ աստիճաններ շնորհելու մէջ ժլատ չեն, այլ, ընդհակառակն, շատ առատաձեռն են։ Յիշեալ թագաւորների օրերում հայերը ստացան խիստ փայլուն եւ խիստ փառաւոր տիտղոսներ, ստացան եւ բարձր աստիճաններ։ Ես կը յիշեմ մի քանիսի անունները միայն։

Մանուչար-խանը ստացաւ "մօհթամէդ-դօվլէ" տիտղոսը, որ նշանակում է նեցուկ կամ սիւն պետութեան։ Դա Աղա-Մամադ-շահի Թիֆլիսից տարած գերիներից էր, Էնիկօլօփեանների տոհմից։ Պարսկաստանում այն աստիճան բարձրացաւ, որ Փաթալի-շահի օ-
[illegible] վարում էր Կասպից ծովի հարաւային նա-
[illegible] Գիլանի, Մազանդարանի, փոխարքայութեան
[illegible] Մամադ-շահի օրերում Սպահանի եւ
[illegible]կան Արաբիստանի փոխարքան դարձաւ։
[illegible]րը ուղարկեց նրան մի թանգագին,
[illegible] Ինչպես ռուսաց Պարսկաս-
[illegible] Մէդդէմը, պատրաստ-

վում էր այդ ընծան մատուցանել, նա արդէն մեռած էր (1847 թ.)։[1]

Խ ո ս ր ո վ - խ ա ն ը ստացաւ «վ ա լ ի» տիտղոսը, որ նշանակում է տիրապետող իշխան, իսկ չափազանց ուժեղութեան պատճառով՝ նա կոչվում էր եւ «շ ի ր», որ նշանակում է առիւծ։ Դա նոյնպէս Աղա-Մահմադ-շահի Թիֆլիսից տարած գերիներիցն էր, տէր Սամուէլի որդին, Ղայթմազեանց տոհմից։ 1838 թուին կարգուեցաւ փոխարքայ Փարսիստանի եւ խաղաղացրեց Սպահանի խռովութիւնները, որ տեղի ունեցան Փաթալի-շահի վախճանուելուց յետոյ[2]։

Ս ո ւ լ է յ մ ա ն - խ ա ն ը, նոյնպէս Էնիկօլօփեանների տոհմից, ստացաւ «ս ա մ ր - դ օ վ լ է» տիտղոսը, որ նշանակում է սուր պետութեան։ Դա մի նշանաւոր զօրավար էր, երկար ժամանակ վարեց Շիրազի, Բախտիարիայի, Լօրիստանի, Շուշթէրի եւ Դամիուլի փոխարքայութեան պաշտօնները[3]։

Այլ եւս չեմ յիշում Յուսուֆ-խան «ը ս փ ա ն - դ ի ա ր»ին (մարզպան) որ [illegible] կուսակալն էր եւ Ջօհրար խան «խ ա գ ն ա գ [illegible]»ին, որ Փաթալի-շահի փեսան եւ [illegible] կառավարիչն էր։ Չեմ յիշում [illegible] հայերի [illegible], որ [illegible] էին վարում։

---

[1] [illegible]
Մ. Դ. [illegible]
«Նոր Ջուղայի» [illegible]

[2] «Խոսմնայի Մ[illegible]
Մ. Դ. [illegible]
Ջուղայի», հատ. Ա. էր. [illegible]

[3] «Խոսմնայի Մ[illegible]
ղայի», հատ. Ա. էջ. 440։

եւ զանազան տիտղոսներ էին կրում, — բայց կը յիշեմ մէկին, որ "ա մ ի ր - դ ի ւ ա ն խ ա ն ա„ տիտղոսն էր կրում, որ նշանակում է՝ պետական դիւանի գլխաւորը կամ պետը։ Դա էր Աղա-Բահրամ Ներքինին, որ մահմեդականացած հայ էր։ — Ահա դա էր "շ ա հ ա կ ա ն - դ ի ւ ա ն ի„ գլխաւորը[1] եւ ոչ թէ երեւակայական Ապրես Բէկնազարեանը, որին Մակար վարդապետը զօրով մտցրել է Շահի դիւանի մէջ, որպէս զի այնտեղից "Գաղտնիք„-ի համար գաղտնիքներ ժողովէ . . .

Թէ՛ հայր եւ թէ որդի Բէկնազարեանները այն աստիճան օգէտ են Պարսկաստանի վերաբերութեամբ եւ այն աստիճան անծանօթ են իրանց ժամանակի անցքերի եւ անձինքների հետ, որ իրանք իրանց մտածում են, որ այդ մարդիկը Պարսկաստանը բնաւ չեն տեսել։

Բէկնազարեանները յիշեցնում են այն յայտնի ստախօսին, որ հիացած պատմում էր իւր բարեկամին, թէ որպիսի զարմանալի մժղուկներ, փոքրիկ պողոտներ եւ թիթեռնիկներ տեսաւ մուզէօնում։ Իսկ երբ բարեկամը նրանից հարցրեց. — Դու տեսա՞ր այնտեղ փղին։ Նա պատասխանեց, — "Մի՞թէ նա այնտեղ էր . . . „

Բէկնազարեանները նոյնպէս մժղուկներին տեսնում են Պարսկաստանում, իսկ այն հսկայ հայ փղերին, որոնք իրանց հզօր ուսերի վրայ էին տանում Պարսկաստանի կառավարութեան ծանրութիւնները, — դրանց չեն տեսնում։

Նրանք գիտեն, որ Աղա-Մամադ-շահի կանանոցում [illegible] վրացի աղախիններ կային, մէկի անունը Էլիզա էր, [illegible] Թամարա (եր. 230)։ Նրանք գիտեն, որ Աբաս-[illegible]մի վրացի լոռեա ունէր, անունը Սուլի էր. գիտեն

[1] Թիւնները, եր. 270։

Ինչ որ Մակար վարդապետը չգիտէ, այն չգիտեն եւ “Գաղտնիք„ի մի զոյգ հեղինակները....:

Դիմենք փաստերին:

Վերեւում արդէն յիշեցինք, թէ Բէկնազարեանների օրերում ինչ նշանաւոր հայազգիներ կային Պարսկաստանում, եւ ինչ բարձր պաշտօններ էին վարում: Եթէ իսկապէս Բէկնազարեանները նոյնպիսի բարձր պաշտօններ էին վարում պարսից Շահերի Դռանը, որպիսին իրանք ցոյց են տալիս “Գաղտնիք„ի մէջ, — այդ դէպքում, շատ տարօրինակ պէտք էր համարել, որ նրանք միւս հայազգի ծառայողների հետ յարաբերութիւններ չունենային եւ նրանց մասին մի որ եւ է յիշատակութիւն չանէին իրանց պատմութեան մէջ: Առիթներ շատ կային եւ այդ առիթները ես ցոյց կը տամ:

Ապրես Բէկնազարեանը իւր մի քանի ամիսների մէջ սովորած պարսկերէնով դառնում է Փաթալի-շահի դիւանի ոչ միայն ներքին գործերի առենադպիրը կամ քարտուղարը, այլ — եւ նրա “արտաքին յարաբերական թղթակցութիւնների„ խորհրդականն եւ թարգմանն է դառնում (եր. 275): Դրա համար պէտք էր գիտենալ եւրոպական լեզուներ: Եւ որովհետեւ պարսից արտաքին յարաբերութիւնների մէջ ընդունուած լեզուն ֆրանսերէնն է, — նա այդ լեզուն դարձեալ մի քանի ամիսներում սովորում է բանտարկեալ հայ-կաթոլիկ վարդապետից, հէնց բանտի մէջ (եր. 229)....:

Բայց Փաթալի-շահի արքունիքում այդ պաշտօնը կատարում էր ոչ թէ Ապրես Բէկնազարեանը, այլ մի ուրիշ նշանաւոր հայազգի, մի կատարեալ եւրոպական կրթութիւն ստացած դիւանագէտ, որ Դռան առաջին ոգմանը եւ, մի եւ նոյն ժամանակ, թագաւորի արտա-

*քին գործերի խորհրդականն էր։ — Դա էր Դաւիթ-խան Մելիք-Շահնազարեան Դէ-Շապուրը, որը Նապոլէօն առաջինի օրերում Փաթալի-շահի կողմից ուղարկուեցաւ Փարիզ, իբրեւ լիազօր դեսպան*[1]*։*

*Դրան չեն ճանաչում Բէկնազարեանները։*

*Վախճանվում է Փաթալի-շահը եւ գահակալում է Մամադ-շահը։ Այդ մասին հինգ տող միայն նուիրուած է երկհատոր «Գաղտնիք„ի մէջ, այն եւս լի սխալներով։*

*“1834 թուին վախճանուեցաւ Փաթալի-շահն եւ հանդիսով թաղուեցաւ Շահերի յատուկ դամբարանում*[2]*: Գահակալութեան կարգն թէեւ Մահմատ-Միրզային չէր պատկանում (ինչու) սակայն սա յաջողեցաւ գահն բարձրանալ որ եւ կոչուեցաւ Մամատ-շահ„ (եր. 390)։*

*Օրինաւոր ժառանգը հէնց Մամադ-Միրզան էր, այսինքն Թագաժառանգ Աբաս-Միրզայի որդին. նախ այն պատճառով, որ հանգուցեալ Փաթալի-շահը իւր կենդանի օրօք* — *կեանքի մէջ նրան էր նշանակել գահակալ, երկրորդ, որ Պարսկաստանի թէ ռուսաց եւ թէ անգլիացւոց ներկայացուցիչները նրան էին ճանաչում իբրեւ օրինաւոր ժառանգ*

---

[1] “Պատմութիւն Պարսից„ Մ. Դ. Թաղիադեանցի հատ. Ա. եր. 223։ “Խամսայի Մելիքութիւնները„ եր. 270։

[2] Ֆաթալի-շահը իւր մայրաքաղաքում, այն է՝ Թէհրանում, չվախճանուեցաւ, այլ վախճանուեցաւ Սպահանում, ուր գնացել էր տեղային խռովութիւնները խաղաղացնելու։ Նրա վախճանուելուց յետոյ Պարսկաստանում այնպիսի խռովութիւններ ծագեցան, որ ոչ ոք ժամանակ չունէր հանգիստ թաղման վրայ մտածելու։ Հանգուցեալի մարմինը մի քանի օր թաղցրին, յետոյ տ. րան թաղեցին Ղում կոչուած փոքրիկ քաղաքում, Մասումայի մզկիթում։ Մեսրոպ Թաղիադեանցը, որ այդ ժամանակ Սպահանումն էր գտնվում, իւր “Պատմութիւն Պարսից„ հատ. Ա. եր. 232. 233, 235, ասում է. “Այլ եւ զարմանամ արդարեւ զի ի բազմութենէ անտի թոշակաւոր Դենպետաց եւ Մոլլայից Սպահանայ չգտաւ՝ որ կարդայր զֆաթհա (“հոգւոց„), կամ զդամբարականն ի վերայ տոչին (Ֆաթալի-շահի)։

եւ ամեն կերպով աշխատում էին, որ հանգուցեալ Թագաւորի կտակը կատարուած լինի։

Բայց «Գաղտնիք»ի հեղինակը չգիտէ, թէ այդ ժամանակ՝ գահակալութեան առիթով ինչ խռովութիւններ ծագեցան Պարսկաստանում։ Եթէ, իրաւ, նա մի որ եւ է պաշտօն էր վարում Փաթալի-շահի Դրանը, այդ խռովութիւնները պէտք է հետաքրքրէին նրան, մանաւանդ այն պատճառով, որ հայ պաշտօնակալները այդ միջոցին մեծ դեր կատարեցին։

Փաթալի-շահը, բազմացնելով իւր կանանց թիւը, բազմացրեց մի եւ նոյն ժամանակ իւր որդիների թիւը։ Դեռ իւր կենդանութեան ժամանակ նրանց Պարսկաստանի զանազան նահանգների փոխարքաներ կարգեց։ Երբ վախճանուեցաւ, որդիներից իւրաքանչիւրը աշխատում էր թափուր մնացած գահի ժառանգը ինքը լինել։ Մի քանիսը իրանց կառավարութեան ներքոյ գտնուող նահանգներում իրանց թագաւոր հրատարակեցին։ Միաժամանակ, զանազան թագաւորների անկարգութիւններից, երկիրը ընկաւ կատարեալ անիշխանութեան մէջ։ Ներքին կռիւները, երկպառակութիւնը յուզման մէջ էին պահել ամբողջ Պարսկաստանը։ Ամեն կողմում տիրում էր արիւնհեղութիւն եւ ապստամբութիւն։ Ամեն մի ժառանգ աշխատում էր կաշառքով եւ խոստումներով իրան թագաւոր ճանաչել տալ։ Թէհրանում Ալիշահ-Միրզան բացարեց հօր հարուստ գանձերը եւ մի օրուայ մէջ երկու միլիոն թուման բաժանեց զանազան ազդեցութիւն ունեցող անձինքների, որ իրան թագաւոր ճանաչեն։ Պարսից աւագանին, Ռամազանի տօնին, հագցրեց նրան արքայական ծիրանին, նստացրեց գահը եւ թագաւոր հրատարակեց[1]։

---

[1] «Պատմութիւն Պարսից» Մ. Դ. Թաղիադեանցի հատ. Ա. եր. 231—257.

Այդ անկարգութիւնների միջոցին, օրինաւոր թագաժառանգը, Մամադ-Միրզան, գտնվում էր Թաւրիզում, որտեղ վարում էր Ատրպատականի փոխարքայութեան պաշտօնը։ Ռուսաց եւ անգլիացւոց քաղաքականութիւնը սաստիկ մաքառման մէջ էր, իւրաքանչիւրը աշխատում էր, որ իւր միջամտութեամբ եւ ջանքերով թագաժառանգին գահ բարձրացնէ, որ նրան պարտաւորացնէ։

Բայց Թէհրանում արդէն գահի վրայ բազմած էր Ալիշահ-Միրզան։

Թագաժառանգին Թէհրան տանելու եւ ինքնակոչ թագաւորին այնտեղից վանելու համար, ոչ բաւական զինուորական ոյժ կար եւ ոչ նիւթական կարողութիւն։ Արքունի գանձարանը գրաւել էր Ալիշահ-Միրզան եւ իւր կեղծ դիրքը պահպանելու համար շռայլաբար վատնում էր։

Պարսկաստանի ռուսաց դեսպանը, կոմս Սիմօնովիչը, եւ անգլիացւոց դեսպանը, Սըր Ջան Կամբէլ, այդ միջոցին Թաւրիզումն էին գտնվում, թագաժառանգի մօտ։ Ռուսաց դեսպանը կամեցաւ Անդրկովկասից 7000 զինուոր բերել տալ՝ թագաժառանգին Թէհրան տանելու համար։ Բայց անգլիական ներկայացուցիչը խափանեց այդ ձեռնարկութիւնը։ Ատրպատականի պարսկական զօրքերը շարժելու համար միջոցներ չկային։ Այդ ծախքը իւր վրայ առեց անգլիական դեսպանը, այն պայմանով, որ պարսից զօրքերի ընդհանուր հրամանատարը լինի մի անգլիացի զինուորական։ Առաջարկութիւնը ընդունուեցաւ։ Պասմօրը հրամանատար կարգուեցաւ, իսկ Սըր Հէնրի Արթուր եւ Ճի Նշանակուեցան զօրապետներ։ Այդ պատրաստութեամբ թագաժառանգը Թաւրիզից ճանապարհ ընկաւ դէպի Թէ-

հրան։ Նրա հետ էին ռուսաց եւ անգլիական դեսպանները։ Դեռ երեք օրուայ ճանապարհ մնում էր՝ մինչեւ կը հասնէին պարսից աթոռանիստ քաղաքը, առաջինը, որ Թէհրանից իւր զօրքերով դուրս եկաւ Թագաժառանգի առջեւ եւ ընդունեց նրան, — էր հայազգի Խոսրով-խան-"Շիր" — Առիւծը։ Յետոյ Ռաշտից իւր հեծելազօրքով վրահասաւ "Մօհթամէդ-Դօվլան" — պետութեան նեցուկը։ Նա էր հայազգի Մանուչար խանը, որ իւր անբաւ հարստութիւնից 80.000 թուման դրեց Թագաժառանգի առջեւ, որովհետեւ նա իւր սկզբնական ծախքերի համար անգամ բաւական փող չունէր։

Թէեւ Ալիշահ-Միրզան քանի հազար զինուորներից բաղկացած մի զօրախումբ ուղարկեց ընդդիմադրելու իւր ախոյեանին, բայց նրանք, տեսնելով Թագաժառանգի ահարկու զօրութիւնը, առանց պատերազմի անձնատուր եղան։ Նոր Թագաւորը խոստացաւ ներել իւր հակառակորդներին։ Այդ ժամանակ անձնատուր եղաւ եւ Ալիշահ-Միրզան։ Նա ցած իջաւ գահից եւ այն Թագը, որ բռնութեամբ յափշտակել էր ցանկանում, իւր ձեռքով տարաւ դրեց արքունի գանձարանը, եւ խոնարհուեցաւ ճակատագրի առջեւ[1]...։

Այդ բոլորը կատարուեցաւ, բայց "Գաղտնիք"ի հեղինակը, որ անձամբ Նոր Թագաւորի մօտ էր, ոչինչ չտեսաւ... ոչինչ չիմացաւ... Նա չտեսաւ եւ այն, որ յիշեալ խռովութիւնների միջոցում, հայազգի գեներալ Դաւիթ-խան Սազինեանի քաջութիւնը եւ Թնդանօթները միայն կարողացան պահպանել Սպահանը մի սոսկալի ապստամբութիւնից, որին ոչ միայն պիտի զոհ գնային տեղային

[1] "Պատմութիւն Պարսից" Մ. Դ. Թաղիադեանցի հատ. Ա. եր. 245-257։

հայերը, այլ Պարսկաստանը պիտի ենթարկուէր մի այլ թագաւորի բռնապետութեանը՝ հանգուցեալ Փաթալի-շահի որդիներից, որին շատ դժուար պիտի լինէր հեռացնել իւր գահից[1]։

Ահա ինչու վերեւում ես ասեցի, թէ առիթներ շատ կային, որ Բէկնազարեանները խօսէին՝ իրանց ժամանակում Պարսկաստանում գտնուած նշանաւոր հայազգի պաշտօնակալների մասին, որոնք այնքան մեծամեծ գործեր կատարեցին, որոնք ոչ սակաւ նպաստեցին ազատելու տատանուող պետութիւնը իւր ահեղ կործանումից։ Եւ եթէ Բէկնազարեանները լռում են, — այդ արդէն պարզ ապացոյց է, որ նրանք ոչ Պարսկաստանումն են եղել եւ ոչ պարսից թագաւորների մօտ որ եւ է պաշտօն են կատարել։ Որովհետեւ նրանք բոլորովին մանր եւ չնչին բաների վրայ ուշադրութիւն են դարձնում, իսկ պատմական խոշոր երեւոյթները չեն տեսնում։ Մուզէօն այցելող ստախօսի նման՝ մժղուկներին տեսնում են, իսկ փղերին չեն նկատում...։

Մի այլ փաստ, որի մէջ երեւում է Բէկնազարեանների կատարեալ տգիտութիւնը Պարսկաստանի վերաբերութեամբ։

Հայր Բէկնազարեանը հիւանդանում է։ — Ո՞րտեղ։ Թաւրիզում։ Չմոռանանք այդ։ Որդի Բէկնազարեանը այդպէս է գրում իւր հօր հիւանդութեան մասին.

“Հայրս երկու ամսից ի վեր հիւանդ էր ընկողմնած անկողնում: Հիւանդութիւնն ջերմի ամենասաստիկ տեսակիցն էր. այսու ամենայնիւ Շ ա հ ի  բ ժ ի շ կ ն ե ր ն յուսադրում էին որ կ'առողջանայ: Թէ որքան խնամք

[1] “Պատմութիւն Պարսից„ Մ. Դ. Թաղիադեանցի հատ. Ա. եր 232, 2.2, 265։

տարաւ քարեխնամ Փաթալի-Շահն հօրս առողջութեան համար՝ անկարելի է մի ըստ միոջէ նկարագրել այստեղ„ (եր. 383)։

Ցիշեալ ասացուածների մէջ նկատողութեան արժանի երկու կէտ կայ. առաջինը, արդեօք կարո՞ղ էին շահի բժիշկները այցելել հիւանդին, երկրորդ, կարո՞ղ էր բարեխնամ Փաթալի-Շահը հոգ տանել հիւանդին։ Ոչ առաջինը կարելի էր եւ ոչ երկրորդը։ Ի՞նչու, Որովհետեւ հիւանդը գլած էր Թաւրիզում, իսկ թէ շահը եւ թէ նրա բժիշկները կենում էին Թէհրանում։

"Գաղտնիք„ի մէջ միշտ շփոթում են Թաւրիզը Թէհրանի հետ, եւ պարսից շահերի մօտ ապրող Բէկնազարեանները չգիտեն, որ Թաւրիզը պարսից աթոռանիստ քաղաք չէր, որ Փաթալի-շահը այնտեղ լինէր եւ խնամք տանէր հիւանդին։ Գոնէ Բէկնազարեանները գիտենային, թէ ո՞վ էր շահի բժիշկը։

Թէ Փաթալի-շահի օրերում եւ թէ նրա յաջորդ Մահմադ-շահի օրերում պարսից Դուան արքունի բժիշկը հայազգի Դաւիթ-խան Մկրտչեան կարպեցին էր, ասպես եւ նշանակիր Արեգական եւ Առիւծոյ[1]։ Գոնէ յիշէին այդ նշանաւոր մարդու անունը, որ, բացի բժշկութիւնից, պարսից Դուան ազդեցութիւն ունեցող անձինքներից մէկն էր։

Վերջապէս, հայր Բէկնազարեանը վախճանվում է (1828 թ.) եւ նրա մարմինը հանդիսաւոր կերպով թաղվում է Թաւրիզի հայոց եկեղեցու գաւթում։ Որդին այդպէս է նկարագրում հօր թաղման հանդէսը։

"Ես չեմ կարող նկարագրել այս տեղ այն դառն վշտերը եւ անփարատելի ցաւերը, զորս պատճառեց

[1] "Խամսայի Մելիքութիւնները„ եր. 270։ "Պատմութիւն Պարսից„ Մ. Դ. Թաղիադեանցի հատ. Ա. եր. 250։

*ինձ հօրս մահն: Բայց այսու ամենայնիւ սակաւ մխիթարութիւն զգացի յուղարկաւորութեան հանդիսի փառաւորութեամբն, որը կարգադրած էր բարեխնամ Աբաս-Միրզան (պարսից թագաժառանգը): Յուղարկաւորութեան հանդէսն կատարուեցաւ զ ի ն ո ւ ո ր ա կ ա ն կ ա ր գ ա ւ, ուր ներկայ էին շատ բարձր զինուորականք, ինքն Աբաս-Միրզան եւ բոլոր հայ ժողովուրդն (հայ հոգեւորականներ չկան): Հօրս մարմինը ամփոփուեցաւ Թաւրիզի Հայոց եկեղեցւոյ գաւթում, կից Մելիք-Աբովեան մելիք ժառանգ Ռոստամ-բէկի գերեզմանին„* (եր. 390):

Թողնենք այն, որ պարսից կրօնի տրամադրութեամբ թաղումը նկատվում է իբրեւ մի հոգեւոր խորհուրդ եւ նրա վրայ զինուորական հանդէսներ չեն կատարվում: Թողնենք եւ այն, որ Աբաս-Միրզան, պարսից թագաժառանգը, որ աւելի մեծ ազդեցութիւն ունէր, քան թէ թագաւորը, որքան եւ հայասէր լինէր, բայց դարձեալ իրան թոյլ չէր տայ Աբրահամ Բէկնազարեանի թաղման հանդէսին ներկայ լինել: — Նկատենք միայն այն, թէ ի՞նչ մի տարաբախտ ժամանակ էր 1828 թուականը Պարսկաստանի համար, արդեօք Աբաս-Միրզան ժամանակ ունէ՞ր Աբրահամ Բէկնազարեանի թաղման հանդէսներով զբաղուելու, երբ նոյն իսկ Պարսկաստանը մահուան տագնապի մէջ էր, երբ նոյն իսկ Պարսկաստանը մօտ էր իւր գերեզմանին...:

Այդ այն ժամանակն էր, որ Աբաս-Միրզայի սիրելի զօրքերը խորտակուել էին Պասկեւիչի առջեւ, իսկ ռուսաց յաղթական զօրքերը գրաւել էին Ատրպատականի հայաբնակ գաւառները: Այդ այն ժամանակն էր, որ Թաւրիզը, Աբաս-Միրզայի աթոռանիստ քաղաքը, նոյնպէս գրաւուած

էր ռուսաց զօրքերով։ Այդ այն ժամանակն էր, որ դու-խուրղանեան եւ ապա Թուրքման-չայի դաշնադրութիւններից յետոյ, Աբաս-Միրզայի եւ Պասկեւիչի մէջ, Պարսկաստանը կորցնում էր իւր Անդրկովկասեան գաւառները, Երասխը դառնում էր սահմանագիծ, եւ Պարսկաստանը ենթարկվում էր քսան միլիօն ղռուան պատերազմական տուգանքի։ Եւ, վերջապէս, այդ այն ժամանակն էր, որ Պարսկաստանը, կորցնելով իւր ամենաբարեբեր երկրները, կորցնում էր, միեւնոյն ժամանակ, իւր ժողովրդի մի արգիւնաւոր մասը — հայերին։ Ղազարոս Լազարեանը ամենայն փութաջանութեամբ Պարսկաստանի հայ գաղթականների ստուար խումբերը անց էր կացնում դէպի Երասխի միւս կողմը, ռուսաց հողի վրայ։ Եւ հայերի գաղթականութիւնը աւելի հոգսեր էր պատճառում Աբաս-Միրզային, քան թէ պարսկական երկրների կորուստը։ — Այդ խառնաշփոթ, տագնապալի ժամանակներում, որ տեւեց երկու տարի (1827—1828) ծիծաղելի եւ աւելի քան ծիծաղելի կը լինէր մտածել, թէ Փաթալի-շահը զբաղուած էր մի որ եւ է Աբրահամ Բէկնազարեանի հիւանդութիւնով, իսկ Աբաս-Միրզան նրա թաղման հանդէսով... քանի որ, նրանք շա՛տ եւ շա՛տ ուրիշ վէրքեր ունէին դարմանելու....։

Ես Թաւրիզը շատ անգամ եմ տեսել, իսկ վերջին ժամանակներում, երկու տարի շարունակ, տեղային հայոց դպրոցում վարժապետութեան պաշտօն էի վարում։ Եկեղեցին կից է դպրոցին։ Շատ անգամ հետաքրքրուել եմ այդ եկեղեցու գաւթում դրած գերեզմաններով, որոնց թւում գտնվում է եւ իմ հարազատը... Այնտեղ ես գտայ Մեսրոպ Թաղիադեանցի կնոջ գերեզմանը՝ իւր մարմարիօնի շիրիմով եւ անբախտ բանաստեղծի սրտառուչ

պարսից Թագաւորների Դուռը։ Հայրը զինուորական է։ Բայց զինուորականները, ինչպէս ամեն պետութեան մէջ, նոյնպէս և Պարսկաստանում, զանազան աստիճաններ ունին։ Արդեօք Հայր Բէկնազարեանը սուլթան էր, եավար էր, սարհանգ էր, սարթիփ էր, միր-փանջ էր, սըփահ-սալար էր, — ի՞նչ էր, դրանք են պարսից զինուորական աստիճանները։ Նա մինչև անգամ խանութեան տիտղոս չունի։ Բայց յանկարծ տեսնում ենք նրան 10.000 զինուորների հրամանատար... Որդի Բէկնազարեանը պարսից շահերի «Գ ա ղ տ ն ի  ն ա մ ա կ ա գ ի ր» է։ Ի՞նչ է նշանակում գաղտնի նամակագիր։ Այս տեսակ պաշտօն չկայ Պարսից Թագաւորների արքունիքում։ Ինչպէս ամեն Թագաւոր, նոյնպէս և պարսից Թագաւորը, ունի զանազան կոչումներով և զանազան բաժանմունքներով վէզիրներ (մինիստրութիւններ) և իւրաքանչիւրի պարապմունքը որոշուած է։ Իսկ Այրես Բէկնազարեանը միշտ մնում է Այրես, ոչ մի տիտղոս չէ ստանում, բայց, մի և նոյն ժամանակ, կառավարում է պարսից Թագաւորների ամբողջ պետական բարձր գիւանը...։

Ինչո՞ւ Մակար վարդապետը չէ կամեցել իւր ստեղծած Բէկնազարեաններին մի որ և է տիտղոս տալ։

Շատ պարզ է՝ Թէ ինչո՛ւ։ Եթէ, օրինակ, Մակար վարդապետը կոչէր Աբրահամ Բէկնազարեանին՝ «Իբրահիմ-խան սարթիփ, — գեներալ-Աբրահամ-խան, — իսկ նրա որդի Այրես Բէկնազարեանին՝ պարսկական անունով՝ «Աֆրիս խան-ամիր-դիւանխանայի-աղամ», այսինքն՝ Այրես-խան-պետ-բարձր-դիւանի, (որպէս և համարում է նրան Մակար վարդապետը) — այդ դէպքում Բէկնազարեանները շատ կը խոշորանային և աչքի կ՚ընկնէին, այնուհետև դժուար կը լինէր նրանց Թագցնել։ Իսկ Մակար

վարդապետը կամեցել է երկու նպատակի միանգամից հասնել, մի կողմից՝ աշխատել է Բէկնազարեաններին այնպիսի երեւակայեան պաշտօնների մէջ մտցնել, որ կարողանան “Գաղտնիք„ի համար նիւթեր մատակարարել, իսկ, միւս կողմից՝ աշխատել է նրանց պահել փոքրութեան մէջ, որ յետոյ հեշտ լինէր կորցնել նրանց, որ հետքերը չերեւան, որպէս զի անկարելի լինի ստուգել՝ արդեօք այդպիսի անձնաւորութիւններ գոյութիւն ունեցե՞լ են, թէ ոչ։

Չնայելով Մակար վարդապետի բոլոր նախազգուշութիւններին, “Գաղտնիք„ի մէջ անգիտակցաբար սպրդած են այնպիսի յիշատակութիւններ, որոնք ոչ միայն երեւան են հանում Բէկնազարեանների ով կամ ինչ պաշտօնի տէր մարդիկ լինելը, այլ, մի եւ նոյն ժամանակ, առաջ են բերում անթիւ հակասութիւններ՝ այն բոլոր փաստերի նկատմամբ, որոնց վերայ հիմնուած է “Գաղտնիք„ը եւ որոնք այդ գրքի բովանդակութիւնն են կազմում։

Ժամանակ է լուծելու “Գաղտնիք„ի գաղտնիքը եւ ցոյց տալու այդ գրքի մի զոյգ երեւակայական հեղինակների ով լինելը։

Մակար վարդապետը ցանկացել է, որ “Գաղտնիք„ի մի զոյգ հեղինակները բնիկ ղարաբաղցիներ լինեն։ Նա որոնել է “Յոհաննէսի Մելիքութիւնների„ 270—272 երեսներում նշանակուած Ղարաբաղի հայազգի պաշտօնականների ցուցակը։ Նրանից [illegible] է երկու ղարաբաղցիների անուններ։ [illegible] մի ներքինի է Փոթայի-շահի կանանց [illegible] անունով, իսկ միւսը՝ [illegible]-շահի [illegible] բէկ անունով [illegible] եւ մահմեդական [illegible]

Բայց Մակար վարդապետը, իւր վրայ վստահ չլինելով, թէ նրանց կրօնափոխութիւնը կարող է ծածկել եւ իւր նպատակներին ծառայեցնել, — մէկին, Աղա-Իբրահիմ Ներքինիին, անուան մօտաւորութեան համար, դարձրել է Աբրահամ Բէկնազարեան, իսկ միւսին Ալահվէրդի բէկին՝ դարձրել է նրա որդի Ապրես Բէկնազարեան։ Մէկը “Գաղտնիք„ի սկսողն է, միւսը՝ նրա շարունակողը եւ վերջացնողը։

Բերենք “Գաղտնիք„ի վկայութիւնը.

“Մի օր հայրս ներկայացաւ Շահին — գրում է որդի Բէկնազարեանը — եւ հրաժեշտ տուաւ զինուորական ծառայութիւնից, պատճառաբանելով, թէ ինքն արդէն ծերացած էր եւ պէտք ունէր հանգստանալու։ Փաթալի-Շահն նախ շնորհակալութիւն յայտնեց հօրս, սորա Պարսից մատուցած ծառայութեանց համար, ապա նշանակեց ցմահ բաւարար թոշակ եւ ապա սոյն խօսքերով ն ե ր ք ի ն ա պ ե տ ո ւ թ ի ւ ն ը յանձնեց հօրս. “Յաճախ անկարգութիւններ են ծագում մեր անպիտան ներքինեաց եւ կանանց մէջ. վասն որոյ մենք ցանկանում ենք քեզ նման մի ազնու մարդ ն ե ր ք ի ն ա պ ե տ ունենալ, որով կը դադարին ամեն անկարգութիւն եւ խռովութիւն։ Մեր օրինաց նկատմամբ ներքինապետութիւնն մեծ եւ պատուաւոր պաշտօն է, քանզի շահական ներքին պատուոյ հսկողութիւնն է եւ հաւատարմապահութիւնն։ Նոյնպէս մեր օրէնքն արգելում է վստահել այդ պաշտօնն չներքինացած մարդոյ. բայց որովհետեւ ժամանակն արդէն զձեզ ներքինացած է, մենք այնպէս կը հաշուենք, որ մենք նախ ներքինացնել տուած եւ ապա ձեզ յանձնած ենք . 309)։

Պարսկաստանում ներքինիացնելը կատարվում է երկու նպատակով. մէկը՝ քաղաքական նպատակով, որ նա ժառանգներ չթողնէ, ինչպէս, օրինակ, Աղա-Մամադ-շահը ներքինիացրած էր, — միւսը՝ հարեմական նպատակով: Թէ առաջինը եւ թէ երկրորդը կատարվում են մանկութեան հասակում, երբ մանուկը տակաւին անչափահաս է:

Եւ այդ ընդունուած սովորութիւնների համեմատ, տարակոյս չկայ, որ Աբրահամ Բէկնազարեանը պէտք է ներքինի դառնար նոյն հասակում, որ փոքր առ փոքր վարժուելով, կանանոցի կարգերի հետ ծանօթանալով, այնքան մեծանար, որ վերջը մինչեւ ներքինապետի աստիճանը բարձրանար:

Այն հանգամանքը, — այսինքն Աբրահամ Բէկնազարեանի մանկութիւնից Փաթալի-շահի կանանոցի մտնելը եւ այնտեղ ներքինի լինելը, — միանգամայն ոչնչացնում է “Գաղտնիք„ի ամբողջ շէնուածքը եւ իսպառ հերքում է այն բոլոր երեւակայական սխրագործութիւնները, որ այդ գրքում կապուած են Ա. Բէկնազարեանի անձնաւորութեան հետ:

Ինչու:

Նրա համար որ, Փաթալի-շահի կանանոցի Աղա-Իբրահիմը մի յայտնի անձնաւորութիւն է: Նա, ինչպէս վերեւում յիշեցի, Աղա-Մամադ-շահի Ղարաբաղից 1795 թուին տարած գերիներից էր: Այդ թուականում նա դեռ 10—15 տարեկան մանուկ էր: Յետոյ ներքինի դարձաւ: Այժմ “Գաղտնիք„ից բերած վկայութիւնից հաստատվում է, որ Աբրահամ Բէկնազարեանը եւ յիշեալ Աղա-Իբրահիմ ներքինին մի եւ նոյն անձնաւորութիւններն են: Եթէ այդպէս է, ուրեմն ինչպէս կարող էր նա 1680 թուականներում աշակերտած լինել Գանձասարի

Ներսէս կաթողիկոսի մօտ եւ “Գաղտնիք„ի համար պատմական նիւթեր ընդօրինակել[1]։ Ահա 1795 թուականի եւ 1680ական թուականների մէջ 115 տարուայ տարբերութիւն կայ։ Եթէ այդ 15 տարին տանք Աբրահամ Բէկնազարեանի հասակին, երբ նա Ղարաբաղից գերի տարուեցաւ Պարսկաստան, — 100 տարին բոլորովին բաց է մնում, եւ այդ 100 տարուայ ընթացքում՝ դեռ չծնուած Բէկնազարեանի գործերը, որոնք ընդարձակ տեղ են բռնում “Գաղտնիք„ի մէջ, ինքն ըստ ինքեան ջնջւում են, ինքն ըստ ինքեան ոչնչանում են, եւ դրանք մնում են միայն իբրեւ Մակար վարդապետի երեւակայութեան ողորմելի արգասիք...։

Կրկնում եմ, Աբրահամ Բէկնազարեանի եւ Փաթալի-շահի կանանոցի Աղա-Իբրահիմ ներքինիի մի եւ նոյն անձնաւորութիւններ լինելը՝ միանգամայն տակնուվրայ է անում “Գաղտնիք„ի ամբողջ շինուածքը եւ նրա ամբողջ բովանդակութիւնը դարձնում է բոլորովին կեղծ եւ առասպելական յօրինուածք։ Ես զարմանում եմ, թէ ինչպէս Մակար վարդապետը չէ նկատել այդ, եւ իրան թոյլ է տուել մի այդպիսի անհամեմատ խոշոր հակասութիւն։

Աղա-Իբրահիմ ներքինին, մանկութիւնից Պարսկաստան տարուած, կրօնը փոխած, մի մոլեռանդ մահմեդական էր, թէեւ ծագումով հայ։ Նա իրան բոլորովին հեռու էր պահում հայերից, եւ մեռաւ մահմեդականութեան մէջ, մարմինը տարուեցաւ Քարբալա։

Իսկ Աբրահամ Բէկնազարեանը “Գաղտնիք„ի մէջ ներկայանում է՝ իբրեւ մի քաջ հերոս, որ պատերազմում է իր հայրենիքի փրկութեան համար, որ աշխատում է վերականգնել Ղարաբաղի ընկած մէլիքութիւն-

[1] Տես Բ. գլուխ։

ները, որ գրում է ժամանակի պատմութիւնը, որպէս զի իբրեւ խրատ թողնէ ապագայ սերունդներին, — եւ յանկարծ դուրս է գալիս, որ այդ երեւելի ազգասէրը ուրիշ ոչ ոք չէ, եթէ ոչ, մի թշուառ, մահմեդականացած ներքինի, Փաթալի-շահի կանանոցում, որի համար ոչ հայոց ազգ կայ եւ ոչ հայոց հայրենիք...։

Մակար վարդապետը այնքան մոռանում է իրան, որ այդ մահմեդական ներքինիի մարմինը տանում է՝ թաղել է տալիս Թաւրիզի հայոց եկեղեցու գաւթում, եւ մինչեւ անգամ Աբաս-Միրզային, Պարսկաստանի թագաժառանգին, հրաւիրում է թաղման հանդէսին ներկայ լինել... Ո՜վ թոյլ կը տար։ Մի հայ, որ կրօնը փոխել է, եթէ տեսնելու լինեն նրան մի այլ հայի հետ խօսելիս, կամ հայի տուն մտնելիս, իսկոյն մահմեդականները կը քարկոծեն, ուր մնաց, որ նրա մարմինը թոյլ տային հայոց եկեղեցու գաւթում թաղելու։

Այդ բոլորը, թէ Աբրահամ Բէկնազարեանին Փաթալի-շահի կանանոցում իբրեւ քրիստոնեայ պահելը եւ թէ նրա մարմինը հայոց եկեղեցու գաւթում թաղել տալը, — ես վերաբերում եմ Մակար վարդապետի, որպէս կրօնաւորի, քրիստոնէական ջերմեռանդութեանը, բայց այս տեսակ ջերմեռանդութիւններ պատմութեան համար ոչինչ նշանակութիւն չունին։

Նոյն ջերմեռանդութիւնը Մակար վարդապետը գործ է դնում եւ Աբրահամ Բէկնազարեանի որդի Ալբերտի վերաբերութեամբ եւ նրան [illegible]...
բայց իսկոյն կը տեսնենք, որ [illegible] մարմինը նոյնպէս իւր հօր նման, [illegible]

Ալբերտ [illegible]
եւ վերջացնող [illegible]

Թուրքն Մակար վարդապետին յանձնող հեղինակը, յանկարծ մի եւ նոյն գրքում ներկայանում է Ալահվէրդի կամ Ալահվէրդի-բէկ անունով։

“Չմոռանամ ասել որ հայրս կոչվում էր Իբրահիմ-Աղա, իսկ ես կոչվում էի “Միրզա-Ալլահվէրդի,, սակայն յաճախ գործածական էր իմ նախկին “Ալլահվէրդի-Բէկ,, անունն,, (եր. 312)։

Որտեղից առաւ նա այդ մահմեդական անունը եւ ինչու։

Այդ հարցին կը պատասխանէ ինքը Ալլես Բէկ-նազարեանը.

“Իսկոյն (Աղա-Մամադ-շահն) զիս որդեգրելով ասաց. “Սիրուն եւ անմեղ փոքրիկ, դու այդ մանկական հասակում ցանկացած ես Շահը տեսնել: Աղա-Մամադ-խանն այնքան ապաշնորհ չլինիր, որ քո այդ ազնիւ փափագը ըստ արժանոյն գնահատել չգիտենայ: Դու այսուհետեւ Աղա-Մամադ-խանի հոգեւոր որդին ես, բայց այն պայմանաւ, որ դու անխախտ պահես քո պապենական հաւատը, լեզուն: Յետոյ իմ Ալլես անունը “Ալլահվէրդի,, փոխեց, իբր թէ ինքն ներքինի եւ անզաւակ գոլով՝ Աստուած պարգեւեց իրան մի որդի Աստուածատուր անուամբ,,[1] (եր. 136)։

Մակար վարդապետը այնպէս թեթեւ կերպով է վերաբերվում պատմական փաստերին, կարծելով թէ, ինչպէս որ ինքը ցանկանում է, այնպէս եւս կարող էր լինել։

---

[1] Ալլահվէրդի թուրքերէն նշանակում է Աստուածատուր։ Աղա-Մամադ-խանը պարսկերէն էր խօսում, նա թուրքերէն չգիտէր. եթէ յան-[illegible]ւր անուան համեմատ մի անուն տալ Ալլես Բէկնա-[illegible]զատ կը կոչէր եւ ոչ Ալլահվէրդի։

## Ե.

*Այն բազմաթիւ փաստերը, որ առաջ բերուեցան նախընթաց գլուխներում, կարծեմ, բաւական պէտք է համարուին՝ ապացուցանելու համար, որ "Գաղտնիք„ի մի զոյգ հեղինակները — հայր եւ որդի Բէկնազարեանները — բոլորովին երեւակայական անձնաւորութիւններ են, եւ թէ՝ այդ գիրքը Մակար վարդապետի աշխատութիւնն է, որի վրայ մի հին դրոշմ դնելու նպատակով, կնքել է Բէկնազարեանների անունով։*

*Այժմ պէտք է նայել "Գաղտնիք„ի վրայ, որպէս Մակար վարդապետի հեղինակութեան վրայ։*

*Որպէս մի պատմական աշխատութիւն, հարկաւոր է նախ որոշել, թէ ինչ մասներից է կազմուած "Գաղտնիքը„ը։ Այդ հազիւ թէ կարելի կը լինէր, որովհետեւ գրքի մէջ բաժանմունքներ չկան։ Հեղինակը ինչ որ գտել է, ինչ որ երեւակայել է, ի տեղի եւ անտեղի՝ կարկատել է միմեանց հետ, առանց դասաւորութեան եւ առանց կարգի։ Այսպիսով առաջ է եկել այն բաբելական խառնաշփոթութիւնը, այն անցքերի եւ շատախօսութիւնների մթին քաօսը, որ ընթերցողին մոլորութեան մէջ է գնում, թէ ո՞րտեղից է սկսւում այդ գիրքը եւ ո՞րտեղ է վերջանում։ Այսուամենայնիւ, որպէս զի հնար լինի փոքր ի շատէ պարզ գաղափար տալ "Գաղտնիք„ի բովանդակութեան մասին, կարելի է նրան մօտաւորապէս այսպէս բաժանել.*

*1. Մի պատկեր, որ ներկայացնում է Ճուշի բերդի պաշարումը Աղա-Մամադ-շահից։*

*2. Ժամանակագրական յիշատակարան զանազան պատմական անցքերի։*

3. Պաշտօնական թղթակցութիւններ, պայմանագրեր եւայլն։

Սկսենք պատկերից։

Բայց նախ հարկաւոր է ծանօթացնել մի քանի պարագաների հետ, որպէս զի հասկանալի լինին պատկերի մանրամասները։

Շուշի բերդից երկու ժամ հեռաւորութեան վրայ գտնվում է Խնածախ գիւղը։ Մակար վարդապետը այդ գիւղացի է։ Նա ցանկացել է անմահացնել իւր ծննդավայրը եւ նրան Ղարաբաղի մելիքների պատմութեան մէջ մի փայլուն դեր տալ։ Բայց դժբախտաբար Խնածախը թէ իւր դիրքով եւ թէ իւր սեւ անցեալով այն յարմարութիւնները չէ ունեցել, որ Մակար վարդապետի փափագներին լիակատար բաւականութիւն տար։ Իսկ այդ բնաւ չի յուսահատացրել հայր սուրբին։ Նա գիւղի դիրքը կարողացել է ամրացնել. Նրա շուրջը անմատչելի լեռներ է ստեղծել եւ այդ լեռները պատել է կաղնիների խիտ անտառով։ Նոյն լեռների մէջ գտնուել է մի ընդարձակ այր, որ կոչվում է "Ծակ-Քար", եւ որը վտանգի ժամանակ կարող է պատսպարել իւր մէջ մի քանի հարիւր հոգի[1]։ Գիւղը արդէն պատերազմական բոլոր յարմարութիւնները ստացաւ, բայց ի՞նչ անել գիւղացիների անցեալի հետ։

Թէ Խնածախը եւ թէ նրա մերձակայ Բալուջայ գիւղը՝ երկուսն էլ Շուշի բերդի Իբրահիմ-խանի կալուածներն են — այն Իբրահիմ-խանի, որ Ղարաբաղի մելիքութիւնների կործանման պատճառը դարձաւ, եւ որը դեռ շարունակում է պատերազմել մելիքների հետ։ Իսկ այդ

[1] Այդ այրը ես տեսել եմ, նրա մէջ երեք, թէ չորս հոգուց աւելի մարդիկ չեն կարող պատսպարուել։

երկու գիւղերում գետեղուած են այն բոլոր փախստականները, որոնք դաւաճանել են հայոց մելիքներին եւ անցել են նրանց թշնամի Իբրահիմ-խանի կողմը։ Հիմա ի՞նչպէս անել, որ մի կողմից կարելի լինի ծածկել դաւաճանութեան արատը, որ դրած է յիշեալ գիւղացիների վրայ, իսկ միւս կողմից, նրանցից հայրենիքի պաշտպանութեան համար հերոսներ ստեղծել։

Մակար վարդապետի հնարագիտութեան տաղանդը այդ դէպքում եւս անճար չէ մնացել. Նա յօրինել է մի դաշնագիր յիշեալ գիւղացիների եւ Իբրահիմ-խանի մէջ։ Ես կը բերեմ այդ դաշնագրի հետաքրքիր յօդուածները, որովհետեւ դրա նման են “Գաղտնիք„ի մէջ արձանագրուած բոլոր դաշնագրները։

Ա. “Ջրաբերդից Խաչէն տեղափոխուող “ք ա ջ ե ր ի ն„ տան գլուխ վճարեց Իբրահիմ-խանը ե ր ե ք հ ա ր ի ւ ր թ ու մ ա ն իբրեւ նոր շինութեան ծախք եւ հնոց կարասինները նորերի մէջ փոխադրելու վարձ„։

Բ.րդ յօդուածը որոշում է երկու գիւղերի սահմանները, հողերի տարածութիւնը, որ տալիս է Իբրահիմ-խանը “ք ա ջ ե ր ի ն„, իբրեւ մշտական սեպհականութիւն՝ յորդւոց յորդիս։

Գ. “Ոչ Իբրահիմ-խանն իրաւունք ունի “ք ա ջ ե ր ի ց„ եւ սոցա յետագայներից պահանջել տուրք կամ գլխահարկ եւ կամ տասանորդ, ոչ այս խանի յետագայներն, եթէ կը լինէին„... (Ղարաբաղի տիրապետողը յոյս չունի, որ ինքն յետագայներ կ'ունենայ եւ այդ գրում է պայմանի մէջ)...։

Դ. “Ոչ ոք իրաւունք կ'ունենայ պահանջել այս “ք ա ջ ե ր ի ց„ ոչ զօրք եւ ոչ զօրադրամ„։

Ե. “Միայն թէ այդ “քաջերն„ ընաւ չմասնակցէին մելիքների պատերազմներին եւ զինէին ընդդէմ խանին„ (եր. 117—118)։

Այդ “քաջերը„ իբր թէ Ջրաբերդի Մելիք-Աթամի զինուորներն են եղել եւ խանը, նրանց կաշառելով, գաղթեցրել է Ջրաբերդից[1]։ Իսկ Ջրաբերդի իշխող Մելիք-Աթամը հաճութիւն է տալիս նրանց տեղափոխութեանը, հաւատացած լինելով, որ “քաջերը„ դարձեալ իւր օգտին կը ծառայեն։ “Քաջերը„ եւս իրանց կողմից յանձն են առնում այդ երկերեսանի դերը, մի կողմից խաբել միամիտ Իբրահիմ-խանին (շատ միամիտ էր...) եւ վայելել նրա առատ բարիքները, իսկ միւս կողմից, նպաստել հայոց մելիքների շահերին եւ այլն (եր. 118)։

Բանը չինուեցաւ։

Ղարաբաղի մելիքութիւնները ոչնչացնող Իբրահիմ-խանը, որ գոռոզութեամբ մի կողմից եղջիւր էր ածում ռուսաց զօրութեան դէմ, միւս կողմից, պարսից շահերի դէմ, — այն աստիճան տկարանում է մի քանի գիւղա-

---

[1] Գոնէ Նոր Խնածախ անունը պէտք է փոքր ի շատէ զգայէր Մակար վարդապետի վստահութիւնը՝ պատմութիւնը այդպէս համարձակ կերպով զեղծելու մէջ։ Եթէ այդ գիւղը Նոր Խնածախ է, ուրեմն եղել է եւ Հին Խնածախ։ Որպէս ղարաբաղցի, անկարելի է, որ Մակար վարդապետին յայտնի չլինէր, որ Հին Խնածախը գտնվում է Ջանգազօրի գաւառում, որ եւ կոչվում է Քշտաղի Խնածախ, եւ որը Մելիք-Հայկազեանների գիւղն էր։ Այստեղից գաղթեցին Մակար վարդապետի հայրենակիցները եւ հիմնեցին Նոր Խնածախը, պահպանելով իրանց գիւղի նախկին անունը։ Ուրեմն ինչպէս կարող էին լինել նրանք Ջրաբերդի գաւառից գաղթածներ, կամ այդ գաւառի տիրապետող Մելիք-Աթամի զինուորներ։ Թէ Ղարաբաղում, թէ Ղափանում եւ թէ Սիսիանում շատ կան նոյնանուն գիւղեր. որ զանազան պատմական հանգամանքների պատճառով, մէկ գաւառից գաղթել են դէպի միւսը, նոր գիւղ են հիմնել եւ իրանց հին գիւղի անունով են կոչել։

ցիների առջեւ, եւ այն աստիճան յիմարանում է, որ Մակար վարդապետի շնորհիւ՝ մի այդպիսի պայման է կապում «քաջերի» հետ։ Ի՞նչ կարօտութիւն ունէր նա մի քանի թափառական գիւղացիների մէջ, երբ այդ ժամանակ նա ամբողջ Ղարաբաղի տէրն եւ իշխանն էր համարվում։ Եւ երբ Ղարաբաղի նախկին տիրապետող մելիքները, չկարողանալով տանել նրա բարբարոսութիւնները, արդէն իրանց ժողովրդով սկսել էին գաղթել դէպի օտար երկրներ (եր. 115—116)։

Հետաքրքիրն այն է, որ յիշեալ պայմանագիրը գրվում է եւ վաւերանում է մի եւ նոյն տարւոյ մէջ եւ միեւնոյն ժամանակ (1770 թ. մայիսի 10ին), երբ այդ մի բուռն «քաջերը» կոտորում են Իբրահիմ-խանի զօրքերը եւ նրան իւր կուսակից հայ մելիքների հետ փախցնում են Շուշի բերդը... (Համեմատեցէք 65 եւ 119 երեսները)։

Վերջապէս, «քաջերը» ստանում են Իբրահիմ-խանի խոստացած փողերը, հիմնում են Խնածախ եւ Բալլուջա գիւղերը։ Առաջինի մէջ բնակութիւն են հաստատում 50 ընտանիքներ, իսկ երկրորդի մէջ 70 ընտանիքներ։ Ընդամենը 120 ընտանիք։

Հաշուենք, թէ որքա՞ն ծախսեց Իբրահիմ-խանը այդ 120 ընտանիքը գաղթեցնելու համար։

Իւրաքանչիւր ընտանիքին տուեց 300 թուման պարսից ոսկի։ Ուրեմն 120 ընտանիքը ստացաւ 36.000 ոսկի։ Եթէ այդ գումարը վերածենք ռուսաց ռուբլու (իւրաքանչիւր ոսկին $3\frac{1}{2}$ ռուբլի հաշուելով) կը ստանանք 126.000 ռուբլի։ Այդ գումարով կարելի էր այն ժամանակ (1770 թ.) ամբողջ Ղարաբաղը գնել։

Ցոյց տալու համար Մակար վարդապետի թուանշանների փաստական շռայլութիւնը, աւելորդ չէր լինի մէջ

բերել մի փաստ, թէ որքան սուղ էր փողը այդ ժամանակներում։

Յիշեալ երկու գիւղերի հիմնուելուց 58 տարի յետոյ (1828 թ.), երբ համեմատաբար դրամի աւելի առատութիւն պէտք է լինէր, ռուսաց կառավարութիւնը Պարսկաստանից դէպի Անդրկովկաս գաղթեցրած 8249 հայ ընտանիքների վրայ, Ղազարոս Լազարեանի ձեռքով ծախսեց ընդամենը 14.000 ոսկի եւ 400 ռուբլի միայն, եւ այդ գումարը կոմս Պասկեւիչը չափազանց էր գտնում[2]։ Ռուսաց կառավարութեան այդ ժամանակուայ դրամական միջոցները յայտնի են։ Միայն 20 միլիոն կռան պատերազմական տուգանք դրեց Պարսկաստանի վրայ, երբ տեղափոխւում էր այդ գաղթականները։ Եւ այդ գումարի մի մասը արդէն ստացել էր։ Այսուամենայնիւ, 14.000 ոսկին շատ էր գտնում 8249 ընտանիքի տեղափոխութեան համար, այն եւս Պարսկաստանից Անդրկովկաս։ Ո՜րքան հեռաւորութիւն։ Իսկ Իբրահիմ-խանը իւր բոլոր չքաւորութեամբ, Ջրաբերդից մինչեւ Խաչէն (մի օրուայ ճանապարհ է) 120 ընտանիք գաղթեցնելու համար ծախսում է 36.000 պարսկական ոսկի, — 126.000 ռուբլի... Ստախօսութիւնը եթէ փոքր ինչ չափաւոր լինէր, այդքան զզուելի չէր լինի։

Երբ Իբրահիմ-խանը մտաւ ռուսաց հպատակութեան ներքոյ, Քուրակ-չայի դաշնագրից յետոյ իշ. Ցիցիանովի հետ (1805 թ.), նա խոստացաւ ամբողջ Ղարաբաղից

[1] Մակար վարդապետը Պարսկաստանից տեղափոխած հայ գաղթականների թիւը դնում է 26.000 գերդաստան (եր. 382)։ Դարձեալ փառատոսեան չափազանցութիւն...։

[2] Տես Ղազարոս Լազարեանի 1829 ամի 24 դեկտեմբերի զեկուցումը, որ մատուցած է կոմս Պասկեւիչին։ "Նկարագիր գաղթականութեան հայոց Պարսկաստանէ ի Ռուսաստան„ եր. 94։ Տպուած է Մոսկուայում 1832 ամի։

իբրեւ հարկ վճարել ռուսներին 8000 ոսկի միայն։ Վերջը այդ գումարը վճարել չկարողացաւ, խոստացաւ ձիաներ տալ, այն եւս տալ չկարողացաւ։ Իսկ 1770 թուին որտեղից ունէր Իբրահիմ-խանը այնքան ոսկիներ, որ տար Մակար վարդապետի հայրենակիցներին, եւ ինչու համար . . .

Թէ այդպէս, թէ այնպէս, Խնածախը հիմնվում է։ Այդ գիւղը, որպէս վերեւում յիշեցի, թէ՛ Մակար վարդապետի, եւ թէ՛ "Գաղտնիք„ի հեղինակ հայր եւ որդի Բէկնազարեանների ծննդավայրն է։

Խնածախի հիմնուելուց 25 տարի յետոյ (1795 թ.) Աղա-Մահմադ-շահը պաշարում է Շուշի բերդը, որը յիշեալ գիւղից 2 ժամուայ հեռաւորութեան վրայ է։ Այդ միջոցին դուրս են գալիս մի խումբ խնածախցի "քաջեր„ եւ հրաշքներ են գործում։ Հետաքրքիր են այդ "քաջերի„ անունները։ Այդ պատճառով ես աւելորդ չեմ համարում անունները մի առ մի յիշել, որովհետեւ հէնց անունների մէջն է նրանց քաջութեան նշանաբանը։

1. Խումբի գլխաւորը, նոյն ինքն "Գաղտնիք„ի հեղինակ Աբրահամ Բէկնազարեանն է։ Նա կոչվում է Աղայէլ-Իբրահիմ„[1] յետոյ իւր անհամեմատ քաջագործութիւնների համար կոչուեցաւ "Հրաշագործ-Աղայէլ„ (եր. 162)։ — Աղայէլ կոչվում է սարարացւոց հողէառ հրեշտակը։ Դա անգութ, կոտորող եւ ոչնչացնող մի ոյժ է։ Գոնէ իւր անուան վերաբերութեամբ պէտք էր, որ "Գաղտնիք„ի հեղինակը փոքր ինչ համեստ լինէր։

---

[1] Բոլոր անունների եւ մականունների մէջ՝ Մակար վարդապետը միայն 19 անուն է բացատրում, բայց ես չհասկեցի նրա բացատրութիւններին, որովհետեւ ինքն եւս չգիտէ իւր հնարած մականունների իսկական նշանակութիւնն։

2. “Գիւլ-Ուհան„[1] — նշանակում է Գայլ-Օհան: Դա այն յատկութիւններն ունի, որ աչքերը գայլի նման գիշերուայ մութի մէջ տեսնում են, գայլի նման ոռնում է եւ իւր ընկերներին զանազան ազդարարութիւններ է անում, իսկ կռիւների միջոցին՝ գայլի նման լափում է թշնամուն (եր. 63):

3. “Ասլան-Մանուչար„, — նշանակում է՝ Առիւծ-Մանուչար: “Սա ունի առիւծի յատուկ վեհանձնութիւն, աներկիւղ սիրտ, լայնալանջ կուրծք, անհանջելի յարձակումն, անդիմադրելի ուժգնութիւն, չափազանց ուժ„ եւայլն (եր. 66, 67):

4. “Շիր-Նասիպ„, — նշ. Առիւծ-Նասիպ:

5. “Պէպլուռ-Մախմուր„, — “բարր„ պարսկերէն նշանակում է վագր, իսկ Մախմուր անուն է:

Ուշադրութիւն դարձրէք 2ից մինչեւ 5րդ մականունների վրայ, — գայլ, առիւծ եւ վագր — գազաններից առնուած են ամենակատաղիները:

6. “Օշափ-Բաղդասար„, — նշանակում է՝ Վիշապ-Բաղդասար: Վիշապների նման նա սարսափ է ձգում թշնամիների վրայ եւ վիշապների նման կլանում է նրանց բազմութիւնը (եր. 66):

7. “Աժդահա-Անդրի„, — նշանակում է՝ Աժդահակ կամ Վիշապ-Անդրէաս: “Այս բարձրահասակ, յաղթանդամ, ուժեղ եւ արիասիրտ տղամարդը„ վիշապի

---

[1] Ես բոլոր անունների ուղղագրութիւնը թողեցի նոյն ձեւով, որպէս գրել է Մակար վարդապետը: Հայր սուրբը Տաճկաստանում սնուած լինելով իւր կրթութիւնը եւ երկար ժամանակ այնտեղ մնալով, գործ է ածում Տաճկաստանի հայերի ուղղագրութիւնը բ-ի տեղ պ, դ-ի տեղ տ, ջ-ի տեղ ճ. եւն: Դա արդէն պարզ նշան է, որ “Գաղտնիք„ը գրել է Մակար վար- - եւ ոչ Բէկնազարեանները, որոնք, հարկաւ. տաճկահայոց սխալներ կամ ուղղագրութեանը չէին հետեւի:

կլանող յատկութիւններն ունի, թշնամու ամբողջ գունդերը վիշապի նման անհետացնում է (եր. 67):

8. “Տահմար-Ղաւալ„, — Տահմար նշանակում է օձերի թագաւոր. հէքաթների մէջ այդ հրէշը իր հայեացքովը անգամ թունաւորել կարող է: Իսկ “Ղաւալ„ անուն է, թէեւ թմբուկ բառի նշանակութիւնն եւս ունի (եր. 70):

Ուշադրութիւն դարձրէք 6ից մինչեւ 8րդ նոյնանշան երեք մականունների վրայ, որոնք հսկայ օձեր, կամ օձերի թագաւորներ են ներկայացնում:

9. “Փիղ-Ռոււշան„, — Նշանակում է Փիղ-Ռովշան: — Ռովշան պարսկական անուն է: “Փիղ„ մականունը ստացել է այդ հսկան իր փղային ուժի պատճառով (եր. 70):

10. “Նէառ-Շղիադար„, — “Նառ„ պարսկերէն արու է նշանակում: “Նառ„ կոչվում են եւ արու ուղտերը, իսկ ժողովրդի հասկացողութեամբ այդ բառը չափազանց ուժեղութեան նշանակութիւն ունի:

Ուշադրութիւն դարձրէք 9ից մինչեւ 10րդ մականունների վրայ, խոշորամարմիններից ընտրուած են ամենահզորագոյնները, — փիղը եւ ուղտը, միայն գամէշը մոռացուած է....:

11. “Կեծակ-Վանի„, — Նշանակում է Կայծակ-Յովհաննէս: Դա կայծակի նման շանթահարում է թշնամու գունդերը եւ իր ձախը թրի մի հարուածքով թշնամիների գլուխները երկու հաւասար կէսերի է բաժանում, ոչ աւելի, ոչ պակաս [illegible]

12. “[illegible]„ — [illegible] նշանակում է Կարկուռ-Ն[illegible]

իւր հրացանի գնդակները կարկուտի նման թափում է թշնամու վրայ (եր. 67)։

Ուշադրութիւն դարձրէք 11 եւ 12րդ մականունների վրայ, երկնքի երկու պատուհաններն եւս բաց չեն թողուած — կայծակը եւ կարկուտը։

13. “Տէօվ-Գեասպար”, — նշանակում է Դեվ-Կասպար։ Դեվերը թէ պարսից եւ թէ հայոց առասպելների մէջ վիթխարի հսկաներ կամ քաջքեր են։ “Գաղտնիք”ի “Տէօվ-Գեասպարը” “ունի յաղթանդամ կազմուածք, սամսոնական ոյժ, առիւծական սիրտ, պողպատեայ բազուկներ” եւն (եր. 64)։

14. “Նէառռատէօվ Աթա”, — նշանակում է Հայր — Նառադեվ։ Դա հէքաթների մէջ պատմուած դեվերի կամ հրէշների եօթնագլխեան թագաւորն է։ Իսկական անունը Սահակ է։ “Սա ունի պարթեւական հասակ, արտաքոյ կարգի ոյժ, աներկիւղ սիրտ եւ այլն (եր. 68)։ Դա յետոյ կոչուեցաւ “Քաջայաղթ-Տրդատ” (եր. 278)։

15. “Աղնաւուր-Ուհան”։ — “Աղնաւուր” պարսից այբաժար բառի աղաւաղուածը պէտք է լինի, որ նշանակում է հրէշաւոր, այլանդակ, ճիւաղ։ Իսկ “Ուհան” Յովհաննէս անունն է։ Այդ անունը ստանում է նա Երասխ գետի ափերի մօտ կատարած զարմանալի յաղթութիւնների պատճառով (եր. 65, 66)։

Ուշադրութիւն դարձրէք 13ից մինչեւ 15րդ մականունների վրայ, բոլոր նշանաւոր առասպելաբանական հրէշները չեն մոռացուած։

16. “Քեալլակէօղ-Առստամ”, — “քալլադօղ” նշանակում է գագաթի վրայ մի հատիկ աչք ունեցող։
ն առասպելների մէջ համապատասխանում

"աշղ-ղարա" նշան. սեւ աշուղ։ Դա մի երգիչ է, որ իւր նուագարանը ցած է դրել. վեր է առել զէնքեր, սկսել է հայրենիքը պաշտպանել (եր. 69)։

Ուշադրութիւն դարձրէք 25ից մինչեւ 28րդ մականունների վրայ, որոնք արտայայտում են զէնքերի եւ զինակիրների տարօրինակ վիթխարութիւնը։

29. "Անյաղթ-Ղազար", — հասկանալի է։

30. "Անգութ-Խաչի", — հասկանալի է։ Խաչի Խաչատուր անուան կրճատուածն է։

31. "Քաչալ-Մօսի", նշ. քոսոտ Մովսէս։

Երբ որ քաչալը կայ, անպատճառ քոսակն էլ պէտք է լինի....։

32. "Քօսակ-Գիւգի", — նշ. քոսակ Գրիգոր։ Թէ քաչալները եւ թէ քօսակները ժողովրդի հասկացողութեամբ խորամանկ, հնարագէտ, նենգաւոր եւ ճարպիկ են լինում։

33. "Գիժ-Միքի", — նշ. գիժ Միքայէլ։ Պատերազմող անձանց վերաբերութեամբ "գիժ" մականունը ունի վայրագութեան նշանակութիւն, ինչպէս մեր Հայկ գիւցազնի հետ պատերազմող տիտաններին "խօլ" այսինքն խենթ անունն է տալիս պատմութիւնը։

34. "Դէլի-Մահրասա", նշ. գիժ-վարդապետ։ Բայց "դալի" բառը հէքեաթների մէջ [illegible] քաջի նշանակութիւն եւս ունի։ Դա[illegible] էին Քոր-օղլու թիկնապահները [illegible]

35. "Դէլի-[illegible]

36. "Պել-[illegible]

լեզւում նոյն միտքն [illegible]

քերի մէջ, նշանակու[illegible]

պայման քաջ։ Արդեօք [illegible]

պեհլեւան Բէլը կամ Նեբրովթը չէ՞, որ մնացել է մեր ժողովրդի մէջ։ — Ճամալ՝ աւելի ճիշտ՝ Ջամալ թուրքաց անուն է, որ գործ են ածում եւ Հայերը։ Բայց այդ Պել-Ճամալը մի զարմանալի տիպ է «Գաղտնիք»ի մէջ։ Մակար վարդապետը տուել է նրան մի երկրորդ անուն եւս — «Արագահաս-Սուրբ-Սարգիս» (եր. 278)։

Ուշադրութիւն դարձրէք 33ից մինչեւ 36րդ մականունների վրայ, բոլորը գժեր ու խենթեր են... ոչ մի խելացի չկայ այդ չորս անունների մէջ...։

37. «Ցէօնմազ-Բէլլու», — նշանակում է՝ մէջքը կամ թիկունքը յետ չդարձնող։ Այսպէս կոչվում է նա, այն պատճառով, որ երբէք առանց յաղթութեան յետ չէ դառնում կռուի դաշտից (եր. 68)։

38. «Պրախմազ-Օսէփ», — նշանակում է՝ բաց չթողնող-Յովսէփ։ Այդ անունը ստացել է նա, որովհետեւ միանգամ իւր ձեռքն ընկած թշնամուն բաց չի թողնի, կ'ոչնչացնէ, եւ առաւելապէս սիրում է կոտորել թշնամու զօրապետներին (եր. 69)։

39. «Պողպատ»,-իբրեւ մարդու անուն, նշանակում է՝ պողպատեայ կամ երկաթեայ կազմուածք ունեցող, զէնքերից անվնասելի։

40. «Քեարփեթիւն-Տէտէ», — «քալփաթին» նշ. ագցան կամ ունելի — հիւսների եւ դարբինների այն գործիքը, որով մեխ են դուրս քաշում կամ շիկացրած երկաթ են բռնում։ — «Տէտէ» ինձ յայտնի չէ, թէ ո՞ր [illegible] կրճատուածն է։

41. «Թօխմախ-Սափար», — «Թօխմախ» կոչ- [illegible] այն գործիքը որով պարախիկները ջարդում են [illegible]. դա ահագին երկաթեայ մուրճ [illegible] կռանի նման։

42. "Ջնդան-Աւթանդիլ„, — "ընդան„ կամ աւելի ուղիղ "ննդան„ կոչվում է գայլիների սալը, որի վրայ երկաթ են կռում: Իսկ ժողովրդի լեզւում փոխաբերական մտքով ամրութիւն է նշանակում:

Ուշադրութիւն դարձրէք 40ից մինչեւ 42րդ մականունների վրայ, որ ներկայացնում են գայլիների երեք անբաժան գործիքները, միայն փուքսը մոռացուած է:

43. "Կաքեւ-Զաքի„, — նշ. կաքաւ-Զաքարիա: Դա սուրհանդակի կամ փայեակի պաշտօն է կատարում. այսպէս կոչվում է իւր չափազանց արագընթացութեան պատճառով:

44. "Ղարա-խան-Իւզբաշի„, — նշ. Սեւ-խան-հարիւրապետ:

45. "Ալբէթիւն-Բատի„, — ճիշտ ուղղագրութեամբ "Ալբէթիւն„ չէ, այլ "Աֆլաթուն„ է: Դա արաբացոց Պլատոնն է, մի հրաշագործ բժիշկ եւ փիլիսոփայ: Բայց արեւելեան ազգերի մէջ, նոյնպէս եւ հայոց մէջ, փոխաբերական իմաստով՝ "աֆլաթուն„ բառը հնարագէտ, ամեն բանի ճարն ու դարմանը գտնող մարդու նշանակութիւն ունի: — "Բատի„ բաղդատար անուան կրճատուածն է:

Այդ բոլոր այլանդակ մականունների մէջ միայն սատանան էր պակաս, այն [illegible] Մակար վարդապետը, — ահա եւ [illegible]

46. "Շէյթան-Թի[illegible] [illegible] Սատանայ-Ցարութիւն: Դա [illegible] [illegible] Լատածոյ„, "Ամբակ [illegible] [illegible]թիւնին "Գաղտնիք„ի մէ[illegible] տրոսը "Խաչագող[illegible] կերպարանք ընդուն[illegible]

ամէն տեղ մնում է, առանց ճանաչուած լինելու։ Դա մի քամէլէօն է, որ ամէն րոպէ մի նոր տեսք է ստանում։

Մակար վարդապետի վառ երեւակայութիւնը միայն կարող էր այսպէս հրէշաւոր մականուններ ստեղծել։ “Գաղտնիքը„ լի է ուրիշ շատ այս տեսակ մականուններով։ Օրինակ, “Քօրօղլի-քէշիշ„ (քօրօղլի-քահանայ) որ յետոյ կոչուեցաւ “Վարդան Մամիկոնեան„ (եր. 278), “Քաչալ-Սագի„, “Քեօհլան-Սագի„ (եր. 103). որ նշանակում է սիգապանծ-նժոյգ-Սարգիս։ “Տօյտաղ-Քիասի„ (եր. 104), որ նշանակում է վայրենի-սագ-Կասպար։ “Ճէյրան-ծատուր„ (եր. 118), որ նշանակում է եղջերու-Աստուածատուր։

Հոգեւորականներն անգամ առանց այս տեսակ մականունների չեն, օրինակ, “Արծիւ-Թադէոս-եպիսկոպոս„ (եր. 56). “Ալբէթիւն-վարդապետ„ (եր. 56), “Ասլան-Մահրասա-Մեսրոպ-վարդապետ„ (եր. 57), “Օղլան-քէշիշ„ (եր. 133), այսինքն տղամարդ-քահանայ։ “Քօրօղլի-քէշիշ„ եւայլն եւայլն։ Եթէ ժամանակ ունենայի “Գաղտնիքի„ի բոլոր ծալքերը քրքրելու, գուցէ հարիւրներով կը գտնէի այս տեսակ անուններ, բայց ինչ որ գտայ, դասաւորեցի եւ նկատողութիւններով մատնանիշ արեցի այն անբնական արհեստականութեան վրայ, որով կազմուած են այդ անունները, եւ որոնք պարզ ցոյց են տալիս իրանց պատմական անգոյութիւնը։

Մի խօսքով, բացի այն անուններից, որ Մակար վարդապետը առել է “Խամսայի Մելիքութիւններից„, Մնացեալ համարեա բոլոր անունները՝ այս տեսակ ուռած, [illegible] մականուններով կեղծեալ անուններ են, որոնք [illegible]ին պատմական գոյութիւն չեն ունեցել։

Հետաքրքիր են այդ զանազան "կայծակների„, "կարկուտների„, "վիշապների„ և "դէվերի„ զօրախումբերի անունները։

"Աղրայէլի„ ("Գաղտնիք„ի հեղինակ Աբրահամ Բէկնազարեանի) զօրախումբը կոչվում է՝ "Արագահաս Սուրբ Սարգիս„[1]։

"Քօրօղլէ-քէշիշի„ (Քօրօղլի-տէրտէրի) զօրախումբը կոչվում է՝ "Հրեղէն-Թուր„։

"Յուզբաշի-բէկը„ կոչվում է՝ "Սուրբ-Գէորգ„[2] իսկ իւր զօրախումբը կոչվում է՝ "Ջուր-Տօ-Քչի„, որ նշ. սաստիկ յորդած հեղեղ, որ ամեն ինչ քշում տանում է։

"Վանի-խզլբաշին„ կոչվում է "Հայկ Դիւցազն„, իսկ իւր զօրախումբը՝ կոչվում է "Զարապատիժ-Դժոխք„[3]։

"Նէառատէօվլի„ զօրախումբը կոչվում է "Հրեղէն-կեծակ„։

[1], [2] Թէ սուրբ Սարգիսը և Թէ սուրբ Գէորգը ժողովրդի աւանդութիւնների մէջ, ամեն վտանգի ժամանակ, նեղեալներին օգնութեան են հասնում, այդ պատճառով սուրբ Սարգիսը կրում է "արագահաս„ մականունը, իսկ սուրբ Գէորգը "զօրաւոր„։

[3] Երբ "Գաղտնիք„ի մէջ մտնում են իսկապէս պատմական անձնաւորութիւններ, որոնց ժառանգներն ներկայումս ևս գոյութիւն ունին, և մանաւանդ, երբ այդ ժառանգները որ և է նշանակութիւն ունեցող մարդիկ են, — այդ դէպքում հեղինակի շողոքորթութիւնները ոչ չափ ունին և ոչ սահման։ Վանի խզլբաշին, որ յետոյ եղաւ Մելիք-Վանի, պատմական անձնաւորութիւն է։ Նրա մասին խօսուել է "Խամսայի Մելիքութիւնների„ մէջ (եր. 222—227)։ Նրա մասին խօսում է և Դուբրովինը „Ист. войн. и влад. рус. на Кавказѣ“ т. IV ст. 451, 452)։ Մելիք-Վանիի թոռները այժմեան Աթաբէկեանններն են, որոնց ամեն օր տեսնում ենք։ Հարցրէք նրանցից որին որ կամենում էք, թէ ձեր պապը որ և իցէ ժամանակ կոչուե՞լ է "Հայկ-Դիւցազն„, կամ նա ունեցե՞լ է մի հզօր կազմակերպուած զօրախումբ, որ կոչվում էր "Զարապատիժ-Դժոխք„։ — Ես հաւատացած եմ, որ ամեն մի Աթաբէկեան խիստ կուշտ ծիծաղելուց յետոյ, կ'ասէ ձեզ. "Այդ ո՞վ է հնարել. մեր պապը երբէք այս տեսակ բաներ չէ ունեցել....։

Մակար վարդապետը այն աստիճան յափշտակուած է եղել այդ անուններով, որ միեւնոյն երեսի վրայ (եր. 278) “Քօրօղլու„ անունը երկու անգամ է կրկնում, եւ ամեն անգամին նրա զօրախումբին զանազան անուններ է տալիս. նախ՝ «Հրեղէն-Թուր„, իսկ երկու տողից յետոյ՝ “Ծեփիլ-Անցկաց„, որ նշ. զարկիր, անցիր։

Մակար վարդապետը միայն մոռացել է այդ զօրախմբերի դրօշակները նկարագրել։ Ի հարկէ, նրանք էլ զանազան հրէշների եւ ճիւաղների նշաններով կը լինէին զարդարուած։

Ղարաբաղի մելիքները երբէք կանոնաւոր զօրք չեն ունեցել, որ նրանց զօրքերը զանազան գունդերի բաժանուած լինէին, եւ այդ գունդերը զանազան անուններ ունենային։ Նրանց ժամանակում ամեն մի ղարաբաղցի զինուոր էր։ Երբ թշնամին մօտենում էր, մելիքը բարձրանում էր իւր տան կտուրի վրայ, ձայն էր տալիս, եւ նոյն րոպէում, իւրաքանչիւր գիւղացի առնում էր զէնքերը, նստում էր ձին եւ հետեւում էր մելիքին։

Ճշմարիտ է, ժողովուրդը, իւր հասկացողութեան համեմատ, իւր հերոսներին մականուններ է տալիս։ Բայց այն տեսակ հերոսներ, որ իրանց գործողութիւններով սաստիկ ազդում են ժողովրդի երեւակայութեան վրայ, պաշտելի են դառնում եւ ժողովրդից մականուններ են ստանում, — այն տեսակները դարերի ընթացքում յայտնվում են մի կամ երկու հատ միայն։ Հայոց ամբողջ պատմութեան մէջ՝ Հայկ-Դիւցազն, Վահագն-Վիշապաքաղ, Տորք-Անգեղեայ, Ցօլհան-Քօշ, Գայլ-Վահան, Աշոտ-Երկաթ, Աշոտ-Մսակեր, Գող-Վասիլ, Առիւծ-Յաչէկ, — դրանք այնպիսի հերոսներ են, որոնց նմանները ուրիշ դարեր չեն ծնել։ Դրանց անուան հետ ժողովուրդը

կապել է իւր զգացմունքը, իւր երգերը եւ իւր առասպելաբանական էպոսը։

Բայց “Գաղտնիք„ի մէջ յանկարծ եւ միաժամանակ բուսնում են 60—70 հերոսներ, որոնցից եւ ոչ մէկը առանց մականունի չէ։ — Դա պատմական իսկութիւն չէ, դա մի անբնական վիժմունք է, միայն Մակար վարդապետի գլխից։ Որովհետեւ մարդկային պատմութիւնը ունի իւր անխախտ օրէնքները, իւր յղութիւնը եւ իւր ծնունդը։

Զարմանալին այն է, որ յիշեալ 60—70 հերոսներից՝ ամբողջ 50ը Մակար վարդապետի գիւղացիներն են, Խնածախից, — մի գիւղից, որ ընդամենը 50 ընտանիքից է բաղկացած։ Իւրաքանչիւր ընտանիք ծնել է մի-մի “Կայծակ„, մի-մի “Կարկուտ„, մի-մի “Ալիշապ„ եւայլն։ Եւ դրանք հասարակ մարդիկ չեն, այլ ամենքը Ղարաբաղի մելիքների մօտ “հարիւրապետի„, “հազարապետի„, “զօրավարի„ պաշտօն են վարում։ Կարծես, ամբողջ Խնածախը մի զինուորական դասակարգ լինէր, եւ զօրապետութիւնը միայն այդ գիւղացիների արտօնական ժառանգութիւնը լինէր։ Ո՞րտեղ կորան նրանց սերունդները։ Եթէ զօրապետներ էին, հարկաւ, եւ ազնուականներ էին եւ կալուածատէրներ էին։ Բայց ամբողջ Խնածախը ոչ մի ազնուական չունի, ոչ մի կալուածատէր չունի։ Ամենքը Իբրահիմ-խանի ժառանգների հասարակ գիւղացիներն են եւ նրանց հողերն են մշակում։

Ինձ յայտնի են փաստեր, որ շատերը այնքան ճարպիկ, այնքան նախանձախնդիր են գտնուել ազնուականութիւն ժառանգելու, որ բոլորովին դռեհիկ գիւղացիներ, անյայտ ծագումից, ձեռք բերելով մի որ եւ է վկայական, իրանց տոհմը կապել են այս եւ այն մելիքի կամ բէկի

տոհմի հետ, կրելով նրանց ազգանունները։ Եթէ Խնածախի ամբողջ 50 ազնուատոհմ ընտանիքների սերունդները բոլորովին ջնջուէին (որ անկարելի բան է), դարձեալ կը գտնուէին մարդիկ, որ իրանց ժառանգ կը յայտնէին, եւ նրանց տոհմանունները կը պահպանուէին։ Բայց յիշեալ 50 ազնուական հերոսների եւ ոչ մէկի ժառանգներն են մնացել՝ թէ Խնածախում եւ թէ մի այլ ուրեք։ Իսկ ժամանակները դեռ եւս այնքան չեն անցել, որ կարող լինէին խափանել եւ անհետացնել նրանց։ Եւ, վերջապէս, ի՞նչ եղան այդ “Վիշապների„ եւ “Վիշապազունների„ կալուածքները։ Ղարաբաղի մելիքներից եւ նրանց մօտ ծառայող “իւզբաշիներից„[1] չկար մէկը, որ գիւղեր, անտառներ եւ ընդարձակ կալուածներ չունենար։ Եւ այսօր նրանց սերունդներից շատերը վայելում են հայրենական ժառանգութիւնը։ Իսկ Մակար վարդապետի ստեղծած 60—70 հերոսները, որոնք ամենքն զօրապետներ եւ զօրավարներ էին, մնում են առանց որ եւ է ժառանգութեան[2]։

Մելիքների տիրապետութեան դարերում, այնքան պատերազմական փայլուն գործողութիւնների մէջ, ան-

---

[1] Ղարաբաղի մելիքները միայն մէկ զինուորական աստիճան են ունեցել եւ այդ “իւզբաշի„ (հարիւրապետ) աստիճանն է, թէեւ “իւզբաշին„ կարող էր հարիւրից աւել պատերազմողներ ունենալ իւր ձեռքի տակ։ Բայց Մակար վարդապետը ստեղծել է “հազարապետներ„ եւ այլ զանազան աստիճաններ։

[2] Մակար վարդապետը իւր ծանօթութիւնների մէջ (եր. 21, 63, 64, 65, 68) անդադար կրկնում է հ ի ն գ հազարակ անուններ՝ Բէլլուէնց, Նւզուրլուէնց, Ջլաէնց, Աթանց, Գիւլ-Յուհան, — եւ խիստ միամիտ կերպով աւելացնում է. “Այս մականուններից շատերն (?) ցարդ մնացած են Խնածախում... իսկ ամենք չեն յիշւում, քանզի ժամանակի երկարութիւնն (ընդամենն 50—60 տարի) ջնջած է հասարակութեան միջից„։ Հայր սուրբը չգիտէ, որ իւր ստեղծած հսկայ անձնաւորութիւններն շատ խոշոր յիշատակներ պէտք է թողած լինէին՝ իրանց պատմական գոյութիւնը ապացուցանելու համար։

կարելի էր, որ Ղարաբաղը նոյնպէս չունենար իւր հերոսները, որոնց սիրէր ժողովուրդը, որոնց իւր յատուկ տիտղոսը տար ժողովուրդը։ Դրանց թիւը շատ չէ, երեք հոգի է միայն — Դալի-Մահրասան, Թուլի-Արզումանը եւ Չալաղան-Իւզբաշին։ Առաջին երկուսի անունները Մակար վարդապետը առել է "Խամսայի-Մելիքութիւններից" եւ մտցրել է իւր եօթանասնից անունների մէջ, իսկ վերջինը չէ յիշվում։

Ժողովրդական հերոսները ժողովրդի աւանդութիւնների մէջ՝ ոչ թէ մեռնում են, այլ դարերի ընթացքում, հետզհետէ աճում են, մեծանում են, եւ մինչեւ անգամ, ինչ որ նրանց ժամանակներում եւ նրանց ձեռքով չէ կատարուած, — ժողովուրդը յատկացնում է նրանց։ Օրինակ, վեր առնենք Քօրօղլին։ Սկսեալ Թիֆլիսից մինչեւ Երեւան եւ Երեւանից մինչեւ Հին-Բայազէտ, եւ այստեղից մինչեւ Կարին, որ լեռան գագաթին մի աւերակ կը տեսնէք, ձեզ կ'ասեն՝ "դա Քօրօղլու բերդն է", թէեւ նրանցից եւ ոչ մէկը Քօրօղլու բերդը չի եղել։ Վրաստանում ամեն մի աւերակ յատկացնում են Թամարա թագուհուն։ Շուշի բերդի ստորոտում, քարաժայռի մէջ, կայ մի ընդարձակ այր՝ զանազան ամրութիւններով, իսկ նրա հանդէպ, նոյնպէս քարաժայռի ճակատին, կայ մի երկրորդ այր, դարձեալ ամրացած պարիսպներով եւ բուրգերով։ Առաջինը յատկացնում են Սիւնեաց հերոս Դաւիթ-բէկին, իսկ երկրորդը՝ Դուգարացւոց հերոս Աւանիւզբաշուն, թէ եւ երկուսն էլ այս կողմերում ամրոցներ չեն ունեցել։

Ժողովուրդը իւր հերոսներին աւելի է տալիս, քան թէ նրանք ունեցել են։ Իսկ ինչ որ իսկապէս ունեցել են, — այն պահուած է նրա յիշողութեան մէջ անմոռաց։

Ես, ի հարկէ, չեմ խօսում Ղարաբաղի մելիքների մասին, որոնց բերդերը, ամրոցները եւ պալատների աւերակները մինչեւ այսօր մնում են։ Իմ խօսքը ժողովրդական հերոսների մասին է։ Ղարաբաղի պատմութեան մէջ, որպէս վերեւում յիշեցի, միայն երեք անձնաւորութիւններ կան, որոնց անունների հետ կապուած են ժողովրդի ամենասրտագին աւանդութիւնները։ Դրանք են Դալի-Մահրասան[1], Թուլի-Արղումանը[2] եւ Ջալաղան-խըզըրաշին[3]։ Ես տեսել եմ այն աշտարակը Եղիշէ-Առաքելոյ վանքի մօտ, որի մէջ բնակվում էր Դալի-Մահրասան եւ որի բարձրութիւնից սարսափ էր տարածում Ղարաբաղի թշնամիների վրայ։ Ես տեսել եմ Թուլի-Արղումանի ամրոցը Երից-մանկանց վանքի հանդէպ, Թըրըղի գետի ափի մօտ՝ այն սոսկալի եւ մթին խոխոմների մէջ, ուր եւ այժմ նայողը զարհուրում է։ Ես տեսել եմ նոյնպէս Ջալաղան-խըզըրաշու ամրոցի աւերակները Թարթառի վրայ, այն անտառապատ թաւուտների մէջ, ուր բոյն էր դրել այդ յափշտակող գիշակերը[4]։ Ամէն մի գիւղացի մատով ցոյց

---

[1] Դալի-Մահրասայ նշանակում է խենդ-վարդապետ. դա Եղիշէ Առաքեալի վանքի վանահայրն էր, որը գտնվում է Թարթառ գետի ձախ կողմում։ Նրա իսկական անունը Աւագ վարդապետ էր։ Մելիքների ժամանակ՝ իւր զարմանալի քաջագործութիւններով՝ այդ հերոս-վարդապետը անմահաց անուն թողեց։ Տես „Խամսայի Մելիքութիւնները" եր. 63—65, 71, 105, 121, 123, 155—158, 218, 272։

[2] Թուլի-Արղուման նշանակում է Աւազակ-Արղուման։ Դա Ջրաբերդի Մելիք-Աթամի եւ նրա որդի Մելիք-Մէջլումի քաջերից մէկն էր, որին յանձնում էին ամենայանդուգն եւ ամենավտանգաւոր ձեռնարկութիւններ։ „Խամս. Մել." 64—71, 105—116, 121—155։

[3] Ջալաղան-խըզըրաշի, նշ. յափշտակող կամ ասպատակող հարիւրապետ։ Այդ անունը ստացաւ նա այն մեծամեծ հարուածների եւ աւարառութիւնների պատճառով, որ կատարեց Ղարաբաղի թշնամիների վերաբերութեամբ։ „Խամս. Մել." եր. 64, 67, 272։

[4] Ջալաղան նշանակում է եւ ցին կամ ուրուր կոչուած գիշակեր թռչուն։

ւանդութիւնների մէջ, առասպելաբանական գոյութիւն չունին։ — Նրանք հայր սուրբի վառ երեւակայութեան ծնունդն են, եւ աւելի ոչինչ...

Հետեւեալ գլխում ցոյց կը տանք այն պատկերը, որի մէջ գործում են այդ հերոսները։

## Զ.

Այժմ ներկայացնենք այն պատկերը, որի մէջ նկարագրուած է Շուշի բերդի պաշարումը Աղա-Մահմադ-շահից։

1795 թուին Աղա-Մահմադ-շահը 60.000 (?) զօրքերով պաշարում է Շուշի բերդը։ Բերդում ամրացած է Իբրահիմ-խանը, որ իրան թէ այդ բերդը եւ թէ Ղարաբաղի իշխանն էր համարում։ Շրջակայ հայոց գիւղերի բնակիչները վաղօրօք փախել եւ մտել են բերդը։ Այնտեղ պատսպարուած են նաեւ Մակար վարդապետի հերոսների ընտանիքներն — խնածախցիք։ Տները մնացել են դատարկ։

Խնածախցի "քաջերը", թւով 20 հոգի, ալիւր են կրում դէպի բերդը, որպէս զի պաշարեալները առանց պաշարի չմնան։ Դրանք նոյն "կայծակներն", "կարկուտներն", "վիշապներն" եւ զանազան հսկաններն են, որոնց հետ ծանօթացանք նախորդ գլխում։ (Այստեղ Մակար վարդապետը մոռացել է իւր հերոսների իսկական նշանակութիւնը եւ, նրանց հասարակ գիւղացիների տեղ դնելով, ալիւր է կրել տալիս, մինչդեռ նրանց իւրաքանչիւրը մի քանի հազար զինուորների հրամանատար էր։)

Ցանկարծ 20 հոգի խնածախցի ալիւր տանողներին պատահում են Աղա-Մահմադ-շահի սարվազները (զինուորները)։ Այդ միջոցին խնածախցիների հետ միանում են

60 բալուջեցիներ, որոնք նույնպես ալիւր էին տանում բերդը։ Մակար վարդապետի «քաջերի» թիւը դառնում է 80 հոգի։

Խնածախցի «քաջերի» թւում գտնվում է և «Ա ղ ր ա յ ե լ ը» — Մակար վարդապետի ստեղծած հոգեհան հրեշտակը, — այդպէս էր կոչվում «Գաղտնիք»ի հեղինակ Աբրահամ Բէկնազարեանը։ Հօր հետ լինում է և որդին — Ապրես Բեկնազարեանը, — Գաղտնիք»ի երկրորդ հեղինակը։ Աղրայէլը, տեսնելով Շահի սարվազներին, որ ուղիղ դիմում են դէպի Խնածախ, հասկանում է նրանց դիտաւորութիւնը, և պատրաստվում է միւս «քաջերի» հետ պաշտպանել գիւղը։

Շահի զօրքերին առաջնորդում էր հայազգի գնդապետ Յովհաննէս Մելիք-Հայկազեանը, որ ունէր իւր հրամանի ներքոյ «2000 կանոնաւոր և 2000 անկանոն սարվազներ» (երբ սարվազներ էին՝ անկանոն չէին կարող լինել)։ Նրանց հետ միացած էին 3000 ձիաւորներ, երկու «հազարապետների» գլխաւորութեամբ, որոնց մէկի անունը Սուլէյման էր, իսկ միւսի անունը՝ Իստամաղ։ Եւ այսպէս, թշնամու ամբողջ զօրութիւնը բաղկացած էր 7000 հետեւակ և ձիաւոր զինուորներից։ Այդ ահագին բազմութիւնը գալիս էր երկու դատարկ գիւղեր ոչնչացնելու — Խնածախը և Բալուջան — որոնց բնակիչները փախել, մտել էին Շուշի բերդը։

Բայց 80 հոգի ալիւր տանողները մնացել էին բերդի դրսում։ Դրանք հանդիպում են Շահի զօրքերին։ Կռիւը սկսվում է հէնց Խնածախի մօտ։ Մի քանի ժամուայ մէջ երեք անգամ ճակատամարտ է լինում, և ամեն անգամին Շահի զօրքերը տերեւների նման թօթափվում են այդ մի բուռն «քաջերից», թողնելով պատերազմի դաշտում դիակների ահագին բազմութիւն։

Սուլէյման եւ Իսմամաղ "հաղարապետները,, սպանվում են, եւ նրանց հրամանատարութեան ներքոյ գտնուած 3000 ձիաւորներից մի հատ էլ չէ մնում, — հայոց "քաջերը,, բոլորին ամբողջապէս կոտորում են (եր. 37)։ Իսկ հետեւակ սարվազներին կոտորում են 2671 հոգի, որոց թւում կային 1 հաղարապետ եւ 8 յիսնապետ (եր. 34)։ Եւ այսպէս, թշնամուց սպանուածների ամբողջ թիւը լինում է 5671 հոգի։

Իսկ հայոց "քաջերից,, սպանվում են 2 հոգի միայն...։

Յաղթութիւնը մնում է 80 հոգի ալիւր տանողների կողմը...։

Այդ սարսափելի ստախօսութիւնից յետոյ, "Գաղտնիք,,ի հեղինակ Աբրահամ Բէկնազարեանը, որ ինքը անձամբ մասնակցում էր կռուին, դեռ եւս երես ունի ասելու. "Սպանուածների քանակութիւնն թերեւս չափազանցութիւն կերեւի ընթերցողաց, բայց մենք ճշմարտութեամբ գրեցինք,, (եր. 34)։

Եթէ Աղա-Մամադ-շահի զօրքերը ամբողջապէս ոտները կապած հաւերից բաղկացած լինէին, դարձեալ անկարելի էր մի քանի ժամուայ մէջ 5671 հաւ կոտրել։

Բայց այդ մի քանի ժամուայ մէջ Մակար վարդապետի "քաջերը,, ուրիշ գործեր եւս կատարեցին։ Նախ բոլոր 5671 սպանուածների գլխները թաղեցին հողի տակ, եւ իրանց յաղթութիւնը յաւերժացնելու համար, նրանց վրայ բարձր հողաբլուրներ կանգնեցրին։ Յետոյ Սուլէյման հաղարապետի ընկած տեղի անունը կոչեցին "Սուլէյմանի-խութ,,, իսկ Իսմամաղ հաղարապետի ընկած տեղի անունը կոչեցին "Իսմամաղի-ձոր,,։ Բայց այն տեղը, ուր թշնամուն կենդանի այրել էին, կոչեցին "Կոտուտ,,

որ մահմեդականաց գերեզմանատուն է նշանակում (եր. 35, 37)։

Այդ յիշեցնում է Զենոբի եւ նրա պատմութիւնը շարունակողի միամտութիւնը, որ ամեն մի կռուից յետոյ, դէպքերի համեմատ, տեղերին անուններ են տալիս։

Երբ ամեն ինչ վերջացած էր, Գիւլ-Ուհանը գայլի նման ոռնում է, եւ բոլոր "քաջերը„ խաղաղ ու հանգիստ կերպով նստում են բաց օդի մէջ ճաշելու (եր. 38)։ Հետաքրքիր է, թէ ո՞վ պատրաստեց նրանց համար այդ ճաշը։ Ամբողջ Խնածախը այրուած էր. իսկ "քաջերի„ ընտանիքները գտնվում էին Շուշի բերդում։ Բայց բանը դրանում չէ, երեւի, երկնքից իջաւ ճաշը, — բանը նրանումն է, որ ճաշելուց յետոյ, նոր կնքուած "Կռուատի„ մօտ՝ անմիջապէս կազմուեցաւ "քաջերի„ խորհուրդը, որ Կ. Պոլսի այժմեան երեսփոխանական ժողովի ճիշտ ձեւը եւ համանման կազմակերպութիւնն ունէր։ Այդ ժողովի մասին ես կը խօսեմ յետոյ, բայց տեսնենք, ի՞նչ եղան Շահի մնացած զօրքերը, ի՞նչ եղաւ գնդապետ Մելիք-Հայկազեանը։ Այդ զօրապետը, կարծես, եկել էր նրա համար միայն, որ ձեռքերը ծալած կանգնէ եւ ամենայն սառնասրտութեամբ ականատես լինի, թէ ինչպէս մի բուռն գիւղացիներ կոտորում են իւր հրամանատարութեանը յանձնուած զօրքերը, որ յետոյ գնայ եւ իւր թագաւորին խաբար տանէ, որի 60.000 զինուորներից բաղկացած բանակը դրած էր մի քանի քայլ հեռաւորութեան վրայ։

(Աւելորդ չեմ համարում յիշեցնել, որ Խնածախ գիւղը Շուշի բերդից 2 ժամուայ հեռաւորութիւն ունի, իսկ բերդը այդ միջոցին պաշարուած էր Աղա-Մամադ-շահի զօրքերով։ Այստեղ 80 գիւղացիներ կոտորում էին Շահի զօրքերը, իսկ այնտեղ՝ 60.000 զինուորներից բաղ-

կացած բանակում հրացանների ձայնը չէին լսում, որ գոնէ օգնութեան հասնէին։ Իսկ Շահի զօրապետները այնքան յիմարուեցան, որ մի մարդ էլ չուղարկեցին բանակը՝ օգնութիւն խնդրելու, եւ իզուր տեղը 5671 զինուոր կոտորել տուին...։)

Կրկնում եմ, ինչ եղաւ գնդապետ Մելիք-Հայկազեանը։

Կռուի սաստիկ ջերմութեան միջոցին՝ պատահեց մի միջանկեալ դէպք. առանց որ եւ է ստիպողական պատճառի, չնայելով, որ յաղթութիւնը իւր կողմն էր, խնածախցի “քաջերի„ հրամանատար Աբրահամ Բէկնազարեանը (“Գաղտնիք„ի հեղինակը) իւր զէնքերը գցեց Մելիք-Հայկազեանի ոտքերի տակ եւ անձնատուր եղաւ։ Վերջինը ամենայն ազնուութեամբ նրա զէնքերը յետ տուեց եւ իսկոյն բարեկամացան, սկսեցին միմեանց քաղցր խօսքերով ողջագուրել։ Իսկ նրանց աչքերի առջեւ խնածախցիները դեռ շարունակում էին կոտորել Շահի զօրքերը։ Մելիք-Հայկազեանը այն աստիճան յափշտակուած էր հայր եւ որդի Բէկնազարեաններով, որ, կարծես, արբեցած լինէր նրանց սիրով, եւ ամենեւին չէր նկատում, թէ ինչպէս են կոտորում իւր զօրքերը։ Նա այնքան բարի գտնուեցաւ, որ, որպէս զի փոքրիկ Ապրես Բէկնազարեանը չվախենայ այլանդակուած դիակներից, առեց պատանիին եւ նրա հօր հետ մեկուսացաւ դէպի մի այլ կողմ։ Իսկ խնածախցիք շարունակում էին կոտորել (եր. 24, 25)։

Այդ միջոցին յայտնվում են երկու սուրհանդակներ եւ բերում են երկու նամակներ։ Մէկը Շահը ուղարկել էր գնդապետ Մելիք-Հայկազեանին, միւսը, Մելիք-Մէջլումը, որ նոյնպէս Շահի բանակումն էր գտնվում, ուղարկել էր Աբրահամ Բէկնազարեանին։

Շահը գրում էր իւր նամակի մէջ, թէ Սուլէյման եւ Իստամազ "հազարապետները" խաբել են իրան։ (Դրանք նոյն անձինքն են, որ իրանց 3000 ձիաւորների հետ սպանուեցան Խնածախի "քաջերից"։) Թէ այդ մարդիկը Իբրահիմ-խանի գործիքներն են եղել, եւ նրա թելադրութեամբ ուղարկուած են եղել իւր բանակը, որպէս զի, առ երես Շահին բարեկամ ձեւանալով, կարողանան իւր (Շահի) ձեռքով Խնածախ եւ Բալլուջայ գիւղերը ոչնչացնել տալ։ Թէ այդ մարդիկը դիմեցին իրան, հաւատացնելով, որ Խնածախցիք եւ Բալլուջեցիք Շահի թշնամիներն են եւ Իբրահիմ-խանի բարեկամները։ Այդ պատճառով ինքը (Շահը), նրանց "հազարապետութեան" (?) աստիճան շնորհելով, իրանց 3000 ձիաւորներով՝ կարգեց իբրեւ առաջնորդ գնդապետ Մելիք-Հայկազեանին, որ գնան յիշեալ գիւղերը ոչնչացնելու եւայլն։

(Եթէ Մելիք-Հայկազեանը մի այսպիսի հրահանգ էր ստացած, այդ ամբողջ պատմութիւնը պէտք է առաջուց գիտենալ, ինչ հարկ կար, որ Շահը նորից գրէր նրան, այն եւս մի քանի քայլ հեռաւորութիւնից, երբ աւելի հեշտ էր մի աստիճանաւոր ուղարկել եւ հրամայել նրան, թէ յետ դարձրէք։)

Շահը իւր երկար նամակը վերջացնում էր, պատուիրելով Մելիք-Հայկազեանին, որ Սուլէյմանին եւ Իստամազին կենդանի իւր մօտ բերէ պատժելու համար, իսկ յիշեալ գիւղերին ամենափոքր վնաս անգամ չը պատճառէ։

Մելիք-Մէջլումի նամակը նոյն միտքն էր յայտնում Շահի խաբուած լինելու մասին, յետոյ շարունակում էր մի երկար պատմութիւն Ղարաբաղի հարազատ եւ անհարազատ մելիքների մասին, Ղարաբաղի հարազատ եւ ան-

հարազատ կաթողիկոսների մասին, Շահի խոստումների մասին՝ վաղեմի մելիքութիւնները վերականգնելու և այլն։ Վերջը հրաւիրում էր Աբրահամ Բէկնազարեանին, որ իւր հետ առնելով խնածախցի և բալուջեցի “քաջերին„, դիմէ Շահի բանակը, խորհուրդ տալով, թէ աւելի նպատակայարմար էր ծառայել Շահին և սպասել նրա խոստումներին և այլն։

«Հայրս, — շարունակում է որդի Բէկնազարեանը, խնդրեց Շահի նամակի հայերէն պատճէնը. գնդապետն հայերէն թարգմանեց եւ հայրս մ ա տ ի տ ո վ գրեց թղթի վրայ։ Մելիք-Հայկազեանն զարմանք յայտնեց հօրս նախապատրաստութեան վրայ, որն կրում՝ էր միշտ իւր վերայ թանաքաման, թուղթ եւ գրիչ (եր. 32)։

Այսօր անգամ Խնածախ գիւղում անկարելի է մի հատ մատիտ գտնել։ Իսկ Աբրահամ Բէկնազարեանը գործ է ածում մատիտը՝ գիտէք երբ, — 1795 թուին, մեզանից 90 տարի առաջ, երբ Անդրկովկասում մատիտի անունն անգամ չէին լսել։ Եւ հետաքրքիրն այն է, որ կռուի միջոցին, “Գաղտնիք„ի հեղինակը՝ զէնքերի հետ՝ կրում է իւր վրայ թ ո ւ ղ թ, թ ա ն ա ք ա մ ա ն և գ ր ի չ... Այդ բոլոր “նախապատրաստութիւնները„, տարակոյս չը կայ, որ “Գաղտնիք„ի համար էին, և հէնց այդ նպատակով Աբ. Բէկնազարեանը խնդրեց Շահի նամակի հայերէն թարգմանութիւնը։ Եւ Շահի միամիտ գնդապետը իւր թագաւորի պաշտօնական նամակի պատճէնը յանձնեց “Գաղտնիք„ի հեղինակին, հէնց նոյն րոպէներում, երբ խնածախցիք նրա աչքերի առջև դեռ շարունակում էին կոտորել իւր զօրքերը։ Կարծես, դա նրա համար միայն եկած լինէր, որ “Գաղտնիք„ին մի նոր նիւթ մատակարարէր...

Իսկ Աբրահամ Բէկնազարեանը ոտքի վրայ դրում էր Մելիք-Մէջլումից ստացած նամակի պատասխանը։ Երբ վերջացրեց, սուրհանդակին ճանապարհ դրեց։

Խնածախցիք դեռ կոտորում էին...

Աբրահամ Բէկնազարեանը իւր որդուն, փոքրիկ Ապրեսին, յանձնում է գնդապետի պահպանութեանը, իսկ ինքը աճապարում է դէպի անտառի կողմը, որտեղ կռիւը նորից բորբոքուել էր։ Շահի բարեսիրտ գնդապետը մնում է այնտեղ եւ այժմ դայեակի պաշտօն է կատարում... (եր. 33)։

Այդ բոլորը, շատ հասկանալի է, սպիտակ թելով կարկատած զառանցութիւններ են, մի այնպիսի մարդու գլխից ծագած, որ, ինչպէս երեւում է, իւր կեանքում ոչ պատերազմ է տեսել եւ ոչ գիտէ պատերազմող մարդու պարտաւորութիւնները։ Մելիք-Հայկազեանը իւր թագաւորին դաւաճանած կը լինէր, եթէ թոյլ տար, որ իւր հրամանին յանձնուած զօրքերը կոտորուէին, իսկ ինքը զբաղուէր թարգմանութիւններով, կամ իւր ախոյեանի որդուն պահպանելով...

Բայց բանը դրանում չէ։ Ես աւելորդ չեմ համարում ցոյց տալ այն ծիծաղելի ինտրիգը (բանսարկութիւնը), որ Մակար վարդապետի նկարած պատկերի հիւսուածքն է կազմում։

Երեւակայեցէք, Խնածախ եւ Բալուջայ գիւղերը, որպէս նախորդ գլխում տեսանք, Իբրահիմ-խանի սեպհական կալուածքներն էին։ Եթէ այդ գիւղացիները անհաւատարիմ յայտնուեցան, Իբրահիմ-խանը, որ այսօր պարսից ահարկու թագաւորին իւր 60.000 զօրքերով պահել էր իւր անմատչելի բերդի պարիսպների մօտ[1], —

[1] Այս անգամին Աղա-Մամադ-շահը չկարողացաւ գրաւել խանի բերդը։

միթէ նոյն Իբրահիմ-խանը չէ՞ր կարող մի հարուածով ոչնչացնել յիշեալ գիւղերը, որոնց երկուսը միասին միայն 120 բնակիչներից էին բաղկացած։ Այն բարբարոսը, որ Ղարաբաղի վաղեմի մելիքութիւնները ոչնչացրեց եւ նոր, իրան հաւատարիմ, մելիքութիւններ ստեղծեց, — այն երեւելի խորամանկը, որ Ղարաբաղի հարազատ կաթողիկոսութիւնը ոչնչացրեց եւ նոր, իրան հաւատարիմ, կաթողիկոսութիւն ստեղծեց, — միթէ չէ՞ր կարող առաջուց պատժել իւր գիւղացիներին, երբ յայտնուեցաւ նրանց անհաւատարմութիւնը։ Իսկ այսօր, երբ թշնամին իւր ահարկու զօրութեամբ պաշարել է նրա բերդը, մի այդպիսի տագնապի ժամանակ, Իբրահիմ-խանը, ամեն հոգսեր թողած, իւր գիւղացիներին պատժելու մասին է մտածում, — այն գիւղացիներին, որոնց բնակիչները պատսպարուած են իւր բերդում, իսկ տղամարդիկը ալիւր եւ պաշար են կրում իւր բերդը... Եւ պատժել ի՞նչպէս։ — Իստամաղին եւ Սուլէյմանին 3000 ձիաւորներով ուղարկելով պարսից բանակը, որ Շահին խաբեն եւ, նրանից եւս զօրքեր առնելով, գնան դատարկացած Խնածախը եւ Բալուջան ոչնչացնելու... Կարծես, 3000 ձիաւոր բաւական չէր...

Մակար վարդապետը որքան եւ հնարներ ստեղծած լինէր իւր խնածախցիներից, բայց դարձեալ այդ բոլորը շա՛տ եւ շա՛տ ծիծաղելի է։

Եւ, վերջապէս, Աղա-Մամադ-շահը, որ այնքան զօրեղ իշխանութիւններ էր կործանել Պարսկաստանում, — նրա համար ի՞նչ նշանակութիւն ունէին երկու չնչին գիւղերի բարեկամութիւնն կամ թշնամութիւնն, որ նրանց վրայ առանձին ուշադրութիւն դարձնէր եւ իւր գնդապետներին ու հազարապետներին 7000 զի-

նուորներով ուղարկէր այդ դատարկ գիւղերը ոչնչացնելու:

Բայց Մակար վարդապետը այնքան քաջ գտնուեցաւ, որ իւր դրացի 80 հսկաների ձեռքով բոլորին կոտորել տուեց:

Այժմ տեսնենք հսկաների ժողովը, որ տեղի ունեցաւ այդ կոտորածից յետոյ, բաց օդի ներքոյ, սպանուածների թարմ գերեզմանների մօտ, որի անունը արդէն կոչել էին "Կոռուտ":

"Ճաշից յետոյ կազմուեցաւ ժողով: Նախագահ ընտրուեցաւ Քեանդլխուտա Խաչատուրն, որն առաջարկեց ժողովին. "Մի քանի ստիպողական եւ ամենակարեւոր խնդիրներ կան ժողովով լուծելիք. Ճըռ-խանութիւնն եւ Ճըռ-մելիքութիւնն՝ ոչնչացնելու խնդիր, Հարազատ-մելիքութիւնը եւ Հարազատ-կաթողիկոսութիւնը վերականգնելու խնդիր, մեր ընտանեաց կեանքի ապահովութեան խնդիր, մեր ծառայութիւնը վարձատրելու խնդիր, մեր կենաց խնդիր, Շահի եւ Մելիք-Մէժլումի հրաւէր ընդունելու կամ մերժելու խնդիր: Ահա այս խնդիրները պէտք է լուծել կարգաւ վիճաբանելով. ինչպէս մինչեւ ցարդ զօրապետական խորհուրդներով լուծուած են այսպիսի ծանր խնդիրներ: Միայն, խնդրեմ, ամեն ոք ձեզանից պէտք է խօսի ազատօրէն, կարծիք յայտնէ պաղարիւնութեամբ, հեռատեսութեամբ եւ նուրբ կշռադատութեամբ,, (եր. 38):

Առաջինը խօսում է "Գաղտնիք"ի հեղինակ Աբրահամ Բէկնազարեանը մի երկար ճառով, որ սկսում է այդ խօսքերով.

[1] Ճըռ-խանութիւն կոչում է հեղինակը Իբրահիմ-խանի իշխանութիւնը, որ բռնութեամբ տիրապետել էր Ղարաբաղը: Իսկ Ճըռ-մելիքութիւն կոչում է Իբրահիմ-խանի կուսակից մելիքութիւնները, որոնք բաժանուած էին Ղարաբաղի հարազատ մելիքների միաբանութիւնից:

“Ղարաբաղի ծրռ-խանութիւնը եւ ծրռ-մելիքութիւնը եթէ մենք մեր ձեռքով ոչնչացնենք՝ (գօնքիշատութեանը նայեցէք) շատ հեշտ է, (ինչու մինչեւ այսօր թողեցիք) իսկ եթէ Պարսից Շահերին կամ այլոց յուսով թողնենք՝ ծանրակշիռ եւ դժուարալոյծ խնդիր է„...

Պարսից Շահը 60.000 զօրքերով պաշարել է Ղարաբաղի խանի բերդը եւ չէ կարողանում ներս մտնել, իսկ Արք. Բէկնազարեանը շատ հեշտ է համարում իւր 80 հոգուց բաղկացած խմբով ոչնչացնել նրա խանութիւնը...

Իւր ճառի շարունակութեան մէջ “Գաղտնիք„ի հեղինակը պատմաբանօրէն բացատրում է պարսից վերջին թագաւորների աննպաստ վարմունքը Ղարաբաղի հայոց մելիքների վերաբերութեամբ եւ, վերջ ի վերջոյ, այն եզրակացութեանն է հասնում, թէ շատ չի պիտի հաւատալ Աղա-Մամադ-շահի խոստումներին, թէ նա կը վերականգնէ Ղարաբաղի ընկած մելիքութիւնները եւ այլն։

Յետոյ սկսում են այդ հարցի վրայ վիճել, բայց ամենքը հերթով են խօսում, առանց մինը միւսին խանգարելու, եւ ամեն հռետոր զօր է տալիս իւր լեզուի ուռած, փքած պերճախօսութեանը։

“Գաղտնիք„ի հեղինակը պատասխանում է մի այլ ճառով, որի մէջ բացատրում է Ղարաբաղի մելիքների յարաբերութիւնները ռուսաց հետ, սկսեալ Պետրոս Մեծից, եւ հասցնում է մինչեւ իւր ժամանակը[1]։

Հռետորները դարձեալ սկսում են վիճել, դարձեալ զօր են տալիս իրանց պերճախօսութեանը, բայց կարգով,

---

1 Թէ՛ առաջին եւ թէ երկրորդ ճառի բովանդակութիւնը ամբողջապէս առնուած է “Խամսայի Մէլիքութիւններից„։

առանց մինը միւսին ընդմիջելու, եւ աւելի կարգով, քան թէ Կ. Պոլսի այժմեան Ազգային երեսփոխանական ժողովը։

Հետաքրքիրն այն է, որ ժողովի բոլոր վիճաբանութիւններն արձանագրւում են։

"Խորհրդականաց խօսքերն նոյնութեամբ գրուեցան. թերեւս ապագայ սերնդոց օգտակար կը լինին,, (եր. 54)։

"Որոշուեցաւ որ Օշափ-Բաղդասարն (Վիշապ-Բաղդասարը), Ջարպազանն, Քիարփէթիւնն (Քալբաթինը), Փէհլուանն (Հսկան), Ալբէթիւնն (Աֆլաթունը), Պողպատն եւ Չափարն (Կոտորողը) ալիրները տանէին, Շուշում թողնէին եւ գալով մեզ միանային բանակատեղում",, (եր. 55)։

"Գաղտնիք„ի հեղինակը՝ միւսների հետ՝ գնում են Աղա-Մամադ-շահի բանակը՝ միանալու պարսիկների հետ եւ կռուելու պաշարուած բերդի դէմ, որի մէջ պատսպարուած էին նրանց ընտանիքները։ Նրանք ամենափոքր երկիւղ անգամ չեն կրում, որ Իբրահիմ-խանը նրանց ղաւակներին, կանանցը դնել կը տայ նոյն գնդակների դէմ, որ նրանք կ'արձակեն իւր բերդի վրայ...

Տեսնո՞ւմ էք այդ էշերով Իբրահիմ-խանի համար ալիւր տանող գիւղացիները, ոչ միայն հրաշագործ պատերազմողներ են, այլ, միեւնոյն ժամանակ, ուսեալ, կրթեալ, խորին քաղաքագէտ եւ պարլամենտական անձինք են... Նրանք պատմութիւն գիտեն, նրանք գիտեն անցեալը համեմատել ներկայի հետ, նրանց իւրաքանչիւրին ծանօթ են իրանց ժամանակի բոլոր պետութիւնների միջազգային յարաբերութիւնները... Երեւի լրագրներ եւս կարդում են...

Մակար վարդապետը պատմութեան, ժամանակների, սովորութիւնների ու կարգերի հետ այնպէս է խաղում, ինչպէս իւր "տէր ողորմեա„ի հատիկների հետ, կարծելով, թէ ո՛ր կողմն եւ ուզէ, կարող է դարձնել: Թուրքիոյ Հայոց 'ազգային սահմանադրութիւնը հիմնուեցաւ 1860 թուականին, Բայց Մակար վարդապետը 1795 թուին՝ նոյն սահմանադրական վարչութիւնը տեղափոխում է գիտէ՞ք որտեղ, — իւր ծննդավայր Խնածախ գիւղը...

Ոչ միայն Խնածախի գռեհիկ գիւղացիները, որոնց հասկացողութեան եւ աշխարհահայեցողութեան հորիզոնը իրանց գիւղի սահմանից հեռու չէր տարածվում, այլ նոյն իսկ Ղարաբաղի նշանաւոր մելիքները, որ իսկապէս հոյակապ անձնաւորութիւններ էին, — երբէք այս տեսակ ժողովներ չէին ունեցել: Երբ Ղարաբաղի մելիքները խորհուրդ էին կազմում, հաւաքվում էին մէկի տանը նստում էին թոնրի մօտ, մի կողմում դրած էր լինում գինին, օջախի վրայ ծխում էր խորովածը, մի կողմում լաց էր լինում անհանգիստ երեխան, հարսն ու աղջիկը ոտքի վրայ սպասաւորութիւն էին անում, տանտիկինը չերեփը ձեռին կերակուր էր ածում, — եւ երկրի իշխողները ուտում էին, եւ նահապետական պարզութեամբ խորհում էին իրանց երկրի չարն ու բարին:

Վերջապէս, Մակար վարդապետի "քաջերը„ մօտենում են Շահի բանակին: Ընդունելութիւնը կատարվում է հանդիսաւոր կերպով. թէ "ք ա ջ ե ր ի„ խումբից եւ թէ բանակից հնչեցնում են փողերը, "ինչպէս ի հնուց սովորութիւն էր պարսից„[1]: Մելիք-Մէջլումը, Ջաւադ-

[1] Մակար վարդապետը լսել է, որ երբ հայոց դաշնակից զօրքերը մօտենում էին պարսից բանակին, երկու կողմից եւս փողեր էին հնչեցնում,

խանը եւ "մի պատուաւոր անձն„ Շահի կողմից դիմաւորում են նրանց (եր. 135)։

Մելիք-Մէջլումը, որ վայելում էր շահի առանձին յարգանքը[1], ներկայացնում է "քաջերին„ եւ "յականէ յանուանէ„ գովաբանում է՝ թէ նրանց մատուցած ծառայութիւնները, թէ՛ հաւատարմութիւնը եւ թէ նրանց կատարած քաջութիւնները (եր. 135, 136)։

Շահը պատասխանում է մի ճառով, որի մէջ յատկապէս շեշտում է հայոց մատուցած վաղեմի ծառայութիւնների վրայ, եւ վերջացնում է այդ խօսքերով.

"Անվարձ չեն մնալու եւ ձեր քաջութիւններն եւ ծառայութիւնն" (եր. 136)։

---

որը միմեանց ողջունելու նշան էր։ Բայց այդ սովորութիւնը շատ հին էր, կատարվում էր հայոց թագաւորների եւ նախարարների ժամանակներում։ Իսկ մելիքների իշխանութեան ժամանակներում դադարած էր։

[1] Մելիք-Մէջլումը Ղարաբաղի Ջրաբերդ կոչուած գաւառակի մելիքն էր, որ միացած էր Աղա-Մամադ-շահի արշաւանքին եւ առաջնորդեց նրան Թիֆլիսի կործանման ժամանակ։ "Գաղտնիքի մէջ յիշվում է այն արտօնութիւնները, որ Շահը շնորհած էր Մելիք-Մէջլումին։ Իբրեւ մի նոր փաստ, թէ ինչպէս "Գաղտնիք„ը բառ առ բառ քաղում է "Խամսայի Մելիքութիւններից„, ես կը բերեմ մի եւ նոյն խօսքերը.

"Շահը շնորհեց Մելիք-Մէջլումին այդ երեք արտօնութիւնները.

1. "Երբ եւ կամենայ, կարող է անարգել կերպով ել եւ մուտ գործել իր մօտ։

2. "Ինչ որ խնդրելու լինի, նրա կամքը կը կատարուի,

3. "Արքունի գանձարանից նրա տրամադրութեան ներքոյ [illegible] լինի."

"Խամսայի Մելիք[illegible] եր. 145—146։

"Շահն Մելիք-Մէջլումին շնորհած էր հետեւեալ արտօնութիւնները...

Ա. "Մելիք-Մէջլումն ամեն ժամանակ իրաւունք ունի ազատ ելեւմուտ գործել Շահի մօտ առանց արգելքի։

Բ. "Ինչ խնդիր առաջարկելու [illegible] կը կատարուի [illegible]

Ո՞ր քաջութիւնները, ո՞ր ծառայութիւնները։ —

Այն ծառայութիւնները, որ այդ «քաջերը» մի քանի ժամ առաջ կոտորեցին նոյն Շահի 5671 զօրքերը…

Եւ շահը իսկոյն վարձատրեց։ «Գաղտնիք»ի հեղինակ Աբրահամ Բէկնազարեանին, որ «քաջերի» հրամանատարն էր, եւ որին Շահը «Հրաշագործ-Աղբայէլ»[1] էր կոչում (եր. 162), «Ծակ-Քարի» մօտ կատարած քաջագործութեան համար (որտեղ ընկան Շահի զօրքերը) շնորհեց մի ոսկեծաղրոշմ շքանշան, բայց «Հրաշագործ-Աղբայէլը» քաղաքավարութեամբ մերժեց, պատճառաբանելով, որ Շահը աւելի լաւ կ'անէ, եթէ կատարէ իւր խոստումները Ղարաբաղի ընդհանուր մելիքութիւնների վերաբերութեամբ (149)։

Այնուամենայնիւ, Շահը, որովհետեւ նենգամիտ էր, զաւակ չունէր, որդեգրեց «Հրաշագործ-Աղբայէլի» որդի Ասլան Բէկնազարեանին («Գաղտնիք»ի երկրորդ հեղինակին) եւ նրա անունը Ալլահվէրդի (Աստուածատուր) կոչեց, որովհետեւ Աստուած նրան մի զաւակ պարգեւեց (եր. 136)։ Այդ մասին խօսուեցաւ Դ-րդ գլխում։ — Իսկ նրա հօրը շնորհեց «զօրավարութեան» (?) աստիճան եւ պահեց իւր մօտ (եր. 170, 171, 172, 222)։ Այս տեղից է սկսվում հայր եւ որդի Բէկնազարեանների երեւակայական ծառայութիւնը պարսից երեք թագաւորների մօտ, որի մասին խօսուեցաւ նախորդ գլուխներում։

Պէտք է ուղեղի սաստիկ հիւանդութիւն ունենալ՝ այս տեսակ ցնորքները իբրեւ պատմութիւններ կայացնելու համար։

Չկայ մէկը պարսից վերջին թագաւորների մէջ, որ Աղա-Մամադ-շահի նման սիրելի լինէր իւր զինուորներ-

[1] «Հրաշագործ-Աղբայէլ» նշանակում է «Հրաշագործ-հօրեղբայր»։

Հէնց առաջին անգամ, երբ վէպասանը սկսում է գրել, նրան ներկայանում է իւր մանկութեան ծննդավայրը, որ աւելի մօտ է նրա սրտին, որ աւելի ծանօթ է նրան:

Մակար վարդապետին եւս շատ բնական էր, իւր վէպիկի նիւթը առնել Խնածախից: Այդպէս էլ արել է նա: Եւ այդ է այն տարօրինակ երեւոյթի պատճառը, որ նրա բոլոր հերոսները, որոնց թիւը քառասունից անցնում է, այդ գիւղից են ծնվում:

Նրա նկարած պատկերը, ինչպէս երեւում է “Գաղտնիք„ից, սկզբում դրած է եղել խիստ նեղ շրջանակի մէջ: Նա ներկայացնում էր Շուշի բերդի պաշարումը Աղա-Մամադ-շահից, խնածախցիների քաջագործութիւնները, Աղա-Մամադ-շահի երկրորդ արշաւանքը եւ նոյն բերդում սպանուիլը: Այդքանը միայն:

Եթէ Մակար վարդապետը բաւականանար այդ պատկերով միայն, եւ նրան նոյն ձեւով ներկայացնէր ընթերցող հասարակութեանը, գուցէ նրան կ'ասէին՝ վատ նկարիչ է, եւ աւելի ոչինչ: Բայց իւր վերջին վարմունքով՝ ենթարկել է իրան մի այնպիսի պատասխանատուութեան, որ շատ ծանր պէտք է լինի նրա համար...

Հայր սուրբը, ինչպէս երեւում է “Գաղտնիք„ից, հրապարակել է, եւ իւր ձեռնարկութեան մէջ շատ առաջ է գնացել: Նա սկսել է ընդարձակել իւր պատկերը: Եւ նոյն հերոսներին, որ նա ստեղծել էր միայն պատկերի մէջ գործելու համար, — նոյն հերոսնե-[illegible]մացրել է այն բոլոր պատերազմների եւ քաղաքական [illegible]ութիւնների մէջ, որ կատարուեցան Անդրկովկասիայում այն օրից, երբ ռուսները առաջին անգամ [illegible]ին այդ երկրի վրայ, մինչեւ նրանց կատարելա-պետեր:

Նոյնը արել է եւ Մակար վարդապետը։

«Գաղտնիք»ի 89—92 երեսներում յիշվում են 7 բոլորովին անյայտ պատմագրների անուններ, եօթն հրաշալեաց խորհրդաւոր թւով։ Այդ եօթանց խումբը յայտնվում է մի եւ նոյն դարում եւ գրում է 15 հատոր պատմութիւններ Ղարաբաղի վերաբերութեամբ։ — Ահա այն հարուստ գանձարանը, ահա այն անսպառ աղբիւրները, որոնցից օգուտ քաղելով, «Գաղտնիք»ի հեղինակը պէտք է մատակարարէր մեզ իւր խոստացած «անգին գանձերը»։

Հետաքրքիր են այդ պատմագրների եւ նրանց հեղինակութիւնների անունները.

Ա. Երեմիա (Հասան-Ջալալեան) կաթողիկոս Գանձասարայ վանքի, գրել է.

1. «Պատմութիւն կաթողիկոսացն Աղուանից»։

2. «Ծագումն թագաւորացն Աղուանից»։

3. «Ծագումն Ջալալեան տոհմի ի Վախթանկ թագաւորազնէ», որը իբր թէ Ջալալեան Գրիգորիս եւ Եղիա վարդապետների պատմութեան շարունակութիւնն է եղել[1]։

4. «Ժամանակագրութիւն անցից»։ Որ Ղարաբաղում կատարուած քաղաքական եւ եկեղեցական պատմու-

---

[1] Գրիգորիս եւ Եղիա վարդապետները վախճանուել են Երեմիա կաթողիկոսի վախճանուելուց 462 տարի առաջ (1228 թ.) եւ նրանք ոչ մի պատմութիւն չեն թողել, որ շարունակած լինէր Երեմիա կաթողիկոսը. Կիրակոս Գանձակեցին իւր պատմութեան մէջ (եր. 159) յիշում է այդ ...ու վարդապետների անունները, բայց ոչ իբրեւ պատմագրների, այլ իբրեւ ...կրօն արեգաների։ Եթէ նրանք պատմութիւն գրած լինէին, անկարելի չյիշէնար Գանձակեցին։ Տես պատմութիւն Կիրակոս Գանձակեցւոյ, ...ծ Մոսկուայում 1858 ամի։

*թիւնն է, որի մէջ կարգով գրուած են եղել բոլոր մելիքների գործերը*[1]:

*Բ. Եղիա վարդապետ Հասան-Ջալալեան*[2]:

1. "*Արշաւանք Թաթարաց և պատերազմ ի Կաշաղակաբերդին*":

*Գ. Եսայի (Հասան-Ջալալեան) կաթողիկոս Գանձասարայ վանքի.*

1. "*Ծագումն և պատմութիւն Մելիք-Հայկազեանց Մելիք-Եսայեայ, իշխողին Ջրաբերդի*":

2. "*Ծագումն և պատմութիւն Մելիք-Աբովի Առաջնոյ, իշխողին Գիւլստան գաւառի*":

3. "*Յարաբերութիւն Հայոց ընդ Ռուսաց*", *որի մէջ ժամանակագրական կարգով զետեղուած են եղել, սկսեալ* 1727 *թուականից*[3], *հայոց կաթողիկոսների և մելիքների ռուսաց կառավարութեան հետ ունեցած յարաբերութեանց պաշտօնական թղթերի օրինակները: Նոյն պատմութեան մէջ իւրաքանչիւր նոր գահակալող կաթողիկոս շարունակել է գրել իւր ժամանակի գործերը, նոյնպէս ժամանակագրական կարգով*:

*Դ. Մովսէս վարդապետ միաբան Գանձասարայ վանքի.*

1. "*Վանորայք Արցախի և կալուածք նոցա*": *Այդ պատմութեան մէջ նշանակուած են եղել Ղարաբաղի*

---

[1] *Երեմիա կաթողիկոս Հասան-Ջալալեանը, ինչպէս կարող էր գրել բոլոր մելիքների գործերը, քանի որ նա վախճանուեցաւ* 1700 *թուականին, իսկ մելիքները գործում էին մինչև* 1830 *թուականները: Վեհափառը ևս չէ՞ր կարող երկնքում պատմագրութեամբ պարապել*:

[2] *Կարդա ծանթ.* 1, *եր.* 663:

[3] *Ահա մի նոր պատմագիր ևս, որ երկնքում է գրում: Եսայի կաթողիկոս Հասան-Ջալալեանը վախճանուեցաւ* 1728 *թուին, ինչպէս կարող էր գրել նա սկսեալ* 1727 *թուից հայոց մելիքների ռուսաց հետ ունեցած յարաբերութեանց գործերը*:

բոլոր վանքերի անունները, նրանց արձանագրութիւնները, նրանց կալուածքների տարածութիւնը իրանց սահմաններով, նուիրողների անունները, նրանց կալուածագրերը, թագաւորների հրովարտակների օրինակները, որ հաստատում էին այդ կալուածքները իբրեւ սեպհականութիւն վանքերի եւ այլն։

Ե. Վարդան վարդապետ վանահայր Գտիչ վանքի.

1. "Պատմութիւն մելիքաց Դիզակի եւ Վարանդի"։

2. "Դիւցազնական քաջագործութիւնք մելիքաց"։

3. «Ծագումն Փանահ Ճըռ-խանի եւ Ճըռ-Մելիք-Միրզախանի"։

4. "Իսրայէլ Ճըռ-կաթողիկոս եւ գործք իւր"։

Զ. Եղիա վարդապետ միաբան Ամարասայ վանքի.

1. "Սահմանք հայ մելիքաց"։ Որի մէջ գրուած է եղել Ղարաբաղի մելիքների տիրած երկրների սահմանները, բերդերի թիւը եւ նրանց նկարագրութիւնները, ժողովրդի որքանութիւնը, գիւղերի անունները եւ բնակչաց թիւը, զօրքերի քանակութիւնը եւ այլն։

Է. Ղեւոնդ վարդապետ, վանահայր Ղեւոնդեանց անապատի.

1. "Մելիք-Շահնազար Երրորդ"։ Որի մէջ գրուած է եղել Մելիք-Շահնազարեանների տոհմի ծագումը եւ նրանց ժառանգների գործերը։

Տեսնո՞ւմ էք, ո՛րքան առատութիւն... Ղարաբաղը ո՛րքան հարուստ է եղել իւր պատմագիրներով եւ պատմութիւններով։ Եւ ի՛նչ բախտաւոր պատմագիրներ, նրանք խմբով յայտնվում են մի եւ նոյն դարում, եւ իրանց գրքերի մէջ մի բան չեն թողնում, որի վրայ ուշադրու-

*թիւն չպարծնէին, — մինչեւ անգամ վիճակագրութիւն...*

*Իսկ «Գաղտնիք»ի հեղինակը օգուտ քաղե՞ց այդ գանձերից։ —*

*Դժբախտաբար, — ո՛չ։*

*Ինչո՞ւ։ —*

*Ահա՛ ինչու։*

*“Բայց հարազատ-մելիքներն, բոլոր ձ ե ռ ա գ ր ե ր ը եւ թ ղ թ ե ր ը արդէն կանխաւ երեք մասն բաժանած եւ թ ա գ ց ր ա ծ էին, յորոց առաջին մասը թագցրած էին Գանձասարի եւ Խօթա վանքի մէջ տեղում մի քարայրում եւ բերանը ամրացրած քարուկիր պատով եւ անյայտացրած, երկրորդ մասը Ջրաբերդի մի ստորերկրեայ եւ անյայտ քարայրում, իսկ երրորդը Կիւլատան գաւառի Հոռեկայ վանքի մօտերում,, (եր. 89)։*

*Ի՞նչ հարկ կար այդ անմեղ պատմութիւնները՝ այդպէս զանազան տեղերում՝ երեք գերեզմանների մէջ թաղելու։*

*Այդ հարկը այդպէս է բացատրում «Գաղտնիք»ի հեղինակը.*

*“Երեք մասը բաժանելու պատճառն այն է, որ ոչ միայն ճըռ-խանն (Իբրահիմ-խանը) հետազօտում էր ոչնչացնել այդ ձ ե ռ ա գ ր ե ր ը, այլ եւ Մելիք-Շահնազար Գ-ն եւ ճըռ-մելիք Միրզախանն (Իբրահիմ-խանի կուսակիցները), քանզի այդ ձեռագրերում անաչառապէս պ ա տ մ ա գ ր ու ա ծ էին բոլոր ճըռերի (անհարազատների) եւ հարազատների արարքը,, (եր. 89)։*

*Ծիծաղելի է։ Ղարաբաղի մելիքները իրանց ամրոցներով եւ անմատչելի բերդերով, իրանց անթիւ զօրքերով ի՞նչպէս էին պահպանում մի ամբողջ երկիր, երբ նրանք*

անզօր էին 15 հատ գիրք պահելու։ Կամ այդ գրքերը մելիքների մօտ ի՞նչ էին շինում։ Եւ եթէ նրանք այնքան հմուտ մարդիկ էին, որ հասկանում էին այդ գրքերի նշանակութիւնը, ինչու երբ գաղթեցին դէպի Գանձակի եւ Վրաստանի կողմերը, չտարան գրքերը իրանց հետ, այլ թաղեցին գետնի տակ, որ փտեն։ Եւ վերջապէս մի՞ թէ այդ գրքերը մի-մի օրինակներ էին, որ թաղուելով գետնի տակ, մոռացուեցան եւ բոլորովին անյայտացան։

Դժբախտաբար մի-մի օրինակներ էին։ Ահա ինչ է ասում այդ մասին “Գաղտնիք„ի հեղինակը.

“Հարկ է ասել որ այս ձեռագիր գրքերն տակաւին ընդօրինակուած եւ ժողովրդեան մէջ ցրուած չեն (չէին), այլ հաւաքուած են (էին) Գանձասարի հնադարանում, քան զի թէ Մելիք-Շահնազար Դ-ն եւ թէ Իսրայէլ ճըռ-կաթողիկոսն հետամուտ եղած են (էին) բազմիցս անյայտացնել այդ ձեռագրերը։ Այս միջոցին դիմած են սոքա, որպէս զի եթէ հնար է, իւրեանց մահից յետոյ պատմութեանց մէջ չմնային իւրեանց վատ արարքներն, եւ ապագայ սերունդներից ծածկէին իւրեանց ամօթը ու նախատինքը։ (Կարծես ամբողջ 15 գրքերը միայն Մելիք-Շահնազարի եւ Իսրայէլ կաթողիկոսի գործերի մասին գրուած լինէին։) Այսպէս հետամուտ եղածէին ոչնչացնել այդ ձեռագրերը եւ բոլոր ճըռերն։ Ահա ձեռագրերը թաղցնելու պատճառներն„ (եր. 91, 92)[1]։

---

[1] Որպէս զի ցոյց տայ, թէ իրաւ թաղցրած են եղել պատմութեան գրքերը, Մակար վարդապետը իւր ծանօթութեան մէջ (եր. 89) ասում է, թէ նրանց մի մասը գտաւ Բաղդասար միտրապօլիտը, որոնց թւում գտնվում էր Իսայի կաթողիկոսի հեղինակած “Պատմութիւն Աղուանից„ գիրքը, եւ ուրիշ շատ ձեռագրեր, որք անյայտացած են Շուշու Առաջնորդարանից Բաղդասար սրբազանից յետոյ„։ (Ո՞րքան սխալում է Մակար

*Այդ բոլորը Մակար վարդապետի թքով կպցրած պատճառաբանութիւններն են...*

*Այսինչ ձեռնածուի եւ այն ինչ խեղկատակի հիւանդութեան պատճառով ներկայացումը յետաձգվում է...*

*Բայց Մակար վարդապետի երեւակայական պատմագիրները իրանց երեւակայական պատմութիւններով, ոչ միայն հիւանդանում են, այլ գետնի տակ թաղուելով, — մեռնում են...*

*Ուրեմն, այլ եւս ինչ մեղաւոր է «Գաղտնիք»ի հեղինակը, որ նա չկարողացաւ իւր խոստացած պատմա-*

---

վարդապետը գրքերի այդ անխնայ կոտորածը... Նրա մօտ ամեն ձեռագիր աշխատութիւն անյայտանում է...)։ Ճշմարիտ է. Բաղդասար միտրապօլիտի օրերում մի թուրք հովիւ լեռների ծերպերի մէջ գտել էր մի քանի եկեղեցական գրքեր, եւ սրբազանը, նրան մի եզն տալով, առել էր այդ գրքերը։ Բայց նրանց թւում ոչ Եսայի կաթողիկոսի “Աղուանից պատմութիւնը” կար եւ ոչ Ղարաբաղի վերաբերութեամբ մի այլ պատմական աշխատութիւն։ — Թէ ո՞ր թուականին գտաւ Բաղդ. միտրապօլիտը Եսայի կաթողիկոսի “Աղուանից պատմութիւնը”, — այդ մասին լռում է Մակար վարդապետը, եւ նրա լռութեան պատճառը կը հասկացուի յետոյ։ Միայն այսքանը յայտնի է նրա խօսքերից, որ սրբազանը գտաւ յիշեալ պատմութիւնը, երբ արդէն եպիսկոպոս էր եւ Ղարաբաղի միտրապօլիտ։ Բաղդասարը եպիսկոպոս ձեռնադրուեցաւ Եփրեմ կաթողիկոսից 1820 թ., իսկ Ղարաբաղի միտրապօլիտ կարգուեցաւ նոյն կաթողիկոսից 1830 թուին։ Ուրեմն, Մակար վարդապետի խօսքով, այդ թուականներից յետոյ պէտք է գտած լինէր միտրապօլիտը Եսայի կաթողիկոսի “Աղուանից պատմութիւնը”։ Իսկ իմ գրասեղանի պահարանում այսօր կարելի է տեսնել Բաղդասար միտրապօլիտի իսկական ձեռքով գրուած քաղուածքները Եսայի կաթողիկոսի պատմութիւնից եւ այդ պատմութեան շարունակութիւնը, որ նա արել է այն ժամանակ, երբ ինքը տակաւին վարդապետ էր, եւ իւր հօրեղբայր Սարգիս կաթողիկոսի հետ գտնվում էր Հաղբատայ վանքում։ Ուրեմն այդ գրքի հետ ծանօթ էր նա նախ քան 1820 թուականները, եւ ոչ Մակար վարդապետի հնարած գիւտից յետոյ։

Այդ ծանօթութիւնը չպիտի մոռանալ, որովհետեւ դա կը բացատրէ “Գաղտնիք”ի հեղինակի մի քանի նոր խարդախութիւնները, որ կը տեսնենք յետոյ։

կան “անգին գանձերը„ մեզ աւանդել, երբ այն բոլոր գրքերն, որ պէտք է ծառայէին նրան իբրեւ աղբիւր, այդպէս տարաբախտ կերպով ոչնչացան... եւ նրա ձեռքին չհասան...

Ամէն ինչ մոռացել է Մակար վարդապետը “Գաղտնիք„ի կեղծութիւնը ծածկելու համար, բայց մի բան մոռացել է։

“Գաղտնիք„ի հեղինակ Աբրահամ Բէկնազարեանը (“Հրաշագործ-Աղբայէը„ — հոգեհան հրեշտակը) լաւ գիտէր յիշեալ գրքերի թագցրած տեղերը. Նա իւր ձեռքի տակ ունէր 7000 զինուորներ եւ 70—80 հսկաններ։ Իբրահիմ-խանը եւ նրա կուսակից “Ճըռ-մելիքներն„ տերեւի նման դողում էին նրա երկիւղից։ Նա ինքը Ղարաբաղի պատմութիւնն էր գրում։ Այդ գրքերը նրան շատ հարկաւոր էին։ Ինչու մի օր չը վեր առեց իւր “Վիշապներին,, իւր “Առիւծներին,, եւ իւր “Կայծակներին,, եւ չգնաց այդ գանձերը դուրս հանելու եւ թողեց, որ անյայտութեան մէջ ոչնչանային...

Դիցուք թէ “Գաղտնիք,,ի հեղինակը չմտածեց այդ մասին։ Բայց նա ինքը Մաթուսաղայի տարիքն ունէր, ապրել էր համարեա երկու դար, ամէն ինչ իւր աչքով տեսել էր եւ ամէն գործողութիւնների մէջ անձամբ մասնակցել էր, եւ բացի դրանցից, նա ինքը Գանձասարի Ներսէս կաթողիկոսի մօտ անյայտ նիւթեր էր ընդօրինակում իւր “Գաղտնիք,,ի համար (եր. 15)։ — Այդ նիւթերը ինչ եղան, որ չմտան “Գաղտնիք,,ի մէջ։ —

Նրանց հետ եւս դժբախտութիւն պատահեց...

Երբ “Գաղտնիք,,ի հեղինակը հիւանդ պառկած էր մահուան անկողնի մէջ, իւր որդի Ապրես Բէկնազարեանին

**շատ խրատներ տալուց յետոյ, յանձնեց նրան Թանգագին աւանդը, որ նա արձանագրէր "Գաղտնիք,,ի մէջ։**

**Այդ խորհրդաւոր րոպէն հետեւեալ կերպով է նկարագրում որդի Բէկնազարեանը.**

"Յետոյ իւր արխալուղի պինդ կարած ծոցաջէպի կարերը քանդելով՝ հանեց մի կարմիր ծրար եւ զայն ինձ տալով ասաց.

"Եւ դու սիրելի որդեակ իմ՝ Ալեքս, ա՛ռ այս ծրարը, որոյ մէջ են Մեծին-Պետրոսի Ղարաբաղի հարազատ-մելիքներին գրած, Եկատերինէ Բ. կայսրուհւոյն Աղուանից կաթողիկոսին եւ մելիքներին ուղղած պայմանաթղթոց պատճէնները, եւ սոցա առ նոսա գաղտնի գրած պայմանաթղթոց պատասխանների ընդօրինակութիւնները, Արղութեանց Յովսէփ եպիսկոպոսին, Աշտարակեցի Ներսէս եպիսկոպոսին, Մինաս-աղա Լազարեանցին, Մատաթովին, Մելիք-Վանուն, մեծ Եարմալովին Ներսէս եպիսկոպոսի ձեռով հայերէն գրել տուած եւ ինձ ղրկած ամենածածուկ եւ վտանգաւոր նամակներն։ Այս բոլոր թղթակցութիւնները, որք վերաբերում՝ են Ռուսաց Հայոց հետ կապած պայմանաց եւ գաղտնի յարաբերութեանց ժամանակագրական կարգաւ զետեղիր քո "Գաղտնիք Ղարաբաղի,, պատմութեան մէջ, որովք թէ հետաքրքիր կը լինի ընթերցողաց քո պատմութիւնդ եւ թէ չեն կորչիր, ինչպէս կորած են Ղարաբաղի ձեռագիր պատմութիւնները։ (**Նրանք, որ դու ինքդ թաղեցիր գետնի տակ...**) Որքա՜ն լոյս կը սփռեն ապագայ հայ պատմութեան ինչպէս "Գաղտնիք Ղարաբաղին,,, նոյնպէս այդ նամակներն։ Բայց զգուշացիր որ քո ձեռագիր պատմութեան գլխին եւս փորձանք չպատահի,, (**եր.** 388)։

Փորձանքը պատահեց... Մակար վարդապետը ‘‘Գաղտնիք„ի բնագիրը կորցրեց...

Իսկ ի՞նչ եղան այն ‘‘ամենածածուկ„ եւ ‘‘վտանգաւոր„ նամակները, ի՞նչ եղան այն գաղտնի յարաբերութեանց պայմանագրերը, որ ամփոփուած էին ‘‘կարմիր ծրարի„ մէջ: —

‘‘Կարմիր ծրարի„ հետ եւս փորձանք էր պատահել...

‘‘Երբ բացի այն ծրարը, — շարունակում է որդի Բէկնազարեանը, — որ նամակների ընդօրինակութիւնը զետեղէի այստեղ (‘‘Գաղտնիք„ի մէջ) Աստուա՜ծ իմ, ի՜նչ տեսայ: Տեսայ որ մի տառ անգամ մնացած չէր թղթոց վերայ: Թղթերն քրտինքներից փթած եւ յաճախակի շարժումներից տրորուած եւ տառերն բոլորովին անյայտացած էին, քանզի գիշեր եւ ցերեկ հայրս միշտ իւր վերայ էր կրում այդ ծրարը (ուրեմն արխալուղով էր քնում) եւ ինձանից անգամ զգուշութեամբ պահում: Լալով այրեցի ակամայ այդ անօգուտ թղթերը հանդերձ ծրարովն„ (եր. 390):

Շատ ապրի Ապրես Բէկնազարեանը, որ այդ հոգսից եւս ազատեց Մակար վարդապետին...

Տեսնում էք ‘‘Գաղտնիք„ի հեղինակը ինչպէս ճարպիկ կերպով դուրս պրծաւ իւր խոստացած պատմական ‘‘Թանգագին գանձերը„ մեզ մատակարարելու պարտաւորութիւնից...

Պարսից երեք Թագաւորների մօտ ամենաբարձր պաշտօններ կատարող Աբրահամ Բէկնազարեանը, 10.000 զօրքերի հրամանատար Աբրահամ Բէկնազարեանը, Փաթալի-շահի ներքինապետ Աբրահամ Բէկնազարեանը՝ մի արկղիկ անգամ չէ ունեցել այդ գանձերը պահելու հա-

մար... Եւ սկսեալ Պետրոս մեծի օրերից, հայոց եւ ռուսաց 127 տարուայ (1701—1828) յարաբերութեանց թղթակցութիւնները պահւում էր իւր ա ր խ ա լ ո ւ ղ ի ծոցի գրպանում... մի փոքրիկ կարմիր ծրարի մէջ...

Եթէ Մակար վարդապետը տեսած լինէր այն խոշոր հատորները, որ տպուած են ռուսաց լեզուով եւ բովանդակում են իրանց մէջ հայոց եւ ռուսաց յարաբերութիւնների ոչ թէ ամբողջ թղթակցութիւնները, այլ նրանց ցուցակները միայն, եւ որ կոչվում են „Собраніе октовъ, относящихся къ обозрѣнію исторіи армянскаго народа" — այդ տեսնելուց յետոյ, կարծեմ, Մակար վարդապետը մի փոքր պիտի կարմրէր, մտածելով, որ թղթերի այդ ամբողջ արխիւը անկարելի էր ծոցի գրպանում պահել...

Հարկաւոր է կրկին վերադառնալ դէպի վերեւում յիշուած 7 պատմագրները եւ դէպի նրանց թւով 15 գրաւոր վաստակները, որոնք այնպիսի տարաբախտ վիճակի ենթարկուեցան, — ասում եմ հարկաւոր է, այն նպատակով, որ դրանով պէտք է բացատրուի ‘‘Գաղտնիք„ի հեղինակի մի նոր օ յ ի ն բ ա զ ո ւ թ ի ւ ն ը։ Ուրիշ աւելի յարմար բառ հազիւ թէ կարելի է գտնել մի նենգաւոր վարմունք արտայայտելու համար։

Այն բոլոր նախամտածութիւնները, — 15 պատմական մատեանների զանազան տեղերում թագցնելը եւ անհետացնելը, — նրանց միայն մի-մի օ ր ի ն ա կ լինելը, — այդ գրքերի Բաղդասար միտրապօլիտի ջանքերով գտնուած օրինակների դարձեալ անհետանալը Շուշիի առաջնորդարանի գրադարանից, — Աբրահամ Բէկնազարեանի գրպանում մնացած թղթերի ոչնչանալը, — այդ բոլորը, կրկնում եմ, սկսեալ 15 պատմագրների թաղու-

միջ, մինչեւ “Գաղտնիք„ի բնագրի թաղումը, որ կատարուեցաւ Մակար վարդապետի ձեռքով, — այո՛, այդ բոլորը, ինքն ըստ ինքեան, ծագեցնում է մի միտք, մի խորին տարակուսանք. Տէ՛ր Աստուած, ի՜նչ մի ճակատագրական անէծք կար այդ դժբախտ գրաւոր վաւերականների վրայ, որ այդպէս ցաւալի կերպով դատապարտւում են կորստեան, որ այդպէս ոչնչանում եւ անհետանում են...

Այդ խնդիրը պարզելու համար, նախ պէտք է պարզել այն հարցը, արդեօք յիշեալ 15 մատեանները եւ նրանց 7 պատմագիրների խումբը որ եւ է ժամանակ գոյութիւն ունեցե՞լ են, թէ ո՛չ։

7 պատմագիրների մէջ միայն երկու անուններ կան, որ մեզ բաւական յայտնի են։ Մնացեալ 5ը ես թողնում եմ Մակար վարդապետին ապացուցանել, արդեօք որ եւ է ժամանակ գոյութիւն ունեցե՞լ են, կամ պատմութիւն գրե՞լ են, թէ ոչ։

Մեզ յայտնի անունները դրանք են.

1. Երեմիա կաթողիկոս Հասան-Ջալալեան, գահակալ Գանձասարայ վանքի, ծնուեցաւ 1675 թուին, վախճանուեցաւ 1700 թուին։

2. Եսայի կաթողիկոս Հասան-Ջալալեան, գահակալ Գանձասարայ վանքի, ծնուեցաւ 1701 թուին, վախճանուեցաւ 1726 թուին։

Վերջինը առաջինի եղբօր որդին էր։

Առաջինը, Երեմիա կաթողիկոսը, արդեօք գրե՞լ է պատմութիւն, թէ չէ գրել, — յայտնի չէ։ Նրա գրաւոր վաւերականներից մեր ձեռքը ոչինչ չէ հասել։ Այդ եւս թողնում եմ Մակար վարդապետին պարզաբանել։

Երկրորդը, Եսայի կաթողիկոսը, իրաւ է, գրել է պատմութիւն։ Իւր աշխատութիւնը սկսել է նա

1036 թուականից եւ հասցրել է մինչեւ 1711 թուականը[1]։

Դա միեւնոյն արժանայիշատակ անձնաւորութիւնն է, որ Ղարաբաղի մելիքների Պետրոս Մեծի հետ ունեցած քաղաքական յարաբերութիւնների մէջ խիստ եռանդոտ դեր էր կատարում։ 1722 թուին դա էր, որ Ղարաբաղի հայոց զօրքերով, վրաց Վախթանգ թագաւորի հետ, Գանձակի մօտ սպասում էին Պետրոս Մեծի գալստեանը։ Իսկ երբ Պետրոս Մեծը զանազան հանգամանքների պատճառով վերադարձաւ Դէրբենդից, — դարձեալ դա էր, որ 1724 թուին գնաց Ռուսաստան եւ անձամբ տեսնուեցաւ Կայսրի հետ։ Վերադարձին օծեց նա Աստրախանի նորահաւաք հայ գաղթականների կառուցած մայր եկեղեցին։ Իւր վերջին գործողութիւնները գրեց նա առանձին գրքոյկով, որը յիշատակարանի ձեւ ունի։

Մակար վարդապետի ստեղծած միւս 6 պատմարաններին, հանդերձ իրանց ստուար մատենագրութեամբ, մենք կը զիջանէինք հայր սուրբին, եթէ գոնէ Եսայի կաթողիկոսի աշխատութիւններից մի բան առած եւ մեզ հաղորդած լինէր։

Բայց ինչն է ստիպել նրան այսպէս անխնայ կերպով ոչնչացնել իւր ստեղծած պատմագրներին։ —

Շատ հասկանալի է, թէ ինչը։ — Որպէս զի "Գաղտնիք„ից շատ բան չպահանջուի։ Որպէս զի չասեն, լաւ,

---

[1] Եսայի կաթողիկոսի լիակատար պատմութիւնը մեր ձեռքը չէ հասել. Նրա խիստ կրճատած համառօտութիւնը Բաղդասար միտրապօլիտը 1839 թուին տպագրել տուեց Շուշի քաղաքում հետեւեալ վերնագրով. «Պատմութիւն կամ յիշատակ ինչ ինչ անցից՝ դիպելոց յաշխարհին Աղուանից, համառօտագրեալ ի Սրբազնակատար կաթողիկոսէն Աղուանից ի Տէր Եսայեայ Հասան-Ջալալեանց, ի թուականին հայոց ՌՃԿ, իսկ ի թուականի Տեառն մերոյ փրկչին Յիսուսի 1711„։

այդ բոլորը, ինչ որ կայ "Գաղտնիք"ի մէջ, մեզ համար գաղտնիք չէր՝ նախ քան այդ գրքի լոյս տեսնելը, — ուրեմն "Գաղտնիք"ը ի՞նչ գաղտնիքներ երեւան հանեց, ու՞ր մնացին նրա խոստացած "թ ա ն գ ա գ ի ն  գ ա ն ձ ե ր ը", ...նրա խոստացած "ա մ ե ն ա վ տ ա ն գ ա ւ ո ր  գ ա ղ տ ն ի ք ն ե ր ը"... Որպէս զի Մակար վարդապետը իրաւունք ունենայ ասելու. Թէ այդ բոլորը կային եւ կը լինէին, բայց ի՞նչ արած, որ պատմութեան 15 գրքեր անյայտացան, գետնի տակ թաղուելով, իսկ ինչ որ պահուել էր Աբրահամ Բէկնազարեանի արխալուղի ջիբում, — այն էլ մեր մեղքից փտեց, ոչնչացաւ...

Պրծաւ, գնաց...

Մակար վարդապետը իրան մատնած կը լինէր, եթէ մի որ եւ իցէ յայտնի աղբիւր ցոյց տար իւր աշխատութեան, որովհետեւ, այն աղբիւրները ուղղակի կերպով պէտք է հակառակէին այն բոլոր առասպելաբանութիւններին, այն բոլոր աններելի աղաւաղումներին, որ նա արել է "Գաղտնիք"ի մէջ։ Այդ է պատճառը, որ նա յիշում է այնպիսի երեւակայական պատմաբանների եւ պատմութիւնների անուններ, որոնք երբէք գոյութիւն չեն ունեցել, եւ որոնց հետ անկարելի կը լինէր համեմատութիւններ անել, կամ ստուգել "Գաղտնիք"ի առակաբանութիւնները։

Մակար վարդապետի վարմունքը նմանում է կաքաւների վարմունքին, որոնք՝ որսորդից փախչելու միջոցին՝ իրանց գլուխները թաղում են ձիւնի մէջ եւ անշարժ կանգնում են, կարծելով, եթէ իրանք որսորդին չեն տեսնում, որսորդն էլ նրանց չի տեսնի։

Կրիտիկայի հալածանքից ազատուելու համար, Մակար վարդապետը աշխատել է՝ երեւակայութեամբ բոլոր

պատմագրներին թաղել զանազան տեղերում, որպէս զի կատարուած խարդախութիւնները ծածկուին։ Բայց նա մոռացել է, որ դեռ եւս կան եւ մնացել են շատ աղբիւրներ, որոնք կարող են երեւան հանել նրա իւրաքանչիւր տողի կեղծութիւնը։

Ու այսպէս, ‘‘Գաղտնիք,,ի պատմական մասը ոչ մի նոր եւ մեզ անյայտ աղբիւր չունի։ Այդ մասը առնուած է ‘‘Խամսայի Մելիքութիւններից,,, այն զանազանութեամբ միայն, ինչ որ փոփոխել է Մակար վարդապետը եւ ինչ որ աւելացրել կամ պակասացրել է, — դրանք կամայական զեղծումներ եւ անխիղճ մեղանչումներ են ճշմարիտ պատմութեան դէմ։ Ես կարող էի համեմատութիւններով ցոյց տալ այդ, բայց իմ յօդուածը, առանց դրան եւս շատ երկարացաւ։ Բաւական է յիշել այդքանը միայն, որ Հայր սուրբը իւր ստեղծած 70—80 հերոսներին, որոնց հետ ծանօթացանք նախընթաց գլուխներում, զոռով մտցրել է այն բոլոր նշանաւոր անցքերի եւ գործողութիւնների մէջ, որոնք կատարուել են Ղարաբաղի պատմական կեանքում։ Ամեն տեղ վխտում են այդ զանազան ‘‘Կայծակներն,, ու ‘‘Կարկուտները,,, ամեն տեղ կան այդ զանազան ‘‘Վիշապներն,, ու ‘‘Դէվերը,,, եւ ամեն քաջութիւն, ամեն սքանչելիք նրանց ձեռքով է կատարվում։ Մակար վարդապետը այն աստիճան անխիղճ է գտնուել, որ խլել է Ղարաբաղի բոլոր մելիքների փառքը եւ յատկացրել է իւր դրացի գիւղացիներին։

‘‘Գաղտնիք,,ը չկարդացողների համար՝ ես մի օրինակով կը բացատրեմ այդ։

Մեզանից ամեն մէկին յայտնի է Խօրենացու պատմութեան բովանդակութիւնը։ Երեւակայեցէք մի այսպիսի բան. յանկարծ մէկը 6րդ կամ 7րդ դարում դուրս է

գալիս, դիցուք Տարօնի Հացիկ գիւղից, եւ իւր դրացի գիւղացիներից ստեղծում է մի խումբ հերոսներ, եւ առանց ուշադրութիւն դարձնելու ժամանակագրութեան վրայ, իւր ստեղծած հերոսների ձեռքով կատարել է տալիս այն բոլոր գործողութիւնները, ինչ որ կատարել են Արշակունի թագաւորները կամ նրանց նախարարները իրանց ամբողջ պատմական կեանքում։ Մի այդպիսի վարմունք շատ հեշտ է մի խելագար պատմագրի համար, որովհետեւ նա Խորենացու գիրքը աչքի առջեւ ունի, պատմական փաստերը յայտնի են, միայն հարկաւոր է փոխել անձնաւորութեանց անունները, օրինակ, Տիգրանի, Արտաշէսի, Արշակի եւ միւս թագաւորների անուանց տեղ՝ դնել իւր ստեղծած հերոսների անունները, եւ ամենայն չափազանցութեամբ նրանց կատարել տալ առաջինների գործերը։ Դրանից, շատ հասկանալի է, պէտք է առաջ գան աններելի անախրօնիզմներ, — ժամանակագրական վրիպումներ, — որովհետեւ մի եւ նոյն անձնաւորութիւնը չէր կարող կատարած լինել թէ Տիգրան Բ-ի եւ թէ Արշակ Բ-ի գործերը, որոնք միմեանցից մի քանի դար հեռաւորութիւն ունին։ Այդ ոչինչ։ Խելագար պատմագիրը ձըգ-ձըգում է իւր հերոսների հասակը եւ նրանց մի քանի դար կեանք է տալիս։

Նոյնպէս վարուել է Մակար վարդապետը։

Նրա բոլոր հերոսները չեն մեռնում, դարեւոր կեանք ունին։ Նրանք ներկայ են Ղարաբաղի մելիքների բոլոր գործողութիւնների մէջ, սկզբից մինչեւ վերջը։

Նա առել է ‘‘Խամսայի Մելիքութիւններից,, պատմական փաստերը եւ, փոփոխելով, չափազանց ձեւ տալով, կատարել է տուել իւր խնածախցիներին։ Այնպէս որ ‘‘Գաղտնիք,,ի մէջ Ղարաբաղի իսկական մելիքները եւ

նրանց խուզաշխները ոչ միայն սաստիկ նախանձում են, այլ բոլորովին անյայտանում են։ Մարդ չգիտէ. թէ ո՞ւր էին եւ ինչ էին շինում մելիքները, երբ խնածախցիք հրաշքներ էին գործում։ Ամեն անցքերի մէջ միայն նրանք են երեւում, սկսեալ Ս. Պետերբուրգից մինչեւ Թէհրան, եւ Թէհրանից մինչեւ Թաւրիզ եւ Թիֆլիս... Ամեն տեղ տարածուած են նրանք եւ բոլոր գործողութիւնների ու յարաբերութիւնների կապերը նրանց ձեռքումն են... Դրանք, մինչեւ անգամ, նստում են Թագաւորների, Թագաւորազնների եւ պետական բարձր անձինքների մօտ, նրանց հետ վիճում են, նրանց յանդիմանական խօսքեր են ասում եւ նրանց հետ դաշնակցական պայմաններ են կապում...

Ես Մակար վարդապետի 70—80 հերոսներին մեծ գլխումներով իրան կը նուիրէի, եթէ գոնէ մէկի անունը նա ցոյց տար մի որ եւ է պատմութեան մէջ, Ղարաբաղի մասին շատերն են գրել, բայց ոչ մէկի մէջ Մակար վարդապետի ‘‘Զարբազանների,, եւ ‘‘Վիշապների,, անունները չեն երեւում։

Եւ, վերջապէս, այդ հսկաները, ինչպէս վերեւում յիշեցի, դարեւոր կեանք ունէին, ապրեցին 1700 թուականներից մինչեւ 1840-նական թուականները[1], եւ վերջին թուականներից կենդանի Ղարաբաղում հազարաւոր մարդիկ կան։ Ի՞նչպէս եղաւ, որ հսկաներից ոչ մէկին չտեսան...

‘‘Գաղտնիք,,ի պատմական մասը այսպէս աղաւաղուած է։

---

[1] Ես 1840ական թուականներն եմ վերածում, որովհետեւ այդ ժամանակ է գրվում ‘‘Գաղտնիք,,ը։

Մնում է մի քանի խօսք ասել այն անթիւ թղթակցութիւնների մասին, որոնցով լի է այդ գիրքը։

Թղթակցութիւնները “Գաղտնիք„ի ամենածիծաղելի կողմն են ներկայացնում։ Ս. Պետերբուրգի եւ Թէհրանի դիւաններից որքան պաշտօնական թղթեր են գրվում, որոնց խորհուրդը պէտք է գաղտնի պահուէր, բոլորի կամ բովանդակութիւնը, կամ ամբողջ օրինակները մտնում են “Գաղտնիք„ի մէջ։ Ռուս կամ պարսիկ պաշտօնակալները ինչ թղթեր են գրում իրանց կառավարութիւններին, — նրանց օրինակներն դարձեալ մնում են “Գաղտնիք„ի մէջ։ Հայոց կաթողիկոսների, եպիսկոպոսների, մելիքների եւ այն բոլոր անձանց, որոնք քաղաքական որ եւ է դեր են խաղում, թղթակցութիւնները դարձեալ ընդարձակ տեղ են բռնում այդ գրքում։ Անդրկովկասի խաները ծածուկ նամակներ են գրում պարսից թագաւորներին, — նրանց պատճէններն եւս կան այստեղ։ — Մի խօսքով, չէ կատարվում ոչ մի գաղտնի գրաւոր յարաբերութիւն, որ “Գաղտնիք„ից ծածուկ մնար։ Ամեն տեղ “Շէյթաններ„ (սատանաներ), ամեն տեղ “Դէվեր„ (դեւեր) կան եւ խաբարը իսկոյն տանում են...

Մարդ զարմանում է, թէ որքան հեշտացրել է Մակար վարդապետը այդ ժամանակների հաղորդակցութիւնները։ Երբ Էջմիածնի կաթողիկոսին ոչ թէ ամիսներ, այլ տարիներ էին հարկաւոր մի նամակ Վաղարշապատից Գանձասարայ վանքը հասցնելու համար, — ընդհակառակն, “Գաղտնիք„ի մէջ ամեն մի նամակ Ս. Պետերբուրգից, կամ Մոսկուայից թռչում է եւ մի քանի րոպէում հասնում է Թէհրան կամ Թաւրիզ։ Կարծես, աղաւնիները, կտուցներով բռնած, օդի միջով են տանում։

եւ հանգամանքների հետ, այնուամենայնիւ, նրանց ձեւը, լեզուն, ոճը, շարադրութիւնը, իսկոյն ցոյց են տալիս Մակար վարդապետի բոբիկութիւնը գիւղական հմտութիւնների մէջ, որը պակասում է նրան՝ կեղծը իսկականին նմանացնելու համար։ Հասարակ լրտեսը թագաւորին ուղղակի նամակներ է գրում, այն եւս մի այնպիսի անփոյթ ձեւով, որ ընկերը ընկերին չի համարձակուի գրել։ Միթէ հասարակ մահկանացուներ կարո՞ղ են պարսից թագաւորին նամակներ գրել։ Նրան միայն կարելի է խնդրագրով դիմել, շարելով հազար ու մէկ փայլուն տիտղոսներ, որ կապուած են նրա բարձր անուան հետ։ Այդ ձեւերը, այդ տիտղոսները, ի հարկէ, չէր կարող գիտենալ Մակար վարդապետը, որը, ինչպէս երեւում է, իւր կեանքում ոչ մի պաշտօնական գրութիւն չի կարդացել։

«Գաղտնիք»ի մէջ զետեղուած բոլոր թղթակցութիւնները կեղծ են։ — Կեղծ են, նախ այն պատճառով, որ այնքան թղթակցութիւններ, որոնք կառավարութիւնների եւ մասնաւոր բարձր պաշտօնականների գաղտնի յարաբերութեանց արդիւնք են, — չէին կարող անմիջապէս «Գաղտնիք»ի հեղինակի ձեռքը հասնել։ Ո՞վ էր նա եւ ի՞նչ էր նա, որ բոլոր հակառակ կողմերի խորհրդապահը եւ արխիւը լինէր։ Երկրորդ, այդ թղթակցութիւնների թէ խմբագրութիւնը եւ թէ մատակարարութիւնը կատարւում է այնպիսի անձանց ձեռքով, որոնք երբէք գոյութիւն չեն ունեցել։ Դրանք, որպէս ցոյց տուինք, Մակար վարդապետի ստեղծած մարդիկն են։ Եթէ այդ անձնաւորութիւնները գոյութիւն չեն ունեցել, — բոլորովին տրամաբանական կը լինէր մտածել, որ նրանց գործողութիւններն եւս չէին կարող գոյութիւն ունենալ։

պէս կարող է մէկը նամակներ գրել, կամ նամակներ

Կարդալով այդ ծիւղագրութիւնները, մարդ զարմանում է, թէ «Գաղտնիք»-ի հեղինակը որտեղից եւ ինչ աղբիւրներից առել է անունների այն երկար շարքը, որոնց սկիզբը կապվում է Աղուանից ամենահին թագաւորների հետ, իսկ վերջը հասնում է մինչեւ մեր ժամանակները։

«Գաղտնիք»-ին նայելով, Ղարաբաղի բոլոր մելիքական տները թագաւորական ծագումից են, եւ բոլորն էլ միեւնոյն տոհմից։

Այդ ծիւղագրութիւններին նախանձախնդիր եւ ջերմ փափագով սպասող է եղել Ղարաբաղի միտրապոլիտ Բաղդասար եպիսկոպոս Հասան-Ջալալեանը։ 1828 թուին, սեպտեմբերի 20-ին, նորին սրբազնութիւնը մի նամակով դիմում է «Գաղտնիք»-ի հեղինակ Աբրահամ Բէկնազարեանին եւ, ի միջի այլոց, յայտնում է.

...«Ես մտադիր եմ տպագրել տալ Ղարաբաղի եւ Աղուանից բոլոր պատմութիւնները եւ հրապարակաւ ցոյց տալ աշխարհին Ղարաբաղի հարազատ-մելիքների ծագումը, որի առաջին օղակն սկիզբն առած է Առանից (Աղուանից առաջին իշխանից) եւ վերջին օղակն հասած է մեր օրերն։ Բայց որովհետեւ դու երկար ժամանակ արտագրած ես այդ բոլոր պատմութիւնները Գանձասարի Ներսէս կաթողիկոսի մօտ, որովհետեւ քո ...ութեամբ թաքցրած են այդ անգին գանձերը (...երցողներին յայտնի երեք տեղերում) եւ որովհետեւ ...իմ ձեռքում չունիմ այդ ձեռագիրները՝ վասն ...մում եմ քեզ։ Լուսահոգի Սարգիս կաթողիկոսն՝

[illegible] Բաղդասար միտրապոլիտի ազգական էր. ...անների տոհմից. փոխանուեցաւ 1828 թուին եւ ...ից կաթողիկոսութիւնը։

*վախճանուելու ժամանակ ինձ պատուիրեց փութով տպագրել տալ այն ձեռագիր պատմութիւնները. երբ հարցրի թէ ուր են այդ ձեռագիրները՝ նա պատասխանեց. — "Այդ գրքերը երեք տեղերում թաքցրած են... Ամապարիր Ազրայէլի ("Գաղտնիք„ի հեղինակի) մօտ ղրկել Փիլ-Առուշանը եւ տեղեկանալով հանել տալ այդ ձեռագիր պատմութիւնները, որպէս զի չոչնչանան հողի կերակուր լինելով„... Արդ, սիրելի Բէկնազարեան, եթէ դու անկարող կը լինիս փութով Ղարաբաղ մեզ մօտ գալ՝ գոնէ նամակաբերիս ձեռնով գրիր ինձ այն ձեռագրների թաքստեան երեք տեղերը, բայց յականէ յանուանէ եւ մերձակայ նշաններով եւ գտնելը դիւրացնող առարկաները մատնանիշ անելով„ (եր. 386, 387):*

"Գաղտնիք„ի հեղինակը այդ նամակը ստանում է այն ժամանակ, երբ արդէն հիւանդ էր, եւ նոյն հիւանդութեամբ վախճանուեցաւ նա:

Բայց չնայելով, որ նա գիտէր ձեռագրերի թաքստեան տեղերը, այնուամենայնիւ, պատուիրեց որդուն, Այրեն Բէկնազարեանին, պատասխանել մի այդպիսի անորոշ ձեւով.

*"Իմ մահից յետոյ, Փիլ-Առուշանի ձեռօք, գրիր Բաղդասար սրբազանին, որ ես ա կ ա ն ա տ ե ս եղած չեմ այն ձեռագրերի թաղած տեղերին, այլ միայն յաճախակի լսած եմ Մելիք-Մեժլումից, Մելիք-Աբովից, Պրախմազ-Ցովսէփից, Տէր-Մանգասայից եւ Տէօնմազ-Պէյլուից, որ գրքերի առաջին մասն թաղած է Գանձասարի եւ Խօթա վանքի միջեւ մի քարայրում, որի մուտքն փակուած է քարուկիր պատով, երկրորդ մասն Ջրաբերդի Մելիքութեան (?) [illegible] Յակոբայ վանքի մօտերում„ (տես [illegible] — Եր. 387):*

Այդ երկու նամակներից երեւում է, որ մինչեւ 1828 թուականի սեպտեմբերի 20ը, ոչ Բաղդասար միտրապօլիտը եւ ոչ էլ «Գաղտնիք»ի հեղինակ Աբրահամ Բէկնազարեանը չեն տեսել թաղած պատմագրերը եւ նրանցից օգուտ չեն քաղել։

Այդ երկու նամակներից երեւում է եւ այն, որ Բաղդասար միտրապօլիտի գլխաւոր նպատակը՝ թաղած ձեռագրերը գտնելու վերաբերութեամբ՝ կայանում էր առաւելապէս նրանում, նախ, որ տպագրել տայ, որպէս գի գրականութեան սեպհականութիւն դառնան, երկրորդ, ինչպէս ինքը գրում է, որ կարողանայ «հրապարակաւ ցոյց տալ աշխարհին Ղարաբաղի հարազատ-մելիքների ծագումը, որի առաջին օղակն սկիզբն առած է Առանից եւ վերջին օղակն հասած է մեր օրերը»։

Ապացուցանել Ղարաբաղի մելիքների վաղեմի, հնագարեան ծագումը, որ նրանք շառաւիղում են Աղուանից առաջին թագաւոր Առանից, — այդ խնդիրը Բաղդասար միտրապօլիտի հետաքրքրութեան համար ոչ միայն պատմական նշանակութիւն ունէր, այլ առաւել գործնական նշանակութիւն ունէր։ Ինչու։ —

Ռուսները նոր էին տիրել Ղարաբաղը։ Ազնուականների եւ ժառանգութիւնների որոշելու խնդիր էր ծագել։ Թուրք խաները եւ թուրք բէկերը, մի կողմից, հայոց մելիքները եւ հայոց բէկերը, միւս կողմից, սաստիկ մաքառում էին միմեանց հետ։ Իւրաքանչիւրը աշխատում էր իւր տոհմային գերազանցաթիւնը եւ իւր իրաւունքները ապացուցանել նոր տիրող կառավարութեան առջեւ[1]։ — Այդ բոլորը ստիպում էր Բաղդասար միտրա-

[1] Հէնց այդ ժամանակներում Միրզա-Ջամալը եւ Միրզա-Ադիգեօզալը գցեցին Շուշիի Նորաբուսիկ խաների պատմութիւնը, որոնց ծագման

տակ թաղուած, երեւակայական պատմութիւնների երեւակայական տեղերը...

Այդ այդպէս։

Իսկ միւս կողմից, գտնում ենք՝ նոյն ազգաբանութիւնները, նոյն ծիւղագրութիւնները, նոյն ձեւով կազմուած, Բաղդասար միտրապօլիտի աշխատութիւնների մէջ։ Եւ երբ։ — Շատ տարիներով առաջ, քան նրա նամակով "Գաղտնիք"ի հեղինակին գիմելը։ Եթէ նրա մօտ կար այդ, այլ եւս ի՞նչ կարօտութիւն ունէր Բէկնազարեանին դիմելու։

Ահա մի հանելուկ եւս, որը լուծելու համար պէտք է նախ կարգալ երկուսի համեմատութիւնները։

Ես գնում եմ առաջ Բաղդասար միտրապօլիտի կազմած՝ Աղուանից թագաւորների, Աղուանից իշխանների եւ Հասան-Ջալալեանների տոհմի ազգաբանութիւնը, իսկ յետոյ՝ նոյն ազգաբանութիւնը, որ տպուած է "Գաղտնիք"-ի մէջ։

*Ազգաբանութիւն եւ ծննդաբանութիւն ազգին Հասան-Ջալալեանց հանեալ եւ հաւաքեալ ի պատմութեանց Հայոց եւ Աղուանից, նաեւ ի յարձանագրաց ի խաչքարաց եւ ի տապանաքարաց, եղելոց ի վանսն Գանձասարայ եւ ի շրջակայ նորին վանորայս եւ տեղիս հանդերձ թուաբանութեամբ, զորս համառօտ շարադրեցի ես Բաղդասար Մետրապօլիտ Աղուանից Հայոց, որդի Դանիէլ-բէկ իշխանի եւ թոռն Մելիք-բէկ իշխանին Հասան-Ջալալեանց, նախկին Տէրանցն յերկրին Արցախոյ գաւառին Խաչենոյ, յաղագս տեղեկութեան ներկայ եւ ապագայ սերնդոց, տոհմայնոց եւ ազգակա-նաց:*

ւոյն եկեղեցիս միայն (**ինքն**) բարեպաշտն Վաչական շինեաց յարեւելս: Եւ զկնի մահու նորա սպառ նուազիլ ազգն այն:

6.

Եւ Միհրանն, որ ի Սասանեան տոհմէն էր եկեալ ի պարսից՝ հաստատեցաւ ի նախարարութիւն ի վերայ աշխարհիս Աղուանից, եւ անուանք նոցա որդի ի հօրէ առնելով, են այսոքիկ՝ Միհր՝ Արմայէլ, Վարդ. քաջն Վարդան, որ հաւատացեալ ի Քրիստոս, եւ որ շինողն Գարդմանայ բերդին: Վարդան ծնանի Վարդ, Վարդ ծնանի զՎարազ Գրիգոր առաջին իշխանն Աղուանից: Գրիգոր ծնաւ զչորս որդիս՝ Վարազ Բերոժ, Ջուանշիր, Եղուտ Խոսրով եւ Վարազման: Եւ ի սոցանէ յերէց որդւոյն շարելով ըստ կարգին անուանքն բերցուք ի յայտ առ Հայկազեանս, եւ այլք կացցեն:

7.

Եւ են այսոքիկ՝ Վարազ Բերոժ, Վարազ Տրդատ, Վարդան, Ներսեհ Ժմնդակ, Ներսեհի որդի Գագիկ, Գագեկայ որդի Ստեփանոս եւ Ապրսամիկ քոյր իւր: Զայս Վարազ Տրդատ եւ զորդի նորա եւ եղբօր որդի նորա Ստեփաննոս, Ներսեհ Փիլիպեան՝ ազգակիցն նորա սպան ի միում՛ ժամու ի խորաձորն, որ կոչի Դատոյի վանք: Ապա յայն աղէտիցն զառն զգեցեալ արիութիւն կնոջն սպանելոյ՝ առեալ զմնացեալ դուստր իւր Սպրամ՝ գիշերահէն դաժանելի ուղեւորութեամբ՝ մտանէ ի բերդն Խաչենոյ, եւ բարուրս խորհեալ տան իւրում՝ ամուսնացուցանէ զՍպրամ՝ ընդ Ատրներսեհի՝ Սահլի որդւոյ, որ էր ի տոհմէն Հայկայ եւ տէր Սիւնեաց. որոյ բռնազբօսութեամբ կալեալ էր զգաւառն Գեղամայ. եւ որդին իւր

*Գրեցաւ ի ՌՄՂԸ թուին Հայոց եւ ի 1849 ամի Տեառն*[1]։

---

*Ի ծննդոց Հայկազանց կարգեցաւ՝*

*1. Առան նախագահ Աղուանից։*

*Իսկ որք ըստ կարգի կացին թագաւորք տանս Աղուանից ի մեծ ազգէն Արշակունեաց՝ անուանք են այսոքիկ՝*

*2. Վաչական քաջ Ա.*

*3. Վաչէ Ա.*

*4. Ուռնայր.*

*5. Վաչական Բ.*

*6. Մրհաւան.*

*7. Սատոյ.*

*8. Ասայ.*

*9. Եսուաղէն.*

*10. Վաչէ Բ.*

*11. Վաչական Գ. բարեպաշտ։*

5.

*Ի նոյն պատմութեան (Կաղանկատուացւոյ) 3 պրակն եւ 22 գլուխն այսպէս է գրեալ. — Ստուգութեամբ այսպէս ծանեաք սակս Հայկազանց խնամաւորել Միհրական տոհմին եւ պատուասութեամբս այսուիկ առի զնոյգ ունել զկետութիւն արեւելեաց կողմանցն Աղուանից։ Անուանք արքայիցն, որք վերագոյն գրեցան ի քաջէն Վաչականայ մինչեւ ցբարեպաշտն Վաչական՝ տասն թագաւորք լեալ, յորոց ըստ թուոյ աւուրց տար-*

---

[1] Այս թողնում եմ 1, 2, 3 եւ 4րդ մասը, որ հեղինակը, զանազան պատմագրերի վրայ հիմնուելով, գրում է իբրեւ ներածութիւն։

ւոյն եկեղեցիս միայն (**ինքն**) քարեպաշտն Վաչական շինեաց յարեւելս: Եւ զկնի մահու նորա սպառ նուազիլ ազգն այն:

6.

Եւ Միհրանն, որ ի Սասանեան տոհմէն էր եկեալ ի պարսից՝ հաստատեցաւ ի նախարարութիւն ի վերայ աշխարհիս Աղուանից, եւ անուանք նոցա որդի ի հօրէ առնելով, են այսոքիկ՝ Միհր՝ Արմայէլ, Վարդ, քաջն Վարդան, որ հաւատացեալ ի Քրիստոս, եւ որ շինողն Գարդմանայ բերդին: Վարդան ծնանի Վարդ, Վարդ ծնանի զՎարազ Գրիգոր առաջին իշխանն Աղուանից: Գրիգոր ծնաւ զչորս որդիս՝ Վարազ Բերոժ, Ջուանշիր, Եղուտ Խոսրով եւ Վարազման: Եւ ի սոցանէ յերէց որդւոյն շարելով ըստ կարգին անուանքն բերցուք ի յայտ առ Հայկազեանս, եւ այլք կացցեն:

7.

Եւ են այսոքիկ՝ Վարազ Բերոժ, Վարազ Տրդատ, Վարդան, Ներսեհ դժնդակ, Ներսեհի որդի Գագիկ, Գագկայ որդի Ստեփաննոս եւ Ապրսամիկ քոյր իւր: Զայս Վարազ Տրդատ եւ զորդի նորա եւ եղբօր որդի նորա Ստեփաննոս, Ներսեհ Փիլիպեան՝ ազգակիցն նորա սպան ի միում՝ ժամու ի խորանօքն, որ կոչի Դատոյի վանք: Ապա յայն աղէտիցն զառն զգեցեալ արիութիւն կնոջն սպանելոյ՝ առեալ զմնացեալ դուստր իւր Սպրամ՝ զփշերահէն դաժանելի ուղեւորութեամբ՝ մտանէ ի բերդն Խաչենոյ, եւ բարուրս խորհեալ տան իւրում՝ ամուսնացուցանէ զՍպրամ ընդ Ատրներսեհի՝ Սահլի որդւոյ, որ էր ի տոհմէն Հայկայ եւ տէր Սիւնեաց. որոյ բռնազբօսութեամբ կալեալ էր զգաւառն Գեղամայ. եւ որդին իւր

*Ատրներսեհ հանդիպեցաւ կնոջ զգաստի, որք երկիւղածք յԱստուծոյ եւ բարեպաշտք զիւրեանցն ցուցանէին զկեանս եւ աշխարհի քաղցունք:*

8.

*Ատրներսեհ իշխանն շինէ զբերդն Հանդու (**Հանդաբերդ**) եւ զապարանս իւր եղեալ ի գիւղն որ կոչի Վայունիք, ուր եւ քաղանիքն արքունական են եւ բերդն այն (**այժմ կոչի Ջերմուկի ղալա, իսկ գիւղն Քաղաքատեղ ի գաւառին Ջրաբերդու**): Եւ Ատրներսեհ իշխանն ընդ այլ իշխանաց Հայոց տարան յերկիրն Պարսից յերեքհարիւր եւ երեք թուին Հայոց յ854 ամի Տեառն: Եւ կալով նորա անդ ամն բազումն, տիկինն Սպրամ՝ առաւել յաճախէր ի բարեգործութիւնս, եւ մեծածախ տենչմամբ շինէ զՆորավանս ամենապայծառ զարդուք՝ ի գաւառին Սոտէից ի նահանգին Գեղարքունւոյ:*

9.

*Ատրներսեհ իշխանն իսկոյն գայր՝ զերծեալ ի կողմանցն Տաճկաց. եւ խաղաղութեամբ առ ժամայն լուծանէ զկեանս:*

*Ատրներսեհ ծնանի զԳրիգոր եւ զԱպուսեթ. Գրիգոր իշխանն շինէ զբերդն Հաւքախաղացին ի գաւառին Խաչենոյ, եւ յայն կողմն ձգէ զձեռս իւր իշխանութեան՝ յերեք հարիւր քառասուն թուին Հայոց՝ յ891 ամի Տեառն: (**Եւ բերդն Հաւքախաղացին այժմ կոչի Սաղսաղանու Ղալայ, եւ հեռի է ի Գանձասարու վանից եւ ի Խոխանայ բերդէն ութն ժամու ճանապարհաւ**):*

10.

*Գրիգոր իշխանն Ատրներսեհեան ծնանի զհինգ որդիս՝ Ապուալի, Ատրներսեհ Բ., Սահակ Սեւադայ,*

Սմբատ եւ Վասակ: Երէց որդի Գրիգոր իշխանին՝ Ապուսլի իշխանն Աղուանից հայկազնի՝ սպանաւ յիւրմէ հարազատէն Սմբատայ յերեքհարիւր քառասուն եւ վեց թուին Հայոց յ897 ամի Տեառն, եւ եղեւ այն սուգ մեծ իւրայնոցն զարմից: Եւ եղբայր նորա Ատրներսեհ թագաւորեաց ի վերայ Աղուանից յ359 թուին Հայոց յ910 ամի Տեառն:

## 11.

Իսկ երրորդ որդի իշխանին (Գրիգորի) Սահակ Սեւադայն եղեւ երեւելի եւ մեծ իշխան քաջ եւ յաջողակ՝ առհասարակ տիրեաց Գարդմանայ գաւառին (որ ի Նահանգին Գանձակայ) եւ Քաւսայ եւ Փառնայ[1] գաւառաց, այլեւ աւազակապետաց Ջորագետոյ եւ Արցախոյ ըռվանդակ եղեւ իշխան եւ տիրապետող: Եւ խնդրող իսկ զրազիստութեան՝ եւ ղպրոցս ի տան իւրում՝ կարգեաց. ընդ որում եւ բազմաջան հնարիւք թագաւորն Հայոց Սմբատ մարտուցեալ՝ ոչինչ կարաց ստերիւրել զնա ի կամս իւր: Եւ զկնի մահուան Սմբատայ թագաւորին Հայոց, Աշոտ որդի նորին թագաւորեաց ի վերայ Հայոց եւ վասն քաջագործութեան նորա Աշոտ երկաթ կոչիւր. եւ այս Աշոտ թագաւորն Հայոց էառ ի կնութիւն իւր զդուստր Սահակ Սեւադայ հզօր եւ մեծ իշխանին Աղուանից եւ Արցախայ յ371 ամի թուին Հայոց եւ յ922 ամի Տեառն:

## 12.

Սահակ Սեւադայ մեծ իշխանն Աղուանից ծնանի զԳրիգոր Բ. եւ զԴաւիթ, Գրիգոր Բ.· իշխանն ծնանի

---

[1] Այդ երկու գաւառների անունները շատ տեղերում, գրչագրերի վրիպումներով միախառնուելով, գրում են ի միասին Վոստիփանայ։

զՍեւադայ Բ., որ Իշխանիկ կոչիւր եւ զԱտրներսեհ Գ.: Իսկ Սեւադայն Բ. ծնանի զչորս որդիս՝ Յովհաննէս, Գրիգոր Գ., Փիլիպպոս եւ Ատրներսեհ Դ.: Իսկ զերէց որդին Իշխանկի (Սեւադայ Բ-ի) զՅովհաննէս, որ եւ Սենեքերիմ կոչեցաւ, ընտրեաց աջն Բարձրելոյն՝ կոչելով զնա ի թագաւորութիւն. եւ զվաղնջուց խափանեալ թագաւորութիւն Տէրն ամենակալ ի ձեռն սորա նորոգեաց՝ զոր եւ թագաւորն պարսից մեծամեծ զարդուք պատուէ եւ տայ նմա զթագ հօր իւրոյ զնորին երիվարն[1], Իսկ Փիլիպպոս թագաւորեաց ի վերայ Աղուանից ի ՆԺ թուին Հայոց, յ961 ամի Տեառն: Փիլիպպոս ծնանի Գրիգոր Դ., Գրիգոր Դ. ծնանի զՍակառ, որ Վախտանգ կոչիւր. Սակառ Վախտանգ ծնանի զՎախտանգ Բ. Վախտանգ Բ. ծնանի զՀասան:

13.

Հասան իշխանն Սակառ-Վախտանգեան եղեւ երեւելի եւ մեծ իշխան եւ էառ ի կնութիւն իւր զՄամայ զդուստր Կիւրիկէ թագաւորին Հայոց Բագրատունւոյ ի հինգհարիւր եւ ութսուն թուին Հայոց ի 1131 ամի Տեառն: Հասան իշխանն ծնանի զՎախտանգ Գ., զՎասակ-Սմբատ, զԳրիգոր եւ զայլս: Վախտանգ Գ. իշխանն Հասանեան եղեւ երեւելի իշխան, եւ էառ ի կնութիւն զԽորիշահ դուստր Սարգսի իշխանին եւ քոյր Զաքարիայ եւ Իվանէի մեծամեծ իշխանացն Հայոց, եւ ծնանի զՀասան-Ջալալ զԶաքարիայ, զԻվանէ, զԴօլի եւ զՄարիամ:

14.

Ջալալ-Հասան որդի Վախտանգայ Դ. եւ թոռն Հասանայ եղեւ երեւելի եւ մեծ իշխան ի ՈՂԲ թուին Հայոց

[1] Մինչեւ այստեղ հեղինակը հետեւել է Կաղանկատուացւոյ պատմութեանը:

եւ ի 1243 ամի Տեառն, եւ էառ ի կնութիւն իւր զՄամքան թոռն Սեննքերիմ՟ թագաւորին Սիւնեաց՝ զդուստր Գրիգոր իշխանին Սիւնեաց: Ջալալ-Հասան ծնանի զԱթաբակ եւ զԻւանէ եւ զդստերս երիս՝ Ռուզան, Նանայ եւ Մինա-խաթուն: Ռուզան եղեւ կին Բուղայի որդւոյ Չարմաղան խանին թաթարաց, Նանայ եղեւ կին Ումէկ Հայոց իշխանին Տփխիսեցւոյ, եւ ծնանի զՎախտանգ: Վախտանգ ծնանի զԱրղութ, Արղութ ծնանի զՄեհրապ: Մեհրապ ծնանի զՇահնշէն: Եւ զկնի մահուան Ջալալ-Հասան իշխանին, Մինա-խաթուն եղեւ կին Տարսայիճ իշխանին Սիւնեաց, եւ ծնանի զուստր Ջալալ եւ զդուստր Ափսայ (Ափսայ), ի ՉԻ ամին Հայոց եւ ի 1271 ամի Տեառն:

15.

Աթաբակ որդի Ջալալ-Հասանայ եղեւ երեւելի ի ՉԾԵ թուին Հայոց, ի 1306 ամի Տեառն, եւ ծնանի զՋալալ Բ., որ Պարոն կոչիւր, եւ զԻվանէ, Իվանէ ծնանի զՎախտանգ Դ., Վախտանգ Դ. ծնանի զԱթաբակ Բ. Աթաբակ Բ. ծնանի զԱյտին եւ զԽիմշէ: Պարոն Ջալալն Բ. երեք որդի Աթաբակին ծնանի զՅովհաննէս Ս. կաթողիկոսն, զՊարոն-Աղբաստ, զՊարոն-Պաստամ՟, զՄէժլիս, զԱմիր Հասան եւ զՏէր Վարդան: Յովհաննէս կաթողիկոսն վախճանեցաւ ՋԺԹ թուին Հայոց, ի 1470 ամի Տեառն:

16.

Պարոն-Աղբաստ որդի Պարոն-Ջալալ Բ. իշխանին ծնանի զՊարոն Սայտուն, Պարոն-Սայֆուն ծնանի զԱրիստակէս կաթողիկոս, զՀատիր, Մելիք, զՎէլիՋան բէկ Ա., զՄելիք: — Արիստակէս կաթողիկոսն վախճանեցաւ ի ՋՀԵ թուին Հայոց, ի 1521 ամի Տեառն:

17.

*Հատիր մելիք իշխանն, որդի Պարոն-Սայտունին, ծնանի զՍարգիս Ա. կաթողիկոս եւ զՄէհրաբ-բէկ: — Սարգիս կաթողիկոսն վախճանեցաւ ՋՂԵ թուին Հայոց ի 1546 ամի Տեառն: — Մէհրաբ բէկ որդի Հատիր-Մելիք իշխանին՝ ծնանի զԳրիգոր Ա. կաթողիկոս, զՋալալ-բէկ Գ. եւ զԲաղդասար-բէկ Ա: — Գրիգոր կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌԻԲ թուին Հայոց, ի 1573 ամի Տեառն:*

18.

*Բաղդասար-բէկ որդի Մէհրաբ-բէկին ծնանի զԴաւիթ կաթողիկոս եւ զԴաւիթ-բէկ: — Դաւիթ կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌԻԳ թուին Հայոց, ի 1574 ամի Տեառն: — Դաւիթ-բէկ՝ որդի Բաղդասար բէկին՝ ծնանի զՅովհաննէս Բ. կաթողիկոս եւ զՄուշբէհ բէկն: — Յովհաննէս Բ. կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌՀ թուին Հայոց եւ ի 1621 ամի Տեառն:*

19.

*Ջալալ-բէկ Գ. որդի Մէհրապ-բէկին՝ ծնանի զՎելիջան-բէկ Բ. եւ զԱղաբէկ: Այս Ջալալ-բէկ եղեւ երեւելի եւ մեծ իշխան ի ՌԼԵ թուին Հայոց, ի 1586 ամի Տեառն, հանդերձ երկու եղբօրորդւովքն իւր եւ ընդ այլ իշխանաց Հայոց եւ Աղուանից գնացին ի տեսութիւն առաջին եւ մեծ Շահ-Աբաս արքային պարսից եւ ի նմանէ յոյժ պատուեցան խիլայիւք. նաեւ Ջալալ-բէկն ի նոյն Շահ-Աբաս արքայէ էառ զֆէրմանն յանուն իւր եղբօրորդի Յովհաննէս Բ. կաթողիկոսին Աղուանից եւ դարձաւ ուրախութեամբ ի տուն իւր: — Վէլիջան-բէկ Բ. որդի Ջալալ-բէկին Գ. ծնանի զԳրիգոր Բ. կաթողիկոս եւ*

զԲաղդասար-բէկ Բ: — Գրիգոր կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌճԲ թուին Հայոց, ի 1653 ամի Տեառն:

20.

Բաղդասար-բէկ Բ.՝ որդի Վէլիջան-բէկին Բ-րդի եւ թոռն Ջալալ-բէկին Գ-րդի՝ ծնանի զԵրեմիայ կաթողիկոս, զԱրիստակէս եպիսկոպոս, զՎէլիջան-բէկ Գ. եւ զՄուլքի-բէկ: — Երեմիայ կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌճԽԹ թուին Հայոց եւ ի 1700 ամի Տեառն: — Վէլիջան-բէկ Գ. ծնանի զԵսայի կաթողիկոս եւ զՅովհաննէս. — Եսայի կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌճՀԵ թուին Հայոց եւ ի 1726 ամի Տեառն:

21.

Մուլքի-բէկ որդի Բաղդասար-բէկին Բ-րդի ծնանի զՄելիք-Գրիգոր եւ զՄելիք-Ալլահվերդի Ա: — Մելիք-Գրիգորն զիւր մելիքական իշխանութիւնն ետ իւր եղբօր Մելիք-Ալլահվերդույն ի վերայ Խաչենոյ գաւառին, եւ ինքն հրաժարեցաւ յիւր մարմնաւոր իշխանութենէն եւ օծաւ վարդապետ եւ եղեւ առաջնորդ Սրբոյ վանիցն Գանձասարու, ի ժամանակս տիրապետութեանց օսմանցւոց եւ Նադիր-շահ պարսից Արքային, յորոց ֆէրմանսն յայտնի գրեալ երեւի, որ առ մեզ գտանին: — Գրիգոր վարդապետ վախճանեցաւ ի ՌճՂԷ թուին Հայոց եւ ի 1748 ամի Տեառն:

22.

Յորդւոյ Մուլքի-բէկին՝ ի Մելիք-Ալահվէրդույն Խաչենոյ ծնանի Եսայի եպիսկոպոս եւ Մելիք-բէկ Ա., իսկ Մելիք-բէկ իշխանն ծնանի զՅովհաննէս Գ. կաթողիկոս եւ Սարգիս Բ, կաթողիկոս: — Յովհաննէս կա-

*թողիկոսն վախճանեցաւ ի ՌՄԼԵ թուին Հայոց եւ ի 1786 ամի Տեառն: Սարգիս կաթողիկոսն վախճանեցաւ ի ՌՄՀԷ թուին Հայոց եւ ի 1828 ամի Տեառն: — Եւ միւս վեց որդիք նոյն Մելիք-բէկ իշխանին են սոքա՝ — Գաբրիէլ-բէկ, Դանիէլ-բէկ, Միսայէլ-բէկ, Իսրայէլ-բէկ, Ջալալ-բէկ Դ. եւ Ալլահղուլի-բէկ:*

*Ա. Գաբրիէլ-բէկ ծնանի զՆերեմիա եպիսկոպոս եւ զԳրիգոր-բէկ: Գրիգոր-բէկն ծնանի զՋալալ-բէկ Ե. եւ զդուստր Խորիշահ: Ջալալ-բէկ Ե. ծնանի զՍարգիս-բէկ եւ զՄինա-Խաթուն դուստրն:*

*Բ. Միսայէլ-բէկն ծնանի զԱպրես-բէկ եւ զԱսլան-բէկ: Ապրես-բէկն ծնանի զԱթա-բէկ Գ., զԳրիգոր-բէկ եւ զՋաւատ-բէկ: Աթա-բէկն ծնանի զՄովսէս եւ զայլս: Գրիգոր-բէկն ծնանի զԻվանէ եւ զայլս:*

*Գ. Իսրայէլ-բէկն ծնանի զՅովսէփ վարդապետ եւ զԳէորգ-բէկ: Գէորգ-բէկն ծնանի զԻվանէ:*

*Դ. Ջալալ-բէկն ծնանի զԱթաբակ, զՌուստամ-բէկ եւ զԽորիշահ դուստր: Ռուստամ-բէկն ծնանի զՆսայի եւ զայլս, որք գտանին ի Բօլիս:*

*Ե. Ալլահղուլի-բէկն ծնանի զՌուշան-բէկ եւ զՋհանգիր-բէկ: Ռուշան-բէկն ծնանի զերիս որդիս, որք գտանին ի Բօլիս:*

23.

*Վեցերորդ որդի Մելիք-բէկ իշխանին՝ Դանիէլ-բէկն ծնանի զԲ ա ղ դ ա ս ա ր Մ ե տ ր ա պ օ լ ի տ եւ զՄելիք-Ալլահվէրդին Բ. Խաչենոյ գաւառին: Մելիք-Ալլահվէրդին Բ. ծնանի զՆերեմիայ քահանայ, զՄովսէս վարդապետն, զԱբրահամ-բէկն եւ զՅովսէփ-բէկն: Մելիք-Ալլահվէրդին վախճանեցաւ ի 1276 թուին Հայոց եւ*

*1827 ամի Տեառն: Եւ Մովսէս վարդապետն վախճանեցաւ ի ՌՄՂԸ թուին Հայոց եւ ի 1849 ամի Տեառն:*

*Երեմիայ քահանայն ծնանի զվեց որդիս, որք են՝ Վախթանգ, Ջալալ, Շամիր...:*

*Աբրահամ-բէկն ծնանի զՄելիք-բէկ եւ զԱլլահվէրդի-բէկ:*

*Յովսէփ-բէկն ծնանի զՎելիջան-բէկ եւ զԴանիէլ-բէկն:*

24.

*Այլ եւ յառաջին Մելիք-բէկ իշխանէն Հասան-Ջալալեանց, որպէս ի վերոյ գրեալ եմ, եւ սոքա են կենդանիք արուականքն ի սերնդոց եւ ի տոհմականաց Հասան-Ջալալեանց:*

**Բնագրի վրայ իւր իսկական ձեռքով ստորագրել է** *Միտրապօլիտ Բաղդասար Հասան-Ջալալեանց:*

## *Թագաւորք Աղուանից*

*Ա. Առան Սիսական, Հայոց Վաղարշակ թագաւորից հաստատուած.*

*Բ. Քաջն Վաչական Ա. Արշակունի ազգից.*

*Գ. Վաչէ Ա.*

*Դ. Ուռնայր.*

*Ե. Վաչական Բ.*

*Զ. Միհրաւան.*

*Է. Սատոյ.*

*Ը. Ասա.*

*Թ. Արովաղէն կամ Եսվաղէն.*

*Ժ. Վաչէ Բ. որ հիմնում է Պարտաւ քաղաքը (?).*

*ԺԱ. Վաչական Գ. բարեպաշտ.*

*Սասանեան հեթանոս նախարարք.*

*Ա. Միհրանից ծնւում եւ իշխում է*

*Բ. Արմայէլն. Արմայէլից*

*Գ. Վարդն. Վարդից*

*Դ. Քաջ Վարդանն, որն ընդունում է քրիստոնէական հաւատը եւ մկրտւում Աղուանից Վիրոյ կաթողիկոսի ձեռնով եւ հիմնում Կովկաս սարի տակ մի աւան եւ իւր անուամբ կոչում Վարդաշէն (?)։ Վարդանով կրկին շարունակվում է քրիստոնեայ նախարարութեան շղթան.*

*Քրիստոնեայ նախարարք.*

*Ա. Քաջ Վարդանից ծնւում եւ նախագահում է*

*Բ. Վարդ Ա. սորանից*

*Գ. Վարազ-Գրիգոր Ա. որից*

*Դ. Վարդ Բ. որից*

*Ե. Վարազ-Գրիգոր Բ. որից ծնւում են Վարազ-Պերոժ, Ջիւանշիր, Ցեղուտ-Խոսրով եւ Վարազման....*

*Զ. Ջիւանշիրին յաջորդում է իւր եղբայր*

*Է. Վարազ-Պերոժն, որից ծնւում եւ տեղակալում է.*

*Ը. Վարազ-Տրդատ, որից*

*Թ. Վարդան Գ. որից*

*Ժ. Ներսեհ Դժնդակ... որից*

*ԺԱ. Գագիկն, որից*

*ԺԲ. Ստեփաննոս, որ Վարազ Տրդատի հետ սպանվում է Ներսեհ Դժնդակից Դատի վանուց ձորում, ահա այս է “Դժնդակ„ կոչուելու պատճառն։ Գագկայ կինն, ունենալով միայն Սպրամ անուամբ մի դուստր՝ գիշերով փախչում է Խաչենի բերդն (**Կաչաղակաբերդ**?) եւ*

այդ դուստրը ամուսնացնում՛ Բագրատունի (?) Սմբատ իշխանի (?) թոռան Ատրներսեհի հետ:

ԺԳ. Ատրներսեհն շինում՛ է Հանդաբերդը եւ իր պալատը հաստատում՛ Վերին Խաչենում՛ ջերմուկների կողմում: Սորա անդրանիկն

ԺԴ. Գրիգոր Ա. շինում՛ է Հաւքախաղաց բերդը եւ իր իշխանութիւնը աւելի զօրացնում՛ այդ անառիկ բերդով, որից ծնւում՛ եւ յաջորդում՛ է

ԺԵ. Սահակ-Սեւադա, որ քաջ տղամարդ լինելով տիրում՛ է Գարդմանի, Քուստ եւ Փառնա գաւառներին եւ սկսում՛ է տարածել սոցա մէջ գիր, դպրութիւն եւ ուսում: Սահակ-Սեւադայից

ԺԶ. Գրիգոր Բ. որ Գուշատակ եւս է կոչւում՛, որից

ԺԷ. Փիլիպպոս (?), որից

ԺԸ. Սեւադա Ա. (?) իսկ սորանից Յովհաննէս (?) որ Սեննեքերիմ եւս է կոչվում: Վերջինս, իր բնական հանճարով, ռազմագիտական տաղանդով եւ կառավարչական խորագիտութեամբ, յաջողում՛ է Պարսից կառավարութեան միջոցաւ ձեռք բերել Աղուանից թագաւորութիւնը եւ թագը, որ վաղուց մնացած էր:

Ա. Սեննեքերիմ (?) թագաւորից ծնւում՝ եւ իշխում՛ է

Բ. Գրիգոր (?) թագաւորն, որով կրկին մեռնում՛ է Աղուանից թագաւորութիւնն: Գրիգոր թագաւորից ծնվում՛ են երեք որդիք՝ Վախթանկ թագաւորազն, Սմբատ թագաւորազն (?) եւ Վասակ թագաւորազն (?):

### Ծագումն իշխանաց եւ մելիքաց Ջալալեան տոհմին.

Ա. Վախթանկ թագաւորազնին տեղակալում՛ է իր անդրանիկն

Բ. Հասան-Մեծն, որն ծնուած էր Քուրդ իշխանի Արզու դստերից. Հասան-Մեծին տեղակալում՝ է

Գ. Վախթանկ Սակարն (?) որ ամուսնացած էր Քուրդ իշխանին Սարգիս որդու Խորիշահ դստեր հետ.

Վաղթանկ Սակարից (?) ծնւում՝ է

Դ. Ջալալ Դօլա Հասան, որ ամուսնացած է Մեծ Սիւնեաց Տարսայիճ (?) իշխանի Մամքան դստեր հետ, որից ծնւում՝ եւ յաջորդում՝ է

Ե. Աթաբէկ Ա., որից

Զ. Պարոն Ջալալն, որից

Է. Աթաբէկ Բ-ն (?) որից

Ը. Այտին-բէկն, (?) սորա փոքր եղբայր

Թ. Աղբաստն, (?) որից

Ժ. Հատիր մելիքն, (?) որից

ԺԱ. Մեհրամ՝ բէկն (?), որից

ԺԲ. Ջալալ բէկն, որից

ԺԳ. Վելիջան բէկ Ա. որից

ԺԴ. Բաղդասար բէկն, որից

ԺԵ. Վելիջան բէկ Բ. որից

ԺԶ. Մուլքի բէկն (?), որից

ԺԷ. Մելիք Գրիգորն, որին յաջորդում՝ է փոքր եղբայրն

ԺԸ. Մելիք Ալլահվերդին.

ԺԹ. Մելիք-բէկ Մելիք-Գրիգորեան (?)

Ի. Դանիէլ բէկ, որից ծնվում՝ է Բաղդասար վարդապետը:

Այս երկու համեմատութիւններից պարզ երեւում՝ է, թէ որքան վարպետ է Մակար վարդապետը ուրիշի ալրանքը սեպհականել իրան եւ, որպէս զի հրապարակի վրայ չճանաչուի, գոյնը փոխել եւ այնպէս վաճառել:

Այդ երկու համեմատութիւններից երեւում է եւ այն, որ Բաղդասար միտրապօլիտի կազմած ազգաբանութիւնը աւելի հարուստ է իւր մանրամասնութիւններով, աւելի լիակատար է, իսկ «Գաղտնիք»ի հեղինակինը միայն համառօտ քաղուածք է նրանից, այն եւս սխալներով[1]։

Այդ սխալները առաջ են եկել նրանից, որ Մակար վարդապետը գրելու ժամանակ աչքի առաջ չէ ունեցել Բաղդասար միտրապօլիտի յօրինած լիակատար ազգաբանութիւնը, որը դեռ ոչ մի տեղ տպուած չէ, այլ օգուտ է քաղել Սարգիս եպիսկոպոս Ջալալեանի քաղուածքից, որ նոյն սխալներով տպուած է նրա Ճանապարհորդութեան մէջ[2]։

Իսկ այդ դէպքում եւս կատարվում է այն բազմաթիւ հրաշքներից մէկը, որոնցով այնքան հարուստ է "Գաղտնիք"ը։

Այդ գրքի հեղինակը վախճանվում է 1828 թուին։

Իսկ Բաղդասար միտրապօլիտը իւր ազգաբանութիւնը յօրինել է 1849 թուին։ Կը նշանակէ, "Գաղտնիք"ի հեղինակի մահից 21 տարի յետոյ։

Ուրեմն, կամ պէտք է ընդունել, որ "Գաղտնիք"ի հեղինակը իւր մեռնելուց 21 տարի անցնելուց յետոյ յարութիւն է առել եւ օգուտ է քաղել Բաղդասար միտրապօլիտի կազմած ազգաբանութիւնից, կամ մի ուրիշը գողացել է այդ աշխատութիւնը, գոյնը փոխել է եւ Բէկնազարեանների անունով հրապարակ է հանել։

Այդ վճիռը թողնում եմ ընթերցողների դատաստանին։

---

[1] Սխալները մենք նշանակեցինք հարցական նշաններով։

[2] "Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան" մասն Բ. եր. 352, 354։

Բայց ես խոստացայ ցոյց տալ մի «օ յ ի ն բ ա ղ ո ւ թ ի ւ ն»...

Եթէ Բաղդասար միտրապօլիտը ունէր այդ ազգարանութիւնը, ուրեմն ինչու էր նա իւր նամակով դիմում «Գաղտնիք»ի հեղինակին եւ նրանից խնդրում մի եւ նոյնը։ Այդ ի՞նչ է նշանակում։ —

Ահա ինչ է նշանակում. գուցէ մի օր, ով է իմանում, Բաղդասար միտրապօլիտը գերեզմանից կը բարձրանայ եւ, գտնելով «Գաղտնիք»ի մէջ իւր աշխատութիւնը, կը բռնէ Մակար վարդապետի օձիքից եւ նրան կ'ասէ.

— Այդ իմ աշխատութիւնն է, այդ ո՞վ է գողացել։

Այն ժամանակ Մակար վարդապետը իրաւունք կ'ունենայ նրան պատասխանելու.

— Սրբազան, քո աշխատութիւնը որտեղից կարող էր լինել... եթէ դու ունէիր այդ աշխատութիւնը, այլ եւս 1828 թուին ինչու էիր դիմում Աբրահամ Բէկնազարեանին եւ նրանից խնդրում...

Եւ Մակար վարդապետը ամենայն վստահութեամբ ցոյց կը տայ սրբազանի նամակը։

— Այդ նամակը կեղծ է... կը պատասխանէ սրբազանը։ — Ես այդ աշխատութիւնը ունէի ոչ թէ 1828 թուին, այլ նրանից շատ առաջ, 1800 թուականներում, երբ դեռ վարդապետ էի եւ Հաղբատայ վանքում նստած աշխատում էի[1]...

Այսքանը բաւական համարելով, մենք գուցէ մի ուրիշ ժամանակ կրկին կը վերադառնանք Մակար վարդա-

---

[1] Բաղդասար միտրապօլիտի աշխատութիւնների թէ իւր իսկական ձեռքով գրած սեւագրութիւնները, որ նա յօրինել է Հաղբատայ վանքում, եւ թէ մաքուր արտագրած օրինակները, որ կազմել է յետոյ, ցանկացողները կարող են տեսնել մեզ մօտ։

պետի կազմած միւս տիրապետող մելիքների տոհմային ազգաբանութեանը, որոնց մէջ երեւում է Հայր սուրբի վերին աստիճանի անբարեխղճութիւնը։ Այդ միւս ազգաբանութիւնները՝ կամ լցուած են մի շարք երեւակայական անուններով, կամ մելիքների տոհմերը խառնած են միմեանց հետ եւ կամ եղբայրը եղբօր հայրն է դառնում, իսկ հայրը՝ — թոռ։ Բոլոր ծիւղագրութիւնների մէջ տիրում է մի գիծ միայն, այն եւս ուղիղ գիծ — որդի ի հօրէ, այլ շառաւիղներ չկան։

Երբ “Արձագանք„ի մէջ տպվում էր իմ հետազօտութիւնը, իմ բարեկամներից իւրաքանչիւրը հանդիպելիս միեւնոյն հարցն էր կրկնում. “Մի՞թէ արժէ մի այդպիսի յիմարութեան մասին այդքան գրել„։

Եթէ միայն յիմարութիւն լինէր, ես ոչինչ չէի գրի, բայց խարդախութիւնը, այն եւս գրական խարդախութիւնը պէտք չէ, որ մնայ անպատիժ։

“Գաղտնիք„ը դեռ լոյս չտեսած, դարձրեց իւր վրայ կրիտիկայի ուշադրութիւնը, եւ ոչ մի աշխատութիւն մեզանում այնքան խօսել չտուեց իւր մասին, որպէս այդ գիրքը։ Դա շատ բնական էր. “Գիժը մի քար նետեց փոսը, հարիւր խելօքներ հաւաքուեցան, չկարողացան դուրս հանել„։ Դեռ եւս շատ խելօքներ պիտի տանջուին “Գաղտնիք„ի նենգաւոր գաղտնիքները երեւան հանելու։

Ամեն կեղծութեան վրայ շատ են նայում, շատ են հետաքրքրվում։ Իսկ “Գաղտնիք„ը, հակառակ իւր արդար վրդովմունքով զայրացած հարուածողների, ունեցաւ եւ պաշտպաններ։

Իմ խօսքը, ի հարկէ, այն հացկատակ կրիտիկոսների մասին չէ, որոնք, շողոքորդութեան բուրվառը ձեռքում բռնած, մի բաժակ օղիի համար, միշտ պատրաստ են

խնկարկել ամէն մի կեղտոտութիւն, ամէն մի անբարոյականութիւն։ — Իմ խօսքը աւելի կրթուած, զարգացած եւ, մինչեւ անգամ, բարձր ուսում ստացած պարոնների մասին է, որոնք աւելի լուրջ կերպով պէտք է վերաբերուէին դէպի մի գրական խարդախութիւն, որի օրինակը մինչեւ այսօր չի տեսնուել։

“Գաղտնիք„ի հեղինակը, հարստահարելով ուրիշների աշխատանքը, ճարպկութիւն ունեցաւ հարստահարելու եւ այնպիսի յարգելի անձանց անունները, որոնք հազիւ թէ յանձն կ'առնէին՝ վկայ լինել մի խաբեբայ գործի։

Վերջացնում եմ յօդուածս, աւելացնելով, որ իմ հետազօտութիւնների մէջ՝ ես հասայ հետեւեալ եզրակացութիւններին.

1. “Գաղտնիք„ի մի զոյգ պատրուակեալ հեղինակները — հայր եւ որդի Բէկնազարեանները — երեւակայական անձնաւորութիւններ են։ Նրանք երբէք գոյութիւն չեն ունեցել, ոչ իբրեւ մատենագիրներ եւ ոչ իբրեւ անհատներ։

2. “Գաղտնիք„ը Մակար վարդապետի աշխատութիւնն է։ Միայն իւր գիրքը աւելի հրապուրիչ դարձնելու համար, կամեցել է մագաղաթի վրայ ներկայացնել եւ նրան մի հին, վաղեմի գրուածքի ձեւ տալ։ Հետեւապէս, “Գաղտնիք„ի բնագրի գրաբար լեզուով գրուած լինելը, Մակար վարդապետի թարգմանելը, յետոյ բնագիրը կորցնելը, — այդ բոլորը պէտք է հայր սուրբի հնարած ստեղծաբանութիւնը համարել։

3. Այդ գիրքը, իբրեւ մի պատմական աշխատութիւն, ոչ մի նոր աղբիւր չունի եւ չէ ցոյց տալիս։ Նա օգուտ չի քաղել մինչեւ անգամ ժողովրդական աւանդութիւններից։ Նա չէ բովանդակում իւր մէջ որ եւ է պատ-

մական փաստ, որ մեր գրականութեան մէջ նոր լինէր։ Իսկ ինչ որ նոր է, — այդ Մակար վարդապետի առակախօսութիւններն են միայն։

4. Բուն պատմական անձնաւորութիւնները — Ղարաբաղի իսկական մելիքները — իրանց գործերով եւ քաջութիւններով՝ կորչում, անհետանում են այդ գրքի մէջ։ Իսկ նրանց փոխարէն գրվում են Մակար վարդապետի ստեղծած հերոսները, որոնք երբէք գոյութիւն չեն ունեցել։

5. «Գաղտնիք»ի լեզուն, ոճը, շարադրութիւնը մեր տասն եւ ութերորդ դարու գրուածքների ոչ պարզութիւնն ունի եւ ոչ բնաւորութիւնը։ Նրա մէջ յաճախ հանդիպում են այնպիսի բառեր եւ այնպիսի դարձուածքներ, որ մեր նոր գրականութեան արդիւնք են։

6. «Գաղտնիք»ի գաղափարները, նկրտումները եւ պատմական երեւոյթների բացատրութիւնները՝ ամբողջապէս առնուած են «Խամսայի Մելիքութիւններից»։ Եւ այդ ապացոյց է, մի կողմից, նրա հեղինակի կոյր հետեւողութեանը, իսկ միւս կողմից, երեւան է հանում նրա կեղծութիւնը։ Մեր հին ժամանակների պատմաբանները գրում էին բոլորովին կրաւորական կերպով, առանց կրիտիկաբար վերաբերուելու փաստերին։ Քննադատական պատմութիւնը նոր ժամանակների գործ է։

7. Իբրեւ մի պատմական անհարազատ աշխատանք, այդ գիրքը զուրկ է ամեն հաւատարմութիւնից։ Նրա մէջ փաստերը կամայական կերպով աղաւաղուած են։ Ամբողջ գրքի մէջ գործում է մի խարդախ գրչի արհեստականութիւնը միայն։ Նրա մէջ չէ երեւում ժամանակի մարդը իւր բնական բարքով, վարքով եւ սովորութիւններով։ — Նրա մէջ երեւում են այլանդակ հրէշներ եւ հեքեաթների հերոսներ միայն։

8. “Գաղտնիք„ը մի գրական նենգաւոր աւազակութիւն է։ Նրա մէջ մտցրած են այլոց աշխատութիւնները, առանց հեղինակների անունները յիշելու։ Բայց գողութեան հետքերը կորցնելու համար, իսկական հեղինակների փոխարէն, յիշվում են այնպիսի անուններ, որոնք կամ երբեք գոյութիւն չեն ունեցել կամ ոչինչ չեն գրել։

9. “Գաղտնիք„ը ոչ միայն գրականական որ եւ է արժէք չունի, այլ մինչեւ անգամ վնասակար է։ Անհմուտ ընթերցողին նա կարող է մոլորեցնել եւ սուտը, կեղծը, անհաւատալին՝ ճշմարտի տեղ մատակարարել։ Այդ գրքի յօրինուածքի մէջ՝ այնքան չի պիտի զարմանալ հեղինակի տգիտութեան վրայ, որքան նրա անպատկառ յանդգնութեան վրայ, որով նա վստահութիւն է ունեցել կարծելու, թէ իւր աններելի վարմունքը գաղտնի կը մնայ “Գաղտնիք„ի մէջ։ — Մի այլ աւելի յարմար անուն հազիւ թէ կարելի էր գտնել...

10. Այդ բոլորից յետոյ, “Գաղտնիք„ի վարագոյրի ետեւում ծածկուած հեղինակին մնում է, իբրեւ կրօնաւորի, իբրեւ կրօնուսոյցի, իբրեւ ճշմարտութեան եւ բարոյականութեան քարոզչի, ձեռքը դնել սրտին, երեսը դարձնել դէպի ընթերցող հասարակութիւնը եւ, “հրաժարիմք ի խաբէութենէ„, ասել, եւ իւր հայոց գրականութեան ասպարիզում նետած գայթակղութեան քարը մէջտեղից վերցնել...



# ՐԱՖՖԻ

## ՎԱՃԱՌՈՒԵԼԻ ԳՐՔԵՐՆ ԵՆ

| | | ռուբլի | շիլինգ |
|---|---|---|---|
| 1. | «ՍԱՄՈՒԷԼ» Հատ. Ա. Բ. եւ Գ. մի գրքի մէջ ամփոփուած, Բ. տպագրութիւն . . | 3.50 | 8 |
| 2. | «ՎԷՊԻԿՆԵՐ ԵՒ ՊԱՏԿԵՐՆԵՐ» Հատ. Ա. (սակաւ.) . . . . . . . . . . | 2.— | 4½ |
| 3. | «ՎԷՊԻԿՆԵՐ ԵՒ ՊԱՏԿԵՐՆԵՐ» Հատ. Բ. (սակաւ.) . . . . . . . . . . | 2.— | 4½ |
| 4. | «ՋԱՀՐՈՒՄԱՐ» վէպ . . . . . . . | 2.— | 4½ |
| 5. | «ԿԱՅԷՆԻ ԿՏԱԿԸ» թարգ. (սակաւ.) . | 1.20 | 2½ |
| 6. | «ՈՍԿԻ ԱՔԱՂԱՂԸ» Բ. տպագր. . . . . | 1.— | 3 |
| 7. | «ԴԱՒԻԹ-ԲԷԿ» Հատ. Ա. Բ. եւ Գ. վերջաբանով, Գ. տպագր. . . . . . . . | 3.50 | 8 |
| 8. | «ԿԱՅԾԵՐ» Հատ. Ա., Գ. տպագր. . . | 2.— | 5 |
| 9. | «ԿԱՅԾԵՐ» Հատ. Բ. եւ վերջ, Բ. տպ. | 3.— | 7 |
| 10. | «ԽԵՆԹԸ» եւ «ՋԱԼԱԼԷԴԴԻՆ» մի գրքի մէջ ամփոփուած, Գ. տպագր. . . . . | 2.— | 5 |
| 11. | «ԽԱՉԱԳՈՂԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ» Ա. Բ. Գ. եւ Դ. հատ. մի գրքի մէջ ամփոփուած Գ. տպագր. . . . . . . . . . . . | 2.— | 5 |
| 12. | «ԽԱՄՍԱՅԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ» «ՂԱՐԱԲԱՂԻ ԱՍՏՂԱԳԷՏԸ» . . «ԳԱՂՏՆԻՔ ՂԱՐԱԲԱՂԻ» . . . (մի հատորի մէջ ամփոփուած) | 2.— | 5 |

Հրատ. **ԱՅՐԻ ԱՆՆԱ ՐԱՖՖԻ**

Ցանկացողները պիտի դիմեն՝

*Mme. Raffi*

*32, Richmond Gardens, Shepherd's Bush, London, W. (England).*

Ռուսաստանից մեծ քանակութեամբ պահանջողներն պիտի դիմեն՝

**ՄԽԻԹԱՐԵԱՆ ՀԱՐՑ ՎԻԵՆՆԱ,** VII. Mechitharistengasse 4.

ԼՈՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ

# ՐԱՖՖԻԻ ՄԱՀԻՑ ՅԵՏՈՅ

## ՄԵՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՄԲ

| | | ռուբլի |
|---|---|---|
| 1. | "ՀԱՅ ԿԻՆԸ ԵՒ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԻՒՆԸ" (*սպառուած*) | —.— |
| 2. | "ԽԵՆԹԸ" ԵՒ "ՋԱԼԱԼԷԴԴԻՆ" *մի գրքի մէջ ամփոփուած, Բ. տպագր.* (*սպառուած*) | —.— |
| 3. | "ԴԱՒԻԹ-ԲԷԿ" *Հտր.* Ա, Բ *եւ* Գ *վերջաբանով*, Բ. *տպագր.* (*սպառուած*) | —.— |
| 4. | "ՄԻՆՆ ԱՅՍՊԷՍ, ՄԻՒՍՆ ԱՅՆՊԷՍ", *պատկերազարդ վէպ* (*սպառուած*) | —.— |
| 5. | "ԿԱՅԾԵՐԻ" Ա. *Հտր.* Բ. *տպագր.* (*սպառուած*) | —.— |
| 6. | "ԿԱՅԾԵՐԻ ՎԵՐՋԸ" (*սպառուած*) | —.— |
| 7. | "ՎԷՊԻԿՆԵՐ ԵՒ ՊԱՏԿԵՐՆԵՐ" *Հտր.* Ա. (*սակաւ.*) | 2.— |
| 8. | "ՎԷՊԻԿՆԵՐ ԵՒ ՊԱՏԿԵՐՆԵՐ" *Հտր.* Բ. (*սակաւ.*) | 2.— |
| 9. | "ԱՐԾՒԻ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ" (*սպառուած*) | —.— |
| 10. | "ԽԱՄՍԱՅԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ" Բ. *տպագր.* (*սպառուած*) | —.— |
| 11. | "ՊԱՐՈՅՐ ՀԱՅԿԱԶՆ" (*սպառուած*) | —.— |
| 12. | "Ո՞Վ ԷՐ ՄԵՂԱՒՈՐ" (*սպառուած*) | —.— |
| 13. | "ՖՐԻԴՕԼԻՆ" *Թարգ.* (*սպառուած*) | —.— |
| 14. | "ՋԱՀՐՈՒՄԱՐ" *վէպ* | 2.— |
| 15. | "ՑԱՃԿԱՀԱՅՔ" (*սպառուած*) | —.— |
| 16. | "ԽԱԶԱԳՈՂԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ" Ա., Բ., Գ. *եւ* Դ. *մաս* Բ. *տպագր.* | —.— |
| 17. | "ՈՍԿԻ ԱՔԱՂԱՂԸ" Բ. *տպագր.* | 1.— |
| 18. | "ՍԱՄՈՒԷԼ" *Հտր.* Ա., Բ. *եւ* Գ., *Հտր.* Բ. *տպգր.* | 3.50 |

19. “ԴԱՒԻԹ-ԲԷԿ” Հտր. Ա., Բ. եւ Գ. վերջաբանով, Գ. տպագր. . . . . . . . . . . . . 3.50
20. “ԿԱՅԾԵՐ” Ա. Հտր. Գ. տպագր. . . . . . . 2.—
21. “ԿԱՅԾԵՐ” Բ. Հտր. եւ վերջ, Բ. տպագր. . . 3.—
22. “ԽԵՆԹԸ” եւ “ՋԱԼԱԼԷԴԴԻՆ” Գ տպագր. . . 2.—
23. “ՋԱԼԱԼԷԴԴԻՆ” առանձին, Գ. տպագր. . . . —.50
24. “ԽԱԶԱԳՈՂԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ” Ա. Բ. Գ. եւ Դ. մաս Գ. տպագր. . . . . . . . . . . . 2—
25. “ԽԱՄՍԱՅԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ” “ՂԱՐԱԲԱՂԻ ԱՍՏՂԱԳԷՏԸ” . . “ԳԱՂՏՆԻՔՆ ՂԱՐԱԲԱՂԻ” . . } . . . . . 2.—

Հրատարակչուհի՝ **ԱՅՐԻ ԱՆՆԱ ՐԱՖՖԻ**

---

ՀԵՏԶՀԵՏԷ ԼՈՅՍ ՊԻՏԻ ՏԵՍՆԵՆ

# ՐԱՖՖԻԻ

## ՀԵՏԵՒԵԱԼ ՍՊԱՌՈՒԱԾ ԵՒ ԱՆՏԻՊ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1. “ՍԱԼԲԻ” Ա. Բ. եւ Գ. մեծադիր հատորներ (անտիպ)։
2. “ՀԱՅ ԿԻՆԸ ԵՒ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԻՒՆԸ”։
3. “ՀԱՅՈՑ ՀԱՐՑԸ” (Տաճկահայք) (տպուած եւ անտիպ)։
4. “ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ” (Արծիւ վասպուրականի)։
5. “ՎԷՊԻԿՆԵՐ ԵՒ ՊԱՏԿԵՐՆԵՐ” Հտր. Գ. (տպուած եւ անտիպ)։
6. “ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆՆԵՐ” (տպուած եւ անտիպ)։
7. “ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆՆԵՐ” (տպուած եւ անտիպ)։
8. “ՀՐԱՊԱՐԱԿԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐ” (տպուած եւ անտիպ)։
9. “ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ” (տպուած եւ անտիպ)։
10. “ՆԱՄԱԿՆԵՐ” (անտիպ)։
11. “ՄԻՆՆ ԱՅՍՊԷՍ եւ ՄԻՒՍՆ ԱՅՆՊԷՍ”։
12. “ԿԱՅԷՆԻ ԿՏԱԿԸ” (Թարգ.)։
13. “ԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԱՌՕՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ” Հայկից մինչեւ Լեւոն Զ։
14. “ԸՆԴՀԱՆՈՒՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ” եւայլն, եւայլն։

